# ԱՊՏԻՒԼ ՀԱՄԻՏ ԵՒ ՇԷՐԼՕՔ ՀՈԼՄՍ



## ԱՌԱՋԻՆ ՀԱՏՈՐ

Abdul Hamid and Sherlock Holmes

# ԱՊՏԻՒԼ ՀԱՄԻՏ

ԵՒ

# ՇԷՐԼՕՔ ՀՈԼՄՍ

## ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ՊԱՏՄԱԿԱՆ ՎԷՊ

ԳՐԵՑ

Yervant Odian

ԵՐՈՒԱՆԴ ՕՏԵԱՆ

### ԱՌԱՋԻՆ ՀԱՏՈՐ





Կ. ՊՈԼԻՍ

1911

Տպագրութիւն Օ. ՍԱԳԱԵԱՆ

Arm.



# ԱՊՏԻՒԼ ՀԱՄԻՏ ԵՒ ՇԷՐԼՕՔ ՀՈԼՄՍ

## ԱՌՋԻՆ ՄԱՍ

## ԲՌՆԱՒՈՐԸ ԱՆԾԱՆՕԹԻՆ ԴԷՄ

### ԳԼՈՒԽ Ա.

### ԽՈՐՀՐԴԱՒՈՐ ՈՃԻՐ ՄԸ

1904 *Օգոստոս* 21, *շաբաթ առաւօտ Պոլսոյ թերթերը, իրենց ներքին լուրերու բաժնին մէջ, ոճիրի մը պատմութիւնը կ՚ընէին։ Թուրք թերթերէն Շաֆաք, որ լուրերու մասին լաւագոյն կազմակերպութիւնը ունեցող լրագիրն էր, ամէնէն աւելի ընդարձակօրէն կը խօսէր այդ արիւնալի եղելութեան մասին որ խորին յուզում առաջ բերած էր Վոսփորի ասիական եզերքի մէկ քանի գիւղերուն մէջ։ Ահաւասիկ թէ ինչ կը պատմէր Շաֆաք։*

*«Երէկ, կէսօրէն ետքը, խորհրդաւոր ոճիր մը եղաւ Գանտիլլիի մէջ, հեռաւոր պարտէզներու տակ։ Գանտիլլիի ու Վանիքէօյի միջեւ գտնուած ծովեզերեայ տան մը մէջ, որ անբնակ կը կարծուէր, գիշերը կասկածելի աղաղակներ լսուելով և երկու հոգիի մութին մէջ փախչիլը տեսնուելով, հեռաւոր տասու դրացիները և մանաւանդ քովի*

տան պարտիզպանը որ նախորդ իրիկուն այդ տան մէջ հինգ հոգի մտնելը և գիշերն ալ երկու հոգի դուրս ելել ու վազելով հեռանալնին տեսած էր, կը դիմէն անդուոյն ոստիկանապետին որ քիչեալ բնակարանին տէրը, Վանիքէօյ բնակող Հասան Ալի էֆէնտին, գանելով, անոր ընկերակցութեամբ կուգայ և տան դուռը բանալով ներս կը մտնէ: Սոսկալի տեսարան մը կը պարզուի այն ատեն իրենց աչքին առջև: Ծովին վրայ փռուող գետնայարկի ընդարձակ սենեակի մը մէջ, քով քովի շարուած էին երեք դիակներ, արիւնլուայ վիճակի մէջ: Մէկն ուղղակի սրտէն դաշոյնի խորունկ հարուած մը ընդունած էր, երկրորդը ծոծրակէն ու կողէն երկու դաշոյնի հարուած, իսկ երրորդին գանկը պատռած էր երկաթ ձողի կամ հաստ գաւազանի մէկ քանի հարուածներով: Զանազան նշաններ կը հաստատեն թէ սպաննուածները մէն ուրիշ սենեակի մը մէջ մեռցուած և յետոյ միւս դիակներուն քով փոխադրուած է: Ջահերուն ինքնութիւնը տակաւին չէ սառուցուած և ոճրին շարժառիթը յայտնի չէ, սակայն կը կարծուի թէ վրէժխնդրութեան մը արդիւնքն է, որովհետև երեք դիակներուն վրայէն ալ գտնուած են իրենց քսակները, որոնց մէջ բաւական կարևոր գումարներ կան: Նոյնպէս ոճրագործները չեն առած սպաննուածներուն ո՛չ ոսկի ժամացոյցները և շղթաները, ո՛չ արծաթեայ ծխատուփերը և ո՛չ ալ միւս մատը դրուած մեծարժէք ադամանդեայ մատանին: Բացուած նախնական քննութենէն կ'երևայ որ ոճրին երեք զոհերն ալ Թուրք են և միջակ կամ բարձր դասու պատկանող: Իրենց վրայ ոչ մէկ նամակ, թուղթ կամ այցաքարտ ու թղթապանակ չէ գտնուած ինքնութիւննին որոշելու համար: Տան տէրը հարցաքննութեամբ՝ յայտարարած է որ տունը շաբաթ մը առաջ վարձու տուած էր Եօրկի Սօթիրիս անուն յոյնի մը և տան մէկ բանալին անոր յանձնած: Ոստիկանութիւնը կը փնտռէ այդ Եօրկին որ անյայտ եղած է: Քննութիւնը առաջ կը տարուի և կը յուսացուի որ ոճրագործները կարելի պիտի

ըլլայ չուտով ձերբակալել: Իրիկուան դէմ ոստիկանութեան նախարարութեան ընդհ. քննիչ Պ. Լըֆուլան, հարցաքննիչ դատաւոր Նէչաա էֆ. մէկ քանի պաշտօնեաներ և ոստիկանատան բժիշկներէն Տօքթ. Ծորճի էֆ., Տօքթ. Սապուլեան էֆ. և Տօքթ. Օսման պէյ Գանտիլլի գացած են տեղւոյն վրայ մանրամասն քննութիւն մը կատարելու համար»:

Եթէ այդ ոճիրը մեծ յուզում յառաջ բերած էր Գանտիլլիի ու Վանիքէօյի մէջ, լրագիրներու ընթերցողները նոյնքան յուզումով չէին կարդացած զայն և ո՛չ ալ երկար բարակ զբաղած անով, նոյն միջոցին ամէնուն ուշադրութիւնը կեդրոնացած ըլլալով ռուսաճապոնական պատերազմին զգայացունց լուրերուն վրայ:

Եւ ճիշդ այդ շաբաթ առտուան թերթերը նորանոր ու ծանրակշիռ հեռագիրներ կը պարունակէին պատերազմի մասին:

Ճապոնական զօրքերը գրաւած էին Լիաօ Եանկը, ռուսական երկաթուղիներու հաղորդակցութիւնները խզուած էին և ռուս բանակը կը նահանջէր: Բորթ-Արթիւր, թէև սակաւին կը դիմադրէր, սակայն Ռուսիոյ կացութիւնը աղէտալի էր և նոյն խել Բարիզէն հեռագիր մը կը ծանուցանէր թէ ռուսական շրջանակներու և Միացեալ Նահանգներու միջեւ բանակցութիւններ կը կատարուէին՝ միջնորդութիւն մը յառաջ բերելու համար, որպէս զի կռիւը վերջ մը գտնէ:

Ու ամէն կողմ խօսակցութեան ընդհանուր նիւթը այդ հեռագրական տեղեկութիւններն էին և շատ քիչեր կը զբաղէին Գանտիլլիի սպանութիւններովը:

Թերթերու խմբագրատուններուն մէջ ոգևորութիւնը շատ մեծ էր, ամէնքը սրտատրոփ նոր հեռագիրներու կը սպասէին ու Եւրոպայէն նոյն օրը եկող թերթերը իրարու ձեռքէ կը յափշտակուէին: Ռուսաճապոնական պատերազմը խանդավառած էր ամէնքը, մանաւանդ Թուրքերն ու Հայերը որոնք սրտովին կը ծափահարէին ամէն մէկ նոր ճապոնական յաղ-

թութիւն։ Բաց աստի, այդ պատերազմը ճշմարիտ բարիք մը եղած էր Թերթերուն համար, որոնք անողոք գրաքննիչութեան մը լուծին տակ, չէին կրնար գրելիք մը գտնել ուրիշ տեղն, մինչդեռ հիմա պատերազմի լուրերով ու նկարագրութիւններով Թերթերնին դիւրաւ կը լեցնէին։

— Իյի՛ւ թէ այս պատերազմը յաւիտեան տեւէր, կը մտածէին լրագրի տէրերն ու խմբագիրները։

Ճաֆարի խմբագրատան մէջ այդ առտու անօրինակ իրարանցում մը կը տիրէր, բոլոր խմբագիրները գործի վրայ էին և գրեթէ իրարու խօսք մը փոխանակելու տեղն չունէին։ Մանաւանդ ֆրանսերէն Թերթերու Թարգմանիչը՝ Սատըք պէյ՝ առաւօտէ ի վեր գլուխը կախած՝ Ժու—Նալին մէջէն կը Թարգմանէր Լիւտօվիք Նատոյի մէկ ընդարձակ Թղթակցութիւնը Մուքտէնէն գրուած։ Կէս օրէն ետքը, ժամը մէկուկէսին, հազիւ իր գործը աւարտեց և այն ատեն միտքը ինկաւ որ չէր ճաշած և գրիչը մէկ կողմ նետելով, խմբագրատան ծառային ըսաւ որ դիմացի ճաշարանէն կերակուր բերէ իրեն։

— Գանտիլլիի ոճիրը կարդացի՞ր, հարցուց իրեն Ճաֆարի լրաբերէն Ապտուլլահ էֆէնտի, որ աթոռի մը վրայ նստած լրագիրները աչքէ կ'անցնէր։

— Ի՞նչ ոճիր։

— Երեք հոգի սպաննուած գտնուեր են տան մը մէջ... անիկա սովորական ոճիր մը չէ։

— Տո՛ւր Թերթը տեսնամ։

Եւ Սատըք պէյ սկսաւ կարդալ ինչ որ մենք արդէն գիտենք։

— Զարմանալի և ահաւոր բան, ըսաւ ընթերցումը լմնցընելէ ետքը... արդեօք ո՞վ են խեղճ զոհերը։

— Տակաւին յայտնի չէ։

Նոյն միջոցին պաշտօնեայ մը գործակալութիւններու նոյն օրուան հեռագիրները բերաւ յանձնեց Սատըք պէյի, որ ան-

միջապէս անյագ հետաքրքրութեամբ սկսաւ կարդալ զանոնք, բոլորովին մոռնալով Գանախլլիի ոճիրը:

—Լիտօ Եանիկի դրաւումը պաշտօնապէս հեռագրուած է, գոչեց ուրախութեամբ, յետոյ թուղթերը առնելով գնաց քովի սենեակը ուր կը գտնուէր խմբագրապետը:

Սատըք պէյ քառասունհինգ տարեկան, միջահասակ, նուրբ ու վայելչակազմ երիտասարդ մըն էր, նորաբոյս սեւ պեխերով. ազուոր արտայայտիչ աչքերով, որոնց զուարթ ու անկեղծ ակնարկը առաջին վայրկեանէն համակրանք ու վստահութիւն կը ներշնչէր: Իր ուսումը Կալաթա Սարայի Լիսէյին մէջ աւարտած էր ու փայլուն վկայական մը առած. յետոյ նետուած էր լրագրական ասպարէզը որուն համար վարժարանէն իսկ բուռն հակում մը ունէր: Ինք աւելի կ՚ուզէր զուտ գրականութեամբ զբաղիլ, վէպեր ու բանաստեղծութիւններ գրել սակայն մէկ կողմէ գրաքննութիւնը և միւս կողմէ օրաթերթի մեքենական աշխատութիւնները արգելք կ՚ըլլային իր բաղձանքը իրագործելու: Թէեւ իր պարապոյ ժամերուն միշտ գրականութեամբ կը զբաղէր և արդէն իսկ սիրային ընդարձակ վէպ մը գրած լմնցուցած էր, զոր պատեհ ժամու մը կը սպասէր հրատարակելու համար: Ինքն ի բնէ խելացի, ուշիմ և աշխատասէր, շատ լաւ սորված էր Ֆրանսերէն լեզուն և թարգմանութեան մէջ այնպիսի վարժութիւն մը ստացած էր որ շատ քիչեր կը հաւասարէին իրեն: Սատըք պէյ, վարժարանին մէջ, ջերմ ազատական ու գրեթէ յեղափոխական մըն էր, բայց Լիսէէն ելլելէն ի վեր, իր շատ մը ընկերակիցներուն պէս, սորվեր էր ծածկել իր գաղափարները և ինքզինք յարմարցնել ապրած զժնդակ միջավայրին, թէեւ ներքնապէս նոյնը մնացած էր: Երիտասարդ Թուրքերու շարժումին թէեւ հեռուէն համակիր, սակայն երբեք յարաբերութիւն չէր ունեցած հետերնին և նոյնիսկ կը զգուշանար անոնցմէ և չէր ուզեր ո և է կերպով ինքզինք վտանգել: Քաջասիրտ ու յանդուգն և անձնազոհութեան կարող

ըլլալով հանդերձ, տեսակ մը հոգեկան ճնշումի ու թուլացումի ենթարկուած էր, գլուխը շրջապատող մթնոլորտէն ազդուած:

Խմբագրապետին քովէն վերադառնալով՝ Սատրք որուն որուն կերակուրը բերած էին, ախորժանքով ճաշեց, խահուէն ու սիկառէթը աւարտեց և նորէն անցաւ դրասենեակին առջեւ, թերթերու դէզէ մը շրջապատուած և սկսաւ իր թարգմանութիւններուն:

Մութը կոխած էր արդէն, երբ գործը լմնցնելով՝ պատրաստուեցաւ մեկնելու, նոյն միջոցին գրաքննիչը ներս մտաւ հեւ ի հեւ և շփոթած կերպարանքով մը:

— Փանախլլիի ոճիրին մասին նոր բան գրեցի՞ք, հարցուց խօսքը ուղղելով խմբագրի մը որուն պաշտօնն էր ներքին լուրերը կարգի դնել:

— Ոչ, պատասխանեց այս վերջինը, յատուկ լրաբեր մը ղրկած ենք այդ մասին տեղեկութիւն բերելու համար, տակաւին չեկաւ, անոր կը սպասենք կոր:

— Զգոյշ որ այդ ոճիրին վրայ տող մը բան գրէք. ձեր կողմէն, շարունակեց գրաքննիչը: Հըֆզի պէյը բացարձակապէս հրաման ըրաւ, եթէ հակառակը վարուիք գլուխնիդ մեծ փորձանք կուգայ...: Միայն ոստիկանութեան կողմէ տրուած պաշտօնական տեղեկութիւնները կրնաք հրատարակել... հասկցա՞ք

— Այո՛, շատ աղէկ, պատասխանեց խմբագիրը:

Գրաքննիչը տակաւին կը շարունակէր իր պատուէրներն ու սպառնալիքները, երբոր Սատրք դէպ դուրս ելաւ, մտածելով որ խմբագիրը իրեն հետ կապակցութիւն չունի:

— Օ՜ սատանը ուշ է եղեր, ըսաւ ժամացոյցը նայելով փողոցի դրան առջեւ և սկսաւ Պապ Ալիի պողոտայէն վար իջնել դէպի Սիրքեճի:

Ճնշիչ օդ մը կար. արեւը թէեւ արդէն անյայտացած՝ տակայն իր տաքութիւնը կը մնար մթնոլորտին մէջ:

— Օ՛ֆ, աս ի՛նչ դժոխային օդ է, ըսաւ ինքնիրեն երիտասարդը. սիկառէթ մը վառելով:

Յետոյ, միտքը ինկաւ քրտքնիչին բարձերը:

— Ինչո՞ւ համար այդ ոճիրին վրայ գիրը կ'արգիլուի, հարցուց մտքէն, արդեօք Համիտին մա՞տը կայ գործին մէջ . . . :

Կառքը գարեջրատան առջեւ հասած էր, պահ մը վարանեցաւ, ժամացոյցը նայեցաւ եւ իջաւ:

— Տակաւին բաւական ժամանակ կայ չորսուկէսին, կըրնամ ներս մտնել ու մէկ երկու գարեջուր խմել:

Ներսը բազմութիւն լեցուած էր. ընդհանրապէս Սիրքէճիի կայարանին Եւրոպացի եւ Յոյն պաշտօնեաներն էին յաճախորդները: Հազիւ թէ սեղանին քով նստած էր երբ երիտասարդ մը մօտեցաւ իրեն:

— Վա՜յ Սարգիս, հո՞ս ես եղեր, ըսաւ նորեկը մաքրիկ ու զուարթ շեշտով մը:

— Այո՛, հիմայ եկայ, քովս եկուր քիչ մը նստինք:

Միւսը, առանց հրաւէրի սպասելու, արդէն կը պատրաստէր նստելու:

Սարգիսէն քանի մը տարի մեծ երիտասարդ մըն էր Նուբարը, գեղին դէմքով, երկայնահասակ եւ հաճելի կազմուածքով: Միասին տարիներով դպրոցակից եղած էին Լիէժի մէջ ու միեւնոյն տարին շրջանաւարտ եղած: Իրենց գաղափարներու եւ նկարագրի նոյնութեան շնորհիւ, մինչեւ հոգը մտերիմ բարեկամներ մնացած էին իրարու, թէեւ յաճախ զիրար տեսնելու առիթը չէին ունենար: Ալի Օսման պէյ. այսպէս կը կոչուէր Սարգիսի դպրոցական ընկերը, կեդրոնական վարչութեան մէջ, ուր հայրը բարձր դիրք մը ունէր, բաւական կարեւոր պաշտօն մը կը վարէր, թէեւ իր նկարագրին բոլորովին անյարմար եւ այս պատճառաւ իսկ շատ անգամ փախուստ կուտար իր գործէն ու օրն ի բուն ձկնորսութեամբ կ'անցնէր, որուն մոլին էր: Իր հայրը Պօյաճը Քէօյ ծովեզե-

եայ գեղեցիկ տուն մը ունէր և իւր մանկութենէն անձնատուր եղած էր այդ ժամանցին, այնպէս որ երբեմն ամբողջ օրեր ծովուն վրայ կ'անցնէր։

Սատըք իր բարեկամին այս մենամոլութեան քաջ տեղեակ ըլլալով, ըսաւ․

— Ինչպէ՞ս այս տաք օդին վար իջեր ես, փոխանակ նաւակով ձուկի ելլելու։

— Չգէ՛, եղբայր պատասխանեց միւսը, երկու օրէ ի վեր շունչ առած չունիմ։

— Ինչ կայ որ․․․

— Ի՞նչ պիտի ըլլայ, Գանտիլլիի անցքը չկարդացի՞ր։ ամբողջ ոստիկանութիւնը տակնուվրայ է, պատասխանեց Ալի Օսման ձայնը խորհրդաւոր կերպով ցածցնելով։

— Այո՛, այս իրիկուն ալ գրաքննիչը խիստ կերպով պատուիրեց որ բան մը չի գրենք այդ մասին, ըսաւ խմբագրապետը։

— Որովհետեւ այդ անցքը տարբեր հանգամանք մը կ'առնէ կոր։

— Գործին մէջ Համիտին մա՞տը կայ, հարցուց խմբագիրը կասկածոտ ակնարկ մը պտտցնելով չուրջը և ձայնը կրցածին չափ ցածցնելով։

— Չէ՛ ընդհակառակը, եղածը անոր դէմ է, պատասխանեց Ալի Օսման, ինքն ալ նոյնպէս գարեջրատան մէջ գտնուողներուն վրայ գողունի ակնարկ մը պտտցնելով։

Սակայն ոչ մէկ կասկածելի դէմք նշմարեց։ Ինք իբրև ոստիկանատան պաշտօնեայ գրեթէ բոլոր լրտեսները կը ճանչնար և որքան ալ անոնցմէ վախնալիք բան մը չունէր, այսուհանդերձ նորէն զգուշութիւնը ձեռքէ չէր ձգեր։

— Մարդ չի կայ, կրնանք հանգիստ սրտով խօսիլ, ըսաւ վերջապէս։

Սատըք այլեւս համբերութիւնը կը սկսէր սպառել, իր բարեկամին խորհրդաւոր ձեւերը իր հետաքրքրութիւնը սրած

էին և ինք որ տարուընէ ի վեր այդ երկրին սպանութիւններուն մեծ կարեւորութիւն մը չէր տուած, այժմ կ'ուզէր ամէն մանրամասնութիւն իմանալ: Ուստի գարեջուրի գաւաթը պարպեց և ըսաւ.

— Շուտ պատմէ՛ տեսնենք, շատ ժամանակ չունինք:

— Նախ սա ըսեմ որ զոհերուն ինքնութիւնը յայտնուեցաւ ... երկուքն ալ Երզրումի մասնաւոր լրտեսներն են և կարեւոր լրտեսներէն:

— Ի՞նչ կ'ըսես գուցէ Սատըք:

— Այո՛, մանաւանդ մին, Ահմէտ Սամի պէյ, Սուլթանին աչքին լոյսն էր...:

— Բայց ո՞վ են սպաննողները:

— Մինչեւ հիմա եղած քննութիւններէն կ'երեւայ որ այս ոճիրը ո՛չ գողութեան և ոչ ալ անձնական վրէժխնդրութեան արդիւնք է, այլ կազմակերպուած գաղտնի ընկերութեան մը գործը: Եւ այս բանն է որ մեծ յուզում պատճառած է թէ՛ Երզրումի մէջ և թէ՛ սահմանութեան դուռը:

— Երէկուրնէ ի վեր ո և է հետք մը չգտնուեցա՞ւ:

— Բնաւ երբէք ...: Ոճիրը գործուած տան տէրը հարցաքննեցինք երկար բարակ. տունը շաբաթ մը առաջ վարձու առեր է Եօրկի Սօթիրիադիս անուն յոյնի մը, որ ամբողջ տարեկան կանխիկ վճարեր է ու հետեւաբար երաշխաւոր չէ առեր: Ամէն կողմ փնտռեցինք այդ Եօրկին ու տակաւին չկրցանք գտնել. յայտնի է որ այդ մարդը մեղսակից է, թէև ոճիրը գործողներէն չէ: Պարագաներէն վկայութիւնէն կը տեսնուի որ երկուք լրտեսներուն ընկերացող երկու անձերը որոնք ապահովաբար սպաննիչներն են, Թուրք են.

— Գաղտնի ընկերութեան խնդիրս չհասկնար կոր, ըսաւ Սատըք, կնոջ խնդիր չըլլայ...:

— Չէ՛, կազմակերպութեան մը դիմաց կը գտնուինք և ատոր ապացոյցը ունինք, պատասխանեց Ալի Օսման:

---

## ԳԼՈՒԽ Բ.

# M. A.

Երկու բարեկամները իրենց առջեւ դրուած գարեջուրի գաւաթները պարպեցին, մէյ մէկ հատ եւս ապսպրեցին, յետոյ առանձնութեան ՝պահանջման ձայնը ա՛լ աւելի ցածցնելով ըսաւ.

— Այո՛, այս անգամ մէկ երկու մարդու ձեռքով պատրաստուած բան չէ, եւ հաւանօրէն անգլիական շարքի մը սկզբնաւորութիւնն է որ պիտի շարունակուի։

— Եղբայր քու երեւակայութիւնդ բորբոքեր է եւ ինքնիրենդ խորհրդաւոր դէպ մը կը հիւսես կոր, ըսաւ խմբագիրը թեթեւօրէն ժպտելով։

— Չէ, բարեկամ, պատասխանեց միւսը, դէպ չէ, այլ բան իսկ իրականութիւնը։

— Բայց աս ապացուցէ նախ՛ տեսնենք։

— Մտիկ ըրէ՛, Սադըք, ինչ որ քեզի պիտի յայտնեմ գաղտնիք մըն է որ պէտք է քովդ պահես, որովհետեւ անոր յայտնութիւնը կրնայ մեծ փորձանք բերել թէ քու եւ թէ իմ գլխուս. . . .

— Խօսէ՛ եւ վստահ եղիր վրաս։

— Երբ այս առաւօտ երեք դիակներու զննութիւնը կատարուեցաւ, Տօքթ. Սալիմ փաշայի եւ Տօքթ. Սիմօն պէյի ձեռքով, դիակներէն մէկուն աջ ծիծին տակ մութ կապոյտ գոյնով նշան մը տեսանք. այդ նշանն էր երկու ֆրանսերէն գլխագիր M. եւ A. եւ տակը 1 թուանշանը։

— M. եւ A. կրկնեց Սադըք, ի՞նչ կրնան նշանակել այդ գիրերը։

— Մարկ ըրէ՛, շարունակեց միւսը, գիտնականութիւնը առաջ առնելով՝ երկրորդ գահին ծածքակին վրայ գտանք նաեւ նոյն M. և A. գիրերը և 2 թուանշանը... վերջապէս երկրորդ գահին ձախ ոտնակին վրայ նոյն գիրերը դրոշմուած էին նորէն 3 թուանշանով,... ինչ կ'ըսես ասոր:

— Զարմանալի՛ բան... բայց դուք ինչ հետեւցուցիք ասկէ:

— Ասկէ մենք պարզապէս հետեւցուցինք որ այդ երեք մարդասպանութիւնները ծածուկ մարմինի մը կողմէ գործուած են և թէ այդ մէկ, երկու, երեք թուանշանները ցոյց կուտան թէ տակաւին պիտի ունենանք չորս, հինգ, վեց, եօթը և այսպէս շարունակական գահեր, եթէ չյաջողինք կազմակերպութիւնը երեւան հանելու:

— Այդ մասին դանէ յոյս ունի՞ք:

— Առ այժմ միակ յայտնիքնիս այն պարագանն է որ հինգ անձերուն տուն մտնելը անտես է, ինչպէս նաեւ յետոյ երկուքին դուրս ելլել ու փախչիլը: Այդ պարագային բաւական մանրամասնութիւններ գիտէ կոր: Հինգ անձեր նաւակով եկեր են ու ծովի կողմի դռնէն տուն մտեր են, որովհետեւ տունը երկու դուռ ունի: Տանը մէջ նստեր օղի խմեր են և նոյն իսկ պարտիզպանէն ալ ջուր ուզեր են: Պարտիզպանը յայտարարեց որ փախչող երկու անձերը, այսինքն ոճրագործները, բացարձակապէս կրնայ ճանչնալ եթէ տեսնէ, որովհետեւ հետերնին խօսեր է ու ինքն է որ հաստատեց անոնց Թուրք ըլլալը:

— Իսկ այդ հինգ անձերը բերող նաւավա՞րը, հարցուց երիտասարդ խմբագիրը, կարելի չեղա՞ւ գտնել:

— Ո՛չ տակաւին:

Վայրկեան մը լռութիւն տիրեց: Ալի Օսման գարեջուրի գաւաթը պարպեց, սիկառէթ մը վառեց և ըսաւ.

— Կը տեսնա՞ս որ սովորական ոճիր մը չէ այս... Եր-ազդը ամենուն վրայ եկած է և օրը տասը թեկնածու կուգայ

կ'երթայ ոստիկանատուն, նորանոր հրահանգներ բերելով... վերջին պատուէրը այն է որ թերթերը բան մը չգրեն այս ոճրին վրայ, նոյն իսկ լրտեսներուն հրահանգ տրուած է որ հանրային վայրերու մէջ այս ոճրին վրայ խօսողները հետապնդեն ... ատիկայ աղէկ գիտցիր և չըլլայ որ շոգենաւին մէջ կամ ասդին անդին այդ մասին խօսք բանաս ... Գանտիլլիի անունն ալ քիչ մը ժամանակ բերանդ մի՛ առներ, ըսաւ Սատըքի բարեկամը ժպտելով:

Խմբագիրը ժամացոյցը նայեցաւ:

— Օ, ուշ մնացի ըսաւ, հաշիւը մաքրենք ու երթանք:

— Ես քիչ մըն ալ պիտի նստիմ ու ոստիկանատուն պիտի վերադառնամ, փաշան Եըլտըզ գնաց և ստիպուած ենք իր գալուն սպասելու, որովհետև այս ոճրին տեղեկագիրներու խմբագրութիւնը ինծի յանձնուած է...:

— Ուրեմն գիշերնե՞րն ալ կ'աշխատիս կոր:

— Ախա՛ս այնպէս եղաւ, հառաչեց Ալի Օսման:

— Ամէն գործի մէջ բարիք մը կայ, ըսաւ Սատըք խնդալով, Գանտիլլիի ոճիրն ալ բարեբախտութիւն մը եղաւ Վօսփորի ձուկերուն համար՝ որոնք գոնէ քիչ մը ժամանակ ձեռքէդ ազատեցան ու հանգիստ պիտի ընեն:

Սատըք հաշիւը մաքրեց ու բարեկամին մնաս բարով ըսելէ ետքը, դուրս ելաւ գարեջրատունէն ու արագ քայլերով ուղղուեցաւ կամուրջ:

Երիտասարդ խմբագիրը Էրէնքէօյ կը կը բնակէր ու բաւական ճամբայ ունէր ընելիք: Իր բարեկամին պատմութիւնը չափազանց գրգռած էր երեւակայութիւնը: Ինք որ մեծ կարեւորութիւն մը չէր ընծայած Գանտիլլիի դէպքին՝ հիմա ակամայ անոր վրայ կը մտածէր մինչեւ նաւը: Շոգենաւին ու շոգեկառքին մէջ, անկիւն մը առանձնացած մի առ մի կը վերյիշէր քիչ մը առաջ Ալի Օսման պէյի հաղորդած մանրամասնութիւնները:

— Ինչ կը նշանակեն այդ M. և A. գիրերը, որոնք

դրոշմուած են զոհերու մարմիններուն վրայ և յետոյ այդ թուանշանները ... կը մտածէր ինքնիրեն, ինչո՞ւ համար, նոյնիսկ եթէ գաղտնի ընկերութիւն մըն է այդ ոճիրները գործողը, պէտք զգացած են այսպէս իրենց զոհերը դրոշմելու, միթէ անօգուտ և վտանգաւոր անզգուշութիւն մը չէ՞ այդ... և յետոյ ի՞նչ տեսակ ընկերութիւն մըն է այս. յեղափոխակա՞ն՝ թէ լոկ լրտեսներու դէմ կազմուած մարմին մը։

Ի զո՜ւր Սատըք իր միտքը կը տրորէր այդ հարցումներուն գոհացուցիչ պատասխան մը գտնելու համար։

Կռուախումբը կանգ առաւ Էրէնքէօյի կայարանը, մութը կոխած էր բոլորովին և խմբագիրը փութաց երթալ իր տունը որ կայարանէն բաւական հեռու կը գտնուէր։

Հետեւեալ առտու Սատըք հետաքրքրութեամբ աչքէ անցուց թերթերը տեսնելու համար որ Գանտիլլիի ոճրին մասին բան մը գրա՞ծ էին։ Ամէնքն ալ ոստիկանութենէն հաղորդուած սա կարճ տեղեկութիւնը կուտային։

«Գանտիլլիի ծովեզերեայ անբնակ տան մը մէջ սպաննուած երեք անձերու մասին քննութիւնները առաջ կը տարուին ոստիկանութեան կողմէ և կը յուսացուի որ ոճրագործները շուտով արդարութեան ձեռք իյնան։

Նոյն իրիկուն Սատըք, խմբագրատունէն ելլելով կրկին դարեջրատուն մտաւ Ալի Օսմանը տեսնելու և նոր տեղեկութիւններ առնելու համար։ Սակայն բարեկամը չերեւցաւ և խմբագիրը ի զո՜ւր սպասելէ ետքը, յուսակտուր կամուրջին ճամբան ձեռք առաւ։

Այսպէս քանի մը օր, վրայ վրայի, Սատըք դարեջրատուն գնաց։ Բայց միշտ պարապը ելաւ։ Ալի Օսման բնաւ չէր երեւար։

Իսկ թերթերը, բարձրագոյն հրամանով, ա՛լ բոլորովին լռած էին, ու տող մը բան չէին գրեր Գանտիլլիի ոճրին վրայ,

Երկու շաբաթ ետքը Սատըք ա՛լ բոլորովին մոռցած էր

այդ չարաչուք դէպքը և իր բարեկամին հաղորդած մանրամասնութիւնները, երբ երկուշաբթի առտու մը, տունէն Էրէնքէօյի կայարանը եկած միջոցին այրած տան մը աւերակներուն վրայ բազմութիւն մը նշմարեց ։

— Ի՞նչ կայ արդեօք, խորհեցաւ ինքնիրեն, յետոյ ժամացոյցը նայեցաւ, դեռ քանի վայրկեան ատեն կայ կառախումբին, երթամ տեսնեմ թէ ինչո՞ւ այդ բազմութիւնը հաւաքուեր է հոն, ըսաւ ։

Եւ քայլերը ուղղեց դէպի աւերակ տեղը ։

Երբ բազմութեան մօտեցաւ, ծանօթ ձայն մը ըսաւ իրեն.

— Վա՜յ Սատըք պէյ, բարի լոյս, հոս առի՞ր ու վազեցիր եկուր ։

— Ի՞նչ կայ որ...

— Ի՞նչ պիտի ըլլայ ձեր թերթին համար պատուական լուր մը ։

Սատըք մօտեցաւ բազմութեան և տեսաւ որ ամէնքը ծռած էին գետին փռուած կիսամերկ մարմինի մը առջեւ ։

Սատըքի հետ խօսող անձը որ Սափա էֆէնտի անուն Բ. Դրան պաշտօնեայ մըն էր, խնդիրը բացատրեց խմբագրին ։

— Առտուն կանուխ, ըսաւ, գեղացի մը կուգայ ջուր առնելու այս այրած տան հորէն, դոյլը կ'իջեցնէ ու տե՛ս կը տեսնէ որ մարմինի մը կը զարնուի. անմիջապէս կասկածի կ'երթայ, մէկ քանի հոգիի իմաց կուտայ, կուգան կը քննեն ու կը տեսնեն որ մէջը մարդկային մարմին մը կայ ։ Վերջապէս, չերկնցնեմ, այս դիակը դուրս կը հանեն մէջէն ։

— Արդեօք անձնասպանութիւն մը՞ն է ։

— Ո՛վ գիտէ անձնասպանութիւն կամ ոճիր ... բայց մարդը հասարակ մէկը չերեւար կոր, գոնէ հագուստներէն այնպէս կ'ենթադրուի ։

— Ո՛վ ըլլալը դեռ չէ՞ հասկցուած ։

— Ո՛չ տակաւին, ամէն պարագային սատեղացի ըլլալու չէ...

Դեղին պեխերով հուժկու մարդ մըն էր, հազիւ քառասուն տարեկան և յայտնի կը տեսնուէր որ տակաւին նոր մեռած էր. վրայի հագուստները հանած էին ու միայն բանթալօնը և շապիկը մնացած էր։ Խմբագիրը մեքենաբար ծռեցաւ դիակին վրայ և ուշադիր նայեցաւ անոր դէմքին ու մազոտ կուրծքին։

Ցանկարծ մութ կապտագոյն արատ մը նշմարեց անոր աջ ուսին վերի կողմը. աւելի մօտեցուց գլուխը՝ մօտէն քննելու համար այդ արատը և մէկէն տժգունեցաւ և սարսուռ մը անցաւ բովանդակ մարմնէն... A. և M. գիրերը դրոշմուած էին դիակին ձախ ուսին վրայ ու ներքեւն ալ թուանշան մը՝ 4։

Սատըք մեծ ճիգ մը ըրաւ ոտքի ելլելու և յուզումը ծածկելու համար։

— Ինչու դիակին այդչափ կը մօտենաս ու պարապ տեղը կը յուզուիս, տե՛ս դէմքդ պատի գոյն դարձեր է ու կը դողդըղաս կոր, ըսաւ Սալիտ էֆէնտի իր բարեկամին։

Իրա՛ւ ալ՝ Սատըք՝ հակառակ իր վրայ ըրած ճիգերուն չէր կարող յուզումը զսպել։

— Երթանք կայարան, կառախումբը չփախցնենք, ըսաւ Սատըք և սկսաւ արագօրէն քալել։

— Այո՛, աչքովս տեսայ, կ'ըսէր ինքնիրեն, m. և a. գիրերը, մութ կապտագոյն, և յետոյ 4 թիւը այդ գիրերուն տակ, ճիշդ Ալի Օսմանի նկարագրածին պէս... ուրեմն այս ոճիրն ալ շարունակութիւնն է Գանտիլլիի ոճիրին... Նոյն նշանը՝ միայն թիւը փոխուած։

Ու Սատըք տեսակ մը անբացատրելի երկիւղով կը համակուէր. կը զղջար գացած դիակը տեսած ըլլալուն և իրեն այնպէս կը թուէր որ ինքն ալ գործակից էր այդ ոճիրներուն, թէ կրնար ձերբակալուիլ, հարցաքննուիլ, բանտարկուիլ...։

— Արդեօք յուզումս նշմարեցի՞ն, արդեօք ինէ կասկածեցա՞ն, արդեօք զիս պիտի հետապնդե՞ն, կը խորհէր ինքնիրեն։

Ու վակոնին մէջ նստած՝ գաղտագողի ակնարկներ կը նետէր չուրջը գտնուողներուն վրայ, ջանալով անոնց դէմքին վրայ կարդալու իր կասկածները արդարացնող նշաններ։

Այս մտատանջ վիճակին մէջ հասաւ կամուրջ և ուղղուեցաւ Շուֆուրի խմբագրատունը, որ ինչպէս ըսինք, Բ. Դրան պողոտային վրայ կը գտնուէր։

Խմբագրատան մէջ սակայն կրցաւ իր պաղարիւնութիւնը գտնել։ Իր ընկերները օրուան քաղաքական լուրերով ու մանաւանդ Ռուսեւճաբոնական պատերազմով հետաքրքրուած՝ բարձրաձայն կը խօսէին ու կը վիճէին։ Ինքն ալ պահ մը մասնակցեցաւ խօսակցութեան՝ յետոյ, Եւրոպայէն եկած թերթերը առնելով, անցաւ գրասեղանին առջեւ և սկսաւ քաղաքական բաժինը պատրաստել։

Յուզումը անցած էր ու ա՛լ գրեթէ չէր մտածեր առտուան չարաշուք դէպքին։

Իրիկունը սակայն երբոր, գործը աւարտելէ ետքը, դուրս ելաւ խմբագրատունէն՝ յանկարծ միտքը ինկաւ առտուան եղերական միջադէպը, հորէն հանուած մարդուն դիակը և անոր ուսին վրայ դրոշմուած երկու գիրերը, m. և a. • որոնք իր երեւակայութեան առջեւ ճիւաղային տեսլումով մը կը ցցուէին։ Եւ անդիմադրելի պէտք մը զգաց երթալ իր բարեկամը՝ Ալի Օսմանը գտնելու, իր տեսածը անոր հաղորդելու ու միեւնոյն ատեն անկէ նոր տեղեկութիւններ քաղելու համար։

Նախ հանդիպեցաւ իրենց ժամադրավայրը եղող գարեջրատունը. սակայն Ալի Օսման հոն չէր։ Այն ատեն տենդային անհամբերութեամբ մը կառք մը մտաւ և ըսաւ կառապանին։

— Պապը Ջապթիէ։

Կառքը ճամբայ ելաւ և քառորդ մը ետքը կեցաւ այդ չարաշուք շէնքին դրան առջեւ։

Սաթըք վար իջաւ, կառքը ճամբեց, դրան առջեւ կեցող պահակները բարեւեց և բակէն անցնելով, ուղղուեցաւ դէպի մուտքի սանդուխը։

Բայց վեր ելլելու պէտք չունեցաւ, իր բարեկամը, Ալի Օսման, սանդուխէն կ՚իջնար դուրս ելլելու համար։

— Վա՜յ, Սաթըք պէյ, ի՞նչ բան ունիս այստեղ, ըսաւ ոստիկանութեան պաշտօնեան իր դպրոցական ընկերոջ։

— Այս կողմերը եկած էի և ուզեցի անգամ մը քեզի հանդիպիլ։

— Շատ աղէկ, ուրեմն միասին դուրս ելլենք։

Եւ Ալի Օսման մտերմօրէն իր բարեկամին թեւը մտաւ։

— Եղբայր, ըսաւ Սաթըք, քանի անգամ գարեջրատուն գացի՝ քեզ տեսնելու յոյսով ու երբեք չկրցայ քեզի հանդիպիլ։

— Այո՛, որովհետեւ այն իրիկունէն ի վեր ուր միասին գարեջուր խմեցինք, ոտքս հոն դրած չեմ։

Երկու բարեկամները խօսելով փողոց ելած էին և դէպի Սիրքէճի ուղղուեցան։

— Ի՞նչու համար, հարցուց Սաթըք։

— Եղբայր շունչ առած չունինք այս օրերս, հառաչեց Ալի Օսման։

— Միշտ այդ Գանտիլլի խնդի՞րն է, հարցուց խմբագիրը ձայնը ցածցնելով։

— Գանտիլլիի խնդի՞ր մի, պատասխանեց միւսը ժպտելով, անիկա մոռցուեցաւ գրեթէ... այս առտու նոր դիակ մը գտնուեցաւ։

— Այո՛, Էրէնքէօյ, այրած տան մը աւերակներուն մէջ գտնուած հորէ մը հանուած։

— Ե՞րբ իմացար, գոչեց Սաթըքի ընկերը, սարսափահար դէմքով մը։

— Բայց, աչքովս տեսայ այս առտու, միթէ Էրէնքէօյ չե՞մ բնակիր։

— Հա՛ ճշմարիտ է, մտքէս ելաւ ... և գիտե՞ս թէ դիմակին վրայ ի՞նչ նշան կար։

— m. a. տառերը ու ներքեւն ալ 4 թուանշանը մութ կապոյտ գոյնով, պատասխանեց Սատըք։

Ալի Օսման՝ անհամբեր իր բարեկամին նայեցաւ։

— Դիմակին քով գացեր էի, ծռեցայ ու յանկարծ նշմարեցի որ ձախ ուսին վրայ այդ նշանը դրոշմուած էր։

— Եւ միթէ այդ մասին խօսք մը ըսի՞ր ուրիշներու։

— Բնա՛ւ, բայց սաստիկ յուզուեցայ, յիշելով քու պատմածներդ Գաւրիէլլիի ոճրին մասին և ճիշդ ասոր համար է որ եկայ քեզ գտնելու. Նախ՝ որպէս զի տեսածս պատմեմ և յետոյ՝ քենէ նոր տեղեկութիւններ առնեմ, որովհետեւ այս խորհրդաւոր ոճիրները զիս չափազանց կը շահագրգռեն կոր... արդէօք նոր տեղեկութիւններ ունի՞ս։

— Բնական է որ ունիմ, արդէն ամէն բան ձգած՝ միայն այդ գործով կը զբաղինք կոր. բայց անկարելի է որ այս խնդիրներուն վրայ փողոցին մէջ խօսինք։ Եթէ կ'ուզես, այս իրիկուն միասին տուն երթանք և հոն քեզի շատ մը բաներ կը պատմեմ... հաւատա՛ որ դժգոհ չպիտի մնաս։

Սատըք պահ մը վարանեցաւ, սակայն իր հետաքրքրութիւնը այնքա՜ն բուռն էր որ շուտով յաղթեց վարանումին։

— Երթա՛նք, ըսաւ վճռաբար։

Երկու բարեկամները կամուրջ հասնելով՝ մտան Վափորի շոգենաւը, քանզի, ինչպէս արդէն ըսինք, Ալի Օսման կը բնակէր իր հօր Պօյաճըքէօյի ծովեզերեայ բնակարանը։

ԳԼՈՒԽ Գ.

# ՆՈՐ ԼՈՒՐԵՐ

*Խմբագիրը առաջին անգամ չէր որ հիւր կ'երթար իր բարեկամին տունը. յաճախ գիշերներ անցուցած էր հոն և երբ տնեցիները իր գալուստը տեսան՝ ուրախութեան ցոյցերով ընդունեցին զինքը։*

*Ճաշէն ետքը երկու բարեկամները քաշուեցան Ալի Օսմանի ծովահայեաց ընդարձակ սենեակը որ վերի յարկը կը գտնուէր։*

*— Հիմա կրնանք ազատօրէն խօսիլ, ըսաւ Ալի Օսման սիկառէթ մը վառելով ու թիկնաթոռի մը մէջ բազմելով։*

*Յետոյ, իր բարեկամին դառնալով հարցուց։*

*— Նախ՝ գիտե՞ս թէ որո՞ւ դիակն էր այս առտուան տեսածդ։*

*— Չէ, պատասխանեց Սաթըք, և հոն գտնուող բազմաթիւ անձերուն մէջ ալ ճանչցող մը չեղաւ, միայն թէ՝ իր հագուստներէն կ'երեւար որ շնորհքով դասակարգի մարդ մըն էր։*

*— Ջէրքէզ Ահմէտն է հորէն գտնուած մարդը, շարունակեց միւսը, և գիտե՞ս ո՞վ է Ջէրքէզ Ահմէտ...։*

*— Այսինքն՝ այդ անունը լսած եմ, պալատական մըն է կարծեմ։*

*— Այո՛, և ամէնէն կարեւոր ու ազդեցիկ պալատականներէն մէկը, Ապտիւլ Համիտի սիրականներէն՝ և որ ճիշդ իր տիրոջ մեծ ծառայութիւն մը մատուցանելու վայրկեանին՝ մեռած կը գտնուի ձախ ուսին վրայ* m. *և* a. *տառերը դրոշմուած։*

— Ի՞նչ ծառայութիւն, հարցուց խմբագիրը հետզհետէ հետաքրքրուած։

— Այդ մարդը եթէ քանըչորս ժամ ապրէր գուցէ այժմ Գանտիլլիի խորհրդաւոր ոճրին հեղինակները ձերբակալուած ու ամէն բան երեւան ելած կ'ըլլար, շարունակեց Ալի Օսման։

Յետոյ, պահ մը լռելէ ու իր մարած սիկառէթը կրկին վառելէ ետքը, ըսաւ.

— Գիտես որ Գանտիլլիի ոճիրը գործող երկու անձերը որոնք խոյս տուած են, տեսնուած էին ոճիրը գործուած տան Դրոյի պարտիզպանէն որ յայտարարած էր թէ ինք լաւ կրնայ ճանչնալ եթէ կրկին անոնց հանդիպի։ Ուրեմն այդ պարտիզպանը մեր խուզարկութիւններուն գլխաւոր ու գրեթէ միակ օժանդակն էր ու ասոր համար վայրկեան մը զինքը հանգիստ չէինք թողուր, նոյն իսկ մեծամեծ վարձքեր խոստացուած էր իրեն եթէ կարենար ամենափոքր հետք մը ցոյց տալ ոճրագործները գտնելու համար։ Այդ խեղճ պարտիզպանը այնքա՜ն կարեւորութիւն ստացած էր որ երեք անգամ պալատ կանչուեցաւ եւ երկարօրէն հարցաքննուեցաւ ու պարգեւներ ստացաւ։

— Չըսե՞ս որ այդ ոճիրը իրեն համար անսպասելի բախտաւորութիւն մը եղաւ, ըսաւ Սատրք խնդալով։

— Այո՛, գոնէ առ այժմ։ Իրեն հրաման եղած էր մէկ քանի ծածուկ ոստիկաններու հետ Պոլսոյ ամէն կողմը շրջելու եւ ոճրին հեղինակները փնտռելու։

— Գոնէ այդ պտոյտները արդիւնք մը ունեցա՞ն։

— Մինչեւ երէկ ո եւ է հետք մը չէր գտած, սակայն երէկ առտու մեր Էօմէր աղան, այս է պարտիզպանին անունը, յաղթական կերպով եկաւ ոստիկանատուն եւ ուզեց անմիջապէս փաշա էֆէնտիին տեսնել։ Նախապէս տրուած հրամանին համեմատ, զինքը փաշային սենեակը մտցուցին եւ հազիւ հինգ վայրկեան ետքը՝ Շէֆիք փաշա ու Էօմէր աղա կառք մտան ու շիտակ Եըլտըզ գացին։

— Ուրեմն խիստ կարեւոր տեղեկութի՞ւն մը բերած էր այս անգամ։

— Սպասէ՛ և պիտի իմանաս, պատասխանեց Ալի Օսման։ Փաշային մեկնելէն ժամ մը ետքը, պալատէն թիկնապահ մը եկաւ վաղն ի վաղ ու հայրս առնելով մեկնեցաւ, գիտես որ այս ոճրին հետապնդումը մասնաւորաբար հօրս յանձնուած է եւ ինք անձամբ կը կատարէ կարեւոր հարցաքննութիւնները։ Ոստիկանատան մէջ ո՛չ ոք գիտէր թէ ի՛նչ կ'անցնի կը դառնայ, սակայն ամենքն ալ համոզուած էին թէ խիստ ծանրակշիռ յայտնութիւն մը ըրած էր պարտիզպանը։ Մինչեւ իրիկուն փաշան ու հայրս չվերադարձան պալատէն։ Գիշերը միայն, ուշ ատեն, հայրս ուղղակի տուն եկաւ և երբ առանձին մնացինք ու իրմէ տեղեկութիւն հարցուցի, ուրախութեամբ պատասխանեց. — «Ամէն բան կարգին է, ոճրագործները գրեթէ ձեռքերնիս են, այսօր վաղը կը ձերբակալուին»։ Հայրս շատ իրաւունք ունէր այսպէս ուրախանալու, որովհետեւ նախ՝ մեծ հոգէ մը ու պատասխանատուութենէ կ'ազատէր, յետոյ այս գործին մէջ աշխատութեան մեծ բաժին մը ունեցան էր և եթէ յաջողութեամբ պսակուէր բնականաբար պատիւ ու փառք մը պիտի ստանար. ասկէ զատ, Սուլթանը այդ խորհրդաւոր ոճրէն ի վեր, որուն գաղտնի մարմինի մը կողմէ գործուած ըլլալը ակնայայտնի կը տեսնուի, իր քունն ու հանգիստը կորսնցուցած է և գրեթէ ուրիշ բանով չզբաղիր։

Մինչեւ հիմայ հետք մը գտնուած չըլլալուն համար արդէն շատ գրգռուած էր ու քանի մը անգամ Շէրիֆ փաշան սպառնալիքներով վռնտեր էր, այնպէս որ ամբողջ ոստիկանութեան դուռը ահ ու սարսափի մատնուած է քանի մը օրէ ի վեր։ Ուրեմն կ՚ըմբռնես թէ հայրս ուրախանալու որքա՜ն պատճառներ ունէր։

— Այո՛, բայց տակաւին չըսիր թէ ի՛նչ տեղեկութիւն բերած էր այդ Էօմէր աղան ըսաւ խմբագիրը որ հետաքրքրութենէն կը փրփրէր։

— Ահաւասիկ ինչ որ իմացայ հօրմէս։ Պարտիզպանը վերջապէս հանդիպած ու ճանչցած է այն երկու անձերը՝ որոնք, ոճիրը գործելէ ետքը, Գանտիլլիի ծովեզերեայ տունէն փախած են գիշեր ատեն և յաջողած էր, առանց ինքզինք նշմարել տալու, հետեւիլ անոնց և բնակարանին հասնիլ։

— Ո՞ւր կը նստին եղեր։

— Շատ հետաքրքիր ես, ըսաւ Ալի Օսման խնդալով, ... այսպէս ուրեմն այդ տունը առտուընէ ի վեր ծածկաբար հսկողութեան տակ առնուած է և մեր փնտռուած երկու անձերն ալ մէջն են, մեր առած ստոյգ տեղեկութեան համեմատ։

— Բայց ինչու մինչեւ հիմա տունը չեն կոխած ու մարդիկը ձերբակալած։

— Որովհետեւ գործը կատարեալ տեսնել կ՚ուզենք։ Բնականաբար լրտեսներով ու գաղտնի ոստիկաններով պաշարուած է ամէն կողմէ, այնպէս որ մէջինները փախցնելու վախ չի կայ. բայց միայն այդ երկուքը ձերբակալելով չենք ուզեր գոհանալ, մենք կը փափաքինք ամբողջ խումբը ձեռք անցընել, որովհետեւ յայտնի է որ ուրիշ մեղսակիցներ ալ կան, ուստի կը սպասենք որ իրենց ոտքովը մէկիկ մէկիկ գան իյնան թակարդին մէջ... և արդէն առտուընէ ի վեր, ինչպէս լուր բերին ոստիկանատունը, երկու նոր անձեր ալ մտած են այդ բնակարանը որոնց մին կին մըն է....։

— Կի՞ն մը, հարցուց խմբագիրը զարմացումով։

— Այո՛, թրքուհի մը, կամ գոնէ այնպէս ծպտուած, պատասխանեց Սատըքի ընկերը... բայց կարծեմ բոլոր ասոնք չպիտի ըսէի քեզի եթէ վստահ չըլլայի որ մէկ ժամէն միւսը արդէն ամէն բան լմնցած պիտի ըլլայ... որովհետեւ գիշերը վրայ հասնելուն պէս, առանց այլ եւս սպասելու, տունը պիտի կոխեն ու մէջինները ձերբակալեն. Այդպէս հրաման եղած է Երլտըզէն։

— Ուրեմն այս գործողութեան համար հայրդ իրիկունը կերակուրի չէ եկած և մինչեւ հիմա բացակայ կը մնայ։

—Բնականաբար, ո՛չ թէ միայն հայրս, այլ Շէֆիք փաշան, հաճի Եուսուֆ ճէմալ պէյը, միւսիւ Եըլտըզէն ինչպէս նաեւ թիկնապահներ ու պալատականներ լեցուն են Եէնի Մահալլէ…

— Եէնի Մահալլէ՞ գոչեց Սատըք. ուրեմն հո՞ն է այդ կասկածելի մարդոց բոյնը։

— Տեսա՞ր, բերնէս փախուցի, ես որ միտքս դրած էի գոնէ տեղը չըսել… բայց վնաս չունի, դուն գաղտնապահ ես, ու ասկէ զատ, կարծեմ ա՛լ այնքա՛ն ծածուկ պահելու պէտք չի կայ… ամէն բան եղած լմնցած ըլլալու է մինչեւ հիմա… քիչ մըն ալ սպասենք գուցէ հայրս կուգայ և կ՚իմանանք։

Սատըք ժամացոյցը նայեցաւ, ժամը թրքական երեք ու կէսն էր։ Երկու բարեկամները պահ մը լռեցին ու իրենց նայուածքը յառեցին պատուհանէն դուրս, Վոսփորի վրայ, որ լուսնի ճառագայթներուն տակ դիւթական գեղեցկութիւն մը կը պարզէր։ Ծովը խաղաղ էր ու թեթեւ զով քամի մը կը փչէր ասիական եզերքէն։ Ընդհանուր հանդարտութեան մէջ մէկ քանի ցանցառ նաւակներու թիակներուն խուլ թնդիւնը միայն կը լսուէր։ Սատըք որ հետաքրքիր ուշադրութեամբ մտիկ ըրած էր իր բարեկամին տուած տեղեկութիւնները, տեսակ մը դժգոհութիւն կը զգար հիմա իր իմացածներէն։ Ծածուկ համակրանք մը ծնած էր սրտին մէջ այն անձերուն հանդէպ՝ որոնք ձերբակալման մը անմիջական վտանգին տակ կը գտնուէին և որոնք գուցէ վեհ գաղափարի մը մարտիկներն էին։ Յանկարծ յիշեց առտուն Էրէնքէօյի մէջ տեսած դիակը և անոր ուսին վրայ եղած խորհրդաւոր դրոշմը, m. և a. գիրերը…։

— Բայց, ըսաւ լռութիւնը խզելով, մինչ դուք Վոսփորի ծայրը, Եէնի Մահալլէի մէջ ոճրագործները կը պաշարէք ու կը ձերբակալէք անոնք, անդին՝ Էրէնքէօյի մէջ նոր ոճիր մըն ալ կը գործեն, քանզի դիակին վրայ եղած նշանը ցոյց կուտայ թէ միեւնոյն խումբին պատկանող անձեր են ոճրին հեղինակները։

— Այո՛, գործերնիս քանի մը հոգիի հետ չէ, պատաս-

խանեց Ալի Օսման, և ճիշտ ատոր համար է որ, կ՚ուզենք այդ երկու անձերուն ձերբակալումը չգոհանալ... և աւելի տարօրինակը կայ... բայց արդէն չափազանց խօսեցայ, լաւագոյն է որ լռեմ։

— Վա՛յ, քու դպրոցական ընկերէդ անգամ կը կասկածի՞ս սիրելիս, ըսաւ Սատըք վերաւորուած երեւոյթով մը։

— Չէ, բարեկամ, պատասխանեց միւսը, բայց ինչպէս որ ես գաղտնիք մը հաղորդելու անդիմադրելի փորձութեան չը կրնալով յաղթել քեզ կը պատմեմ բաներ որոնք ո՛չ մէկուն պէտք էր որ ըսէի, դուն ալ նոյն փորձութեան կրնաս ենթարկուիլ և ուրիշի մը պատմել ու այդ ուրիշն ալ կրնայ քեզի չափ գաղտնապահ չըլլալ...

— Իրաւունք ունիս, պատասխանեց Սատըք և չարունակեց պատուհանէն դիտել Վոսփորը իր գիշերային վեհութեան մէջ... ի՜նչ սքանչելի գիշեր մըն է, ըսաւ պահ մը ետքը, իցի՛ւ թէ ճաշէն ելլելնուս նաւակով պտոյտ մը ընէինք։

— Բայց հիմակ ալ կրնանք ընել, մանաւանդ որ ժամանակը այնքա՛ն ուշ չէ և լուսին ալ կայ։

— Կ՚արժէ՞ այս ժամանակ անհանգիստ ընել ձեր նաւավարը որ գուցէ քնանալու կը պատրաստուի։

— Միայն նաւակը ծով իջեցնել կուտանք։ Մենք կը թիավարենք, թո՛ղ ինք անհանգիստ չըլլայ։

— Կեցցէ՛, անուշիկ գեղեցիկ գաղափար մը, ըսաւ Սատըգ որ բուռն փափաք մը կը զգար այդ գեղեցիկ գիշերով ծովային պտոյտ մը ընելու, ես թի կը քաշեմ դուն ալ ղեկը կը վարես...

Երկու բարեկամները անմիջապէս ոտքի ելան, վար իջան և Ալի Օսմանի հրամանին վրայ՝ նաւակը իսկոյն ծով իջեցուցին։

— Ահմէտ, դուն միասին մի՛ գար և հանգիստ ըրէ, ըսաւ երիտասարդը իր նաւավարին, մենք առանձին մեր պտոյտը կը կատարենք և քանի մը ժամէն կը վերադառնանք ... եթէ

հայրս գայ և զիս հարցնէ՝ կ՚ըսես որ Սատըք պէյին հետ պը-տոյտի ելած ենք։

Քիչ մը վերջը՝ Սատըք՝ ժաքէթը հանած ու թիերը ձեռք առած էր, մինչ Ալի Օսման ղեկին չուանները կը բռնէր։

Ու նաւակը սկսաւ մեղմիկ սահիլ, հանդարտ ջուրին վրայ դէպի Թարափիա՛...։

---

## ԳԼՈՒԽ Գ.

# ԱՆԱԿՆԿԱԼ ՄԸ

Թողունք որ երկու բարեկամները իրենց ծովային պտոյտը կատարեն և մենք երթանք Եէնի Մահալլէ, այն տան չուրջ ուր անտեսանելի շղթայ մը կազմած են լրտեսներն ու ոստի-կանները։

Եէնի Մահալլէի նաւամատոյցին աջ կողմը թեթեւ զառի վեր մը կայ ուր կը գտնուի գիւղին չուկան և մէկ քանի ծո-վեզերեայ սրճարան-պանդոկներ. այդ զառիվերէն եթէ քիչ մը յառաջանանք, ձախ կողմը բաւական լայնկեկ աւելի ցից զառիվեր փողոց մը պիտի նշմարենք, քարայատակուած ու աստիճանաւոր, որ մեզ կը յիշեցնէ Եիւքսէք Գալտըրըմի մէկ մանրանկարը։ Այդ զառիվերին ծայրը, հոն ուր ա՛լ ամայի լեռը կսկսի, երկյարկ ու փայտաշէն կղզիացած տուն մը կար, ետեւի կողմը փոքրիկ պարտէզով մը։ Այդ տունը կարծես մերձակայ տուներուն հետ քէն ըրած ու մէկ կողմ քաշուած երեւոյթ մը ունէր ու իր մէջ բնակողներն ալ նոյնպէս դրա-ցիներու հետ անհաղորդ մարդիկ էին, որոնց գալն ու երթալը

յաճախ աննշմարելի կ՚անցնէր։ Բայց որովհետեւ տնեցիները ո և է կերպով առիթ չէին տար իրենց վրայ խօսեցնելու, ատոր համար դրացիներն ալ ուշադրութիւն չէին դարձներ այդ տան ու անոր բնակիչներուն։ Այսու հանդերձ հետաքրքիր դրացիները կրցած էին քիչ շատ տեղեկութիւն ամբարել տան վարձակալին վրայ։ Գիտէին որ Թուրք մըն էր այն որ այրի մնացած էր և իր կնոջ մահուան պատճառաւ մելամաղձութեան մատնուած։ Հարուստ փաշայի մը զաւակն է, կ՚ըսէին, որ հրաշագեղ կին մը ունեցած էր և որ ամուսնութենէն երկու տարի ետքը զոհ գացած էր թոքախտի անողոք ճիրաններուն. անիկա ահռելի հարուած մը եղած էր իրեն համար, մտային վիճակը խանգարելու աստիճան։

Դրացիները այս տեղեկութիւնները քաղած էին տան մէջ գտնուող ծառայէն որ Մինաս անուն հայ մըն էր. ըստ երեւոյթին՝ միամիտ, ապուշ և շատախօս մէկը.

— Խե՛ղճ էֆէնտիս իր կնոջ մահուընէ ի վեր խելքը կորսնցուցած է, ըսած էր Մինաս զինքը հարցափորձող կիներուն, ատեն ատեն վրան «մէռաք» մը կուգայ ու չկրնար տունը նստիլ, անոր համար հայրը այս տունը բռնած է որպէս զի ուզած ատենը գայ կենայ։

— Իսկ այն Թուրք կի՞նը որ երբեմն կուգայ։

— Ան ալ իր մօրաքոյրն է, խեղճը շատ կը սիրէ իր քեռորդին և միշտ ետեւէն կը պտտի վախնալով որ յուսահատութենէն գլխին փորձանք մը չբերէ։

— Իսկ այն երիտասարդը որուն հետ յաճախ կը տեսնենք զինքը։

— Դպրոցական ընկեր մըն է ... իր միակ բարեկամը, որուն հետ քիչ մը կը խօսի ու ժամանակ կ՚անցնէ ... Ուրիշ մարդու հետ բարեւ տալ անգամ չուզեր։

... Խեղճ էֆէնտիս, առաջ տեսնայինք ի՜նչ ուրախ, զուարթ, երջանիկ, խաղացող, խնդացող մարդ մըն էր, բայց ափսո՜ս որ այս փորձանքը գլուխը եկաւ։

Ահա՛ ինչ որ կը պատմէր Մինաս և ինչ որ գիտէին դրացիները այդ կղզիացած տան վարձակալին նկատմամբ։

Ու այդ տեղեկութիւնները գոհացուցած էին ամէնքը ու ա՛լ չէին զբաղած այդ դժբաղդ ու «մէռաքլը» մարդով։

Բայց այդ առտու, յանկարծ Եէնի Մահալլէ լեցուած էր լրտեսներով, ոստիկաններով, պաշտօնեաներով ու նոյնիսկ պալատական թիկնապահներով։ Հակառակ խիստ գաղտնապահութեան մը գեղացիները իմացած էին թէ՝ բոլոր այդ իրարանցումը այդ կղզիացած տան վարձակալին համար էր։ Դրացիները տեսած էին՝ առտուն «մէռաքլը»ին գալը իր «դըպրոցական ընկեր»ին հետ, յետոյ եկեր էր նաև «մօրաքոյր»ը, իսկ ծառան անգամ մը դուրս ելլել ու վերադառնալէն ետքը, ա՛լ ոտքը դուրս չէր դրած։ Կէսօրէն ետքը իրողութիւնը աւելի ճշդուեցաւ. շրջակայ տուները լեցան ոստիկաններով, լրտեսներով, բարձրաստիճան պաշտօնեաներով։ Լերան կողմէ զինուած ոստիկաններ ու հեծեալ ժանտարմաներ կ՚երեւային, գիւղին ամէն փողոցներուն անկիւնը նոյնպէս լրտեսներ ու ոստիկաններ կեցած էին։ Ընդհանուր սարսափ մը կը տիրէր գիւղին մէջ և ո՛չ ոք կը համարձակէր տունէն դուրս ելլել։

Իրիկուան դէմ՝ պալատական ձիաւոր թիկնապահ մը վազն ի վազ եկաւ և ուղղակի դիմեց այն տունը ուր կը գտնուէին Շէֆիք փաշա և ոստիկանատան ուրիշ կարեւոր պաշտօնեաները և որ պաշարեալ տունէն հարիւր քայլի չափ հեռուն էր։

Յայտնի էր որ թիկնապահը նոր հրահանգ մը կը բերէր Եըլտըզէն։ Իր հասնելէն քիչ ետքը իրարանցում մը տիրեց. ոստիկանութեան նախարարին գտնուած տունէն հրահանգներ ուղղուեցան ամէն կողմ և լրտեսներն ու ոստիկանները որոնք մինչեւ այն ատեն հոս հոն ծածկուած էին, երեւան ելան և կղզիացած տունը բոլորովին պաշարեցին. մարդկային անանցանելի շղթայ մը ձեւացնելով շուրջը։

Ապտիւլ Համիտի համբերութիւնը սպառած էր և կ'ուզէր ժամ առաջ ձեռք ձգել իր զոհերը առանց սպասելու որ նորանոր մարդիկ իյնան ծուղակին մէջ ու իր թիկնապահին հետ սա հրամանը գրկած էր․

— Առանց այլեւս սպասելու, տանը մէջ գտնուողները ձերբակալեցէ՛ք։

Շէֆիք փաշա կատարելապէս համամիտ գտնուեցաւ իր վեհափառ տիրոջ հրամանին։

— Այո՛, անմիջապէս պիտի ձերբակալենք, ըսաւ իր շուրջը գտնուողներուն, լաւագոյնը այդ է, չորս հոգի, որոնք տան մէջ գտնուին՝ բանական են միւսներն ալ երեւան հանելու համար, մանաւանդ որ այս չորսին մէջը կին մըն ալ կայ որ խօսելու, գաղտնիք յայտնելու համար․ տասը մարդ կ'արժէ, ինչպէս ամէն կիները։

Ստորադաս պաշտօնեաներուն մէջ արտասովոր եռանդ մը կը տիրէր։ Ամէն մէկը կ'ուզէր կարեւոր դեր մը կատարել այս գործողութեան մէջ, ինք առաջին անգամ մտնել տունը և ձերբակալել հոն եղողները, վարպետութիւն մը, քաջութիւն մը ցոյց տալ և աչքի զարնել ու արժանանալ կայսերական շնորհներու։

Պարտիզպանը՝ Էօմէր աղա՝ որուն 500 ոսկի խոստացուած էր ձերբակալումէն ետքը, առաջ անցաւ․

— Փաշա էֆէնտի, ըսաւ խօսքը ոստիկանութեան նախարարին ուղղելով, պէտք է որ ես ալ ընկերակցիմ առաջին անգամ տունէն ներս մտնողներուն։ Ասիկայ կը պահանջեմ ո՛չ թէ իբրեւ շնորհ մը՝ այլ իբրև իրաւունք մը։

— Լա՛ւ, լա՛ւ, պատասխանեց փաշան, թող այդպէս ըլլայ։

Եւ ոստիկանատան հարիւրապետ Շիւքրի պէյի դառնալով՝ հրամայեց։

— Էօմէր աղան ալ միասին առէք։

Պարտիզպանին աչքերը ուրախութենէ շողացին։

Քանի մը վայրկեան ետքը, Շէֆիք փաշայի կարգադրութեան համեմատ, հարիւրապետ Շիւքրի պէյ, Էօմէր աղա, ոստիկանութեան երկու քոմիսէրներ, պալատական թիկնապահ մը և մէկ քանի րէվոլվէրով զինուած ոստիկաններ ու լրտեսներ գացին մեկուսացած տան դրան առջև։

Ոստիկանութեան նախարարը և իր հետևորդները՝ իրենց գտնուած տան պատուհանէն կը հսկէին կատարուած գործողութեան։

— Իյի՛ւ թէ մէջը գտնուողները զէնքով դիմադրութիւն չընէին, ընդհարում չըլլար ու ողջ ողջ բռնէինք զիրենք․ արդէն այս է Սուլթանին ալ հրամանը, ըսաւ Շէֆիք փաշան։

Նոյն վայրկեանին Շիւքրի պէյ տան դուռը բաղխեց։

Ամէնքը անձկութեամբ կը սպասէին։ Դուռը չբացուեցաւ։

Հարիւրապետը, երկրորդ անգամ ըլլալով, աւելի ուժգին զարկաւ դրան ջախջախին։ Նոյն լռութիւնը։

Երրորդ անգամ ա՛լ աւելի զօրաւոր կերպով զարկաւ դըրան՝ բայց ի զո՛ւր, դուռը չէր բացուեր։

Այս պատահականութիւնը արդէն նախատեսած էին ու դարբին մը բերած էին միասին՝ որ քիչ մը հեռուն կը սպասէր։

Հարիւրապետին մէկ հրամանին վրայ դարբինը մօտեցաւ դրան, ձեռքը բռնած պէտք եղած գործիքներով։

— Եթէ դրան ետև երկաթէ ձող դրուած է՝ այս գործիքներով կարելի չպիտի ըլլայ բանալ, ըսաւ դարբինը վարանոտ կերպարանքով մը։

— Ա՛յն ատեն դուռը կը խորտակենք, պատասխանեց Շիւքրի պէյ։

Բայց այս ծայրայեղութեան դիմելու պէտք չեղաւ։ Դուռը՝ դարբնին ձեռքին տակ՝ իսկոյն տեղի տուաւ ու կռնակի վրայ բացուեցաւ։

Յաղթական ուրախութեան ճչնկոց մը ողջունեց այս բացումը և ամէնքը միահաղոյն ներս խոյացան։

Նոյն րոպէին Երլտըզէն նոր թիկնապահ մը կը հասնէր հեւ ի հեւ։

— Ի՞նչ լուր, հարցուց Թիկնապահը փողոցէն, Շէֆիք փաշան տեսնելով բաց պատուհանին առջև կեցած։

— Եղաւ լմնցաւ այս վայրկեանիս ամենքն ալ ձերբակալուած ըլլալու են... անհաւատալի, տեսէ՛ք, հիմա տան դուռը բացին ու ներս մտան, պատասխանեց ոստիկանութեան նախարարը, ձեռքովը մատնանիշ ընելով մեկուսացած տունը որուն բաց դրան առջև վեց ոստիկաններ պահակ կեցած էին։

Պալատական Թիկնապահը առանց ուրիշ խօսք մը ուղղելու, չիտակ դէպի դուռը դիմեց և ներս մտաւ։

Հարիւրապետ Շիւքրի պէյ, իր մէկ քանի հետևորդներով տան ներքնայարկն էր։ Թիկնապահը ուղղակի անոր քով գնաց։

— Ո՞ւր են ձերբակալուածները, հարցուց։

— Բայց տակաւին նոր ներս մտանք, պատասխանեց հարիւրապետը շփոթած, կամ հոս կամ վերի յարկը պահուըտած ըլլալու են... անշուշտ հիմա կը գտնենք զիրենք։

Ներքնայարկը կը բաղկանար երկու սենեակէ, խոհանոցէ ու գործարանէ մը։ Երկու սենեակներուն մէջ մարդ չի կար. ո՛չ ալ խոհանոցը և գործարանը։ Վերի յարկը երեք սենեակներ կը գտնուէին, որոնց երկուքին մէջ երկ՚երկու անկողին դրուած էր, իսկ երրորդին մէջ միայն սեղան մը և վեց աթոռներ կ՚երևային։ Այդ սենեակներն ալ պարապ էին....։

— Ձեղունին տակ, տանիքին վրայ պէտք է նայիլ, ըսաւ նորէն Թիկնապահը.

— Անշուշտ, անշուշտ, ամէն կողմ պիտի նայինք, պիտի փնտռենք... անկարելի է որ չի գտնենք, պատասխանեց հարիւրապետը որուն քիչ մը առաջուան յաղթական դէմքը սկսած էր մտահոգութեամբ կնճռոտիլ։

Եւ մանրակրկիտ խուզարկութիւն մը սկսաւ ամբողջ տանը մէջ։ Մութը կոխած էր և հարկ եղաւ լամպաներ ու մոմեր վառել։ Ամէնքը տենդային գործունէութեամբ մը կը մասնակցէին խուզարկութեան. ջանալով գոնէ մէկը ձեռք ձգել ու յաղթանակը տանիլ։ Երբ տանը ամէն ծակ ու ծուկը

մի առ մի քննեցին, սկսան տախտակամածները քակել, գործարանի քարերը տեղերնէն հանել, խոհանոցի ծխնելոյզը փլցնել։

Ոչի՛նչ, ոչի՛նչ. հետք մը չէր երեւար։

Ոստիկանութեան նախարարը և իր հետ գտնուողները անհամբեր եղած էին խուզարկութեան մասնակցելու, աներեւակայելի փնտռտուքներ ընելու։ Խոհանոցին մէջ ջրամբար մը կար ջուրով լեցուն. Շէֆիք փաշայի հրամանին վրայ ջուրը պարպեցին, մարդիկ իջան մէջը ու մալթայի քարերը հանեցին տեղերնուն, բայց ի զո՛ւր։ Հորը քննեցին որ շատ խորունկ չէր և ջուրը հազիւ երեք մէթր վար կը գտնուէր։ Հոն ալ մարդ իջեցուցին, մինչեւ ջուրին յատակը փնտռտուքներ ըրին...։

Ամբողջ երեք ժամ տեւեց այդ ապարդիւն խուզարկութիւնը։

Ամենուն դէմքին վրայ յուսահատութիւնն ու կատաղութիւնը նկարուած էր ու մանաւանդ երկիւղը։

— Ի՞նչ պատասխան պիտի տային Սուլթանին։

Այս սարսափելի հարցումը կը տագնապեցնէր ամենուն միտքը։ Թիկնապահները որոնք պաշտօն ունէին անմիջապէս Եըլտըզ վերադառնալ և լուր տանելու, չէին համարձակեր տեղերնէն շարժիլ։

Եւ ահա՛ նոր թիկնապահ մըն ալ հասաւ։

— Սուլթանը հրամայեց որ ձերբակալուածները անմիջապէս Եըլտըզ փոխադրուին և հո՛ն կատարուի նախնական հարցաքննութիւնը նոր «իրատէ» մըն ալ բերաւ այս վերջինը։ Բայց երբ իրեն յայտնեցին թէ տակաւին ո՛չ ոք ձերբակալուած էր, մարդը կատաղօրէն ձեռքը ճակտին զարկաւ և աթոռի մը վրայ ինկաւ։

— Բայց ո՞ւր անյայտացան այս մարդիկը, օդը՞ ելան, գետնին տա՞կը անցան, չոգիացա՞ն, ի՞նչ եղան, կը պոռար ոստիկանութեան նախարարը դիւահարի մը պէս երթեւեկելով սենեակէն խոհանոց։

Խուզարկութիւնները, յուսահատ ճիգով մը կը շարունակ-ուէին դեռ. հիմա փոքրիկ պարտէզին հողը կը փորէին ու խոհանոցին մալթայի քարերը տեղէն կը հանէին՝ գետնափոր թաքստոց մը գտնելու յոյսով։ Տանիքին բոլոր կղմինտրները մէկիկ մէկիկ փրցուած ու նետուած էին, Սանդուխին աստի-ճանները տեղերնէն հանուած, դարակները քանդուած, պա-տերը տապարի հարուածներէ ծակծկուած էին։ Տունը գրեթէ աւերակ դարձած էր։

Բայց և այնպէս ո՛չ մէկ հետք կարելի եղած էր գտնել։

Բաց աստի, այդ յամառ ու խելայեղ խուզարկու-թիւնը անուղղակի օգուտ մըն ալ չէր ունեցած։ Ո՛չ մէկ թերթ ո՛չ մէկ նամակ գտնուած էր ամբողջ տանը մէջ։ Խոհանոցի մէկ քանի անհրաժեշտ անօթներ, մէկ քանի պնակ, վեց զոյգ սեղանի սպաս, հինգ անկողին, տասնի չափ աթոռ, ահա՛ ամ-բողջ տան կահկարասիքը։ Ասոնցմէ դուրս ո և է առարկայ մը չի կար որ հետապնդումի մը բանալին կարենար ըլլալ և ապագայ խուզարկութիւններու ծառայէր։

— Գործերնիս սատանաներու հե՛տ է արդեօք, կ'ըսէր խե՛ղճ Շէֆիք փաշա յուսահատօրէն ման գալով տանը մէջ։

Բայց վերջապէս կարելի չէր յաւիտեան մնալ այդ տան մէջ։ Ամենէն անխոնջ և յուսալից խուզարկիչներն ալ յոգնած՝ յուսահատած էին ու այլեւս դադրեցուցած էին իրենց փըն-տռտուքները։

— Պէտք է որ մէկը երթայ և իրողութիւնը Սուլթանին հաղորդէ, ըսաւ ոստիկանութեան նախարարը, իր շուրջը գտ-նուողներուն։

Ամէնքը վարանած ու ամօթահար իրարու նայեցան։

— Շէֆիք փաշա, դուք վերադարձէք Երլտըզ և տեղե-կութիւն տարէք, քանի որ Նորին վեհափառութիւնը ամենէն վերջ ձեզ ղրկած է լուր առնելու համար, ըսաւ թիկնապահ-ներէն մէկը։

— Ո՛չ, պատասխանեց այս վերջինը, լաւագոյն է որ

Հիւանի փաշան երթայ լուր տալու, որովհետեւ Նորին Վսեմութիւնը ցերեկուընէ ի վեր եկած է և ամէն բան տեղն ի տեղօք գիտէ։

— Ըստ իս վսեմափայլ Նախարարը անձամբ երթալու է անմիջապէս պատասխանեց Հիւանի փաշան, յարմարագոյնը այս է։

Ու այսպէս ո՛չ ոք կ'ուզէր այդ ծանր պաշտօնը իր վրայ առնել։

Շէֆիք փաշա տենդային քայլերով կը շարունակէր երթեւեկել սենեակին մէջ, իր անունին արտասանուիլը լսելով կանգ առաւ, պահ մը լուռ ու մունջ գետինը նայեցաւ ու յետոյ ըսաւ.

—Ամէնքս մէկ կ'երթանք Երլտըզ և իրողութիւնը եղածին պէս կը հաղորդենք ... ամենուս ալ խիղճը հանգարտ է, մենք մեր պարտականութիւնը անթերի կերպով կատարեցինք, մարդկօրէն ինչ որ կարելի էր ըրինք, հետեւաբար վախնալիք բան մը չունինք, մեր Վեհափառ Տէրը, երբոր ամբողջ պատմութիւնը իմանայ, կարծեմ մեզի մեղադրելիք բան մը չպիտի գտնէ...։

Նախարարը այս խօսքերը կ'արտասանէր բուռն յուզումով մը և կարծես առանց հաւատալու իր ըսածներուն։

Եւ սակայն իր առաջարկը ընդունելութիւն գտաւ։

— Այո՛, այո՛ ամէնքս միասին երթանք, ըսաւ Հիւանի փաշա։

Միւս Թիկնապահներն ալ նոյն կարծիքը յայտնեցին։

— Պէտք է անմիջապէս ճամբայ ելլենք, որովհետեւ Նորին Վեհափառութիւնը անհամբեր կը սպասէ, ըսաւ ամենէն ետքը եկող Թիկնապահը։

Ստորադաս պաշտօնեաները, լրտեսները, ոստիկանները, որոնք այնքա՛ն փութկոտութեամբ և եռանդով առաջ անցած էին, խուզարկութեան յաղթանակին մէջ գոնէ պզտիկ բաժին մը ունենալու յոյսով, հիմա, գործին անյաջողութենէն վհա-

տած ու ամօթահար, կը փութային մէյմէկ պատրուակ գտնել ու կծիկը դնել, այդ ձախող արշաւանքին մէջ պատասխանատուութիւն չստանձնելու համար։

Ոստիկանութեան նախարարը, մեկնելէ առաջ, կանչեց հարիւրապետ Շիւքրի պէյը։

— Մենք կ'երթանք կոր, ըսաւ, դուն քանի մը հոգիով հոս կեցիր և հսկէ, մինչև որ մէնէ նոր հրաման մը ստանաս։

— Գլխուս վրայ, փաշա էֆէնտի, պատասխանեց Շիւքրի պէյ, զինուորական բարև մը տալով։

— Օ՜ն, փաշա էֆէնտիներ, մեկնինք, ըսաւ, նախարարը գետնայարկի սենեակէն դուրս ելլելով։ Ամէնքը հետևեցան իրեն, միայն Թիկնապահ մը՝ Զիա փաշա՝ անշարժ մնաց իր տեղը։

– Ձեր վսեմութիւնը մեզի հետ չպի՞տի գայ, հարցուց Հիւսնի փաշա, խօսքը անոր ուղղելով։

— Ո՛չ, ես կ'ուզեմ մնալ. պատասխանեց Թիկնապահը, դուք գացէք... այս չորս մարդոց անյայտացումին խելքս չհասաւ, պէտք է որ ես իմ ձեռքովս քննութիւն մը կատարեմ։

— Արդեօք մեր կատարած քննութեան մէջ թերութի՞ւն մը նշմարեցիք, փութաց հարցնել Շէֆիք փաշա, որ խօսակցութիւնը լսելով՝ կէս ճամբէն վերադարձած էր սենեակ։

— Ոչ՛, չէ՛, ամենափոքր զանցառութիւն մը չեղաւ, փաշա էֆէնտի, և եթէ հարկ ըլլայ, այս մասին պատրաստ եմ վկայելու. բայց վերջին ջանք մը ընել կ'ուզեմ միայն, թէև առանց մեծ յոյս մը ունենալու... դուք գացէ՛ք, ես սէխիս հետ կը մնամ։

Եւ Զիա փաշա ձայնը բարձրացնելով գոչեց.

— Մուսթաֆա հո՞ս ես։

— Այո՛, փաշա էֆէնտի, ձիերուն կերակուր կուտամ կոր պատասխանեց ձայն մը դրսէն։

— Արդէն, ինչպէս լսեցինք, Շիւքրի պէյն ալ քանի մը

մարդով հոս պիտի մնայ, դիտել տուաւ ոստիկանութեան նախարարը։

— Աւելի աղէկ, առանձին չենք ըլլար, պատասխանեց Զիա փաշա։

Ողջոյններու փոխանակութենէ մը ետքը, Շէֆիք փաշա, թիկնապահները, որոնց մէջ կը գտնուէր նաեւ Ալի Օսմանի հայրը, դուրս ելան տունէն եւ քիչ ետքը անյայտացան։

— Վատ մարդը, կը մտածէր ինքնիրեն ոստիկանութեան նախարարը, Զիա փաշային ակնարկելով, նորէն սատանութիւն մը խորհած ըլլալու է որ չուզեց մեզի հետ գալ…։

Զիա փաշա, Սուլթանին հաւատարիմ սիրելիներէն, ամենավատ համբաւ մը կը վայելէր։ Բաղդատաբար դեռ նոր մտած էր Համիտի ծառայութեան մէջ եւ քիչ ատենէն յաջողած էր անոր աչքը մտնել ու կատարեալ վստահութիւնը գրաւել, մեծ դիրքի մը տիրանալով Եըլտըզի մէջ։ Իր այս արագ յաջողութիւնը եւ յառաջացումը բնականաբար ամենուն նախանձը գրգռած էր։ Տակաւին հազիւ մէկ քանի շաբաթէ ի վեր փաշայութեան տիտղոսը առած էր եւ արդէն կը ջանար Սուլթանի հին հաւատարիմ ծառաներուն կարգը անցնիլ, բոլոր այն կողմնակի չեղ միջոցներով որոնք անհրաժեշտ էին ապտիւլ Համիտի աչքը մտնալու համար.

— Այս մարդը շատ առաջ պիտի երթայ որովհետեւ ամէն գէշութիւն ձեռքէն կուգայ, կ'ըսէին պալատականները Զիա փաշայի ակնկալելով։

Եւ սակայն ճիշտ այդ պատճառաւ կը վախնային իրմէ, մանաւանդ որ ինք խելացի ու վարպետորդի ըլլալով՝ շատ փորձանքներ կրնար բերել իր հակառակորդներու գլխուն, եթէ անոնք փորձէին բաց ճակատով կռուիլ իրեն դէմ։

Այս մարդուն անցեալին մասին ոչ ոք որոշ տեղեկութիւն մը ունէր. գիտէին միայն որ ինք ծագումով չէրքէզ էր, ժամանակին բանակին մէջ ծառայած էր, յետոյ իբրեւ աղատական ամբաստանուելով խոյս տուած ու Եւրոպա ապաստանած էր

ուրկէ մեծ ծառայութիւն մը մատուցանելով Սուլթանին—հաւանօրէն մատնչական ծառայութիւն մը — յաջողած էր Պոլիս վերադառնալ և Երլտըզի մէջ հիւրընկալուիլ մեծամեծ պատիւներով ։

Ահա՛ այսպիսի անձ մըն էր Զիա փաշա որ իր ծիապանին հետ մնաց խուզարկուած տան մէջ երբ միւս բոլոր ոստիկանական պաշտօնեաները և պալատական թիկնապահները մեկնեցան ։

## ԳԼՈՒԽ Ե.

## ՄԱՐԱՆ ԱԹ

Միայն Զիա փաշան ու իր ծիապան ծառան՝ Մուսթաֆան չէին որ մնացեր էին այդ տան մէջ, այլ նաև հարիւրապետ Շիւքրի պէյ, քօմիսէր մը, ոստիկան մը և լրտես մը ։

Ժամը գիշերուան չորսն էր և ընդհանուր իրարանցումին յաջորդած էր խորին հանդարտութիւն մը ։ Դրացի տուները օրոց մէջ մինչև իրիկուն ոստիկաններ ու լրտեսներ լեցուած էին, ահ ու սարսափ պատճառելով տնեցիներուն, այժմ վերստացած էին իրենց խաղաղ կերպարանքը և իրենց բնակիչները արդէն իսկ ցերեկուան յուզումներէն վաստակաբեկ՝ պառկած էին, իսկ արթուն մնացողներն ալ խոհեմաբար փողոցի վրայ նայող սենեակները ապաստանած՝ օրուան արտասովոր դէպքերուն մասին զանազան մեկնութիւններ կուտային, առանց կարենալ բուն ճշմարտութիւնը հասկնալ ։

— Շիւքրի պէյ, ըսաւ Զիա փաշա խօսքը հարիւրապետին

ուղղելով՝ մինչ այս վերջինը բակը աթոռի մը վրայ ինկած էր յոգնած երեւոյթով մը քունին յաղթելու անզօր ջանքերով։

Զինուորականը նստած տեղէն վեր ցատքեց.

— Շիւքրի պէյ, չարունակեց թիկնապահը, կը տեսնամ որ վրադ կենալու կարողութիւն չի կայ եւ կարծեմ առտուընէ ի վեր ոչ կերակուր ուտելու ժամանակ չես ունեցած, ինչպէս նաեւ հետդ գտնուող միւս անձերը, ուստի ելէք գացէք ու փորերնիդ կշտացուցէ՛ք ու քիչ մը հանգստացէք. ես ու Մուսթաֆա հոս ենք,... արդէն կարծեմ սպասելիք ալ բան մը չի կայ։

— Միայն թէ շատ մի ուշանաք, ձեզի մէկուկէս ժամ միջոց կուտամ։

Ու թիկնապահը ժամացոյցը նայելով աւելցուց.

— Ժամը հինգուկէսին հոս գտնուեցէ՛ք... չեմ յուսար որ անկէ առաջ ոեւէ հրահանգ մը գայ Եըլտըզէն... եթէ երբեք ասկէ ետքը նոր հրահանգ մը պիտի գայ։

Ցետոյ, գրպանէն ոսկի մը հանեց եւ Շիւքրի պէյին տուաւ։

— Այս դրամով մարդոցդ աղուոր կերակուր մը կերցո՛ւր, ըսաւ, խեղճերը այսօր չարաչար աշխատեցան։

Քօմիսէրը, ոստիկանը եւ լրտեսը, որոնք ոտքի վրայ բարեւի կեցած էին, խորին թէմէննահ մը ըրին իրենց երախտագիտութիւնը յայտնելու համար։

— Օ՛ն ուրեմն, աճապարեցէ՛ք, որովհետեւ յետոյ խանութները կը գոցուին եւ ուտելիք չէք գտներ, չարունակեց թիկնապահը։

Չորսը մէկ պատրաստուեցան մեկնելու։

— Շատ մի՛ ուշանաք, գոչեց Զիա փաշա։

— Փաշա էֆէնտի, անհոգ եղիք, դուք մէկուկէս ժամ ըսիք, բայց մենք ժամէ մը կուգանք։

— Լաւ, լաւ... ձեզի ժամ մը կատարեալ ազատութիւն կուտամ ուրեմն։

Եւ հաֆիւրապետը եւ իր մարդիկը այս անակնկալ արտօ-

նութենէն ուրախացած և փառաւոր ճաշի մը հեռանկարէն շըլացած՝ ճամբայ ելաւ։

Թիկնապանը երբ առանձին մնաց, չորս կողմը դիտեց ուշադիր, յետոյ խոհանոց մտաւ և յանկարծ զարմացած կանգ առաւ. մարդ մը նստած էր հոն, տեղերնէն հանուած Մալթայի քարերու դէզի մը վրայ։ Այդ մարդը ա՛յնքան խորասուզուած էր որ չնշմարեց փաշային ներս մտնելը, բայց Թիկնապանը իսկոյն ճանչցաւ զայն.

— Էօմէր աղա, ի՞նչ նստեր ես այստեղ, գոչեց մարդուն։

Իրա՛ւ ալ նոյնինքն պարտիզպանն էր, խեղճ Էօմէր աղան որ ջախջախուած, յուսակտուր, անէացած, մնացած էր հո՛ն, իր գիտակցութիւնը կարծես կորսնցուցած։

Երբ յաղթանակօրէն տուն մտնելով ու ամէն կողմ խուզարկելով դատարկ գտած էր զայն, խեղճ մարդը սահմռկած մնացեր էր։ Ամբողջ իր յոյսերն էին որ օդին մէջ կը ցնդէին, 500 ոսկի պարգևն էր որ ջուրը կ'իյնար իր երազած ամբողջ հանգըստաւէտ ապագան որ վայրկեանի մը մէջ կը խորտակուէր։

Այս անա՛կնկալ հարուածը ա՛յնքան ուժգին եղեր էր որ պարտիզպանը չէր կրցած, անոր յաղթել ու հիմակ՝ լուռ ու մունջ նստած՝ իր սև բախտին վրայ կ'ափսոսար։

Թիկնապանը անմիջապէս հասկցաւ Էօմէր աղայի հոգեկան կացութիւնը և բարեացակամ ժպիտով մը ըսաւ.

— Ոտքի ե՛լ, Էօմէր աղա և մի՛ յուսահատիր, այդ մարդիկը չեն կրնար մեր ձեռքէն ազատիլ... եթէ այսօր յաջողեցան անյայտանալ, անբացատրելի կերպով մը, վաղը կրկին մեր ձեռքը կ'իյնան, քանի որ այս է մեր Սուլթանին կամքը։ Եւ գիտցած եղիր որ ուր կամ երբ ալ ձերբակալուին, դուն միշտ իրաւունք պիտի ունենաս քու 500 ոսկի պարգևդ ստանալու այս մասին խօսք կուտամ քեզի։

Այս հաւաստումը մոգական ազդեցութիւն մը պիտի ըրաւ պարտիզպանին վրայ։ Կարծես նոր ոգի մը եկաւ վրան. աշ-

խոյժով ոտքի ելաւ և խորին բարեւ մը տալով՝ երախտագիտական շեշտով մը ըսաւ.

— Աստուած շատ կեանք տայ փաշա էֆէնտիիս։

— Հիմա դուն գնա՛ հանգիստ ըրէ՛, ժամանակը արդէն շատ ուշ է, աւելցուց Թիկնապահը։

Յետոյ գրպանէն հինգ ոսկի հանելով ըսաւ.

— Ա՛ռ այս նուէրն ալ այս օրուան յոգնութեանդ փոխարէն և Թագաւորին աղօթք ըրէ՛,

Ոսկիներուն տեսքը բոլորովին կերպարանափոխեց պարտիզպանը որ հազար մաղթանքներով դրամը գրպանեց։

— Ա՛լ երթաս բարով, ըսաւ փաշան զայն մինչև դուռը առաջնորդելով։

Էօմէր աղա քիթին տակէն շնորհակալութիւններ և աղօթքներ մրմնջելով՝ դռնէն դուրս ելաւ ու հեռացաւ։

— Արդեօք ուրիշ մարդ ալ մնացած է այստեղ, ըսաւ ինքնիրեն Զիա փաշա ու վարի յարկը ամէն կողմ նայելէ ետքը, վեր ելաւ ու հոն ալ լաւ մը սենեակները քննեց։

— Չէ՛, ա՛լ առանձին ենք, մտածեց գոհունակութեամբ։

Յետոյ, տան դրան քով գնաց ուր անշարժ կեցած էր Մուսթաֆա։

— Ինծի նայէ՛ ըսաւ անոր ցած ձայնով՝ աղէկ ուշադրութիւն ըրէ՛ որ մարդ ներս չմտնէ, իսկ երբ Շիւքրի պէյը և իր մարդիկը տեսնաս որ հեռուէն կուգան կոր, անմիջապէս վազէ ու իմաց տո՛ւր։

— Շատ աղէկ, բայց չուտով գործ. տե՛ս, որպէսզի չվտանգըւինք, ըսաւ ծառան մտերմական ձեւով մը։

— Անհոգ եղիր։

Երբ փաշան հեռանալու վրայ էր՝ Մուսթաֆա ցած ձայնով կանչեց ետեւէն.

— Զիա՛, Զիա՛։

— Ինչ կայ, ըսաւ միւսը վերադառնալով.

— Քանի մը հատ սիկառէթ տո՛ւր, քովս բնաւ չմնաց, ըսաւ միւսը ։

Թիկնապահը սիկառէթի ոսկեզօծ տուփը հանեց գրպանէն ու բացաւ ։

— Ութը հատ մնացեր է, ա՛ռ չորս հատ քեզի ։

— Ա՛լ գնա՛ բանիդ, պատասխանեց Մուսթաֆա, սիկառէթներէն մին վառելով և միւս երեքը գրպանը դնելով ։

Այն մտերմական կերպը որով այս երկու անձերը իրարու հետ կը տեսնուէին, հակառակ իրենց միջեւ եղած անհուն տարբերութեան. — մին կայսերական թիկնապահ փաշա մը՝ միւսը պարզ ծիապան մը — լսողին զարմանք ու ապշութիւն պիտի պատճառէր ։ Սակայն, ինչպէս ընթերցողները գիտեն, այդ միջոցին տան մէջ ու քովերը, այդ երկու անձերէն զատ ո՛չ ոք կը գտնուէր ։

Զիա փաշա իր ծիապանէն բաժնուելէ ու կրկին տուն մտնելէ ետքը, անգամ մըն ալ տան չորս կողմը արագօրէն խուզարկեց և վերջապէս վստահ եղաւ որ բոլորովին առանձին էր ։

Այն ատեն տարօրինակ բան մը տեղի ունեցաւ ։

Թիկնապահը մտաւ գետնայարկի առաջին սենեակը, մօտեցաւ պատին, շրթունքը գրեթէ հպելու աստիճան և պոռաց.

— Մարան Աթա...

Ու այսպէս արագ քայլերով սենեակին շրջանը ըրաւ, միշտ շրթունքը պատին զանազան մասերուն մօտեցնելով ու գոչելով ։

— Մարան Աթա՛, Մարան Աթա՛...։

Յետոյ անցաւ միւս սենեակը և սկսաւ նոյնը կրկնել հոն եւս, յետոյ գնաց բակը, խոհանոցը, գործարանը, ամէն կողմ հնչեցնելով իր տարօրինակ խօսքերը ։

— Մարան Աթա՛, Մարան Աթա... ։

Եթէ մէկը այդ միջոցին տեսնար և լսէր Զիա փաշան

իր այս անբացատրելի զբաղումին մէջ, ապահովաբար պիտի կարծէր թէ այդ մարդուն խելքին եկած է։

Ամէն անգամ որ բարձրաձայն կ'արտասանէր այդ բառերը, քայլ մը լուռ և ուշադիր կը մնար, կարծես պատասխանի մը սպասելով ու ետքը կրկին կ'սկսէր պոռալ.

— Մարան Աթա, Մարան Աթա ...։

Եւ սակայն ո՛չ մէկ պատասխան կ'ընդունէր, հակառակ իր ակներեւ սպասումին։

— Արդեօք կը սխալի՞մ, ըսաւ ինքնիրեն յուսահատ շեշտով մը։

Յետոյ ժամացոյցը նայեցաւ.

— Ատենն ալ կ'անցնի կոր, մինչեւ ակռաներուն մէջէն, Շիւքրի պէյը կրնայ ժամանակէն առաջ գալ ու այն ատեն...

Յանկարծ հորը նշմարեց որուն տակաւին չէր մօտեցած։

Գնաց մօտը, ծռեցաւ ծակէն վար ու բոլոր ուժովը սկսաւ կրկին պոռալ.

— Մարան Աթա, Մարան Աթա...

Ձայնը արձագանգուեցաւ հորին մէջ. Թիկնապահը ուշադիր ականջ դրաւ, յետոյ կրկին պոռաց իր անհասկնալի խօսքերը և լռեց։ Պզտիկ շչնկոց մը լսուեցաւ հորին մէջէն, խոշոր քար մը տեղէն հանուած ատեն յառաջ եկած ձայնին պէս։

Ջիա փաշա իր ուշադրութիւնը կրկնապատկեց և բոլորովին ծռեցաւ հորին ծակէն վար, շունչը բռնելով սպասեց։

— Մարան Աթա, լսուեցաւ հորին մէջէն։

Պալատականին աչքերը ուրախութեամբ շողացին։

— Շուտ դուրս ելէք, վայրկեան մը չունիք կորսնցնելիք, գոչեց։

— Ո՞վ ես դուն, հարցուց ձայնը վարէն։

— Թիկնապահ Ջիա, պատասխանեց պալատականը վերէն։

— Լաւ։

Մէկ քանի քարերու տեղափոխութեան ձայնը լսուեցաւ, յետոյ նորէն կախուած չուանը երերաց և Թիկնապահը զգաց

որ մէկը չուլլուելով վեր կ'ելլէր։ Վայրկեան մը ետքը արդէն հասած էր հորին բերանը և դուրս ելած։ Քիչ մը վերջը ուրիշ երկու մարդիկ ալ դուրս ելած էին այդ տարօրինակ թաքստոցէն։

— Ի՞նչ է այս, լոյս չկա՞յ այստեղ, ըսաւ իրենցմէ մին։

Իրա՛ւ ալ կատարեալ մթութիւն կը տիրէր ամէն կողմ. իրարու երես չէին կրնար տեսնել։ Թիկնապա՛նը ուզեց սենեակէն լամպան բերելու։

— Կարծեմ ուրիշ մէկն ալ պիտի ըլլայ տակաւին հորին մէջ, ըսաւ լոյսը բերելով։

— Այո՛, հանըմը կայ, պատասխանեց մարդերէն մին, բայց անիկա չուանին չուլլուելով չկրնար ելլել, հարկ է որ զինքը վեր քաշենք։

Մարդերէն մին ծռեցաւ հորին վրայ և ըսաւ.

— Սալիհա հանըմ, չուանը լաւ մը մէջքդ կապէ, որպէս զի քեզ ալ վեր քաշենք։

Այս գործողութիւնը տասը վայրկեանի չափ տեւեց։

Երբ կինն ալ՝ հորէն ելլելով՝ եկաւ միացաւ իր ընկերներուն, Թիկնապանը տենդային անհամբերութեամբ մը ժամացոյցը նայելով ըսաւ.

— Շուտով պէտք է որ հեռանանք ասկէ, որովհետեւ տունը տակաւին հսկողութեան տակ ըլլալով գուցէ քիչ մը ետքը հարիւրապետ Շիւքրի պէյ իր մարդոց հետ գայ....։

Այս խօսքերը արտասանելով՝ Թիկնապանը, առաջին անգամ, ուշադիր նայեցաւ հորին մէջէն ելլող չորս անձերուն, որոնք նոյնպէս փոխադարձաբար՝ սկսան իրենց ակնարկը սեւեռել Զիա փաշայի վրան։

Յայտնի կը տեսնուէր որ զիրար նախապէս չէին ճանչնար ու առաջին անգամ իրարու կը հանդիպէին այս խորհրդաւոր տան մէջ և թէ՝ զիրենք միացնող միակ կապը այն խօսքերն էին, զորս արտասանուած էին։ Բայց այդ խօսքերը բաւ եղած էին իրարու վրայ կատարեալ վստահութիւն ունենալու համար։

— Կարծեմ ամենէն ապահով միջոցն է լեռան կողմէ հեռանալ, պարտէզի պատէն ցատքելով, որպէս զի դրացիներուն ուշադրութիւնը չգրաւէք, թէեւ անոնք այս ժամուս պառկած ըլլալու են, ըսաւ Ձիա փաշա, որ տենդային յուզումով մը ամէն վայրկեան ժամացոյցը կը նայէր.

— Այո՛, պէտք է անմիջապէս մեկնիլ վճռեց կինը, որ մինչեւ այն ատեն տակաւին բերանը չէր բացած։

Եւ ուղղուեցաւ դէպի պարտէզին դուռը։ Իր երեք ընկերները և թիկնապահը հետեւեցան իրեն։

Պարտէզին պատը շատ բարձր չէր և երեքը աթոռ մը գտնելով՝ չորսն՝ ալ կրցան ամենայն դիւրութեամբ վրան ելել ու միւս կողմէն վար ցատկել։

Ձիա փաշա ինքն ալ աթոռին վրայ ելաւ և փախստականները դիտեց՝ մինչեւ որ մութին մէջ աներեւոյթ եղան, յետոյ վար իջաւ, աթոռը ներս տարաւ, պարտէզին դուռը գոցեց և ինքնիրեն ըսաւ.

— Իցի՜ւ թէ փորձանք մը չի գար իրենց։

Եւ արագ քայլերով գնաց տան դրան առջեւ ուր ձիապանը կը սպասէր իր վերջին սիկառէթը ծխելով։

— Ի՞նչ լուր հարցուց Մուսթաֆա։

— Աչքերնիս լոյս, պատասխանեց փաշան զուարթ դէմքով մը, մինչեւ հիմա գործերնիս յաջող գնաց, Աստուած տար որ ասկէ ետքը բան մը չի պատահէր։

— Զօրան ալ գացի՞ն...

— Այո՛, պարտէզին կողմէ ճամբու դրի։

— Բայց ո՞ւր պահուըտած էին որ այնքան խուզարկութենէ ետքը մէջտեղ չելան։

— Եկո՛ւր որ տեսնաս ըսաւ թիկնապահը և ձիապանին հետ հօրին քով եկաւ։

— Ահա ասոր մէջը։

— Բայց այդտեղ մարդ իջաւ, մինչեւ իսկ ջուրին մէջ, պատասխանեց Մուսթաֆա։

— Կ'երեւայ որ մասնաւոր թաքստոց մը կար ջուրին մէջը։ Երբոր պտտեցի, լսեցի որ քարեր կը տեղափոխէին և քիչ ետքը ձայն մը լսեցի որ կ'ըսէր, «Մարան աթա»։

— Քեզի բան մը ըսե՛մ, պատասխանեց Մուսթաֆա, ես հորը պիտի իջնեմ և աչքովս տեսնեմ ամէն բան, դուն սա լամպան բռնէ՛։

Ու խօսքը գործին միացնելով՝ անմիջապէս չուանին պըլլուեցաւ և սկսաւ կամաց կամաց վար իջնել։ Ինչպէս ըսինք, հորը շատ խորունկ չէր և երեք մէդր վար կը գտնուէր ջուրը։

Մուսթաֆային աչքերը հազիւ ջուրին հասնելու քիչ մը մնացած էին, երբ խոշոր ծակ մը նշմարեց. այն ծակը, զոր քիչ մը առաջ բացուած էր հորին մէջ գտնուողներուն կողմէ։

Մուսթաֆա յաջողեցաւ այդ ծակէն ներս դնել ոտքը և չուրջը դիտել։ Երկու քառակուսի մէդր մեծութեամբ խոռոչ մըն էր ուր 5-6 հոգի կրնային հանգիստ կենալ քարերով ծակը փակելէ ետքը, անկարելի էր որ դուրսէն մէկը կարենար կասկածիլ թէ թաքստոց մը կար հոն։ Մուսթաֆա տակաւին իր քննութիւնը յառաջ պիտի տանէր երբ հորին բերնէն Զիա փաշայի ձայնը լսուեցաւ։

— Շուտով վեր ել, կարծեմ Շիւերի պէյն ու իր մարդիկը կուգան կոր։

Զիապանը անմիջապէս չուանը բռնեց ու չուլլուելով հասաւ հորին բերանը։

Թիկնապանը արդէն մեկնած էր հորին քովէն և դուրսը իր ձայնը կը լսուէր։

Մուսթաֆա փութաց անոր մօտ։

Հարիւրապետը, ոստիկանն ու լրտեսը, իրենց ճաշը աւարտելով, կրկին վերադարձած էին։

## ԳԼՈՒԽ Զ.

# ԱԿԱՄԱՅ ԱԶԱՏԱՐԱՐՆԵՐ

Ինչպէս տեսանք, լուսնային գեղեցիկ գիշերէն ու հանդարտ ծովէն հրապուրուած, երկու երիտասարդները, Ալի Օսման և Սատըք, նաւակով պտոյտի ելած էին Վոսփորի վրայ ճիշտ այն միջոցին ուր մեր պատմած դէպքերը տեղի կ'ունենային Եէնի Մահալլէի բարձունքին վրայ

Զով քամին ու խաղաղ ծովը զուարթացուցած ու աշխոյժ ոգեւորութիւն մը տուած էին երիտասարդ խմբագրին, որ անընդհատ կը թիավարէր առանց վայրկեան մը հանգչելու ։

Կէս ժամ վերջը արդէն հասած էին Թարապիայի բացերը։

— Դեռ չի յոգնեցա՞ր, հարցուց Ալի Օսման լռութիւնը խզելով ։

— Չէ՛, ընդհակառակը, կարծես օրուան յոգնութիւններէս հանգստացայ պատասխանեց Սատըք ·

— Եթէ կ'ուզես վերադառնանք ։

— Տակաւին կանուխ է, շարունակենք մեր ճամբան, հոս աւելի զով է, տե՛ս Սև ծովուն հովը կը փչէ կոր... ։

— Լա՛ւ ինչպէս որ կ'ուզես ։

Սատըք որ սիկառէթ մը վառելու համար պահ մը թիակները թողած էր կրկին սկսաւ թիավարել ։

Հինգ վայրկեանի չափ յառաջանալէ ետքը, յանկարծ Ալի Օսման ըսաւ .

— Բայց փոխանակ այսպէս աննպատակ թափառելու, գոնէ գործ մը տեսնանք ։

— Ի՞նչ գործ հարցուց խմբագիրը ։

— Մինչև Եէնի-Մահալլէ երթանք ու տեղեկութիւն մը

առնենք հոն կատարուած խուզարկութեան մասին և եթէ հայրս գործը լմնցուցած է, միասին տուն վերադառնանք ։

— Շատ լաւ խորհեցար, գոչեց Սատըք ուրախութեամբ, այդ կերպով մեր այս գիշերային պտոյտն ալ կ'արդարանայ ու միեւնոյն ատեն քու հօրդ ալ գոհունակութիւն պատճառած կ'ըլլանք. ուրեմն ղեկը դէպի հոն դարձո՛ւր ։

Եւ խմբագիրը ա՛լ աւելի արագութեամբ սկսաւ թիավարել ։

— Միայն թէ գուցէ շատ ուշ մնացինք և արդէն ամէն բան լմնցած՝ ու հայրս ալ վերադարձած է ։

— Ինչ որ է, ա՛լ մեր բախտին կը թողունք ։

Երկու բարեկամները լռեցին ։ Նաւակը ջուրին վրայ կը կը սահէր գրեթէ առանց ձայն հանելու և միայն կը լսուէր թիակներու կանոնաւոր ճողփիւնը ։

Երբ Եէնի Մահալլէի նաւամատոյցին մօտեցան, խոր լռութիւն մը կը տիրէր ամէն կողմ, ծովեզերեայ սրճարաններուն լոյսերը մարած էին, նաւամատոյցին հրապարակը մարդ չի կար, որովհետեւ ինչպէս ըսինք, ոստիկանական անսովոր իրարանցումին պատճառաւ ամէն ոք կանուխէն իր տունը ապաստանած էր ։ Նաւամատոյցին ծայրը քով քովի, կեցած էին Շիրքէթի երկու շոգենաւերը, իրենց գիշերային քունին մէջ ։

Այս խոր լռութիւնը, անշարժութիւնն ու մթութիւնը չարագուշակ տպաւորութիւն մը ըրին մեր երկու բարեկամներուն վրայ ։

— Ինչ մեռելային հանդարտութիւն, ըսաւ Սատըք ։

Նաւակը մօտեցած էր եզերքին ։

— Դուն նաւակին մէջ սպասէ՛, ես դուրս ելլեմ և լուր մը առնեմ, ըսաւ Ալի Օսման Սատըքի ։

— Շատ աղէկ, սակայն ուշ չի մնաս. կէս գիշերը անցեր է արդէն, ու տակաւին բաւական ճամբայ ունինք տուն դառնալու համար ։

Հազիւ թէ Ալի Օսման կը պատրաստուէր դուրս ելլել,

մութին մէջէն, արագ քայլերով, երկու մարդիկ մօտեցան Նաւակին :

— Ո՞վ էք դուք, հարցուց իրենցմէ մէկը խիստ ձայնով:

Ալի Օսման իսկոյն հասկցաւ որ իրենց գործը ոստիկաններու հետ էր որ անմիջապէս իր ո՛վ ըլլալը յայտնեց և աւելցուց :

— Հոս եկած ենք հայրս առնելու և տուն վերադարձնելու, եթէ մեկնելու դիւրութիւն ունի :

— Ձեր էֆէնտի հայրը արդէն մեկնած ըլլալու է, պատասխանեց խոժոր դէմքով ոստիկանը բոլորովին չեշտը փոխելով ու ա՛կնածական կերպարանք մը առնելով :

— Ինչպէս, մեկնեցա՞ւ մի ․․․ ։

— Այո էֆէնտիս, որովհետեւ քանի վայրկեան կայ, նախարար փաշան, թիկնապահները եւ գացին և ձեր էֆէնտի հայրն ալ միասին ըլլալու է, թէեւ բազմութեան մէջ զինքը չնշմարեցի :

— Ուրեմն ամէն զգուշութիւն աւարտա՞ծ է :

— Հաւանականաբար, պատասխանեց ոստիկանը :

Յետոյ աւելցուց :

— Հարիւրապետ Շիւքրի պէյ, իր մարդոց հետ չուկային մէջ խանութ մը նստած կը ճաշէ կոր, եթէ կ՚ուզէք իրեն հարցուցէ՛ք աւելի մանրամասն տեղեկութիւններ կրնայ տալ :

— Վա՛յ, Շիւքրի պէյը հո՞ս է, շատ աղէկ ուրեմն, գոչեց Ալի Օսման ուրախութեամբ, նաւակէն դուրս ցատկելով :

— Սատըք պէյ, դուք հոս քիչ մը սպասեցէ՛ք, ես հիմա կը վերադառնամ, ըսաւ իր բարեկամին և երկու ոստիկաններուն հետ ուղղեցաւ դէպի չուկան :

Սատըք սիկառէթ մը վառեց և սպասեց: Երիտասարդ խմբագիրը աննդային անհամբերութիւն մը ունէր խմանալու համար անցած դարձածը: Սրտին խորէն կը բաղձար որ տանը մէջ պաշարուած անձերը որ և է միջոցաւ մը ազատէին Ապտիւլ Համիտի ճանկէն, բայց այդ միջոցը չէր կրնար երեւակայել :

— Անպատճառ այս ժամուս բռնուած ու տարուած են, կը մտածէր ինքնիրեն ։

Քառորդ ժամէ մը Ալի Օսման վերադարձաւ ։ Սատըք իսկոյն նշմարեց որ բարեկամը մռայլ դէմք մը առած էր և մտահոգ կ՚երևար։

— Ի՞նչ լուր, հարցուց ։

— Կեցի՛ր, հիմա կ'ըսեմ, նախ քշէ՛ տանինք նաւակը ։

Սատըք թիակները ձեռք առաւ և քանի մը անգամ ջուրը խօթեց հանեց, առանց խօսք մը ըսելու, ինքն ալ ուղղուած իր բարեկամին կերպարանքին։

— Արդեօք ի՞նչ պատահած է, ըսաւ ինքնիրեն ։

Երբ նաւակը բացուեցաւ, Ալի Օսման, որ լուռ ու մունջ ծովուն կը նայէր յանկարծ գլուխը դարձուց դէպի խմբագիրը և ըսաւ․

— Գիտե՞ս ի՛նչ պատահեր է ։

— Քենէ պիտի իմանամ եղածը, պատասխանեց միւսը շարունակելով թիավարել ։

— Տունը կոխեր են մէջը մարդ չեն գտեր․․․ ։

— Ի՞նչ կ'ըսես, գոչեց Սատըք ուրախութեան ճիչով մը զոր չկրցաւ զսպել, հակառակ իր կամքին՝ որովհետև չէր ուզեր վշտացնել իր բարեկամը և գիտէր որ Ալի Օսման եթէ ո՛չ ուրիշ բանի համար, գոնէ իր հօրը պատճառաւ կը փափաքէր որ այդ գործը յաջող ելք մը ունենայ։

— Այո՛ շարունակեց ոստիկանատան պաշտօնեան, տունը տակնուվրայ դարձուցեր են ու հետք մը չեն գտեր․․․ սարսափելի՛ բան է այս, ի՞նչ պիտի ըլլայ հիմա մեր վիճակը, Սուլթանին ձեռքէն չպիտի ազատինք ։

Նաւակը ծովուն բացը հասած էր, սակայն Սատըք իր նախկին եռանդովը չէր թիավարէր։ Թևերը յոգնած էին ու Ալի Օսման նշմարեց այդ բանը։

— Կ'երևայ որ ուժդ սպառեցաւ, ըսաւ ։

— Այո՛, հիմա, երբ քիչ մը հանգչելէ ետքը, թիակները

ձեռք առի, այն ատեն զգացի որ չարաչար յոգներ եմ . . . կարծեմ լաւ կ՚ընենք եթէ քիչ մը հանգստանանք ու մէյմէկ սիկառէթ ծխենք . . . բայց պատմէ՛ տեսնենք մանաւորաբար ինչ որ պատահած է ։

Ամբագիրը թիակները թողուց և Նաւակը սկսաւ մեղմօրէն ընթանալ ջուրերու քմահաճոյքին համեմատ ։

Ալի Օսման սկսաւ պատմել ինչ որ լսած էր Շիւքրիի պէյէն և ինչ որ մենք արդէն գիտենք ։

Երկու բարեկամները, իրենց խօսակցութեամբ, այնքա՛ն խորասուզուած էին պատահած անակնկալ ու անսովոր եղելութեամբը որ չնշմարեցին որ Նաւակը ճամբէն բաւական խոտորած էր ու Նաւամատոյցէն անդին քշուելով՝ դէպի Ֆը-րըլտաքի դրօսավայրին ստորոտը կը գտնուէր ։

— Ա՛ս ո՞ւր ենք եկեր, Գալաթի ճամբան բռնեցինք, ըսաւ մէկէն Ալի Օսման իր խօսքը ընդհատելով ու չուրջը դիտելով ։

Արդարև Նաւակը մէջի գտնուողներուն նպատակին բոլորովին հակառակ ուղղութեամբ մը կ՚ընթանար և եթէ ժամանակին ուշադրութիւն չդարձնէին, գուցէ պիտի երթար զարնուէր ծովեզերքը գտնուող խութերուն ։

— Օ՜ն, ա՛լ վերջ տանք մեր շատախօսութիւններուն և տուն դառնանք, որովհետև եթէ այսպէս շարունակենք հազիւ առտուն պիտի կրնանք տեղերնիս հասնիլ, գոչեց Ալի Օսման, կը յուսամ որ ա՛լ յոգնութիւնդ առիր, եթէ ո՛չ, դուն եկուր իմ տեղս նստէ՛ ու ես թիավարեմ ։

— Ո՛չ պատասխանեց Սատըք, ես կը թիավարեմ, միայն թէ լաւ կ՚ընենք եթէ Նաւակնիս քիչ մը ցամաքին մօտեցունենք մէկ քանի վայրկեանի համար, քանի որ արդէն շատ ալ մօտ ենք, վայրկեան մը դուրս ելլելու պէտք կը զգամ կոր ։

Ալի Օսման հասկցաւ իր բարեկամին միտքը ։

— Լա՛ւ, լա՛ւ պատասխանեց, գնա՛ ու հանգստացիր ։

Քանի մը թիակի հարուած բաւական եղաւ Նաւակը տանելու խոշոր խութի մը քով որ ցամաքին կպած էր ։

Խմբագիրը իսկոյն դուրս ցատքեց նաւակէն ու արագ քայլերով հեռացաւ իր բնական պէտքը գոհացնելու համար։

Ալի Օսման որ նաւակին մէջ մնացած էր, մտածկոտ աչքերով կը դիտէր հեռուն, Գալաթի առջեւ կեցած առեւտրական շոգենաւներու լոյսերը, մտիկ ընելով անոնց կաթսաներուն հանդարտիկ ու միօրինակ փշփշոցը որ գիշերային լռութեան մէջ իրեն կը հասնէր, ծովային այլանդակ հրէշներու խռկալու ձայնին պէս։

— Մի՛ շարժիր տեղէդ, գոչեց յանկարծ ձայն մը եւ միեւնոյն ատեն նաւակը ցնցուեցաւ մէջը ցատքող մարմինի մը տատանումէն։

Ալի Օսման՝ մէկէն գլուխը դարձուց դէպի ձայնը, յանկարծակի քունէն արթնցողի շլմորած դէմքով եւ ինչ որ ամենէն առաջ աչքին զարկաւ բէվոլվէրի մը սողսողուն փողը եղաւ որ կը շողար մութին մէջ, իր դէմքին ուղղուած սպառնական սեւեռումով մը։

Ալի Օսման պաղարիւն ու քաջասիրտ էր թէեւ, սակայն չկրցաւ սարսուռ մը զսպել։

— Ո՛վ ես դուն, հարցուց դողահար ձայնով մը։

Մարդը, առանց այդ հարցումին պատասխանելու, բէվոլվէրը միշտ երիտասարդին ուղղած.

— Տո՛ւր, նաւակ մտէք, գոչեց։

Եւ անոր խարակին վրայ, որուն քով կեցած էր նաւակը, երեք անձեր ալ երեւցան ու անմիջապէս նաւակ նետուեցան։ Այդ անձերէն մին կին մըն էր։

Ալի Օսման հասկցաւ թէ գործը որոնց հետ էր. եւ մեր ընթերցողներն ալ, իրեն չափ, հասկցան անշուշտ։

Այս բանը հանդարտացուց զինքը, մանաւանդ կնոջ մը ներկայութիւնը բոլորովին ապահովութիւն ներշնչեց իրեն։

Առաջին անգամ նաւակը ցատքող անձը իր քով եկած նստած էր, միշտ բէվոլվէրը ձեռքը բռնած թէեւ այլեւս զայն Ալի Օսմանի ճակտին չէր ուղղեր. նոյնպէս մարդիկներէն մին

ալ միւս քովը տեղաւորուած էր, իսկ երրորդը Թիավարին տեղը նստած էր, իսկ կինն ալ նաւակին միւս ծայրը։

— Օ՛ն ճամբայ ելլենք գոչեց երիտասարդին քովը նստողներէն մին։

Այդ բառերը յանկարծ Ալի Օսմանի յիշեցուցին իր բարեկամը որ դուրսը մնացած էր։

— Բայց ըսաւ, ընկեր մը ունիմ հոս որուն կը սպասէի։

— Մենք ժամանակ չունինք սպասելու, պատասխանեց մարդը։

— Սակայն այս ժամուս զինքը չեմ կրնար այս ամայի տեղը առանձին թողուլ ... մանաւանդ որ ձեր ապահովութիւնն ալ կը պահանջէ որ զինքը միասին առնենք, որովհետեւ ...։

Ալի Օսման իր պատճառաբանութիւնը պիտի շարունակէր, երբ տեսաւ որ ստուեր մը կը մօտենար իրենց։

— Ահա՛, եկաւ արդէն, գոչեց։

Արդարեւ Սատըքն էր։ Խմբագիրը նաւակին մէջի բազմութիւնը տեսնելով ափիբերան մնաց, սակայն երբ նշմարեց իր բարեկամը որ այդ անծանօթներուն մէջտեղ նստած էր, սիրտ առաւ ու ոստումով մը նետուեցաւ նաւակ։ Տակաւին նստելիք տեղը չէր որոշած երբ արդէն նաւակը սկսաւ հեռանալ ծովեզրէն։

Այն որ թիերը ձեռք առած էր կատարեալ վարպետութեամբ մը կը թիավարէր եւ յայտնի կը տեսնուէր որ վարպետ մըն էր....։

Ալի Օսման որ կրկին ղեկի չուանները ձեռք առած էր, ըսաւ քովիններուն։

— Ո՞ւր պիտի երթանք։

— Ուղղակի դիմաց, պատասխանեց մին.

Սատըք եւս, իր ընկերոջ պէս, հասկցած էր այդ անծանօթներուն ո՛վ ըլլալը, եւ սրտովը կը հրճուէր այս տարօրինակ դիպուածին վրայ։ Անհուն փափաք մը կը զգար խօսքի բռնուելու այդ մարդոց հետ, իր զգացած թաքուն համակրու-

թիւնը յայտնելու, իրենց ձերբակալման մասին ունեցած երկիւղը պատմելու. բայց անծանօթները այնպիսի խորին լռութիւն մը կը պահէին, իրենց դէմքերուն վրայ այնպիսի մռայլ լրջութիւն մը նկարուած էր որ խմբագիրը, հակառակ իր փափաքին, չէր համարձակեր բերանը բանալ։

— Քանի որ հետերնին խօսելու միջոց չի կայ, գոնէ դէմքերնին նկատեմ, ըսաւ ինքնիրեն։ Իր աչքերը նախ և առաջ ուղղուեցան նաւակին ցռուկը նստող կնոջ, որուն դէմքը կը լուսաւորուէր հորիզոնին մօտեցող լուսնին տժգոյն շողերովը։

Քսանուհինգ տարեկան, նիհար, դալկահար ու երկայնահասակ կին մըն էր, գլուխը բարակ շղարշ մը ձգած, սակայն առանց երեսը գոցելու։

Գեղեցիկ չէր, այսու հանդերձ տարօրինակ հրապոյր մը կար իր դէմքին վրայ։ Իր խոշոր սև աչքերը որոնք անսովոր փայլով մը կը շողային ուշիմութիւն ու կորով կ'արտայայտէին միանգամայն։ Թուցէ իր թարմ հասակին մէջ շատ գեղեցիկ եղած էր այս կինը, սակայն յայտնի կը տեսնուէր որ հոգեկան տառապանքներ ժամանակէն առաջ եղծանած էին բնութեան շնորհները ու չարչարանքի դրոշմով խաթարած էին անոր բովանդակ էութիւնը։ Սակայն այդ տառապանքը եթէ ֆիզիքապէս քայքայած էր իր մարմինը, չէր կրցած ընկճել անոր հոգին, այլ ընդհակառակը՝ զայն աւելի առոյգ ու կայտառ դարձուցած էր, ինչպէս կը պատահի մեծ և հզօր նկարագիր ունեցող անհատներու։

Սառըք հմայուած ու մագնիսացած ակնարկով մը իր աչքերը բաւական ատեն սեւեռած պահեց այդ կնոջ դէմքին վրայ, որ երիտասարդին այդ հետաքննդիչ նայուածքին անուշադիր ծանր մտածումներու մէջ խորասուզուած կը թուէր ու անթարթ աչքերով կը նայէր դէպի այն ծովեզրը ուրկէ արագ կերպով կը հեռանային։

Խմբագիրը, յետոյ իր ակնարկը կեցուց թիավարող անձին

վրայ։ Ներսուն տարեկանի մօտ, հուժկու, գիրուկ, կարմրերես ու զուարթ դէմքով երիտասարդ մըն էր սեւ ու թաւ յօնքերով, խոշոր քթով ու լայն հեշտասէր շրթունքներով։

— Այս մարդը Թուրքի չի նմանիր, արդեօք ուրի՞շ ազգէ է, մտածեց Սատըք։

Եւ գլուխը քիչ մը դէպի աջ դարձնելով, սկսաւ դիտել միւս երկու անձերը որոնք Ալի Օսմանի աջ ու ձախ կողմերը նստած էին։ Երկուքն ալ դեղին պեխերով ու կապոյտ աչքերով երիտասարդներ էին, իրարու տարեկից և թիւմարին պէս հազիւ երեսուն տարեկան։ Մանաւանդ մին, այն որ փոքրիկ խումբին գլխաւորը ըլլալ կը թուէր ու րէվէլվէրովը սպառնացած էր Ալի Օսմանի, հրապուրիչ երիտասարդ մըն էր այնպիսի քաղցր ու բարի դէմքով մը, որ, երբեք կարելի չէր երեւակայել թէ՝ այդ կերպարանքին տակ անյողդողդ կամք և ամէն բանի պատրաստ պողպատէ սիրտ մը կար։

Սատըք այդ երիտասարդին ու կնոջ կրկին հմայքներու ազդեցութեան տակ ինկած էր և ակնարկը մերթ միոյն և մերթ միւսին վրայ կ՚ուղղէր, ինքնիրեն միտքը չարչարելով որպէս զի խօսք մը ըսելու առիթը գտնէր։

Կինը որ միշտ Ցըրըլտաքի կողմը ուղղած էր նայուածքը, յանկարծ գոչեց խօսքը իր ընկերներուն ուղղելով.

— Տեսէ՛ք տեսէ՛ք։

Եւ մատովը ցոյց տուաւ ծովեզերքի այն մասը, ուրկէ քիչ առաջ նաւակը հեռացած էր։

Ամէնքը գլուխնին դէպի մատնանիշ եղած կողմը դարձուցին։ Հո՛ն, ծովեզրը, լուսնի լոյսով, յստակօրէն կը նըշմարուէր մարդկային ստուեր մը, որ յուսահատօրէն ձեռքերը կը շարժէր։ Ցեռոյ տիրող գիշերային ընդհանուր լռութեան մէջ, մինչեւ նաւակը հասաւ ձայն մը, որ կատարէն կ՚աղաղակէր.

— Բռնեցէ՛ք, բռնեցէ՛ք, կը փախչի՜ն կոր... հասէ՛ք, հասէ՛ք։

— Ա՛ն է, գոչեցին չորս ընկերները միաբերան։

— Կ'երեւայ որ հեռաքերնիս կորսնցնելէ ետքը, կրկին կրցած է հեռեւիլ մեզի։

— Օ՛ն, քեզ նայիմ աւելի արագ չարժէ թիերդ, ըսաւ երիտասարդը որ այնքա՛ն հզօր ներգործութիւն մը ըրած էր խմբագրին վրայ։

Այս վերջինը պատեհ առիթ սեպեց խօսքի խառնուելու։

— Եթէ կ'ուզէք ես ալ թիավարեմ, ըսաւ, արդէն երկու թիերը պարապ կը մնան կոր, այդ կերպով աւելի շուտ կ'երթանք։

Սատրք իրաւունք ունէր․ նաւակը զուգաթի էր։

— Ձեր առաջարկութիւնը շնորհակալութեամբ կ'ընդունինք, ըսաւ դեղին երիտասարդը։

Խմբագիրը ուրախ զուարթ՝ արդէն անցած էր թիակներուն գլուխը։ Իսկ հեռուն, ձովեզերին վրայ միշտ կը տեսնուէր խորհրդաւոր ստուերը որ խելայեղ կերպով ծովուն երկայնքին ի վեր կը վազէր։

— Բռնեցէ՛ք, բռնեցէ՛ք, կը փախչին կոր, աղաղակելով։

Նոյն միջոցին ուրիշ բան մը նաւակին մէջ գտնուողներուն ուշադրութիւնը գրաւեց։

Եէնի-Մահալէի բարձունքին վրայ բոց մը կը բարձրանար։

— Կրակ կայ, տուն մը կ'այրի կոր․․ գոչեց Սատրք, որ առիթ կը փնտռէր խօսելու։

— Այո՛, պատասխանեց անծանօթ անձերէն մին։

Դեղին պեխերով երիտասարդը, որ ինչպէս ըսինք խումբին գլուխը ըլլալ կը թուէր ուշադրութեամբ աչքերը հրդեհին կողմը ուղղեց։

— Մեր տունն է այրողը, գոչեց։

— Ինծի ալ այնպէս կ'երեւայ, ըսաւ կինը որ նոյնպէս ուշադրութեամբ ակնարկը սեւեռած էր Եէնի Մահալլէի բարձունքը։

Չորս ընկերները զարմացական ակնար մը փոխանակեցին

իրարու հետ։ Ի՞նչ կը նշանակէր այս բանը։ Դիպուածո՞վ կ'այրէր թէ՝ դիտմամբ զայն բռնկցուցած էին...

Եւ սակայն նաւակը մօտեցած էր ափական եզերքին, Գավաղի ձախակողմը գտնուած ամրոցին ու Պէյքօզի միջև ամայի ծովեզրը։

— Հո՞ս ցամաք պիտի ելլէք, հարցուց Ալի Օսման իր քովը գտնուողներուն։

— Այո՛, պատասխանեց դեղին երիտասարդը։

— Բայց նաւակը ծովեզրին մօտեցնելիք տեղ չկայ առարկեց։

— Վնաս չունի բաւէ որ ցամաքին մօտենանք, ջուրին մէջ քալելով կրնանք ծովեզր ելլել։

Ալի Օսման նկատեց որ երիտասարդը «կրնանք ծովեզրը ելլել» ըսած էր, ինք որ ենթադրել կուտար որ խօսողը նաւակէն դուրս ելլելու միտք չունէր։

Բայց իր այս ենթադրութիւնը, որ իրեն բաւական մեծ մտահոգութիւն պատճառելու բնութիւն ունէր, պատշաճ չդատեց ո և է կերպով յայտնել իր խօսակցին, այլ պարզապէս պատասխանեց։

— Լաւ ուրեմն. քիչ մըն ալ յառաջանանք, մինչեւ որ զգանք թէ նաւակը ծովուն յատակին կը քսուի։

Բայց հազիւ թէ այս խօսքերը արտասանած էր, արդէն թիավարողները կեցան։

— Ա՛լ աւելի առաջ կարելի չէ երթալ, յայտարարեց Սարք։

Նաւակը կեցած էր։

Դեղին երիտասարդը Ալի Օսմանին դառնալով ըսաւ.

— Կը խնդրեմ վայրկեանի մը համար դուք նաւակին միւս ծայրը անցէք։

Յետոյ խօսքը կնոջ ուղղելով աւելցուց։

— Հանըմ էֆէնտի, հոս հրամմեցէ՛ք։

Նոյնպէս նշան ըրաւ թիավարող երիտասարդին որ իր քով գայ։

Այսպէս Սաթօք և իր բարեկամը նաւակին ցռուկը քաշուեցան, մինչ միւս չորս ընկերները հակառակ կողմը հաւաքուեցան։ Կարճ փախուստ մը վերջը, որ հազիւ վայրկեան մը տեւեց, թիավարող երիտասարդը և Ալի Օսմանին քով նստող անձերէն մին, ցատքեցին ջուրը, որ մինչեւ ծունկերնին կը հասնէր, ու արագ քայլերով մօտեցան ծովեզրին. ցամաք ելան ու՝ գրեթէ վազելով մագլցեցան բլուրէն վեր։

— Ալի Օսման և Սաթրք էֆէնտիներ, ըսաւ նաւակը մնացող դեղին երիտասարդը, վերջին ծառայութիւն մը պիտի խնդրեմ ձեզմէ։

Երկու ընկերները ապշահար մնացին տեսնելով որ անծանօթը իրենց անունը կու տար։

— Ինչ կը փափաքիք, հարցուց Ալի Օսման։

— Պիտի խնդրէի որ մեր ճամբան շարունակենք կարելի եղածին չափ շուտ և արագ կերպով, թէ մեր և թէ ձեր ապահովութեան համար, որովհետեւ բախտին մէկ տարօրինակ զուգադիպութեամբ՝ իմանանք ըսել որ դուք ալ մեզի չափ վտանգուած էք այս միջոցիս։

— Ճիշդ է, ըսաւ Ալի Օսման ակամայ հառաչանք մը արձակելով։

— Ուրեմն Սաթրք էֆէնտի, դուք որ այնքան լաւ կը թիավարէք, պիտի խնդրէի որ հաճիք ձեր թեւերը նորէն տրամադրել մեր անձնուէր փրկութեանը, իսկ դուք, Ալի Օսման էֆէնտի, կրնաք ղեկին գլուխը անցնիլ։

Խմբագիրը արդէն թիակները ձեռք առած էր և նաւակը սկսած էր հեռանալ ցամաքէն. Իսկ Օսման, նոյնպէս նստած էր ղեկին գլուխը, իր աջ ու ձախ կողմերը ունենալով խորհրդաւոր կինը ու դեղին երիտասարդը։

Բլրակին վրայ կը նշմարուէին երկու ստուերները որոնք արագ արագ վեր կ'ելլէին, մինչ դիմացի եզերքը, բարձունքին վրայ, հրդեհին բոցերը կը շարունակէին բարձրանալ։

— Մոռցայ ըսելու որ դէպի Պոլիս կ'երթանք, ըսաւ դեղին երիտասարդը։

Յետոյ, սիկառէթի տուփը հանեց գրպանէն, հատ մը վառեց և մէյ մէկ հատ ալ Ալի Օսմանի ու Սատըքի հրամցուց։

Նաւակը սկսաւ սահիլ ջուրին վրայ։ Մէջը գտնուողները ճնշիչ լռութիւն մը կը պահէին և ամէնքն ալ խոր մտատանջութեան մը մատնուած կը թուէին, բայց ամենէն աւելի Ալի Օսման էր որ այս անակնկալ և յուզումնալից դէպքերէն ետքը, այժմ՝ յանկարծ՝ ծանր ու դառն անձկութեան մը մատնուած էր։

Դեզին երիտասարդին մէկ խօսքը ամբողջ ահռելի իրականութիւնը պատկերացուցած էր իր աչքին. «Դուք ալ մեզի չափ վտանգուած էք այս միջոցիս» ըսած էր ու հիմա կը զգար որ ո՛րքան ճշմարիտ էր այդ խօսքը։ Գոնէ եթէ ամէնքը մէկ հետապնդուած ըլլային, ինք ու Սատըք կրնային լուսնալէ առաջ տուն հասնիլ և իրենց գիշերային արկածները ծածկել։ Բայց հոս երկու հոգի տակաւին կը մնային նաւակին մէջ և չէր գիտեր թէ ո՛ւր պիտի երթային անոնք։ Յետոյ քանի մը ժամէ ի վեր պատահածները վերյիշեց և տեսաւ որ իրաւցընէ շատ վտանգալից կացութեան մը մէջ կը գտնուէին։ Իրենց գիշերային պտոյտը հետքեր թողուցած էր. նախ Ենիի Մահալլէի մէջ ոստիկաններ ու հարիւրապետ Շիւքրի պէյ զիրենք տեսեր էին, յետոյ միտքը ինկաւ Պէրըլտաքի զբօսավայրին առջեւը երեւցող ստուերը որ կ'աղաղակէր և յայտնապէս կը տեսնուէր որ այդ մարդը փախստականները կը հալածէր։ Եթէ մանրակրկիտ քննութիւն մը բացուէր կրնար մեծ կասկածներ ծանրանալ իրենց վրայ ու այն ատեն ի՞նչ պիտի ըլլար իր կամ մանաւանդ հօրը վիճակը։ Խե՛ղճ երիտասարդը ամենէն աւելի տանջող հոգը իր հայրն էր։

— Ենթադրենք որ ամէն բան խոստովանինք, ըսենք որ մահուան սպառնալիքի տակ փախցուցինք այդ մարդիկը, ինչ որ բացարձակ ճշմարտութիւն է, միթէ ասով պիտի կըրնա՞նք ազատիլ։ Երեւոյթները մեզի դէմ են, գիշերային այդ անխորհուրդ պտոյտը մինչեւ ամայի ծովեզերեայ առանձնալիքս

*բոլոր ատանք, որչափ ալ ընտիր կերպով կատարուեցան, կրնան ամենածանր կասկածանքներու տեղի տալ...։*

*Ու Ալի Օսման մտքովը հազար անգամ կ'ափսոսար Նաւակով պտոյտի ելլելնուն։*

*Դեղին երիտասարդը կարծես կռահեց ինչ որ կ'անցնէր այս միջոցին ոստիկանատան պաշտօնեային մտքէն և րոպէ մը անոր մտատանջ դէմքը նկատելէ ետքը, ըսաւ։*

*— Զարմանալի՛ բան. ինչ որ հոգեկան բերկրանք մը պէտք էր ըլլալ ալ՝ ուսանող երիտասարդի մը համար, կը տեսնեմ որ մտքի տանջանք մը կը դառնայ..*

*Ալի Օսման ցնցուեցաւ այս խօսքերէն։*

---

## ԳԼՈՒԽ Է.

# ԴԻԱ ՄԸ

*— Նախախնամութիւնը երբեմն սրբագրութիւններ կ'ընէ չարունակեց դեղին երիտասարդը, և հայերուն մոլորութիւնները զաւակներուն ձեռքովը կ'ուղղէ և առաջիններուն մեղքերը կը սրբէ վերջիններուն միջոցաւ։*

*Ալի Օսման անմիջապէս չպատասխանեց, ակնարկութիւնը ծանր ու վիրաւորիչ թուեցաւ իրեն։ Երիտասարդը իր հայրը կը սիրէր և անոր մասին եղած անարգանքի մը չէր կրնար հանդուրժել։*

*— Չեմ գիտեր թէ ինչ ըսել կ'ուզէք, ըսաւ խստութեամբ, եթէ ուղղակի հօրս կ'ակնարկէք, երբեք չեմ ուզեր հաւանութիւն տալ ձեր ըսածներուն։*

— Ես պարզապէս Նախախնամութեան կ'ակնարկեմ որ մենէ աղէկ կը կարգադրէ ամէն բան, պատասխանեց միւսը ժպտելով. ձեր նաւակը եթէ ծովեզերքը չգտնուէր՝ հաւանօրէն ձեր հօրը ճանկը պիտի իյնայինք, ահա՛ իրողութիւնը։

— Այսինքն՝ գուցէ արդարութեան ձեռքը, ըսաւ Ալի Օսման որ յայտնապէս գրգռուած էր։

— Կամ աւելի ճիշդը Ապտիւլ Համիտի ձեռքը, դիտել տուաւ կինը որ մինչեւ այն ատեն լուռ ունկնդիր եղած էր խօսակցութեան։

— Հայրս ոստիկանատան պաշտօնեայ է և իր պարտականութիւնը կը կատարէ խղճի մտքով. պատասխանեց երիտասարդը ... ոճիրներ գործուած էին որոնց հեղինակները կը փնտռուէին ու բնականաբար ինքն ալ, իր պաշտօնին բերումով, պէտք էր որ աջակցէր այդ գործին։

— Բարեկամ. ըսաւ դեղին երիտասարդը, ձեր հայրը չեմ ուզեր դատապարտել, բայց կը հիանամ Նախախնամութեան վրայ. որ մտքէ չանցած դիպուածով մը բո՛ւն իսկ անոր նաւակովը կ'ազատէ մեզի։

Գուցէ այս բացատրութիւնը պիտի գոհացնէր Ալի Օսմանը և վերջ պիտի տար վիճաբանութեան մը որ հետզհետէ կծու չեշտ մը առնել կը սկսէր, երբ յանկարծ կինը հանդարտ ու հաստատ ձայնով մը ըսաւ։

— Իսկ ես պարզապէս կը դատապարտեմ ձեր հայրը։

Ալի Օսման կրկին ցնցում մը կրեց, աւելի բուռն քան առաջինը։

Կինը նոյն հանդարտ ձայնովը շարունակեց.

— Քիչ մը առաջ պարտականութեան խօսք ըրիք, ատիկայ կեղծիք մըն է, ինքզինք խաբելու, խիղճը քնացնելու համար հնարուած։ Գէշութիւն գործելու մասին պարտականութիւն չկրնար ըլլալ մարդու մը համար։ Պաշտօններ կան զորս մարդ ի գործ չդնելով՝ իր պարտականութիւնը կատարած կ'ըլլայ լիովին։

— Այսինքն՝ ոճրագործներ ա՞զատ թողլով, հարցուց Ալի Օսման բարկութենէն դողացող ձայնով մը։

— Երկրի մը մէջ, ուր մեծագոյն ոճրագործը թագ կը կրէ ստրկանութեան պաշտօնեայի մը պարտականութիւնն է ակնածանքով խօսիլ ոճրագործներու վրայ... դուք որ պաշտօնի պարտականութեան մասին կը խօսիք, ասիկայ պէտք է գիտնաք, պատասխանեց կինը հանդարտ ձայնով մը։

Պատասխանը լախտի պէս իջաւ երիտասարդին գլխուն։ Պահ մը խոր լռութիւն տիրեց նաւակին մէջ։ Միայն թիակներու միօրինակ ձայնը կը լսուէր, որոնք կանոնաւոր կերպով ջուրին մէջ կր մտնէին կ՚ելլէին։ Ալի օսման զղջացած էր այս ձեւ վիճաբանութեան մը մտնելու, այսու հանդերձ հարուածը այնքան ուղղակի էր որ կարելի չէր առանց փոխարինելու մնալ, ուստի նոյն դողահար ձայնովը պատասխանեց.

— Ամէն մարդ իր գործած արարքներուն համար խղճին առջեւ պատասխանատու է։

— Երանի այն մարդուն որ կը յաջողի խիղճը ինքզինքին մեղսակից ընելու, ըսաւ կինը նոյն հանդարտ ձայնով։

Սատըք որ խորին ուշադրութեամբ կը հետեւէր փոխանակուած խօսքերուն, միշտ թիավարելով հանդերձ, յարաճուն հիացումով մը կը լսէր կնոջ ըսածները։ Ի վերջոյ չկրցաւ ինքզինք զսպել եւ գոչեց։

— Հանըմ էֆէնտին կատարեալ իրաւունք ունի, ամէնքս ալ վատեր ենք։

Կինը երիտասարդին այս խօսքերուն վրայ, աչքերը դէպի անոր ուղղեց համակրական արտայայտութեամբ մը, յետոյ տխուր ժպիտով մը ըսաւ։

— Բարեբախտաբար այնպիսի տարիք մը ունիք տակաւին որ ձեզի թոյլ կուտայ այդ վատութիւնը դարմանելու, եթէ կամք ունենաք։

— Կարծեմ թէ ցամաքի մօտենալու ժամանակ է, որովհետեւ կը լուսնայ կոր- ըսաւ դեղին երիտասարդը։

Նուակը նոյն միջոցին եւրոպական երգերը քերելով կը յառաջանար և Սթէնեկայի առջեւ հասած էր։

— Ո՞ւր պիտի երթանք, հարցուց Ալի Օսման որ տակաւին ջղագրգիռ վիճակ մը ունէր և որուն ձայնը թեթեւօրէն կը սարսռար։

— Կարծեմ լաւագոյն է որ ծովախորշին մէջ մնանք և հոն ցամաքին մօտենանք, որովհետեւ այս կողմերը, ծովեզերեայ տուներէն զատ մեզ կրնան նշմարել, մինչդեռ այն կողմերը տուներ չի կան։

— Իրաւունք ունիք, պատասխանեց Ալի Օսման որ միշտ ղեկը կը վարէր։

Նուակը մտած էր ծովախորշին մէջ և կեցող մէկ քանի առագաստանաւերու և շոգենաւի մը քովէն անցնելով, մօտեցած էր ցամաքին։

Ալի Օսման յանկարծ, մութին մէջ, նշմարեց որ բան մը կը փայլէր դեղին երիտասարդին աջ ձեռքը։ Ռէվոլվէրն էր, զոր գրպանէն հանած էր։ Պողպատին փայլը սարսուռ մը տուաւ երիտասարդին, սակայն ջանաց իր վրդովումը ծածկել։

— Հո՞ս կ՚ուզէք ցամաք ելլել, ըսաւ, երբ բոլորովին մօտեցան եզերքին։

— Այսինքն՝ դուք հոս պիտի ելլէք, պատասխանեց դեղին երիտասարդը։

— Մե՞նք․․․։

— Այո՛։

— Իսկ դո՞ւք։

— Մենք տակաւին մեր ճամբան պիտի շարունակենք։

— Բայց Նուա՞կը։

— Նուակը պէտք է մնայ, քանի որ լողալով չենք կըրնար երթալ մեր տեղը և ոչ ալ ցամաք ելլելով կրնանք կեանքերնիս վտանգել․․, մանաւանդ որ մեր կեանքը մեզի չվերաբերիր։

— Բայց…, թոթովեց Ալի Օսման այս նոր անակնկալէն յանկարծակիի եկած:

— Կը խնդրեմ, կարճ կապենք այս խօսքերը, բառ. դե-ղին երիտասարդը վճռաբար, նամակը միայն ոչինչ է, պէտ ունինք, եթէ դուք չուզէք հասկնա՛լ, ամէն մէկ բանէ յա-պաղումը կենայ ազատօրէն ըլլալ անհնար հիմայ ալ:

Ալի Օսման կրկին նշմարեց բեմօլներէ փողին պողպատը՝ որ մութին մէջ կը շողար:

Ըմբռնողութիւն չարժուած մը բռնել, ուզեց խօսք մը խօ-սել, առ'կային վարանեցաւ ու յանկարծ վճռաբար ոտքի ելաւ ու դուրս ցատկեց նաւակէն որ այդէն ցամաքին հասեր էր:

— Սարգիս էֆէնտի, դուք ալ դուրս ելէք, բառ. դեղին երիտասարդը, չորեկուկ ենք մինչեւ հիմա միայն մա-տուցած ձեր ծառայութիւնն:

Երիտասարդը անդէն ցատկեց, մինչ Ալի Օսման ցամաքը եկած՝ կը սպասէր իր ընկերոջ:

— Կը խնդրեմ չուշանալ դուրս ելէք, չենք կրնար երկար սպասել, բառ. դեղին երիտասարդը ձայնը սպառնալին շեշ-տով մը բարձրացնելով:

— Ես ձեզի հետ պիտի գամ, պատասխանեց Սարգիս հաստատ ձայնով մը:

Երիտասարդին այս խօսքերը որոնց միտքը մէկէն ի մէկ չկրցաւ ըմբռնել դեղին երիտասարդը, անբացատրելի թուե-ցան եւ գոչեց.

— Ի՞նչ ըսել կ'ուզէք:

— Ըսել կ'ուզեմ որ, ինչպէս քիչ մը առաջ ակնկնը դի-տել տուաւ, ատկաէն վտանգներն դարմանելու ժամանակ է, պատասխանեց Սարգիս որուն ձայնը որքան ալ անվրդով ցոյց տալ կ'ուզէր ինք, թեթեւապէս կը դողդղար յուզումէն:

— Հոգի մը վտանգեցինք, գոչեց կինը որուն դէմքը յաղթականօրէն կը ճառագայթէր:

— Օ՛ն ուրեմն ճամբայ ելլենք, բառ. դեղին երիտասար-դը նաւակը իր աջ բազուկովը հեռացնելով ցամաքէն:

## ԳԼՈՒԽ Ը.

# ՀԱՅՐ ԵՒ ՈՐԴԻ

*Երբոր Ալի Օսման իր ծովեզերեայ տունը հասաւ, բոլորովին լուսցած էր, թէեւ արեւը տակաւին չէր երեւցած հորիզոնին վրայ:*

*Սպասաւորներէն մէկ քանին արդէն ոտքի վրայ էին եւ երբ դուռը զարկաւ, անմիջապէս ծառայ մը եկաւ բանալու:*

*— Հայրս եկա՞ւ, հարցուց Ալի Օսման ներս մտնելով:*

*— Ո՛չ, էֆէնտի, պատասխանեց ծառան:*

*Առանց ուրիշ խօսք մը ուղղելու, երիտասարդը ուղղակի իր սենեակը եկաւ, որ, ինչպէս ընթերցողները գիտեն, ծովահայեաց ընդարձակ սրահ մըն էր:*

*Թէեւ ամբողջ գիշերը անքուն անցուցած էր, այսուհանդերձ Ալի Օսման իր կրած յուզումներէն այնքա՛ն ջղագրգռուած էր որ բնաւ քնանալու տրամադիր չէր:*

*Սիկառէթ մը վառեց եւ սկսաւ ժուռ գալ սենեակին մէջ:*

*Նախորդ գիշերուընէ ի վեր բոլոր իրարու յաջորդող դէպքերը վերյիշեց. երբ միտքը բերաւ անծանօթ կնոջ խօսքերը չի կրցաւ բարկութեան շարժում մը զսպել.*

*— Ի՞նչ տարօրինակ կին, ըսաւ ինքնիրեն, ինչպէ՛ս կարելի է երեւակայել որ թուրքուհի մը այդպիսի գաղափարներ կրնայ ունենալ, այդպիսի գործերու կրնայ խառնուիլ ու այսպէս բացէ ի բաց կեանքը վտանգել...:*

*Յետոյ միտքը բերաւ Սադըքը, իր բարեկամն ու ընկերը. որ յանկարծ, այդ կնոջ խօսքերէն կախարդուած, վայրկենապէս թողած էր ամէն բան, անծանօթ ու ահաւոր վտանգներու յանձնուած թուէր:*

Սատըքի ըրածը իրեն յիմարական թուեցաւ նախ. յետոյ աւելի ծանր անիրաւութիւն մը ստեղծեց իր մտքին մէջ, իր բարեկամին մասին:

— Գուցէ վախցաւ նաւակով եկելու, մտածեց, գուցէ աւելի ապահով գտաւ այդ անծանօթներուն հետ անյայտանալ, քան թէ՝ ինծի հետ տուն վերադառնալ:

Ու այս մտածումը իրեն յիշեցուց այն վտանգաւոր կացութիւնը՝ որուն ինք մատնուած էր այս միջոցին:

— Ի՞նչ պիտի ըլլայ այս ամէնուն հետեւանքը, խորհեցաւ սարսափով, ի՞նչ բացատրութիւն պիտի տամ առանց նաւակի տուն վերադառնալուս … մինչեւ Եէնի Մահալլէ երթալէ ետքը: Երկու անմոռանալի եւ անհնածանր կասկածանքներու ենթարկուած եմ այս միջոցիս, երկու խռովութիւնները քանի մը ժամէն պէտք յայտնուին եւ հարկ պիտի ըլլայ ո եւ է կերպով բացատրել:

Ալի Օսման բաւական ատեն ժուռ եկաւ սենեակին մէջ, խորապէս խռովեալ մէկ քանի սիկառէթ ծխելով: Արեւը ալ բոլորովին բարձրացեր էր հորիզոնին վրայ եւ տաքութիւնը սենեակէն ներս կը թափանցէր: Երիտասարդը պատուհաններուն վարագոյրները վար իջեցուց, յետոյ ականջ դրաւ եւ լսեց որ տան մէջ երթեւեկութիւնը սկսած էր ու ամէնքը արթնցած էին: Սենեակին դրան մօտեցաւ. դուռը կղպեց, յետոյ հագուստները հանելով, երկնցաւ անկողնին վրայ:

Այս անգամ յոգնութիւնը իր ջիղերուն յաղթեց եւ քիչ յետոյ սկսաւ քնանալ:

Տակաւին խոր քունի մէջ էր, երբոր յանկարծ սենեակին դուռը զարնուեցաւ ուժգին կերպով:

— Ով է ա՞ն, հարցուց Ալի Օսման ընդհատ քունէն արթննալով.

— Ես եմ, գոչեց, ծառային ձայնը:

Ալի Օսման բնազդաբար երկիւղ մը զգաց լսելով այդ պարզ խօսքը: Իսկոյն անկողնէն ցատքեց եւ քովը, պզտիկ

սեղանի մը վրայ դրուած ժամացոյցը նայեցաւ․ կէսօրէն ժամ մը կար։ Վազեց դուռը բանալու։

— Ի՜նչ կայ, ի՜նչ կ'ուզես, ըսաւ ծառային որ ահաբեկած դէմքով մը դրան ետեւ կը սպասէր։

— Պէյ էֆէնտի, գոչեց միւսը շուարած, ձեզ կ'ուզեն կոր ... վարն են, սանդուխին չորս կողմը պաշարուած է ...։

— Հայրս եկա՞ւ, հարցուց երիտասարդը որուն գոյնը ահռելի կերպով նետած էր։

— Ո՛չ, մինչեւ հիմա չէ եկած։

Նոյն միջոցին սաստկաձայն աղմուկ մը լսուեցաւ սանդուխին վարէն։

— Անոնք են, վեր կ'ելլան կոր, ըսաւ ծառան եւ ահաբեկ կերպարանքով գլուխը սանդուխին կողմը դարձուց։

Հազիւ թէ այս խօսքերը արտասանած էր, երեք հոգի երեւցան սանդուխին գլուխը։ Ալի Օսման իսկոյն ճանչցաւ Պէշիկթաշի ոստիկանութեան երկու գլխաւոր քոմիսէրները՝ Ասլան Հալիմ էֆէնտին ու Մէհմէտ էֆէնտին, որոնց կ'ընկերանար ուրիշ անձ մը որ անծանօթ էր իրեն։

Ասլան Հալիմ էֆէնտի որ միւսներէն առաջ կը քալէր, մօտեցաւ սենեակին դրան եւ ցուրտ բարեւ մը տալով՝ ըսաւ երիտասարդին։

— Էֆէնտի, ցաւով հաղորդեմ որպէս զի մեզի հետ գաք ...։

— Ո՞ւր պիտի երթանք, հարցուց Ալի Օսման որուն յուզումը կը սաստկանար։

— Երկրորդէն ձեզի կ'ուզեն կոր, պատասխանեց ոստիկանութեան պաշտօնեան։

Այդ չարաշուք բառը լախտի հարուածի մը պէս իջաւ խե՛ղճ երիտասարդին գլխուն։

— Շատ աղէկ, թոթովեց, հիմա կը հագուիմ ու կ'երթանք, համեցէք քիչ մը վարը սպասել։

— Ո՛չ, պէտք չունի, մենք հոս դրան քով կը սպասենք,

պատասխանեց Սալահիլ Հալիմ էֆէնտի։

— Ինչպէս որ կ՚ուզէք։

Եւ Ալի Օսման պատրաստուեցաւ դուռը գոցելու և հագուելու։

— Դուռը բաց ձգեցէ՛ք, հրամայեց ոստիկանատան պաշտօնեան։

— Բայց ... փորձեց բողոքել խեղճ երիտասարդը որուն չփոթութիւնը հետզհետէ կ՚աւելնար։

— Դուռը բաց պէտի մնայ, կրկնեց միւսը խիստ ձայնով մը։

Ալի Օսման հասկցաւ որ ոեւէ ընդդիմութիւն անօգուտ էր, վհատութեամբ գլուխը ծռեց և գնաց հագուելու։

Տենդայի՛ն յուզումով մը, արագ արագ, հագուստները հագաւ և քանի վայրկեան ետքը պատրաստ էր արդէն։

— Կրնանք մեկնիլ, ըսաւ Սալահիլ Հալիմ որ միշտ դրան առջեւ կը սպասէր բայց մի իր աչքը վրայէն չհեռացնելով։

— Ձէ՛, առտուն քիչ մը գործ ունինք հոս, ըսաւ Պէչիկթաշի ոստիկանատան գլխաւոր քոմիսէրը։

— Ինչ գործ որ, հարցուց երիտասարդը զարմանքով։

— Պէտք է որ նախ սենեակդ խուզարկենք։

Ալի Օսման որչափ որ կռահած էր իր վիճակին ծանրութիւնը այսու հանդերձ այս պահանջումին վրայ, անակնկալ մը ունեցաւ և տեսակ մը ըմբոստացում զգաց։

— Ուրեմն երբեւ ամբաստանեալ յանցաւոր մը կը նկատուիմ ... ե՛ս, Արիֆ էֆէնտիի որդին ու միանգամայն ոստիկանատան նախարարին պաշտօնեան ... բայց սարսափելի բան է այս, սխալմունք մը չըլլայ գործին մէջ, գուցէ տարբեր մէկու մը համար հրահանգ տուած են ձեզի ...։

— Ո՛չ, սխալմունք չի կայ, պատասխանեց Սալահիլ Հալիմ, չոր ձայնով մը ... հայրդ արդէն տեղեակ է գործին և ինքն ալ ետքէն կը սպասէ Եըլտըզի պալատը։

— Անհաւատալի, անկարելի բան է այս կը կրկնէր խեղճ երիտասարդը հեւաղհեւաւէ բորբոքելով։

— Համբերեցէ՛ք և Թող տուէք որ մեր պարտականութիւնը կատարենք ժամ առաջ, ըսաւ քոմիսէրը քանի մը քայլ յառաջ դալով սենեակին մէջ։ Իրեն հետեւեցան նաեւ իր ընկերները, մինչ ուրիշ երկու նոր ոստիկաններ եկած կեցած էին սենեակին դրան առջեւ։

Ալի Օսման լռեց. գնաց անկիւնի բազմոցին վրայ նստաւ, գրպանէն սիկառէթ մը հանեց վառեց և համակերպութեամբ սպասեց։

Ապտիւլ Հալիմի «պարտականութիւնը կատարենք»ը իրեն յիշեցուցին բա՛ւն փակ իր խօսքերը զորս նաւակին մէջ անծանօթ կնոջ ուղղած էր իր հայրը արդարացնելու համար.

— Այո՛, մտածեց, դառն հեգնութեամբ մը. իրաւունք ունի՞ այս մարդը... իր պարտականութիւնը կը կատարէ կոր։

Մանրակրկիտ խուզարկութիւնը որուն ձեռնակեցին ոստիկանատան պաշտօնեաները ո և է արդիւնք չտուաւ։ Մէկ քանի աննշան ու անվնաս Թուղթեր ու Թերթեր միայն գտնուեցան զորս խնամով ծրարեցին ու կնքեցին, յետոյ, Ապտիւլ Հալիմ էֆէնտի որ կատարուած գործողութիւններուն կը հսկէր, Ալի Օսմանի դառնալով ըսաւ.

— Հիմա կրնանք երթալ.

Վարը, դրան առջև, կառք մը կը սպասէր, ինչպէս նաև երկու ձիեր։

Ալի Օսման, Ապտիւլ Հալիմ և իր ընկերները կառք մտան, խոկ ոստիկան մը բազմեցաւ կառապանի քով։ Ուրիշ երկու ոստիկաններ ալ ձիերը հեծան ու փոքրիկ խումբը ճամբայ ելաւ։

Սարքի բարեկամը բաւական ատեն լուռ ու մտախոհ մնաց, կառքին անկիւնը քաշուած, և անընդհատ ծխելով։ Յետոյ, գլուխը դարձնելով դէպի ձախ կողմը, ուր նստած էր Ապտիւլ Հալիմ էֆէնտի, հարցուց.

— Արդեօք ի՞նչ է ձեր Եըլտըզէն ուղևորման պատճառը։
— Չեմ գիտեր, պատասխանեց միւսը։
— Հայրս հո՞ն է։
— Այո՛։
— Դուք տեսա՞ք զինքը։
— Այո՛։

Խօսակիցը այնքա՜ն չոր ու ցուրտ կերպով կը պատասխանէր իր հարցումներուն որ երիտասարդը չհամարձակեցաւ աւելի երկարելու իր հարցումներուն շարքը, մանաւանդ որ տեսաւ թէ որ եւ է բան չպիտի կրնար իմանալ այդ մարդէն։ Արդէն պէտք չունէր իր դէմ ձեռք առնուած միջոցներուն մասին երկար բարակ միտքը չարչարելու։ Ապահովաբար Նաւակով փաշային հետեւանքն էին ասոնք։ Բայց ի՞նչ իմացած էին, ի՞նչ բան գիտէին իրենց մասին եւ ի՞նչ բան չէին գիտեր. ահա՛ կարեւոր կէտը եւ այս մասին ինք չէր կրնար բան մը գուշակել։ Այսուհանդերձ Ալի Օսման միշտ սիկառէթ ծխելով հանդերձ մտքին մէջ կը պատրաստէր իր պաշտպանողականը, իրեն ըլլալիք հաւանական հարցումներուն պատասխանները։

Կառքը այնքա՛ն արագ կ՚ընթանար որ, հակառակ երկար ու խորտուբորտ ճամբուն, երեք քառորդէն հասած էին Եըլտըզի պալատին մեծ դրան առջեւ ուր պահակներ կը սպասէին Կառքը առանց արգելքի պարտէզ մտաւ եւ ուղղակի իր ճամբան շարունակեց։

— Կ՚երեւայ որ Չիթ քէօշկին պիտի տանին զիս, մտածեց երիտասարդը ու թեթեւ սարսուռ մը անցաւ բովանդակ մարմինին վրայէն։

Այս ճգնաժամային վայրկեանին հէ՛գ տղան իրմէ աւելի հօրը կացութեան վրայ խորհելով կը տանջուէր։ Եէնի Մահալլէի գործողութեան անյաջողութիւնէն ետքը այս նոր հարուածը, բոլորովին կրնար ջախջախել անոր ապագան ու զինքը վարկաբեկ ընել Սուլթանին աչքին։

— Բարով խերով Սարըգ երէկ իրիկուն եկած չըլլար,

կ'ըսէր ինքնիրեն. իր բարեկամին դէմ տեսակ մը թշնամութիւն զգալով։

Կառքը կեցաւ Չիթ Քէօշկի մուտքի դրան առջև և կառապանին քով նստած ոստիկանը իսկոյն վար ցատկելով դրունակը բացաւ։

Ամենէն առաջ Մէհմէտ էֆէնտին որ դիմացը նստած էր, վար իջաւ, յետոյ Ալի Օսման և Ապտիւլ Հալիմ, ու երեքը մէկէն մտան քէօշկին մեծ դուռնէն ներս ու սանդուխէն վեր ելան։

Ընդարձակ ու զարդարուն սրահէ մը անցնելէ ետքը, մտան աւելի փոքր խուց մը որ կարմիր թաւշապատ թիկնաթոռներով ու նստարաններով կահաւորուած էր ու գետինն ալ պարսկական թանկարժէք գորգով մը ծածկուած։

— Դուք հոս քիչ մը սպասեցէ՛ք, ըսաւ Ապտիւլ Հալիմ և դուռ մը բանալով՝ անյայտ եղաւ։

Մէհմէտ էֆէնտի թիկնաթոռի մը մէջ նստաւ մինչ Ալի Օսման, միշտ ջղագրգիռ ու յուզուած վիճակի մէջ, սկսաւ ժուռ գալ խուցին երկայնքը, նոր սիկառէթ մը վառելով։

Հինգ վայրկեան ետքը Ապտիւլ Հալիմ վերադարձաւ և, առանց բառ մը արտասանելու, ինքն ալ ընկղմանեցաւ թիկնաթոռի մը մէջ։

Քանի վայրկեանները կը սահէին, այնքա՜ն կ'աւելնար Ալի Օսմանի յուզումն ու մտատանջութիւնը։ Ի զո՜ւր կը ջանար իր պաղարիւնութիւնը պահել ու անտարբեր կերպարանք մը առնել՝ անընդհատ իր հօրը պատկերը կը ցցուէր աչքին առջև.

— Նոյնիսկ այս գործին մէջ եթէ անմեղութիւնս հաստատուի, կը խորհէր, նորէն կասկածանքը պիտի մնայ միշտ ու հայրս երբեք պիտի իյնայ։

Յանկարծ սենեակին դուռը բացուեցաւ ու դրան մէջ երեւցաւ սեւ ռըտէնկօթ հագած սպասաւոր մը։

— Ալի Օսման էֆէնտի, ներս հրամմեցէք, ըսաւ չոր ու հանդիսական ձայնով մը։

Երիտասարդը թեթեւ մը սարսռաց, այսու հանդերձ բոլոր կորովն ու քաջութիւնը ժողվեց, ձեռքի վառած սիկարէթը մոխրամանի մը մէջ նետեց ու հաստատ քայլերով հեռացաւ ծառայէն:

Երկու սպասաւոր սրահներէ անցնելէ ետքը, ծառան դուռ մը բացաւ, մէկ կողմ քաշուեցաւ եւ ըսաւ.

— Ներս համեցէք:

Ալի Օսման ներս մտաւ եւ դուռը ետեւէն գոցուեցաւ:

Երկար գրասեղանի մը առջեւ, թիկնաթոռի մը մէջ, բազմած էր չերքէզ Մէհմէտ փաշա, խոժոռ դէմքով մը եւ իր խոշոր մօրուքը շոյելով յամրաբար: Իր աջ կողմը, ուրիշ թաւշապատ թիկնաթոռի մը մէջ ընկողմանած էր Սուլթանին սիրական քարտուղարը Իզզէթ փաշա, մռայլ ու չարաշուք կերպարանքով մը: Պալատական այդ երկու կարեւոր անձնաւորութիւններուն ներկայութիւնը ա՛լ աւելի տագնապեցուց երիտասարդը որ սակայն կրցաւ արտաքնապէս անվրդով ցոյց տալ ինքզինքը եւ քանի մը քայլ յառաջ գալով ակնածանքով բարեւեց երկու փաշաները եւ ձեռքերը փորին վրայ, խոնարհ դիրքով մը կեցաւ:

— Աւելի մօտ եկէ՛ք, հրամայեց Մէհմէտ փաշա, չեշտակի երիտասարդին աչքերուն մէջ նայելով, կարծես զայն աւելի անդրադառնալու համար:

Ալի Օսման քանի մը քայլ եւս առաւ եւ մօտեցաւ գրասեղանին մօտ դրուած աթոռի մը:

— Աւրիֆ էֆէնտիի որդին՝ Ալի Օսման էֆէնտին դո՞ւք էք, հարցուց Մէհմէտ փաշա միշտ նոյն խոժոռ դէմքովը:

— Այո՛, փաշա էֆէնտի, ծառանիդ եմ:

— Լա՛ւ, նստեցէ՛ք:

Երիտասարդը կրկին գետնամած բարեւ մը տուաւ եւ աթոռին վրայ նստաւ, երկու ոտքերը քով քովի բերած եւ գլուխը դէպի առջին հակած:

Վայրկեան մը լռութիւն տիրեց: Ճնշող, ազդեցիկ լռու-

թիւն մը։ Յետոյ, Մէհմէտ փաշա որ աջ ձեռքով իր երկար մօրուքը կը շոյէր, ձեռքը վար առնելով՝ համր ու հեշտ ձայնով մը ըսաւ, ամէն մէկ բառին վրայ շեշտելով։

— Ալի Օսման էֆէնտի, ամենածանր ամբաստանութիւններ կան ձեր վրայ։

— Ի՞նչ ամենածանր ամբաստանութիւն կրնայ ըլլալ իմ վրաս, քանի որ ամենահաւատարիմ կերպով պաշտօնս կատարած եմ միշտ, պատասխանեց երիտասարդը թեթեւօրէն դողահար ձայնով մը։

— Ալի Օսման էֆէնտի, շարունակեց փաշան, ուրանալը աւելորդ է. ամէն բան գիտենք եւ ձեր շահը կը պահանջէ որ ամէն բան մէկէն ի մէկը խոստովանիք անմիջապէս, տալ գուցէ միայն ձեր յանցանքը կրնաք թեթեւցնել եւ արժանանալ կայսերական բարձր ներողութեան։

— Բայց ի՞նչ է իմ վրաս եղած ամբաստանութիւնը, ես ո եւ է յանցանք չեմ կրնար կոր գտնել վրաս։

— Երէկ գիշեր դուք, ձեր անձնական նաւակը, Եէնի Մահալլէի մէկ ամայի ծովեզերքէն փախցուցեր էք, չորս անձեր, որոնց մէն կին մըն է, զորս ձերբակալելու համար օրէրէ ի վեր ոստիկանութիւնը կը հետապնդէր, ինչ որ դուք ալ շատ լաւ գիտէիք իբրեւ ոստիկանութեան նախարարութեան պաշտօնեայ։

Երիտասարդը այս սոսկ ամբաստանութեան վրայ նոր յուզում մը չմատնուեցաւ։ Արդէն գիտէր թէ ասոր համար զինքը հոն բերած էին, բայց կ'ուզէր որ իրենք հարցաքննողները ըսեն այդ բանը։

— Փաշա էֆէնտի, ձեզի սուտ ու սխալ տեղեկութիւն տուած են, ըսաւ հաստատ ձայնով մը։

— Ինչպէ՞ս, գոչեց Մէհմէտ փաշա զայրացած շեշտով մը ակնատես վկաներ կան այս բաներս հաստատող եւ կը համարձակիք ասոնք ուրանա՞լ ... բայց, ինչպէս ըսի, այդ կերպով աւելի կը ծանրացնէք ձեր վիճակը ու միեւնոյն ա-

էն ուրիշ անձի մըն ալ վիճակը որուն բախտը ձեռքինին կապ-
ուած է . . . :

Ալի Օսման հասկցաւ որ իր հօրը կ'ակնարկէր ու այս ակնարկութիւնը բազէ մը զէնքը առին ու վրայ բրաւ, այ-
ուհանդերձ չուզեց զայն յուզումը և բսաւ.

— Պատուոյս վրայ կ'երդնում որ ես ո՛չ ոք փախցուցած եմ և ինձ վերագրուած ամբաստանութիւնը ծայրէ ծայր զըր-
պարտութիւն է :

Այս բաները այնքան ուժգին հաստատ չեչտով մը ար-
տասանեց որ Մէհմէտ փաշա պահ մը զարմացած քովինին նայեցաւ. Իզզէթ փաշա որ ձեռքը թուղթ մը բռնած՝ իր է անոր ընթերցումովը խորասուզուած զբաղած երևոյթ մը ու-
նէր, գլուխը վեր առաւ ու ինքն ալ զարմացական ակնարկ մը ուղղեց երիտասարդին :

Ալի Օսման որ համարձակութեամբ գլուխը վեր առած էր, չեչտակի նայեցաւ Մէհմէտ և Իզզէթ փաշաներուն և ան-
դրդուելի մնաց :

— Սուտ կը խօսիք կոր, գոչեց Մէհմէտ փաշա ձեռքը սեղանին զարնելով :

— Հօրս վրայ կ'երդնում որ ճշմարիտ է բսածս, պա-
տասխանեց երիտասարդը ամենայն համարձակութեամբ :

— Երէկ գիշեր ուրո՞ւ հետ տուն եկաք.

— «Ծաֆաք»ի խմբագիր Սատըք պէյի հետ որ իմ դպրո-
ցական ընկերս է :

— Ի՞նչ ըրիք տանը մէջ :

— Որովհետև ուշ եկած էինք, քիչ մը եօքը կերակուր առինք, յետոյ, վեր, իմ սենեակս եկանք ու բաւական ա-
տեն խօսակցեցանք :

— Յետո՞յ :

— Յետոյ որովհետև ծովը հանդարտ էր և լուսին կար, որոշեցինք նաւակով պտոյտ մը ընել :

— Ո՞վ առաջարկեց այդ պտոյտը :

դէպի ինծի կուգային, գլխ հանդիպակաց չալխի թաղէն, աւելի հեռուն գացի, այնպէս որ քանի վայրկեանի չափ գուցէ աւելի տեւեց բացակայութիւնս: Երբոր վերադարձայ, նաւակը իր տեղը չէր, ի զուր, շուարած չորս կողմս նայեցայ, փնտռեցի, ո՛չ նաւակ կար ո՛չ Սաւուրք պէյ. ծովուն վրայ, հեռուն, Պէյքօզի եղերքին մօտ նաւակ մը կը նշմարուէր լուսնի լուսով, որ նոյն միջոցին ծովուն վրայ գտնուող միակ նաւակն էր և ուրուն մէջ քանի մը հոգի կը նշմարուէին... Անթարթելի թէ այդ ըլլալու էր իմ նաւակս, բայց չկրցայ բացատրել թէ ինչո՞ւ Սաւուրք պէյ առանց ինծի սպասելու հեռացած էր ցամաքէն և թէ ո՞վ կրնային ըլլալ նաւակին մէջ գտնուողները... բայց այս բանծս պարզ անթարթութիւն մըն է, գուցէ տեսած նաւակս իմս չէր: Այս անակնկալ ձախողութեանն սիրտս նեղացած ու մտատանջ ընկերոջս դէմ զայրացած, որուն ընթացքը մինչև հիմայ անբացատրելի կը գտնէի, ծովեզերքէն սկսայ քալել, մինչև Եէնի մահալէի նաւամատոյցը: Կէս գիշեր շատոնց անցած էր և ո՛չ ոք կար մէջտեղ: Ճամբաս շարունակեցի մինչև Պէօյիւքտէրէ և լուսնի լոյսէն քաջալերուած, որոշեցի մինչև տուն քալել, ուր հասայ արշալոյսին և անմիջապէս, յոգնած զարկած, անկողին նետուեցայ ուր խոր քունով կը քնանայի երբ եկան զիս արթնցնել հոս բերելու համար:

Ալի Օսման լսեց, բոլոր այս պատմութիւնը առանց ու-անփոփոխ կերպով ըսելէ ետքը: Գիտնալով թէ ինչ զանի վրայ զինքը պիտի հարձափորձէին և թէ ինչ ամբաստանութեան տակ կը գտնուէր, նախապէս պատրաստած էր այս արդարացուցիչ պատասխանը, որ կրնար շատ ընդունելի համարուիլ և զինքը փրկել պատասխանատուութենէ:

Մէհմէտ փաշա որ ուշադիր մտիկ ըրած էր կրճատարւին պատմութեան, ամեն ամեն հանդարտ երևոյթով մը գլուխը շարժելով, սպառ. մօրուքը շոյեց և մեղմ ձայնով մը որ իր քիչ առաջուան խիստ շեշտէն բոլորովին կը տարբերէր, ըսաւ.

— Ուրեմն դուք Եէնի Մահալլէի մէջ հարիւրապետ Շիւքրի պէյէն զատ ո՛չ մէկու մը չհանդիպեցա՞ք:

— Ոչ մէկուն, փաշա էֆէնտի, պատասխանեց Ալի Օսման որ սրտին խորէն կը հրճուէր տեսնելով որ իր հնարած պատմութեան մասին կասկած չէր յարուցուեր:

— Գիտէ՞ք որ այն չորս անձերը որոնք կ'ուզէինք ձերբակալել երէկ իրիկուն Եէնի մահալէի մէջ, յաջողած են փախչիլ այն տունէն որուն մէջ պաշարուած էին:

— Այո՛, գիտեմ, այդ ցաւալի իրողութիւնը Շիւքրի պէյ հաղորդեց ինծի երբոր զինքը տեսայ:

— Գիտէ՞ք նաեւ որ տունէն փախչելէ ետքը, ձեր նաւակովը ասիական եզերքը անցած են:

— Ոչ՛, չեմ գիտեր, բայց ինչպէս ըսի, կ'ենթադրեմ որ կրնայ այդպէս եղած ըլլալ, պատասխանեց երիտասարդը ամենաբնական ձայնով մը:

— Եէնի Մահալլէէն մինչեւ Պօյաճը գիւղ ձեր տունը հասնելնիդ. ճամբան մէկու մը չհանդիպեցա՞ք:

— Ոչ, այդ ժամուն արդէն ո՞վ դուրսը կը մնայ որ:

— Իրաւունք ունիք:

— Կը կասկածի՞ք որ ձեր բարեկամը՝ Սարըք մեղսակից ըլլայ այն չորս անձերուն որոնք ձեր նաւակովը փախած են:

— Չեմ կարծեր:

Վայրկեան մը կրկին լռութիւն տիրեց: Ալի Օսման բոլորովին հանդարտած էր և գրեթէ այլ եւս վստահ էր թէ շնորհիւ իր հնարած պատմութեան օձիքը պիտի կրնար դիւրաւ ազատել:

Մէհմէտ փաշա գրասեղանին վրայ դրուած զանգակը հնչեցուց և սեւազգեստ ծառայ մը ներս մտաւ:

— Արիֆ էֆէնտին հոս հրամցո՛ւր, ըսաւ ներս մտնողին:

Ծառան ակնածանքով խոնարհութիւն մը ըրաւ և հեռացաւ:

Ալի Օսման իր հօր անուան արտասանուիլը լսելով՝ մէկէն

ցնցում մը զգաց, սակայն վայրկենապէս իր պաղարիւնութիւնը վերստացաւ։

— Կ՚երեւայ որ մեզ պիտի երեւցնես և երկուքս մէկ պիտի ճամբեն, մտածեց։

Երկու վայրկեան ետքը հայրը ներս մտաւ։ Արիֆ էֆէնտի յիսուն տարեկանի մօտ, դէր ու կլոր մարդ մըն էր, սպիտակախառն բոլորակ մօրուքով, թաւ յօնքերով, լայն ու խոշոր քիթով։ Բիչ մը խոժոռ դէմք մը ունէր որ պատկառանք կ՚ազդէր իրեն մօտեցողներուն։ Երեսուն տարիէ ի վեր ատենականութեան նախարարութեան մէջ կը պաշտէր, ուր իբրեւ պարզ գրագիր մտած էր և ուր այժմ բարձր դիրք մը կը գրաւէր, թէ սուլթանին և թէ նախարարին կատարեալ վստահութիւնը վայելելով։ Արիֆ էֆէնտի ճանչցուած էր իբրեւ ուղղամիտ ու անկաշառ մէկը, ինչ որ հազուագիւտ արժանիք մըն էր Համիտեան շրջանի կառավարական ու մանաւանդ ատենականան պաշտօնեաներուն համար։

Սուլթան Համիտ որ հակառակ մեծ կաշառող մը և բարքերու ապականիչ մը ըլլալուն՝ միշտ կը գնահատէր ուղղամտութիւնը երբ ի նպաստ իրեն կը գործուէր, մասնաւոր համարում մը ունէր Արիֆ էֆէնտիի վրայ, և զայն միշտ իր հաւատարիմ ծառաներուն կարգը դասած էր։

— Թիկնաթոռին վրայ հրամմեցէ՛ք Արիֆ էֆէնտի, ըսաւ Մէհմէտ փաշա ցոյց տալով իր ձախ կողմը դրուած պարապ թիկնաթոռ մը։

Արիֆ էֆէնտի իրեն մատնանշուած անկը բռնելէ առաջ՝ ակնարկ մը նետեց իր աղջկան՝ որ շեշտակի իրեն կը նայէր։ Հայր ու աղջկան միջեւ փոխանակուած ակնարկները, որքան ալ վայրկենական եղան, այսուհանդերձ շատ նշանակալից էին։ Հօրը ակնարկին մէջ սրտմտութիւն, մեղադրանք ու միանգամայն խանդաղատանք կար, մինչ աղջկանը մէջ զարմանք ու սարսափ։

— Ի՞նչ ունի հայրս որ ինծի դէմ այսքան բարկութեամբ

կը նայի, խորհեցաւ մտատանջութեամբ Ալի Օսման երբ Արիֆ պէյ արդէն ակնարկը իր վրայէն հեռացուցած և ցոյց տուած թիկնաթոռին մէջ նստած էր:

Չէրքէզ Մէհմէտ փաշա գրպանէն սիկարէթի տուփը հանեց, հատ մը հրամցուց Արիֆ էֆէնտիին և յետոյ կեղծ գոհունակութեամբ մը ըսաւ.

— Արիֆ էֆէնտի, մեր և ձեր կասկածները կ'երեւայ որ անհիմն են եղեր բարեբախտաբար, ձեր զաւկին յայտարարութենէն կը տեսնուի որ ինք Եէնի Մահալլէ, ամայի ծովեզերք մը ցամաք ելած է նաւակէն, բնական պէտք մը գոհացնելու համար և վերադարձին տեսած է որ նաւակը անյայտ եղած է ու ինքն ալ ստիպուած է Եէնի Մահալլէէն մինչև Պօյաճը-գիւղ ոտքով երթալ, առանց որ և է բանէ մը տեղեկութիւն ունենալու:

Այս խօսքերը փոխանակ ուրախացնելու Արիֆ էֆէնտին՝ անոր աչքերուն մտատանջութիւնը աւելի խտացուցին:

— Չեմ գիտեր թէ ի՛նչ ըսել կ'ուզէք ըսաւ:

— Ըսել կ'ուզեմ որ, ըստ ձեր զաւկին յայտարարութեան, ինք բոլորովին անմեղ է իր վրայ ծանրացող ամբաստանութենէն:

— Այսպէ՞ս յայտարարեց, ըսաւ Արիֆ էֆէնտի իր զաւկին դառնալով:

— Այո՛, պատասխանեց Ալի Օսման գլուխը խոնարհեցնելով:

— Իբրև քու մեծաւորդ և իբրև քու հայրդ կը հրամայեմ որ ճշմարտութիւնը խոստովանիս բացարձակապէս, գոչեց Արիֆ էֆէնտի որուն ձայնը յուզումէն կը դողդղար:

— Ճշմարտութիւնը խօսեցայ արդէն, պատասխանեց երիտասարդը, որուն մինչև այդ վայրկեան պահած պաղարիւնութիւնը տեղի տալ սկսած էր նորօրինակ խռովքի մը:

— Զաւակս, շարունակեց Արիֆ էֆէնտի, ձայնը մեղմելով, կ'աղաչեմ, կը պաղատիմ որ անմիջապէս ճշմարտութիւնը

անցն ի անցօք պատմես, առանց բան մը ծածկելու և որչափ ալ ծանր ըլլայ գործած յանցանքդ, վստահութիւն ունենաս մեր բարեգութ սուլթանին անհուն ներողամտութեանը վրայ...: Պէտք է որ անմիջապէս ըսես ամէն բան, սատոլ միայն կրնաս փրկել թէ՛ ինքզինքդ և թէ հայրդ:

Ալի Օսման քէչեց թէ Մէհմէտ փաշա ևս գրեթէ նոյն բանը ըսած էր իրեն: Ուզեց հօրը ապաշխանքին անցքն տալ ու ճշմարտութիւնը զոր մեծ մասամբ ծածկած էր, անցնի անցօք պատմել, սակայն յանկարծ ընկրկեցաւ.

— Չէ՛, ըսաւ ինքնիրեն, բոլոր ասոնք սովորական խաղեր են և հայրս ստիպման տակ է որ այդ խորհուրդը կուտայ ինծի... պարզապէս կուզեն զիս փորձել տեսնելու համար թէ իրա՞ւ էին ըսածներս:

— Փաշա էֆէնտիին ըրած յայտարարութեանս վրայ, որ զուտ ճշմարտութիւնն էր բառ մը չունիմ աւելցնելիք, պատասխանեց հաստատ ձայնով մը:

— Բայց թշուառակա՛ն. գոչեց հայրը, ականատես վկաներ կան որոնք քու ըսածներդ կը ջրեն բացարձակ կերպով:

Այս յայտարարութիւնը սարսափեցուց երիտասարդը որ դողահար ձայնով մը գոչեց:

— Ինչպէ՞ս...:

— Այո՛, միջամտեց Ջէրքէզ Մէհմէտ փաշա որ չէր ուզեր հօր և զաւկին միջև խօսակցութիւնը աւելի երկարել և կը նախընտրէր ինքն իսկ յառաջ տանիլ հարցաքննութիւնը, այո՛, չատ ճիշտ է ձեր էֆէնտի հօր ըսածը, ականատես վկաներ կան որոնք կը ջրեն ձեր յօրինած պատմութիւնը որ առանց անոնց կրնար ճշմարտանման ըլլալ: Ենի Մահալլէ, Փրրընաքի զբօսավայրին առտուը, ամայի ծովեզերքը ցամաք ելլողը դուք չէ՞ք՝ այլ ձեզ ընկերացող Սատըք պէյը, որ իր բնական պէտքը գոհացնելէ ետքը, վերադարձած է նաւակ և դուք ալ իրեն սպասած և միւս չորս փախստականներուն

հոս մեկնած էք դէպի Պէյքօզ... ահա՛ ճշմարտութիւնը զոր կը փորձէք մենէ ծածկել։

Ալի Օսման այս խօսքերը լսելով չանթահար եղաւ. ուրեմն այդ մարդիկը ամէն բան գիտէին և հարցաքննութիւնը պարզ ձևականութիւն մըն էր...։ Հիմա կը հասկնար թէ ինչու իր հայրը այնքա՜ն խոժոռ նայուածք մը ուղղած էր իրեն ներս մտած ատեն։ Եւ սակայն ինք անմեղ էր, ո և է յանցաւորութիւն չունէր այդ չար անձերուն հետ, որոնց ձերբակալումը կը բաղձար անկեղծօրէն։ Եւ եթէ անոնց փախուստին նպաստած էր, ատիկա տեղի ունեցած էր հակառակ իր կամքին ու մասնաւոր պարագաներու տակ։

— Իցի՛ւ թէ ճշմարտութիւնը կէս առ կէս պատմած ըլլայի, կը խորհէր, հիմա անել կացութեան մը մատնուեցայ... ստեցի ու ջանացի ծածկել իրողութիւնը, ինչու իրաւունք կուտայ իրենց վրաս կասկածելու և զիս իբրև այդ մարդոց մեղսակիցը նկատելու։

Բոլոր այս դառն մտածումները խեղճ երիտասարդին մաքէն կ՚անցնէին փայլակնացէս ու չուարած կը մնար, առանց կարենալ խօսք մը ըսելու։

Հայրը անտեսելով իր զաւկին վարանոտ ու այլայլած կերպարանքը, ինքն ալ վրդովեցաւ ու կրկին յուզուած ձայնով մը աղերսեց.

— Աստուծոյ սիրոյն, խօսէ՛ ճշմարտութիւնը...։

— Կ՚երդնում որ ես անմեղ եմ, գոչեց Ալի Օսման, բոլորովին անմեղ...։

— Անմեղ մարդը չսար, ըսաւ Արիֆ Էֆէնտի, խօսէ՛ ճշմարտութիւնը։

— Ի՞նչպէս, դո՞ւք ալ իմ վրաս կը կասկածիք, ըսաւ խեղճ տղան յուսահատ շեշտով մը։

— Կը կասկածիմ, քանի որ կը տեսնամ թէ ճշմարտութիւնը չես խօսիր կոր։

— Ձեր գլխուն վրայ, մօրս գլխուն վրայ կ՚երդնում որ

եւ այդ փախստականներուն հետ յարաբերութիւն չունիմ, եւ զանոնք չփախցուցի, եւ անմեղ եմ, գոչեց Ալի Օսման յուզումէն դողահար ձայնով մը եւ աչքերը արցունքով լեցած։

Արիֆ էֆէնտի որ մինչեւ այդ ատեն իր զաւկին յանցաւորութեանը համոզուած կը թուէր, անոր այս բանն ու անդրդուելի բողոքէն զգածուեցաւ, հակառակ թէ իր զաւակը ճակատագրային դիպուածի մը գոհ կ'երթար, ուստի ոտքի ելաւ եւ զրահապանին մօտենալով՝ պահ մը ցած ձայնով խօսեցաւ Մէհմէտ փաշայի հետ, որ իր խօսքերուն գլխի հաւանութեան շարժումներով կը պատասխանէր։

Երբ խմբին խօսակցութիւնը աւարտեցին, փաշան ոտքի ելաւ եւ ըսաւ.

— Ահա մենք կը մեկնինք ու ձեզ առանձին կը թողունք ձեր հօրը հետ, գուցէ ինչ որ մեզի չուզեցիք խոստովանիլ անոր կրնաք ըսել առանձին, միայն թէ պէտք կը զգամ իմացնելու որ ձեր կեանքը ձեր ճշմարտախօսութենէն կախեալ է։

Ու Մէհմէտ փաշա այս պատուէրները ընելէ ետքը, մեկնեցաւ Իզզէթ փաշայի հետ որ բնաւ բերանը չէր բացած։



## ԳԼՈՒԽ Թ.

# ԱՊՏ-ԻՒԼ-ՀԱՄԻՏԻ ՏԱԳՆԱՊԸ

*Եէնի Մահալլէի մէջ պաշարուած և յետոյ անակնկալ կերպով խոյս տուած չորս անձերու անյայտացումը շանթահարած էր Ապտիւլ Համիտը։ Ոստիկանութեան նախարարը և պալատական թիկնապահները երբ իրենց արշաւանքէն ձեռնունայն վերադառնալով՝ ստիպուած էին մանրամասնօրէն պատմել գլուխներնուն եկած ձախողանքը, Ապտիւլ Համիտ սոսկալի բարկութեան մը մատնուած էր։*

*Օրերէ ի վեր այդ խորհրդաւոր ոճիրներու սարսափին տակ կ'ապրէր, զգալով որ անոնք սովորական ոճրագործութիւններ չէին, այլ քաղաքական անծանօթ նպատակի մը համար չափուած ձեւուած ծրագրի մը կանոնաւոր գործադրութիւնը որ անայլայլ պաշտպանութեամբ մը կը կատարուէր, իր իսկ աչքերուն տակ, մինչեւ այն ատեն նմանը չտեսնուած յանդգնութեամբ մը։*

*Ի՞նչ էր այդ քաղաքական նպատակը։ Ասիկա շատ դըժուար չէր գուշակել։ Վերջ մը տալ այն բռնակալ րէժիմին որուն տակ Թուրքիա կը հեծէր քառորդ դարէ ի վեր և որուն առանցքն ու կեդրոնն էր բո՛ւն իսկ ինքը։ Այսպէս ուրեմն, կռիւը կը մղուէր իր անձին դէմ. Ապտիւլ Համիտ այս մասին կասկած չունէր և ասոր համար էր որ խորհրդաւոր ոճիրներու յաջողութենէն ի վեր՝ սարսափի մատնուած՝ ժամ առաջ կ'ուզէր ձեռք անցընել մութին մէջ գտնուող այն մարմինը որ կը համարձակէր, տիրող ընդհանուր ստրկութեան մէջ, գլուխ բարձրացնել։*

*Եւ ահա՛ ճիշդ այն րոպէին ուր կը յուսար այդ թաքուն*

զօրութիւնը իր ճանկին մէջ ունենալ, անիկա դիւթական ոգիի մը պէս, իր աչքերուն տակ կ'անյայտանար։

Երբ ձախողանքի լուրին տակ իր զգացած բարկութիւնը քիչ մը մեղմացած էր ու կարող եղած էր պաղարիւնութիւնը գտնալ, իր քով կանչել տուած էր Թահսինի փաշան զոր պահ մը առաջ, կատաղութեան նոպայի մը մէջ, դուրս վռնտած էր իր ներկայութենէն, անլուր նախատինքներ տեղալով անոր գլխին։

— Հիմա, անմիջապէս, Ենի Մահալլէ մարդ ղրկեցէ՛ք ու այդ տունը այրել տուէք, հրամայած էր, տան մէջ գտնուած հորը, մինչեւ բերանը քարով լեցնել տալէ ետքը...։

Հրամանը բնականաբար, անմիջապէս փութացած էին գործադրել եւ փախստականները, ինչպէս գիտենք, իրենց նաւակին մէջէն, Պէյքօզի բացերը, տեսած էին իրենց տան այրիլը։

Ապտիւլ Համիտ իր ձիւաղային խելքովը կրցած էր կռահել թէ այդ մարդիկը տան մէջէն անյայտացնողը հորն էր. ծածուկ թաքստոց մը։ Զայն քարով լեցնել տալով կը յուսար զանոնք յաւիտեան թաղել անոր մէջ։ Արդարեւ խելացի գաղափար, միայն թէ քիչ մը ուշ մնացած։

Ինքն ալ զգացած էր այդպէս ըլլալը եւ հրամանը արձակելով չէր գոհացած ու նորէն իր կատաղութիւնը թափած էր շուրջի պաշտօնեաներուն գլխուն։

Բարեբախտաբար արշալոյսին մօտ փախստականներու ձերբակալման մասին նոր լուրեր ունեցած էին։ Պարախըզլան Խօմէր, ինչպէս տեսանք, Թիկնապահ Զիա փաշայէն հինգ ոսկի նուէր առնելէ ետքը, յուսահատ ու գլխիկոր մեկներ էր այն տունէն ուր կը յուսար վերջնական յաղթանակ մը տանիլ։ Բայց Խօմէր, տունէն մեկնելով հանդերձ, տակաւին չէր ուզած ինքզինքը բոլորովին պարտուած համարել։ Յամառութեամբ շրջեր էր տան բոլորտիքը, հետք մը, նշան մը գտնելու համար. յետոյ լերան կողմէ բարձրացեր էր բաւական վեր

ու հանկէ դիտեր էր շրջակայքը որ լուսնի լուսով լուսաւորուած էր։ Հեռուն՝ Թրրըլլառքի կողմերը, ծառերու ստուերներուն տակ կարծես էր նշմարել մէկ քանի մարդկային կերպարանքներ որոնք արագ արագ կը հեռանային։ Այս երեւոյթը բաւ եղեր էր Ճօմէր աղային թեւեր տալու եւ իր սրունքներուն բոլոր ուժովը վազելու դէպի այդ մարդկային տարտամ ստուերները, որոնք մերթ աներեւոյթ կ'ըլլային ու մերթ կ'երեւային մութին մէջ, ծառերու շուքէն պատսպարուած կամ լուսնի լոյսէն մատնուած։

Ճօմէր քանի կը մօտենար այդ ստուերներուն՝ այնքան իր յուզումը կ'աւելնար, քանզի կը սկսէր որոշապէս տեսնել մարդկային կերպարանքները։ Ի վերջոյ կրցաւ նոյնիսկ ստուգել որ անոնք չորս հատ էին, որոնց մին կին մըն էր։ Ալ կասկած չի կար, խուզարկուած տան բնակիչներն էին որ կը փախչէին։ Պարտիզպանը նոր կորովով մը շարունակեց իր վազքը՝ առանց աչքէն վայրկեան մը հեռացնելու այդ խուսափող ստուերները որոնց մօտենալու համար շատ դժուարութիւն կը կրէր։

Վայրկեան մը չորս ստուերներն ալ իրարու մօտենալով կեցած էին եւ կարծես կը խորհրդակցէին։ Ճօմէր շարունակեց իր վազքը եւ տեսաւ որ չորս անձերը, զորս այժմ յստակօրէն կ'որոշէր, կեցած էին, երեսնին դէպի իրեն կողմը դարձուցած եւ կարծես զինք սպասելով.

Անոնց այս դիրքը զինքը մէկէն շփոթեցուց եւ յանկարծ իր կացութեան դժնդակութիւնը աչքին առջեւ ցցուեցաւ։

— Տեսան որ ետեւնուն կ'երթամ եւ կը սպասեն հոս որ մօտենամ որպէս զի գլխուս փորձանք մը բերեն, խորհեցաւ ինքնիրեն։

Յուսահատօրէն շուրջը նայեցաւ։ Այդ չորս փախստականներէն զատ ո՛չ մէկ մարդկային արարած կ'երեւար։ Լռութիւն եւ մթութիւն կը տիրէին ամէն կողմ։

Յանկարծ տեսաւ ու փոքրիկ խումբէն երկու հոգի ան-

զատուելով, սկսան դէպի իր կողմը յառաջանալ յամր քայլերով: Այն ատեն սակաւ մը եկաւ պարախըպանին և ետ դառնալով՝ փախչիլ սկսաւ, սակայն շուտով նշմարեց որ մարդիկը ա՛լ չէին հետապնդեր զինքը:

— Գոնէ առանց տեսնուելու, ծածկաբար ու հեռուէն հետեւիլ իրենց, հասկնալու համար թէ ո՛ւր պիտի ապաստանին, ըսաւ ինքնիրեն:

Նոյն վայրկեանին՝ Ցըրըլտաքի ետեւ՝ բլրակի մը վրայ կը կը գտնուէր, ուրկէ կը նշմարուէր ծովեզերքը, որուն խարակներէն մէկուն քով նաւակ մը կեցած էր ու մէջն ալ, ղեկին կողմը, մարդ մը նստած:

— Այս ատեն ի՞նչ գործ ունի այս նաւակը ամայի ծովեզերքին քով, արդեօ՞ք փախստականներուն համար է...

Հազիւ թէ Եօմէր այդ խորհրդածութիւնները կ՚ընէր ինքնիրեն, ահա՛ տեսաւ որ իր հետապնդած չորս անձերը ծովեզերքին վրայ երեւցան ու խուժեցին նաւակին մէջ ... քիչ յետոյ հինգերորդ անձ մըն ալ եկաւ ու նաւակը ճամբայ ելաւ:

Պարախըպանը կատաղութենէ ինքզինք կ՚ուտէր:

Խելայեղ. սատուծնելով սկսաւ բլուրին գագաթէն վար վազել. առանց ուշադրութիւն դարձնելու ոտքին դպնուած քարերուն և մացառներուն որոնք ամէն մէկ քայլափոխին իր գնացքը կասեցնել կը փորձէին:

Ու երբ հասաւ ծովեզերքը և տեսաւ նաւակը որ արդէն բաւական հեռացած էր, այն ատեն Եօմէր աղա, խենթի մը պէս սկսաւ պոռալ.

— Բռնեցէ՛ք կը փախչին կոր... բռնեցէ՛ք:

Այս աղաղակը, ինչպէս տեսանք, նաւակին մէջ գտնուողները լսած էին:

Պարախըպանը տեսնելով որ իր գոռում գոչումը ո և է դրական օգուտ մը չպիտի ունենար հետ ի հետ վազեց Եէնի Մահալլէ, ուր հանդիպեցաւ հարիւրապետ Շիւքրի պէյի որ

կը պատրաստուէր, օրուան յոգնութիւններէն շնչասպառ եղած՝ քնանալու ծովեզերքը գտնուող աղտոտ պանդոկի մը խուցին մէջ:

Էօմէր աղա յուզուած ու դողդողջուն քանի մը կցկտուր բառերով պատմեց եղելութիւնը:

Ձկնորսականը որ կօշիկները և հագուստը հանած, երկնցած էր անկողնին վրայ, իսկոյն տեղէն վար իջաւ: Իր ամբողջ յոգնութիւնը մոռցած էր այս անակնկալ լուրէն մըտրակուած:

Ի՜նչ անյուսալի փառք մը պիտի ըլլար իրեն համար եթէ կարենար այդ փախստականները ձեռք ձգել:

Հազիւ տասը վայրկեան անցած՝ արդէն իրեն ընկերացող երկու ոստիկաններուն և պարախըզպանին հետ, երկթի խոշոր նաւակ մը կը մտնէր ու ճամբայ կ'ելլէր դէպի ասիական եզերքը: Ուրիշ երեք ոստիկաններ, տասնապետի մը հրամանին տակ, կը սպասէին ծովեզերքը երկրորդ նաւակով մը հետեւէն գալու համար, որովհետեւ տակաւին կարելի չէր եղած երկրորդ նաւակ մըն ալ պատրաստել:

— Միայն թէ պիտի կրնա՞նք ժամանակին հասնիլ, կը խորհէր հարիւրապետ մտատանջութեամբ ի զո՛ւր որոնելով, իր աչքերովը, Պէյքօզի կողմերը թափառող նաւակ մը:

Երկու յոյն նաւավարներն ալ որոնք իրենց նաւազի վարժ ու սուր նայուածքովը կը զննէին ծովուն բացերը, կը ջանային հետք մը նշմարել:

Յանկարծ Էօմէր աղա գոչեց.

— Տեսէ՛ք, տեսէ՛ք ծովուն վրայ սեւ կէտ մը կը շարժի–

Ու ձեռքովը մատնանիշ ըրաւ Պէյքօզի և Եէնի քէօյի բացերը:

Ամէնքը ցոյց տրուած կողմը նայեցան:

— Այո՛, ըսաւ յոյն նաւավարներէն մէկը, կարծեմ նաւակ մըն է որ Եէնի քէօյ կամ Սթէնիա կ'երթայ.

— Բայց դուն ըսիր որ անոնք Պէյքօզի ու Գավաքի մի-

ջեւ գանուած ամայի ծովեզերքը կ՚ուզուէին, ըսաւ Շիւքրի պէյ պարախզպանին դառնալով։

— Այո՛, այնպէս է, դէպի աս կողմ կ՚երթային անոնք, հաստատեց Իօմէր աղա ձեռքովը ցոյց տալով ամայի ծովեզերքը... բայց կրնայ ըլլալ որ մութերնին փախած ըլլան։

— Իրա՛ւ որ այս ժամուս այդ նաւակը կասկածելի կը թուի կոր ինծի, ըսաւ հարկուպաշը, գիշերը ուշ ատեն ծովին վրայ պտտիլը արգիլուած է, նոյնիսկ ձկնորսներուն համար... ուստի անպատճառ պէտք է հետապնդենք այդ նաւակը։

— Բայց եթէ մեր փնտռածը չէ՝ միւսներուն ժամանակ պիտի տանք փախչելու, նկատեց պարախզպանը։

Արդարեւ դժուար էր կտրուկ որոշում մը տալ։

— Եթէ միւս նաւակը պատրաստ ըլլար՝ կրնայինք մէկերնիս մէկ կողմ եւ մէկերնիս միւս կողմ երթալ հառաչեց Շիւքրի պէյ։

Կարծես իրեն այս հառաչանքին իբրեւ պատասխան նաւակ մը, Եէնի Մահալլէի նաւամատոյցէն ճամբայ ելլելով, արագ յառաջանալ դէպի իրենց։

— Ահա՛ կու գան կոր, գոչեց Իօմէր աղա ուրախութեամբ։

Այն ատեն Շիւքրի պէյ հրամայեց նաւակներուն որ կամաց կամաց թիավարեն մինչեւ որ միւս նաւակը իրենց մօտենայ։

Բայց բոլոր այդ գործողութիւնը թանկագին վայրկեաններ կորսնցնել էին իրենց համար եւ պարախզպանն ու հարկուպաշը, որոնց երկուքն ալ հաւասար եռանդով մը գործը յաջողութեամբ գլուխ հանելու համար կը հետապնդէին, անհամբերութենէ չէին կրնար տեղերնին հանդարտ նստիլ։

Հիմա, երկուքը միասին, աչքերնին դէպի Սթէնիա յառաջացող նաւակին վրայ ուղղուած էին, որ արագ արագ կը յառաջանար։

— Գոնէ զինուոր մը ունենայինք քովերնիս, ըսաւ հա-

ընդարձակը որ միջա վեցեցեկ մասնաւմներ կ'անէնար որոնք անդադար կը մնային։

Վերջապէս Եէնի Մահալլէէն մեկնող նաւակը, որուն անհամբեր կը սպասէին, ժամեցաւ։ Այն ատեն, կարճ խորհրդակցութենէ մը վերջը, խուզարկիչ խումբը երկու մասի բաժնուեցաւ, մին՝ Էօմէր աղայի հրամանատարութեան տակ ուղղուեցաւ դէպի Սթէնայի ծովախորշը, միւսը հարիւրապետ Շիւքրի պէյի առաջնորդութեամբ գնաց Պէյքոզի ծովեզերքը։

Եւ սակայն ամէն փնտռտուք անօգուտ մնաց և քանի մը ժամ ետքը, թէ հարիւրապետը և թէ պարախգգամը գըլխիկոր և յուսահատ՝ կրկին միացան և որոշեցին անմիջապէս Երլաբլի պալատը դառնալ և մանրամասն տեղեկագրել գիշերուան մէջ տեղի ունեցած եղելութիւնները և իրենց եռանդուն սակայն անարդիւնք խուզարկութիւնները։

Իրենց պատմութենէր, մանաւանդ կէս գիշերէն ետքը Ալի Օսմանի և Սատըք պէյի Եէնի Մահալլէ դառնալնի Արիֆ Էֆէնտիի անձնական նաւակով ու նոյն նաւակով 4 հովածական անձերու փախուստը, որոնք տարագրուած իրաւութիւններ էին, մեծ յուզում յառաջ բերին պալատին մէջ և իրաւութիւն խորին հաղորդուեցաւ Սուլթանին որ անմիջապէս հրաման բրաւ Ալի Օսմանի և Սատըքի տուները խուզարկել և զիրենք ալ ձերբակալելով պալատ բերել։

Մինչ կայծէ հսկողութեան տակ առնուեցաւ Արիֆ Էֆէնտին որ նոյն միջոցին Երլաբլ կը գտնուէր, թէև թէ՛ Սադըլ Համիտ և թէ պալատականները անոր մեղսակցութեան մասին չատ կասկած չունէին։

Երբ Ալի Օսման Պէշիկթաշի ոստիկանատան երկու պետերուն ընկերակցութեամբ Երլաբլի պալատը կը մտնէր, արդէն լրտեսներու և գաղտնի ոստիկաններու ահագին խումբ մը ցրուած էր Վոսփորի թէ՛ ասիական և թէ եւրոպական երկու եզերքներու գիւղերը, նորանոր խուզարկութիւններ կատարելու համար Էօմէր աղայի և Շիւքրի պէյի հսկողութեան տակ

որոնց աչալրջութիւնը, հակառակ իրենց կրած ձախողանքին, մեծապէս գնահատուած էր։

Բայց բոլոր այդ խուզարկութիւններէն այնքան մեծ ու անմիջական արդիւնք մը չէին ունեցեր որքան Ալի Օսմանի խոստովանութենէն, զոր նոյնիսկ շատ յոյս չունէին իր տանը մէջ պահած գանձերու։ Երկաթագծէն Եղբայր դարձած մեծ անակնկալ մը եղաւ և Ասլանի Համբո երբ իմացաւ թէ Արիֆ Էֆէնտիի զաւակը իր տան մէջ պահուած ու բերուած էր մեծ ուրախութիւն մը զգաց, գրեթէ այնքան մեծ, որքան պիտի զգար եթէ եթէ բան իսկ փախստականներէն մէկը ձեռք անցուցած ըլլար։

---

ԳԼՈՒԽ Ժ.

## ՍՈՒՐՀԱՆԴԱԿ ԱՂԱՒՆԻՆ

Եւ սակայն Ալի Օսման պէյ իրմէ ակնկալուած յոյսը չէր իրագործած։ Իրա՛ւ է որ իր հօրը հետ առանձին գլուխ գլխի մնալով երկաթագիծը ամէն բան մանրամասնօրէն խոստովանած էր, բայց և այնպէս այդ խոստովանութիւնը ոև է դրական օգուտ մը չէր ունեցած և ոչ իսկ կրցած էր իր վրայ ծանրացած կասկածանքը փարատել, այնպէս որ կը շարունակէր Եղբայրի մէջ բանտարկուած մնալ, թէև մասնաւոր սենեակի մը մէջ ու ամէն հանգստութիւն կը վայելէր։

Սարքի համար խուզարկութիւնները թէ՛ իր Էրէնքէօյի տանը մէջ և թէ «Շաֆաք»ի խմբագրատանը, բոլորովին ապարդիւն մնացած էին։ Երկաթագող խմբագրին հետքը գտնել

անկարելի եղեր էր: «Ծաֆաք»ի արտօնատէրը, խիստ հակադաւթեան ենթարկուած էր, ինչպէս նաեւ Սաապքի հետ աշխատող մէկ քանի օգնական խմբագիրներ, բայց ամէնքն ալ ամենափոքր կասկածանքի հետք մը չէին ցոյց տուած եւ թերթին արտօնատէրը, որ հզօր պաշտպաններ ունէր պալատին մէջ, կրցած էր շուտով իր ձեռքը ազատել եւ նոյնիսկ, առթիւ, անգամ մըն ալ արժանանալ կայսերական շնորհներու:

Վաճառի գիւղերուն մէջ թէեւ խուզարկութիւնները միշտ կը շարունակուէին, բայց ո՛չ առջի օրուան եռանդովը, միայն պարտիզպան Հօսէին էր որ անխոնջ կերպով, առաւօտէն մինչեւ իրիկուն, ինքն իր գլխուն, կը ջանար հետք մը գտնել: Խեղճ մարդը ա՛լ բոլորովին քուն ու հանգիստ կորսնցուցած էր. հինգ հարիւր ոսկիի խոստացուած պարգեւը խելքը գլխէն առած էր: Ասկէ զատ, Եէնի Մահալլէի տան եւ յետոյ գիշերային փախուստի դէպքերը բոլորովին գրգռած էին զինքը եւ կերպով մը վիրաւորած էր արժանապատուութիւնը, այնպէս որ դրամական պարգեւի հեռանկարէն զատ, պարտիզպանը անձնական արժանապատուութեան խնդիր մը կը նկարէր այդ հետապնդումը: Կարելի է ըսել որ թէ՛ դրամի եւ թէ փառքի համար հաւատարապէս կ'աշխատէր:

Եէնի Մահալլէի դէպքէն ի վեր շաբաթ մը անցած էր արդէն եւ տակաւին ո եւ է հետք մը կարելի չէր եղած գտնել: Ալի Օսման կը շարունակուէր փակուած մնալ Եըլտըզի մէջ իբրեւ «հիւր», իսկ հայրը Արիֆ էֆէնտի, կը շարունակէր իր պաշտօնը, թէեւ իր նախկին դիրքէն շատ բան կորսնցուցած ըլլար:

Աբտիւլ Համիտ աւելի հանդարտած կը թուէր: Գաղտնի մարմինը կենդանութեան նոր նշան մը ցոյց չէր տար եւ ընդհանրապէս կը կարծուէր թէ չորս փախստականները, որոնք այդ խորհրդաւոր մարմինին գլխաւորները ըլլալ կը թուէին, հեռացած էին Պոլսէն:

Տարօրինակ ու անակնկալ եղելութիւն մը սակայն կրկին վրդովեց Ապտիւլ Համիտի հանգիստը և վեր ի վայր շրջեց Եըլտըզի պալատին մէջ տիրող առժամեայ խաղաղութիւնը։

Ապտիւլ Համիտ, օր մը, պատուհանին առջև կեցած, կը քննէր ուշադրան նոր հրացան մը զոր ընծայուած էր Անգլիական համբաւաւոր զինագործարանէ մը։ Ինչպէս յայտնի է, Սուլթանը քաջ նշանառու մըն էր և խիստ կը հետաքրքրուէր զէնքերով, որոնցմէ գրեթէ միշտ շրջապատուած էր։ Եւ իրաւ ալ իր ձեռքերուն մէջ ուշի ուշով զննած այդ նոր գործիքը՝ հրաշալի հրացան մըն էր զոր իբրև նմոյշ յատկապէս պատրաստած էին, արուեստին բոլոր կատարելագործութեամբ օժտելով զայն։

Թիկնապահ մը ակնածանքով կեցած իր վեհափառ տիրոջ մօտ կը բացատրէր զէնքին գործածութեան կերպը։ Ապտիւլ Համիտ ցոյց տալու համար թէ արդէն ըմբռնած է անոր գործածութեան ձևը, սեղանին վրայ շարուած փամփուշտներէն մին առաւ, հրացանին մէջ դրաւ և ծառի մը մը վրայ թառած ձնճղուկի մը նշան առնելով ըլթակը քաշեց։ Հէգ թռչունը ոտքէն խոցուած չոր տերևի մը պէս գետին ինկաւ։

Ապտիւլ Համիտի մռայլ դէմքին վրայ յաղթական գոհունակութեան ժպիտ մը գծագրուեցաւ։

Սեղանին վրայէն նոր փամփուշտ մը առաւ կրկին լեցուց հրացանը։

Բայց այս անգամ ուղեց իր նշանառութեան կարողութիւնը աւելի դժուարին փորձի մը ենթարկել։ Հրացանը ձեռքը՝ պատուհանին առջև կեցած՝ սկսաւ իր նայուածքը պտըտցնել չորս կողմը, մինչ քովը գտնուող պալատականը, ձեռքը ձեռքին վրայ, գլուխը ակնածանքով խոնարհած, կը սպասէր։

— Կ՚ուզէի որ օդին մէջ բարձրէն թռչող թռչունի մը վրայ փորձէի հրացանը, ըսաւ պալատականին։

— Վեհափառ Տէր, պատասխանեց միւսը, եթէ հրաման

կ'ընէք, ըսենք որ մէկ քանի թռչուններ արձակեն ձեր թըռչուններէն:

Ապտիւլ Համիտի հաճոյ թուեցաւ պալատականին առած խորհուրդը եւ անշուշտ հաւանութիւն պիտի տար անոր, երբ յանկարծ, հրացանը որ պահ մը գետին դրած էր, վեր բարձրացուց եւ չեշտակի դէպի օդին մէջ ուղղեց:

Թիկնապահը իր ակնարկը սեւեռեց դէպի այն կողմը ուր նշան կ'առնէր իր վեհափառ տէրը:

Ճերմակ թռչուն մը, որ աղաւնի մը ըլլալ կը թուէր, կը սուրար ընդարձակ պարտէզին ծառերուն գագաթէն:

— Անոնուաղն երեք հարիւր մէտր բարձրէն կը թռչի, մտածեց ինքնիրեն պալատականը, եւ չեմ կարծեր որ այդ արագութեամբ ընթացած միջոցին՝ պիտի յաջողի զարնել:

Խորհրդածութիւնը տակաւին չէր աւարտած երբ հրացանը պայթեցաւ...: Թռչունը իր վազքը կասեցուց եւ, կամաց կամաց, իր թեւերը բախելով, սկսաւ վար իջնել:

Ապտիւլ Համիտ գոհ ու զուարթ դէմքով մը պալատականին նայեցաւ, կարծես ըսել ուզելով անոր.

— Տեսա՞ր կարողութիւնս:

— Հրաշալի նշանառութիւն մըն է այս վեհափառ տէր, ըսաւ Թիկնապահը հիացողական չեշտով մը, եւ եթէ շնորհ ընէք, խոնարհաբար պիտի խնդրեմ ձեր վեհափառութենէն որ հրաման տաք ինձ այդ թռչունը իբրեւ թանկագին յիշատակ մը պահելու:

— Լաւ, բայց նախ եւ առաջ կ'ուզեմ մօտէն տեսնել թէ թռչունը ուրկէ՛ վիրաւորուած է... ըսէ՛ք որ անմիջապէս բռնեն զայն ու հոս բերեն:

Աղաւնին, որովհետեւ իրաւցնէ սպիտակ աղաւնի մըն էր կայսերական նշանառութեան զոհը, արդէն պարտէզին մէջ, մարգագետնին վրայ ինկած էր ու ողորմուկ կերպով կը թալկթլէր:

Թիկնապահը նոյն պահէն դուրս վազեց իր տիրոջ հրա-

մանը կատարելու համար, մինչ Սուլթանը, պատուհանին առջեւ կեցած, կը դիտէր իր զոհին հոգեվարքը, աչքերը հրճուանքով լեցուն։ Ապտիւլ Համիտ հակառակ մեծ ոճրագործ մը ըլլալուն, պզտիկ ոճիրներով ալ կրնար ժամանակ անցընել ու անոնցմէ ալ հաճոյք զգալ։

Քանի մը վայրկեան ետքը, Համիտի քով եղող պալատականը երեւցաւ պարտէզին մէջ և արագ արագ քայլերով ուղղուեցաւ դէպի այն մարգագետինը որուն վրայ տակաւին աղաւնին կը շարժէր իր թեւերը։

Սուլթանը, միշտ պատուհանին առջեւ կեցած, անհամբեր կը դիտէր իր թիկնապահը, որ արդէն հասած էր մարգագետնին մօտ և թռչունը ձեռքերուն մէջ առած էր ամենախորին յուզումով մը ընկճուած։ Ապտիւլ Համիտ նշմարած էր անոր յանկարծական ու արտօրինակ յուզմունքը և հետաքրքիր էր ժամ առաջ պատճառը հասկնալու և ձեռքովը նշան կ՚ընէր որ իսկոյն վերադառնայ։ Թիկնապահը նշմարեց իր տիրոջ նշանը և թռչունը ձեռքերուն մէջ բռնած, վազելով պալատ վերադարձաւ։

Երբ սրահէն ներս մտաւ, շնչասպառ կը հեւար, ա՛յնքան արագօրէն սանդուխներէն վեր սուրացած էր։

— Վեհափառ Տէր, գոչեց առանց սպասելու որ Սուլթանը իրեն խօսք մը ուղղէ, Վեհափառ Տէր, աղաւնիին վիզը պլլուած թուղթ մը կայ, որ բարակ ժապաւէնով մը կապուած է։

Այս անակնկալ յայտնութիւնը յանկարծ Ապտիւլ Համիտի զուարթութիւնը մարեց. դէմքը մթագնեցաւ, աչքերուն նայուածքը չար ու մռայլ արտայայտութիւն մը առաւ և շուրթները թեթեւօրէն դողդղացին. Բնութեամբ ջղագրգիռ ու կասկածոտ ըլլալով՝ ո և է անակնկալ մը, աննշան դէպք մը զինքը կը սարսափեցնէր ու կը խռովէր։

— Ի՞նչ թուղթ է այդ, գոչեց թիկնապահին, որ ապխանակ

աղաւնին զգուշութեամբ ձեռքին մէջ կրելով մօտեցած էր իր վեհափառ տիրոջ։

Հէք անասունը տակաւին կը հոգեվարէր, հրացանին գնդակը իր աջ թեւը խորտակած ու կուրծքը ծակած էր, բայց կարող չէր եղած զայն վայրկենապէս սպաննելու։

— Վեհափառ Տէր, չեմ գիտեր թէ ինչ թուղթ է, որովհետեւ չհամարձակեցայ ձեռք դպցնել անոր, և ուզեցի անմիջապէս ձեզ բերել։

— Շատ աղէկ ըրիր ես, ըսաւ Աբտիւլ Համիտ և ձեռքը երկնցուց թռչունը առնելու համար։

Անգամ մը զայն ձեռք անցնելէ ետքը, տենդային շարժումով մը ուզեց ժապաւէնը, որուն կապուած էր պլլուած փոքրիկ թուղթը, կտրել և այնպիսի կոշտ ու բուռն կերպով կատարեց այդ գործողութիւնը՝ որ հէք վիրաւոր թռչունը խեղդամահ եղաւ։

Համիտ, թուղթին տիրանալէ ետքը, աղաւնին սրահին մէկ անկիւնը նետեց։

Իր դէմքը, այդ միջոցին, ահուելի անձկութեան մը մատնուած էր, թուղթի փոքրիկ կտորը մատներուն մէջ կը դողդղար և ինք կարծես չէր համարձակեր զայն բանալու։ Արդէն թուղթին շուրջը բարակ դերձան մը կապուած էր զոր հարկ եղաւ գմելիով մը կտրել։ Վերջապէս իր դողահար մատներով բացաւ թուղթը որ հազիւ սիկառէթի թուղթի մը մեծութիւնը ունէր։

Աբտիւլ Համիտ իր կասկածոտ և հատու ակնարկը սեւեռեց թուղթին վրայ։ Մանրադիտական գիրերով ամբողջ լեցուած էր թուղթին մէկ երեսը, սակայն անկարելի էր կարդալ զայն։

— Շուտ խոշորացոյց մը գտիր բեր, հրամայեց բռնաւորը իր պալատականին որ խիստ ուրախ էր իր տիրոջ մատուցած ամենակարեւոր ծառայութեանը համար և որ ամենայն ակնածանքով կեցած էր իր դէմը։

Թիկնապահը իսկոյն դուրս ելաւ սրահէն։

Համլէտ փոքրիկ թուղթը ձեռքին մէջ բռնած, մտատանջ կերպարանքով մը կը նայէր անոր վրայ գծուած սեւ ու մանրուիկ գիրերուն։ Գիտէր որ պզտիկ թուղթի վրայ կարելի եղածին չափ շատ բան կարենալ գրելու համար, խոշորացոյցի օգնութեամբ, ամենամանր գիրերով կը գրէին որ յետոյ նոյնպէս խոշորացոյցով կը կարդացուէր, ամենայն դիւրութեամբ, ուստի փոքրիկ նամակին գրութեան այդ ձեւը չէր զարմացներ զինքը, միայն թէ ժամ առաջ կ'ուզէր հասկնալ անոր պարունակութիւնը։

Իցի՛ւ թէ ծածկագիր գրութիւն մը չըլլար, կը խորհէր ինքնիրեն, այն ատեն խնդիրը կը դժուարանայ եւ հարկ կ'ըլլայ ծածկագրութեան բանալին գտնել, ինչ որ անկարելի չէ թէեւ, բայց շատ աշխատութեան եւ ժամանակի կարօտ է։

Յետոյ յանկարծ կասկածի մտածում մը ունեցաւ որ ա՛լ աւելի խոժոռ ու չարաշուք արտայայտութիւն մը տուաւ իր արդէն աժգոյն ու դաժան դէմքին։

— Այսպէս ուրեմն իմ պալատիս վրայէն գաղտնի թըղթակցութիւններ կը կատարուին, գուցէ դաւադրութիւններ կը սարքուին եւ ո՛չ ոք կ'իմանայ կամ ո՛չ ոք իմաց կու տայ, մտածեց։

Ու ջղագրգիռ շարժումով մը սկսաւ ժուռ գալ սրահին մէջ, փոքրիկ նամակը ձեռքին մէջ պինդ բռնած։

Յանկարծ նշմարեց սպիտակ աղաւնին որ անկիւնը նետուած էր։ Մօտեցաւ քովը, ծնկեցաւ եւ սկսաւ ուշադրութեամբ զայն քննել։

— Սովորական աղաւնի մը չէ այս, ըսաւ, այլ յայտնապէս սուրհանդակ աղաւնիներու մասնաւոր ցեղէն կը պատկանի... ասիկա կրնայ միայն ծառայել այդպիսի խորհրդակցութիւններու համար, պէտք է անմիջապէս փնտռել արդեօք թէ Պալատիս մէջ որոնց քով կը գտնուի այս աղաւնիներէն...։ Արդ-

եաք ո՞ր կողմէ կուգար եւ դէպի ո՞ւր կ'երթար... կարծես դիմացէն, ափափին եզերքէն կուգար:

Մինչ աղաւնիին փոքրիկ մարմինը առջեւ ծռած այս մտածմանց խորհուրդներով ուղեղը կը չարչարէր, երբոր սրա-հին դուռը բացուեցաւ եւ Թիկնապահը երեւցաւ սեմին վրայ:

Ապտուլ Համիտ իսկոյն ոտքի ելաւ եւ ըսաւ.

— Բերի՞ր խոշորացոյցը:

— Այո՛, վեհափառ տէր, ահաւասիկ:

— Տո՛ւր տեսնեմ:

Եւ խոշորացոյցը առնելով մօտեցաւ պատուհանին, յետոյ Թիկնապահին դառնալով շարունակեց:

— Այս աղաւնին տա՛ր պահէ, եւ ամենայն զգուշութեամբ, առանց մէկ փետուրին դպչելու... պէտք է որ ողջ մնայ անպատճառ:

Եւ մինչ Թիկնապահը իր սիրոյ հրամանը կատարելու համար աղաւնին առած դուրս կ'ելլէր, Ապտուլ Համիտ փոքրիկ թուղթը կը բանար եւ խոշորացոյցով կը զննէր, անհամբեր հետաքրքրութեամբ մը:

Առաջին բանը որ իր աչքին զարկաւ ու զինքը դողահար սարսափով մը համակեց, տոմսակին տակը, իբրեւ ստորագրութիւն ծառայող երկու գլխագիրներն էին, որոնք խոշորացոյցին ապակիին տակ յստակօրէն կը տեսնուէին: Այդ գլխագիրները լատինական երկու տառերը M. A. գրերն էին...:

— Նորէն այդ անիծեալ գիրերը, գոչեց Համիտ որուն դէմքը նոյն րոպէին ահաւոր արտայայտութիւն մը առաւ:

M. և A. ... միթէ այդ գիրերը չէ՞ին դրոշմուած Փանկալթիի ու Էրէնքէօյի մէջ գտնուած չորս դիակներուն վրայ:

Ապտուլ Համիտ իր դողահար ձեռքը, որով բռնած էր խոշորացոյցը, պառկեցուց սեղանին վրայ: Մանրադիտական գիրերը, ապակիին տակ խոշորնալով, որոշ կերպով դուրս կը ցցուէին: Ցրտահարէն դողութիւն մըն էր կարծ նախազգա-

թիւններով և Համիտ որ բաւական գիտէր Ֆրանսերէնը, կրցաւ կարդալ այդ խօսքերը և անոնց իմաստին թափանցել։

Ահա՛ սուրհանդակ ողուՆիին յանձնուած փոքրիկ թուղթին պարունակութեան թարգմանութիւնը.

«Ամէն ինչ աղէկ կ'երթայ։ Վտանգէն խուսափեցան։ Մեծ գործը կը պատրաստուի։ Դրամ, մարդ։ Նոր օժանդակներ։ Հինգ վտանգի միայն հոն։ Մեծ յոյսը լուսագոյն վիճակի մէջ է։ Սելանիկ, Էտիրնէ, Իւսկիւպ անկոտրած։ Պէտք է աշխատիլ Պոլիս, Ադանա։ Զօրքը պատրաստուած։ Ազատութեան գործը կը շարունակուի։ Վեց թռչուն փախած։ Անձնուէրը զրկեցէ՛ք շուտով։ Մահափարձը աւելորդ է, միշտ մեր ձեռքին մէջը ունինք։ Զգուշացէ՛ք շատախօսութենէ։ Վտանգի չեն 18—32—33—41 և 55 թիւերը։ Սովորական ճամբով կրնաք թղթակցիլ։ Եգիպտոսին մէկ անգամէն վճարեց պէտք եղածէն աւելի. բայց նորէն կը կրկնենք՝ դրամ, մարդ։ Կարմիր ծովի գործը պէտք է փութով առաջ տանիլ։ Ապագային անպատճառ պէտք պիտի ունենաք։ Տղաքներուն համար նոր փորձանք չկայ։»

Ասլան Համիտ անկարագրելի վրդովմամբ մը երեք անգամ, վրայ վրայէ կարդաց այդ խորհրդաւոր տոմսակը, որ թէև ծածկագիր չէր, սակայն և այնպէս իր կարճ նախադասութիւններով ու պայմանադրական բառերով մեծ բան մը չէր հասկցներ։

Ինչ որ սակայն յստակօրէն ցոյց կու տար այն էր թէ խորհրդաւոր մարմին մը կար Պոլսոյ մէջ որ թաքուն նպատակի մը համար կ'աշխատէր և թէ այդ մարմինը իր ճիւղերը ունէր երկրին ամէն կողմը։ Այս իրողութիւնը արդէն բաւական էր սարսափի մատնելու համար Ասլան Համիտը։

Բայց տակաւ այդ տոմսակին մէջ խօսքեր կային որոնք իրենց տարօրինակութեամբը դարձեալ կասկածոտ բնաւորին միտքը կը չարչարէին։

Մահափորձի խօսք մը կար անոր մէջ. որո՞ւ դէմ պիտի ուղղուէր այդ փորձը. ապահովաբար իրեն դէմ։ Յետոյ, առ

խօսքերը «մանաւանդը աւելորդ է, միշտ մեր ձեռքին մէջը ունինք», Ապտիւլ Համիտ այսպէս կը մտածէր։

«Սուլթանը սպաննելու համար աճապարելու պէտք չկայ, ուզած ատեննիս այս գործը կրնանք ընել, քանի որ մեր ձեռքին մէջն է միշտ»։

— Իրենց ձեռքին մէջ..., կը խորհէր Ապտիւլ Համիտ ամբողջ մարմինը ակամայ սարսռալով, զիս իրենց ձեռքին մէջ ունին, ինչպէս կարելի է այդ բանը, ինչ ըսել կ՚ուզեն առա՜ւ... արդեօք նոյն իսկ պալատիս մէջ բո՞յն դրած են, արդեօք իրենց մարդիկներէ՞ն շրջապատուած եմ առա՞նց գիտնալու, արդեօք ամէնքը ինծի դէ՞մ կը դառնան...։

Եւ բռնաւորին ակնարկը կատաղի փայլով մը շողաց. անբացատրելի վախ մը տիրեց բովանդակ էութեանը վրայ, սոսկումով պատուհանին քովէն հեռացաւ ու իր կասկածոտ նայուածքը ժուռ ածեց սենեակին չորսդին։

— Այո՛ ամէնքն ալ, ամէնքն հաւատարիմ կարծուածն ալ կնանքէս դէմ կը դառնան մռլալով ակռաներուն մէջէն։

Յետոյ կրկին աչքերը յառեց փոքրիկ թուղթի կտորին վրայ, որ ձեռքը բռնած էր մինչև և խոշորացոյցը մօտեցնելով նորէն կարդաց ծայրէ ծայր ու երկար ատեն աչքը անոր վրայ սեւեռած մնաց, ջանալով իր դիւային խորամանկութեան բոլոր ուժովը գուշակել ու մեկնել ամբողջ խօսքերը։

— «Սովորական ճամբով կրնանք թղթակցիլ» կրկնեց ինքնիրեն... ո՞րն է սովորական ճամբան, սուրհանդակային պաշտօնէութիւ՞նը, թէ ուրիշ միջոց մը ունին... այս ինչ սարսափելի բան է, այնքա՜ն զգուշութիւններէն ետքը, սովորական ճամբով, գաղտնի թղթակցութիւն կը կատարուի իմ քիթիս տակ... «Կարմիր ծովի գործն» ինչ է արդեօք... այդ գործին բնաւ խելքս չհասնիր կոր, պէտք է լուսաբանել այդ կէտը... «մէկ թռչուն փախած» այս խօսքերն ալ շատ մութ են, ապահովաբար թռչունը ուրիշ նշանակութիւն մը ունի այստեղ..,

Ապտիւլ Համիտ նորէն սկսաւ անհանգիստ քայլերով ժուռ գալ սենեակին մէջ, մէկ ձեռքով փոքրիկ տոմսը՝ և միւսով խոշորացոյցը բռնած։ Իր տագնապը հետզհետէ կ'աւելնար քանի կը մտածէր խորհրդաւոր թղթին առեղծուածային խօսքերուն վրայ։

— Ա՜խ, ինչպէ՜ս այդ աւազակները ձեռքերնէն փախուցին այդ չորս անձերը։ Հիմա ամէն բան հասկցած պիտի ըլլային, հառաչեց ինքնիրեն, տարաբախտաբար այս տոմսակը անոնց կողմէ գրուած է իրենց ընկերներուն...։

Սրահին մէջտեղը կեցաւ և կրկին խոշորացոյցը մօտեցուց տոմսին.

— Այո՛, գոչեց յաղթական կերպով, այո՛, իրենց կողմէ գրուած է այս թուղթը... «վտանգէն ազատեցանք» կը ծանուցանեն, տարակոյս չի կայ որ Եէնի Մահալլէի դէպքին կ'ակնարկեն։ Ազատեցա՞ն ոճրագործները մեր ապուշներուն անճարակութեան շնորհիւ... ա՜խ, ամէնքն ալ խօսք մէկ ըրած են իմ կորուստս պատրաստելու համար... բայց իրենց պիտի ցուցնեմ, ամենուն ալ պիտի հասկցնեմ...։

Ու կատաղի թափով մը սկսաւ նորէն իր պտոյտը սրահին մէջ։ Ապտիւլ Համիտ իր բարկաճայթ աչքերով ու ջղային շարժումներով վանդակի մէջ բանտարկուած վագրի մը երեւոյթը ունէր այս վայրկեանին և զինքը տեսնող մը ապահովաբար վախ պիտի զգար։

Յանկարծ խոյացաւ պատին վրայ զետեղուած ելեկտրական զանգակին և ուժով մը կոճակին վրայ կոխեց, մատը երկար ատեն կոճակին վրայ պահելով։

Բոպէ մը ետքը դուռը բացուեցաւ և Սուլթանին հաւատարիմներէն մէկը, սեւամորթ երկայնահասակ ներքինի մը, Սայիտ անուն, դրան սեմին վրայ երեւցաւ։

— Շուտ Թահսին փաշան հոս կանչէ, գոչեց Ապտիւլ Համիտ կատաղի շեշտով մը։

Ներքինին որ իր տիրոջ այդ ջղագրգիռ վիճակներուն յա-

ձախ հանդիստանս եղած էր, առանց այլայլելու խոնարհութիւն մը ըրաւ եւ դուռը փակելով աներեւոյթ եղաւ։

Բանաւորը որ անկուին իր ձեռքին մէջ բռնած էր Թուղթի կտորը, զայն անմիջապէս իր գրպանը դրաւ, իսկ խոշորացոյցը նետեց սրահին մէկ անկիւնը. եւ դարձեալ շարունակեց իր վանդակափակ վագրի պտոյտը ընդարձակ սրահին մէջ։

Յետոյ, քիչ մը հանդարտած, ինկաւ Թիկնաթոռի մը մէջ աչքերը անթարթ յառելով սենեակի ձեղունին։

Քիչ մը ետքը պալատի առաջին քարտուղար Թահսին փաշա ներս մտաւ եւ յուշիկ քայլերով յառաջացաւ դէպի իր վեհապետը եւ սրահին մէջտեղ կենալով պաշտօնագրական բարեւը տուաւ։

Աբտիւլ Համիտ որ ներս մտնելուն պէս նշմարած էր իր հաւատարիմ ծառան, բնաւ կենդանութեան նշան մը ցոյց չտուաւ եւ շարունակեց իր նայուածքը սեւեռած պահել դէպի ձեղունը։

Յետոյ յանկարծ աչքերը վար առնելով գոչեց առանց ուրիշ ո և է նախաբանի։

— Ամենքդ ալ դաւաճաններ է՛ք, ամենքդ ալ ինծի դէմ կը դաւէք, այո՛, իմ կործանումս կը պատրաստէք…

Քարտուղարը գլուխը խոնարհած, առանց պատասխան մը տալու կը սպասէր այդ բարկութեան նոպային մեղմանալուն եւ կը ջանար գուշակել թէ ինչ բանի ակնարկել կուզէր իր տէրը։

— Ամենուդ ալ արժանի պատիժը պիտի տամ, կը գոռար բռնակալը դողահար ձայնով մը։

Թահսին փաշա կը շարունակէր միշտ ակնածական լռութիւն մը պահել, շանթահար դիրքով մը մէկ կողմին հակած ու ձեռքերը, քով քովի, փորին վրայ ծալլած։

— Իմ պալատիս մէջ իմ կեանքիս դէմ կը դաւէք կոր, այո՛, պոռաց բռնակալը, ապացոյցներ ունիմ ասոր մասին… գրաւոր ապացոյցներ։

— Վեհափառ տէր, կմկմաց Թահսին փաշա այս բացայայտ ամբաստանութենէն սահմռկած, ուրիշներու մասին երբեք երաշխաւոր չեմ կրնար ըլլալ, բայց իմ մասիս, Աստուծոյ սուրբ անունովը կ'երդնում որ միշտ անձնուէր ու հաւատարիմ եղած եմ ձեր բարձր վեհափառութեան և եթէ գրաւոր անհերքելի ապացոյցներ ունիք ինծի դէմ որոնց մասին համոզում գոյացուցած էք, ես միշտ նոյն անձնուիրութեամբ և հաւատարմութեամբ պատրաստ եմ սիրով հպատակելու ձեր վեհափառութեան կողմէ ինձ սահմանուած պատիժին։

— Դո՛ւրս կորսուէ, գոչեց Աբտիւլ Համիտ ձեռքովը վանողական շարժում մը ընելով։

Թահսին փաշա մէկ քանի անգամ մինչև գետին խոնարհելով դուրս ելաւ։

Պալատի առաջին քարտուղարը յաճախ իր տիրոջմէն այսպիսի յանդիմանութիւններ լսած ու դուրս վռնտուած էր․ ուստի ասոր համար անսովոր յուզում կամ զարմանք մը չի կրեց։ Միայն թէ ինչ որ ներկայ պարագային իրեն տարօրինակ կը թուէր, այն էր որ չէր կրնար ո և է մեկնութիւն մը մը տալ իր վեհապետին այս անակնկալ բուռն բարկութեան։ Առտուն Սուլթանը սովորականէն լաւ տրամադրութեան մէջ էր և մինչև այդ ժամը բան մը չէր պատահած որպէսզի տեղի տար այդ տեսակ գրգռումի մը։

Ո՛չ մէկու մը հետ տեսնուած էր և ո՛չ ալ գրաւոր թուղթ մը ընդունած էր դուրսէն և Թահսին փաշա որ սուրհանդակ աղաւնիին դէպքը չէր գիտեր, իզուր միտքը կը չարչարէր բացատրելու համար իր տիրոջ այս յանկարծական ու անակընկալ կերպարանափոխութիւնը։

## ԳԼՈՒԽ ԺԱ.

# ՏԱԳՆԱՊԱԼԻ ԳԻՇԵՐ ՄԸ

Աբտիւլ Համիտի գերագրգռութիւնը որ իր ծայրայեղ աստիճանին հասած էր այսչափով չմեղմացաւ. ընդհակառակը կարծես հետզհետէ աւելի սաստկացաւ։

Թահսինի փաշային տունը, կարգը եկաւ Աբտիւլ Ղանի աղային, յետոյ Մէհմէտ փաշային, յետոյ Հաճի Ալի փաշային, Իզզէթ փաշային, Թահիր փաշային, Միւշիր Նուրի փաշային եւ այսպէս մէկիկ մէկիկ բոլոր իր հաւատարիմներուն, որոնք ամենայն անկեղծութեամբ յայտնեցին իրենց սիրոյ լուսանքները եւ նախապատւքները եւ զետնամած բարեւներով մեկնեցան իր քովէն։

Սուլթանին այս բարկութիւնը ամբողջ Եըլտըզը սարսափի մատնեց, մանաւանդ որ ոչ ոք տակաւին կրցած էր գուշակել անոր շարժառիթը։

Մինչեւ կէսկուն Աբտիւլ Համիտ անհանգիստ վիճակի մը մատնուած էր։ սրահին մէջ նստած, ատեն ատեն, խորհրդաւոր սնտուկը կը բանար ու կրկին կ'ենթարկէր խոշորացոյցի ապակիին, ջանալով անոր բոլոր գաղտնիքներուն թափանցել։

Ա՜խ, արդեօք ինչո՞ւ չկար մարդ որպէս զի անոր ամէն մէկ տողը իրեն բացատրէին, մանաւանդ ինչո՞ւ չկար մարդ ձեռք ձգելու համար այդ տողերը գրողը եւ անոր ընկերները։

Ու քանի միտքը կը բերէր որ զանոնք իր ձանկը անցնելէ ետքը կրկին ձեռքէն փախցուցած էր, ա՜լ աւելի կը բորբոքէր իր կատաղութիւնը։

Հիմակ իր սեւեռուն գաղափարն էր ձեռք ձգել կրկին

այդ չորս փախստականները կամ գոնէ անոնցմէ մին։ Իր մտային ամբողջ զօրութիւնը այդ նպատակին հասնելու համար կը յոգնեցնէր։

Իրիկուան դէմ՝ յանկարծ՝ իր սենեկապանը կանչեց և ոստիկանութեան նախարար Շէֆիք փաշան ուզեց որ արդէն առտուընէ ի վեր պալատին մէջ իր տիրոջ հրամաններուն կը սպասէր․

— Տղաս, անմիջապէս պէտք է պարտիզպան Էօմէրը գտնել սաս ու հոս բերես, հրամայեց։

— Գլխուս վրայ, վեհափառ տէր։

Որչափ ալ Շէֆիք փաշա Սուլթանին հրամանը գլխուն վրայ առած՝ դուրս ելաւ, այսուհանդերձ անոր կատարումը շատ դիւրին գործ չէր։ Պարտիզպանը ոստիկանութեան մէկ պաշտօնեան չէր, անոր հրամանին տակ կամ հրահանգովը չէր գործեր, այլ ինքնաբերաբար, խոստացուած պարգևը շահելու համար գործին կը հետապնդէր և բոլորովին իր կամքին ձգուած էր։ Այսպէս երեք օրէ ի վեր մէջտեղ չէր ելած, թէև գիտէին որ միշտ փնտռուքի վրայ էր ու Վոսփորի ափական գիւղերը կը շրջէր, ու կը յուսար հետք մը գտնել։ Այս պարագաներուն մէջ ինչպէս կարելի էր Սուլթանին հրամանը անմիջապէս գործադրել ու զայն գտնելով Երլտըզ բերել։

Ոստիկանութեան նախարարը իր տիրոջ քովէն հեռանալէն ետքը այս մտատանջութեան մատնուեցաւ։ Յանկարծօրէն Ապտիւլ Համիտի վրայ տիրող գրգռութիւնը արդէն ամբողջ պալատը տարածուած էր և ժամերէ ի վեր բոլոր պալատականները շփոթած ու շուարած՝ երկիւղախառն նայուածքով՝ իրարու կը նայէին, առանց համարձակելու իրարմէ բացատրութիւն մը ուզել իրենց տիրոջ տարօրինակ բարկութեան մասին։ Ամենէն աւելի տագնապալի կացութեան մէջ գտնուողներէն մէկն էր Շէֆիք փաշա որ բնազդաբար կը զգար որ Սուլթանին սաստկաւոր բարկութիւնը կապ ունէր չորս փախստականներու խնդրին հետ և առ՛ այժմ իր ենթադրու-

թիւնը կը հաստատուէր Աբտիւլ Համիտի ամբողջական հրամանակը :

Խեղճ Նախարարը ընկճուած վիճակի մը մէջ մնաց. այն սենեակը ուր կը գտնուէր Արիֆ էֆէնտին և ոստիկանութեան նախարարութեան պաշտօնեայ մէկ քանի ուրիշ կարեւոր պաշտօնեաներ որոնք գիտէին մշտապէս Եըլտըզի մէջ կը մնային առտուէ ի վեր :

— Նորին վեհափառութիւնը հրաման ըրաւ որ պարտիզպան Խօմէր աղան անմիջապէս պալատ բերուի , ըսաւ խօսքը բոլոր հոն գտնուողներուն ուղղելով , միթէ ձեր մէջէն որոշապէս իր անունը գիտցող մէկը կա՞յ . . . :

Ամէնքը , առանց պատասխանելու , հարցական կերպով մը իրարու նայեցան :

Ո՛չ ոք կրնար որոշ պատասխան մը տալ Նախարարին հարցումին :

— Հիմա անմիջապէս ամէն կողմ մարդ դրկելու և զինքը փնտռելու է , շարունակեց Նախարարը , ինքնիրեն խօսելու պէս . Սուլթանին հրամանը պէտք է վայրկենապէս կատարուի . . . եթէ ոչ հետեւանքը դէշ կ'ըլլայ :

Եւ Շէֆիք փաշա՝ յուզուած վիճակի մը մէջ՝ ելաւ ժուռ գալ : Աբտիւլ Համիտի գրգռութիւնը փոխանցիկ էր , ընդհանրապէս և երբ ինք տագնապի մը ենթարկուէր , իրեն հետ ամբողջ պալատը գտնուողներն ալ կը տագնապէին և իրենց պաղարիւնութիւնը կը կորսնցնէին :

— Օ՛ն , նստիլ մտածելով գործ չունինք , գոչեց Նախարարը , շուտով ամէն կողմ մարդ դրկեցէք , պէտք եղած հրահանգները տուէք , եթէ հարկ ըլլայ , ամբողջ ոստիկանները ու լրտեսները ցրուեցէ՛ք Պոլսի փողոցները և պարտիզպան Խօմէր աղան գտնելով բերել տուէ՛ք . . . մինչեւ երկու ժամ պէտք է որ հոս ըլլայ , կը հասկնա՞ք :

Ամէնքն ալ այս վճռական հրամանին վրայ մէկէն ոտքի ելան , առանց որոշապէս գիտնալու թէ ինչ միջոցներ ձեռք

պիտի առնէին իրենց վեհափառ տիրոջ հրամանը գործադրե-
լու համար։

Մութը արդէն կոխած էր և Երզրումի պալատին մէջ ե-
լեկտրական լոյսերը վառուած։

Ընդհանուր խաղաղութիւն մը կը տիրէր ամէն կողմ։ Զին-
ուոր թիկնապահներ կ'երթային կուգային անընդհատ, շուա-
րած հալածւելով մը։ Սարաֆ Համիտ միայն ապահովութեան
նախարարին իր հրամանը հաղորդելով չէր բաւականացած,
նոյն հրամանը կրկնած էր նաև իր պալատի մասնաւոր ա-
պահովութեան, յետոյ ուրիշ նորանոր հրամաններ արձակած
էր աջ ու ձախ, երբեմն վրայ չէզոքացնող, վրայ ժխտող
հրամաններ, վայրկենական տրամադրութեան տակ տրուած։

Սուրհանդակ աղաւնիին պատմութիւնը վերջապէս երե-
ւան ելած էր։ Թիկնապահը որ նշանաւորութեան ժամանակ
Սարաֆ Համիտի քով կը գտնուէր ու ետք գացած ձեռքովը
բռնած էր թղթատար վիրաւոր թռչունը, վերջապէս եղելու-
թիւնը բերնէն փախուցած էր, թէև առանց գիտնալու խոր-
հրդաւոր նամակին պարունակութիւնը։ Սակայն այդ տարօ-
րինակ դիպուածէն անմիջապէս ետքը Սուլթանին զգացած
ահաւոր յուզումը և ահռելի բարկութիւնը կասկած չէին թո-
ղուր որ աղաւնիին վզէն կախուած թուղթը ամենակարեւոր
բան մը կը պարունակէր։ Եւ ահա՛ ամէն մարդ, Երզրումի մէջ,
այս մասին զանազան ենթադրութիւններու անձնատուր կ'ըլ-
լար, առանց երբեք բուն ճշմարտութիւնը կարենալ գուշակե-
լու։

Նոյն իսկ մարդիկ կային որ ասիկա դուցէ պալատականնե-
րէն մէկուն կողմէ տարուած խաղ մըն էր, Սուլթանը
գրգռելու մասնաւոր նպատակով մը հնարուած։

Իրա՛ւ ալ, յաճախ, Երզրումի մէջ այդ տեսակ խաղեր կը
պատրաստուէին, Սուլթանին աչքին վրայ վարկաբեկելու,
իրարու հոր փորելու համար և Սարաֆ Համիտ ալ այս բանը
շատ աղէկ գիտէր և նոյնիսկ բաւական ճարպիկ ու խելացի էր

այդ խաղերը գուշակելու և ըստ այնմ անոնց կարևորութիւն ընծայելու համար։

Բայց ամէն պարագայի տակ, դարձեալ կարևորութիւն տալ կը կեղծէր որպէսզի իր պաշտօնակիցները չյուսահատէին և շարունակէին իրարու դէմ հակառակութիւններ ստեղծել, որովհետև բոլոր բռնակալներուն պէս, Ապտիւլ Համիտ ալ իր շուրջը գտնուողներուն փոխադարձ թշնամութեան վրայ հիմնուած էր իր դժոխային իշխանութիւնը։

Այս անգամ սակայն Ապտիւլ Համիտ երբեք մարդէն չանցուց որ յանկարծակի պատրաստուած խաղ մըն էր այս, նախ որ աղաւնիին զնդակահար վարմունքը բոլորովին խելքէ մաքէ չանցած անակնկալով մը տեղի ունեցած էր, յետոյ, նամակին պարունակութեան մէջ չի կար ո և է կէտ մը որ ուղղուած ըլլար այս կամ այն պաշտօնակին, կամ անոնցմէ մէկուն վրայ կասկած հրաւիրելու հանգամանք ունենար։

Շէֆիք փաշային իր հրամանը տալէ ետքը, արդէն երկու ժամ անցած էր ու տակաւին ո և է արդիւնք մը չէին տուած ձեռնարկուած խուզարկութիւնները պարագլուխը գտնելու մասին։

Սուլթանը նորէն իր քով կանչել տուաւ ոստիկանութեան նախարարը։

— Ո՞ւր է պարագլուխը, պոռաց անոր երեսին։

— Վեհափառ տէր, պատասխանեց խեղճ մարդը շփոթած, պէտք եղած բոլոր հրամանները տուի, ամէն կողմ մարդ ղրկեցի և կը յուսամ որ հիմա կը գտնան կը բերեն զինքը։

— Ամէնքդ ալ խաբեբաներ, ստախօսներ, ապերախտներ էք, գոչեց Ապտիւլ Համիտ բորբոքելով, վստա՛հ եմ որ բան մը չես ըրած ու մարդը չպիտի կրնաս գտնել։

— Վեհափառ տէ՛ր կմկմաց նախարարը դողահար ձայնով մը ձեր հրամանը մինչև երկու ժամ անպատճառ պիտի գործադրուի Աստուծոյ շնորհիւ . . . ։

— Եւ եթէ երկու ժամէն պարտիզպան Ջօմէրը մէջտեղ չելլայ, ձեռքէս ազատելիք չունիս։

— Ձեր Վեհափառութիւնը ուղածը կրնայ ընել ինծի և ես պատրաստ եմ սիրով ու խոնարհութեամբ ընդունելու իր կողմէ եկած ամէն շնորհ կամ պատիժ, բաւ է որ հաւատարմութեամբ ծառայեմ իրեն։

— Հաւատարմութիւնդ այս պարագային մէջ յայտնի պիտի ըլլայ, բայց Ապտիւլ Համիտ որուն ձայնը քիչ մը հանդարտած կը թուէր, գիտցի՛ր որ այս գիշեր անպատճառ պէտք ունիմ պարտիզպան Ջօմէրին։

— Ձեր փափաքը պիտի կատարուի, պատասխանեց Նախարարը, թէև շատ վստահ չէր իր ըսածին վրայ, բայց և այնպէս չէր կրնար ուրիշ կերպով խօսիլ իր վեհափառ տիրոջ.

Վայրկեանները կը սահէին սակայն և ո՛չ ոք երևան կ'ելլար, ո՛չ մէկ կողմէն լուր մը մը կուգար։ Խե՜ղճ Շէֆիք փաշա ծայրայեղ տագնապի մը մատնուած, պատուհանին քով անհամբեր կը սպասէր, տեսնելու համար աւետաբեր հրեշտակը որ պիտի գար իրեն բարի լուրը հաղորդելու։ Իր միակ յոյսը հարիւրապետը Շիւքրի պէյի վրան էր, իր ոստիկանական պետերուն ամենէն վարժն ու աչքը բացը, որ ինչպէս գիտենք, յատուկ եռանդով մը կը հետապնդէր այս գործը և որ միշտ յարաբերութեան մէջ էր պարտիզպան Ջօմէրի հետ։

Եւ սակայն Շիւքրի պէյն ալ երեք օրէ ի վեր չէր տեսած Ջօմէրի երեսը, թէև լաւ գիտէր որ միշտ իր խուզարկութիւնները կը շարունակէր Պէյքօզի կողմերը։

Շէֆիք փաշայի հրամանները ստանալուն պէս, հինգ վեց հոգիի ընկերակցութեամբ և մասնաւոր շոգեմակոյկով մը փութացած էր Պէյքօզ, խոստանալով անպատճառ պարտիզպանը գտնել ու բերել և Նախարարը միմիայն անոր վրայ դրած էր յոյսը։

Եւ սակայն ժամերը կը սահէին կ'անցնէին ու տակաւին

մարդ չէր երեւար։ Ապտիւլ Համիտի համբերութիւնը հետզհետէ կը սպառէր։ Բռնակալը ծրագիր մը յղացած էր որուն գործադրութեանը համար անպատճառ պէտք ունէր պարտիզպան Էօմէրի և անոր համար էր որ ժամերէ ի վեր անոր գալուն կը սպասէր։ Այդ ծրագիրը ո՛չ ոքի չէր յայտնած ու ո՛չ ոք ալ կրնար երեւակայել ինչ ըլլալը, բայց ամէնքը կը զգային որ Ապտիւլ Համիտի ամբողջ մտածումը, այդ միջոցին, պարտիզպանին վրայ կեդրոնացած էր։

Կէս գիշերին մօտեցած էր արդէն և սալոնին յուզումը և երկիւղը չէր հանդարտած սրահին մէջ։ Նորանոր մարդիկ զրկուած էին ամէն կողմ, մինչ առաջին մեկնողները կը սկսէին ձեռնունայն վերադառնալ, յուսահատ դէմքերով։

Ապտիւլ Համիտ այդ իրիկունը չէր ճաշած, միայն երկու գաւաթ կաթ խմելով անցուցեր էր, իր սենեակին մէջ առանձնացած։ Ամէն վայրկեան անդիմադրելի պէտք մը կը զգար խորհրդաւոր տոմսը գրպանէն հանելու և հարիւրերորդ անգամ զայն կարդալու, խոշորացոյցին օգնութեամբ։ Ա՛լ հիմա ծայրէ ծայր գոց ըրած էր և մէջի կարճ խօսքերը յամառօրէն իր մտքին մէջ կը ցցուէին ու իր ուղեղը կը չարչարէին։ Ա՛լ իրեն սեւեռուն գաղափարը եղած էր պարտիզպան Էօմէր աղան, անոր գալուստին կը սպասէր խօլական մոլեգնութեամբ մը, ամէն վայրկեան ելեկտրական զանգակը հնչեցնելով ու լուր հարցնելով։

Ոստիկանութեան նախարարը՝ Շէֆիք փաշա՝ Եըլտըզի պալատին մուտքի մեծ դրան քով գտնուած պահապաններուն յատկացեալ տաղաւարին մէջ գացած էր սպասելու, որպէս զի լուր մը առնելուն պէս փութայ իր վեհափառ Տիրոջ հաղորդելու։ Կարծես նոյն միջոցին ամբողջ Թուրքիոյ ճակատագիրը այդ պարտիզպանէն կախուած էր։

Միջոց մը նախարարը իր ժամացոյցը նայեցաւ մտատանջ դէմքով մը։ Կէս գիշերը ժամ մը անցած էր։

Անհամբեր շարժումով մը ոտքի ելաւ ու դուրս ուղղուե-

ցաւ, մինչեւ պարտէզի դրան մեծ դրան քով, աչքերը յառելով այն օձապտոյտ ճամբուն վրայ որ Պէշիկթաշէն Երլտըզ կ'երկարի եւ որ նոյն ժամուն, թէեւ կազերու լոյսով լուսաւորուած, սակայն ամայի էր բոլորովին։

Ամառնային հիանալի գիշեր մըն էր, աստղազարդ պայծառ երկինքով մը, հեռուն կ'երեւար Մարմարայի ծովն ու Վոսփորի մուտքը վեհաշուք հանդարտութեան մը մէջ։ Շէֆիք փաշայ թէեւ բանաստեղծական զգայուն հոգի մը չունէր, այսուհանդերձ պահ մը զմայլած մնաց իր առջեւ պարզուող տեսարանին վսեմութենէն եւ մոռցաւ այն հոգեկան տագնապը որուն մատնուած էր ժամերէ ի վեր։ Գրպանէն սիկառէթի տուփը հանեց, հատ մը առաւ ու վառեց եւ հեշտանքով մը սկսաւ ծխել, երազուն կերպարանք մը առնելով։

Հինգ վայրկեանէ ի վեր այսպէս, Ապտիւլ Համիտի բարկութիւնն ու պարտիզպանին փնտռտուքը մոռնալով, Շէֆիք փաշա ինքնամոռացման հեշտութիւնը կը վայելէր, երբ՝ յանկարծ՝ կառքի թաւալումի մը հեռաւոր ձայնը իր ուշադրութիւնը գրաւեց։

— Արդեօք բարի լո՞ւր մը կուգայ կոր ըսաւ ինքնիրեն եւ ա՛լ աւելի ուշադրութեամբ մտիկ ընել սկսաւ։ Ձայնը արագօրէն կը մօտենար եւ հիմայ Նախարարը կրնար զանազանել որ ո՛չ թէ մէկ կառքի այլ երկու եւ գուցէ աւելի կառքերու թաւալման ձայնն էր որ կը հասնէր։

— Շիւքրի պէյը ըլլալու է իր մարդոց հետ, խորհեցաւ Նախարարը։ Ներսէս ձայն մը այնպէս կ'ըսէ կոր... եւ ինծի անանկ կուգայ կոր որ յաջող լուր մը կը բերեն կոր... անյաջող լուր մը ունեցողը կառքը այսչափ չվազցներ...։

Օձապտոյտ ճամբուն վրայ, կազի լոյսերուն տակ ու ծառերուն մէջէն Շէֆիք փաշա նշմարեց վերջապէս երկու կառքեր որոնք սրընթաց կուգային։

— Վայրկեան մը կը հասնին, մտածեց Նախարարը ուրախ դէմքով մը։

Արդարեւ, քիչ մը ետքը, երկու կառքերը երեւցան ճամբուն ծայրը։ Շէֆիք փաշայի սիրտը յուզումէն ուժգին կը բաբախէր, այնքան վստահ էր սխալած չըլլալուն։

Վերջապէս առաջին կառքը, որ քանի մէտրի չափ առջեւէն կ՚ընթանար, կանգ առաւ մուտքի դրան առջեւ և կառքին դռնակէն գլուխ մը դուրս ելաւ։

Ոստիկանութեան Նախարարը իսկոյն ճանչցաւ հարիւրապետ Շիւքրի պէյը, Երլտըզի պալատան հաւատարիմ ու և. ռանդուն սպաներէն մէկը, որ յօժարակամ ոստիկանի դեր ալ կը կատարէր իր տիրոջ հաճելի ըլլալու և անոր շնորհներուն արժանանալու համար։

Վերջապէ՛ս եկաք, գոչեց Նախարարը ուրախութեան ճիչ մը արձակելով... գտա՞ք պարտիզպանը։

— Այո՛, փաշա էֆէնտի, պատասխանեց Շիւքրի պէյ չոր ու եղերական ձայնով մը որ զարմանք ու մտատանջութիւն պատճառեց Նախարարին։

— Միասի՞ն բերի՞ք...։

— Այո՛, բայց նոյն տարօրինակ չեչտով։

— Ո՞ւր է...։

— Միւս կառքին մէջ։

Վայրկենապէս այս բառերը փոխանակուելէ ետքը, կառքին դռնակը բացուեցաւ և Շիւքրի պէյ ու իրեն ընկերացող երկու անձերը կառքէն վար ցատկեցին։

— Բայց չ՛ըլլայ մեր վեհափառը անհամբեր կը սպասէ կոր, վայրկեան մը առաջ պէտք է Հօմէր աղան իրեն ներկայացնենք, գոչեց Շէֆիք փաշա որ հակառակ հարիւրապետին տարօրինակ կերպարանքին, ուրախութենէն ինչ ընելիքը չէր գիտեր։

Յետոյ դառնալով դրան մօտ կեցող պալատական պահապաններուն գոչեց.

— Ներս վազեցէ՛ք և լուր տարէք որ պարտիզպան Հօմէր աղան բերուած է... ու ինք խոյացաւ դէպի երկրորդ կառքը որ քիչ մը անդին կը սպասէր և որուն դռնակն ալ բացուած՝ երկու հոգի մէջէն վար իջած էին։

— Փաշա էֆէնտի, վայրկեան մը շնորհ ըրէք կենալու, գոչեց Հարիւրապետ Շիւքրի պէյ Նախարարին ետեւէն վազելով։

— Ի՞նչ կայ, ի՞նչ պիտի ըսէք, պատասխանեց Նախարարը անհամբեր շեշտով մը, ետին դառնալով ու ակամայ պահ մը կենալով։

— Փաշա էֆէնտի, պարտիզպանը գտանք և բերինք, այո՛, բայց...

— Բայց ի՞նչ, հարցուց փաշան Շիւքրի պէյի այլայլած դէմքին նայելով։

— Բայց, շարունակեց միւսը մռայլ ձայնով մը, մեռած գտանք ու դիակը միայն կրցանք բերել...

Եթէ կայծակը իր գլխուն իյնար շեշտակի այնքան չպիտի սարսափահար ըլլար Շէֆիք փաշա, որքան հարիւրապետին այս խօսքերը լսելով.

— Մեռա՞ծ, մեռա՞ծ, կրկնեց ձեռքը ճակտին տանելով՝ սահմռկած երեւոյթով մը,

— Այո՛, մեռած գտանք զինքը, շարունակեց պալատական սպան յուսահատօրէն, նոր մեռած, հազիւ մէկ քանի ժամ է ի վեր... ուշ հասանք, եթէ ժամանակին հասնէինք, ո՛չ թէ միայն մեռած չպիտի ըլլար, այլ գուցէ, ո՛վ գիտէ...

Եւ Հարիւրապետ Շիւքրի պէյ լռեց։

Նախարարը, բերանը կիսաբաց, աչքերը մոլորուն, իր խօսակցին կը նայէր մարդու մը պէս որուն մտածումն ու բանականութիւնը կարծես խոյս տուած է յանկարծ։

Հզօր ճիգ մը ըրաւ իր վրայ և յառաջացաւ դէպի կառքը որուն դռնակին մօտ կը սպասէին երկու մարդիկ, ակնածական դիրքով մը։

Շէֆիք փաշա մօտեցաւ դռնակին ու կառքին մէջ տարածուած մարմին մը նշմարեց որուն երեսը չարաչուք կերպով լուսաւորուած էր ճամբուն վրայ գտնուող լապտերին լոյսովը։

Այո՛, նոյնինքն պարտիզպան Էօմէրի անկենդան մարմինն էր հոն, բազմոցին վրայ, տարածուողը։

— Վստա՞հ էք որ մեռած ըլլայ, հարցուց Նախարարը, որ չէր ուզեր այս անակընկալ ու սոսկալի իրականութիւնը ընդունիլ ու կը ջանար ո և է յոյսի մը կառչիլ, որքան ալ այդ յոյսը տկար ըլլար։

— Ափսո՜ս, այո՛, մեռած է, պատասխանեց Շիւքրի պէյ, և մահն ալ բժշկական քննութեամբ ստուգուած... երբոր զինք գտանք արդէն անկենդան դիակ մըն էր, թէև ինչպէս յետոյ բժիշկը ըսաւ, հազիւ մէկ երկու ժամէ ի վեր մեռած։

— Աստուած իմ, Աստուած իմ, բացագանչեց Շէֆիք փաշա յուսահատ և ընկճուած դէմքով մը, այս ի՛նչ դժբախտութիւն է որ կը հասնի մեզ... հիմա ի՞նչ պիտի ըսենք Սուլթանին որ ժամերէ ի վեր հրաման ըրած է Էօմէր աղան գտնել բերելու....։

— Մեր վեհափառ տիրոջ հրամանը կատարուած է, պատասխանեց սպան, քանի որ ահա՛ Էօմէր աղան գտանք ու բերինք։

Այս խօսակցութեան միջոցին պալատական թիկնապահ մը վազելով եկաւ դիակիր կառքին քով։

— Ինչո՞ւ անմիջապէս ներս չէք մտցներ Էօմէր աղան, քանի որ եկած է, գոչեց գրեթէ յանդիմանական շեշտով մը, Շէֆիք փաշայի երեսը նայելով։

Ոստիկանութեան նախարարը չպատասխանեց. այնքա՛ն շուարած էր որ չէր գիտեր ի՛նչ պատասխանելը։

Հարիւրապետը որ իր պաղարիւնութիւնը չէր կորսնցուցած, ըսաւ,

— Փաշա էֆէնտի, թէև Էօմէր աղան բերինք, սակայն դժբախտաբար չենք կրնար ներկայացնել մեր վեհափառ Սուլթանին, որովհետև մեռած է....։

— Մեռա՜ծ, կրկնեց թիկնապահը ինքն ալ ափ ի բերան մնալով։

Եւ սակայն կարելի չէր աւելի երկար ատեն մնալ հոն։ Շիւքրի պէյի գալուստը և պարտիզպանը միասին բերելուն

լուրը արդէն կայծակի արագութեամբ տարածուած էր պալատին մէջ և աւետիսը հաղորդուած Ապտիւլ Համիտի, որ այս լուրին վրայ բոլորովին հանդարտած էր և անմիջապէս հրամայած որ մեծ պարգեւ մը տրուի Շիւքրի պէյի։ Միեւնոյն ատեն թիկնապահը ղրկած էր որպէսզի Խօմէր աղան շուտով իր մօտ բերեն։

Դիակիր կառքը առջեւէն, իսկ Շէֆիք փաշա, թիկնապահը Շիւքրի պէյ և իրեն հետ եղող անձերը կառքին ետեւէն, մտան Եըլտըզի պալատը և յամրաքայլ սկսան յառաջանալ, յուղարկաւորութեան թափորի մը պէս։

Զարաշուք իրականութիւնը անկարելի էր պահել Ապտիւլ Համիտէն և անմիջապէս իրողութիւնը իմաց տրուեցաւ իրեն։

Կը կարծուէր որ այս լուրը ա՛լ աւելի սոսկալի բարկութեան մը պիտի մատնէր բռնակալը, սակայն այդպէս չեղաւ։ Ապտիւլ Համիտ պարտիզպան Խօմէր աղայի սպաննուած գտնըւելուն լուրը լսեց տարօրինակ հանդարտութեամբ մը։ Կարծես առտուընէ ի վեր կրած յուզմունքը ա՛լ անզօրութեան մատնած էին իր ջիղերը։

Մոլորուն աչքերով, կարծես երազի մը մէջ, մտիկ ըրաւ ինչ որ իրեն պատմեցին աներեւոյթ հանդարտ կերպարանքով մը։ Միայն իր ստորին շրթունքը ատեն ատեն կը դողդղար, մատնելով իր տագնապը։

Յետոյ ուզեց որ Ջէնքէզ Մէհմէտ փաշա, իր սիրական ու հաւատարիմ պալատականը, մանրամասնօրէն հարցաքննէ Շիւքրի պէյը, այն մասնաւոր խուցին մէջ որուն ետեւ մասնաւոր թաքստոց մը կար, ուրկէ ինք կրնար ծածկաբար լսել ամէն բան։

Հրամանը անմիջապէս գործադրուեցաւ։



## ԺԲ.

## ՇԻՒՔՐԻ ՊԷՅԻ ՏԵՂԵԿԱՏՈՒՈՒԹԻՒՆԸ

Երբ Հարբուզապ'ա Շիւքրի պէյ մտաւ այն սրահը ուր իր տեղեկատուութիւնը պիտի ընէր, արդէն գրասեղանի մը քով բազմած գտաւ Զէրքէզ Մէհմէտ փաշան, որուն մօտ կը գտնուէին նաև առաջին քարտուղար Թահսին փաշա, ոստիկանութեան նախարար Շէֆիք փաշա և ուրիշ երկու երկրորդական քարտուղարներ որոնք գատ սեղանի մը շուրջը նստած էին։

— Շիւքրի պէյ, ըսաւ Մէհմէտ փաշա մեղմ ու քաջալերիչ ձայնով մը. մեր վեհափառ տէրը շատ գոհ է ձենէ ձեր ցոյց տուած փութկոտութեան և գործունէութեան համար...

— Աստուած երկար կեանք պարգևէ մեր տիրոջ, փութաց պատասխանել սպան խորին ակնածանքով բարև մը տալով։

— Դուք ձեզի յանձնուած պաշտօնը յաջողութեամբ կըրցաք կատարել, և եթէ Էօմէր օղլան կենդանի չկրցաք հոս բերել, ապահովաբար յանցանքը ձերինը չէ։

— Ափսոս որ քիչ մը ուշ հասանք։

— Մի՛ աճապարէք պատասխանելու և սպասեցէ՛ք որ խօսքս աւարտեմ... հիմա ձենէ մանրամասն տեղեկութիւններ ուզելով մեր նպատակն է ո՛չ թէ ձեզ հարցաքննութեան ենթարկել, այլ՝ այդ տեղեկութիւններուն շնորհիւ ձեռք ձգել այս նոր ոճիրը գործող անձերը, որոնք ապահովաբար կա՛մ նախորդ ոճիրները կատարող նոյն անձերն են և կամ անոնց համախոհները։

— Այս մասին բնաւ տարակոյս չկայ, արդէն Նշանը մէջտեղն է, աճապարեց կրկին պատասխանելու Շիւքրի պէյ որ հակառակ իրեն եղած արգելքին չէր կրնար լեզուն բռնել և կը ուզէր ժամ առաջ ամէն բան ըսել։

— Կրկին կը խնդրեմ մի աճապարէք ըրաւ Մէհմէտ փաշա քիչ մը ձայնը խստացնելով, ձեր խօսքերը մեծ կարեւորութիւն և կշիռ պիտի ունենան մեր ապագայ խուզարկութիւններուն համար, ուստի պէտք է որ ուշի ուշով ձեր պատասխանները տաք, առանց ամենափոքր մանրամասնութիւն մը մոռնալու կամ զանց ընելու... ասով միայն կրնաք ա՛լ աւելի արժանանալ մեր վեհափառ տիրոջ գոհունակութեան։

— Պատրաստ եմ ձեր հարցումներուն պատասխանելու։

Փաշան պահ մը լռեց, սեղանին վրայ իր առջեւ դրուած թուղթերը խառնշտկեց անոնց մէջ բան մը փնտռելու երեւոյթով և յետոյ ըսաւ.

— Անկարեւոր կէտերուն վրայէն անցնինք։ Գիտենք որ Էօմէր աղան փնտռել գտնելու հրամանը ստանալուդ պէս, չորս հոգիի ընկերակցութեամբ Տօլմա Պահչէ գացիք ու հոն պատրաստ սպասող շոգեմակոյկով մը շիտակ ուղղուեցաք դէպի Պէյքօզ, իրիկուան դէմ, հաւանօրէն երբ արեւը մարը մտած էր։ Մինչեւ այդ կէտը հարկ չի կայ պատմելու։ Հիմա մեզի ըսէ՛ք թէ Պէյքօզ հասնելէ ետքը ի՞նչ ըրիք։

— Պէյքօզի մէջ մեր խուզարկութիւնները հազիւ կէս ժամ տեւեցին, սկսաւ պատմել Շիւքրի պէյ։ Հոն ոստիկանութեան քօմիսէրը հարցափորձելով, անմիջապէս իմացանք որ պարտիզպանը երկու օրէ ի վեր Պէյքօզէն հեռացած էր և լսած էր որ ինք Գանլըճայի կողմերը պիտի երթայ ուր իրր թէ հետք մը գտած էր։ Իսկոյն մեր շոգեմակոյկը վերադառնալով ճամբայ ելանք ու հասանք Գանլըճայ։

— Այդ մասն ալ կրնաք համառօտել եթէ շատ կարեւոր չեն, ըսաւ Մէհմէտ փաշա։

— Լաւ ուրեմն, հոն ես ի զուր զինքը փնտռելէ ետքը,

Նոր տեղեկութեան մը համեմատ եկանք Պէյլէրպէյ, ուր գիտէինք որ կը գտնուէր Էօմէր աղայի մէկ արհեստակիցը պարտիզպան Րէշիտ որ Լը՛ն հաշուոյն փոքրիկ բանջարանոց մը կը մշակէ լերան կողմը, դէպի Սկիւտար տանող զառիվերին վրայ և որ մտերիմ բարեկամն է Էօմէր աղայի։ Պարտիզպան Րէշիտ շատ ծրոչ տեղեկութիւններ տուաւ ինծի։

— Ի՞նչ ըսաւ տեսնենք։

— Ըսաւ թէ նախորդ գիշերը Էօմէր աղա իրեն հետ անցուցած և գիշերն ալ միասին պառկած էր, թէ շատ յուսալից և ուրախ կ'երևար, նոյն իսկ բերնէն փախցուցած էր թէ իր փնտռած մարդիկը գտնելու վրայ էր և թէ շատ կարևոր հետք մը գտած էր։ Առտուն կանուխ, այսինքն այս առտու, մեկներ էր իր բարեկամին քովէն, ըսելով որ Չամլըճայի կողմերը պիտի երթար։

— Չամլըճայի կողմե՞րը, հարցուց Մէհմէտ փաշա հետաքրքրուելով։

— Այո՛, շարունակեց Շիւքրի պէյ։ Երբ այս տեղեկութիւնը առինք, իսկոյն ճամբայ ելանք դէպի Չամլըճա, ես և ինծի հետ ուրիշ երկու ընկերներ, մինչ միւս երկուքը թողուցի Րէշիտի մօտ. որովհետև Էօմէր աղա ըսած էր որ գուցէ գիշերը կրկին իր բարեկամին մօտ կը վերադառնայ։ Մութը արդէն պատած էր չորս կողմը և մենք դժուարութեամբ կըրնայինք վեր ելլել քարուտ զառիվերէն։ Կէս ժամէ աւելի էր որ կը քալէինք ու Չամլըճայի մօտեցած էինք, առանց որոշապէս գիտնալու թէ ո՛ւր պիտի ուղղուէինք և որո՛ւ պիտի կրնայինք տեղեկութիւն հարցնել Էօմէր աղայի մասին, երբ յանկարծ մութին մէջ ստուեր մը նշմարեցի որ կարծես հեռուէն մեզի կը հետևէր։ Նախ առանց մեծ կարևորութիւն տալու մեր ճամբան շարունակեցինք, ատեն ատեն ետևնիս դառնալով. ստուերը միշտ կը հետևէր մեզի։ Որոշեցի կանգ առնել և տեսնել թէ ի՞նչ կ'ուզէր այդ մարդը որ յամառօրէն մեր ետևէն կուգար կարծես...։ Մարդը առանց ուշադրու-

թիւն դարձնելու մեր կենալուն և կամ ինքն ալ կենալու, ճամբան ուղղակի շարունակեց դէպի մեզի։ Երբ մօտեցաւ, տեսանք որ պատանի մըն էր հազիւ քսան տարեկան։

Շիւքրի պէյ խօսքը կտրեց պահ մը, գրպանէն թաշկինակը հանեց, ճակատը սրբեց և շարունակեց.

— Ո՞վ ես դուն և ի՞նչ բան ունիս այստեղ այս ժամուս, հարցուցի պատանիին.— Ես հայ եմ, այս կողմերը կը բնակիմ, ըսաւ անծանօթը ամենայն համարձակութեամբ և ձեզի հետեւեցայ մտածելով որ կրնամ օգտակար ըլլալ, որովհետեւ այս կողմերուն ծանօթ չէք թուիք կոր և ինծի այնպէս եկաւ որ տուն մը կամ մէկը կը փնտռէք կոր.— Այո՛։ պատասխանեցի պատանիին, արդարեւ մէկը կը փնտռենք կոր, բայց չեմ կարծեր որ ճանչնաս, որովհետեւ այստեղացի չէ...

— Կարճ կապէ՛ այդ մանրամասնութիւնները եթէ բուն խնդրին հետ կարեւորութիւն չունին, ըսաւ Մէհմէտ փաշա։

— Ընդհակառակը մեծ կարեւորութիւն ունին, պատասխանեց Շիւքրի պէյ. ինչպէս որ դուք ալ հիմա պիտի տեսնէք։

— Ուրեմն շարունակեցէ՛ք։

— Պատանին խելացի ու աչքը բաց մէկը կ'երեւար կոր, ուստի մտածեցի թէ կրնար մեզի օգտակար ըլլալ և ըսի.— Էօմէր աղա անունով պարտիզպան մը կը փնտռենք կոր որ Պէյլէրպէյիէն հոս եկած է այս առտու։

— Քառասունը հինգ տարեկանի մօտ, երկայնահասակ, ալեխառն պեխերով մէ՞կն է, հարցուց պատանին։— Այո՛, պատասխանեցի։— Հասկցայ ձեր փնտռած անձը, երկու ժամ առաջ այս կողմերը տեսայ, ուրիշ երկու անձերու հետ խօսակցելով կ'երթար, պատասխանեց պատանին, հետս եկէ՛ք ու ձեզ տանիմ իր գացած կողմը։

«Այս խօսքերուն վրայ, սկսանք հետեւիլ պատանիին որ վստահ քայլերով մեզ առաջնորդեց ամայի զառիվայր տեղ մը, ուր ո՛չ մէկ բնակութիւն չէր երեւնար։ Ճամբան քանի մը անգամ պատանիին ըսի որ եթէ մեզ զուր տեղը կը յոգնեցնէր,

մեր ձեռքէն չէր կրնար ազատիլ ետքը, որովհետեւ ըստ բախտի փնտռտուքներով ժամանակ անցնելու ատեն չունէինք, բայց ինք միշտ պնդեց թէ անպատճառ պարտիզպանին քով պիտի տանէր մեզ։ Վերջապէս հասանք առանձին քարաշէն միայարկ տնակի մը քով, որ աղօտ կերպով լուսաւորուած էր։

— Ահա՛ ձեր փնտռած մարդը և երկու ընկերները հոս մտան, ըսաւ պատանին հաստատ ձայնով մը, ճիշդ այդ կողմերը իրենց պատահեցայ և աչքովս տեսայ տնակէն ներս մտնելնին։

— Այդ պատանիին վրայ ո և է կասկածելի բան չնշմարեցի՞ք, հարցուց պալատական փաշան, որ լարուած հետաքրքրութեամբ մը կը հետեւէր երիտասարդ սպային պատմութեան։

— Մինչեւ այն ատեն ո՛չ, բայց անկէ ետքը, ինչպէս պատմութեանս շարունակութեանը մէջ պիտի տեսնէք, շատ կասկածելի թուեցաւ ինծի իր ընթացքը և նոյն իսկ այժմ համոզուած եմ որ ինք նախապէս ամէն բան գիտնալով մեզ առաջնորդեց այդ տնակը, թէեւ չեմ գիտեր ի՛նչ նպատակաւ...

— Լաւ, ընդմիջեց փաշան, բայց կը խնդրեմ պատմութեան ընթացքէն մի շեղիր, յետոյ կը վերադառնանք այդ խնդրին... ուրեմն այսպէս մօտեցաք տնակին, յետո՞յ...

— Նախ տնակին մօտենալու համար հարկ էր փոքրիկ պարտէզ մը անցնիլ, որ կիսափուլ պատերով շրջապատուած էր և որուն փայտէ խարխլիկ դուռը բաց թողուած էր։ Տնակին դրան քով հասնելով՝ քանի մը անգամ զարկինք սակայն բացող չեղաւ, այն ատեն՝ ինծի ընկերացող երկու ծպտեալ ոստիկաններէն մին Հասան աղա, որ հուժկու մարդ մըն է. ուսովը ու սրունքովը ուժգին հարուած մը տուաւ դրան և դուռը կռնակի վրայ բացուեցաւ ու երեքս մէկէն ներս մտանք... փոքրիկ բակէ մը անցնելէ ետքը, հասանք սենեակի մը առջեւ որ աղօտ լամպայով մը լուսաւորուած էր և որուն դուռը հրելով բացուեցաւ։ Սենեակէն ներս մտնելնուս պէս նշմարեցինք պարտիզպան Էօմէր աղայի անկենդան մարմինը որ գե-

տին փռուած էր։ Անմիջապէս քովը փութացինք։ Մարմինը տակաւին չէր պաղած և վրան ո և է վէրքի նշան չէր երեւ-նար, ո՛չ ալ արիւնի հետք կար գետինը կամ հագուստներուն վրայ։ Միայն վզին շուրջը կապտագոյն բոլորակ նշան մը կ'ե-րեւար ինչ որ ենթադրել կուտար թէ զինքը չուանով մը կամ կօշիկով մը խեղդած էին... յետոյ ճակտին վրայ կ'երեւար, նոյն նշանը, ըսաւ Տիւքրի պէյ որուն ձայնը դողդղալ սկսաւ և աչքերը անհաճելի արտայայտութիւն մը առին։

— Ի՞նչ նշան, հարցուց Մէհմէտ փաշա...։

— m. և a. գիրերը և ներքեւն ալ 5 թուանշանը...։

Պահ մը ճնշող լռութիւն մը տիրեց սրահին մէջ։ Տիւքրի պէյ ինքն իսկ իր պատմութենէն ազդուած՝ լուռ էր։ Ապտիւլ Համիտ, որ ինչպէս ըսինք, իր թաքստոցին մէջ կը լսէր ամէն բան, ինքն ալ սարսուռ մը զգացեր էր երիտասարդ սպային վերջին խօսքերէն ու յանկարծ խորհրդաւոր տոմսակին սա բա-ռերը յիշուեր էին իր բորբոքած երեւակայութեան առջեւ. «Չորսը պատժուած։ Արդարութեան գործը կը շարունակուի։»

— Ահա՛ մեկնութիւնը, ըսաւ ինքնիրեն բռնակալը, ահա՛ հինգերորդը որ կը պատժուի իրենց ձեռքով... ո՞վ պիտի ըլ-լայ վեցերորդը։

Ու բռնակալին աչքերը անզօր կատաղութեամբ մը շո-ղացին թաքստոցին մթութեան մէջ։

— Շարունակեցէ՛ք ձեր պատմութիւնը, ըսաւ Մէհմէտ փաշա։

— Թէեւ յայտնապէս կ'երեւար որ պարտիզպանը մեռած էր արդէն, այսուհանդերձ ուզեցի անմիջապէս բժիշկ մը կան-չել և շուրջս նայեցայ մեզ ընկերացող պահապանին փնտռելու համար։ Պահապանին հոն չէր։ Ոստիկաններէն մին զրկեցի որպէս զի դուրսը նայի։ Ոչ ոք կար դուրսը։ Պահապանին անյայտ եղեր էր մեզի չիփ չիտակ մինչեւ դիակին քով առաջնորդելէ ետքը և մենք մեր շփոթութեան և իրարանցումին մէջ, բնաւ չէինք նշմարած իր անյայտացումը...։

— Տարօրինակ բան, այդ պատանին պէտք է անպատճառ գտնել, գոնէ որոշ նշաններ ունի՞ք իր մասին։

— Ինչպէս ըսի։ Հազիւ քսան տարեկան, հայ պատանի մըն էր. խոշոր սեւ աչքերով, գիրուկ դէմքով, աշխոյժ ու մտացի եւ բաւական մաքուր հագուած, զինքը կրնամ զանազանել հարիւր հոգիի մէջ։

— Գոնէ անունը հարցուցա՞ծ էիք։

— Ո՛չ։

— Արդէն այդ կէտը կարեւորութիւն չունի, միջամտեց Շէֆիք փաշա, եթէ գործին մէջ մեղսակցութիւն մը ունի, ապահովաբար եթէ հարցուցած ալ ըլլայիք սուտ անուն մը պիտի տար։

Շատ ճշմարիտ է, շեշտեց Թահսին փաշա, ինքն ալ կարծիք մը յայտնած ըլլալու համար։

— Շարունակեցէ՛ք, կրկնեց Մէհմէտ փաշա։

— Տեսնելով որ պատանին գտնել կարելի չէ, անմիջապէս ոստիկաններէն մին զրկեցի որպէս զի երթայ եւ շուտով բժիշկ մը գտնայ բերէ, իսկ ես միւս ոստիկանին օգնութեամբ պարտիզպանը հանուեցուցի որպէս զի մարմինը քննեմ եւ տեսնեմ որ ո եւ է վէրքի նշան մը կա՞յ վրան ու միեւնոյն ատեն ալ նախնական խնամքներ ըրի, թէեւ վստահ ըլլալով որ ո եւ է օգուտ մը չունէին ըրածներս։ Կէս ժամ ետքը բժիշկն ալ հասաւ եւ մանրամասն քննեց դիակը եւ հաստատեց թէ խեղդամահ եղած էր եւ թէ մահը հազիւ երկու ժամ առաջ տեղի ունեցած էր։ Այս գործողութենէն ետքը, այլ եւս ուրիշ բան չէր մնար մեզի ընելիք այլ եթէ դիակը առնել եւ հոս փոխադրել, որովհետեւ եթէ քննութեան սկսէինք անմիջապէս, պիտի ստիպուէինք հոն մնալ երկար ատեն եւ դիտէինք որ հոս անհամբեր մեզի կը սպասէիք։ Ասկէ զատ այն քննութիւնը որուն պիտի ձեռնարկէինք, կարելի էր քանի մը ժամ յետաձգել, քանի որ ոճրագործները գտնելու համար ո եւ է հետք մը չունէինք եւ արդէն երկու ժամէ ի վեր պէտք է որ հեռացած ըլլային։

Մէհմէտ փաշա իրաւամբ քննադատելի բան մը չէր գտնար սպային արարքներուն մէջ, այսուհանդերձ բաւական խիստ շեշտով մը։

— Մեծ պակասութիւն մը գործած էք ձեզի ընկերացող պատանիին հետքը կորսնցնելով։

— Այս մասին բոլորովին համամիտ եմ ձեզ. միայն թէ երբ նշմարեցի պատանիին յանկարծական անյայտացումը, այն ատեն միայն հասկցայ որ գիւղէն աւելի՛ ողջերով պէտք էինք զբաղիլ... բայց արդէն շատ բանէն անցած էր։ Այսուհանդերձ փաշա էֆէնտի, եթէ հրաման տաք, պատրաստ եմ անմիջապէս վերադառնալ Չամլըճա և խուզարկութիւններու սկսիլ թէ պատանին և թէ միւս անծանօթ ոճրագործները՝ գտնելու համար։

— Անշուշտ այդ խուզարկութիւնները պիտի կատարենք, անմիջապէս, ըսաւ Մէհմէտ փաշա, բայց ատիկա այնքան կարեւոր ու դժուարին գործ մըն է որ չենք ուզեր միմիայն քեզի յանձնել...

— Ինչպէս որ դուք յարմար կը տեսնէք, պատասխանեց սպան քիչ մը արժանապատուութիւնը վիրաւորուած ձեւով մը։

Հոս վերջացաւ Շիւքրի պէյի տեղեկութիւնը։

ԺԴ.

## ԱՊՏԻՒԼ ՀԱՄԻՏԻ ԻՐԱՏԷՆ

*Կէս գիշերը շատոնց անցեր էր արդէն։ Լրտեսներու և ոստիկաններու նոր արշաւախումբ մը մեկնած էր դէպի Սկիւտար Նարմանի խուզարկութիւններու համար։ Եըլտըզի պալատին մէջ իրարանցումը սակայն չէր դադրած և գրեթէ բոլոր պալատականները ոտքի վրայ էին. մէկ վայրկեանէն միւսը իրենց տիրոջ հրամանները ընդունելու համար։*

*Ապտիւլ Համիտ որ պահ մը հանդարտած կը թուէր, նորէն իր հանդարտութիւնը կորսնցուցած էր և պարտիզպան Խոմէյրի եղերական վախճանը զինքը դարձեալ ընկղմեր էր հոգետանջ անձկութիւններու մէջ։*

*Եւ սակայն տասուընէ ի վեր կրած ջղային յուզումները վերջապէս զինքը զգետնեցին և պէտք զգաց պահ մը երթալ իր անկողնին վրայ հանգչելու, առանց աչքերը գոցել կարենալու։*

*Իր սովորութեան համաձայն՝ ուզեց որ ընթերցում մը ընեն իրեն։*

*Ապտիւլ Համիտ մեծ սիրահար մըն էր զգայացունց եղեռնութեանց ու ոստիկանական շահատականութեանց նուիրուած վէպերու, որոնց թարգմանութեան համար յատուկ թէ՛ թուրք և թէ հայ թարգմանիչներ ունէր։ Իր ամենէն սիրած հեղինակներն էին Էմիլ Ռիշպուր, Քսավիէ տը Մոնթէփէն, Փոնսոն տիւ Թէռայլ, Կաբօրիօ, Ժիւլ Մարի և ուրիշ այս կարգի ֆրանսացի վիպասաններ որոնց գործերը գրեթէ ամբողջութեամբ*

թարգմանել տուած էր և որոնց ընթերցումին մէջ կը փնտռէր, շատ անգամ, իր անքուն գիշերներուն սփոփանքը։

Վերջերս սակայն նոր հեղինակ մը զինքը բոլորովին հմայեր էր: Այդ հեղինակն էր անգլիացի Քօնըն Տօյլ գնդապետը, որուն աշխարհահռչակ Շէրլօք Հօլմսի արկածալից շահատականութիւնները որոնց ամենքն ալ խորհրդաւոր ոճիրներու շուրջ կը դառնան, տարօրինակ կերպով զինքը շահագրգռած էին։

Առանձին թարգմանիչ մը բաւական չըլլալով՝ երկու հոգի, օրն ի բուն զբաղած էին տաղանդաւոր անգլիացի վիպասանին գործերը թուրքերէնի թարգմանելու։ Աբտիւլ Համիտ յաճախ հիացած էր Շէրլօք Հօլմսը վրայ որ ամենափոքր ու աննշան հետքէ մը խորհրդաւոր և անլուծելի կարծուած գաղտնիք մը երեւան կը հանէր:

Իր խանդավառութիւնը Քօնըն Տօյլի մասին այն աստիճան առաջ գացած էր որ քանի մը ամիս առաջ զայն Պոլիս հրաւիրած էր անձամբ ծանօթանալու համար իրեն։ Շէրլօք Հօլմսի հեղինակը ընդունած էր հրաւէրը և Պոլիս եկած և իր գալուն յաջորդ շաբթուն, ուրբաթ օր մը, գացած էր Պէշիկթաշ, Սէլամլըքի արարողութեան ներկայ գտնուելու։ Ըստ իրեն եղած զեկուցումին՝ արարողութենէն ետքը, Սուլթանը պիտի բարեհաճէր ներկայութեան ընդունելու զինքը:

Բայց արարողութենէն ետքը, Քօնըն Տօյլ ի զուր սպասեր էր Մէրասիմ Տաիրէսիի մէջ որպէս զի պալատին արարողապետը դայ զինքը Աբտիւլ Համիտի քով առաջնորդելու համար։ Ի փոխարէն արարողապետին՝ Թիկնապահ մը եկած էր իմաց տալու թէ նոյն օրը Սուլթանը չպիտի կրնար զինքը ընդունիլ և Քօնըն Տօյլ մեկնած էր Սէլամլըքէն բաւական սրտնեղած տրամադրութեամբ մը: Թիկնապահը աւելցուց էր թէ հաւանօրէն վեհափառ Սուլթանը իմաց պիտի տայ թէ ո՛ր օր կրնար զինքը ընդունիլ։

Քանի մը օրեր անցեր էին ու նորէն ո և է հրաւէր չէր ընդունած։ Քօնըն Տօյլի համբերութիւնը սպառեր էր վերջապէս

և օր մըն ալ պալատի առաջին քարտուղար Թահսին փաշայի տոմսակ մը ուղղելով՝ չոր կերպով ծանուցած էր թէ երկու օրէն կը վերադառնար Անգղիա, չկրնալով հասկնալ իր յառա-կապէս Պոլիս հրաւիրուելուն շարժառիթը։ Այս տոմսակը որուն պարունակութիւնը անմիջապէս հաղորդուեցաւ Աբտիւլ Համիտի, բաւական յուզում պատճառեց բոլորին, այսուհանդերձ կրկին մերժեց ընդունիլ մեծանուն վիպասանը։ Միայն թէ այս անգամ Սուլթանը հարկ դատեց անմիջապէս արքայազն Իպրահիմ փաշան ղրկել Քօնըն Տօյլի մօտ և դրամական մեծ նուէր մը և թանկագին ընծայ մը տալ հռչակաւոր վիպասանին ցաւ յայտնելով միանգամայն որ, չպիտի կրնար այդ օրերը ընդունիլ մեծայարգ հիւրը և թէ չուզեր զինքը սպասցնել եթէ Անգղիա վերադառնալ կը փափաքի։ Վիպասանը հասկցաւ որ զինքը քաղաքավարօրէն ճամբու կը դնէին և հետևեալ օրն իսկ իր պայուսակը կապելով, արևելեան ճեպընթացով մեկնեցաւ Պոլսէն, չկրնալով մեկնութիւն մը տալ Աբտիւլ Համիտի այս տարօրինակ ընթացքին:

Քօնըն Տօյլի Պոլիս ժամանումը և մեկնումը անծանօթ մնացած է հասարակութեան և խնդրին մօտէն ծանօթ եղողները միայն գիտեն 1904ի գարնան պատահած այս միջադէպը։

Իսկ թէ ինչո՞ւ Աբտիլ Համիտ մասնաւոր հրաւէրով զայն Պոլիս կանչելէ ետքը, չուզեց իր ներկայութեան ընդունիլ, ասոր բացատրութիւնը պարզապէս հետևեալն է։

Սըր Արթըր Քօնըն Տօյլի Պոլիս հասնելուն հետևեալ օրն իսկ՝ Սուլթան Համիտ «ճուռնալ» մը կը ստանար գրեթէ սա իմաստով.

«Իբրև ձեր Վեհափառութեան ամենահաւատարիմ և անձնուէր ծառան, պարտք կը զգամ ձեր բարձր ուշադրութիւնը հրաւիրել հետևեալ տողերուս վրայ.

«Երէկ առտու արևելեան ճեպընթացով Պոլիս հասած է, ըստ ձեր բարձր փափաքին, Անգղիացի ծանօթ վիպասան Սըր Արթըր Քօնըն Տօյլ և որ, ըստ տարաձայնութեան, այս օրերս

պատիւը պիտի ունենայ արժանանալու ձեր Վեհափառութեան կողմէ մասնաւոր ունկնդրութեան մը։ Պարտք կը զգամ այս առթիւ յայտարարել որ Քօնըն Տօյլ իրեն եղած հրաւէրը անմիջապէս ընդունելով՝ նպատակ ունի ո՛չ միայն ձեր վեհափառութեան շնորհներուն արժանանալ, այլ միանգամայն օգտուելով իրեն եղած թոյլտուութիւններէն, մանրակրկիտ կերպով դիտել և ուսումնասիրել Եըլտըզի պալատն ու ներքին կեանքը և նոր վէպի մը նիւթ ընել զանոնք, ի փառս ձեր վեհափառութեան բարձր և տիեզերահռչակ համբաւին։ Քօնըն Տօյլ իր այս նպատակը յայտնած էր արդէն մեկնիլներու և նոյն իսկ պայմանադրութիւն մը կնքուած է այն հրատարակչին հետ որ պիտի տպագրէ այն վէպը։

«Իմ քաղած այս ամենաստոյգ տեղեկութիւններս պարտք կը զգամ խոնարհաբար ներկայացնել ձեզ վեհափառութեան որպէսզի պատրաստ ու պատշաճը տնօրինէք ձեր բարձր կամքին համեմատ»։

Այս «ճուռնալ»ը որ ծանօթ հայ խաֆիէ մը ստորագրած էր և որուն գործունէութիւնը պիտի տեսնենք տակաւին այս պատմութեան ընթացքին մէջ, մատնանջութեան մասնեց Սապահ Համիտի կասկածոտ երեւակայութիւնը։ Իրեն համար ամենէն անհաճոյ բանն էր եւրոպական հրատարակութիւններու մէջ երեւալ, աննպաստ գոյնով մը և ասոր համար ամէն զոհողութիւն կ'ընէր, յաճախ զո՛ն երթալով կարգ մը եւրոպացի շանթաժիստներու որոնք իր այս տկար կողմը կը շահագործէին անպակաս կերպով։

Այս «ճուռնալ»ը որ ծայրէ ի ծայր գրուած էր առանց ո և է հիմնական ճշմարտութեան մը և մի միայն մտացածին ենթադրութիւններու վրայ, բաւ եղաւ որ Սապահ Համիտ հրաժարի իր խորհրդէն և կասկածոտ աչքով մը նայի անգղիացի մեծանուն վիպասանին վրայ, որուն ընակած պանդոկը հետեւեալ օրն իսկ շրջապատուեցաւ լրտեսներու խումբով մը։

Շէրլօք Հօլմսի համբաւաւոր հեղինակին վրայ այս միջա-

դէպը պատմելէ ետքը, որ ցոյց կու տայ թէ Սամուէլ Համիլտ ինչ ուշադրանի յարգ կ'ընծայէր Անգղիացի մեքենապետին, դառնանք մեր նիւթին։

Ինչպէս ըսինք, այդ իրիկուն, կամ մանաւանդ առաւօտուն, որովհետեւ արդէն լուսնալու մօտ էր, Սույծըն եր-կընցած երկար ու հանդարտաւէտ թիկնաթոռի մը վրայ որ յաճախ իբրեւ անկողին կը ծառայէր, մտիկ կ'ընէր Շէրլօք Հոլմսի չնաստականութիւնները, զորոնք իր հաւատարիմներէն մին կը կարդար։

Նորէն խորհրդաւոր ոճիրի մը պատմութիւնն էր զոր գաղտ-նի ոստիկանը կրցած էր երեւան հանել շնորհիւ այցաքարտի մը վրայ դրուած երկու բառերու։ Այցաքարտին թուղթը, երկու բառերը, գործածուած մելանը եւ գիրերուն ձեւը բաւական եղեր էին Շէրլօք Հոլմսի, կարգ մը հետեւութիւններ ընելու որոնցմով յաջողած էր երեւան հանել խորհրդաւոր ոճ-րին անծանօթ մնացած հեղինակները։

Պատմութիւնը այնքա՜ն հրաշալի կերպով գրուած էր, գաղտնի ոստիկանին հետեւութիւնները այնքա՜ն բնական, պայծառ եւ յստակ էին, որ Սամուէլ Համիլտ ալ ի բերան մը-նաց եւ ընթերցումը աւարտելէ ետքը, երկար ատեն մտածեց անոր վրայ։

— Ա՜խ, կը խորհէր ինքնիրեն, թէ կարելի ըլլար Շէրլօք Հոլմսի պէս մէկը ունենալ, արդեօք որքան դիւրին կերպով երեւան պիտի հանուէին զինքը օրերէ ի վեր տագնապի մատ-նող անձերը, մանաւանդ որ այժմ անոնց կողմէ դրուած թուղթ մըն ալ ունէր իր քովը եւ յետոյ ուրիշ շարք մը հետ-քեր որոնք թէեւ բաւական աղօտ ու անորոշ էին, սակայն Շէրլօք Հոլմսի պէս մէկու մը համար նոյնիսկ չափազանց պայ-ծառ ու որոշ պիտի ըլլային։

Այս մտածումներէն ազատուած, յանկարծ դարձաւ դէպի ընթերցողը եւ հարցուց։

— Արդեօք կը կարծե՞ս որ կրնայ ըլլալ գոյութիւն ունեցած

է Շէյլօք Հօլմզ թէ պարզապէս հեղինակին երեւակայութենէն ծնած անձ մըն է:

— Վնա՛ս խառ. տէր, պատասխանեց միւսը, մարդկային երեւակայութիւնը, առանց իրականութեան օժանդակութեան չկրնար ստեղծել այսքան զարմանալի պատահարներ եւ ինծի այնպէս կուգայ որ հեղինակը իր պատմութիւններուն մէջ ճըշմարիտ իրողութիւններ կը պատմէ եւ թէ Շէյլօք Հօլմզ ո՛չ թէ երեւակայական անձ մըն է, այլ իրաւցնէ մէկը որ գոյութիւն ունեցած է:

— Ինծի ալ այնպէս կը թուի, ըսաւ Ապտիւլ Համիտ, հեղինակը առանձին չէր կրնար երեւակայել այս ամէնքը: Շէյլօք Հօլմս անպատճառ գոյութիւն ունի, գուցէ տարբեր անունով մը:

Այս խօսքերուն վրայ պահ մը լռութիւն տիրեց: Ապտիւլ Համիտ խոր մտածումի մէջ թաղուած կը թուէր եւ իր քով գտնուող հաւատարիմ պալատականը որ պատկառելի մօրուքով վաթսուն տարեկանի մօտ անձ մըն էր, չէր համարձակեր իր տիրոջ մտածումը վրդովել, նոյնիսկ ամենափոքր շշնջիւնով մը:

— Շէյլօք Հօլմս, ահա՛ ինծի պէտք եղած անհրաժեշտ մարդը, կը մտածէր Ապտիւլ Համիտ ինքնիրեն խօսելով, միայն ա՛ն կրնայ այս խորհրդաւոր գաղտնիքը լուծել:

Այս մտածումը կը սկսէր սեւեռուն գաղափար մը ըլլալ իրեն համար:

Յանկարծ դարձաւ իր քով գտնուող ընթերցողին:

— Անմիջապէս Իզզէթ փաշան հոս կանչել տուր, ըսաւ:

Մարդը փութաց սենեակէն դուրս ելլել տիրոջը հրամանը կատարելու համար:

Տասը վայրկեան ետքը Սուլթանին սիրելի քարտուղարը զոր քունէն արթնցուցած ու բերած էին, եկաւ իր տիրոջ քով:

— Իզզէթ, ըսաւ Ապտիւլ Համիտ, իր սիրականին, անմիջապէս Լոնտոն Միւզիւրուս փաշային ծածկագիր հեռագիր

մը տո՛ւր և ըսէ որ անպատճառ Շէրլօք Հօլմսը գտնելով՝ հետը պայմանաւորուի և Պոլիս դրկէ . . . :

Իզզէթ փաշա որչափ որ իր տիրոջ ամէն տեսակ արտառոց հրամաններուն վարժուած էր և «Գլխուս վրայ, էֆէնտիմ» ըսելու պատրաստ, այսուհանդերձ չկրցաւ իր զարմանքը զսպել իրեն եղած այս հրամանին վրայ և հարցական ու միանգամայն զարմացական ակնարկ մը ուղղեց Սայտ Խալ Համիտին :

— Այո՛ . կրկնեց բռնակալը, ձայնը բարձրացնելով, անմիջապէս հեռագրէ՛ դեսպանին և ըսէ որ փնտռել գտնել տայ այդ մարդը և հոս դրկէ, իր առաջարկելիք պայմանները, ինչ որ ալ ըլլան, ընդունելով :

— Շատ լաւ, վեհափառ տէ՛ր, բայց ձեր ուզած անձը եթէ չեմ սխալիր, վիպական անձ մըն է որ գոյութիւն չունի . . . :

Եղած դիտողութիւնը այնքա՜ն արդարացի էր որ Սայտ Խալ Համիտ պահ մը շփոթած մնաց, չկրնալով իր հաւատարիմ սիրականին առարկութեան պատասխանել, սակայն այս վարանումը շատ կարճ տեւեց :

— Պէտք է որ Մուսուրուս փաշա երթայ անձամբ վէպին հեղինակը՝ Քօնըն Տօյլը տեսնէ և անկէ ստուգէ թէ իրաւցնէ Շէրլօք Հօլմսը գոյութիւն ունի՞, կամ գտնէ կա՞յ ուրիշ մէկը որ իբրև տիպար ծառայած է իրեն . . . վերջապէս թող առանց ժամանակ կորսնցնելու, որոշ տեղեկութիւն մը ստանայ և մեզի հեռագրէ . . . հասկցա՞ր :

—Այո՛, վեհափառ տէր, ձեր հրամանը անմիջապէս կը կատարուի :

Եւ Իզզէթ փաշա ակնածալի խոնարհութիւն մը ընելով հեռացաւ :

Սուլթանին հրամանն պէտք էր գործադրել որքան ալ տարօրինակ, յիմարական ու ծաղրելի ըլլար ան :

Իզզէթ փաշա անմիջապէս Լոնտոնի Օսմանեան դեսպան

Միւղերիս փաշայի ուղղուած հետեւեալ հեռագիրը խմբագրեց ֆրանսերէն լեզուով.

«Մեր օգոստափառ տէրը կը հրամայէ որ անմիջապէս քննութիւն մը ձեռնարկէք, որքան կարելի է գաղտնապահութեամբ եւ առանց խնդիրը հրապարակելու, եւ տուէք թէ՝ անգլիացի ծանօթ վիպասան Քօնըն Տօյլի շարք մը վէպերուն մէջ երեւցող Շէրլօք Հոլմս անուն անձը իրապէս գոյութիւն ունեցա՞ծ է կամ գոնէ եղա՞ծ է անձ մը որմէ ներշնչուած ըլլայ վիպասանը իր պատմութիւններուն մէջ: Այս խնդրին լուսաբանութեան համար պէտք է դիմել ուղղակի հեղինակին անձնապէս եւ առանց երրորդի մը միջնորդութեան, որպէս զի խնդիրը բոլորովին ծածուկ մնայ, ինչպէս կը փափաքի մեր օգոստափառ տէրը: Այն պարագային ուր հաստատական պատասխան մը ստանաք այդ մասին, պէտք է անմիջապէս գտնէք այդ Շէրլօք Հոլմսը կամ անոր իբրեւ նախատիպար ծառայող անձը եւ հետը պայմանաւորուիք, որպէս զի մեր օգոստափառ տիրոջ ծառայութեան մէջ մտնէ: Ձեզի անսահման արտօնութիւն կը տրուի նիւթական պայմաններու մասին հետը համաձայնելու համար: Ձեր պատասխանին կը սպասենք անհամբեր»:

Իզզէթ փաշա հեռագիրը խմբագրելէ վերջ զայն թուրքերէնի թարգմանեց եւ փութաց Ապտիւլ Համիտի քով որպէս զի անոր հաւանութեանը ներկայէ:

Բռնաւորը հաւանութիւն յայտնեց գրուածքին, միայն թէ աւելցուց:

— Գրէ՛ իրեն որ եթէ յաջողի այս գործը գլուխ հանելու եւ մեր փնտռած մարդը գտնելով՝ Պոլիս ղրկելու, յաջողակ նշաններու ալ արժանանայ... յետոյ անգամ մըն ալ յիշեցո՛ւր որ գործը բացարձակապէս գաղտնի պէտք է մնայ եւ պէտք է որ եւրոպական թերթերու նիւթ չհայթայթէ:

— Շատ աղէկ, վեհափառ տէր:

— Բայց նաեւ որ այս մասին ո եւ է անգիտութիւն մը ու-

ննջարան մէջ՝ հեռագրէ առանց, վերջնական ելքի մը՝ սպասելու:

— Շատ աղէկ, Վեհափառ տէր:

Իզզէթ փաշա դուրս ելլելու վրայ էր երբ Աբտիւլ Համիտ նշան ըրաւ իրեն որ կենայ եւ աւելցուց.

— Հեռագիրը դուն քու ձեռքովդ ծածկագրէ՛, մասնաւոր ծածկագրով ու այնպէս ղրկէ:

— Գլխուս վրայ, վեհափառ տէր.

Երբ ժամ մը ետքը հեռագիրը ճամբայ ելած էր, թէեւ Իզզէթ փաշա բնաւ յոյս չունէր թէ գոհացուցիչ պատասխան մը պիտի ստանար եւ ինքնիրեն կը խնդար, մտքին առջեւ պատկերելով Միւշիրին փաշային դէմքը՝ հեռագիրը ստացած պահուն:

Եւ սակայն հետեւեալ իրիկուն իսկ Լոնտոնէն ծածկագիր հեռագիր մը կը հասնէր Եըլտըզ այս իմաստով.

«Շէրլօք Հոլմսի անթիւ խուզարկութիւններու ձեռնարկեցինք, ամենայն զգաստութեամբ: Քոնըն Տօյլի վէպերուն հերոսը իրական անձ մըն է կ'ապրի տակաւին: Ատենօք իբրեւ գաղտնի ոստիկան ծառայած է Միացեալ Նահանգներու եւ Անգլիոյ մէջ եւ այժմ գործէ քաշուած՝ Սըսեքսիոյ մէկ գիւղը կը բնակի: Իր բուն անունն է եղեր Մաք Լայն:

«Դեսպանատունէն մասնաւոր պաշտօնեայ մը զրկեցի իրեն մօտ, որպէս զի հետը միասին հոս բերէ: Կը յուսամ որ վաղը կը հասնին եւ կարող կ'ըլլամ վերջնական տեղեկութիւններ տալ: Ստացած լուրերս համեմատ՝ Մաք Լայն ոեւէ հարստութիւն չունի եւ կառավարութենէն ստացած հանգստեան մէկ համեստ թոշակովը կ'ապրի. հետեւաբար դրամական փայլուն խոստումներով կարելի պիտի ըլլայ զինքը համոզել: Շատ երջանիկ եմ որ բախտը կ'ունենամ վեհափառ տիրոջս մէկ հրամանը յաջողապէս կատարելու:»

Իզզէթ փաշա նոյն հեռագիրը թարգմանելով՝ ներկայացուց Աբտիւլ Համիտի որ շատ գոհ մնաց անոր պարունակութենէն:

Հետեւեալ օր նոր հեռագիր մը կը ծանուցանէր Մաք Լայնի Լոնտոն հասնիլը և դեսպանին հետ բանակցին ու համաձայնիլը։ Նախկին գաղանի ոստիկանին առաջարկած պայմանները չափազանց չէին։ Մեկնելու համար իբրեւ, բացառիկ գումար մը, կը պահանջէր 500 անգլ. ոսկի, յետոյ, Պոլիս հասնելէն ետքը, ամսական 150 անգլ. ոսկի, իսկ յանձնուելիք գործը յաջողութեամբ ի գլուխ հանելէն ետքն ալ 2000 ոսկիի բացէն պարգեւ մը։ Պայմանագրութիւնը կնքուեցաւ մէկ տարուան համար և նոյն իսկ եթէ գործը աւելի չաւարտէր, Մաք Լայն իրաւունք պիտի ունենար իր մէկ ամսուան ամբողջ ամսականները առնելու։ Եթէ հարկ ըլլար աւելի երկար մնալ Պոլիս, պայմանագրութիւնը պիտի վերանորոգուէր։

Ինչպէս կը տեսնուի, Սապահ Համիտի մէկ քմահաճոյքին գոհացում տալու համար այս նիւթական պայմանները բնաւ կարեւորութիւն չունէին և Լոնտոնի դեսպանը նոյն իսկ պէտք չզգաց նախապէս հաղորդելու Մաք Լայնի առաջարկած պահանջումները, այլ ամէն ինչ կարգադրեց և հետը պայմանագրուելէ ետքը, լուր հաղորդեց և խոստացուած 500 անգլ. ոսկին ղրկեց։

Վայրկենապէս ուղղուած գումար հեռագրով ղրկուեցաւ։

Այս ձեռնարկին անակնկալ և դիւրին յաջողութիւնը այնքա՜ն ուրախացուց Սապահ Համիտը որ գրեթէ բոլորովին մոռցաւ օրերէ ի վեր իր հանգիստը վրդովող տագնապները, և ամենայն փութաջանութեամբ սպասեց Շէրլօք Հոլմսի, կամ բուն իսկական անունով, Մաք Լայնի գալուստին, ապահով ըլլալով որ այս անգամ պիտի կրնար ձեռք անցնել հետապնդուած անձերը։

Օրերէ ի վեր իր վրայ տիրող ծայրայեղ գրգռութիւնը որ տակնուվրայ դարձուցած էր ամբողջ Եըլտըզի պալատը, յանկարծ տեղի տուաւ զուարթ խաղաղութեան մը։

Իր այս լաւ տրամադրութեան առաջին արդիւնքը եղա-

նէրում շնորհել Ալի Օսմանի որ Եէնի Մահալլէի ծանօթ դէպքերէն ի վեր պալատին մէջ արգելափակ կը մնար։

Խեղճ երիտասարդը թէեւ Եըլտըզի մէջ ո և է խոշտանգումի չէր ենթարկուած և իրեն ամէն հանգստութիւն ընծայուած էր և նոյն իսկ մասնաւոր խնամք տարուած էր կերակուրներու և անկողնի համար, այսուհանդերձ շատ մեծ յուսահատութեան մատնուած էր, որովհետև իր պատճառաւ հայրն ալ կը տուժէր և աչքէ կ՚իյնար ուստի Ապտիւլ Համիտի այս ներումը չափազանց ուրախացուց զինքը և սովորական աղօթքներն ու մաղթանքները ընելէ ետքը, Վեհափառ Սուլթանին արեւշատութեանը համար, վերադարձաւ իր պաշտօնին գլուխը, ինչպէս որ հրաման եղած էր։

---

ԳԼՈՒԽ ԺԳ.

## ՇԷՐԼՕՔ ՀՕԼՄՍ ՊՕԼԻՍ ԿԸ ՀԱՍՆԻ

Իզզէթ փաշա, հակառակ Լոնտոնի դեսպանին հեռագիրներուն, տակաւին չէր հաւատար թէ իրօք կարելի եղած էր գործադրել Ապտիւլ Համիտի կրատէն։

— Արդեօք դեսպանը մեր քիթին կը խնդայ կամ արդեօք ուրիշներ իրեն քիթի՞ն խնդացած են, կը մտածէր ինքնիրեն բայց և այնպէս գոհ էր որ իր վեհափառ տիրոջ կամքը կատարուած էր և անոր գրգռուած միտքը հանդարտած։

Պահանջուած 500 ոսկին ղրկելէն երկու օր վերջը, հետեւեալ կարճ հեռագիրը հասաւ Եըլտըզի պալատը։

«Մաք Լայն Լոնտոնէն ճամբայ ելաւ դէպի Բարիզ, ուրկէ Արեւելեան ճեպընթացով Պոլիս կը հասնի։ Հաճեցէ՛ք զինքը դիմաւորելու համար մէկը ղրկել կայարան։»

Որոշեալ օրը, 1904 հոկտ. 7, առտուան ժամը ըստ եւրոպական տասին, վարձու պարզ կառքով մը, Սուլթանին երկրորդ քարտուղար Իզզէթ փաշա, առանց հետեւորդի, Սիրքէճիի կայարանը կը հասնէր ու կառապանին վարձքը վճարելէ և կառքը ճամբելէ ետքը, կը մնար առաջին և երկրորդ ուղեւորներու յատկացուած սպասման սրահը։

Ապտիւլ Համիտի սիրական ու ամենազօր պալատականը այնքա՛ն պարզ ու խոնարհ կերպարանք մը ունէր որ ոչ ոքի ուշադրութիւնը գրաւեց, մանաւանդ որ զինքը ճանչցող մէկը չի կար, այդ միջոցին կայարանին մէջ։

Սրահ մտած պահուն՝ դուռը կեցող պաշտօնեային ձեռքի տոմսակը երկնցնելով հարցուց.

— Ե՞րբ կը հասնի արեւելեան ճեպընթացը։

— Ժամը տասնուկէսին։

Իզզէթ փաշա ժամացոյցը նայելով՝ ինքնիրեն ու բաւական բարձր ձայնով մը ըսաւ.

— Ուրեմն դեռ կէս ժամու չափ ատեն կայ։

— Նոյն իսկ աւելի, պատասխանեց պաշտօնեան կարծելով թէ խօսքը իրե՛ն կ'ուղղուէր, որովհետեւ, աւելցուց, ճեպընթացը քառորդ մը ուշ մնացած է և հազիւ տասնըմէկին մօտերը պիտի հասնի։

Պալատականը սիկառէթ մը վառեց և դէպի պիւֆէն ուղղուեցաւ և քօնեաք մը ապսպրելով՝ ի մի ումպ խմեց, յետոյ կարծես ճանչցուելու կամ ուշադրութիւն չգրաւելու համար, անկիւն մը քաշուեցաւ և գրպանէն օրաթերթ մը հանելով՝ սկսաւ կարդալ։

Սրահին մէջ բաւական բազմութիւն արդէն հաւաքուած էր, մանաւանդ պանդոկի թարգմաններ և միջնորդներ որոնք որսի հոտ առած անգղերու պէս կը սպասէին հոն։

Կային նաեւ մէկ քանի լրտեսներ որոնք եկած էին հասնող ճամբորդները քննելու և կասկածելի երեւցող մարդիկը հետապնդելու համար։ Այս լրտեսներէն մին թէեւ ճանչցաւ Իզզէթ փաշան, բայց չհամարձակեցաւ նոյն իսկ քովը մօտենալ փորձելու։ Միայն թէ միտքը դրաւ հեռուէն հետեւ զայն իր աչքէն չվրիպեցնելու։

Քանի վայրկեանի չափ իր թերթը կարդալէ ետքը, պատուականը զայն ծալլեց ու գրպանը դրաւ. յետոյ կրկին մօտենալով պուֆէին, քօնեաք մը եւս ապսպրեց ու խմեց։

Կառախումբի ժամանումին ատենը մօտեցած էր ու կայարանի քարափին վրայ ոգեւորութիւն մը կը տիրէր։ Բեռնաբարձ կառքերու թաւալումին ձայները կը լսուէին ինչպէս նաեւ բեռնակիրներու և երկաթուղիի պաշտօնեաններուն պոռչտուքը։ Իզզէթ փաշա քարափին վրայ ելաւ եւ ուղղուեցաւ միւս կողմը ուր պիտի կենար կառախումբը։

Հեռուէն յանկարծ սուլիչի հատու ձայն մը լսուեցաւ։

— Կուգայ կոր, գոչեցին ամէն կողմէ։

Րոպէ մը ետքը կրկին սուլում մը, յետոյ անիւներու թաւալումին ու վայրաշարժի փչփչոցին ձայնը և ահա՛ երեւցաւ արեւելեան ճեպընթացի երկար վակօններու շարքը, որ ահեղի պարանի մը պէս սողալով ու ոլորուելով կը յառաջանար, սպառնական ձեւով մը։

— Ուշադրութիւն, մէկ կողմ քաշուեցէ՛ք, գոչեց կայարանապետը մէկ քանի անհամբերներու որոնք քարափին եզերքին մօտեցած էին։

Բայց կառախումբը արդէն իր գնացքը մեղմացուցած էր ու վեհափառ հանդարտութեամբ մը կը մօտենար կայարան, մինչ վակօններու պատուհաններէն դուրս կ'երկարէին ուղեւորներու գլուխներ որոնք ծանօթներ ու բարեկամներ կը փնտռէին քարափի կեցող բազմութեան մէջ։

Իզզէթ փաշա որ կռնակը երկաթէ սիւներէն մէկուն տուած ու ձեռքը սիկառէթ մը, անտարբեր կերպարանքով

կը դիտէր պատուհանէն դուրս երկարող գլուխները, որոնք կառախումբը բոլորովին կանգ առաւ և ճամբորդները սկսան վար իջնալ, տեղը թողուց և եկաւ առաջին կարգի վակօն-ներուն քով:

Այդ վակօններէն միայն պատուհանէն գլուխ մը կ'երևւար, անգղիական քափիով ծածկուած: Մօրուքն ու պեխերը ամբողջովին ածիլուած, նուրբ քիթով կարմիր երեսներով ու-մայլ և վառվռուն աչքերով մարդ մըն էր: Տարիքը կարելի չէր որոշել, բայց մազերը դիտողը պիտի գուշակէր որ 45 էն 50 տարեկան ըլլալու էր, որովհետև արդէն բաւական ճերմակ թելեր կ'երևային, բայց իր դէմքը բոլորովին երիտասարդ մնացած էր:

Այս մարդը խուզարկու ակնարկով մը չորս կողմը կը նայէր, կարծես ծանօթ մը փնտռելու համար, սակայն ճամբորդները դիմաւորելու եկող բազմութեան մէջ ոչ ոք ուշադրութիւն կը դարձնէր իրեն:

— Իմ սպասած մարդը այս ըլլալու է, խորհեցաւ ինքնիրեն Իզզէթ փաշա:

Նոյն միջոցին պանդոկի ծառայեան մը մօտեցաւ պատուհանին և իր ներկայացուցած պանդոկին անունը տալով, տոմսակ մը երկարեց անոր.

Մարդը ձեռքովը բացատրական նշան մը ընելով, բարձր ձայնով բառ թուրքերէն ըսաւ.

— Եօք, եօք, իսթէմէզ, պէնիմ էվ վար:

Թուրքերէնով բռնած այս կցկտուր խօսքերը իրենց ազդեցութիւնը ունեցան: Պանդոկի թարգմանը և իրեն քով գտնուող ուրիշ մէկ քանի նմանօրինակ միջնորդներ տեսնելով որ անծանօթը թուրքերէն կը խօսի, հեռացան քովէն, մտածելով:

— Պոլսեցի օտարական մը ըլլալու է, մեզի համար հաց չկայ այստեղ:

Այն ատեն մարդը պատուհանէն հեռացաւ և վայրկեան

մը եռքը քարափին վրայ իջաւ, ձեռքը կաշիէ փոքրիկ պայուսակ մը բռնած:

Իզզէթ փաշա իսկոյն իր քովը գնաց:

— Բարեւ, պարոն Մաք Լայն, բարի եկաք, ըսաւ ֆրանսերէն լեզուով:

Միւսը կասկածոտ նայուածք մը ուղղեց իրեն եւ պատասխանեց.

— Կը ներէք, ձեզ ճանչնալու պատիւը չունիմ:

Սուլթանին քարտուղարը առանց խօսք մը ըսելու, անմիջապէս թղթապանակին մէջէն այցետոմսը հանեց ու անծանօթին ներկայացուց:

Մարդը ակնարկ մը նետեց այցետոմսին վրայ եւ զուարթ դէմքով մը գոչեց.

— Օ՛, շատ լաւ ուրեմն... երջանիկ եմ ձեզ ճանչնալու պատիւը ունենալուս, այո՛, նոյնինքն Մաք Լայնն եմ, ահաւասիկ իմ քարդս:

Եւ ինքն ալ իր կարգին իր այցետոմսը ներկայացուց փաշային. յետոյ աւելցուց.

— Եթէ կ՚ուզէք, կրնանք մեկնիլ:

— Բայց նախ պէտք է բեռները առնենք:

— Ահաւասիկ բեռներս, պատասխանեց Անգլիացին, իր ձեռքի փոքրիկ պայուսակը ցոյց տալով:

— Բայց միթէ ուրիշ սնտուկ չունի՞ք:

— Ո՛չ, սնտուկով ճամբորդելու չեմ վարժուած եւ նոյնիսկ այս պայուսա՛կը ծանր բեռ մըն է ինծի համար, բայց ստիպուեցայ հետս առնել, որովհետեւ չորս օր չարունակ պիտի ուղեւորէի:

Նոյն միջոցին ոստիկանութեան երկու պաշտօնեաներ եկան Անգլիացիին անցագիրը քննելու:

— Գործերնիդ գացէ՛ք, գոչեց Իզզէթ փաշա հրամայական շեշտով մը:

Պաշտօնեաները որոնք չէին ճանչնար իրենց հետ այսպէս

խիստ կերպով խօսող անձը, անոր չասելն եւ իրենցմէ մին որ գլխաւորը ըլլալ կը թուէր, չոր ձայնով մը պատասխանեց.

— Էֆէնտի, մենք մեր պարտականութիւնը կը կատարենք եւ ըսած է, որ անցագիրը նայինք:

— Գիտէ՞ք որու հետ կը խօսիք կոր գոչեց պալատականը Վեհափառ Սուլթանին քարտուղար Իզզէթ փաշան եմ ես...:

Այս խօսքերը չանցին այն խեղճ երկու պաշտօնեաներու գլխէն, որոնք ափ ի բերան մնացած, չէին կրնար նոյնիսկ ներողութիւն խնդրելու համար բառ մը գտնել եւ գետնատած խոնարհութիւններով կը գոռնային:

Մաք Լայն այս տեսարանը կը դիտէր անտակ մը զուարթութեամբ:

— Կարծեմ անցագիր կը պահանջեն կոր, բայց փաշային արդէն գրպանս է եւ կրնանք ցոյց տալ:

— Ոչ՛, հարկ չկայ, քանի որ ինծի հետ էք, կրնանք չուզել ձեր անցագիրը նայելու:

— Բայց միթէ բոլոր երկրին ոստիկանական օրէնքներուն պարտաւոր չէ՞ն ամէն համար ճամբորդներուն անցագիրը քննելու.

— Այո՛, ... բայց երբ ինծի պէս պալատական մը կը ներկայանայ այդ, ուղեւորին ալ անցագիրը նայելու պէտք չի կայ:

— Ես տակայն այս պաշտօնեաները ձեզ չէին ճանչնար, ինչպէս կ'երեւայ:

— Չէին ճանչնար, բայց ինքզինքս ճանչցուցի:

— Բայց կարելի է սուտ խօսեցաք, ըսաւ Անգղիացին:

Իզզէթ փաշա չի պատասխանեց:

Ետքնը միասին հասած էին եւքի դրան առջեւ, ուր կը գտնուէր մաքսը:

— Կարծեմ պայուսակս պէտք նայեն, ըսաւ Մաք Լայն, բա՛ն, թող նայեն, արդէն մէջը մէկ քանի կտոր ճերմակեղէն ունիմ միայն:

Բայց անցեալի հարցման ոստիկանութեան երկու պաշտօնեաները իրենց քիչ մը առաջ գործած ձախողութիւնը դարմանելու և Սուլթանին քարտուղարին աչքը մտնելու համար, վազած ելած էին և անմիջապէս մաքսատան պաշտօնեային հաղորդուած թէ այդ ուղեւորին պայուսակը պէտք չէր նայիլ:

— Դուք պէտք չունիք մաքսատունէն անցնելու, ըսաւ Իզզէթ փաշա, կը խնդրեմ ինծի հետեւեցէ՛ք:

— Հազիւ ուզեց Պոլիս գալ և արդէն առանձնաշնորհեալ արարած մը դարձայ, պատասխանեց Մաք Լայն քմծիծաղով մը, սակայն ես պիտի նախընտրէի հասարակ մահկանացու մը պէս մտնել քաղաք, աւելի ճիշդ գաղափար մը կազմելու համար ամէն բանի վրայ:

— Մինչ ժամանակ ունիք ձեր ուսումնասիրութիւնները կատարելու, գիտել տուաւ Իզզէթ փաշա, հիմայ ամենէն կարեւոր բանն է պալատ երթալ ուր անհամբեր ձեզի կը սպասեն:

— Ինչպէս որ կ'ուզէք:

Դուրսը բակին մէջ, պալատական քարտուղարը կառք մը մտաւ և իր քով հրաւիրեց նորեկ հիւրը և կառապանին հրամայեց դէպի Պէշիկթաշ քշել կառքը:

Հազիւ թէ ճամբայ ելած էին, Իզզէթ փաշա իր հիւրին սիկարէթ մը հրամցնելով ըսաւ.

— Քիչ մը առաջ, երբ մաքսատան փակոցին մէջ էիք, զարմանքով լսեցի որ Թուրքերէն խօսեցաք դուրսը կեցող պանդոկի թարգմաններուն հետ, արդեօք ծանօ՞թ էք մեր լեզուին:

— Այո՛, քիչ մը ծանօթացայ, չորս օրէ ի վեր, պատասխանեց անգլիացին թեթեւ ժպիտով մը: Լոնտոնէն մեկնելէ առաջ Թուրքերէն սորվելու համար գիրք մը առի և ճամբան բառարան ուսումնասիրեցի, այնպէս որ անհրաժեշտ եղող բաները կրնամ հասկնալ . . . :

Իզզէթ փաշա հիացական ակնարկ մը ուղղեց իր խօ-

սակցին, բայց անիկա արդէն գլուխը անդին դարձուցած, փողոցը կը դիտէր։

— Կարծեմ Պահչէ Գափու կը գտնուինք ու հիմայ կամուրջէն անցնելով Ղալաթիա պիտի անցնինք և Օրթաքէօյի թրամվէյի ճամբէն պիտի երթանք Պէշիկթաշ. այնպէս չէ՞, հարցուց Մաք Լայն։

— Այո՛, պատասխանեց պալատականը կրկին զարմացական ակնարկով մը, ճամբանիս այդ է։

— Բայց կարծեմ Բերայէն ալ կարելի է երթալ, Թաշ Քըշլայի կամ Մաչքայի զօրանոցներուն քովէն վար իջնելով...։

— Այո՛, սակայն ճամբանիս կը հեռանայ։

— Ճշմարիտ է, թէ ճամբան աւելի երկայն է և մինչև Թաքսիմ պիտի ստիպուինք ցից զառիվեր մը ելլել։

— Ուրեմն, Պ. Մաք Լայն, Պոլիսը կը ճանչնաք արդէն, ես կը կարծէի որ առաջին անգամն է ձեր հոս գալը։

— Ճիշդ է, առաջին անգամն է որ ոտքս Պոլիս կը դնեմ բայց այս տասուու շոգեկառքին մէջ բաւական ուսումնասիրեցի Պոլսոյ վրայ խօսող ուղեւորական գիրք մը, այնպէս որ քաղաքը բաւական կը ճանչնամ։

Կառքը կամուրջին վրայէն կ՚անցնէր, Մաք Լայն մի առ մի մատնանիշ ըրաւ Սառայ Պուռնուն, Ոսկեղջիւրը, Գատը Գիւղը, Սկիւտարը, Կղզիները, ևլն.. Իզզէթ փաշա, աչքերը խոշոր խոշոր բացած կը նայէր այդ տարօրինակ մարդուն, որ չորս օրուան մէջ, կրցած էր լեզու մը սորվիլ բաւական և մանրամասնօրէն ճանչնալ քաղաք մը ուր առաջուն ոտք դըրած չէր։

— Կարծեմ այս անգամ Սուլթանը իր ուզած մարդը գըտաւ, կը խորհէր ինքնիրեն։

Յետոյ, բարձր ձայնով ըսաւ իր խօսակցին.

— Գիտէ՞ք արդեօք թէ մեր վեհափառ տէրը ինչ ծառայութիւն կը սպասէ ձենէ։

— Ձեր Լոնտոնի դեսպանը այդ մասին ոեւէ բան մը չը-

սու, գիտեմ միայն թէ Սուլթանը կ'ուզէ օգտուիլ իմ գաղտնի ոստիկանի ճարպիկութենէս:

— Շատ ճիշդ է. ժամանակէ մը ի վեր կարգ մը խորհրդաւոր ոճիրներ գործուած են Պոլսոյ մէջ որոնց հեղինակները, հակառակ մեր ոստիկանութեան ջանքերուն, մինչեւ այսօր կարելի չէ եղած ձեռք ձգել եւ մեր վեհափառ տէրը որ հանրային ապահովութեան համար մեծ հոգածութիւն ունի...

— Աւելի ճիշդը իր անձնական ապահովութեան համար, ընդմիջեց Անգղիացին ամենայն պաղարիւնով:

— Ի՞նչ ըսել կ'ուզէք, ըսաւ պալատականը սրտնեղութեամբ մը՝ զոր չկրցաւ զսպել:

— Ըսել կ'ուզեմ որ խնդիրը հանրային ապահովութեան վրայ չէ, այլ Սուլթանին անձնական ապահովութեանը վրայ եւ հարկ չկայ որ կեղծ ու պատիր խօսքերով զիրար անօգուտ տեղը խաբելու ջանքեր ընենք, որոնք ուրիշ բանի չեն ծառայեր եթէ ո՛չ մեր տեսնելիք գործը դժուարացնել:

— Բայց Սուլթանին անձնական ապահովութեան հետ ի՞նչ կապակցութիւն ունին մեր մայրաքաղաքին այս կամ այն կողմը գործուած ոճիրները:

— Կը տեսնեմ որ դժուար պիտի ըլլայ ինձ օգտակարապէս գործ տեսնել, եթէ չարունակէք այդ կերպով վարուիլ: Պէտք է անկեղծ ըլլաք եթէ կ'ուզէք յաջողիլ: Արդ, կ'ըսեմ որ խորհրդաւոր ոճիրները ուղղակի եւ սերտօրէն կապ ունին Սուլթանին անձնական ապահովութեան հետ, եթէ այդպէս չըլլային, եթէ այդ մասին ապացոյցներ չունենայիք, երբեք ձեր վեհափառ տէրը չպիտի չահագրգռուէր այդ ոճիրներով եւ ոչ ալ այսքան գաղտնի կերպով պիտի ուզէր զիս իր ծառայութեան մէջ ունենալ: Այդ ոճիրները ուղղակի կապակցութիւն ունին Ապտիւլ Համիտի անձին հետ եւ հետեւաբար այն անձերը որոնք կը հետապնդէք սովորական ոճրագործներ չեն, այլ դաւադիրներ, որոնք որոշ քաղաքական նպատակ մը ունին, որովհետեւ կարելի չէ որ այդ դաւադրութեան մաս-

նակցողները ամենքն ալ Սուլթանին անձնական թշնամիները ըլլան։ Այսպէս ուրեմն ոճիրի խօսքը պէտք չէ ընել։ Ձեր դէմը ունիք քաղաքական գաղանի կազմակերպութիւն մը, որ թաքուն նպատակներու հասնելու համար, պէտք զգացած է չարք մը ոճիրներ գործելու, ինչ որ այդ տեսակ պարագաներու մէջ սովորական է, եւ որովհետեւ իրենց նպատակը բնականաբար ներկայ կառավարութեան դէմ է, որուն գլուխն ու մարմնացումը Սուլթանն է իր բացարձակ միապետութեամբ՝ հետեւաբար Ապտիւլ Համիտ ամէն ջանք ի գործ կը դնէ բընաջնջել ընելու համար կազմակերպութիւն մը որ իր իշխանութեան կը սպառնայ։ Ահա ճշմարտութիւնը զոր դուք ալ հասկցած էք և որ պէտք է բացայայտ կերպով ըսէք և ո՛չ թէ ջանանք ծածկել զայն։

Մաք Լայնի խօսքերը այնքա՛ն ճշմարիտ էին ու Իզզէթ փաշա չկրցաւ ո և է հերքում մը տալ անոնց.

— Այո՛, կմկմաց, խնդիրը գաղանի ընկերութեան մը շուրջը կը դառնայ...

— Եթէ այնպէս չըլլար, Սուլթանին հոգն անգամ չպիտի ըլլար, պատասխանեց Անգլիացին։

Այս խօսքերուն վրայ պահ մը լռութիւն տիրեց. կառքը արագօրէն կ՚ընթանար Թօփհանէի մեծ ճամբէն և նորեկը ուշադիր կը նայէր իր շուրջը հետաքրքիր և խուզարկող նայուածքով մը։ Գրպանէն քարտէս մը հանեց և սկսաւ ջըննել զայն, իրենց գտնուած տեղը ճշդելու համար, յետոյ գըրպանէն տետրակ մը հանելով, մատիտով շատ մը ծանօթութիւններ գրեց։

Իզզէթ փաշա քիչ մը առաջուան խօսակցութենէն նեղուած, կառքին անկիւնը քաշուած՝ անընդհատ կը ծխէր։

— Այս մարդը, իր այս ազատախօսութեամբը, չպիտի կրնայ մեր մէջ երկար ատեն մնալ, կը մտածէր ինքնիրեն և եթէ ինծի հետ խօսածին պէս խօսի նաև Սուլթանին, կարծեմ

տակութեն գործի չեկած՝ պիտի տեսնուէինք զինքը ճամբու դնել։

Այս մտածումը, շիտակը խօսելու համար, շատ անհաճոյ չէր պալատականին որ իր միւս ընկերակիցներուն պէս, միշտ կասկածոտ ու նախանձոտ աչքով մը կը դիտէր ոև է նոր անձի մը պալատի ծառայութեան մէջ մտնելը։ Եւ արդէն իսկ պալատականը սկսած էր վախ զգալ այս մարդէն որուն ուշիմութիւնն ու խելքը զինքը կը զարմացնէին։ Եթէ յաջողէր Սուլթանին համակրանքը շահիլ և եթէ կարենար իրեն յանձնուած գործը կատարել, ապահովաբար այն ատեն Ապտիւլ Համիտի ամբողջ վստահութիւնը պիտի գրաւէր ու պալատին մէջ ամենազօր դիրքի մը տիրանար, ինչ որ բնաւ նենգաւոր պալատականին գործին չէր գար։ Այս պատճառաւ թէ՛ մէկ կողմէ դժգոհութիւն կը զգար Մաք Լայնի խօսքերէն և թէ միւս կողմէ ուրախ էր այդ մարդուն գրեթէ կոշտութեան մօտեցող անկեղծութենէն։

Կառքը Պէշիկթաշ հասնելով՝ ուղղուեցաւ դէպի այն զառիվայրը որ Եըլտըզի պալատը կ՚առաջնորդէր օձապտոյտ ճամբով մը։

— Ահաւասիկ մեր վեհափառ Սուլթանին պալատը, ըսաւ Իզզէթ փաշա ցոյց տալով ճերմակ շէնք մը որ վերը, ծառերուն մէջ կը բարձրանար և որուն կը մօտենային հետզհետէ։

Անգղիացին իր խուզարկու աչքերը ուղղեց դէպի ցոյց տրուած կողմը.

— Հիանալի դիրք մը ունի ձեր Սուլթանին պալատը, առանց տեսնուելու ուրիշներէն, գրեթէ ամբողջ մայրաքաղաքը աչքին առջևն է, հիանալի դիրք արդարև կասկածոտ վեհապետի մը համար... և սակայն չէ, աւելցուց, դիմացի կողմը ուրիշ դիրք մը կայ որ կարծես յատկապէս շինուած է Եըլտըզը դիտելու համար...

Եւ Անգղիացին մատնանիշ ըրաւ տախտակեան եղերքը ու աւելցուց։

— Արդեօք Սկիւտարը չէ՞, դիմացի եզերքը գտնուող գիւղը։

— Այո՛, պատասխանեց պալատականը։

— Իսկ անոր վրայ բարձրացող բլո՞ւրը,

— Չամլըճայի լեռն է, որ անուանի է իր ջուրովը։

— Գիտեմ թէ Պոլիս անտառ անտառ պատուական ջուրեր ունիք որոնց մէկն ալ կրնայ Չամլըճայինը ըլլալ, սակայն չեմ կարծեր որ ուրիշ բլուր մը ունենաք ա՛յնքան յարմար որքան Չամլըճան, Եւրոպի դէմ դառնալու իբրեւ կեդրոն ծառայելու համար... Եւրոպի Պալատը պարզապէս Չամլըճայի տիրա-պետութեան ներքեւ է... ահա՛ ինչ որ կը տեսնեմ։

Այս դիտողութիւնը ընելէ ետքը Մաք Լայն լռեց, մինչ Իզզէթ փաշա անհամբերի սպասում մը ունեցաւ։ Արդարեւ անմիջապէս յիշեց թէ պարտիզպան Խօմէր այդ կողմերը կը հետապնդէր իրենց փնտռած անձերը եւ թէ Չամլըճայի մէջ, պարտէզի մը անկիւնին մէջ մեռցուած գտնուեր էր քանի մը օր առաջ, իր մարմնոյն վրայ կրելով խորհրդաւոր զոյգ գի-րերը։

— Այս մարդը յայտնի կը տեսնուի որ պիտի յաջողի իր պաշտօնին մէջ, մտածեց պալատականը։

Վերջապէս հասան պալատի մուտքին մեծ դրան առջեւ. Կառքին վարձքը վճարելէ ետքը, երկուքը միասին ուղղուե-ցան պալատ, մինչ ծառայ մը նախանձոտ կ՚երթար ճամբորդին պայուսակը ձեռքը բռնած։

Իզզէթ փաշա Անգլիացին առաջնորդեց յատկապէս անոր համար պատրաստուած յարկաբաժինը որ կը բաղկանար երեք զարդարուն սենեակներէ, մին ննջասենեակ, միւսը զարդա-սենեակ եւ երրորդը աշխատութեան խուց մը։ Զարդասենեա-կին կից կը գտնուէր լոգարան մը իր ամբողջ սարքովը։

— Ձեր սենեակին կը թողում հոս, ըսաւ Իզզէթ փաշա, որպէսզի պահ մը հանգստանաք ճամբու յոգնութիւններէն, եթէ երբեք քանի մը պէտք ունենաք ահաւասիկ ելեկտրական

զանգակը... յատուկ սպասաւոր մը յատկացուած է ձեզի համար որ անգլիերէն ալ կը հասկնայ:

Շատ շնորհակալ եմ ձեր հոգածութեանը, պատասխանեց Մաք Լայն պայուսակները ճամբու դնելով, ու այժմ բանի մը պէտք չունիմ, եթէ հարկ ըլլայ զանգակը կը զարնեմ:

Անգլիացիին առաջին գործը եղաւ երբ առանձին մնաց հանուիլ ու պաղ ջուրի լոգանք մը ընել, յետոյ, մէկ քանի մարմնամարզական շարժումներ ընելէ ետքը հագուեցաւ և սկսաւ ուսումնասիրել Պոլսոյ նկարագրութիւնը ընող անգլիերէն նոր հրատարակուած գիրք մը, յաճախ գրքին մէջ յիշուած անունները փնտռելով իր առջեւ պարզուած քարտէսի մը մէջ:

Կէսօրին մօտ սպասաւորը ներկայանալով հարցուց հիւրին թէ կ'ուզէ՞ր ճաշել:

— Անշուշտ, պատասխանեց Մաք Լայն զուարթօրէն:

— Եթէ կը փափաքիք ձեր ճաշը հոս կը բերենք:

— Շատ աղէկ կ'ըլլայ:

Քիչ մը ետքը արծաթեայ սպասներով խոշոր ափսէի մը մէջ, ճաշը բերուեցաւ:

Անգլիացին ափսէին մէջ դրուած գինիի շիշը առաւ ու ակնարկ մը նետեց վրան:

—Շաթօ Լաֆիթ, ըսաւ ինքնիրեն, ապահովաբար այստեղ աւելի լաւ կը խմուին գաղղիական ամփիկանները քան Անգլիոյ մէջ... Ասոր իսկ Համլէտ գործին պիտի գայ, այս մարդը երբեմն ալ կ'ամբաստանեն, բայց կը մոռնան որ ճշմարիտ ձէնթըլմէնի մը պէս կը մեծարէ իր հիւրերը... կցի՛ւ թէ աւելի կանուխ ճանչցած ըլլայի զինքը... միայն թէ՝ եթէ կարելի ըլլար ճաշէն առաջ գաւաթ մը վիսքի խմել...:

Նոյն միջոցին սպասաւորը նոր մատուց շիշ մը ջուր և աման մը սառ բերելով:

— Արդեօք վիսքի կը գտնուի՞ այս տեղ, հարցուց Մաք

Լայն, որովհետև սովորութիւն ունիմ ճաշէն առաջ գաւաթ մը խմելու։

— Ճիշդ ես ալ կ՚ուզէի հարցնել թէ Այրի՞չ թէ Աքօչ գինի կը գործածէք, ըսաւ սպասաւորը։

— Աքօչ գինի Սօտա լօթըրով, պատասխանեց Մաք Լայն, բոլորովին զուարթացած սպասաւորին խօսքերէն։

Վայրկեան մը ետքը արդէն գինիին առաջին գաւաթը պարպած՝ երկրորդին կը սկսէր։

Ճաշէն յետոյ, երբ բազմոցին վրայ երկնցած՝ իր Հավանայի սիկառը կը ծխէր հեշտաւոր հանդարտութեամբ մը, դուռը զարնուեցաւ։

— Մտէ՛ք, ըսաւ Մաք Լայն։

Դուռը բացուեցաւ և սեմին վրայ երևցաւ Իզզէթ պաշա։

—Կը յուսամ որ գո՞հ մնացիք մեր կերակուրներէն, ըսաւ պաշտօնակալը դէպի Անգլիացին մօտենալով, եթէ երբէք դիտողութիւն մը ունիք յայտնեցէ՛ք, որովհետև մեր վեհափառ տէրը մասնաւորապէս հրամայած է որ ամէն կերպով հոգ տարուի ձեր հանգստութեան։

— Շատ շնորհակալ եմ իմ մասին ցոյց տրուած հոգածութենէն, բայց կրնաք վստահ ըլլալ որ ամէն կերպով գոհ և հանգիստ եմ։

Քաղաքավարական խօսքերու այս փոխանակումէն ետքը, Սուլթանին քարտուղարը թիկնաթոռի մը մէջ նստաւ, սիկառէթ մը վառեց և լուրջ դէմք մը առնելով ըսաւ.

— Վեհափառ սուլթանը կը փափաքի այսօր իսկ ձեզ իր ներկայութեանը ընդունելու և ժամէ մը պատիւ պիտի ունենամ ձեզ իր մօտ առաջնորդելու, բայց նախ և առաջ կ՚ուզեմ ձեզ մանրամասնօրէն բացատրել թէ ինչո՛ւ համար պէտք ունեցանք ձեր փորձառութեան և անձնական տաղանդին դիմելու։

— Ամենայն ուշադրութեամբ մտիկ կ՚ընեմ ձեր խօսքերուն։

Իզզէթ փաշա սկսաւ մի առ մի պատմել Գամաքլիի խորհրդաւոր պատմութիւնները, Եէնի Մահալլէի դէպքերը, պարտիզպան Էօմէրի պատմութիւնը, եղած ապարդիւն խուզարկութիւնները, գիւղիներու վրայ տեմնուած գիրերն ու թուանշանները, սուրհանդակ աղաւնիին սուլթանին ձեւով զարնուիլը ու վզէն թուղթ մը գտնուիլը, վերջապէս բոլոր այն դէպքերը զորս մեր ընթերցողները գիտեն։

Մաք Վայն ամենախորին ուշադրութեամբ հետեւեցաւ այս պատմութեան, մանր մանր ծանօթութիւններ գրելով ձեռքը գտնուած փոքրիկ տետրակի մը մէջ։

Գաղտաջոնը իր մանրակրկիտ պատմութեան մէջ բան մը չէր ըսած աղաւնիին վիզէն գտնուած փոքրիկ տոմսակին պարունակութեան մասին։

Երբ իր խօսքը աւարտեց՝ Անգլիացին հարցուց․

— Ինչ գրուած էր սուրհանդակ աղաւնիին վզէն գըտնուած տոմսին մէջ։

— Այդ բանը վեհափառ Սուլթանը լի՞ք անձամբ պիտի հաղորդէ ձեզ, որովհետեւ թուղթը իր քովն է և իրմէ զատ ոչ ոք զայն տեսած ու կարդացած է։

— Կը զարմանամ որ այսքան նշաններէ ետքը տակաւին մինչեւ հիմա չէք կրցած այդ ոճիրներուն հեղինակները ձեռք անցնել։

— Միթէ դուք կը յուսա՞ք դիւրաւ գտնել զանոնք։

— Ձեռքերնիս դրածի պէս։

Մաք Լայն այնքան վստահօրէն արտասանեց այս բառերը որ Իզզէթ փաշա հիացական նայուածք մը նետեց այս տարօրինակ մարդուն վրայ։

— Արդէն, ինչպէս ըսի, որչափ ժամանակ պիտի գամ ձեզ վեհափառ Սուլթանին քով առաջնորդելու։

— Մինչ ձեր տրամադրութեան տակն եմ։

Գաղտաջոնը մեկնեցաւ, առանձին թողլով Անգլիացին՝

որ սկսաւ աւելի ուշով կարդալ քիչ մը առաջ տետրակին մէջ գրած ծանօթութիւնները։

— Այս ի՛նչ տխուր դաւաճաններ են, կը մռլտար քթին տակէն. ի՛նչ պէտք ունին դիմակներուն վրայ մէյմէկ նշան դնելու, այս ի՛նչ անիմաստ ցուցամոլութիւն է, միթէ երբեք տեսնուած է այդպիսի անխոհեմութիւն... և յետոյ ընտրած տեղերնին չափ յայտնի համարձակ տեղ մըն է... կ՚երեւայ որ այս մարդիկը իրենց երկրի ոստիկանութեան վրայ բնաւ հաւատք կամ համարում չունին... այս ամէնուն մէջը եթէ վարպետութեամբ եղած գործ մը կայ այն ալ Եէնի Մահալլէի տունէն իրենց խոյս տալն է... ասիկա անբացատրելի կը մնայ կամ մէկ կերպով մը կը բացատրուի, այսինքն թէ՝ նոյն իսկ զիրենք հալածողներուն մէջ մեղսակից ունին որոնք գրժ-ուարին պարագաներու օգնութեան կը հասնին... եթէ այդ մարդիկը յաջողած են նոյն իսկ Երլարդի պալատին մէջ համախոհներ ունենալ այն ատեն գործս քիչ մը կը դժուարանայ... պէտք չէ որ իմ խօսքերս, ծրագիրներս, շարժումներս ո և է կերպով այդ մարդոց հաղորդուին...

Եւ Մաք Լայն նոր սիկար մը վառելով սկսաւ ժուռ գալ սենեակին մէջ, յետոյ գաւաթ մը վիսքի պատրաստեց և սկսաւ ումպ ումպ խմել։

— Հաւանական է որ ասոնք իրենց մարդիկը ունենան այս պալատին մէջ, շարունակեց ինքնիրեն խորհրդածելով, ու այն ատեն, ինչպէս կ՚ըսէի, ո՛չ միայն իմ գործս կը դըժ-ուարանայ այլ նաև վիճակս վտանգաւոր կը դառնայ... վարպետութեամբ հրամցուած սուրճ մը կամ ըմպելի մը կրնայ զիս մէջտեղէն վերցնել, ասոնք ընդհանրապէս սովորական բաներ են Արեւելքի մէջ... այն ծառան որ ինծի յանձնը-ուած է ո՞վ կրնայ վստահեցնել որ այդ դաւանի մարմինին մէկ անդամը չէ. որովհետև յայտնի կ՚երեւայ թէ գործերնիս ընդարձակ կազմակերպութիւն ունեցող մարմինի մը հետ է և

ոչ թէ տեղական մէկ քանի դաւադիրներու հետ... մարդիկը նոյն իսկ օդային թղթակցութիւն մը հաստատած են։

Այս խորհրդածութիւնները ընելով՝ Մաք Լայնի քիչ մը առաջուան զուարթութիւնը տեղի կուտար ծանր մտատանջութիւններու առջեւ։ Կրկին քանի մը ումպ վիսքի խմեց եւ շարունակեց ժուռ գալ սենեակին մէջ։

— Լաւագոյնն է գործը կարելի եղածին չափ շատ լմնցնել ջանալ ու վերադառնալ տեղս, եզրակացուց։

Յետոյ, գրասեղանին առջեւ անցնելով հապճեպով նամակ մը գրեց իր կնոջ, իր Պոլիս հասնիլը ծանուցանելու համար։ Նախկին գաղտնի ոստիկանը ամուսնացած եւ չորս զաւակներու տէր էր։ Նամակը հազիւ թէ աւարտած էր երբ դուռը զարնելով Իզզէթ փաշա կրկին երեւցաւ։

— Եկայ ձեզ նորէն վեհափառութեան քով առաջնորդելու համար, ըսաւ։

— Պատրաստ եմ, կրնանք մեկնիլ։

Պալատականը աչք մը նետեց Անգլիացիին հագուստին վրայ։

— Կը տեսնեմ որ տակաւին բոլորովին պատրաստ չէք, ըսաւ, եւ հագուստնիդ չէք փոխած։

— Հագուստը փոխե՞լ, բայց ինչպէս կ'ուզէք որ փոխեմ քանի որ ուրիշ հագուստ առած չեմ հետս...։

— Վեհափառ Սուլթանին ներկայանալու համար գոնէ սեւ րըտէնկոթ հագնիլ անհրաժեշտ է...։

— Ուրեմն յետաձգենք մեր այցելութիւնը մինչեւ որ հատ մը կարենամ ճարել։

— Սակայն Սուլթանը հրամայեց որ իսկոյն ձեզ իր քով առաջնորդեմ...։

— Այն ատեն դուք վճռեցէ՛ք թէ ինչ պէտք է ընեմ, որովհետեւ ես կարող չեմ այս հանգոյցը լուծել, պատասխանեց Անգլիացին քիչ մը սրտնեղած երեւոյթով մը։

Պալատականը պահ մը մտածեց, յետոյ վճռաբար ըսաւ.

— Լա՛ւ, այդպէս կ'երթանք իր մօտ, քանի որ ուրիշ ձեւով կարելի չէ։

— Ուրեմն մեկնինք։

Եւ երկուքը մէկտեղ դուրս ելան սենեակէն։

---

ԳԼՈՒԽ ԺԸ.

## ՄԱՔ ԼԱՅՆ ԳՈՐԾԻ ԿԸ ՍԿՍԻ

Սարգիս Համիտ խիստ սիրալիր կերպով ընդունեց իր հիւրը, առանց անոր արդուզարդի թերութեան ուշադրութիւն դարձնելու, նոյն իսկ ստիպեց որ նստի, մինչ Իզզէթ փաշա որ թարգմանի պաշտօն կը կատարէր, բարեւ բռնած՝ ոտքի կը կենար։

Մէկ քանի քաղաքավարական խօսքերու փոխանակութենէն ետքը, Սարգիս Համիտ ըսաւ.

— Կ'ուզէի վստահօրէն գիտնալ թէ իրաւցնէ դո՞ւք էք Քօնըն Տօյլի վէպերուն մէջ յիշուած Շէրլօք Հոլմսը։

— Առանց համեստութեան եւ կեղծիքի կրնամ յայտարարել որ բարեկամս Քօնըն Տօյլ իմ գաղտնի ոստիկանի կեանքէս առած է իր վէպերուն նիւթերը, զանոնք քիչ շատ պաճուճելով վիպասանական ձեւին, պատասխանեց Անգլիացին ամենայն պաղարիւնով։ Արդէն, աւելցուց, կարծեմ ձեր Լոնտոնի դեսպանը բուն իսկ Քօնըն Տօյլէն իմացած է իմ գոյութիւնս։

— Ճիշդ է ըսաւ Սարգիս Համիտ։

— Ուրեմն այս մասին կասկածելու ո և է պատճառ չունիք:

Այս խօսքերուն փոխանակումէն ետքը, սուլթանը աւելցուց:

— Անշուշտ իմ քարտուղարս մանրամասնօրէն պատմեց ձեզի ժամանակէ մը ի վեր մայրաքաղաքիս մէջ պատահած խորհրդաւոր ոճիրները, որոնց հեղինակները մինչև այսօր կարելի չեղաւ ձերբակալել:

— Այո՛, ամէն բան գիտեմ, պատասխանեց Անգղիացին.

— Ի՞նչ է ձեր կարծիքը այս ոճիրներուն մասին:

— Երկու կարծիք կարելի չէ ունենալ... կ'երևայ որ այդ ոճիրները գաղտնի կազմակերպուած ընդարձակ մարմինի մը կողմէ ի գործ դրուած են քաղաքական նպատակով մը և այդ նպատակն ալ ուրիշ բան չկրնար ըլլալ եթէ ո՛չ պետութեան ներկայ վարչական ձևը փոխել և հաւանօրէն անոր տեղ ազատական վարչութիւն մը հաստատել:

Այս խօսքերը զորս Ֆրանսերէն լեզուով կ'արտասանէր Մաք Լայն և զորս Իզզէթ փաշա Թուրքերէն կը թարգմանէր, շատ անհաճոյ տպաւորութիւն մը ըրին Աբտիւլ Համիտի վրայ, մանաւանդ ազատական վարչութեան ակնարկութիւնը զինքը բոլորովին գրգռեց: Այսուհանդերձ, հզօր ճիգ մը ընելով ինքն իր վրայ, առերևոյթ հանդարտ մնաց, միայն իր ստորին շրթունքը յուզումէն սկսաւ դողդողալ::

Մաք Լայն, որուն խուզարկու աչքերէն չէր վրիպեր և ոչ մէկ բան, ինքնիրեն ըսաւ.

— Կարծեմ իր ամենէն զգայուն թելին դպայ, բայց գիտեմ որ բանս բացարձակ ճշմարտութիւն է:

Աբտիւլ Համիտ շարունակեց:

— Գործուած ոճիրներուն նպատակը կարևորութիւն չունի և այդ մասին պէտք չիկայ ենթադրութիւններ ընելու. խնդիրը այն է որ մայրաքաղաքիս մէջ ոճիրներ գործուած են և հեղինակները անյայտ կը մնան, մեր ոստիկանական իշխանութիւնը մինչև հիմայ կարող չեղաւ զանոնք երևան

հանելու, արդ, դուք կը յուսա՞ք յաջողիլ և այդ հեղինակները գտնել:

— Ձեր վեհափառութեան կրնամ որոշ պատասխան մը տալ, երբ աչքիս առջեւ ունենամ սուրհանդակ պատանիին վզէն գտնուած տոմսակը և զայն մանրակրկիտ կերպով քննեմ:

— Այդ տոմսակը ահաւասիկ·

Եւ Սալահէլ Համիտ ձեռքը իր ծոցը տանելով հանեց հոն պահուած փոքրիկ տոմսը և զայն տուաւ իր քարտուղարին որ խոյեն անհամբերութեամբ թուղթը իր վեհափառ տիրոջ ձեռքէն առնելով՝ յանձնեց Մաք Լայնի որ տոմսին վրայ արագ ակնարկ մը նետելէ ետքը, անփոյթ ձեւով մը բաճկոնին գրպանը դրաւ զայն:

— Հիմայ որ տոմսակը յանձնեցի, շարունակեց Սալահէլ Համիտ, երբ պիտի կրնաք ձեր վերջնական պատասխանը տալ:

— Այս իրիկուն իսկ:

Սալահէլ Համիտ ուրիշ երկու շարժում մը ըրաւ, ինչ որ կը յայտնէր թէ խօսքը աւարտած էր: Իզզէթ փաշա նշան ըրաւ հիւրին և երկուքը միասին ամփոփական խոնարհութիւնները ընելով՝ մեկնեցան Համիտի քովէն:

Իր սենեակը հասնելուն պէս Մաք Լայն խաչագրոյց մը ողեց զոր անմիջապէս բերեն իրեն. յետոյ սենեակին դուռը կղպեց, Սալահէլ Համիտին տուած փոքրիկ տոմսակը գրասեղանին վրայ դրաւ, խաչագրոյցը վրան ուղեց և սկսաւ ուշի ուշով քննել:

— «Ամէն ինչ աղէկ կ'երթայ»:

Կարդաց տոմսակին առաջին խօսքերը:

— Լա՛ւ, սկսաւ մտածել ինքնիրեն, այս խօսքերը մեր ապագայ խորհրդակցութիւններուն համար ո և է նշանակութիւն մը չունին. պարզապէս ցոյց կուտան որ մինչեւ հիմա գաղտնի կազմակերպութիւնը յաջող վիճակի մէջ է և Պոլիս եկող պատուիրակները գոհ են և ինքզինքնին ապահով կը

զգան։ Աւելի աղէկ, քանի որ ինքզինքնին ապահով կը զգան, չափազանց զգուշութիւններ ձեռք չպիտի առնեն և օձիքնին դիւրաւ ձեռք պիտի տան… միայն թէ պէտք է որ միշտ այդ ապահովութեան մէջ կարծեն ինքզինքնին։

Մուք Լայն իր ընթերցումը շարունակեց և կարդաց յաջորդ պարբերութիւնը։

— «Վտանգէն խուսափեցանք»։

— Ահա՛ խօսք մը որ շատ պայծառ է, բառ, և պէտք չի կայ մեծ մարգարէ մը ըլլալու ասոր իմաստը հասկնալու համար։ Պարզապէս կ'ակնարկեն իրենց Եէնի Մահալլէի պաշարումէն ազատելնուն։ Բայց քանի որ վտանգէն խուսափելնուն լուրը կուտան, յայտ է որ նախապէս ծանուցած էին նաև վտանգի մէջ ըլլալնին, այսինքն տանը մէջ պաշարուելնին։ Արդ, պաշարուած վիճակի մէջ ի՛նչպէս կրցած են իրենց դուրսի ընկերներուն հետ հաղորդակցիլ… Անիկա կ'ենթադրէ որ նոյն իսկ Եէնի Մահալլէի մէջ և կամ շրջականները ուրիշ ընկերներ ունէին որոնք ազատօրէն կը թղթակցէին Պոլէն հեռու գտնուողներուն հետ։ Անցնինք միւս պարբերութեան։

— «Մեծ գործը կը պատրաստուի»

— Ահա՛ ծանրակշիռ յայտարարութիւն մը որ ցոյց կուտայ թէ այդ մարդիկը կարեւոր ու վճռական բան մը կը պատրաստեն և թէ մինչև հիմա գործուած մասնակի ոճիրները ուրիշ բան չեն այլ եթէ այդ «մեծ գործ»ին յաջողութիւնը ապահովելու միջոցներ… անցնինք յաջորդին.

— «Դրամ, մարդ»։

— Այո՛, այո՛, ամեն «մեծ գործ»ի պատրաստութեան համար անհրաժեշտ պայմաններն են դրամն ու մարդը և կերևայ որ մեր մարդիկը ո՛չ պէտք եղածին չափ դրամ ունէին և ոչ ալ մարդ. քանի որ իրենց հեռաւոր ընկերներէն այդ երկու բաները կը պահանջեն։ Աս ալ յայտնի կերևայ որ այդ հեռաւոր ընկերները իրենց տրամադրութեան տակ թէ՛ դրամ, ունին և թէ մարդ, եթէ ո՛չ պարապ տեղը այդ պահանջքը չպիտի ընէին։

Եթէ մարդ սիկառէթի մեծութեամբ տոմսակի մը մը վրայ տպագրուած է նամակ գրել, պարապ և անօգուտ խօսքերով զայն չլեցնել։ Շարունակենք մեր ընթերցումը։

— «Նոր օժանդակներ»։

— Ասիկա լաւ մըն է որ կուտան իրենց ընկերներուն։ Ինչպէս նախորդ խօսքէն անանուեցաւ, մարդու պէտք ունին և մինչ դուրսէն մարդ կ՚ուզեն՝ միւս կողմէ կը ջանան Պոլսոյ մէջ ալ նոր օժանդակներ գտնել և գտած ալ են։ Մեն կարելի է գիտնալ գուշակել, երկաթատարդ խմբապետը ըլլալու է, Սա-տարք պէտք որ Եէնի Մահալէի դէպքին գիշերէն ի վեր երեւան եկած չէ... խօսքը մէկ օժանդակի վրայ չէ, այլ յոգնակի ձեւով ըսուած է...։

Մտալի այս խորհրդածութիւնները ընելով հանդերձ, Մաք Լայն իր քննութիւնը առաջ կը տանէր, ատեն ատեն ծանօթութիւններ գրելով թուղթի մը վրայ։

Պահ մը սակայն իր քննութիւնը ընդհատեց, ոտքի ելաւ սիկառէթ մը վառեց ու քանի մը վայրկեան ժուռ եկաւ սենեակին մէջ։ Չէր ուզեր միտքը չափազանց ու շարունակաբար յոգնեցնել։ Յանկարծ նշմարեց վիսքիի շիշը որ սեղանին վրայ դրուած էր պարապ գաւաթի մը քով։ Ուրախութեամբ մօտեցաւ սեղանին և գաւաթը լեցնելով՝ մէկ քանի ումպ խմեց վրայէ վրայ։

Այս կարճ դադարէն ետքը, որ հազիւ տասը վայրկեան տեւած էր, վերադարձաւ գրասեղանին քով, խոշորացոյցը մօտեցուց փոքրիկ տոմսակին և իր ընդմիջած տեղէն ընթերցումը առաջ տարաւ։

— «Հինգ վստահելի միայն հոն»։

— Ահա խօսք մը որ բաւական մութ է, ըսաւ ինքնիրեն խօսելով, «հինգ վստահելի»ները հաւանօրէն անձեր են, բայց ի՞նչ կը նշանակեն «միայն հոն» խօսքերը։ Խօսքին իմաստէն կ՚երեւայ որ ըսել կ՚ուզեն «վստահելի անձեր ունինք որոնցմէ նոյնիսկ հինգ հատ կան հոն»... ո՞ւր սակայն. «հոն» խօսքը շատ անորոշ է...

Մաք Լայն, քանի մը րոպէ մտածկոտ, դէպի ձեղունը նայեցաւ, յետոյ մէկէն ձեռքը ճակտին տարաւ.

— Արդեօք, գոչեց ինքնիրեն, «հո՛ն» ըսելով «հո՞ս» ակնարկել կ'ուզէր կ'ուզեն... արդեօք խնդիրը Եզրայի քէօշկին վրա՞յ է, և պարզապէս ըսել կ'ուզեն թէ հինգ վառանցի մարդիկ ունին այստեղ, Այո՛, հաւանօրէն այս է այդ խօսքերուն իմաստը ու ատոր կը հաստատուին իմ մտածողութիւններս... որովհետեւ եթէ իրաւցնէ հինգ վառանցի մնձեր ունին հոս, մեր քիթին տակ ու մեր չուրջը, շատ կը դժուարանայ մեր գործը... այս կէտը պէտք է նախ և առաջ լուսաբանել:

Եւ Անգլիացին իր ձեռատետրին մէջ մէկ քանի նօթ առնելէ ետքը, կրկին խոշորացոյց ձեռքը բռնած՝ ընթերցումը շարունակեց.

«Մեծ յայր լուսագոյն վիճակի մէջ:»

— Մեծ յայր կարծեմ դժուար չէ գուշակել, ինչ է ակ-տութեան մը համար մեծագոյն յայրը, մանաւանդ Թուրքիոյ համար, չէ՞ մի որ իր բանակն է... այսպէս ուրեմն «Մեծ յայր» պարզապէս բանակն է որուն կ'ակնարկեն այս մարդիկը և ըսել կ'ուզեն թէ «Բանակը լուսագոյն տրամադրութեան մէջ է մեր քաղաքական շարժումին հանդէպ», քանզի յայտնի կ'երեւայ որ «լուսագոյն վիճակի մէջ է» խօսքը ուրիշ նշանակութիւն չկրնար ունենալ: Այս ենթադրութիւնս ա՛լ աւելի հաստատութիւն կը գտնէ տոմսակին յետագայ խօսքերովը.

— «Սեդանիկ, Էմինէ, Արփեալ անկասկած: Պէտք է աշխատիլ Պոլիս, Ասիան»: Վերի խօսքին կցայացնէ մասէն են տանք և ես ամենայն ապահովութեամբ հետեւեալ կերպով պիտի թարգմանեմ ամբողջութիւնը. «Բանակը լուսագոյն տրամադրութեան մէջ է մեր քաղաքական շարժումին հանդէպ. Սեդանիկի, Էմինէի և Արփեալի գործակցողներ մեզի հետ են և անոնց մասին կասկածի տեղի չի կայ, իսկ գալով Պոլսոյ և Ասիային գործակցողներուն՝ տակաւին ապահով չենք անոնց մասին, հետեւաբար պէտք է աշխատիլ անոնք ալ մեր կողմը

չանկըու»։ Ահա՛ թէ ի՛նչ ըսել կուզեն այդ մէկ քանի խօսքե-րը։ Այսպէս ուրեմն մութին մէջ գործող այս մարմինը ըն-դարձակ ճիւղեր ունի Թուրքիոյ ամեն կողմերը և նոյնիսկ մուտք գտած է բանակին մէջ, այսինքն Թուրքիոյ միակ ի-րական զօրութիւնը կազմող մարմնոյն մէջ... Օ՛, ուրեմն խնդիրը շատ ծանրակշիռ հանգամանք մը կը ստանայ... այս մարդոց միտքը յանկարծական յանդուգն միջոցով մը Սուլ-թանը մէջտեղէն վերցնել ու քաղաքական փոփոխութիւն մը յառաջ բերել չէ, ինչպէս որ նախ կ'ենթադրէի, այլ շատ ա-ւելի ընդարձակ սահմանի մը մէջ կ'ուզեն գործը պատրաստել... Եթէ նախապէս գիտնայի որ այդ տեսակ զուտ քաղաքական մարմնի մը հետ գործ պիտի ունենայի, չէաւկը այս պաշտօնը դիւրաւ չէի ընդունէր. ես կը սիրեմ ազատագործնայը հետա-պնդել ու գտնել, բայց քաղաքական խնդիրներու մէջ չեմ սիրեր քիթս խոթել... մանաւանդ որ Թուրքիա իմ հայրենիքս չէ ու ոև է պատճառ մը չունիմ Ատելու. Համիտի պէս բռ-նաւորի մը հաճելի ըլլալու...

Այս խորհրդածութիւնները ընելով՝ Մաք Լայն սրտնեղու-թեամբ ոտքի ելաւ, կրկին սիկառէթ մը վառեց և ժուռ գալ սկսաւ սենեակին մէջ։

— Ինչ անհաճոյ կացութեան մը մատնուեցայ, կը խոր-հէր, հիմա հոս գալէս ետքը պժուար է ընկրկիլ, ասիկա պար-զապէս անպատուաբեր ընթացք մը պիտի ըլլայ ինծի համար մանաւանդ որ պայմանադրութիւն մըն ալ կնքած եմ իմ ծա-ռայութեանս համար... իսկ հոս մնամ և ձեռքէս եկածը չընել խաբեբայութիւն և դաւաճանութիւն պիտի ըլլայ... և երբեք չեմ կրնար յանձն առնել այդ տեսակ վատութիւն մը։

Հակառակ իր այս հոգեկան խռովքին պահ մը ետքը կրկին սկսաւ գրասեղանին առջև և շարունակեց ընթեր-ցումը։

— «Զարդը պատմուած»

— Այս խօսքերը շատ պարզ են և ուղղակի կ'ակնար-

կեն գործուած մարդասպանութիւններուն, երեք հոգի Գանտիլլի մէջ և հատ մը Էրէնքէօյ... անկէ ետքը ուրիշ մըն ալ սպանուած են, այն է՝ պարոնիզպանը, բայց այս տոմսակը գրուած տանն, տակաւին այդ գործողութիւնը չէր կատարուած... գրուածէն կ'երևայ որ տակաւին այդ անսակ ոճիրները պիտի շարունակուին և հաւանօրէն, այսօրուընէ սկսեալ, ես ալ պատժուելու սահմանուած անձերու ցանկին մէջ պիտի անցնիմ... միայն թէ Մաք Լայն և պարոնիզպան Ճօնէր միևնոյն անձերը չեն և կարծեմ նոյնքան դիւրութեամբ կարելի չպիտի ըլլայ պատժել զիս:

— «Արդարութեան գործը կը շարունակուի:»

— Ահա՛ բացորոշ յայտարարութիւն մը մտածեց Մաք Լայն, որ պարապ խօսք չէ, քանի որ պարոնիզպան Ճօնէրին սպաննութիւնը կ'ապացուցանէ այդ «արդարութեան գործին» շարունակութիւնը: Շիտակը ըսելու համար այս մարդիկը իրենց թղթակցութիւնները կ'երևայ որ շատ բացայայտ կերպով գրելու սովորութիւն ունին, որովհետև մինչև հիմա տակաւին անլուծելի խօսքի մը չհանդիպեցայ: Կարդանք նայինք մնացած մասերը.

— «Վեց Թռչուն փախած»:

— Հէ՞, հէ՞, ըրաւ Անգլիացին այս բառերուն առջև կանգ առնելով... «վեց Թռչուն փախա՛ծ» ինչ կը նշանակէ արդեօք... Թռչունը յատուկ իմաստ մը ունենալու է այստեղ:

Քիչ մը մտածելէ ետքը Մաք Լայն շարունակեց.

— Բայց պարապ ժամանակ չանցնեմ, այս խօսքերը մեծ կարևորութիւն չունին, հաւանաբար վեց Թռչունները ձերբակալուած ու բանտարկուած անձեր են որոնք յաջողած են փախչիլ. առաջ տանինք մեր ընթերցումը.

— «Անձնուէրը ղրկեցէ՛ք շուտով. ապահով ճամբան միշտ բաց է:

— Անհասկնալի խօսքեր որոնք նոյնպէս մեծ կարևորութիւն մը չեն ներկայացներ և պարզապէս իրենց ներքին գործերուն կը վերաբերին: «Անձնուէր»ը ապահովաբար թէրօ-

ըւաթ մըն է որուն պէտք ունին և միևնոյն ատեն կը յայտնեն թէ կրնայ Պոլիս գալ այն ապահով ճամբով որ միշտ բաց է։ Ո՞րն է այս ճամբան ... Պոլիս քաղաք մըն է ուր կարելի է մտնել տասը ճամբով և շնորհիւ այստեղի տախկանութեան՝ կարծեմ ամէն ճամբաներն ալ ապահով են քիչ մը աչքը բաց եղողին համար ...։ Անցնինք ամսակին յաջորդ խօսքերուն։

— «Մահափորձը աւելորդ է, միշտ մեր ձեռքին մէջը ունինք»։

— Սուրհանդակ աղանդին սարքած մամուլին լօրեւրագոյն մասը ինծի կը թուի թէ այս է, բայց ինքնիրեն անգլիացին խոչընդոտը ձեռքէն վար դնելով ու նոր սիկառէթ մը վառելով ... կ'երևայ որ Ապտիւլ Համիտ ալ իմ կարծիքիս է ու այս բառերը կարդալէ ետքն է որ գլխոն կանչելու որոշում տուած է ... արդարև ան յայտնի կ'երևայ թէ անհարկութիւնը ուղղակի այս պալատին մէջ բնակող բնակարին համար է ...։ Այս մէկ քանի խօսքերէն կարելի է հետևեալ հետևութիւնը հանել ... կ'երևայ թէ նախապէս որոշուած էր մահափորձ մը կատարել Ապտիւլ Համիտի դէմ, բայց յետոյ այդ կազմակերպութեան այս անդի մանտաճիւղը աւելորդ գտած է այս մահափորձը, զինէ ներկայիս մէջ և տասը պատճառն ալ անմիջապէս կը յայտնէ ըսելով «Ապտիւլ Համիտը միշտ մեր ձեռքին մէջ ունինք, կրնանք ուզած ատեննիս զինքը մէջտեղէն վերցնել, հետևաբար աճապարելու պէտք չի կայ և կրնանք յարմարագոյն ժամանակին սպասել»։ Ահա՛, ըստ իս այդ խօսքերուն իմաստը։ Եւ ի՞նչպէս կ'ըլլայ որ Ապտիւլ Համիտի պէս հազարաւոր լրտեսներով, հաւատարիմ պալատականներով, անձնուէր զինուորներով պաշտպանուած մէկը իրենց ձեռքին մէջ կ'ունենան։ Ասոր համար մէկ հաւանականութիւն մը միայն կայ, այն է թէ՝ նոյնիսկ այդ լրտեսներուն, հաւատարիմ պալատականներուն և անձնուէր զինուորներուն մէջ գաղտնի ընկերութեան անդամներ

*տրուած են որոնք պէտք եղած վայրկեանին մէջտեղ պիտի ելլեն... Ճշմարիտը խօսելով՝ ես ալ եթէ Սուլթանին տեղը ըլլայի՝ այս տոմսակը կարդալէ ետքը շատ հանգիստ չէի կըրնար քնանալ անկողնոյս մէջ։*

*Այս խորհրդածութիւնը ընելէ ետքը, Մաք Լայն կրկին ընդհատեց իր ընթերցումը և ոտքի ելաւ քանի մը շրջան ընելու համար սենեակին մէջ։ Ժամացոյցը նայեցաւ ու գոչեց.*

*— Օ՛, արդէն իրիկուն եղեր է... որչա՜փ շուտ անցաւ ժամանակը և ես տակաւին տոմսակի կէսը հազիւ կարդացի... աճապարենք ուրեմն։*

*Արագ շարժումով մը գրասեղանին առջեւ անցաւ և իր խոշորացոյցը դարձեալ մօտեցուց տոմսակին։*

*— «Զգուշացէ՛ք շատախօսութենէ».*

*— Բայց բարեկամներ, գոչեց անգղիացին զուարթութեամբ, դուք էք որ շատախօսութիւն կ՚ընէք։*

*Իր ընթերցումը պիտի շարունակէր երբ յանկարծ դուռը զարնուեցաւ։*

*— Մտէ՛ք, ըսաւ Մաք Լայն գլուխը դէպի դրան դարձնելով։*

*Իսկէյթ փաշա դրան սեմին վրայ երեւցաւ շփոթած կերպով մը։*

*— Պ. Մաք Լայն, ըսաւ, կը ներէք եթէ ձեզ անհանգիստ կ՚ընեմ, բայց նոր անակնկալ մը պատահած է որ հարկ է անմիջապէս հաղորդել ձեզ..։*

*— Խօսեցէ՛ք, փաշա, ի՞նչ է պատահածը։*

*— Նոր ոճիրի մը լուրը բերին հիմա, ոճիր մը որ կը գերազանցէ մինչեւ հիմա տեղի ունեցածները...*

*— Եւ այդ ոճիրը կը կարծէք թէ կրկին մեզ զբաղեցնող խորհրդաւոր մարմնոյն կողմէ՞ գործուած է։*

*— Այդ մասին տարակոյս չի կայ։*

մամբ ու մանաւանդ իր չափազանց կասկածոտ բնաւորութեան հաստատաւ մեծ կարևորութիւն տուած է գաղտնի ոստիկա նական և քաղաքական կազմակերպութեան և կարելի է ըսել ո բովանդակ աշխարհի մէջ չի կայ երկիր մը որ Թուրքիոյ պէ քաղաքական կազմակերպութիւն մը ունենայ։

— Այո՛, այդ բանը ծանօթ է ինծի և գիտեմ թէ Թուր քիոյ բնակիչներուն կէսը միւս կէսը լրտեսելով կ'ապրի։

— Աւելի, գուցէ քիչ մը չափազանցութիւն է, բա Իզզէթ փաշա քմծիծաղով մը, այսուհանդերձ իրականութիւն շատ հեռու չէ այդ չափազանցութենէն։ Մեր վեհափառ տէր բացի սովորական լրտեսներու բանակէն որոնք ամսականաւո պաշտօնեաներ են, ունի նաև անձնուէր լրտեսներու խում մը, որ առանց որոշ ամսականի կ'աշխատի մի միայն անուղ ղակի շնորհներու արժանանալու համար... պէտք է գիտնա որ մեր մէջ լրտեսութիւնը, խիստ պատուաւոր գործ մըն է հայրենասիրական արարք մը...

Սուլթանին քարտուղարը այս խօսքերը արտասանած ա ատեն թաշկինակը հանեց և իր ճակատը սրբեց։

— Այո՛, այո՛, այդ ամէնքը գիտեմ, պատասխանեց Մաք Լայն, և մի՛ նեղուիք զանոնք ինծի բացատրելու հա մար։

— Բացի քաղաքական այս կազմակերպութիւններէն՝ ու նինք նաև մեր պալատական լրտեսներու խումբը որ բար րագոյն դաստիարակը կը կազմեն և որոնց գլուխը կը գտն այսօր փաշա մը, այսինքն վէզիր մը և վէզիրութիւնը, ան չուշա գիտէք, մեր պետութեան բարձրագոյն աստիճանն է։ Ինչպէս կը տեսնէք, պարոն, լրտեսութիւնը խիստ պատուա ւոր աստիճան մըն է մեր մէջ, քանի որ անոր նպատակն ծառայել մեր վեհափառ ու սիրելոյ վեհապետին անձնակա ապահովութեան և որովհետև մեր վեհապետը իր վրայ մարմնաւորէ բովանդակ Օսմանեան պետութիւնը, այն որ հա

ատարմաւար ծառայէ մեր վեհափառ Սուլթանին՝ ծառայած ըլլայ նաեւ ամբողջ պետութեան:

Ի նպաստ լրտեսութեան Իզզէթ փաշայի այս ջատագովական ձայնը մեծ ազդեցութիւն մը չըրաւ Անգղիացիին վրայ, ր արհամարհոտ ժպիտով մը պատասխանեց.

— Լրտեսութեան մասին ձեր ըմբռնումները որոնք այնքան պերճախօս կերպով կը բացատրէք, ո՛և է օգտակարութիւն չեն կրնար ունենալ մեզի համար և ի զուր տեղ ժամավաճառութիւն ըրած կ'ըլլանք այդ մասին երկար խօսելով, ւստի, եթէ կը հաճիք, անմիջապէս մեզ շահագրգռող բուն նդրին դառնանք:

— Այս բացատրութիւնը պէտք զգացի տալ որպէս զի ուղղայն կերպով հասկնաք յետոյ ըսելիքներս, ըսաւ կայսերական քարտուղարը Մաք Լայնի դիտողութենէն թեթեւապէս սրտնեղած:

Յետոյ, սիկառէթ մը վառելով խօսքը առաջ տարաւ:

— Բացի այս կանոններէն՝ մեր պալատին մէջ ունինք ևս կին լրտեսներու ճիւղ մը որ ատկաւին հազիւ մէկ երկու տարիէ վեր կազմուած է և որ սակայն յաճախ մեծ ծառայութիւն մատուցած է պետութեան...

— Այսինքն՝ Աբտիւլ Համիտի, ըսաւ Մաք Լայն:

— Այդ էն բուն թէ միեւնոյն բանն է Սուլթանն ու պետութիւնը, պատասխանեց Իզզէթ փաշա:

— Կը ներեք, երբեք նորեկ մը ատկութիւն չկրցայ անմիջապէս վարժուիլ այդ փորձառութեան, պատասխանեց ֆիւսը միշտ հեգնական ժպիտով մը, բայց, կը խնդրեմ խօսքերնիդ շարունակեցէք:

— Այս կին լրտեսներու գլուխը կը գտնուի կայսերական իշխանուհի մը, որ նոյն ինքն մեր վեհափառ տիրոջ աղջիկներէն մին է...:

— Օ՛, օ՛, գոչեց Անգղիացին զարմացական շեշտով մը, կը խոստովանիմ որ երբեք չպիտի կրնայի երեւակայել այդ-

պէսի բան մը . . . : Սուլթանի մը աղջիկը որ լրտեսներու պետն է:

— Այո՛, պարոն, այս իշխանուհին իր տարօրինակ խելքովը ու ճարպիկութեամբը, ինչպէս ըսի, մինչեւ այսօր մեծամեծ ծառայութիւններ մատուցած է: Բացի իր հրամանին տակ գործող Թրքուհիներէ, որոնց պաշտօնն է մասնաւորաբար բարձր պաշտօնեաններու հարէմներուն մէջ լրտեսութիւն կատարել, իշխանուհին իր ձեռքին տակ ունի հայ, յոյն, հրեայ եւ նոյն իսկ եւրոպացի կիներէ բաղկացած խումբ մը, որոնց միջոցաւ յաճախ կարող կ'ըլլայ ամենածածուկ տեղեկութիւններ քաղել: Այս նախնական անհրաժեշտ տեղեկութիւնները տալէ ետքը, դառնամ բո՛ւն մեզ զբաղեցնող խնդրին: Վերջերս իշխանուհիին հրամանին տակ գտնուող հայ լրտեսուհի մը միջոցաւ իմացանք որ երկու Թրքուհիներ ժամանակէ մը ի վեր այցելութեան կ'երթան եղեր Բանկալթի, զինուորական վարժարանին դէմ գտնուող տուն մը: Անմիջապէս քննութեան ձեռնարկելով՝ տեղեկացանք որ այդ տունը կը բնակի Ֆրանսացի մը Ալպէր Ռ. . . անուն, որուն կինը իր ամուսինէն բաժնուած կ'ապրի Բարիզի մէջ եւ աղջիկն ալ ամուսնացած է մեծ պետութեան դեսպանատան մը նախկին առաջին թարգմանին հետ, որ այժմ իբրեւ ընդհանուր հիւպատոս արտասահման կը գտնուի: Այդ Պ. Ալպէրը արդէն շատոնց ի վեր կասկածելի եղած էր մեզի: Ինք երկար տարիներէ ի վեր Պոլիս հաստատուած, Պատայի մէջ հարստացած ու յետոյ հարստութիւնը կորսնցուցած մարդ մըն է, որ այժմ որոշ գործ մը չունի, բայց միշտ յարաբերութեան մէջ է դեսպանատուններու հետ. բաց աստի իմացած ենք որ հայ յեղափոխականներու հետ յարաբերութիւններ ունեցած եւ նոյնիսկ անոնցմէ շատերուն օգնած է Պոլսէն փախչելու դիւրութիւններ տալով. յետոյ նոյն իսկ կապեր հաստատած է Երիտասարդ Թուրքերու հետ եւ անոնց թղթակցութեանց եւ յարաբերութեանց իբրեւ միջնորդ ծառայած է:

Սակայն բոլոր այս ծանր կասկածներուն հակառակ, չէինք

*կրցած իրեն դէմ ո և է միջոց ձեռք առնել, նախ որ դրական ու որոշ փաստեր ու ապացոյցներ չունէինք և ասկէ զատ ինք Ֆրանսացի է և իր պետութեան պաշտպանութիւնը կը վայելէ մանաւանդ որ իր ազգականներէն մէկն ալ բարձր պաշտօն մը ունի դեսպանատան մէջ։ Բայց այս անգամ եղած յայտնութիւնը այնքան կարևոր էր որ անմիջապէս իր տունը և անձը գաղտնի ոստիկաններով ու լրտեսներով պաշարեցինք, սպասելով որ անհերքելի ապացոյց մը ձեռք ձգենք իր մեղապարտ յարաբերութեանց մասին։*

*— Իսկ այդ երկու Թրքուհիներու այցելութիւնը միթէ ստուգուեցա՞ւ։*

*— Անշուշտ. մտիկ ըրէ՛ք որ պատմութիւնը իմանաք իր բոլոր մանրամասնութիւններովը… արդէն այդ այցելութեանց հետևանքն է նաև այս օրուան նոր ոճիրը։*

*Մաք Լայն հետզհետէ աւելի լարուած հետաքրքրութեամբ մը աչքերը ուղղեց Սուլթանի քարտուղարին՝ որ հետևեալ կերպով խօսքը առաջ տարաւ.*

*— Ասկէ երկու օր առաջ, առաւօտ կանուխ, կառք մը կանգ կ'առնէ Պ. Ալպէրի տան դրան առջև, կառապանը վար կ'իջնայ և զանգակը կը զարնէ և դուռը իսկոյն կը բացուի։ Յետոյ կառքին դռնակն ալ բացուելով՝ երկու Թրքուհիներ վար կ'իջնան և տուն կը մտնեն և դուռը վրանին կը գոցուի։*

*Բարեբախտաբար երկու լրտեսներ, որ տանը քիչ մը վերօքը և դիմացի կողմը գտնուած մահալլէպիճիին պարտէզը նստած էին, ամէն բան կը նշմարէին։ Կասկած չի կար որ այդ կիները հայ լրտեսուհիին իմաց տուած կիներն էին, որոնք հոն եկեր էին դաւադրութեան մը համար…։*

*— Բայց կարելի է խնդրին մէջ քաղաքական դաւադրութենէ տարբեր բան մը կար…։*

*— Ի՞նչ բան։*

*— Սիրային ժամադրութիւն մը։*

— Չէ՛, այդ բանը անկարելի է. Նախ որ Պ. Սալպէրը տարիքը առած մարդ մըն է, ասկէ զատ այդ Թրքուհիները սիրային ժամադրութեան մը համար ինքզինքնին այսպէս վտանգելու չափի համարձակէին:

— Ուրեմն շարունակեցէ՛ք ձեր պատմութիւնը:

— Երկու լրտեսներէն մէկը կը մօտենայ կառապանին որ դրան առջև կը սպասէր և կը հարցնէ թէ այդ կիները ուրկէ կառք նստած էին:— Կամուրջին գլխէն կը պատասխանէ կառապանը: Այս պատասխանը անշուշտ գոհացուցիչ չէր ու մեծ բան մը չէր յայտնէր: Լրտեսը կը վերադառնայ իր ընկերոջ քով և երկուքը միասին կը սպասեն երկու կիներու դուրս ելնելուն, որպէսզի կամ զանոնք իսկոյն ձերբակալեն և կամ ետեւնուն երթալով՝ ո՛վ ըլլալնին ստուգեն:

Ժամի մը չափ սպասելէ ետքը, տան դուռը կը բացուի և Պ. Սալպէր կ'երևայ սեմին վրայ, կը մօտենայ կառապանին, վարձքը կը վճարէ ու կառքը կը ճամբէ, և ինքն ալ կը պատրաստուի մեկնելու:

Երկու լրտեսները անմիջապէս կը մօտենան իրեն և կ'ըսեն.

Ձեր տունը երկու Թրքուհիներ մտան և տակաւին հո՛ն են, պէտք է որ զանոնք դուրս հանէք, որպէս զի իրենց տունը վերադարձնենք:

Պ. Սալպէր կոշտ կերպով կը պատասխանէ թէ անանկ բան չի կայ, թէ զրպարտութիւն կ'ընեն կոր թէ ինք Ֆրանսացի է և թէ ոչ ոք կրնայ իր գործին խառնուիլ:

Ու փողոցէն անցնող պարապ կառք մը կեցնելով մէջը կը մտնէ և կառապանին կ'ըսէ.

— Ֆրանսական դեսպանատունը տար կառքը:

Լրտեսները կը մտածեն որ իրենց համար լաւագոյն է տանը վրայ հսկել, ուր երկու Թրքուհիները մնացած էին, քան թէ Պ. Սալպէրի ետևէն իյնալ որուն հետ գլուխ չպիտի

կրնային ելլել։ Եւ կրկին կը շարունակէին սպասել դրան առջեւ։

— Ապուշնե՛ր, ըսաւ Մաք Լայն, մինչ անոնք դրան առջեւ կը սպասէին, երկու կիները տան ետեւի պարտէզէն փախան անշուշտ․․․։

— Բայց ո՞ւրկէ գուշակեցիք, գոչեց Իզզէթ փաշա զարմացական շեշտով մը․․․ ճիշդ է ձեր ըսածին պէս եղած է։

— Անիկա դժուար չէր գուշակել․․․ երբ Պ. Ալպէր դուրս կ'ելլէ, կառքը կը ճամբէ ու մեկնի, յայտնի է որ երկու կիները իրմէ առաջ տունէն դուրս հանած է, և քանի որ տան ետեւի կողմէն մեկնած են։ Եւրոպացի պատուաւոր անձ մը երբեք երկու կիներ վտանգաւոր կացութեան մը մէջ թողլով չփախի մեկնիր․․․ և ձեր լրտեսները շատ ապուշ վարուած են նախ իրենց ներկայութիւնը զգացնելով ու կառապանին հետ խօսքի բռնուելով ու երկրորդ՝ փոխանակ տան դրան առջեւ սպասելու, շրջակաները հսկողութիւն չընելով․․․։

— Բարեբախտաբար ուրիշներ այդ հսկողութիւնը ըրած են, շարունակեց սուլթանին քարտուղարը։ Այն Հայ լրտեսուհին, որուն խօսքը ըրի, Պ. Ալպէրի տան ետեւին կողմը բնակելուն, պատուհանէն կը տեսնէ երկու Թրքուհիներուն պարտէզի կողմէն դուրս ելլելնին և խոյոյն ինքն ալ գլխարկը դնելով, ետեւնուն կ'երթայ։ Երկու Թրքուհիները Բանկալթիի ետեւի փողոցները բաւական թափառելէ ետքը, Թաքսիմի զօրանոցին առջեւը կ'ելլեն ու հոնկէ կառք մը կը նստին․․․։

— Եւ գիտենք լրտեսող կինը բայց կը մնայ։

— Ո՛չ, ճիշդ այդ միջոցին ուրիշ պարապ կառք մը կ'անցնի եղեր, մէջը կը ցատկէ ու կը հետեւի միւս կառքին․․․։

Մաք Լայն տեսնելով որ պատմութիւնը շատ կ'երկարի, առանց շահեկան մանրամասնութիւններու, ըսաւ իր խօսակցին։

— Եթէ կարելի է բո՛ւն ոճրին պարագային դանք, ո-

բովէնաւ բոլոր այդ մանրամասնութիւնները ո և է օգտակարութիւն չէին կրնար ունենալ մեզի համար։

— Անշուշտ հասանք, պատասխանեց Իզզէթ փաշա․ երկու Թրքուհիները կամուրջ կը հասնին և Սկիւտարի շոգենաւը կը մտնեն, լրտեսուհին կը հետեւի իրենց և շոգենաւին մէջ կը յաջողի կիներուն հետ խօսքի բռնուիլ։ Վերջապէս միասին Սկիւտարի նաւամատոյցը կ'ելլեն և հոնկէ Թրքուհիները նորէն կառք մը կը վարձեն Չամլըճա երթալու համար…։

— Չամլըճա, կրկնեց Մաք Լայն, այո՛, գիտեմ Սկիւտարի բարձունքին վրայ… շարունակեցէ՛ք։

Վերջապէս չերկարեմ, լրտես կինը կը տեսնէ թէ ո՛ր տունը մտած են այդ երկու կիները․ կը հարցնէ, կը փնտռէ և կ'իմանայ որ այդ տունը երկու ամիսէ ի վեր վարձուած է և տակաւին վարձուորները չեն եկած…։

— Իսկ այդ կիները ինչպէ՞ս մտած են տունէն ներս։

— Իրենց քով գտնուած բանալիով մը դուռը բացած են։

— Անոր խնդիրը կը կնճռոտէ, բայց շարունակեցէք։

— Նոյն միջոցին տան պատուհանէն կը նշմարեն Հայ լրտեսուհին որուն հետ շոգենաւին մէջ տեսակցած էին և նշան կ'ընեն որ մօտենայ և դուռը բանալով ներս կը հրամցնեն։ Երկու կիները Հայուհիին լաւ ընդունելութիւն մը ընելէ ետքը, կը յայտնեն թէ՝ Բերայ քրիստոնեայի մը տուն այցելութեան գացած ըլլալով՝ լրտեսները ետեւնուն ինկած էին և թէ իրենք ստիպուած էին գաղտուկ փախչիլ այդ տունէն ու կառք մը նստելով կամուրջ գալ և Սկիւտար վերադառնալ և թէ իրենց աճապարանքին և յուզումին մէջ մոռցած էին Ֆրանսական թղթատունը հանդիպիլ ու խիստ կարեւոր նամակ մը ձգել հոն․ ուստի կը խնդրէին իրմէ որ Պոլիս պիտի վերադառնար այդ նամակը թղթատուն յանձնէր և նոյնիսկ կը խոստանային այս ձանձրութեան համար ալ մեծկակ՝ նուէր մըն ալ ընել իրեն։

— Կը տեսնեմ որ շատ վարպետորդի դաւադիրներու հետ

է մեր գործը, ղրկել տալու Մաք Լայն որ այժմ ամենախորին ուշադրութեամբ կը հետեւէր պալատական քարտուղարին պատմութեան։

— Հայուհին այս անակնկալ առաջարկը ամենայն սիրով կ'ընդունի։ Այն ատեն կիներէն մին քովի սենեակը կ'երթայ ու քիչ մը ետքը կը վերադառնայ, հետը նամակ մը բերելով։

— Յայտնի էր որ նամակը արդէն պատրաստ չէր և իրենց պատմութիւնը ծայրէ ի ծայր սուտ էր ձեր լրտեսուհին թակարդը ձգելու համար։ Յետո՞յ, շարունակեցէք ձեր պատմութիւնը։

— Կինը նամակը առնելէն ետքը, Թրքուհիները իրեն իրենց յաղթութեանը վարձք ոսկի մը նուէր կուտան և կ'ըսեն որ հետեւեալ օր կրկին իրենց երթայ, և լուր տայ թէ նամակը անվտանգ Փրանսական Թղթատունը ձգած է։

Իսկ կինը նամակը առնելուն պէս նաւամատոյց կ'իջնայ, շոգենաւ կը նստի և Պէշիկթաշ ելլելով՝ ուղղակի պալատ կուգայ ու նամակը կը յանձնէ իշխանուհիին, մանրամասնօրէն պատմելով ամբողջ եղելութիւնը որուն մէկ մասը արդէն իմացած էինք երկու լրտեսներուն միջոցաւ։ Երկու Թրքուհիներուն հայ կնոջ յանձնած նամակը ահաւասիկ.

Եւ Իզզէթ փաշա ամենայն լրջութեամբ գրպանէն թղթապանակը հանելով, բաց պահարանով նամակ մը ներկայացուց Անգլիացիին՝ որ արհամարհոտ քմծիծաղով մը ըսաւ.

— Այդ նամակը կրնաք պահել որովհետեւ ձեզ մարդիկներու համար խաղ մըն է և ո եւ է կարեւորութիւն չկրնար ունենալ, լաւագոյն է որ ձեր պատմութիւնը շարունակէք։

— Ափսո՜ս որ ձեր բանը չափազանց ճշմարիտ է և մենք խաբուեցանք, շարունակեց Իզզէթ փաշա, եթէ երկու օր առաջ Պոլիս հասած ըլլայիք, գուցէ այժմ նորանոր ամիրներ չէին ըլլար․․։ Ինչ որ է, եղածը եղած է։ Այսպէս ուրեմն, այդ տեղեկութիւնները առնելնուս պէս՝ որոշեցինք մինչեւ հետեւեալ օր, այսինքն երէկ, սպասել և յետոյ հայ լրտեսուհին

ուրիշ կնոջ մը ընկերակցութեամբ ղրկեց կրկին Զամըրճա իբրև թէ նամակը ապահով կերպով Ֆրանսական Թղթատունը ղրկ-ուելուն լուրը տալու համար և միւս կողմէ գաղտնի ոստիկան-ներով պաշարել տունը և մէջինները ձերբակալել...

Մաք Լայն սկսաւ բարձրաձայն ծիծաղ մը ձգել:

—Ինչո՞ւ կը խնդաք, հարցուց պալատական քարտուղարը սրտնեղած դէմքով:

— Պարզապէս ձեր միամտութեան վրայ կը ծիծաղիմ և հիմա կը ըմբռնեմ թէ ինչպէս մինչև հիմա այդ մարդիկը կրցեր են իրենց խաղերը խաղալ ձեր քթին տակ առանց օձիք-նին ձեռք տալու... երբ մարդ ձեզի նման պարզամիտներ ունի իր առջև կարծեմ ամէն բան անպատիժ կրնայ դարձնել...

— Բայց պարոն ինչ կ'ուզէիք որ ընէինք, միթէ պէտք չէ՞ր տունը պաշարել վարպետութեամբ, առանց նախապէս կասկած յարուցանելու...

— Վիճաբանութեամբ ժամանակնիս չանցունենք, պատաս-խանեց Անգլիացին անհամբեր կերպարանքով մը, արդէն պէտք եղածէն աւելի ատեն կորսնցուցած էք... և եթէ կը ներէք, ես երկու բառով պատմեմ ձեզի ձեր պատմութեան չարաչնա-կութիւնը...: Երկու կիներ, գացած են Զամըրճա այն տունն ուր նախորդ օր Թրքուհիներ մտած էին, մինչ ձեր ոստիկան-ները և լրտեսները տունը ամէն կողմէ պաշարած էին: Յետոյ, տեսնելով որ ներս մտնող Հայուհին և իրեն ընկերացող Թըր-քուհին կ'ուշանան ու դուրս չեն ելեր, ոստիկանները տան դուռը կոտրած և ներս մտած են և հոն ուրիշ բան չեն գտած այլ միայն գետին փռուած երկու գլխակներ, մին Հայու-հիին և միւսն ալ իրեն ընկերակցող Թրքուհիին գլխակները:

Եւ Մաք Լայն այսպէս Իզզէթ փաշայի ըրած պատմու-թիւնը աւարտելով՝ յաղթականօրէն անոր նայեցաւ կարծես ըսել ուզելով:

— Տեսա՞ք թէ ինչպէս ամէն բան կրնամ գուշակել:

Բայց այս անգամ Իզզէթ փաշան էր որ հեգնական ժպիտ մը ունեցաւ և պատասխանեց.

— Կը ցաւիմ ըսելու որ այս կէտին մէջ կը սխալիք, սիրելի պարոն, իրաւ է որ երկու կիներ կենդանութեան ոև է նշան չտալուն պատճառաւ ի վերջոյ ոստիկանները, տան դուռը բռնի կը խորտակեն ու ներս կը մտնեն, սակայն ո՛չ թէ երկու դիակ, այլ պարզապէս դատարկութիւն կը գտնեն ամէն կողմ... տանը մէջ ո՛չ ոք կար... ահա՛ եղելութիւնը, միայն սեղանի մը վրայ ձգուած էր հետեւեալ թուղթը...

Եւ պաշտօնական քարտուղարը կրկին իր մարօքեան կաշիէ թղթապանակը հանելով փոքրիկ տոմս մը ներկայացուց Անգղիացիին։

Մաք Լայն թուղթը առաւ և վրան ակնարկ մը նետելէ ետքը ըսաւ.

— Բայց թուրքերէն գրուած է այս, ինչպէ՞ս կ՚ուզէք որ հասկնամ։

— Իրաւունք ունիք, ներեցէք որ թարգմանեմ... ահաւասիկ տոմսակին մէջ գրուածը.

— «Սպանիչ Համիտի կողմէ ղրկուած հանրմեններուն արժանավայել ընդունելութիւն մը եղած է։ Սպասեցէք մինչեւ վաղը, մանրամասնութիւնները իմանալու համար։»

— Ցա՛ւ, ըսաւ Մաք Լայն որ ծայրայեղօրէն կը հետաքրքրուէր այս խորհրդաւոր պատմութենէն և կ՚ուզէր ժամ առաջ վերջաւորութիւնը իմանալ։

— Բնականաբար, շարունակեց Իզզէթ փաշա, մեր մարդիկը տան ամէն կողմը կը սկսին խուզարկել տեսնելու ո և է հետք մը գտնելու և վերջապէս յուսահատ կը փնտռտուեն։ Այս առտու սակայն, կէսօրին մօտերը, ընդարձակ սայլ մը, որուն մէջ երկու սնտուկ դրուած էր, կանգ կ՚առնէ Պէշիկթաշի ոստիկանատան առջեւ և կառապանը, որ Պէշիկթաշի ծերունի ծանօթ թուրք մըն է, սնտուկները հոն զանուցանե-

բուն օգնութեամբ կ'իջնենք կառքէն վար և ոստիկանատուն բակը կը մտնենք և միեւնոյն ժամանակ նամակ մըն ալ կուտայ անձամբ ոստիկանապետ Ասլան Հայիմ էֆէնտիի ուղղուած, ըսելով որ սնտուկները անոր հասցէին ղրկուած են:

Ասլան Հայիմ նոյն միջոցին հոն չէ եղեր, սակայն կը սպասեն իր վերադարձին նամակը յանձնելու համար: Երկու ժամէն կուգայ և նամակը կը բանայ որ սա իմաստով գրութիւն մըն է. «Այս սնտուկները հանձնեցէք Եըլտըզի պալատը փոխադրել: Մէջը գտնուած առարկաները Վեհ. Սուլթանին կը պատկանին:» Բնականաբար ոստիկանապետը չհամարձակիր այդ անծանօթ սնտուկը պալատ բերել և իսկոյն կուգայ եղելութիւնը մեզի հաղորդելու: Լուր կը տրուի Վեհ. Սուլթանին որ կը հրամայէ անմիջապէս ոստիկանատան մէջ սնտուկները բանալ և պարունակութիւնը հանել: Հրամանը կը գործադրուի, երկու սնտուկները բացուելով…:

— Առջի օր անյայտացած հայ յեղափոխականին ու իրեն ընկերացող Թուրք կնոջ գլուխները մէջտեղ կ'ելլան, աւելցուց Մաք Լայն, որ մեծ հանճարաւորութեան մը պէտք չունէր այս բանը գուշակելու համար:

— Այո՛, ճիշդ այս խեղճ կիներուն գլուխները կ'ելլէն սնտուկին մէջէն. առաջինին վրայ M. և A. գիրերը և 6 թուանշանը երկրորդին վրայ նոյն գիրերը և 7 թուանշանը դրոշմուած:

— Այդ մարդիկը կանոնաւոր հաշիւ բռնել կը սիրեն կ'երեւայ որ, ըսաւ Մաք Լայն չարաչար ժպիտով մը:

—Այս եղելութիւնը որ իսկոյն հաղորդուեցաւ Վեհ. Տիրոջս, զինքը բոլորովին վեր ի վայր շրջեց և պալատին մէջ քանի մը օրէ ի վեր դեռ նոր տիրել սկսած հանդարտութիւնը կըրկին տակնուվրայ դարձուց: Վեհ. Սուլթանը զիս յատկապէս ձեզի մօտ կը ղրկէ, հարցնելու համար թէ կրնա՞ք արդեօք որոշ պատասխան մը տալ թէ յոյս ունի՞ք այս չարանենգական ոճիրներու հեղինակները գտնելու:

Մաք Լայն այս հարցումներուն անմիջապէս չպատասխանեց. սիկառէթ մը վառեց և սկսաւ ժուռ գալ սենեակին մէջ, խոր մտածումի մը մատնուած կերպարանքով մը։ Պալատական քարտուղարը, իր երկար պատմութենէն յոգնած, ինքն ալ ծիկառէթ մը վառեց և թիկնաթոռին մէջ թաղուեցաւ, սպասողական դիրքով մը։

Անգլիացին քանի մը վայրկեան սենեակին մէջ շրջելէ ետքը, վերջապէս եկաւ ու կայնեցաւ Իզզէթ փաշայի նստած թիկնաթոռին դէմը՝ և վճռական շեշտով մը ըսաւ.

— Մութին մէջ գործող այդ խորհրդաւոր մարմինին անդամները անխոհեմ ու անճարակ մարդիկ են, որոնց մեծագոյն պակասութիւնն է ցուցամոլութիւնը։ Ծածուկ գործող մարմին մը որ այդքան նամակ կը գրէ ու իր զոհերուն, դիակներուն վրայ հաշիւ բանալու կ'ելլէ, պարզապէս իր չափազանց թեթեւութիւնը կ'ապացուցանէ. սանկ, իրենց բոլոր արարքներուն կարծես փափաք մը ունին ժամ առաջ ձերբակալուելու. ուրեմն մենք ալ գոհացում կուտանք իրենց փափաքին...։ Ձեր վեհափառ տիրոջ կրնաք ըսել որ վճռաբար յանձնառու կ'ըլլամ այս ոճիրներուն հեղինակները երեւան հանելու մինչեւ ութը օր, և եթէ չկարենամ խոստումս պահել, ո՛չ միայն մեր պայմանագրութեան մէջ նշանակուած վարձատրութենէս կը հրաժարիմ, այլ նոյն իսկ ձեզ կը վերադարձնեմ իբրեւ նախնական ծախք ընդունած գումարս։

— Մինչև ութը օր կը կը խոստանաք այդ մարդիկը գտնե՛լ, գոչեց Իզզէթ փաշա զարմացական նայուածք մը ուղղելով իր խօսակցին։

— Այո՛, առ առաւելն մինչեւ ութը օր կրկնեց Մաք Լայն ամենայն հանդարտութեամբ իր սիկառէթը քաշելով։

Այս խօսքերը այնքա՛ն վստահօրէն ու առանց վարանումի արտասանուած էին որ Իզզէթ փաշա տեսակ մը հիացումով համակուեցաւ և Անգլիացիին ձեռքը թօթուելով ըսաւ.

— Յանուն իմ Վեհափառ տիրոջս պարտք կը զգամ շնոր-

հակալութիւն յայտնելու ձեր այս որոշ յայտարարութեան համար և վստահ եմ թէ թեթեւօրէն չէ որ այսպիսի հանդիսաւոր խոստում մը կուտաք ու այսքան ծանր յանձնառութիւն մը կ'ընդունիք։

— Դարձեալ կը կրկնեմ, ըսաւ Մաք Լայն, որ պատուոյ խօսք կուտամ թէ ըսածս պիտի կատարեմ։

— Անմիջապէս պիտի երթամ ձեր խօսքերը հաղորդելու Նորին Վեհափառութեան։

— Գացէք և ըսէ՛ք որ ութը օր ես թո՛ղ համբերէ։ Միայն թէ մեր այս խօսակցութենէն բառ մը պէտք չէ որ կրկնուի պալատին մէջ... որովհետեւ այն մարմինը զոր կը հետապընդենք, նոյն իսկ պալատին մէջն ալ կը գործէ։ Ասիկա իմ քննութիւններուս առաջին և գլխաւոր արդիւնքն է։

Անգլիացիին այս խօսքերը թեթեւ սարսուռ մը պատճառեցին պալատականին, որուն գոյնը նետեց։

Մաք Լայն առանց ուշադրութիւն դարձնելու Ապտիւլ Համիտի սիրականին յուզմունքին, շարունակեց․

— Երբոր ձեր տիրոջ հաղորդէք ըսածներս, կը խնդրեմ որ կրկին վերադառնաք հոս։

— Շատ լաւ, պատասխանեց պալատականը ոտքի ելլելով։

Եւ իր խոստումին հաւատարիմ՝ Ապտիւլ Համիտի սիրական խորհրդատուն կէս ժամ ետքը վերադարձաւ Անգլիացիին սենեակը, զուարթ ու ճառագայթող դէմքով մը։

— Ձեր խօսքերը հաղորդեցի վեհափառ տիրոջս ըսաւ, որ չափազանց գոհ մնաց և հրամայեց որ ձեր հանգստութեան ամէն կերպով հոգ տարուի և հարկ եղած բոլոր դիւրութիւնները տրուի, ուստի ինչ բանի որ պէտք ունիք հաճեցէք անմիջապէս յայտնելու։

— Ես ո՛չ մէկ բանի պէտք ունիմ, պատասխանեց Մաք Լայն և ձեզ յատկապէս ուղեցի վերջին անգամ տեսնել, իմաց տալու համար որ քառորդէ մը կը մեկնիմ այս պալատէն։

— Կը մեկնի՞ք, գոչեց Իզզէթ փաշա ափ ի բերան մնալով։

— Այո՛, կը մեկնիմ... և պէտք է այս մեկնումս լաւ ո՛չ թէ միայն պալատին մէջ, այլ նաև պալատէն դուրս... Ահա՛ եղելութիւնը զոր պէտք է պատմէք պալատականներուն՝ կարելի եղածին չափ գաղտնաբար՝ որպէսզի, աւելի շուտ տարածուի: Ես հոս գալէս ետքը, Սուլթանին կը ներկայանամ, Սուլթանը ինծի կ'առաջարկէ տեղի ունեցած խորհրդաւոր ոճիրներու հեղինակները գտնել, ես ալ մինչև հիմա կատարուած քննութիւններուն տեղեկանալով՝ կը տեսնամ որ խնդիրը պարզ ոճրագործութիւններու վրայ չէ, այլ գործերնիս քաղաքական գաղտնի կազմակերպութեան մը հետ է. ուստի բացարձակապէս կը մերժեմ այդպիսի ներքին քաղաքական խնդիրներու խառնուիլ, Սուլթանը կը պնդէ, նոյնիսկ մեծամեծ վարձատրութիւններ կը խոստանայ, սակայն ես կրկին յամառօրէն կը մերժեմ և վերջապէս քանի մը ծանր ակնարկութիւններ կընեմ: Ասոր վրայ Սուլթանը կը բարկանայ և զիս իր ներկայութենէն դուրս հանել կուտայ և ժամ մը վերջն ալ հրաման կ'ընէ որ անմիջապէս Պոլսէն մեկնիմ: Զիս կառք մը կը դնեն և շիտակ Եւրոպա մեկնող շոգենաւ մը կ'առաջնորդեն: Ահա՛ այն պատմութիւնը զոր պէտք է որ ամենուն ականջին ի վար պատմէք, խնդրելով որ մարդու բան մը չըսեն....:

— Կը հասկնամ ձեր միտքը, կուզէք գաղտնաբար գործել որպէսզի աւելի լաւ կարենաք յաջողիլ.

— Այո՛, ճիշդ այդ է դիտաւորութիւնս:

— Բայց դուք ո և է աջակցութեան մը պէտք ունենաք:

— Այն ատեն, անհոգ եղէք, ձեզի լուր կուտամ: Ուրեմն ցտեսութիւն... կը յուսամ որ ութը օրը չլրացած՝ կրկին զիրար տեսնելու բախտը կ'ունենանք:

Այս խօսակցութենէն քառորդ մը վերջը, Մաք Լայն կառք մը նստած, կրկին Իպրէթ փաշայի ընկերակցութեամբ, կը հեռանար Ըլտըզի պալատէն, իր ճամբու պայուսակը հետը առած:

# ԵՐԿՐՈՐԴ ՄԱՍ

# ԹՈՒՐՔ ՀԵՐՈՍՈՒՀԻ Մ՞

---

## ԳԼՈՒԽ Ա.

## ԻՏԱԼԱՑԻ Ք ՀԱՆԱՆ

*Ընթերցողները կը յիշեն անշուշտ թէ նախորդ գլուխներուն մէջ մեր պատմած իրողութիւնները տեղի կ՚ունենային* 1904 *նոյեմբեր 7, հինգշաբթի օրը։*

*Այդ օրն իսկ, իրիկուան դէմ, Պոլսոյ նաւահանգիստը կը համնէր աւստրիական Լոյտ ընկերութեան «Ուրանօ» շոգենաւը և կանգ կ՚առնէր Պոլսոյ քարափին մօտերը։ Այս շոգենաւը Թրիէսթէէն կուգար յունական նաւահանգիստները և Իզմիր, Տարտանէլ, Ռոտոսթօ հանդիպելէ ետքը։*

*Հազիւ թէ շոգենաւը կանգ առած էր Պոլսոյ Մաքսատան դէմ, երբ արդէն հարիւրաւոր նաւակներ պաշարած էին զայն։ Այդ նաւակներուն մէջ աչքի կը զարնէր ոստիկանութեան խոշոր նաւակը, որուն դրօշակը կը ծածանէր ետեւի կողմը։ Այդ պաշտօնական նաւակէն զատ, լրտեսներու բազմաթիւ նաւակներ շրջապատած էին «Ուրանօ»ն։ Պոլսոյ նաւահանգիստը եկող գացող օտար շոգենաւներու վրայ հսկողութիւնը, որ արդէն խիստ էր, ա՛լ աւելի սաստկացած էր ժամանակէ մը ի վեր։ Այսուհանդերձ ո և է կասկածելի դէմքեր չէին անցնե-*

ւեր չոգենաւին մէջ։ Կամրջակը լեցուած էր Թուրք, Յոյն խառնիճաղանճ բազմութեամբ մը, որ կը բաղկանար ծառայութիւնին աւարտած Թուրք զինուորներէ և կղզեցի Յոյներէ։ Առաջին և երկրորդ կարգի ճամբորդները շատ քիչ էին, մէկ քանի Անգլիացիներ, Իտալացի երկու քահանայ, Աւստրիոյ դեսպանատան թարգման մը, յոյն վաճառական մը և մէկ քանի Գերմանացի զբօսաշրջիկներ կային միայն, որոնք վերնայարկը կեցած հետաքրքրութեամբ կը դիտէին նաւակներու իրարանցումը։

Քարանթինայի գործողութիւնը աւարտելէ ետքը ճամբորդները դուրս հանուելու արտօնութիւնը տրուեցաւ և ամէնքը միասին նաւակներով փոխադրուեցան Ղալաթիոյ քարափը և առաջնորդուեցան հանոյ ուղեւորներու յատուկ քննութեան սահմանուած աղտոտ սրահը, որ «սալօն» չողչողուն անունը կը կրէր։

Առաջին և երկրորդ կարգի ճամբորդները, որոնք ինչպէս ըսինք, ամէնքն ալ օտարահպատակ էին և իրենց կանոնաւոր անցագիրը ունէին, քննութենէ մը ետքը հրաման ստացան տեղերնին երթալու։ Երկու Իտալացի քահանաներ միայն աւելի մանրամասն քննութեան ենթարկուեցան։ Ոստիկանութիւնը գիտէր որ Վենետիկի ու Վիեննայի մէջ հայ Մխիթարեաններու միաբանութիւններ կային որոնց առաջինը իտալական և երկրորդը աւստրիական հպատակութիւն ունէին։ Այդ երկու միաբանութեանց անդամները, որոնք հայ վարդապետներ են, միշտ կասկածանքի առիթ կուտային և ոստիկանութիւնը երբ իտալական կամ աւստրիական անցագիր ունեցող եկեղեցականներու հանդիպէր մանրակրկիտ քննութիւն մը կ'ընէր հասկնալու համար թէ անցագրին տէրերը հա՞յ էին թէ օտարազգի։ Այս պատճառաւ Սալօնի քննիչ պաշտօնեան նախ միւս ճամբորդներուն քննութիւնը կատարեց լմնցուց և յետոյ սկսաւ քննել Իտալացի վարդապետներուն թուղթերը։

Ասոնցմէ մին ծերունի մըն էր, վաթսուն տարեկանի մօտ

Կրէկօրիօ Թախուչչի անուն, որ երկար տարիներէ ի վեր ար-
դէն Կ. Պոլսոյ պապական նուիրակին քով կը պաշտօնավարէր
և խիստ լաւ գիտէր Թուրքերէնը։ Իր հարցաքննութիւնը
շատ կարճ տևեց, մանաւանդ որ զինքը դիմաւորելու համար
պապական նուիրակին կողմէ գաւազ մը և վարդապետ մը
եկած էին։ Կրէկօրիօ Թախուչչի ծրարները բեռնակիրներուն
տուաւ և դուրս ելաւ սալօնէն։

Հիմա կարգը եկած էր միւս կրօնաւորին։

— Դուք ալ այս ծեր կրօնաւորին հետ չէի՞ք, հարցուց
պաշտօնեան, տեսնելով որ դիմաւորելու եկող գաւազը և կրօ-
նաւորը երբեք ուշադրութիւն չէին դարձուցած անոր։

— Ո՛չ պատասխանեց այս վերջինը, շոգենաւին մէջ մի-
այն իրարու ծանօթացանք և իրարու հետ ո և է յարաբերու-
թիւն չունինք։

Վարդապետը այս պատասխանը տուած էր ֆրանսերէն
և զոր հոն գտնուող թարգմանը հաղորդած էր պաշտօնեային։

Պաշտօնեան, այս պատասխանին վրայ, կասկածոտ նայ-
ուածք մը ուղղեց եկեղեցականին։ Հազիւ երեսուն տարեկան
վառվռուն աչքերով, թուխ յօնքերով ու կարմիր այտերով
գեղեցիկ երիտասարդ մըն էր այս կրօնաւորը, որուն փառա-
ւոր սեւ մօրուքը, հակառակ իր երիտասարդ տարիքին, պատ-
կառելի երևոյթ մը կուտար իրեն։

Պաշտօնեան զայն, այսպէս, աչքովը քննելէ ետքը

ըսաւ։

— Ո՞ւր է ձեր անցագիրը։

Միւսը, միշտ թարգմանին օգնութեամբ պատասխանեց

— Ահաւասիկ անցագիրս, որ վաւերացուած է Նա-

Թրիեսթէի Թրքական հիւպատոսարանէն։

Պաշտօնեան ուշի ուշով քննեց անցագիրը. որ խառ-
գրուած էր և որմէ մեծ բան մը չկրցաւ հասկնալ և ստիպ-
ուեցաւ թարգմանին օգնութեան դիմել. յետոյ հարցուց.

Ինչ է ձեր անունն ու մականունը։

—Անթօնիօ Ռիզօ։

— Պաշտօնո՞վ մը Պոլիս կուգաք։

Չէ՛, այլ պտտելու համար, իմ դիտաւորութիւնս է Երուսաղէմ ուխտի երթալ։

— Ուրեմն Պոլիսէն անցնելու պէտք չունիք։

— Քանի մը ամիս հոս մնալէ ետքը փետրուարին մէջ Երուսաղէմ պիտի երթամ Զատիկը հոն ընելու համար։

— Պոլսոյ մէջ մէկը կը ճանչնա՞ք։

— Չէ՛, ոչ ոք կը ճանչնամ։

— Ուրեմն հիմա ո՞ւր պիտի երթաք։

— Բերա պանդոկ մը պիտի երթամ։

— Ո՞ր պանդոկը։

— Դեռ չեմ որոշած.

Պաշտօնեան կրկին անցագիրը քննել սկսաւ. անպատճառ կ'ուզէր դիտողութիւն ընելիք բան մը գտնել անոր մէջ։

— Երբ ձեր անցագիրը վաւերացնել տուիք հիւպատոսին, հարցուց։

— Թրիէսթէէն մեկնած օրս։

—Բայց ասիկա տասը օրուան թուական կը կրէ, մինչդեռ շոգենաւը հազիւ հինգ վեց օր է որ Թրիէսթէէն մեկնած է։

Կրօնաւորը պահ մը թեթեւօրէն վարանեցաւ. յետոյ մէկէն պատասխանեց.

— Այո՛ արդարեւ ես տասը օր առաջ մեկնեցայ Թրիէսթէէն։

— Ուրեմն այս շոգենաւով չմեկնեցա՞ք հոնկէ։

— Չէ՛, «Ուրանօ» շոգենաւը նստեցայ Իզմիրէն։

— Ուրեմն Թրիէսթէէն նախ Իզմի՞ր գացիք։

Մարդը կրկին վարանեցաւ. յետոյ կեղծ բարկութեամբ մը գոչեց.

— Ի՞նչ պէտք ունիք այս հարցաքննութիւններուն, ես կանոնաւոր անցագիր մը ունիմ եւ օտարահպատակ եմ, հետեւաբար իրաւունք չունիք այս տեսակ հարցումներ ուղղելու եթէ անցագիրս թերի է այն ըսէք....։

— Մենք մեր պարտականութիւնը կը կատարենք և անկէ դուրս բան մը չենք ըներ, պատասխանեց պաշտօնեան պաղարիւնով, ուստի յուզուելու պէտք չի կայ. կ'ուզեմ միայն հասկնալ որ Թրիէսթէէն Իզմիր ու անկէ ալ Պոլի՞ս եկած էք ուղղակի. ասոր մէջ կարծեմ բարկանալու բան չի կայ... ամէն երկիր իր՝ օրէնքները ունի որուն պէտք է հպատակին նոյն իսկ օտարականները, երբ այդ երկիրը կ'այցելեն։

— Լաւ ուրեմն ահա՛ իրողութիւնը. Թրիէսթէէն նախ Սելանիկ գացի, յետոյ անկէ Իզմիր և Իզմիրէն Պոլիս...

— Սելանի՛կ, ըսաւ պաշտօնեան ա՛լ աւելի կասկածոտ կերպարանք մը առնելով։

— Այո՛, մէկ օրի չափ մնացի հոն։

— Ի՞նչ գործ ունէիք Սելանիկի մէջ։

— Կ'ուզէի մէկ քանի հնութիւնները այցելել։

— Մէ՞կ օրուան մէջ։

— Այո՛, մէկ օրը բաւական է այցելելու համար մէկ քանի հին մզկիթները, Աղեքսանդր Մեծի յաղթական կամարը և Ճենովացիներէն մնացած սպիտակ դուռը։

Կրօնաւորը կարծես դխամամբ այդ հնութիւնները կը յիշէր, որպէսզի կարենայ իր վրայէն կասկածները հեռացնել։

— Ուրեմն Պոլսոյ մէջ մէկը չէ՞ք կրնար ցուցնել որ ձեզ ճանչնայ, ըսաւ պաշտօնեան խօսքը փոխելով։

— Չէ՛, առաջին անգամ է որ ոտքս Պոլիս կը դնեմ և ո՛չ ոք կը ճանչնամ հոս։

Ոստիկանութեան պաշտօնեան, որ այս քննութիւնը կը կատարէր, հետզհետէ աւելի կասկածանքով սկսաւ նայիլ այս երիտասարդ կրօնաւորին և անոր անցագիրը ձեռքը բռնած, չէր գիտեր իր ի՛նչ ընթացք բռնելը։

Վարդապետը, որ յատկապէս կը տեսնէր անոր վարանումը, յանկարծ ձայնը բարձրացուց և սկսաւ գոչել.

— Աս ի՛նչ խայտառակութիւն է, ժամ մըն է որ գլխ վար կը դնէք առանց ո և է պատճառի... ես Իտալացի եմ,

և եթէ ո և է կասկած մը ունիք, դիս ուղղակի իտալական դեսպանատունը տարէ՛ք և հո՛ն ձեզի հետ կը տեսնուիմ... գիտցած եղիք որ առաջին գործս պիտի ըլլայ իմ կառավարութեանս բողոքել ձեր այս ապօրէն ընթացքին դէմ... աշխարհի ո՞ր կողմը տեսնուած է այս տեսակ խաղքութիւն... չո՛ւա, կուզեմ անմիջապէս դեսպանատունս երթալ...:

Այս խօսքերը իրենց բնական ազդեցութիւնը ըրին. պաշտօնական փութաց անցագիրը վերադարձնել կրօնաւորին և ըսաւ.

— Կը խնդրեմ մի՛ բարկանաք, մեզի պատուէր եղած է խիստ քննութիւն կատարել Իտալիայէն ու Աւստրիայէն եկող անծանօթ կրօնաւորներու մասին, որովհետև երբեմն կրօնաւորի զգեստով ծպտեալ վտանգաւոր անձեր Պոլիս մտած են... բայց այժմ կը տեսնամ որ դուք անոնցմէ չէք:

Եւ պաշտօնեան իր քովի մարդուն դառնալով ըսաւ.

— Թող տուէք որ վարդապետ էֆէնտին անցնի:

Թարգմանը հայր Անթօնիօ Ռիզօյի բացատրեց պաշտօնեային խօսքերը և ըսաւ թէ այլևս կրնար մեկնիլ:

— Շնորհակալ եմ պատասխանեց Իտալացին չոր կերպով մը և ուղղուեցաւ դէպի Սալօնին ելքի դուռը:

Դուրսը փողոցը գրեթէ ամայի էր. միւս ճամբորդները արդէն մեկնած էին:

Կրօնաւորը կառք մը կեցուց և մէջը նստելով կառապանին ըսաւ.

— Բերա:

Մինչ բեռնակիր մը իր ոտքերուն քով կը դնէր փոքրիկ պայուսակ մը, որ վարդապետին միակ բեռն էր:

Զարմանալի էր որ ոստիկանութեան պաշտօնեան միտք չէր ըրած սա դիտողութիւնը ընել անոր:

— Կ՚ըսէք որ Իտալիայէն կուգաք, քանի մը ամիս հոս պիտի մնաք, յետոյ Երուսաղէմ պիտի երթաք ու այսքան երկար ուղևորութեան մը համար հետերնիդ միայն պզտիկ

պայուսակ մը ունիք երբ մանաւանդ այնպիսի երկրի մը մէջ կը ճամբորդէք, ուրուն լեզուն չէք գիտեր և ուր ոչ ոք կը ճանչնա՛ք:

Այո՛, այս արդարացի դիտողութիւնը չըրաւ պաշտօնեան և հաւանական է որ եթէ ըրած ըլլար, կրօնաւորը չպիտի կըրնար համոզիչ պատասխան մը գտնել:

Բայց թողունք այս ենթադրութիւնները և հետեւինք մեր ճամբորդին:

Կառքը Թօփհանէի զառիվերէն ուղղուեցաւ դէպի Եէնի Ջարշը: Երբ Կալաթա Սէրայի առջեւ հասաւ, կառապանը ետին դարձաւ և ըսաւ:

— Ո՞ր կողմ պիտի երթանք:

Հայր Անթօնիօ Ռիզօ որ անցագրատուն գտնուած միջոցին բառ մը թուրքերէն չէր գիտեր, կարծես ճամբան հրաշքով սորված էր այդ լեզուն և ամենայն հանդարտութեամբ պատասխանեց կառապանին հարցումին:

— Անգղիոյ դեսպանատան ետեւի փողոցը տար:

Հոն հասնելով՝ կառքէն վար իջաւ, վարձքը առատօրէն վճարեց առանց վիճաբանութեան տեղի տալու. յետոյ պայուսակը ձեռքը առաւ ու քալել սկսաւ:

Կառապանը որ իր սպասած առատ վարձքէն շլացեր էր, ըսաւ:

— Ինչո՞ւ վար իջաք, մինչեւ ձեր երթալիք տան առջեւ կրնայինք երթալ:

— Չէ, պատասխանեց միւսը, երթալիք փողոցս կառք չկրնար անցնիլ:

Եւ գլուխը առաւ գնաց: Կառապանը ձիերը մտրակեց և աներեւոյթ եղաւ:

Հայր Անթօնիօ յիսուն քայլի չափ առաջ երթալէ ետքը կանգ առաւ քարաշէն նոր ու խոշորիկ տան մը առջեւ, որուն դրան վրայ ճերմակ թուղթ մը փակցուած էր սա բառերով «վարձու սենեակներ»:

Դրան զանգակը հազիւ թէ զարկած էր, քառասուն տարեկանի մօտ գիրուկ կին մը եկաւ դուռը բանալու։

— Բարեւ, տիկին Ռօզ, ի՞նչպէս էք, ըսաւ կրօնաւորը ֆրանսերէն լեզուով։

— Կը ներէք, պարոն, ո՞վ կը փնտռէք արդեօք... Ձեզ ճանչնալու պատիւը չունիմ։

Կրօնաւորը սկսաւ քահքահ խնդալ։

— Զարմանալի բան, տիկին Ռօզ, ըսաւ միշտ ժպտելով, միթէ այսպէս դիւրա՞ւ կը մոռնաք ձեր վարձուորները։

— Բայց բնաւ եկեղեցական վարձուոր չեմ ունեցած տանս մէջ, պատասխանեց գիրուկ կինը։

Հայր Անթօնիօ տեսնելով որ դրան առջեւ խօսակցութիւնը կ՚երկարէր, ինչ որ կ՚երեւայ թէ իր գործին չէր գար, ուզեց խնդիրը կարճ կապել։

— Կ՚երեւայ որ հագուստս ու մօրուքս ձեզ կը շփոթեցնէ կոր... միթէ ձեր անցած տարուան վարձակալ Վահրամը չե՞մ։

Այս խօսքին վրայ գիրուկ տանտիրուհին ուրախութեան ճիչ մը արձակեց։

—Այս ինչ կերպարանք է, միթէ քահանայ եղա՞ր, գոչեց խնդալով ու անմիջապէս մէկ կողմ քաշուեցաւ, որպէսզի նորեկը ներս մտնէ։

— Այո՛, պատասխանեց միւսը ներս մտնելով, Պոլիս վերադառնալու համար քահանայ, և եթէ հարկ ըլլար, սատանայ ալ պիտի ըլլայի։

— Մօրուքդ և հագուստդ բոլորովին կերպարանափոխ ըրեր են քեզ. և եթէ ինքզինքդ չյայտնէիր, երբեք չպիտի կրնայի գուշակել։

— Աւելի աղէկ, ես ալ ճիշդ այդ կուզէի, և եթէ դուռը բանալով զիս ճանչնայիր, շատ դժգոհ պիտի մնայի։ Հիմա որ իրար ճանչցանք, կը խնդրեմ որ ինծի սենեակ մը ցոյց տաս,

լուացուելու և հանգստանալու համար ու միանգամայն ճաշ ալ պատրաստել տալ, որովհետև այս իրիկուն դուրս ելլու միտք չունիմ և կ՚ուզեմ հոս քեզի հետ առանձին ճաշել։

— Եկուր ուրեմն քեզ առաջուան սենեակդ առաջնորդեմ որ այս միջոցիս պարապ է....։

Եւ երկուքը միասին սանդուխէ վեր ուղղուեցան։

Թողունք որ հայր Անթօնիօ կամ Վահրամ երթայ իր սենեակը հանգստանայ և մենք դառնանք մեր պատմութեան միւս անձերուն քով։

Մաք Լայնի յանկարծական մեկնումը Եըլտըզի պալատէն ընդհանուր զարմանք և տպաւորութիւն պատճառեց պալատականներուն։ Լուրը, Իզզէթ փաշայի կողմէ հաղորդելով, ականջէ ականջ տարածուած էր ու ամէն մարդ իր ուզածին պէս մեկնութիւններ կուտար այս անակնկալ եղելութեան մասին։ Սուլթանին երկրորդ քարտուղարին տուած բացատրութիւնը թէև ոմանց համար գոհացուցիչ համարուած էր, սակայն ուրիշներ նորանոր մեկնութիւններ կուտային։

— Այդ մարդը Շէրլօք Հոլմսը չէ եղեր, կ՚ըսէին ոմանք, այլ խաբեբայ մը ու ուզեր է մեր Վեհափառ Տէրը խաբել և դրամ կորզել։

— Այդ մարդը գաղտնի քօմիթէին կը պատկանի եղեր, կը փսփսային ուրիշներ։

— Սուլթանը զարնելու դիտաւորութիւն ունի եղեր, կըսէր երրորդ մը։

— Պայուսակին մէջէն տինամիթ գտեր են, կը հաւաստէր ուրիշ մը։

Վերջապէս ամենէն անհեթեթ ենթադրութիւնները կ՚ըլլային այդ Անգլիացիին յանկարծական մեկնումին առթիւ։

Սակայն ընդհանրապէս բոլոր պալատականներն ալ գոհ էին որ այս նորեկը հեռացած էր Եըլտըզէն։ Ամէնքն ալ կը վախնային որ գուցէ այդ Եւրոպացին իր ճարպիկութեամբ և խելացութեամբը իրեն յանձնուած այս դժուարին գործին մէջ

յաջողէր և մեծ ազդեցութեան մը տիրանար պալատին մէջ և այս բանը ո՛չ մէկ պալատականի գործին կուգար։

Մինչդեռ Երլտըզի մէջ այս զանազան կարծիքները կը փոխանակուէին՝ Մաք Լայն որ Ղալաթիոյ քարափին վրայ, բազմութեան մէջ, Իզզէք փաշայէն բաժնուելէ ետքը, կառք մը մտած ու Բերայի չխտակ ճամբուն վրայ երկրորդական պանդոկ մը գացած ու սենեակ վարձած էր Ժաք Պրիւնօ անունով և ինքզինքը իբրև Ֆրանսայի առևտրական յանձնակատար մը ներկայացնելով, իր նոր խցիկը քաշուած, որ շատ անշուք երևոյթ մը ունէր Երլտըզի պալատին մէջ իրեն յատկացուած սրահներուն հետ բաղդատմամբ, կրկին զբաղած էր ուշի ուշով քննելու սուրհանդակ սպաննիի վզէն գտնուած տոմսակը, որուն քննութիւնը, ինչպէս գիտէք, կիսկատար մնացած էր։

Մաք Լայն հիմա գո՛հ և զուարթ կերպարանք մը ունէր։ Ինքզինք աւելի ազատ կը զգար այս անշուք խցիկին մէջ քան թէ Համիտի արքայական պալատը։

Մինչև գիշեր, գրասեղանին առջև նստած, խորհրդաւոր տոմսակը քննելով անցուց։ Այդ քննութիւնը կ'երևայ որ շատ գո՛հ թողուց զինքը, որովհետև շատ ուրախ տպաւորութեան մը տակ տոմսակը խնամով թղթապանակին մէջ դրաւ և զգալով որ փորը անօթի էր, պատրաստուեցաւ դուրս ելլել ճաշելու։

---

ԳԼՈՒԽ Բ.

# ՄԱՔ ԼԱՅՆ ԿԸ ՇԱՐՈՒՆԱԿԷ ԳՈՐԾԵԼ

*Հետեւեալ առտու երբ Քօնըն Տօյլի վէպերուն հերոսը արթընցաւ, հանգիստ քուն մը քաշելէ ետքը, անկողինին մէջ մտքովը ամփոփեց մինչեւ այդ ատեն իր քննութիւններուն արդիւնքը։*

*— Նախ, ըսաւ ինքնիրեն, բացարձակապէս ապահով ենք որ գործերնիս քաղաքական գաղտնի կազմակերպութեան մը հետ է, որուն գործունէութեան բո՛ւն կեդրոնը կը գտնուի Պոլսոյ ասիական եզերքը եւ հաւանօրէն այն սահմանին մէջ որ Էրէնքէօյէն մինչեւ Գանտիլլի կ'երկարի, քանի որ մինչեւ հիմա գործուած եօթը ոճիրներն ալ այդ շրջանակին մէջ տեղի ունեցած են... այսպէս ուրեմն իմ ընելիք խուզարկութիւններուս սահմանը շատ ընդարձակ չէ։ Այսօրուընէ իսկ պէտք որ երթամ աչքէ անցնել Սկիւտարի բարձունքը եւ, ո՛վ գիտէ, գուցէ դիպուածը անակնկալ կերպով օգնութեան հասնի ինծի, իսկ եթէ երբեք չուզէ օգնել, այն ատեն ես առանձին գլխուս ճարը նայիմ...*

*Այս խորհրդածութիւնը ընելէ ետքը անկողնէն վար ցատքեց եւ հինգ վայրկեանի մէջ հագուեցաւ եւ ելեկտրական զանգակը հնչեցուց, նախաճաշը ապսպրելու համար։*

*— Բայց, մտածեց ինքնիրեն, ի՞նչ կը նշանակեն այդ* M. *եւ* A. *գիրերը որով այս մարդիկը սովորութիւն ունին դրոշմելու իրենց զոհերը...։ Կ'ըմբռնեմ որ այդ նշանը դնելով կ'ուզեն բացայայտ կերպով ցոյց տալ թէ իրենց կազմակերպութիւնն է այդ ոճիրները գործել տուողը եւ այս կերպով*

սարսափ ազդել այն լռնակալ իշխանութեան՝ որուն դէմ կը գործէին։ Սակայն անշուշտ այդ գիրերը մասնաւոր նշանակութիւն մը ունէին... յատուկ անուն մը կամ նշանաբանի մը համառօտութիւնն էին... ի զո՜ւր երէկուընէ ի վեր գլուխս կը չարչարեմ գուշակելու համար այդ գիրերուն տակ ծածկուած իմաստը...

Պանդոկի սպասաւորը նախաճաշը բերած էր արդէն։ Անգղիացին հացձեղով իր կաթով խահուէն խմելով հանդերձ իր խորհրդածութիւնը կը շարունակէր։

— Արդեօք, ըսաւ յանկարծ, լատիներէն խօ՞սք մըն է որ դաւանի կազմակերպութեան կողմէ իբրեւ նշանաբան ընդունուած է... անանկ, ջանամ միտքս բերել այդ երկու գիրերով լատինական խօսք մը...

Մաք Լայն ջանք մը ըրաւ յիշելու համար իր լատիներէնը որ դպրոցին մէջ սորված էր և որ երբեք առիթ չէր ունեցած գործածելու. բայց իր յիշողութիւնը այնքան զօրաւոր էր որ փոքրիկ ճիգէ մը ետքը իր միտքին առջեւ ներկայացան շատ մը լատինական առածներ զորս տարիներ առաջ դոց սորված էր։...

— M. և A., կրկնեց, այդ գիրերով ի՞նչ խօսք կրնաք կազմել անանկ... այո՛, գտայ, գոչեց յանկարծ ուրախութեամբ, M. A. այսինքն՝ Macto Animo... կը նշանակէ «քաջութիւն սրտի», ահա՛ գեղեցիկ նշանաբան մը քաղաքական դաւանի կազմակերպութեան մը համար...

Եւ իր այս գիւտէն չափազանց ուրախ, Մաք Լայն անմիջապէս դուրս ելաւ սենեակէն։ Իր միտքը ծանր ու անօգուտ բեռէ մը թեթեւցած զգաց. այդ դրոշմուած գիրերու գաղտնիքին լուծումը թէեւ գիտէր որ մեծ օգտակարութիւն մը չպիտի ունենար ձեռնարկած խուզարկութեանցը համար, այսուհանդերձ, հակառակ իր կամքին, իր միտքը կը չարչարէր ու թոյլ չէր տար ուրիշ կարեւորագոյն բաներու վրայ մտածելու։ Հիմա որ կը կարծէր թէ լուծումը գտած էր, միտքը բոլորովին ազատած կը զգար։

— Այո՛, այո՛, կրկնէր ինքնիրեն, այս է այդ երկու գիրերուն նշանակութիւնը. Մաքթօ Անիմօ... ո՜ն ուրեմն քաջութիւն տղա՛ք, ես ալ այդ նշանաբանը կ՚ընդունիմ և անոր համեմատ աներկիւղ առաջ կ՚ընթանամ:

Մաք Լայն փողոց ելլելուն պէս կառք մը վարձեց. ուղղակի կամուրջ գնաց և ուղղուեցաւ Սկիւտարի շոգենաւերուն կողմը, մէկ քանի մարդոցմէ տեղեկութիւն հարցնելէ ետքը:

Անգղիացի նախկին գաղտնի ոստիկանը իր բաց գոյն ամառնային լաթերով ու լայնեզր գլխարկովը զբօսաշրջիկի մը երևոյթը ունէր, և ո՛չ ոք իրեն ուշադրութիւն կը դարձնէր, որովհետև Պոլսեցիները վարժուած են տեսնելու այդ ձևէ մարդիկ տարուան ամէն եղանակներուն մէջ:

Տոմսակը առնելէ ետքը, ուղղուեցաւ շոգենաւին վերնայարկը ուր շուք տեղ մը ընտրեց ու բազմեցաւ և գրպանէն կարմիր կողքով գիրք մը հանելով սկսաւ ուշի ուշով կարդալ: Այս գիրքը «Պէօտէքէր» մըն էր որուն մէջ մանրամասնօրէն նկարագրուած էին Կ. Պոլսոյ բոլոր թաղերն ու գիւղերը և ամբողջ պատմական հնութիւնները:

Մաք Լայն այնքա՜ն խորասուզուած էր իր այս ընթերցումին մէջ որ բնաւ ուշադրութիւն չէր դարձներ շուրջն ու քովը նստողներուն: Միայն շոգենաւը ճամբայ ելած միջոցին պահ մը գիրքը գոցեց ու չորս կողմը նայեցաւ: Իր ճիշդ քովիկը նստած էր երիտասարդ, սև մօրուքով քահանայ մը աշխոյժ ու վառվռուն աչքերով: Անգղիացին գլուխը դրած բեղոյրին ձևէն իսկոյն ճանչցաւ որ իտալացի մըն էր:

— Եւ սակայն, խորհեցաւ ինքնիրեն, դիմագիծները բնաւ չեն համապատասխաներ իտալական տիպարին, ընդհակառակը կատարեալ արևելքցիի դէմք ունի...

Մաքէն այս պարզ դիտողութիւնը ընելէ ետքը, կրկին բացաւ իր գիրքը և ընթերցումը շարունակեց:

Եւ սակայն այդ կրօնաւորը կը շարունակէր իր միտքը զբաղեցնել, այն աստիճան որ գրեթէ ա՛լ իր կարդացածին

ուշադրութիւն չէր կրնար ընել։ Գիրքը գոցեց և սկսաւ չուրջը պարզուած տեսարանը դիտել։ Նոյն միջոցին շոգենաւը սուլեց ցամաքին մօտենալով։

— Ո՞ւր է այս տեղը, հարցուց Մաք Լայն քովինին։

— Պէշիկթաշ, պատասխանեց կրօնաւորը։

— Ուրեմն շոգենաւը ուղղակի Սկիւտար չերթա՞ր։

— Կան որ ուղղակի կ՚երթան, բայց ասիկա Պէշիկթաշ կը հանդիպի նախ, պատասխանեց միւսը։

Խօսակցութիւնը ֆրանսերէն լեզուով տեղի ունեցած էր և Մաք Լայն դիտած էր որ իր խօսակիցը բնաւ իտալական շեշտ չունէր, թէև Ֆրանսացիի մը պէս ալ չէր արտասաներ բառերը։ Այս պարագան ա՛լ աւելի վառեց իր հետաքրքրութիւնը։

— Ո՛չ իտալացի, ո՛չ ալ ֆրանսացի քահանայ մըն է ասիկա, բայց և այնպէս իտալացի միաբաններու հագուստն ու գլխարկը կը կրէ. ինչո՞ւ համար։ Արդեօք ծպտուա՞ծ է...։

Անգամ մը որ այս եզրակացութիւնը ըրաւ, ալ չկրցաւ հանդարտանալ և սկսաւ գաղտագողի դիտել կրօնաւորը որ գրպանէն ֆրանսերէն թերթ մը հանած, անտարբեր կը կարդար։

Այդ թերթը նոր խորհրդածութիւններ ներշնչեց Մաք Լայնի.

— «Մաթէն» կը կարդայ, ըսաւ ինքնիրեն, ինչ որ կրօնաւորներու սովորական ընթերցումը չէ... «Մաթէն» հանրապետական և հակակղերական թերթ մըն է, ինչո՞ւ համար այս թերթը կը կարդայ...։ Արդեօք թերթին ո՞ր մասերովը կը հետաքրքրուի կոր...։

Անգղիացին աչքին ծայրովը ուշադիր նայեցաւ քովինին։

— Վերջին լուրերը, քաղաքական բաժինը կը կարդայ, շարունակեց և մանաւանդ արտաքին քաղաքականութեան վերաբերեալ հեռագիրները... Իտալացի վարդապետ մը ինչ պէտք ունի արտաքին քաղաքականութեամբ շահագրգռուե-

լու... Զարմանալի՜ բան, ներքին դրդում մը կը զգամ այս մարդուն հետ խօսակցութեան բռնուելու... բայց անքաղաքավարութիւն կ'ըլլայ իր ընթերցումը արգիլել, սպասենք որ թերթը մէկ կողմ դնէ:

Կրօնաւորը կարծես գուշակած էր Անգլիացիին փափաքը, որովհետեւ ընթերցումը շատ չերկարեց եւ թերթը ծալելով գրպանը դրաւ:

Մաք Լայն իսկոյն օգուտ քաղեց ատկէ.

— Արդեօք սա բարձունքին վրայ գտնուած փառաւոր շէնքը ի՛նչ է, զօրանո՞ց թէ դպրոց, հարցուց ձեռքովը ցոյց տալով Բերայի բլուրին վրայ գտնուած ապարանք մը:

Կրօնաւորը մատնանիշ եղած կողմը նայեցաւ եւ պատասխանեց:

— Չէ՛ գերմանական դեսպանատունն է:

— Շնորհակալ եմ:

Մաք Լայն կը փափաքէր անշուշտ խօսակցութիւնը շարունակել: բայց միւսը կրկին գրպանէն թերթ մը հանելով սկսաւ կարդալ:

— Իրա՛ւ որ այս մարդը փոխանակ կրօնաւոր ըլլալու՝ դիւանագէտ պէտք էր որ ըլլար, դիտել տուաւ Անգլիացին թերթին վրայ ակնարկ մը նետելէ ետքը, ահաւասիկ հիմակ ալ «Թան»ը կը կարդայ եւ... «Թան»ին խմբագրականը որ Թուրքիոյ կացութեան նուիրուած է... կ'երեւայ որ այս մարդը շատ կը հետաքրքրուի իր բնակած երկրին քաղաքական կացութեամբը:

Շոգենաւը Սկիւտարի նաւամատոյցին կը մօտենար, երբ Մաք Լայն կրկին խօսք ուղղեց քովի անծանօթ կրօնաւորին:

— Ծովուն մէջտեղ տեսնուած փոքրիկ աշտարակը արդեօք փարո՞ս մըն է:

— Չէ՛, Քըզ Գուլէսին է, պատասխանեց միւսը:

Մաք Լայն խիստ լաւ գիտէր այդպէս ըլլալը, սակայն այս հարցումը ուղղած է միմիայն խօսակցելու համար մարդուն հետ:

Կրօնաւորը այս անգամ ինքն ալ իր կարգին հարցում մը ուղղեց իր խօսակցին:

— Նո՞ր եկած էք Պոլիս.

— Այո՛, պատասխանեց Մաք Լայն հազիւ շաբաթ մը կայ։

Ինչպէս կը տեսնենք, Անգլիացին պարզապէս կը ստէր, քանի որ դեռ երէկ ոտքը Պոլիս դրած էր,

— Իսկ դո՞ւք, հարցուց ինքն ալ։

Կրօնաւորը պահ մը թեթեւօրէն վարանեցաւ, յետոյ մէկէն պատասխանեց։

— Ես ալ նոր եկած եմ, ձենէ աւելի ետքը։

— Իտալիայէն անշուշտ։

— Այո՛, Իտալիայէն։

— Ձեր հագուստէն գուշակեցի որ Իտալացի քահանայ մըն էք։ Առաջին անգա՞մն է որ Պոլիս կուգաք։

— Այո՛։

— Ուրեմն դուք ալ ինծի չափ անծանօթ էք քաղաքին:

— Այո՛։

Կրօնաւորը յայտնապէս կը նեղուէր խօսակցութիւնը այսպէս երկարելուն եւ միավանկ բառերով միայն կը պատասխանէր: Յետոյ, անշուշտ բոլորովին խօսքը կտրելու համար, ոտքի ելաւ եւ ըսաւ։

— Հովը սաստիկ է հոս, կը ներէք, վար պիտի իջնեմ։

Ու սանդուխէն վար աներեւոյթ եղաւ, սակայն Մաք Լայն իրեն պէտք եղածը հասկցած էր արդէն։

— Այս մարդը ծայրէ ի ծայր կը ստէ, ըսաւ ինքնիրեն, նախ Իտալացի չէ եւ կուզէ Իտալացի ձեւանալ, յետոյ գուցէ նոյնիսկ կրօնաւոր ալ չէ... եւրոպացի կրօնաւորները ընդհանրապէս ածիլուած կ'ըլլան, երրորդ. կ'ըսէ թէ նոր Պոլիս եկած է մինչդեռ շատ լաւ կը ճանչնայ Պէշիկթաշը եւ նոյնիսկ գիտէ թէ շոգենաւներ կան որոնք Սկիւտար երթալու համար Պէշիկթաշ կը հանդիպին եւ ուրիշներ որոնք ուղղակի կ'եր-

թան... չորրորդ՝ շատ կը զբաղի քաղաքականութեամբ և «Մաթէն» ու «Թան» կը կարդայ որոնք կրօնաւորներու յատուկ թերթեր չեն... ասկէ զատ իտալացի կրօնաւոր մը աւելի բնական է որ իտալերէն թերթեր կարդայ։ Ու քանի որ այս մարդը ինքզինք ծածկել կը ջանայ ու սուտ կը խօսի է ըսել է որ մասնաւոր շահ մը ունի այսպէս վարուելու... և յետոյ ինչո՞ւ Սկիւտար կ'երթայ... ի՞նչ գործ ունի հոն, եթէ իրօք Նոր Պոլիս հասած օտարական մըն է։ Ուրիշ դիտողութիւն մըն ալ, շարունակեց Անգլիացին ինքնիրեն խորհրդածելով, հովը բնաւ սաստիկ չէ, մանաւանդ սուտ է որ հովին պատճառաւ ուզեց վար իջնել... չէ՛, այլ պարզապէս վար իջաւ խօսակցութիւնը կարճ կապելու համար, որովհետեւ զգաց թէ չափէն աւելի խօսած էր արդէն. Այս ամէնքը տարօրինակ ու խորհրդաւոր կը թուին ինծի և պէտք չէ որ այս մարդը աչքէ հեռացնեմ, գուցէ իրմով պիտի կրնամ հետք մը գտնել... այո՛, ներքին ձայն մը ինծի կը պատուիրէ հետեւիլ իրեն, սակայն ինչպէ՞ս վարուելու է որ կասկած չի յարուցանեմ։

Մեր գաղտնի ոստիկանը ինքնիրեն այս մտածումները կ'ընէր երբ շոգենաւը մօտեցաւ Սկիւտարի նաւամատոյցին։ Իսկոյն փութաց ինքն ալ վար իջնել և տեսնել թէ ո՞ւր գացած էր խորհրդաւոր վարդապետը։

Սանդուխին ստորոտը դուրս ելլելու պատրաստուող բազմութիւնը այնքան խռնուած էր որ կարելի չէր առաջ երթալ և Մաք Լայն ստիպուեցաւ եղած տեղը մնալու։ Այսուհանդերձ կրցաւ նշմարել կրօնաւորը որ դուրս ելլելու պատրաստուողներու առաջին շարքին մէջ կը գտնուէր։

— Կ'երեւայ կ'աճապարէ ժամ առաջ դուրս ելլելու, մտածեց Անգլիացին, ջանանք զինքը աչքէ չի հեռացնել։

Եւ խռնուած ամբոխը ճեղքելով քանի մը քայլ յառաջացաւ։

Վերջապէս բազմութիւնը սկսաւ դուրս ելլել։

Հրապարակին վրայ Մաք Լայն հեռուէն տեսաւ որ իր

հետապնդած անձը մուհաճիրի կառք մը կը սակարկէր։ Այս սակարկութիւնը բաւական երկար տեւեց, այնպէս կը թուէր որ կրօնաւորը իր երթալիք տեղը կը բացատրէր։

— Վա՜յ խաբեբայ, ըսաւ ինքնիրեն գաղտնի ոստիկանը, ինքզինքը իբրեւ նոր եկած օտարական մը կ'ուզէ կլլեցնել ինձ, մինչդեռ յայտնի կ'երեւայ որ երկրին լեզուն ջուրի պէս կը խօսի, որովհետեւ կարելի չէ ենթադրել թէ այդ կառապանը Իտալերէն կամ Ֆրանսերէն հասկնայ ու խօսի…։

Երբ կառապանն ու կրօնաւորը համաձայնեցան ու կառքը ճամբայ ելաւ, Մաք Լայն, որ արդէն ընելիքը որոշած էր, իսկոյն ձիապանի մը նշան ըրաւ, ձիուն վրայ ցատքեց, առանց սակարկելու, արդէն դժուար պիտի ըլլար այդ բանը ընել, քանի որ լեզուն չէր գիտեր, եւ սկսաւ հետեւիլ կառքին։

Մինչեւ Զամլըճայի բարձունքը այսպէս հեռուէն գնաց կառքին ետեւէն ու երբ կառքը կեցաւ, ինքն ալ իսկոյն ձիէն վար ցատքեց ու մէճիտիէ մը դրաւ ձիապանին ձեռքը ու հեռացաւ։

Ձիապանը զարմանքով նայեցաւ այդ դրամին եւ ենթադրելով որ մարդը գուցէ սխալմամբ տուած էր այդքան գումար մը եւ իր սխալմունքը նշմարելով ետ պիտի դառնար, իսկոյն իր ձիուն վրայ նստաւ ու առաւ քալեց։

Ճիշդ Անգլիացին ալ այդ բանը կը փափաքէր։

Կրօնաւորը, իր կողմէ, կառապանին հաշիւը մաքրելէ ետքը, սկսած էր ոտքով ճամբան շարունակել։

— Անհաւատալի պարագայ մը, որ նոր կասկածներու տեղի կուտայ, ըսաւ ինքնիրեն Մաք Լայն, ինչո՞ւ այս մարդը կառքով ուղղակի իր երթալիք տեղը կանգ չառնէր ու ճամբան կ'իջնայ, ոտքով շարունակելու համար իր ուղեւորութիւնը։ Ապահովաբար չուզեր որ հասկցուի իր գացած տեղը։

Իրա՛ւ ալ այդ կրօնաւորին ամբողջ վարմունքը կասկածելի ու խորհրդաւոր էր։ Քիչ մը քալելէ ետքը կանգ առաւ եւ սկսաւ չորս դին դիտել ուշադրութեամբ եւ մտմտաւորապէս

կառապանը որ չէր մեկնած ու իր ձիերուն կեր կուտար։

— Եթէ զիս նշմարէ հեռուէն, ամէն բան ջուրը կ'իյնայ մտածեց Անգլիացին, ուստի ջանանք ծածկուելու։

Իրենց գտնուած տեղը գրեթէ դաշտ մըն էր ուր հազիւ ցանցառ տուներ կ'երեւային պարտէզներու մէջ կորսուած ու խոշոր պատերով շրջապատուած. բարեբախտաբար Անգլիացին ճիշդ այդ պատերէն մէկուն քով կը գտնուէր և կրցաւ անոր ետին պատսպարուիլ։

Բառորդէն աւելի սպասեց այդտեղ, մերթ ընթ մերթ գաղտագողի կերպով դիտելով կրօնաւորը որ իր եղած տեղը կը մնար, գետին ծռելով ու ծաղիկներ հաւաքելով ու զանոնք երկարօրէն քննելով։

Յայտնի էր որ այդ մարդը ծաղիկ հաւաքելու չէր եկած ու պարզապէս այդ միջոցին դիմած էր, որպէսզի իր անշարժ մնալը կասկած չյարուցանէ։

Երբ կառապանը իր ձիուն կեր տալը լմնցուց և ճամբայ ելաւ Սկիւտար վերադառնալու համար, այն ատեն միայն կրօնաւորը սկսաւ քալել ինքն ալ իր կողմէ։

Մ'աք Լայն տեսաւ որ անիկա տուներէն հեռու ամայի դաշտավայրը կ'երթար, ուստի խոհեմութիւն համարեց որ բաւական հեռանայ, քանի որ չէր կրնար իր աչքէն ճողոպրիլ այդ բաց դաշտավայրին մէջ։ Ցետոյ սկսաւ ինքն ալ ետեւէն երթալ։

Ա՛լ հիմա ո և է չէնք չի կար չուրջերնին ու ամայի դաշտավայրերն էին որ իրարու կը յաջորդէին։

Կրօնաւորը սկսած էր արագ արագ քալել ու Մ'աք. Լայն դժուարութիւն կը կրէր անոր հետեւելու, հակառակ իր ժառուկ և յոգնութեան ու քալելու վարժ սրունքներուն։

Բառորդ ժամ քալելէ ետքը՝ Զամլըճայի ետեւի կողմին վրայէն սկսաւ վար ընթանալ։ Ճամբան այնքա՜ն խորդ ու բորդ էր որ կրօնաւորը մերթ կ'երեւար, մերթ անյայտ կ'ըլլար, բայց և այնպէս ալ մեր մարդը զայն աչքէն բնաւ չվրիպեցուց

միայն թէ այս գնացքը այնքա՜ն երկար կը տեւէր որ զինքը կը յուսահատեցնէր։

— Արդեօք պարա՞պ տեղը այս մարդուս ետեւէն ինկայ. կը մտածէր, արդեօք իրաւցնէ՞ Եւրոպացի կրօնաւոր մըն է որ բնութեան և հանդարտութեան սիրահար մը ըլլալով, եկած է դաշտերուն մէջ պտըտելու և ինքնիրեն խոկալու և աղօթե-լու...։

Բայց հակառակ մտքին մէջ ծնած այս նոր կասկածին՝ Մաք Լայն շարունակեց ամենայն զգուշութեամբ հետեւիլ կրօնաւո-րին որ թէեւ ատեն ատեն ետին կը դառնար և չորս կողմը կը նայէր, սակայն չէր կրնար նշմարել Անգլիացին որ միշտ ինք-զինքը կը ծածկէր մացառներուն ետեւ։

Իտալացի վարդապետը ապառաժուտ վայր մը հասնելով՝ կրկին կանգ առաւ և այս անգամ աւելի ուշադրութեամբ ըսկ-սաւ իր չուրջը զննել, բայց Մաք Լայն որ սովորութիւն ըրած էր անոր ամէն անգամ կանգ առնելուն գետինը ծռիլ ու պահ-ուըտիլ, կրկին աներեւոյթ եղաւ մացառներուն տակ։ Արդէն այնքա՜ն հեռու էր վարդապետէն որ նոյն իսկ եթէ ոտքի ալ կեցած ըլլար. հաւանօրէն կրկին չպիտի նշմարուէր։

Երբ իր քննութիւնը աւարտեց՝ կրօնաւորը կրկին սկսաւ քալել ժայռերուն վրայ և յանկարծ աներեւոյթ եղաւ։

Մաք Լայն անքթիթ սպասեց որպէսզի երեւան ելլէ։ Բայց այս անգամ կրօնաւորը չերեւցաւ։

— Կ՚երեւայ թէ յոգնեցաւ ու ժայռի մը շուքին տակ նստաւ հանգչելու համար, մտածեց Մաք Լայն ու ինքն ալ հողին վրայ նստաւ ու սիկառէթ մը վառեց։ Իր չուրջը խո-տերը այնքան բարձր էին որ անոնց մէջ բոլորովին կը կոր-սուէր։

Բաւական սպասելէ ետքը, տեսաւ որ վարդապետը մէջ-տեղ չէր ելլեր, սկսաւ կասկածիլ իր սրատեսութեան վրայ։

— Արդեօք աչքէ՞ս փախցուցի, մտածեց։

Եւ սակայն այդ ենթադրութիւնը գրեթէ անկարելի էր,

որովհետեւ այն ժայռերէն անդին որոնց ետեւ անյայտ եղ
էր կրօնաւորը, լերկ ու անմշակ դաշտեր կը տարածուէին
կարելի չէր որ հոնկէ անցնէր, առանց տեսնուել:

Մաք Լայն քանի մը վայրկեան եւս սպասելէ ետքը,
րոշեց խոտերուն մէջէն, գրեթէ սողալով յառաջանալ դէ
ժայռերը: Կամաց կամաց հարիւր քայլի չափ առաջ գնաց
կրկին կեցաւ:

— Գործը չվտանգենք, խորհեցաւ, լաւագոյն է որ հա
բերող ըլլանք:

Եւ փիլիսոփայօրէն նոր սիկառէթ մը վառելով սկս
ծխել:

Յանկարծ հեռուն մարդկային մարմին մը նշմարեց
դէպի իր գտնուած կողմը կուգար, բաւական արագ քալելո

— Մշա՞կ մը, պարտիզպա՞ն մըն է արդեօք, ըսաւ ին
նիրեն ուշադրութեամբ դիտելով նորեկը... բայց ո՛չ հող
գործի հագուստ չի կրեր, ընդհակառակը սեւեր հագած է
էֆէնտիի մը կերպարանքը ունի...

Մինչ Մաք Լայն այս խորհրդածութիւնը կ'ընէր, նոր
անծանօթը արագ արագ առաջ կուգար, ինքն ալ կրօնաւոր
պէս ատեն ատեն չուրջը դիտելով, կասկածոտ զգուշութեա
մը:

— Գրաւ կը դնեմ որ այս մարդն ալ ժայռերուն կող
պիտի երթայ, մտածեց Անգղիացին:

Կարծեօք իր մտածածը հաստատելու համար, իրաւ
մարդը հետեւեցաւ այն ճամբուն ուրկէ քիչ առաջ անցած
կրօնաւորը և ինքն ալ անոր պէս անյայտ եղաւ ժայռերո
ետեւ:

Մաք Լայնի սիրտը յուզումէն սկսած էր ուժգին բաբ
խել: Իր գաղտնի ոստիկանի հոտառութիւնը զինքը կ'ապահ
վէր որ խորհրդաւոր բաներ մը կը դառնային իր չուրջը և
կրօնաւորին ու այս նորեկին միջեւ կապակցութիւն մը կար:

Որոշեց քիչ մըն ալ յառաջանալ և յիսուն քայլ եւս

ղաց խոտերուն մէջ, ալ աւելի մօտենալով ժայռերուն։ Գուցէ իր գնացքը տակաւին պիտի շարունակէր, երբ զարմացական խեղդուկ ճիչ մը արձակելով կեցաւ.

Հեռուէն նոր սեւ կերպարանք մը կը յառաջանար.

— Ահա երրորդ մը, ըսաւ Մաք Լայն, եւ այս անգամ կին մըն է...։

Իրա՛ւ ալ եկողը սեւազգեստ կին մըն էր գլուխը ճերմակ քօղ մը ծածկած եւ որ ուղղակի դէպի ժայռերը կը քալէր։

Երբ բաւական մօտեցաւ, Մաք Լայն կրցաւ տեսնել որ քառասուն տարեկանի մօտ, նիհար կին մըն էր, կորովի դիմագիծերով։

— Արդեօք մահմէտական մըն է թէ քրիստոնեայ, մտածեց Անգղիացին, իր հագուստէն դժուար է որոշել...

Արդարեւ կնոջ երեսը բաց էր, եւ ինչպէս ըսինք, միայն ճերմակ քօղով մը գլուխը ծածկուած եւ կարելի չէր իր իսկութեան մասին որոշ գաղափար մը կազմել։

— Ահա՛ ինքն ալ դէպի ժայռերը կ'ուղղուի, ինքն ալ հիմա անհետ պիտի ըլլայ քարերուն ետեւ, ըսաւ ինքնիրեն գաղտնի ոստիկանը, որ հետզհետէ կը շահագրգռուէր իր աչքերուն առջեւ պարզուող խորհրդաւոր իրողութիւններէն։

Արդարեւ վայրկեան մը ետքը այս կինն ալ ժայռերուն մէջ կորսուեցաւ։

— Ճիշդ գումարումի մը օր եկած եմ հոս, շարունակեց խորհրդածել Մաք Լայն, մե՛ղք որ մուտքի տոմս մը չունիմ քովս որպէս զի կարենամ ես ալ ներկայ գտնուիլ այս գումարումին, որ կ'երեւակայեմ թէ շատ հետաքրքրական ըլլալու է եւ շատ ալ խորհրդաւոր, քանի որ մինչեւ հոս գալու ձանձրոյթը յանձն կ'առնեն կոր... ահաւասիկ արդէն երեք հոգի եկան եւ գուցէ անոնցմէ առաջ ալ ուրիշներ եկած էին ու անշուշտ տակաւին նորեր ալ պիտի գան... բայց արդեօք ժողովը բացօթեա՞յ տեղի կ'ունենայ... ժայռերուն վրայ, հին յունական ժողովներուն պէս...։ Չեմ կարծեր, որովհետեւ

այս մարդիկը շատ խոհեմութեամբ կը շարժին կոր... Նոյն իսկ միասին չեն դար կոր ուշադրութիւն չգրաւելու համար, այլ մէկիկ մէկիկ, հետեւաբար չպիտի համարձակէին բացօթեայ տեղ մը ժողվուիլ ու խորհրդակցիլ, որքան ալ այդ տեղը ամայի ըլլայ։ Ժայռերուն մէջ արդեօք խոռո՞չ մը կայ...։

Գաղտնի ոստիկանը հետաքրքրութենէ կ'եռէր կը մրրկէր, այսուհանդերձ չէր ուզեր անխոհեմութիւն մը ընել. ուստի իր եղած տեղը մնաց։

Ծածուկ հաւաքումի մը մասին իր ըրած ենթադրութիւնը ճիշդ կ'երեւար, որովհետեւ հետզհետէ երկու նոր անձեր ալ երեւցան բլրակին ծայրը որոնք նոյնպէս մէկիկ մէկիկ դէպի ժայռը դիմեցին և աներեւոյթ եղան անոր ետեւ։

— Ահաւասիկ հինգ հոգի եղան միայն իմ տեսածներս և գուցէ անոնցմէ առաջ ալ ուրիշներ եկած էին, խորհեցաւ Մաք Լայն։

Եւ սակայն ժամանակը կ'անցնէր և ուրիշ նոր անձ մը չէր երեւար։

— Կ'երեւայ որ թիւը լրացաւ, ըսաւ ինքնիրեն Անգղիացին։

Յետոյ ժամացոյցը նայեցաւ։

— Օ՛, արդէն կէսօրի մօտ է... բայց այստեղ սպասելով բան մը չեմ կրնար հասկնալ, պէտք է որ ալ աւելի մօտենամ սա ժողովին... արդեօք նիստը դռնբաց չէ՞, ունկնդիր չե՞ն ընդունիր...

Մաք Լայն խօսքը գործին միացնելով՝ սկսաւ զգուշութեամբ յառաջանալ խոտերուն մէջէն։

Երբ բաւական մօտեցաւ ժայռերուն՝ յանկարծ վարանում մը զգաց.

— Եթէ այս ամայի տեղը զիս նշմարեն ու վրաս կասկած մը ունենան՝ գործս գէշ է....

Բնազդաբար ձեռքը ետեւի գրպանը տարաւ, ուր կը գտնուէր րէվօլվէրը։

— Իրաւ է որ զինուած եմ, բայց հինգ հոգիի դէմ դնելը քիչ մը դժուար է, մանաւանդ անոնք ալ բնականաբար զինուած ըլլալու են…:

Մաք Լայնի այս վարանումը երկար չի տեւեց: Իր արկածախնդիր կեանքին մէջ այնպիսի վտանգաւոր վայրկեաններ անցուցած էր ու այլեւս դիւրաւ չէր ընկրկեր ո և է փորձանքի առջեւ: Յետոյ հաւատք ունէր իր աստղին վրայ և գիտէր թէ ամենէն դժնդակ րոպէին անակնկալ մը կրնար զինքը փրկել. ուստի րէվոլվէրը լաւ մը քննելէ և ստուգելէ ետքը թէ գնդակները իրենց տեղերն են, հաստատ քայլով մը սկսաւ յառաջանալ:

Երբ ժայռերուն մօտեցաւ, պահ մը կեցաւ և ականջ դրաւ:

Ո և է ձայն կամ շշնկոց չէր լսուէր:

— Զարմանալի՜ բան, ըսաւ ինքնիրեն, արդեօք բանթօմի՞ն կը խաղան այս մարդիկը և ձեռքի շարժումներո՞վ կը խօսին իրարու հետ:

Եւ քանի մը քայլ ևս առաջ երթալով՝ մօտեցաւ այն քարին որուն ետեւ՝ մէկիկ մէկիկ անյայտ եղեր էին հինգ անձերն:

Հոն կրկին կեցաւ ու ականջ դրաւ: Միշտ միեւնոյն բացարձակ լռութիւնը կը տիրէր:

Անգլիացիին համբերութիւնը սպառած էր ու ա՛լ առանց նկատի առնելու զգուշութիւնն ու խոհեմութիւնը, առաջ նետուեցաւ քթին տակէն մըմնջելով.

— Macto animo’…

Կ'ենթադրէր որ յանկարծ դէմ յանդիման պիտի գար հինգ անձերուն հետ, և որպէսզի յանկարծակիի չիգայ, րէվոլվէրը հանած ու ձեռքը բռնած էր

Եւ սակայն ժայռին ետեւ ոչ ոք կար:

Բայց ո՞ւր անյայտացան այս մարդիկը, գոչեց Մաք Լայն տեսակ մը բարկութեամբ և սկսաւ շուրջը զննել ուշի ուշով:

Ժայռերու կոյտի մը մէջտեղ կը գտնուէր ուր դժուարաւ կարելի էր շարժիլ. տեղ տեղ փոքրիկ խոռոչներ կային թէև, սակայն անկարելի էր ենթադրել որ այդ խոռոչներուն մէջ մէկ քանի հոգի կրնային հաւաքուիլ: Այսուհանդերձ Մաք Լայն բոլոր այդ ծակերը քննեց ամենայն ուշադրութեամբ: Մարդու հետք չէր կար բնաւ:

— Եւ սակայն այս մարդիկը հոս ըլլալու են անպատճառ, վճռեց Անգլիացին և շարունակեց իր խուզարկութիւնները, մէկիկ մէկիկ քննելով քարերը, որոնցմէ մէկուն ետեւ գաղտուկ մուտք մը կը յուսար գտնել:

Այս մանրակրկիտ զննութիւնը ժամէն աւելի տեւեց: Մաք Լայն, առանց յուսահատելու, մէկիկ մէկիկ քարի հատորները կը շօշափէր, կը ջանար տեղերնէն խախտել, և կամ ձեռքին տակ եկած փոքրիկ քարերը կը վերցնէր, մենամոլի մը անխոնջ յարատեւութեամբ:

Յանկարծ ուրախութեան ճիչ մը արձակեց. փոքրիկ քառակուսի քար մը տեղէն վերցնելով՝ անոր ներքեւ կղպանք մը գտած էր, մին այն կղպանքներէն որոնք այբուբենի գիրեր իրարու քով բերելով ու ծածուկ բառ մը կազմելով կը բացուին:

— Կղպանքը գտանք, հիմա բանալին պէտք է գուշակել, բաւ ինքնիրեն Մաք Լայն, ի՞նչ բառ արդեօք կը բանայ այս կղպանքը:

Մէկէն ձեռքը ճակտին զարկաւ.

— Որչա՜փ ապուշ եմ որ չկրցայ անմիջապէս գուշակել կղպանքին բառը... macto animo ըլլալու է, իրենց նշանաբանը...:

Մաք Լայն խկոյն քննեց կղպանքին գիրերը և տեսաւ որ լատինական տառեր էին և անոնցմով կազմեց վերոյիշեալ խօսքերը... և սակայն այդ բառերը ո և է արդիւնք չունեցաւ ու կղպանքը փակ մնաց:

Անգլիացին այնքա՜ն վստահ էր յաջողութեան մասին որ

*երբ յոյսը դերեւ ելաւ, չկրցաւ կատաղութեան աղաղակ մը զսպել։*

*Յետոյ սկսաւ միտքը ինկած զանազան բառերը փորձել, բայց ամէնքն ալ անօգուտ տեղը։ Այն ատեն ըստ բախտի գիրերը դարձուց իր մատներուն տակ, մերթ խօսք մը կազմելով, մերթ անիմաստ վանկեր յօրինելով։*

*Այնքան թաղուած էր իր այս աշխատութեան մէջ որ ժամանակին անցնիլը չէր զգար և ո՛չ ալ իր անօթութիւնը, որովհետեւ, ինչպէս գիտենք, առտուան նախաճաշէն զատ բան մը չէր կերած և արդէն կէսօրը չատոնց անցած էր։*

*Պահ մը յուսահատ՝ դադրեցուց այս ամուլ աշխատութիւնը և սիկառէթ մը վառեց ու ժամացոյցը նայեցաւ։*

*— Զօրսին կը մօտենայ կոր, մրմռաց ինքնիրեն, ու առաւօտէն ի վեր է որ հոս եմ, այսինքն մօտաւորապէս եօթը ժամէ ի վեր, ու այս մարդիկն ալ չորս ժամ է որ հաւաքուած են այս տեղ հաւանականաբար ժայռերուն մէջ փորուած ծածուկ թաքստոցի մը մէջ... եթէ յանկարծ դուրս ելլեն իրենց թաքստոցէն՝ անհաճոյ հանդիպում մը պիտի ըլլայ թէ՛ ինծի և թէ իրենց համար...*

*Այս խորհրդածութիւնը սակայն արգելք չեղաւ իրեն որ կրկին իր աշխատութեան վերադառնայ։*

*— Կղպանքը բանալու համար գործածուած բառը Մաքթօ Անիմօ չէ եղեր, ըսաւ ինքնիրեն, և սակայն վստահ եմ որ* M. *և* A. *գիրերով սկսուած երկու բառէ կազմուած է այդ մոգական խօսքը, քանի որ այդ երկու գիրերը իբրեւ դրոշմ կը ծառայեն այս խորհրդաւոր մարմնին... ուրեմն ջանանք այդ երկու գիրերով խօսքեր կազմելու։*

*Եւ Անգլիացին նորէն օգնութեան կոչեց այդ գիրերով կազմուած բոլոր դասական հին խօսքերն ու առացուածները։*

*— Արդեօք Ս. Գիրքէն փոխ առնուած խօ՞սք մըն է, թէեւ ասիկա քիչ մը տարօրինակ կը թուի Թուրքերէ կազմուած գաղտնի կազմակերպութեան մը համար, սակայն գու-*

ցէ այդպէս ըրած են աւելի գաղտնի ծածկելու համար իրենց նշանաբանը... մանաւանդ որ նոյնիսկ կրօնաւորի զգեստով մարդիկ ալ ունին մէջերնին... այո՛, քիչ մըն ալ հին ու նոր կտակարաններուն մէջէն խօսքեր փնտռենք։

Մաք Լայն իբրեւ զարգացած բողոքական մը շատ լաւ ուսումնասիրած էր Ս. Գիրքը զոր յաճախ կը կարդար իբրեւ հաճելի ընթերցում մը. ուստի դժուարութիւն չկրեց կարգ մը վերյիշումներ ընելու։ Բայց իր յիշած բառերէն ո՛չ մէկը կարող եղաւ խորհրդաւոր կապանքը բանալու։

— Մ. Ա. Մ. Ա. Մ. Ա. կը կրկնէր ինքնիրեն Մաք Լայն յուսահատօրէն. ուրիշ ի՞նչ խօսք կրնանք գտնել... այո՛, յիշեցի ուրիշ խօսք մըն ալ, սա ալ փորձեմ...։

Եւ իր մատներուն տակ կրկին գիրերը շարժեցան։

Այս անգամ Անգլիացին յաղթական ուրախութեան ճիչ մը արձակեց. քարի հատոր մը որուն մէկ խոռոչին մէջ կղպանքը կը գտնուէր, ինքն իր վրայ դարձաւ և կէս մեղր մեծութեամբ ծակ մը երեւցաւ Մաք Լայնի առջեւ։

— «Մարան Աթա», այս է եղեր խորհրդաւոր խօսքերը, գոչեց ուրախութեամբ։

Իրա՛ւ ալ այդ երկու բառերուն առջեւ ժայռը տեղի տը-ւած ու բացուած էր։

## ԳԼՈՒԽ Գ.

# ԳԱՂՏՆԻ ԺՈՂՈՎԸ

*Ո՞ւր կ'առաջնորդէր այս ծակը։*

*Մաք Լայն իր յաղթական աղաղակը արձակելէ ետքը, ինքնիրեն, վարանոտ կերպով մը, այս հարցումը ըրաւ.*

*— Ներս մտնա՞մ թէ դուրսը սպասեմ, մտածեց։*

*Բայց իսկոյն տեսաւ որ այս մտածումը անորոշ երկիւղէ մը յառաջ կուգար և ամօթ զգաց ասոր համար։*

*— Չէ՛, ըսաւ։ վարանում պէտք չէ։*

*Եւ առանց տատամսելու՝ ծռեցաւ ու մտաւ ծակէն ներս։*

*Հազիւ թէ ոտքը գետին դրած էր, ժայռը ինքն իր վրայ դառնալով գոցեց այն ծակը, ուրկէ ներս մտած էր Անգլիացին։*

*Այս անակնկալը պահ մը չփոթեցուց Մաք Լայնը, որ բացարձակ մթութեան մէջ մնաց. այսուհանդերձ բնաւ չկորսնցուց իր պաղարիւնութիւնը։*

*— Կ'երեւայ որ ծածուկ մեքենայի մը շնորհիւ որ գետնին տակը կը գտնուի և ոտքերու ճնշումէն շարժման մէջ կը դրուի, ժայռը կը գոցուի կոր մէկը ներս մտնելուն պէս... և անշուշտ ուրիշ մէկ ճնշումով մըն ալ կը բացուի, սակայն իրողութիւնը այն է որ այժմ բանտարկուած մնացի այս մթութեան մէջ...։*

*Գոցուած տեղը այնքան ցած էր որ Մաք Լայն ստիպուած էր մէջքը ու գլուխը ծռած կենալ։ Այս դիրքին մէջ գրպանէն լուցկիի տուփը հանեց և հատ մը վառեց։ Իր ձախակողմը խոռոչ մը նշմարեց հազիւ երկու թիզ լայնութեամբ։*

*— Աս ըլլալու է ժողովարանի ճամբան, ըսաւ և առանց*

նկատի առնելու այն վտանգալից կացութիւնը, որուն մէջ կը գտնուէր, դէպի խոռոչը ուղղուեցաւ։

— Այս գաղտնի կազմակերպութիւնը շատ գէր անդամներ ունենալու չէ իր մէջը մտածեց, որովհետեւ չեն կրնար այս նեղ ճամբէն անցնիլ․․․ բարեբախտաբար ես նիհար եմ։

Ու մթութեան մէջ, կամաց կամաց սկսաւ քալել, չորսուբունակ ձեռքովը շօշափելով երկու կողմի պատերը:

Քանի քայլի չափ առաջացած էր երբոր ստիպուեցաւ կենալ։ Ճամբան գոցուած էր։ Անգլիացին դարձեալ լուցկի մը վառեց և չուրջը դիտեց։ Ժայռերու կոյտի մը մէջտեղ կը գտնուէր։

Յանկարծ ականջ դրաւ։ Խուլ շշնկոց մը կը լսուէր.

— Այո՛, կարծեմ ժողովասրահին մօտ կը գտնուիմ, խորհեցաւ, հաւանօրէն այս քարերուն ետեւ հաւաքուած են․․․։

Ու ա՛լ աւելի ուշադրութեամբ սկսաւ մտիկ ընել։

Խօսքերը չէր կրնար որոշել, սակայն ձայները կը զանազանէր, մանաւանդ յստակօրէն կը լսուէր կնոջ մը ձայն։

— Անշուշտ այն կնոջ ձայնն է, որուն ժայռերուն ետեւ անյայտ ըլլալը տեսայ, վճռեց Մաք Լայն։

Յետոյ, ա՛լ աւելի լաւ լսելու համար, ծռեցաւ բոլորովին ու ականջը գետնին դրաւ։

Այս կերպով յստակօրէն կը լսուէին փոխանակուած խօսքերը բայց Մաք Լայն չկրցաւ բան մը հասկնալ, որովհետեւ թուրքերէն կը վիճաբանէին։

Այսուհանդերձ, բաւական ժամանակ, այսպէս ականջը գետնին դրած մնաց, ինքնիրեն խորհրդածելով։

-- Որոշապէս կը ճանչցուի կոյր կրօնաւորին ձայնը որ ամենէն աւելի կը լսուի․․․ կ'երեւայ թէ կարեւոր բաներ կը հաղորդէ կոյր իր ընկերներուն․․․ բայց ափսո՛ս որ իր բառերուն իմաստը կարող չեմ հասկնալու։ Հետեւինին գտնուող կինն ալ իրենց գլխաւոր անդամներէն մէկը ըլլալ կը թուի․․․ անոր խօսած ատենը միւսները անմիջապէս կը լռեն ու յար-

գանքով մտիկ կ'ընէին կոր... բայց, ճշմարիտը խօսելու համար, շատ ձանձրանալի բան է լսել վիճաբանութիւն մը որմէ բառ մը չես հասկնար...

Լուցկիի մը օգնութեամբ ժամացոյցը նայեցաւ.

— Արդէն իսկ ժամը վեցն է եղեր, խորհեցաւ ինքնիրեն, և այս մարդիկը տակաւին իրենց ժողովը չվերջացուցին... արդեօք գիշերը հո՞ս պիտի անցնեն։

Յետոյ, սկսաւ իր վիճակին վրայ խորհիլ։ Եթէ այդ մարդիկը ո և է ծակէ մը յանկարծ դուրս ելլէին ու զինքը նշմարէին, առաջին գործերնին պիտի ըլլար անշուշտ ղզած տեղն իսկ սպաննել զինքը։

— Եւ ի՞նչ տխմար ապուշի անօգուտ մահ մը պիտի ըլլայ ասիկա ինծի համար, մտածեց տխրութեամբ, հոս, այս ամայի գետնափորին մէջ թաղուած պիտի մնամ և ո՛չ ոք պիտի կրնայ գուշակել թէ Մաք Լայն ինչ եղած է։

Այս հաւանականութիւնը զինքը յուզեց. ո՛չ թէ մահուընէ վախնալուն համար, այլ որովհետև յիշեց իր կինն ու զաւակները, զորոնք Անգլիա ձգած էր և որոնք իրեն կը սպասէին ու պահ մը զղջաց իր անխոհեմութեան ձրայ.

— Լաւագոյն գործ մը տեսած կ'ըլլայի իրենց թաքստոցը հասկնալէ ետքը թողուլ երթալ ու ոստիկաններու խումբով մը վերադառնալով... բայց եղածը եղած է, ու ա՛լ օգուտ չունի ատոր վրայ մտածելը։

Այն ատեն ուրիշ հաւանականութեան մը վրայ խորհեցաւ.

— Ենթադրենք որ, ըսաւ, յաջողիմ այստեղ ծածկուած մնալու և անոնք ալ առանց զիս նշմարելու մեկնին... բայց այն ատեն ալ վիճակս լաւագոյն չպիտի ըլլայ. Նախ որ այս ենթադրութիւնս շատ անհաւանական է քանի որ գտնուած տեղս այնքան նեղ է արդէն որ ծածկուելու միջոց չի կայ, ղայց եթէ նոյնիսկ կարելի ըլլայ այդ բանը, ի՞նչ պիտի ընեմ անոնց մեկնելէն ետքը, պիտի կրնա՞մ թաքստոցին մուտքը բանալու ճար մը գտնելու, եթէ չգտնեմ, հոս բանտարկուած

պիտի մնա՞մ անօթի ծարաւ ու չարաչար մաշուամբ մը մեռնիմ, հազար անգամ աւելի անտանելի կերպով... Չէ՛, չէ՛, վայրկենական մահը լաւագոյն է։

Յանկարծ նոր գաղափար մը մտքին մէջ շողաց·

— Եթէ ներկայութիւնը ես ինքս յայտնեմ իրենց, միթէ լաւագոյնը չէ՞...։ Բայց ի՞նչ կերպով... պոռա՞մ թէ պարզապէս րէվոլվէր մը պարպեմ...։

Մաք Լայն հետզհետէ փարեցաւ այս գաղափարին։

— Այո՛, կրկնեց ինքնիրեն, պէտք է հոս ըլլալս յայտնեմ իրենց, այս կերպով կամ կը յաջողիմ կեանքս փրկել գուցէ և կամ գոնէ ժամ առաջ ճակատագիրս կը վճռուի։

Մաք Լայն երբ որոշում մը տար այլեւս կ'ուզէր զայն իսկոյն գործադրել։

Առանց դեդեւելու, րէվոլվէրը հանեց գրպանէն, յետոյ լուցկի մը վառեց, որպէսզի լոյս աչքով չորս բոլորը տեսնէ և րէվոլվէրին բերանը ուղղելով դէպի այն ցած ուղին, ուրկէ մինչեւ հոն յառաջացած էր, ըլթակը քաշեց։

Լոյսը շողաց ու ահագին պայթում մը լսուեցաւ։

Անգլիացին ամենայն պաղարիւնութեամբ րէվոլվէրը ձեռքին մէջ բռնած՝ սպասեց և ականջ դրաւ։ Խօսակցութիւնը դադրած էր ու ո և է ձայն չէր լսուեր։

— Ապահովաբար պայթումին ձայնը իմացան, ըսաւ Մաք Լայն,

Քանի մը բոպէ անցաւ։ Անգլիացին միշտ անշարժ, շունչը բռնած, րէվոլվէրը ձեռքին մէջ կը սպասէր։

— Արդեօք անգամ մըն ալ պարպե՞մ րէվոլվէրը, խորհեցաւ ու տուփը հանելով կրկին լուցկի մը վառեց։

Հազիւ թէ լուցկին, բռնկած ու աղօտ լոյս մը սփռած էր չուրջը, յանկարծ երկու հուժկու բազուկներ իր թեւերուն պլլուեցան, զինքը անշարժութեան դատապարտելով։

Միեւնոյն բոպէին Մաք Լայն զգաց որ իր ոտքերուն չուան մը կ'անցնէին։ Լուցկին մարած էր արդէն, սակայն

այժմ ժայռերուն մէջ բացուածք մը կը տեսնուէր ուրկէ լոյսը կը հասնէր մինչեւ իրեն և այդ լոյսի լուսովը Անգլիացին կըրցաւ նշմարել իր թեւերուն փաթթուող անձը որ նոյնիսկ շոգենաւին մէջ տեսած կրօնաւորն էր: Անգլիացին թէեւ նիհար բայց ջղուտ ու զօրաւոր էր և սակայն չէր կրնար շարժել իր թեւերը որոնք կարծես երկաթէ մամուլի մը տակ սեղմուած էին։

Զգաց որ ընդդիմութիւնը անօգուտ և անկարելի էր․ արդէն երրորդ անձ մըն ալ միացած էր միւս երկուքին և բէվոլվէրը ձեռքէն առնելով զինքը զինաթափ ըրած․ ուստի թոյլ տուաւ որ ուզածնին ընեն։

Երեք մարդիկը, առանց բառ մը արտասանելու, վայրկենապէս կապկպեցին զինքը և երբ տեսան որ այլեւս ո և է ընդդիմութիւն փորձելու անկարող է, ոտքերէն ու թեւերէն բռնելով ներս մտցուցին այն ճեղքուածքէն որ մթութեան մէջ յանկարծ բացուած էր։

Մաք Լայն, հակառակ իր ճգնաժամային կացութեան, րոպէ մը չկորսնցուց ինքզինքը ու պաղարիւնութիւնը պահեց։ Այս տեսակ արկածները իրեն համար սովորական բաներ էին ու գաղտնի ոստիկանի իր երկարատեւ ասպարէզին մէջ ասկէ շատ աւելի դժնդակ վայրկեաններ անցուցած էր։

Երբ ճեղքուածէն անցնելով զինքը գետին դրին, իր շուրջը նայեցաւ։

Իր գտնուած տեղը 4 քառակուսի մէթր մեծութեամբ ու երկու մէթր բարձրութեամբ բաւական լայն տեղ մըն էր և խոշոր լամպայով մը լուսաւորուած էր։ Անկիւնը ամրակուռ երկաթեայ արկղ մը կ'երեւար հազիւ մէկ մէթր մեծութեամբ, իսկ պատերուն տակ շարուած էին քառակուսի ցած աթոռներ․ այս էր այդ ժողովարանին բոլոր կահ կարասին։

Բացի այն երեք անձերէն որոնք զինքը կապկպած ու ներս բերած էին, ուրիշ երեք անձեր ալ կային հոն, որոնց մին կին մըն էր։

Մաք Լայն մտովի ըսաւ։

— Ես հինգ հոգիի ներս մտնելը տեսայ, կ'երեւայ որ մէկ հատը մեր գալէն առաջ ներս մտած էր։

Այս հաշիւը ո և է կարեւորութիւն չունէր այդ միջոցին, սակայն ցոյց կու տար թէ մտքի ի՛նչ հանդարտութեան մէջ էր գաղտնի ոստիկանը։

Թաքստոցին մէջ գտնուող վեց անձերը պահ մը առանձին ու Թրքերէն խորհրդակցելէ վերջ, եկան բազմեցան պատին տակ դրուած ցած աթոռներուն վրայ և կրօնաւորի հագուստով անձը, առաջին անգամ ըլլալով, խօսք ուղղեց կալանաւորին.

— Կարծեմ, ըսաւ ձեզի շոգենաւին մէջ հանդիպեցայ և միասին ալ քանի մը բառ փոխանակեցինք։

— Այո՛։

— Կ'ըսէիք որ նոր հասած օտարական մըն էիք

— Ճիշդ է... դուք ալ նոյնը ըսիք ձեր մասին, եթէ չեմ սխալիր։

— Ի՞նչ ընելու կու գայիք Սկիւտար։

— Շատ հետաքրքիր էք, պարոն, պատասխանեց Մաք Լայն նուրբ ժպիտով մը։

— Դուք ալ չափազանց գաղտնապա՛հ, ըսաւ կրօնաւորը, բայց անօգուտ խօսքերով ժամավաճառ չըլլանք, որովհետեւ վայրկեանը շատ ծանր է... տակաւին մեզի անհասկնալի մնացած դիպուածով մը այնպիսի տեղ մը կը գտնուիք ուր մենէ զատ ոչ ոք իրաւունք ունի մտնելու,..., պէտք է մեզի ձեր ներկայութիւնը բացատրէք, բացարձակ ճշմարտութիւնը խօսելով, հակառակ պարագային՝ կրնաք վստահ ըլլալ որ ասկէ դուրս չպիտի ելլէք ու արեւուն լոյսը յաւիտեան չպիտի տեսնէք։

— Պատրաստ եմ ձեր հարցումներուն անկեղծօրէն պատասխանելու, սակայն պայմանով մը։

— Պայման,... ի՞նչ պայման գոչեց կրօնաւորը զարմա-

ցած այդ մարդուն պաղարիւն յանդգնութեան վրայ որ իր գտնուած դիրքին մէջ պայման կը դնէր խօսելու համար։

— Այո՛, պայմանաւ որ ոտքիս ու թեւերուս կապերը թուլցնէք ու միջոց տաք ինծ աթոռի մը վրայ նստելու... պառկած դիրքով ու անշարժութեան դատապարտուած չեմ կրնար խօսակցիլ... այս պայմանը դնելով մի կարծէք որ ձեզի խաղ մը խաղալ կ'ուզեմ ու փախչելու կամ դիմադրութիւն փորձելու միտք ունիմ... եթէ փախչիլ կարենայի՝ ներկայութիւնս իմացնելու համար բէվոլվէր չէի պարպեր ու կ'առնէի կը քալէի, իսկ գալով դիմադրութեան, հիմա որ զինաթափ եղած եմ, վեց հոգիի դէմ դնելու յիմարութիւնը չպիտի գործեմ երբեք... ուստի եթէ կ'ուզէք որ խօսիմ, կապանքներս թուլցուցէք ու թոյլ տուէք որ աթոռի մը վրայ կարենամ նստիլ. հակառակ պարագային բառ մը չպիտի արտասանեմ։

Մաք Լայն այս խօսքերը ըսաւ այնպիսի վճռական ու կորովի շեշտով մը որ յայտնապէս կ'երեւար թէ իր խօսքը պիտի պահէր։

Վեց անձերը իրենց մէջ կարճ խորհրդակցութիւն մը ընելէ ետքը, կրօնաւորը ըսաւ։

— Լա՛ւ, կը հաւանինք ձեր փափաքին։

Եւ իսկոյն մօտենալով կալանաւորին քով, ոտքերուն կապերը թուլցուց։ Մաք Լայն այժմ կրնար սրունքները ազատօրէն շարժել։

— Շնորհակալ եմ, ըսաւ ոտքի ելլելով ու աթոռի մը վրայ նստելով. այժմ պատրաստ եմ ձեր հարցումներուն պատասխանելու։

— Ի՞նչ ընելու կու գայիք Սկիւտար, հարցուց կրօնաւորը:

— Այս թաքստոցը փնտռելու, պատասխանեց Մաք Լայն։

Պատասխանը այնքան անակնկալ էր որ հոն գտնուողները զարմացական ակնարկ մը ուղղեցին իրարու։

— Ուրեմն նախապէս ծանօ՞թ էր ձեզ այս տեղը, քանի որ ա՛յնքան դիւրաւ կրցաք գտնել։

— Չէ, բայց բարեբախտաբար շատ դիւրաւ առաջնորդ մը գտայ։

— Ո՞վ էր այդ առաջնորդը:

— Դո՛ւք։

Կրօնաւորը այս խօսքին վրայ ցնցուեցաւ և կալանաւորին նայեցաւ բարկաճայթ ակնարկով մը, բայց Մաք Լայն առանց այդ ակնարկէն ազդուելու, ըսաւ.

— Արդեօք ինձ ալ ներելի՞ է ծխել, քանի որ պարոնը իր սիկառէթը վառեց.

Եւ գլխովը ցոյց տուաւ ակնոցաւոր երիտասարդ մը որ արդարեւ սիկառէթ մը վառելով կը ծխէր։

Կրօնաւորը առանց պատասխանելու ոտքի ելաւ, կալանաւորին մօտեցաւ, անոր աջ թեւը բոլորովին քակեց ու գրպանէն սիկառէթ մը հրամցնելով վառեց։

— Օլ րայթ, ըսաւ Անգլիացին գոհ դէմքով մը, այժմ շարունակենք մեր խօսակցութիւնը:

— Կ'ըսէք որ ես եղայ ձեր առաջնորդը, խօսք առաւ կրօնաւորը իր տեղը վերադառնալով, ձեր այս խօսքը քիչ մը մութ է և հաւանօրէն ըսել կ'ուզէք թէ արդէն իմ ետեւէս ինկած էիք, գիտնալով որ այստեղ պիտի գամ։

— Բնաւ երբեք, ձեզի շոգենաւին մէջ միայն հանդիպեցայ դիպուածով ու առաջին անգամ ըլլալով և կը յիշէք անշուշտ որ դուք եկաք իմ քովս նստելու և ո՛չ թէ ես ձեզ մօտեցայ։

— Իրաւ է, բայց այդ պարագային ինչպէս կրցաք գուշակել թէ այս թաքստոցը պիտի գայի։

— Ձեր անխոհեմ ընթացքէն ու այն քանի մը բառերէն որոնք իրարու հետ փոխանակեցինք շոգենաւին մէջ։

Այս խօսքերը զոր ամենաքնական շեշտով մը արտասանած էր Մաք Լայն, բուռն տպաւորութիւն մը յառաջ բերին հոն գտնուողներուն մէջ և ամէնքը իրենց ակնարկը յառեցին կրօնաւորին վրայ, յանդիմանական ձեւով մը։

Կալանաւորը նշմարեց իր խօսքին յառաջ բերած ազդեցութիւնը և ինքնիրեն խորհեցաւ։

— Կ'երեւայ որ բոլոր հոս գտնուողներն ալ Ֆրանսերէն կը հասկնան կոր… ուրեմն գործս զարգացած մարդերու հետ է, ինչ որ այս պարագայիս բախտաւորութիւն մը կրնայ համարուիլ։

— Ի՞նչ են այն անխոհեմութիւններս որոնցմէ օգտուեցաք, հարցուց կրօնաւորը։

— Նախ, պատասխանեց Մաք Լայն, Իտալացի կրօնաւորի զգեստ կը կրէք առանց Իտալացիի հնչում ունենալու, երկրորդ՝ իբրեւ մէկ օրէ ի վեր Պոլիս եկող մը ցոյց կու տաք ինքզինքնիդ, մինչդեռ շոգենաւերու ժամանակացոյցին վրայ տեղեկութիւններ ունիք ու Վոսփորի Նաւահանգիստները գոց գիտէք… ու վերջապէս, ըստ ձեր ըսածին, միայն 24 ժամէ ի վեր Պոլիս գտնուելով հանդերձ կարող կ'ըլլաք Սկիւտարի նաւամատոյցը տեղական լեզուով երկար բարակ խօսակցելու կառապանին հետ… ասոնք միթէ բաւական չե՞ն մէկու մը վրայ կասկած հրաւիրելու համար։

— Ենթադրենք որ իմ խօսքերս ու ընթացքս կասկածելի թուեցան ձեզի, բայց ասոր համար պէտք չունէիք իմ ետեւէս գալու և զիս լրտեսելու… այդ ձերը ըրածը գաղտնի ոստիկանի գործ է։

— Եւ ո՞վ ըսաւ ձեզ որ ես գաղտնի ոստիկան մը չեմ ու այնպէս վարուելով պաշտօնս չեմ կատարած։

— Ի՞նչ, կը խոստովանիք թէ գաղտնի ոստիկան մըն էք։

— Բնականաբար կը խոստովանիմ… մարդ պէտք է միշտ ճշմարտութիւնը խոստովանելէ չվարանի։

— Եւ զո՞վ հետապնդելու համար Սկիւտար կու գայիք։

— Ձեզի… այսինքն այն գաղտնի կազմակերպութիւնը որուն ձեռքով գործուած էին կարգ մը սպանութիւններ Գանտիլլիի, Էրէնքէօյի և Զամլճայի մէջ, խորհրդաւոր պարագաներու տակ և որոնց հեղինակները մինչև այսօր կարելի չէր եղած երեւան հանել…։

Մաք Լայնի խօսքերը տեսակ մը սարսափ ազդեցին ներկաներուն։ Երբեք չէին կարծեր որ կալանաւորը այսպէս բացարձակ կերպով իր ո՛վ ըլլալը պիտի յայտնէր։ Իր այս յանդուգն ճշմարտախօսութիւնը ա՛յնքան տարօրինակ թուեցաւ, որ պահ մը կասկածեցան թէ այդ մարդը մտային հաւասարակշռութիւնը կորսնցուցած մէկն էր։

— Բայց ո՞վ էք դուք, ի՞նչ է ձեր անունը, որո՞ւ հաշւոյն կը գործէք, գոչեց կրօնաւորը, յուզումէն դողահար ձայնով մը։

Մաք Լայն հասկցած էր որ իր ըսած խօսքերէն ետքը այլեւս ուրիշ բան չէր մնար իրեն ընելիք այլ եթէ շարունակել նոյն ճամբուն մէջ և ճշմարտութիւնը խօսիլ բացարձակ կերպով։ Համոզուած էր որ այդ մարդիկը զինքը ողջ չպիտի ձգէին, հետեւաբար հարկ չէր տեսներ սուտ խօսելու ստորնութեան։

Նոր սիկառէթ մը վառեց, քանի մը անգամ ուժով քաշեց, մուխը դուրս տուաւ և ըսաւ։

— Անունս Մաք Լայն է և ես Անգլիացի նախկին գաղտնի ոստիկան մըն եմ...։ Տարիներէ ի վեր գործէ քաշուած կ'ապրէի Սկովտիոյ մէջ, իմ ծննդավայրս, կնոջս ու զաւակներուս հետ, երբ անակնկալ կերպով եկան զիս փնտռեցին և առաջարկեցին որ Սուլթան Համիտի ծառայութեան մէջ մտնեմ, ոստիկանական խուզարկութեան մը համար։ Առաջարկուած նիւթական պայմաններն ու խոստումները ա՛յնքան շլացուցիչ էին՝ որ որոշեցի զոհել հանգիստս և վերսկսիլ իմ նախկին գործըս, գոնէ քիչ մը ատենի համար և իսկոյն ճամբայ ելայ Պոլիս գալու։ Երէկ առտու հասայ Պոլիս և արդէն այս իրիկուն, դիպուածին շնորհիւ, կրցայ ինծի յանձնուած պաշտօնը ի գլուխ հանել, այսինքն գտնել այն թաքստոցը ուր հաւաքուած են գաղտնի կազմակերպութեան գլխաւոր անդամները... միայն այս գիւտը այնպիսի ձեւով մը ըրի որ ո՛չ միայն օգուտ մը կարելի չպիտի ըլլայ քաղել անկէ, այլ նոյնիսկ կեանքս ալ վրայ պիտի տամ ապահովաբար։ Միայն թէ իմ գաղտնի ոս-

տիկանի արժանապատուութիւնս գոհացում գտած է և կը պարծիմ յաջողութեանս վրայ… Ինծի համար կարեւորը ձեր թագաւորը կարենալ գտնելս էր, իսկ ձեր ձերբակալումը զիս չշահագրգռեր… Նոյն իսկ կրնամ ըսել որ աւելի գոհ եմ որ գործը այս ուղղութիւնը առաւ… Ես Պոլիս եկած էի հասարակ ոճրագործներ հետապնդելու նպատակով, մինչդեռ հիմա կը տեսնեմ որ խնդիրը քաղաքական յեղափոխական գոյն մը ունի և կը զգամ որ ուղիղ ու արդար դատի մը չեմ ծառայեր Ապտիւլ Համիտի ձեռքին տակ… որուն սակայն խոստացած ալ եմ ձեռքէս եկած ծառայութիւնը անձնուիրաբար մատուցանելու…։ Ինչպէս կը տեսնաք, կեանքիս մէջ առաջին անգամ ըլլալով, հոգեկան դժուարին կացութեան մը մէջ կը գտնուիմ և պայքար մը մը կայ մէջս պաշտօնիս պարտականութեան և խղճի ձայնիս միջև։ Այսպիսի հոգեկան կացութիւն մը Վիքթօր Հիւկօ հրաշալի կերպով պատկերացուցած է ԹՇՈՒԱՌՆԵՐուն մէջ, Ժավէռ ոստիկանին անձին վրայ… բայց անօգուտ խօսքերով ժամավաճառ չըլլանք. ահա՛, բոլոր ըսելիքներս ըսի. այժմ գիտէք թէ ո՛վ է ձեր դէմինը ու ձեզի մէկ բան մը կը մնայ ընելիք՝ այն է վայրկենապէս զիս սպաննել ու այստեղ փոս մը փորելով անոր մէջ թաղել… Ես պատրաստ եմ։

Այս խօսքերը ամենայն հանդարտութեամբ արտասանելէ ետքը, Մաք Լայն նայեցաւ սիկառէթին և տեսաւ որ մարած էր, ուստի լուցկին հանելով զայն վառեց ու սկսաւ ծխել։

Հոն գտնուող վեց անձերը՝ խոր յուզումի մը մատնուած՝ մտիկ ըրած էին Անգլիացիին յայտարարութիւնը։ Երբ խօսքը լմնցուց, իրարու հետ ակնարկ մը փոխանակեցին։ Ի վերջոյ, կինը, որ մինչև այն ատեն բերանը չէր բացած, խօսքը Մաք Լայնի ուղղելով՝ Ֆրանսերէն լեզուով ըսաւ.

— Կը խնդրենք ձենէ որ հաճիք պահ մը մեզ առանձին թողուլ, կարճ խորհրդածութիւն մը ընելու և ձեր մասին որոշում մը տալու համար։

— Ամենայն հաճութեամբ, տիկին, ըսաւ Մաք Լայն

դուրս ելլելով այն ճեղքուածքէն, ուրկէ ներս մտցուցած էին զէնքը։

Հազիւ թէ դուրս ելած էր՝ այդ ճեղքը իսկոյն գոցուեցաւ և կալանաւորը մնաց բացարձակ մթութեան մէջ։

— Մահուանս վճիռը կը պատրաստուի, ըսաւ ինքնիրեն Անգլիացին, հոգ չէ, ես ուզեցի այս բանը և պէտք է անտրտունջ կրեմ պատիժս... բայց այս մարդիկը հասարակ ոճրագործներու չեն նմանիր, հետևաբար կարծեմ չպիտի մերժեն եթէ խնդրեմ իրենցմէ որ մեռնելէ առաջ նամակ մը գրեմ խեղճ կնոջս և անշուշտ յանձնառու պիտի ըլլան զայն իրեն հասցընելու...։

Այս խորհրդածութիւնները ընելէ ետքը, մութին մէջ, քարի մը վրայ կծկտած, գլուխը երկու ձեռքերուն մէջ առաւ և սպասեց։

Ներսը խուլ ձայներ կը լսուէին կրկին ու այդ ձայներուն մէջ Մաք Լայն յստակօրէն կ'որոշէր կնոջ ձայնը, որ ամենէն աւելի ու ամենէն բարձր կը լսուէր։

— Այս կինը, եթէ չեմ սխալիր, գաղտնի կազմակերպութեան հոգին է, վճռեց գաղտնի ոստիկանը։

Բայց վիճաբանութիւնը կ'երկարէր ու զէնքը չէին կանչեր։ Լուցկի մը վառելով ժամացոյցը նայեցաւ. ութուկէսն էր։ Դուրսը մութը կոխած ըլլալու էր արդէն և Մաք Լայն տասներկու ժամէ ի վեր բերանը բան դրած չէր ու կը սկսէր տառապիլ անօթութենէ.

— Շիտակը հաճելի բան չէ մինչև անդիի աշխարհ ճամբորդել պարապ ստամոքսով մը խորհեցաւ տխրութեամբ։

Ձայները կը շարունակէին լսուիլ։ Ինչո՞ւ այդքան երկար կը տևէր վիճաբանութիւնը։ Յայտնի էր որ իր ըրած վճռական յայտարարութիւններէն ետքը, այդ մարդիկը զէնքը չէին կրնար ազատ արձակել.;. ծիծաղելի պիտի ըլլար նաև ենթադ.- որ զէնքը սպաննելու համար խղճահարութիւն կ'ունենային, քանի որ չէին վարանած մինչև այն ատեն ուրիշ սպաննութիւններ գործելու... ուրեմն ինչ հարկ այսքան վիճաբանու-

թեան։ Արդեօք սպաննութեան ձեւին վրայ չէի՞ն կարող համաձայնիլ...

Մաք Լայն սպասելէ յուսահատ՝ կրկին սիկառէթ մը վառեց և ծխել սկսաւ. այս կերպով կը ջանար մոռնալ նաև իր ծարաւն ու անօթութիւնը, որոնք զինքը կը սկսէին տանջել։

Վերջապէս փոքրիկ չընկոց մը լսուեցաւ ու մութին մէջ երեւցաւ ճեղքուածքը որ դէպի քառակուսի խցիկը կը տանէր։ Միեւնոյն ատեն ձայն մը գոչեց ներսէն.

— Պարոն Մաք Լայն կրնաք ներս հրամմել, եթէ կը հաճիք։

Անգլիացին իսկոյն ոտքի ելաւ, հաստատ քայլով մը յառաջացաւ ու անցաւ նեղ ճեղքուածքէն ու խցիկին մէջ հաւաքուած վեց անձերուն դէմը ոտքի կեցած, թեւերը կուրծքին վրայ ծալլած, խրոխտ ու պաղարիւն դէմքով մը ըսաւ։

— Կը սպասեմ ձեր որոշումին։

Պէտք է ընդունիլ որ Մաք Լայն գերմարդկային ճիգով մը միայն կարող կ՚ըլլար այս աննկուն դիրքը պահելու։ Մօտալուտ անխուսափելի մահուան գաղափարը զինքը ներքնապէս կը խռովէր. իր երեւակայութենէն չէր կրնար վանել կնոջը և զաւակներուն պատկերները, որոնք զինքը կը լլկէին։

Հիմա, այդ բոպէին, ուր ըստ իրեն, քանի մը վայրկեան միայն ունէր ապրելիք, մահուան դէմ ըմբոստացումի փափաք մը, անկէ խուսափելու ճար մը կը մտածէր։ Այդ դաւադիրներուն ոտքը իյնալ ու շնորհ խնդրել անոնցմէ, երբեք մտքէն չանցուց։ Անիկա իրեն համար այնպիսի ստորնացում մըն էր զոր գործելու կարող չէր բնաւ և հազար անգամ կը նախընտրէր մեռնիլ քան թէ այդ փորձը ընել։ Կը մնար բռնի ուժով դիմադրութիւնը։ Հիմակ, թէեւ զինաթափ եղած, սակայն ձեռքերն ու ոտքերը ազատ էին, կրնար գոնէ սուղ ծախուիլ, հոն գտնուողներէն մէկուն վրայ յարձակիլ ու անոնցմէ մէկը իր ջղուտ մատներովը խեղդել, վերջապէս գերագոյն դիմադրութեամբ մը և կռուելով մեռնիլ, փոխանակ ոչխարի մը պէս մատաղ ըլլալու։

Բոլոր այս մտածումները վայրկենապէս անցան մտքէն

երբ ներս մտաւ ու յանկարծ իր աչքերը կատաղութենէ չողացին.

Այո՛, իր կեանքը սուղ կերպով վճարել պիտի տար այդ մարդոց ու Մաք Լայն իր մոլեգին նայուածքը պտտցուց դէմը գտնուող վեց անձերուն վրայ, անոնց մէջէն իր զոհը ընտրելու և վրան յարձակելու համար...։

Այդ միջոցին կնոջ սուր ու տիրական ձայնը լսուեցաւ։

— Պարոն Մաք Լայն, ըսաւ մեղմ ու հանդարտ ձայնով մը, լսեցինք ձեր անկեղծ ու անվեհեր խոստովանութիւնը և ըստ այնմ մեր որոշումը տուինք։

— Ի՞նչ է այդ որոշումը, տիկին, արդեօք կրնա՞մ գիտնալ... ինչպէս ըսի արդէն, տօր կը սպասեմ, պատասխանեց Անգլիացին չեչտով մը որ իր ներքին կատաղութիւնը կը մատնէր, թէեւ ամէն ջանք ըրած էր այդ խօսքերը կարելի եղածին չափ հանդարտօրէն արտասանելու համար։

— Երկար խորհրդածութենէ մը ետքը, որոշեցինք ձեզ իբրեւ բարեկամ հիւր մը նկատել և թոյլ տալ որ ազատօրէն մեկնիք. բան կինը նոյն մեղմ չեչտովը:

Այս անսպասելի յայտարարութիւնը այնքան տարօրինակ թուեցաւ կալանաւորին որ պահ մը չփոթեցաւ։ դէմքը խորին զարմացումի արտայայտութիւն մը առաւ և թոթովեց.

— Ինչպէ՞ս, տիկին,... ի՞նչ ըսիք... արդեօք սխա՞լ լսեցի։

— Ըսի թէ որոշեցինք ձեզի ազատ թողուլ և եթէ կը հաճիք մեզ մէկը անմիջապէս ձեզ պիտի առաջնորդէ դէպի այն մուտքը ուրկէ այս գետնափորը մտաք և պիտի օգնէ դուրս հանելու ձեզ, ուրկէ ետքը պիտի կրնաք երթալ ուր որ հաճելի թուի ձեզի։

Այս անգամ կալանաւորը հասկցաւ ինչ որ կ'ըսուէր։ Ամենէն առաջ հասկցաւ թէ կեանքը կը շնորհուէր իրեն, թէ նոյն վայրկեանին հոն չպիտի մեռնէր. և ասիկա, մէկէն, անհուն հրճուանքով մը լեցուց իր բովանդակ էութիւնը։ Աչքերուն մէջ փայլատակող բարկութիւնը յանկարծ մարեցաւ և իր

պաղարիւնութիւնը գտաւ բոլորովին։ Յետոյ, ինքնիրեն մտածեց.

— Կ՚երեւայ որ ինծի գործիք ընել կ՚ուզեն իրենց... արդարեւ շատ ճարպիկ ու խելացի մարդիկ ըլլալ կը թուին... իմ գլուխս իրենց բանի մը չպիտի ծառայէր, մինչդեռ ողջ մնալէս կրնան շատ օգուտներ քաղել։

Մտքի այս խորհրդածութիւնը ընելէ ետքը, Անգլիացին բարձր ձայնով ըսաւ.

— Եւ ի՞նչ պայման պիտի առաջարկէք ասոր փոխարէն... որովհետեւ կը կարծեմ որ իմ կեանքս շնորհելով կ՚ուզէք օգտուիլ անկէ։

Կինը թեթեւ մը ժպտեցաւ և պատասխանեց.

— Ոչինչ... անպայման կը թողունք ձեզ։

Այս առատաձեռն մեծանձնութիւնը յուզեց Անգլիացին՝ որ ըսաւ.

— Եւ ես ալ ի փոխարէն կը խոստանամ վաղն իսկ դառնալ իմ Հայրենիքս, հետս տանելով ձեր Թաքստոցին գաղտնիքը... այս մասին ճենթլմէնի խօսքս կուտամ ձեզ։

Մաք Լայն կ՚ենթադրէր որ գոնէ այս ծառայութիւնը պիտի խնդրէին իրմէ և ինքն իր կողմէ ընծայելով զայն, կ՚ուզէր ինքն ալ իր կարգին անոնց չափ մեծանձն երեւնալ.

Բայց իր զարմացումը ապշութեան փոխուեցաւ։ երբ կինը ամենայն փափկութեամբ ըսաւ.

— Ընդհակառակը մենք կը փափաքինք որ ձեր պաշտօնը հաւատարմաբար շարունակէք Ապտիւլ Համիտի քով։

— Բայց, տիկին, այն ատեն պէտք կ՚ըլլայ որ ձեզ ու ձեր Թաքստոցը մատնեմ իրեն։

— Մատնեցէ՛ք։

— Կը հասկնամ, գոչեց Մաք Լայն, այս Թաքստոցը, որ երեւան ելաւ, բանի մը չի կրնար ծառայել այլեւս. հետեւաբար կրնամ մատնել զայն, քանի որ մէջը ոչ ոք պիտի գտնուի անկէ ետքը... և Ապտիւլ Համիտ ձեռք անցուցած պիտի ըլլայ ապառաժներու մէջ փորուած գետնասրահ մը միայն։

— Կը սխալիք, պատասխանեց կինը, և եթէ հաճիք հինգ

օրէն, այսինքն յառաջիկայ չորեքշաբթի, կէս օրէն ետքը, կըր-կին այցելել այս թաքստոցը, մեզի հոս հաւաքուած պիտի գտնէք, գոնէ մենէ մաս մը... ուրեմն ցտեսութիւն։

— Եւ ես կը հաւաստեմ որ չորեքշաբթի չպիտի գամ ձեզ փնտռելու։

— Ընդհակառակը, ինչպէս ըսի, կը խնդրենք որ ձեզ յանձնուած պաշտօնը լիովին կատարէք և չորեքշաբթի օր գաք մեզ ձերբակալելու... կրնամ նոյն իսկ յայտարարելու որ ասի-կա կրնաք մեր կողմէն իբրեւ պայման մը նկատել ձեզ ազատ թողելու փոխարէն։

Անգլիացին փոխանակուած խօսքերէն ա՛յնքան շփոթած էր որ սկսաւ ինքնիրեն մտածել. «Արդեօք այս մարդիկը պարզա-պէս քիթիս կը խնդան»։

Նոյն բոպէին կինը ներկաներէ ակնոցաւոր երիտասարդի մը դառնալով ըսաւ.

— Հաճեցէ՛ք պարոն Մաք Լայնը առաջնորդել և դուրս հանել թաքստոցէն։

Յետոյ Անգլիացին դառնալով շարունակեց.

— Իմ ըսածներս, ինչպէս կը նշմարեմ տարօրինակ կը թը-ւին ձեզ, սակայն մեր բարեկամը որ ձեզ պիտի ընկերանայ, ամէն բան պիտի բացատրէ և այն ատեն վստա՛հ եմ որ այլեւս տարօրինակ չպիտի համարէք մեր բռնած ընթացքը։ Պարոն Մաք Լայն, շնորհակալ ենք ձեր այցելութենէն և կը յուսանք որ կրկին զիրար տեսնելու հաճոյքը պիտի վայելենք։

Անգլիացին խոնարհութիւն մը ըրաւ ներկաներուն և իր առաջնորդին հետ կը պատրաստուէր դուրս ելլելու, երբ կինը ըսաւ իրեն.

— Կը ներէք, պարոն ձեզի ուրիշ հարցում մըն ալ ու-նինք ընելիք։

— Հրամմեցէ՛ք։

— Մեր այս թաքստոցին կղպանքը կարենալ բանալու հա-մար հարկ էր բանալիին ծածուկ բառը գտնել. ինչպէս յաջո-ղեցաք բանալ։

— Կը խոստովանիմ որ այս մասին բաւական նեղութիւն կրեցի և հարկ եղաւ որ M. և A. գիրերով բոլոր հին ու նոր խօսքերը յիշեմ ու փորձեմ. ի վերջոյ կրօնաւորի զգեստով մէ-

կու մը ձեր մէջ գտնուիլը ինձ ներշնչեց քիչ մըն ալ մեր Ս. Գրքին խօսքերը փորձելու և այսպէսով գտայ Մարան Աթա խօսքը։ Իսկ գալով թէ ինչո՞ւ M. և A. գիրերը ուշադրութիւնս գրաւած էին, այս մասին կարծեմ հարկ չկայ բացատրութիւն տալու... այսպէս ուրեմն եթէ անխոհեմութիւնը գործած չըլլայինք ձեր զոհերուն վրայ այդ գիրերը դրոշմելու, հաւանօրէն տակաւին չպիտի ունենայինք իրարու ծանօթանալու ներկայ պարագաներուն տակ։

— Շնորհակալ եմ ձեր տուած բացատրութենէն, պատասխանեց կինը։ Այժմ կրնաք մեկնիլ։

Մաք Լայն իր առաջնորդին հետ դուրս ելաւ ճեղքուածէն և վայրկեան մը ետքը հասաւ Թաքստոցի մուտքին առջեւ որ յանկարծ ինքնաբերաբար բացուեցաւ, անշուշտ իր առաջնորդին մէկ աննշմարելի հնարքովը և երկուքը մէկէն կրցան դուրս ելլել։

Անգլիացին անյագութեամբ շնչեց դուրսի զով օդը, գետնափորի ճնշիչ մթնոլորտէն ետքը։ Մութը կատարելապէս տիրած էր ամէն կողմ և պայծառ երկինքին երեսը բիւրաւոր աստղեր կը փայլէին։

— Դուք անշուշտ կրկին պիտի վերադառնաք ձեր ընկերներուն քով, ըսաւ Մաք Լայն իրեն առաջնորդող երիտասարդին։

— Ո՛չ պատասխանեց այս վերջինը, ճամբան ամայի է և ձեզի անծանօթ, կ'ուզեմ ձեզ առաջնորդել մինչեւ Սկիւտարի Նաւամատոյցը որպէս զի չմոլորիք..։ արդէն այլ եւս գործ մը չունիմ հոն ու բաց աստի տակաւին խօսելիքներ ունիմ ձեզի, ինչպէս որ տիկինը յայտնեց քիչ մը առաջ։

— Աւելի լաւ, գոչեց Մաք Լայն ուրախութեամբ, որովհետեւ իրաւցնէ քիչ մը դժուարութիւն պիտի կրէի ճամբաս գտնելու համար, ուրեմն երթանք միասին, բայց ի սէր Աստուծոյ, արդեօք կարելի չէ՞ մօտերս ճաշարան մը գտնել... առաւօտեան ժամը ութէն ի վեր բերանս բան դրած չեմ և այժմ ժամը 9ը անցած է։

— Ճաշարան մը գտնելու համար մինչեւ Սկիւտարի Նաւամատոյցը քալելու է։

— Երթանք ուրեմն։

Եւ երկուքը միասին մութին մէջ աներեւոյթ եղան։

## ԳԼՈՒԽ Ե.

# ԵՐԿՈՒ ԶԵՐԹԵՋՈՒՀԻՆԵՐ

*Մեր նախորդ գլխուն մէջ պատմած դէպքերէն երկու օր ետքը, կիրակի մը, Ապտիւլ Համիտ գոհ և զուարթ տրամադրութեան մէջ արթնցաւ արշալոյսին, երբ տակաւին ամէն ոք պառկած էր Եըլտըզի մէջ, ի բաց առեալ Սուլթանին ապահովութեան վրայ հսկելու պաշտօն ունեցող անձերը։*

*Ապտիւլ Համիտ քանի մը օրէ ի վեր գտած էր իր հանդարտութիւնը, մանաւանդ Մաք Լայնի բացարձակ յայտարարութիւնը թէ՝ մինչեւ շաբաթ մը երեւան պիտի հանէր գաղտնի կազմակերպութիւնը, իրեն յոյս և ապահովութիւն ներշնչած էին և այժմ ինքնիրեն կը մտածէր թէ ինչ սոսկալի պատիժ պիտի սահմանէր իր հանգիստը վրդովելու յանդգնող այդ անձերուն համար։*

*— Այս Անգլիացին եթէ վստահելի հետք մը գտած չըլլար, թեթեւօրէն այսպիսի յանձնառութեան մը տակ չէր մըտնէր, կը մտածէր ինքնիրեն. հետեւաբար կրնամ գրեթէ ապահով ըլլալ թէ քանի մը օրէն անձիս ու պետութեանս դէմ դաւաճանող այդ չարագործներէն մէկ քանին և գուցէ ամէնքն ալ ձեռք պիտի անցնին... զիրենք խոստովանցնելէ ու ամէն բան տեղն ի տեղօք հասկնալէ ետքը, լաւագոյն միջոցն է այդ անձերը գաղտուկ կերպով խեղդել տալ, որպէս զի խնդիրը չիմացուի ու միտքերը չգրգռուին... նոյն իսկ իրենց դիակները պէտք է անյայտացնել...։*

*Ահա՛ այս տեսակ մտածումներով իր միտքը կը զուարթացնէր Ապտիւլ Համիտ առտուն կանուխ արթնցած միջոցին...։*

— Բայց ահա՛ Մաք Լայն պալատէն մեկնելէն ի վեր երկու օր անցաւ ու տակաւին իրմէ ո և է լուր մը չստացանք, մտածեց յանկարծ, պէտք է որ հասկնանք թէ ի՛նչ կ'ընէ այդ մարդը և թէ իր խուզարկութիւնները որքա՛ն առաջ տարած է...։

Եւ իր անկողնին քով. պատին վրայ գտնուած ելեկտրական զանգակի կոճակին դպաւ։

Իսկոյն դուռը բացուեցաւ և պեխերը ներկուած ծերունի մը երևցաւ դրան սեմին վրայ, բարև բռնած։

– Գնա՛ և Իզզէթ փաշան արթնցո՛ւր և անմիջապէս ըսէ՛ որ ինծի գայ, հրամայեց:

Մարդը անյայտ եղաւ և գնաց կայսերական հրամանը կատարելու։

Իզզէթ փաշա երբ իր տիրոջ քով եկաւ. Աբտիւլ Համիտ արդէն իսկ ելած ու հագուած, կը սպասէր։

— Իզզէթ, ըսաւ իր սիրականը տեսնելուն պէս, ի՞նչ լուր Մաք Լայնէն... ահա՛ երկու օր եղաւ որ Եըլտըզէն մեկնեցաւ և կենդանութեան նշան մը չի տար։

— Բայց վեհափառ, ինք ըսաւ որ եթէ մեզի պէտք ունենայ՝ անմիջապէս դիմում պիտի ընէ, քանի որ լուր մը չըտուաւ, կը նշանակէ որ առանց մեր օգնութեան պէտք ունենալու իր գործը առաջ կը տանի։

— Այո՛, բայց ես կ'ուզեմ որ գոնէ հեռուէն հետեւինք իր գործունէութեան, որպէսզի վստահ ըլլանք թէ այդ մարդը մեզ չի խաբեր։

— Այս մասին, վեհափառ տէր, կարծեմ բացարձակ վըստահութիւն կրնաք ունենալ իր վրայ.., իր բռնած ընթացքէն դատելով կրնանք ըսել որ պարոն Մաք Լայն շատ ուղղամիտ, խղճահար և անկեղծ մէկն է... Եթէ մեզի խաբել ուզէր, երբեք այս կերպով չէր վարուէր ու պալատէն չէր հեռանար։

— Ինչ որ է, ես կը փափաքիմ որ այսօր օր իսկ իր մասին տեղեկութիւն մը առնեմ և ջանամ հասկնալ թէ ի՛նչ ըրած է երկու օրէ ի վեր։

Իզզէթ փաշա վարանոտ կերպարանք մը առաւ և կմկմաց։

— Սակայն, վեհափառ տէր, ձեր այս փափաքը որքան ալ նուիրական ըլլայ ինծի համար, պէտք կը զգամ խոնարհաբար դիտել տալու որ շատ դժուարին պաշտօն մը կը յանձնէք ինծի և չեմ գիտեր թէ կարող պիտի ըլլա՞մ ձեր վեհափառութեան հրամանը կատարել։

— Ինչո՞ւ համար, հարցուց Ապտիւլ Համիտ, ղայրացկոտ շեշտով մը։

— Որովհետեւ այս վայրկեանիս չեմ գիտեր թէ ո՛ւր կը գտնուի Մաք Լայն։

— Ի՜նչպէս, մեկնած ատեն իր հասցէն չթողո՛ւց...։

— Ո՛չ, միայն ըսաւ թէ մեզի պէտք ունեցած ատեն դիմում պիտի ընէ։

— Մինչեւ իրիկուն կ'ուզեմ որ հասկնաս իր ո՛ւր ըլլալը, ըսաւ բռնաւորը վճռական շեշտով մը։

Սուլթանին սիրական քարտուղարը հասկցաւ որ այլ եւս կարելի չէր ոեւէ դիտողութիւն ընել և պատասխանեց.

— Գլխուս վրայ, Վեհափառ Տէր։

— Այս իրիկուն որոշ տեղեկութեան մը կը սպասեմ։

— Ձեր հրամանին կը հպատակիմ, Վեհափառ Տէր։

Եւ Իզզէթ փաշա մէկ մէկ քանի անգամ ամենախորին խոնարհութիւններ ընելով՝ դուրս ելաւ Ապտիւլ Համիտի քովէն, բուռն շփոթութեան մը մատնուած, որովհետեւ չէր գիտեր թէ ի՛նչ միջոցով պիտի կրնար գոհացնել իր խստապահանջ տէրը։

ՎԵՐՋ ԱՌԱՋԻՆ ՀԱՏՈՐԻՆ

# ԱՊՏԻՒԼ ՀԱՄԻՏ ԵՒ ՇԵՐԼՕՔ ՀՈԼՄՍ



## ԵՐԿՐՈՐԴ ՀԱՏՈՐ

# ԱՊՏԻՒԼ ՀԱՄԻՏ
## ԵՒ
# ՇԷՐԼՕՔ ՀՈԼՄՍ

ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ՊԱՏՄԱԿԱՆ ՎԷՊ



ԳՐԵՑ

ԵՐՈՒԱՆԴ ՕՏԵԱՆ



## ԵՐԿՐՈՐԴ ՀԱՏՈՐ





Կ. ՊՈԼԻՍ
XՅXX
Տպագրութիւն Ռ. ՍԱԳԱԵԱՆ



# ԱՊՏԻՒԼ ՀԱՄԻՏ ԵՒ ՇԷՐԼՕՔ ՀՈԼՄՍ

## ԵՐԿՐՈՐԴ ՄԱՍ

## ԹՈՒՐՔ ՀԵՐՈՍՈՒՀԻ ՄԸ

### ԳԼՈՒԽ Ա.

### ԵՐԿՈՒ ՉԷՐՔԷԶՈՒՀԻՆԵՐԸ

*Ապտիւլ Համիտ իր սիրական պաշտօնեային այս պատուէ-րը տալէ ետքը, հրամայեց որ առջի գիշերուընէ ի վեր Եըլ-տըզի պալատը հասնող ժուռնալները բերեն իրեն,*

*Իր ծերունի պահապանը ափսէի մը վրայ կուտակուած գոց պահարաններու դէզ մը ներկայացուց իրեն:*

*Ապտիւլ Համիտ էթիւլի մեքենայէն ելած այդ ափսէն սե-ղանի մը վրայ դնել տուաւ: Ինքն ալ սեղանին քով թիկնա-թոռի մը մէջ բազմեցաւ և ըստ բախտի ափսէին մէջէն քա-շեց առաւ պահարաններէն մէկը, ինչպէս մարդ վիճակահա-նութեան թիւ մը կը քաշէ սափորակի մը մէջէն:*

*Պահարանին վրայ ո և է հասցէ չէր գրուած, ինչ որ ցոյց*

կուտար թէ ուղղակի Սուլթանին անձին ուղղուած էր ժուռ-նալը։

Ապտիւլ Համիտ դողահար ու կասկածոտ ձեռքով մը պատ-ռեց պահարանը եւ սկսաւ կարդալ.

«Երեք օրէ ի վեր Եգիպտոսէն Պոլիս հասած է Պարսկաս-տանի հիւպատոսին կինը որ հայուհի մըն է (հոս գրուած էին հիւպատոսին ու կնոջ անունները զորս զանց կ'ընենք յիշատա-կել)։ Այս կինը արդէն իսկ տեսակցած է Հայոց Պատրիարքին հետ ու հոս հասնելէն ի վեր այցելութիւններ կ'ընէ ու փոխա-դարձաբար ինքն ալ այցելութիւնները կ'ընդունի իր գտնուած պանդոկը։ Կը կարծուի թէ մասնաւոր պաշտօնով մը եկած է հայ յեղափոխական գոմիթէներուն կողմէ եւ թէ դաւադրու-թիւն մը կը պատրաստէ Ձեր բարձր Վեհափառութեան Թան-կագին կենաց դէմ։ Իմաստուն անօրինութիւն մը պիտի ըլլայ այդ վտանգաւոր կինը ժամ առաջ մայրաքաղաքէն հեռա-ցընել։»

— Այս ինչ սարսափելի բան, գոչեց Ապտիւլ Համիտ, որուն գոյնը նետած էր ժուռնալը կարդացած միջոցին, նորէ՛ն դաւադրութիւն անձիս դէմ... այո՛, իրաւունք ունի, պէտք այդ վտանգաւոր կինը հեռացնել Պոլսէն, յայտնի է որ գէշ նպատակով մը եկած է հոս...։

Ապտիւլ Համիտ անգամ մըն ալ ժուռնալը ուշի ուշով կարդալէ ետքը, սեղանին վրայ դրաւ եւ ուրիշ մը առաւ ափ-սէին մէջէն.

«Երէկ Մ... փաշային կինը որ Նշանթաշիի կողմը կը բը-նակի, Կալաթա-Սարայի բաղնիքը գնաց լուացուելու, ինչ որ կասկածելի կրնայ ըլլալ; քանի որ Նիշան Թաշի բնակողի մը համար աւելի բնական է Ֆէրիքէօյի բաղնիքը երթալ։ Բայց ասոր հինգ ժամ մնաց բաղնիքին մէջ եւ նոյն միջոցին Հ... փաշային կինն ալ նոյն բաղնիքը մտաւ լուացուելու եւ գրեթէ իրարմէն մէկ ժամ տարբերութեամբ ելան բաղնիքէն։ Յիշեալ կիները բաղնիք գտնուած միջոցին Թօքաթլեանէն ծրար մը

բերել տուն, որուն մէջ ի՛նչ գտնուիլը կարելի չեղաւ որոշապէս հասկնալ, թէեւ բերող ծառան ըսաւ թէ չոքոլա ու փաստայ կը պարունակէր այդ ծրարը։ Պարտք կը զգամ սոյն տեղեկութիւնները Ձեր վեհափառութեան բարձր ուշադրութեան ներկայացնել։»

— Այս տեղեկութիւնները թէեւ կարեւորութիւն չունին, այսուհանդերձ պէտք է վարձատրել ժուռնալճին, մտածեց Ապտիւ Համիտ, որովհետեւ կրնայ օր մըն ալ կարեւոր բան մը հաղորդել... սակէ զատ աչքէ հեռացնելու չէ այդ երկու փաշաները որոնք թէեւ արտաքուստ հաւատարիմ ցոյց կուտան ինքզինքնին, սակայն կրնան գաղտնապէս ինծի դէմ դաւել...։

Ապտիւլ Համիտ ափսէին մէջէն երրորդ ժուռնալ մը առաւ.

«Երէկ Արդարութեան Նախարար Ապտիւրրահման փաշա, Բ. Դուռ գացած միջոցին, ճիշդ կամուրջին մէջտեղը յանկարծ կառքը դարձնել տուաւ եւ իր բնակարանը դարձաւ, ուր կէս ժամ մնալէ ետքը, դարձեալ կառք նստաւ եւ Բ. Դուռ գնաց։ Նախարար փաշային այս անակնկալ վերադարձը կասկածելի նկատելով՝ կը փութամ հաղորդել Ձեր բարձր Վեհափառութեան»։

— Ի՞նչ կը նշանակէ կէս ճամբէն դուն վերադառնալը, ըսաւ ինքնիրեն Ապտիւլ Համիտ. արդարեւ այդ բանը կասկածելի կը թուի ինծի...։

Եւ թուղթը սեղանին վրայ դնելով ուրիշ մը առաւ եւ շարունակեց ընթերցումը։

«Երէկ ցերեկուան մօտ խիստ տարօրինակ եւ անբացատրելի դէպք մը պատահեցաւ, զոր հարկ կը համարիմ Ձեր բարձր Վեհափառութեան հաղորդել։ Արդարութեան Նախարար Ապտիւրրահման փաշա երբ բնակարանէն մեկնելէն ու կամուրջին վրայ հասնելէ ետքը, յանկարծ կառքը կեցուց եւ փոխանակ ճամբան շարունակելու եւ Բ. Դուռ երթալու, իր բնակարանը գնաց կրկին ուր 30-40 վայրկեան մնալէ ետքը, դար-

ձեալ կառք նստաւ և գնաց Բ. Դուռ։ Նախարարը շատ յուզ-ուած վիճակ մը ունէր տուն վերադարձած ատեն, բայց երբ կրկին կառք նստաւ հանդարտած կ'երեւար։ Նախարարին այս անսովոր ընթացքը, խիստ կասկածելի թուելով Ձեր ծառային պարտք համարեցի քննութիւն մը բանալ հասկնալու համար թէ ինչո՞ւ յանկարծ կէս ճամբէն ետ դարձած էր, բայց այս մասին ոչ ոք կրցաւ որոշ բացատրութիւն մը տալ։ Բնակարանի մարդիկ ըսին միայն որ փաշան յանկարծ անհանգստութիւն մը զգացած ըլլալով՝ կառապանին հրամայած էր կառքը ետ դարձնելու, բայց բացատրութիւնը գոհացուցիչ չէր, քանի որ տուն գալէն քիչ ետքը փաշան կրկին մեկնեցաւ և բնաւ հիւանդի կերպարանք չունէր։ Նշմարեցի նաև որ փաշան երկրորդ անգամ դուրս ելլելուն իր հագուստները փոխած էր։ Բոլոր այս արտասովոր պարագաները ա՛լ աւելի ծանր կասկածներ յարուցին մտքիս մէջ և ուզեցի մանրամասնօրէն ամէն բան տեղեկագրել Ձեր բարձր Վեհափառութեան։»

— Իրա՛ւ որ Ապտիւլրահմանի այս ընթացքը զիս չափազանց կը զարմացնէ և պէտք է որ խնդիրը անմիջապէս լուսաբանել տամ, ըսաւ Ապիւլ Համիտ, մտատանջ երեւոյթով մը։

Յետոյ Արդարութեան նախարարին վերաբերեալ երկու ճուռնալները խնամով մէկ կողմ դրաւ և նոր գոց պահարան մը առաւ ափսէին մէջէն։

— «Ծանր վտանգ մը կը սպառնայ ձեր բարձր վեհափառութեան, կ'ըսէր այս նոր ժուռնալը, և պարտք կը համարիմ այս մասին ձեր բարձր ուշադրութիւնը հրաւիրել։ Իբրև թէ դպրոցական պարգևաբաշխութիւններ կատարելու պատրուակին տակ, այս օրերս հաւաքումներ կը կատարուին հայ եկեղեցիներու և դպրոցներու մէջ, որոնց կը նախագահէ նաև Օրմանեան Պատրիարքը։

«Այդ հաւաքումներուն մէջ որոնք ձեր բարձր վեհափառութեան թանկագին կենաց համար աղօթքներով կը սկսին, իրենց մեղապարտ խորհուրդները ծածկելու համար, դաւա-

*դրութիւններ կը սարքուին թէ՛ ձեր վեհափառ անձին և թէ ձեր մեծազօր կայսրութեան դէմ։ Դպրոցական տղաք զանազան երկդիմի երգերով ու բանախօսութիւններով ներկաները յեղափոխութեան կը գրգռեն և իրենց այս ընթացքը ծափահարութիւններով կը քաջալերուի։ Ուսուցիչները, երբ թէ քիմիագիտութեան դաս տալու համար, իրենց աշակերտներուն պոմպա պատրաստել կը սորվեցունեն և մաթեմաթիքի պատրուակին տակ՝ զինուորական վարժութիւններ ընել կուտան անոնց։ Նոյնպէս աշակերտներու թոշակի անունով հաւաքուած դրամները կը ղրկուին Լոնտոնի և Ժընեւի քոմիթէներուն։ Վերջապէս կարելի է ըսել որ Կ. Պոլսոյ բոլոր հայ վարժարանները մէյմէկ յեղափոխական վառարաններ են, որոնք ակն յայտնի կերպով կը գործեն, շնորհիւ անոնց նկատմամբ ցոյց տրուած ներողամտութեան»։*

*— Աստուա՛ծ իմ, ո՞ր մէկուն հաւատալու է, գոչեց Աբտիւլ Համիտ յուսահատօրէն, որո՞ւ վստահելու է, որո՞ւն խօսքին հաւատալու է, ի՞նչ բան պէտք է արգիլել և ի՞նչ բան պէտք է արտօնել... ամէնէն անմեղ երևոյթին տակ մարդիկ կարող են դաւել... եթէ կարելի ըլլար միջոց մը գտնել ամենուն մաքէն անցածը կարդալու համար, իրա՛ւ որ պետութեանս բոլոր բնակիչները լուսանկարի գործիքին առջևէն անցնել կուտայի... Բայց այն ատենն ալ գուցէ հարկ ըլլար երեսուն միլիոն բնակիչներուն ալ բնաջինջ ընել...։*

*Բռնաւորը դողահար ձեռքով ժուռնալը մէկ կողմ դրաւ և կը պատրաստուէր ափսէին մէջէն նոր պահարան առնելու, երբ յանկարծ սրահին դուռը բացուեցաւ։*

*Աբտիւլ Համիտ սարսափահար ոտքի ելաւ, ձեռքը տանելով իր լայն վերարկուին գրպանը ուր կը գտնուէր լեցուն րեվոլվէրը և զայն շեշտակի ուղղեց դէպի դուռը։ Բայց տակաւին կրակ չըրած, ներս մտնողը արդէն գետին փռուած էր։*

*Բռնաւորին սարսափին ու րեվոլվէրը անմիջապէս գրպա-*

նէն հանելուն պատճառը այն էր որ ո՛չ ոք իրաւունք և արտօնութիւն ունէր Սուլթանին առջեւ երեւալու առանց իր գիտութեան և հրամանին ։ Եւ երբ մէկը փորձէր այդ կանոնին դէմ գործելու՝ կրնար ապահով ըլլալ որ ողջ դուրս չպիտի ելլար սուլթանին քովէն ։

Եւ սակայն այս անգամ Ապտիւլ Համիտ, առանց րէվոլվէրը գործածելու, գրպանը դրաւ և առաջին յուզումը անցնելէ ետքը, վազեց դէպի գետնին փռուած մարմինը ։

Ներս մտնողը կին մըն էր ։

— Տիկարա, ի՞նչ եղաւ, ի՞նչ ունիս, հարցուց բռնաւորը գորովալից ու մեղմ ձայնով մը որ հակապատկեր կը կազմէր իր դէմքին խոժոռ արտայայտութեան հետ ։

— Շնո՛րհ, շնո՛րհ, կը խնդրեմ ձենէ, տէ՛ր իմ, մրմնջեց կինը իր իրանը բարձրացնելով գետնէն ու ծունկի վրայ գալով, . . . ներում կը հայցեմ իմ այս համարձակութեանս համար ։

— Բայց ըսէ՛ ի՞նչ ունիս. ինչու այսչափ յուզուած ես, հարցուց Ապտիւլ Համիտ նոյն գգուական ձայնով ։

Ու փութաց զայն գետնէն վեր վերցնելու և թիկնաթոռի մը մէջ հանգչեցնելու ։

Այն որուն բռնակալը Տիկարա անունը տուած էր, հրաշալի գեղեցկութեամբ մանկամարդ կին մըն էր, հազիւ քսան տարեկան ։ Իր խոշոր սեւ աչքերը, երկար թարթիչներով, սուրբ մը փորձութեան մատնելու չափ գգլխիչ արտայայտութիւն մը ունէին ։ Կեռասի կարմրութեամբ իր փոքր ու հեշտասէր շրթունքը կարծես համբոյրներու հպումին համար ստեղծուած էր միայն ։ Թեթեւ ու թափանցիկ շղարշին ներքեւէն կ'երեւային իր կուրծքին ու թեւերուն ձիւնաթոյր միսերը, իրենց ամբողջ թարմութեան մէջ ։

Ապտիւլ Համիտ զայն թիկնաթոռի մը մէջ հանգչեցնելէ ետքը, պահ մը հիացիկ դիտեց Աստուծոյ այս չքնաղ հրաշակերտը որ իր սեփականութիւնն էր ։ Մանկամարդ գեղեցկու-

նին, իր շփոթութեան և յուզումին մէջ, ա՛լ աւելի հրապուրիչ ու ցանկալի կը թուէր և սուլթանը արդէն իսկ իր ներսիդին կը զգար հեշտամոլութեան սարսուռը և ինքունքը կը դողդղային ցանկութեան հրայրքէն։

Տիլարա որ գերմարդկային ճիգով մը կրցած էր, հակառակ խիստ կանոնին, դուռը բանալ և իր տիրոջ առջև երեւալ առանց հրամանի, իր կրած յուզումներուն սաստկութենէն ջղային տագնապի մը մատնուեցաւ և սկսաւ արտասուել։

Բանտարը ջանաց հանդարտեցնել զայն, մազերն ու երեսը շոյել, մխիթարական խօսքեր ուղղել, բայց ի զո՛ւր. խեղճ աղջիկը փոքրիկ աղու մը պէս կը հեծկլտար շարունակ, կուրծքը վեր վեր ցայտեցնելով ու առանց բառ մը կարենալ արտաբերելու։

Ապտիւլ Համիտ քալի սենեակը գնաց և վայրկեան մը եաքը վերադարձաւ, ձեռքը փոքրիկ սրուակ մը բռնած որ հոտաւէտ ատար մանկափի կնոջ։ Այս հեղուկը անմիջապէս բարերար ազդեցութիւն մը ըրաւ և գեղուհիին ջիղերը հանդարտեցան, բայց արցունքի կաթիլները այտերէն վար կը հոսէին տակաւին։ Ապտիւլ Համիտ թաշկինակը հանեց և արցունքները սրբեց, հայրական հոգածութեամբ մը, յետոյ աթոռի մը վրայ, անոր քով նստելով, մանկամարդ գեղուհիին աղուոր մատները իր չոր ու ջղուտ ձեռքերուն մէջ առնելով շոյեց զանոնք ու ըսաւ։

— Հիմա որ հանդարտեցար, պատմէ՛ նայիմ քու յուզումիդ պատճառը։

Գեղուհի աղջիկը իր Վեհափառ տիրոջ ցոյց տուած բարեացակամութենէն ու գուրգուրանքէն բոլորովին հանդարտած երանութեամբ իր գեղեցիկ աչքերը վեր առաւ և հրեշտակային ժպիտ մը իր դէմքը պայծառացուց։ Յետոյ, շնորհալի շարժումով մը իր տիրոջ ձեռքը բռնեց և զայն իր շրթունքներուն մօտեցուց։

— Խօսէ տեսնեմ ինչո՞ւ կուլաս, ո՞վ քեզի ցաւ պատճառեց, հարցուց կրկին Ապտիւլ Համիտ որ ժուռնալները բոլորովին մոռցած, միմիայն մանկատի աղջկան այս անակնկալ այցելութեամբը զբաղած էր։

— Ո՞վ կրնայ ինծի միշտ կամ ցաւ պատճառել երբ իմ Տէրս զիս աչքէ չի ձգեր, պատասխանեց Տիկարս իր դողնակուր ձայնովը։

Բայց այս խուսափողական պատասխանը չգոհացուց Սուլթանը որ այս անգամ, թէեւ միշտ փաղաքուշ, սակայն կէս մը հրամայական շեշտով ըսաւ.

— Խօսէ՛, կ'ուզեմ ամէն բան հասկնալ- պէտք չէ որ ինծէ բան մը պահես, ինչու այս առտըճան յուզուած էիր ներս մըտած ատենդ։

— Հաւատացէ՛ք, վեհափառ տէր, որ եղածը մեծ բան մը չէ և եթէ վայրկենապէս յուզուեցայ ու խռովեցայ, այժմ ամէն բան մոռցայ իմ մասին ձեր ցոյց տուած բարեացակամութենէն ետքը, որուն արժանի չեմ։

— Լաւ ուրեմն, եթէ կ'ուզես իմ բարեացակամութեանս բոլորովին արժանի ըլլալ, անկեղծօրէն խօսէ՛ ու պատմէ՛ ամէն բան...

— Հայրս ապտակեցին, հեկեկաց դեռատի աղջիկը, երկու ձեռքերովը երեսը ծածկելով։

— Ո՞վ ապտակեց, հարցուց Ապտիւլ Համիտ։

— Ալպուս պէյը...

— Գուշակեցի որ գործին մէջ նախանձի խնդիր մը կայ, գոչեց Ապտիւլ Համիտ։

Ալպուս պէյ Ապտիւլ Համիտի սիրական չերքէզուհիներէն մէկուն հայրն էր և շնորհիւ իր աղջկան հմայիչ գեղեցկութեան որմէ կախարդուած էր Ապտիւլ Համիտ, մեծ ազդեցութիւն կը վայելէր պալատին մէջ։ Չերքէզուհին որ Պէլքիս կը կոչուէր և որ անթերի գեղեցկութեամբ օժտուած կին մըն էր,

երկար ատեն բացարձակ կերպով տիրած էր Համիտի սրտին՝ առանց ուրիշ ոսոխուհիի մը:

Բայց ահա օր մը Ուղուն Եալայէն չէրքէզուհի մը բերած ու ընծայացուցած էին Սուլթանին, որուն աչքերուն արտասովոր գեղեցկութիւնը առաջին վայրկեանէն թրթռացուցեր էր ծերունի Սուլթանին սիրտը: Այս նոր չէրքէզուհին Տիլարան էր:

Այսպէս Համիտ ո՛չ թէ միայն զայն իր շնորհներով ողողեր էր, այլ նաև մասնաւոր պատիւներու արժանացուցեր էր այդ գեղանի չէրքէզուհին իրեն ընծայացնողը որ իր պալատականներէն Զիա փաշան էր, այն որ դեռ վերջերս թիկնապահ անուանուած էր և որուն արագ յառաջացումը պատմեցինք մեր վէպին առաջին գլուխներուն մէջ:

Այս նոր չէրքէզուհիին մուտքը պալատին մէջ, ուր եկած օրէն պատուոյ տեղը գրաւած էր, նախանձով ու ատելութեամբ լեցուցած էր Պէյքիսի հոգին: Նոյն ատելութիւնը կը զգար նաև չէրքէզուհիին հայրը Ասլան պէյ, որուն ունեցած ազդեցութիւնը կը նուազէր այն չափով որով իր աղջկան հմայքը կը պակսէր Սուլթանին քով:

Խուլ պայքար մը կը մղուէր այսպէս Զիա փաշայի պաշտպանութեամբ Եըլտըզի պալատը մտած մանկամարդ ու գեղանի աղջկան դէմ, սակայն Տիլարա որ իր գեղեցկութեան չափ բարի և ուղղամիտ արարած մըն էր, երբեք չէր փորձեր իր դէմ ցուցուած հակառակութեան և ատելութեան նոյն զէնքերով պատասխանելու: Ընդհակառակը միշտ կը ջանար ազնիւ ու վեհանձն ընթացք մը ունենալ իր հակառակորդին հանդէպ, որ ա՛լ աւելի կը կատղէր այդ մեծարանութենէն:

Ու կամաց կամաց Պէյքիսի սրտին մէջ ատելութիւնը այն աստիճան սաստկացած էր որ չէր կրնար իր ոսոխուհիին հանդուրժել առանց աչքերէն կատաղութեան ցոլքեր արձակելու: Ամբողջ օրեր կ՚անցընէր վրէժխնդրական ծրագիրներ յղանալով իր բախտաւոր մրցակիցին դէմ, որ սակայն կը շարունակէր վայելել արքայական շնորհները:

Եւ ահա՛ օր մը Տիլարա փափաք զգաց իր ծնողքը տես-
նելու և իր այս փափաքը յայտնեց իր վեհափառ տիրոջ:

Աբտիւլ Համիտ անմիջապէս մասնաւոր պալատական մը ղրկեց գեղանի աղջկան ծննդավայրը՝ Ուզուն Եայլա, որպէս զի անմիջապէս իր հայրն ու մայրը գտնեն ու արժանավայել պատիւներով Պոլիս բերեն:

Սակայն, ափսո՜ս, երբ պալատական պատգամաւորը հա-
սաւ գիւղը, աղջկան մայրը արդէն քիչ ատենէ ի վեր մեռած էր և ստիպուեցաւ միայն հայրը հրաւիրելու որ իրեն ընկերանայ:

Տիլարայի ծերունի հայրը, Հասան աղա, վաթսուն տարե-
կան չէրքէզ մը էր, վայելչահասակ ու տակաւին կորովի էր մարմնով: Բաց օդի ու ազատ կեանքի մէջ ապրելու վարժը-
ւած՝ դժկամակութեամբ ընդունեց պալատական պատգամա-
ւորին հրաւէրը և նոյնիսկ առաջին անգամ մերժեց պարզա-
պէս, ըսելով որ աղջիկը եթէ կարօտցած էր կրնար գալ իրենց գիւղը և հոն կարօտը առնել:

Սակայն պատգամաւորին և իր շուրջը գտնուած բարե-
կամ չէրքէզներու ստիպումները ի վերջոյ յաղթեցին իր դժկա-
մակութեան և Հասան աղա որոշեց Պոլիս գալ, սակայն պայ-
մանաւ մը միայն.

Ուզած ատենը ազատ պիտի ըլլայ գիւղը վերադառնա-
լու, ըսաւ:

— Այս մասին քու բացարձակ ազատութիւնդ կ՚ապա-
հովեմ, պատասխանեց պալատականը:

Եւ ահա՝ Աբտիւլ Համիտէ անձնական հիւրի մը վայել պատիւներով ծերունի չէրքէզը հասաւ Եըլտըզի պալատը:

Հօր եւ աղջկան առաջին տեսակցութիւնը շատ սրտայոյզ եղաւ: Տիլարա իր ծնողքէն բաժնուած էր, կամ աւելի ճիշդը ըսելու համար իր ծնողքին ձեռքով վաճառուած էր, երբ հազիւ տասներկու տարեկան մանկուհի մըն էր ու անկէ ի վեր ո և է տեղեկութիւն չունէր անոնցմէ: Մօրը մա-
հը զոր հարկ եղաւ իմացնել իրեն խորապէս ցնցեց զինքը:

Իսկ ծերունի Չերքէզը իր աղջկան փառքէն շլացած՝ ինքզինքը երազի մէջ կը կարծէր։

Հասան աղայի գալուստը և Ելտըզը պալատին մէջ հաստատուիլը նոր ու ա՛լ աւելի ուժգին հարուած մը եղաւ Պէլքիսի ու մանաւանդ անոր հօրը Ալպաս պէյի համար։ Տկարա Պէլքիսի տեղը գրաւեր էր արքայական անկողնին մէջ ու ահա՛ այժմ Հասան աղա կը՛ սպառնար Ալպաս պէյի տեղը գրաւելու պալատին մէջ։

Արդէն իսկ Ելտըզի մէջ կը խօսուէր թէ մօտ օրէն Հասան աղա Աբտիւլ Համիտի անձնական ծառայութեան մէջ կարեւոր պաշտօնի մը պիտի կոչուէր և այս եղելութիւնը ա՛լ աւելի բորբոքած էր Ալպաս պէյի նախանձն ու ատելութիւնը։

Եւ ահա՛ նոյն առտուն՝ Ելտըզի նրբանցքներուն մէկուն մէջ, քինախնդիր չէրքէզը հանդիպած էր իր ոսոխին՝ Հասան աղայի։ Ատելութեամբ լեցուն նայուածք մը ուղղած էր անոր որ պատասխանած էր արհամարհական քմծիծաղով․ ասիկա բաւ եղեր էր փոթորիկը պայթելուն։

Ալպաս պէյ կատաղի վագրի մը պէս խոյացեր էր ծերունի չէրքէզին վրայ և հետզհետէ քանի մը շառաչուն ապտակ տեղացեր էր անոր երեսին, անլուր հայհոյանքներու տարափով մը։

Հոն գտնուողները փութացեր էին բաժնելու երկու ոսոխները, մինչ Ալպաս՝ կատաղութենէ կուրցած՝ իր դաշոյնը քաշեր էր և կը ջանար ծերունիին կողը մխել զայն։

Ծերունի Հասան աղա իր կրած նախատինքին հանդէպ, ինքն ալ ինքզինքը կորսնցուցած էր ու դիմած իր զէնքերուն անոնցմով վրէժը լուծելու համար։

Սակայն արդէն երկու ոսոխները իրարմէ հեռացուցուած էին ու կատաղութենէ փրփրած՝ ուղղակի վազեր էր իր աղջկան քով ու եղելութիւնը պատմելէ ետքը, աւելցուցեր էր թէ նոյն վայրկեանէն իսկ պիտի հեռանար Ելտըզէն, որպէս

զի կարենար՝ իր անձնական հաշւոյն՝ իրեն դէմ եղած անլուր
թշնամանքին վրէժը լուծել։

Տիգրան իր ծերունի հօր պատմութենէն ինքն ալ ծայ-
րայեղօրէն յուզուեցաւ, չէրքէզուհիի իր երիտասարդ արիւնը
եռաց և առաջին անգամ ըլլալով վրէժխնդրութեան խօսքեր
դուրս պոռթկացին իր աղւոր կեռասագոյն շրթունքներէն։

— Քու ծերունի հայրդ բերել տուիր իր գիւղէն որպէս զի
ասանկ նախատինքներո՞ւ ենթարկուի, կը գոչէր Հասան աղա
կատաղութենէ թրթռացող ձայնով մը։

Տիգրան իր հայրը քիչ մը հանդարտեցնելէ ետքը, իսկոյն
ոտքի ելաւ ու առանց իր ըրածին հետևանքներուն վրայ եր-
կարօրէն խորհելու և միմիայն վայրկենական տպաւորութենէն
մղուած, ուղղուեցաւ այն յարկը ուր կը գտնուէր Աբտիւլ
Համիտ և որ կայսերական հարէմին մասը կը կազմէր։

Ճամբան ո՛չ մէկը զինքը արգիլել փորձեց, որովհետև
Աբտիւլ Համիտի նախընտրելին բացառիկ դիրք մը կը վայե-
լէր պալատին մէջ ու կանանոցին մէջ ամէնքը ստիպուած էին
խոնարհելու անոր ամէն քմահաճոյքներուն դիմաց։

Սուլթանին գտնուած սենեակին դրան առջև ընդդիմու-
թեան բախեցաւ։

Պեխերը ներկած ծեր պահապանը որ հոն կը սպասէր,
զինքը կեցուց։

— Գիտէք որ Նորին վեհափառութեան քով առանց իր
հրամանին մանելը բացարձակապէս արգիլուած է, ըսաւ։

— Այդ արգելքը քեզի չափ ես ալ գիտեմ, պատասխա-
խանեց գեղանի աղջիկը վէս ու հպարտ կերպարանքով մը։

— Քանի որ արգելքը գիտէք, ուրեմն ինչպէ՞ս կ'ուզէք ան-
տեսել կայսերական հրամանին, ըսաւ ծերը ձեռքովը դրան
կղպանքը բռնած։

— Որովհետև պէտք է որ անմիջապէս մեր տէրը տես-
նամ, նոյնիսկ իր անձնական շահուն համար ու ես պատրաստ
եմ կրելու իմ անհնազանդութեանս բոլոր պատասխանատուու-
թիւնը... հասկցա՞ք։

Այս խօսքերը այնքա՜ն խրոխտ ու հաստատակամ շեշտով մը արտասանուած էր մանկատի աղջիկը որ ծերունի պահապանը պահ մը շփոթեցաւ ու ձեռքը դրան կղպանքէն վար առնելով, պատասխանեց։

— Գոնէ շնորհ ըրէք վայրկեան մը սպասելու որպէսզի ձեր գալուստը իմացնեմ... երբոր նորէն վեհափառութիւնը ո և է առիթով մը զիս ներս կանչէ։

Տիլարա որ անհամբերութենէն ու յուզումէն արդէն այլեւս ինքզինք չէր կրնար զսպել, առանց պատասխանելու, ջղուտ շարժումով մը մէկդի ըրաւ պահապանը և դուռը բանալով ներս խոյացաւ։

Մնացածը գիտենք արդէն։

—Լաւ ուրեմն, շարունակեց Աբտիւլ Համիտ, հիմա որ եղելութիւնը ըսիր, պատմէ տեսնենք մանրամասնութիւնները։

Այն ատեն Սուլթանին գեղանի սիրականը սկսաւ մէկիկ մէկիկ պատմել ամբողջ եղածը, ապտակահարութիւնը, հայհոյանքները, իր հօր կրած հրապարակային նախատինքն ու անոր որոշումը պալատէն հեռանալու և իր վրէժը իր ձեռքով լուծելու մասին։

— Եւ ի՞նչ հատուցում կ'ուզես որ ընեմ քու հօրդ, հարցուց Աբտիւլ Համիտ ուշադրութեամբ մտիկ ընելէ ետքը չերքեզուհիին պատմութիւնը։

— Հատուցում մը որ հաւասարի եղած նախատինքին ու կարենայ զայն սրբել, պատասխանեց աղջիկը։

— Կ'ուզե՞ս որ Ալպուսը հեռացնեմ պալատէն։

—Որպէս զի դուրսը աւելի դիւրա՞ւ կարենայ հօրս գլխին փորձանք մը բերել։

— Աքսորե՞լ տամ զինքը։

—Որպէսզի քիչ ժամանակ ետքը աւելի զօրաւոր ազդեցութեամբ ու պատիւներով վերադառնայ պա՞լատ...։

— Բայց ո՞վ պիտի դարձնէ զինքը աքսորէն, ըսաւ Աբտիւլ Համիտ։

— Պէլքիսը, պատասխանեց մանկամարդ աղջիկը, չեշտակի նայելով իր տիրոջ աչքերուն մէջ։

Այդ ակնարկը այնքա՛ն այրող որ զգլխիչ բան մը ունէր որ բանաւորը թեթեւօրէն սարսռաց և ցանկութեան հոսանք մը անցաւ իր բովանդակ էութեան մէջէն։

— Պէլքիսը ի՞նչ ազդեցութիւն կրնայ ունենալ, երբ Տիլարան գոյութիւն ունի, պատասխանեց Ապտիւլ Համիտ, աղջկան ձեռքը բռնելով ու շոյելով։

Այս արքայական գգուանքը աւելի քաջալերեց գեղանի չէրքէզուհին։

— Եթէ Տիլարա իրաւցնէ այդքա՛ն ազդեցութիւն ունենար իր տիրոջ վրայ, ըսաւ չնորհալի ժպիտով մը որ ա՛լ աւելի հրապուրիչ կ'ընծայէր իր վառվռուն աչքերը, այն ատեն Պէլքիս այս պալատին մէջ չէր մնար... բայց քանի որ անիկա հոս է, երբեք չեմ կրնար ես հանգիստ մնալ և ապահով ըլլալ թէ օր մը անոր քմահաճոյքին չպիտի զոհուիմ։

— Ուրեմն կ'ուզե՞ս որ Պէլքիսն ալ իր հօրը հետ Եըլտըզէն դուրս նետեմ։

— Ես իմ տիրոջս խոնարհ ստրուկն եմ և կամք չունիմ, պատասխանեց աղջիկը կեղծաւորութեամբ, ես միայն իմ տիրոջս ուզածին սիրով կը հպատակիմ... և եթէ համարձակեցայ այսչափ խօսիլ, պատճառը ինծի հանդէպ տիրոջս ցոյց տուած մեծանձնութիւնն է...։

Գեղանի չէրքէզուհին այս խօսքերը արտասանած միջոցին այնքա՛ն յուզուած էր որ արցունքի կաթիլներ սկսան հոսիլ իր սեւ աչքերու երկար թարթիչներուն մէջէն, ու վարդագոյն այտերէն յուշիկ յուշիկ վար թաւալիլ։

Ապտիւլ Համիտ այնքա՛ն անձնատուր եղած էր աղջկան հմայքին և այնքա՛ն անոր գեղեցկութեանը ազդեցութեան ենթարկուած, որ չկրցաւ այլեւս ինքզինքը զսպել և գոչեց։

— Ալպուս և իր աղջիկը այսօր իսկ պիտի հեռանան պալատէն։

— Ինչպէս որ հաճոյ կը թուի տիրոջս թո՛ղ այնպէս ըլլայ, ըսաւ Տիլարա յաղթական գոհունակութեամբ մը, և երջանկութեան նշոյլ մը փայլեցաւ իր աչքերուն մէջ։

Տիլարա ոտքի ելաւ և ըսաւ։

— Չեմ ուզեր որ իմ տիրոջս թանկագին վայրկեանները ասկէ աւելի գրաւեմ։

— Գնա՛, աղջիկս, գնա՛ և վստահ եղիր որ քու փափաքըդ կատարուած է ու ալ մի՛ լար, որովհետև չեմ ուզեր որ այդ գեղեցիկ աչքերդ լեղի արցունքներով թրջուին։

Գեղանի չէրքէզուհին կաղէլի մը շնորհալի վէտվէտումներով հեռացաւ իր տիրոջ քովէն, մինչ Ապտիւլ Համիտ յայրատ ակնարկով մը կը հետևէր անոր....

Տիլարա արքայական հարէմին մէջ այն միակ գեղուհին էր որ կրցած էր երկար ատեն անյագ ցանկութեամբ մը վառել իր տէրը։ Ապտիւլ Համիտ որուն մեծագոյն մտահոգութիւնը իր առողջութեան պահպանումն էր, այդ աղջկան քով կը մոռնար ամէն խոհեմութիւն, ամէն չափաւորութիւն։ Իր անձնական բժիշկները, երբեմն քողարկեալ կերպով, հարկ կը համարէին այդ բանը զգացնել իրեն, բայց ի զո՛ւր։ Այն միակ բժիշկը որ քիչ շատ հեղինակութիւն ունէր իր վրայ, և զոր Ապտիւլ Համիտ իր հայրը կանուանէր, հանրածանօթ Մավրոեանի փաշա, արդէն մեռած էր քանի մը տարիէ ի վեր, ու անկէ ետքը ո՛չ ոք կրցած էր Սուլթանին անձին վրայ անոր ունեցած ազդեցութիւնը ի գործ դնել։

Այսպէս, այդ գեղանի աղջկան հանդէպ Ապտիւլ Համիտի ունեցած ծայրայեղ տարփանքը զինքը սկսած էր սպառել և իր անձնական բժիշկները կը տեսնէին որ մօտալուտ էր այն վայրկեանը ուր Համիտ բոլորովին ուժասպառ պիտի իյնար։ Ինքն ալ անշուշտ այս բանը կը զգար ամենէն աւելի, բայց իր երկաթէ կամքը որ այնքան զօրաւոր էր. կը տկարանար ու կը չքանար այս չէրքէզուհիին դէմ...։

Երբ աղջիկը հեռացաւ, Ապտիւլ Համիտ վերադարձաւ

սեղանին քով ու նստաւ իր թիկնաթոռին մէջ և փորձեց շարունակել ժուռնալներու ընթերցումը։ Սակայն Տիլարայի յանկարծական երեւումը, անոր հետ ունեցած խօսակցութիւնը, աղջկան յուզմունքն ու լացը բոլորովին տակնուվրայ ըրած էին զինքը։ Մեքենաբար ափսէին մէջէն պահարան մը առաւ ու բացաւ, սակայն չկրցաւ կարդալ։ Մտածումը, հակառակ իր կամքին, դէպի չերքէզուհին կը սաւառնէր։ Սրտնեղութեամբ թուղթը մէկ կողմ նետեց, յետոյ սկսաւ խորհիլ քիչ մը առաջուան խօսակցութեան վրայ.

— Պէլքիսը ճամբե՛լ պալատէն, ահաւասիկ դժուարին խնդիր մը, ըսաւ ինքնիրեն, Պէլքիս սուլթանուհի մըն է և զաւակներ ունի ինէ... չէ՛ այդ բանը կարելի չէ, պէտք է որ ուրիշ միջոց մը գտնեմ այս խնդիրը ուրիշ կերպ կարգադրելու համար...

Եւ պահ մը Աբտիւլ Համիտ թաղուեցաւ խոր մտածումի մը մէջ։ Յետոյ, կարծես թէ որոշում մը տուած ըլլար, զանգակը հնչեցուց և իսկոյն իր հաւատարիմ պահապանը երեւցաւ դրան սեմին վրայ։

— Ալպուսպէյը հոս կանչէ՛, հրամայեց։

Ապա կրկին ափսէին մէջէն ժուռնալ մը առաւ ըստ բախտի և սկսաւ կարդալ։ Այս ժուռնալին պարունակութիւնը շատ հետաքրքրական էր և սուլթանը խորին ուշադրութեամբ առաջ տարաւ ընթերցումը։ Իր հաւատարիմ լրտեսներէն մին էր գրողը և բացէ ի բաց կ'ամբաստանէր պալատական բարձրաստիճան պաշտօնեայ մը իբրեւ Համիտի անձին դէմ դաւող մը։ Բռնաւորին ճակատը մթագնեցաւ և դէմքը մռայլ արտայայտութիւն մը առաւ։ Գիտնալով հանդերձ որ ժուռնալին մէջ գրուածներն սուտ և շինծու զրպարտութիւններ էին, մտատանջութեամբ համակուեցաւ։

— Եթէ այս գրուածներուն մէկ հատը ճշմարիտ ըլլայ, նորէն սարսափելի բան է, մրմռաց իր ակռաներուն մէջէն և

թուղթը խնամով դրաւ մէկ կողմ, որպէսզի կրկին աչքէ անցընէ։

Նոյն միջոցին դուռը զարնուեցաւ և կասկածոտ Սուլթանը թեթեւ մը սարսռաց, թէեւ գիտէր որ եկողը իր հաւատարիմ պահապանն էր։

— Մտի՛ր, ըսաւ խուլ ձայնով մը։

— Վեհափառ Տէր, ըսաւ պահապանը ներս մտնելով, Ալպուս պէյը դուրսը ձեր հրամանին կը սպասէ կոր...։

— Թո՛ղ ներս գայ.

Քանի մը վայրկեանէն հարուստ զգեստներով մարդ մը ներս մտաւ և դրան մօտ յարգանօք կեցաւ։

— Ալպուս, ըսաւ Սուլթանը խոժոռ ձայնով մը, դժգոհ եմ քենէ։

Եթէ վեհափառ տիրոջս աչքին հաճելի ըլլալու դժբախտութիւնը ունեցայ, պատասխանեց չերքէզը, պատրաստ եմ սիրով անոր հետեւանքը կրելու։

— Ինչո՞ւ կռուեցար ու ապտակեցիր չերքէզ Հասանը, շարունակեց Աբտիւլ Համիտ ձայնը բարձրացնելով։

— Չկռուեցայ իրեն հետ, այլ պարզապէս ապտակեցի, պատասխանեց չերքէզը խորոխտ կերպարանքով մը։

— Բայց գիտես որ ես չեմ ուզեր այդ տեսակ կռիւներ պալատիս մէջ։

— Եթէ Հասանը ապտակեցի՝ ձեր վեհափառութեան անձին համար իմ ունեցած պաշտամունքիս պատճառաւ էր, պատասխանեց Ալպուս պէյ նոյն անխռով կերպարանքով։

— Ի՞նչ ըսել կուզես...։

— Վեհափառ Տէ՛ր, այդ չերքէզը և իր աղջիկը ձեր բարձրութեան դէմ կը դաւեն.

— Ինծի դէ՞մ կը դաւեն մի, գոչեց բռնաւորը յանկարծ ոտքի ցատկելով։

— Այո՛։

— Ապացոյցներ տո՛ւր տեսնեմ...։

— Եթէ ձեր վեհափառութիւնը երկու երեք օր շնորհ ընէ ինծի, կը խոստանամ իր ուզած ապացոյցները տալ։

— Եւ եթէ չկրնաս տալ։

— Այն ատեն գլուխս ձեր վեհափառութեան տրամադրութեան տակ կը դնեմ․․․։

Ալպուս պէյ այս խօսքերը այնքան անձնավստահ ու կորովի շեշտով մը ըսած էր որ Ապտիւլ Համիտ, խռովեցաւ։ Պահ մը, առանց պատասխանելու, շեշտակի չէրքէզին աչքերուն մէջ նայեցաւ, այն հատու նայուածքով որ իրեն յատուկ էր և որմէ շատ անգամ կը դիւթուէին իրեն մօտեցողները։ Ալպուս պէյ սակայն չազդուեցաւ այդ ակնարկէն ու նոյն անսասան շեշտովը կրկնեց․

— Այո՛ Վեհափառ Տէր, ձեր անձին դէմ կը դաւեն այդ թշուառականները և ճիշդ այս բանը գուշակելուս համար չի կրցայ ինքզինքս զսպել երբ այդ ապերախտ վատին հանդիպեցայ ու ապտակեցի․․․ եթէ այս արարքս անհաճոյ եղած է ձեր Վեհափառութեան, պատրաստ եմ ձեր արժանի տեսած պատիժը սիրով կրելու, բայց ամէն պարագային խիղճս հանդարտ է․․․։

— Բայց ինչպէս հարեմին մէջ փակուած այդ աղջիկը ու տակաւին Անատօլուէն նոր Պոլիս եկած ծերունի չէրքէզը կրնան իծի դէմ դաւել և ինչո՞ւ համար․․․։

— Անոնք պարզ գործիքներ են ուրիշներու ձեռք․․․ ահա՛ ճշմարտութիւնը։

— Բացայայտ խօսէ՛ տեսնեմ․․․։

—Վեհափառ Տէ՛ր, ինչպէս ըսի, առնուազն երկու երեք օր պէտք ունիմ որպէսզի կարող ըլլամ իմ խօսքերս անհերքելի ապացոյցներով հաստատելու. այժմ եթէ աւելի խօսիմ, ո՛չ միայն անօգուտ կ'ըլլայ, այլ նաև վնասակար, ուստի ներեցէ՛ք որ լռութիւն պահեմ․․․«

Բանաւորը կրկին չէրքէզին աչքերուն մէջ նայեցաւ ու յե-

տոյ, տեսնելով որ ճար չի կար և թէ այդ մարդը կարելի չէր խօսեցնել հակառակ իր կամքին, ըսաւ.

— Լաւ ուրեմն, քեզի երեք օր պայմանաժամ կուտամ ամբաստանութիւններդ ապացուցանելու, բայց եթէ երեք օր ետքը կարող չըլլաս ըսածներդ հաստատել, այն ատեն չես կրնար ազատիլ ձեռքէս։

— Իմ կեանքս և ինծի հետ աղջկանս կեանքը ձեր Վեհափառութեան տրամադրութեանը ներքեւ կը դնեմ ամենայն սիրով. պատասխանեց Ալպուս պէյ խոնարհութիւն մը ընելով։

— Գնա՛ ուրեմն և քննութիւններդ առաջ տար։

— Պիտի խնդրէի ձեր վեհափառութենէն որ իմ ըրած ծանր յայտնութիւններս ձեր քով գաղտնի մնան, որպէսզի կարենայի անարգել շարունակել իմ քննութիւններս առանց կասկած յարուցանելու։

— Լաւ՛, ինէ զատ ո՛չ ոք պիտի իմանայ։

Ջէրքէզը դուրս ելաւ և Ապտիւ Համիտ խորասուզուեցաւ տագնապալից մտատանջութիւններու մէջ։

Ալպուս պէյ որ տակաւին Սուլթանին չներկայացած իմացած էր Տիլարայի տեսակցութիւնը իր տիրոջ հետ ու անոր յաղթական ու զուարթ մեկնումը արքայական սենեակէն, երբ քիչ ետքը զինքը կանչած էին, անմիջապէս կռահած էր թէ ի՞նչ ընդունելութիւն մը կը սպասէր իրեն։

— Առնուազն զիս աքսորել պիտի տայ, մտածած էր։

Ու անմիջապէս վտանգին առաջքը առնելու միջոցը սկըսած էր փնտռել և որովհետև շատ լաւ կը ճանչնար իր վեհափառ տէրը, շուտով հնարեր էր այդ դաւադրութեան պատմութիւնը որուն շնորհիւ գոնէ մէկ քանի օր ժամանակ կը շահէր։ Եւ քանի մը օր Եըլտըզի պալատին մէջ ուր անակնկալներ իրարու կը յաջորդէին, մեծ դրամագլուխ մըն էր ճարպիկ ու խորամանկ մարդու մը ձեռքին մէջ։

— Երեք օր շահեցանք, ըսաւ Ալպուս պէյ, ինքն ալ յաղթականօրէն դուրս ելլելով Ապտիւլ Համիտի քովէն, երեք

*օրուան մէջ Աստուած ողորմած է... հիմա պէտք է որ անմիջապէս Պէլքիսը տեսնամ ու ամէն անցած դարձածը հաղորդեմ իրեն... Ուզուն Եայլեայէն եկող գերուհի մը կարելի չէ որ ոտնակոխ ընէ Սուլթանուհի մը... ա՛հ, Զիա փաշա, դո՛ւն այս փորձանքը մտցուցիր պալատ ու դո՛ւն պէտք է որ կրես պատիժը...։*

---

## ԳԼՈՒԽ Բ.

## «ԱՄԷՆ ԲԱՆ ՅԱՋՈՂ Է»

*Իզզէթ փաշա իր Վեհափառ տիրոջ քովէն մեկնելէ ետքը, անմիջապէս հետամուտ եղաւ Մաք Լայնը գտնելու, ինչ որ շատ դիւրին գործ մը չէր, որովհետեւ Անգլիացին Ըլտըզը ձգած ատեն չէր ըսած թէ ո՛ւր պիտի երթար սա գերազանց պատճառաւ որ ինքն ալ այն ատեն չէր գիտեր թէ ո՛ւր պիտի հաստատուէր։*

*— Բնականաբար Բերայի մէջ պանդոկ մը գացած է, մտածեց Սուլթանին սիրական քարտուղարը, բայց միթէ իր բուն անունո՞վը իջեւանած է հոն թէ կեղծ անուն մը առած է... հաւանօրէն կեղծ անուն մը առած պիտի ըլլայ եւ այս պարագային ահա՛ գործը կը դժուարանայ։*

*Այս խորհրդածութիւնը կ՚ընէր Իզզէթ փաշա Պէշիկթաշէն կառքով Բերա գացած միջոցին։*

*Պալատականը Բերայի մեծ Փողոցը համնելով՝ նախ սկսաւ այցելել գլխաւոր պանդոկները, Թօքաթլեան, Պրիսթօլ, Բերա Բալաս, օթէլ Քրէօյքըր, օթէլ տը Լօնտրը եւն. եւն. բայց ի*

զո՛ւր, ո՛չ ոք նկարագրուած Անգլիացիին նմանող յաճախորդ մը ունէր երկու երեք օրէ ի վեր։ Յետոյ սկսաւ քննել երկրորդական երրորդական օթէլները, առանց արդիւնքի մը։ Արդէն կէս օր եղած էր ու տակաւին Մաք Լայնի հետքը չէր կրցած գտնել։

Իզզէթ փաշա յուսահատ՝ կառքը կեցնել տուաւ Մեծ Փողոցին վրայ գտնուող Եանիի գարեջրատունը և վար իջաւ ճաշելու համար։

Հաստատութեան սպասաւորները, որ զինքը կը ճանչնային ամենախորին ակնածանքով ընդունեցին ու առաջնորդեցին Սուլթանին անձնական քարտուղարը գարեջրատան լաւագոյն տեղը։

Հազիւ թէ սեղանը շիտկած ու աղանդերները բերած շարած էին, փաշան որ աչքը յառած էր գարեջրատան մուտքի դրան կողմը, ուրախութեան ճիչ մը արձակեց։

Մաք Լայն, բերանը ծխափող մը, ձախ ձեռքը տաբատին գրպանը և աջ ձեռքին մէջ քանի մը լրագիրներ բռնած ներս կը մտնէր, ժպտուն, ինքնագոհ երեւոյթով մը։ Հեռուէն արդէն իսկ նշմարած էր փաշան և ուղղակի դէպի անոր կը յառաջանար։

Ապտիւլ Համիտի սիրական քարտուղարը, որ իր անյաջող փնտռտուքներէն օրտնեղած՝ մտատանջ ու դաժան դէմք մը ունէր, մէկէն զուարթացաւ և երեսին վրայ ուրախութիւնը ճառագայթեց։

— Պարոն Մաք Լայն, գոչեց երբ Անգլիացին իրեն մօտեցաւ ու ձեռքը երկարեց, գիտէ՞ք որ չորս ժամէ ի վեր ձեզ կը փնտռեմ Բերայի բոլոր պանդոկներուն մէջ...։

— Կրնայիք տակաւին չորս օր ալ փնտռել առանց զիս գտնելու... որովհետեւ այլ եւս պանդոկի մէջ չեմ բնակիր։

— Ուրեմն բնակարա՞ն մը վարձեցիք։

— Ո՛չ թէ բնակարան մը՝ այլ կահաւորեալ սենեակ մը վարձեցի հայրենակիցի մը տունը... բայց ասոնք կարեւորու-

թիւն չունիմ, զիս կը փնտռէիք ու անհաւասիկ գտաք, էականը այս է… այժմ կրնա՞ք ըսել թէ ի՛նչ պատճառաւ պէտք զգացիք զիս փնտռելու…

— Անշուշտ, պարոն Մաք Լայն, բայց նախ և առաջ հաճեցէք սեղանակից ըլլալ ինձ, որովհետև կ'ենթադրեմ որ տակաւին չէք ճաշած…։

— Ոչ, չեմ ճաշած և ամենայն սիրով կ'ընդունիմ ձեր հրաւէրը, պատասխանեց նախկին գաղտնի ոստիկանը և գըլխարկը հանելով անդաւորուեցաւ Իզզէթ փաշայի դէմը և անմիջապէս ուիսքի մը ապսպրեց ծառային որ՝ մօտեցած՝ հրամանի կը սպասէր։

— Ձեզ այսքան անձապտրանքով փնտռելուս պատճառը այն է որ, բացատրեց Իզզէթ փաշա, Վեհափառ Տէրս կ'ուզէ գիտնալ թէ ձեր սկսած խուզարկութիւնները ի՛նչ վիճակի մէջ են, թէ կարեւոր հետք մը գտա՞ծ էք և թէ յոյս ունի՞ք յաջողութեան… այս առտու կանուխ զիս իր քով կանչել տուաւ և հրամայեց որ մինչեւ իրիկուն իրեն որոշ պատասխան մը տանիմ… կը յուսամ որ ձեր խուզարկութիւնները յաջող պայմաններու մէջ կը շարունակուին։

Անգլիացին իր առջեւ դրուած ուիսքիի գաւաթը կիսովի պարպեց և չոր ու պաղարիւն կերպով մը պատասխանեց.

— Ոչ՛, խուզարկութիւններս չեն շարունակուիր։

— Ի՞նչպէս, ի՞նչու համար, գոչեց պալատականը զարմացումով։

— Որովհետեւ արդէն խուզարկութիւններս լրացան։

— Լրացա՞ն… առանց արդիւնքի՞ մը։

— Ընդհակառակը կատարեալ յաջողութեամբ։

Այս պատասխանը այնքա՜ն անսովոր թուեցաւ Իզզէթ փաշայի որ չկրցաւ իր զարմանքն ու թերահաւատութիւնը ծածկել, և կասկածոտ դէմքով մը Անգլիացիին նայելով՝ ըսաւ.

— Ճշմարիտը չեմ կրնար հաւատալ որ այսպիսի լուրջ խնդրի մը մասին կատակաբանել ուզէք, այսուհանդերձ ձեր

խօսքերը այնքան տարօրինակ են որ կը սկսիմ կասկածիլ...

— Իսկ ես ամենայն լրջութեամբ ձեզ կը վստահացնեմ որ ԱՄԷՆ ԲԱՆ ՅԱՋՈՂ է..., չեշտեց Մաք Լայն այս վերջին բառերը նշանակալից կերպով մը հնչելով։

— Ուրեմն վեհափառ Սուլթանին ի՞նչ պէտք է որ ըսեմ։

— Բո՛ւն իսկ այս բառերը. «ամէն բան յաջող է»։

— Եւ ի՞նչ կը հասկնաք այս խօսքով։

— Այս խօսքով կը հասկնամ որ այն գործը որուն համար յատկապէս կանչուած եմ, Պոլիս յաջողութեամբ գլուխ ելած է և թէ քանի մը օրէն պիտի կրնամ պաշտօնս աւարտած համարելով՝ մեկնիլ Անգլիա...

— Բայց կարծեմ թէ դուք յատկապէս հոս կանչուեցաք երեւան հանելու համար կարգ մը խորհրդաւոր ոճիրներու հեղինակները որոնք մինչեւ այսօր անծանօթ մնացած են. արդ, այդ մարդոցմէն և ո՛չ մին տակաւին ձեռք անցուած չէ. ուրեմն ի՞նչպէս կ'ըլլայ որ ձեր պաշտօնը աւարտած կը համարէք։

Մաք Լայն որ ուիսքիի երկրորդ գաւաթ մը ապսպրած էր, մէկ քանի ումպ կլլելէ ետքը, պատասխանեց։

— Գիտէք որ Երլարդէն մեկնելէս առաջ՝ սուլթանին ներկայանալով խոստացայ մինչեւ ութը օր այդ մարդիկը յանձնել արդարութեան...։

«Արդարութիւն» բառը արտասանած ատեն Անգլիացին հեգնական աննշմարելի ժպիտ մը ունեցաւ, զոր Իզզէթ փաշա չկրցաւ տեսնել. յետոյ շարունակեց.

— Արդ, դեռ երկու օր անցաւ անկէ ի վեր, ուստի վեց օր տակաւին պայմանաժամ ունիմ. եթէ մինչեւ այդ պայմանաժամին լրանալը խոստումս չկատարեմ, այն ատեն միայն իրաւունք ունիք դիտողութիւն ընելու։

— Ուրեմն կ'ըսէք որ մինչեւ վեց օր այս գաղտնի կազմակերպութեան անդամները պիտի կրնաք ձերբակալել տալ...։

— Այո՛...։

— Եւ ձեր այս որոշ հաւաստումը կ՚արտօնէ՞ք որ իսկոյն սուլթանին հաղորդեմ։

— Այո՛։

Հակառակ Անգլիացիին խրոխտ ու հաստատակամ պատասխաններուն Աբտիւլ Համիտի անձնական քարտուղարը չկրցաւ թերահաւատութեան շարժում մը զսպել։

— Բայց գիտէք որ ամենածանր յանձնառութիւն մը կը ստանձնէք ձեր այդ խօսքերով, ըսաւ իր խօսակցին։

— Բնականաբար... և սակայն՝ ինչո՞ւ չէք ուզեր հաւատալ խօսքիս, եթէ իմ կարողութեանս վրայ հաւատք չունէիք, պէտք չէր որ այնքան հեռուներէն գայիք զիս փնտռէիք ու զիս Պոլիս հրաւիրէիք, իսկ եթէ հաւատք ունէիք, ինչո՞ւ այժմ կը կասկածիք յաջողութեանս մասին։

— Իրաւունք ունիք, պատասխանեց Իզզէթ փաշա, բայց այնքան կարճ միջոցի մը մէջ ձեր յաջողութիւնը այնքան հրաշալի կը թուի ինծի որ....։

— Շէրլօք Հոլմսի համբաւը անարատ պահելու համար պէտք է որ այսպէս ըլլար, եզրակացուց Անգլիացին։

— Արդեօք կրնա՞ք ըսել թէ ո՞ր օր այդ ձերբակալութիւնները պիտի կատարուին, հարցուց պալատականը։

— Յառաջիկայ չորեքշաբթի, կէսօրէն ետքը, պատասխանեց Մաք Լայն ամենայն պաղարիւնով։

— Այսօր կիրակի է, հետեւաբար երեք օրէն։

— Այո՛։

— Այս մանրամասնութիւնն ալ կրնա՞մ հաղորդել վեհափառ Սուլթանին։

— Անշո՛ւշտ։

Անգլիացիին շեշտին մէջ այնպիսի հաստատ ու անձնավստահ շեշտ մը կար որ այլ եւս կարելի չէր ո և է կասկած մը ունենալ այս խօսքերու անկեղծութեան մասին։ Իզզէթ փաշա որ առտուընէ ի վեր խորին մտատանջութեան մը մատնուած էր ու չէր գիտեր թէ իրիկունը ի՛նչ պատասխան պիտի կրնար

տանիլ իր Վեհափառ տիրոջը, այժմ մէկէն գոհ և զուարթ կերպարանք մը առաւ։ Ո՛չ թէ միայն գտած էր Մաք Լայնը, այլ անորմէ քաղած էր այնպիսի տեղեկութիւններ որոնց լուրը ամենամեծ գոհունակութիւն պիտի պատճառէր իր տիրոջը։ Թ[illegible] կ'ուզէր ճաշը աւարտել ու վերադառնալ պալատ յաղթանակօրէն երթալ պատմելու համար Ապտիւլ Համիտին իր քաջագործութիւնները և յաջողութիւնները, իրր թէ այս բոլոր եղածներուն մէջ ինքն ալ դեր մը կատարած ըլլար։

Անձապրանքով ճաշը աւարտեց և յետոյ ըսաւ Մաք Լայնի.

— Ուրեմն ե՞րբ պիտի վայելենք ձեր ներկայութիւնը պալատին մէջ։

— Հաւանօրէն չորեքշաբթի առտու պիտի գամ Եըլտըզ։

— Իսկ մինչեւ այն ատե՞ն։

Մինչեւ այն ատեն իրար տեսնելու պէտք չունինք։

Իզզէթ փաշա սպասաւորը կանչելով հաշիւը մաքրեց և յետոյ սիրալիր բարեւ մը տալով մեկնեցաւ Եանիի գարեջրատունէն և դրան առջեւ իրեն սպասող կառքը բազմելով՝ ուղղուեցաւ դէպի Եըլտըզի պալատը։

Երբ պալատ հասաւ ամէն մարդ, Եըլտըզի մէջ, Ալպուս պէյի ու Հասան աղայի միջադէպովը կը զբաղէր ու անոր վրայ կը խօսէր։ Տիլարայի Ապտիւլ Համիտի քով երթալը և յետոյ Ալպուս պէյի կանչուիլը զանազան մեկնութիւններու տեղի կուտային։ Ամէնքը կ'ենթադրէին որ երեւութապէս աննշան այդ դէպքը մեծամեծ համեմատութիւններ պիտի առնէր և դիւրաւ չպիտի սահմանափակուէր, մանաւանդ որ Ալպուս պէյ Սուլթանին քովէն ելլելէն ետքը, փոխանակ ընկճուած ու յանցաւորի կերպարանք մը ունենալու, ընդհակառակը սկսած էր յոխորտալ և սպառնալիքներ որոտալ աջ ու ձախ։

— Այո՛, կը գոչէր քինախնդիր ու բարկասիրտ չէրքէզը

իրեն մօտեցող ու հետը խօսքի բռնուողներուն, այս պալատին մէջ դաւեր կը նիւթուէին մեր վեհափառ Սուլթանին դէմ, բայց ես երեւան պիտի հանեմ զանոնք, իրենց դիմակները պիտի պատռեմ և թոյլ չպիտի տամ որ մեր վեհափառ տիրոջ դէմ նոյն իսկ իր պալատին մէջ դաւադրութիւններ սարքեն, իր հացը ուտելէ և իր շնորհները վայելելէ ետքը…։

Թէև ոև է անուն չէր արտասանէր Ալպուս պէյ, թէև ուղղակի անձի մը ակնարկութիւն չէր ըներ, այսուհանդերձ ամէնքն ալ կը հասկնային որ այս սպառնալիքները կ'ուղղուէին մասնաւորաբար Թիկնապահ Զիա փաշայի դէմ, այն երիտասարդ պալատականին որ յաջողած էր Սուլթանին սիրելին դառնալ և կարճ ժամանակի մէջ կարեւոր դիրքի մը տիրանալ պալատին մէջ։ Ամէնքն ալ գիտէին որ երիտասարդ պալատականին արագ յառաջացումին ամէնէն աւելի նպաստած էր Տիլարան, զոր, ինչպէս պատմեցինք, ինք բերած և ներկայացուցած էր Ապտիւլ Համիտի ու գեղանի չերքէզուհին ալ ապերախտ չէր գտնուած իր պաշտպանին նկատմամբ և ամէն անգամ առիթը ներկայանալուն՝ իր վեհափառ տիրոջ բարեացակամութիւնը հրաւիրած է Զիա փաշայի վրայ։ Վերջերս նոյնիսկ յանկարծ կայսերական թիկնապահի ցանկալի պաշտօնին բարձրացած էր, ու այս բանը իր վրայ հրաւիրած էր բոլոր միւս պալատականներուն նախանձը, որոնք ձեռքի տակէ կ'աշխատէին ոև է կերպով արատաւորել զինքը ու իր ազդեցութիւնը կոտրել Եըլտըզի մէջ։ Այս պատճառաւ Ալպուս պէյի խօսքերը հաճոյքով կը լսուէին ամենէն ու չերքէզն ալ այս բանը գիտնալով՝ ա՛լ աւելի ուժգին կերպով սպառնալիքներ կը տեղար։

Իզզէթ փաշա, հազիւ թէ իր յատուկ սենեակը քաշուած էր, երբ եկան իրեն իմաց տալու որ Ալպուս պէյ կը խնդրէր հետը տեսակցութիւն մը ունենալ։

— Թո՛ղ հրամմէ, ըսած էր Իզզէթ փաշա իր սենեկապանին։

Քանի մը վայրկեան ետքը Ալպուս պէյ ներս մտաւ։

— Հրամմեցէ՛ք, պէյ էֆէնտի, հաճեցէ՛ք սա թիկնաթոռին վրայ նստիլ, ըսաւ քարտուղար փաշան սիրալիր կերպով, իր գրասեղանին մօտ դրուած թիկնաթոռ մը ցոյց տալով։

Չէրքէզը յարգանքով բարեւեց և ցոյց տրուած տեղը նստաւ։

— Ի՞նչ կայ չկայ տեսնենք, Ալպուս պէյ, ըսաւ Իզզէթ փաշա սիկառէթ մը տալով իր հիւրին։

— Ինչ որ եղաւ արդէն ձեր վսեմութիւնը իմացած է անշուշտ։

— Այո՛, իմացայ որ խնդիր մը ունեցեր էք Հասան աղայի հետ, բայց չիտակը մանրամասնութիւնները չիմացայ, ծայրէն պատմեցէ՛ք տեսնեմ։

Իզզէթ փաշա կը ստէր, ամէն բան մանրամասնօրէն իմացած էր, այսուհանդերձ կ'ուզէր ինքզինքը անգիտակ ցոյց տալ և բո՛ւն իսկ Ալպուսի բերնէն լսել եղելութիւնը։

Չէրքէզը դժկամակութիւն չըրաւ և մանրամասնօրէն պատմեց ապտակահարութեան դէպքը, Տիլարայի Սուլթանին ներկայանալը, յետոյ իր տեսակցութիւնը Ապտիւլ Համիտի հետ և Հասան աղայի և Տիլարայի մասին իր ըրած ծանր ամբաստանութիւնները և իր ըսածները մինչեւ երեք օր ապացուցանելու մասին իր խնդրած պայմանաժամը։

Իզզէթ փաշա խորին ուշադրութեամբ ունկնդրեց այս ամբողջ պատմութեան. յետոյ ծանր ու լուրջ ձեւով մը ըսաւ.

— Ալպուս պէյ կը տեսնեմ որ շա՛տ դժնդակ կացութեան մը մէջ դրած էք ինքզինքնիդ։

— Ինչո՞ւ համար։

— Որովհետեւ բան մը կարող չպիտի ըլլաք ապացուցանել։

— Ինչպէ՞ս, կը կարծէք որ Ձիա փաշա հաւատարիմ մէ՞կն է ու չդաւաճանե՞ր մեր տէրոջ դէմ։

— Խնդիրը անոր հաւատարմութեանը վրայ չէ, խնդիրը այն է որ իր անհաւատարմութիւնը պէտք է ապացուցանել․․

— Բայց ձեր անձնական կարծիքը ի՞նչ է այս մասին։

— Ես ո և է կարծիք չունիմ։

— Կրնա՞ք երդնուլ որ այդ մարդը չի դաւաճանիր։

— Չեմ կրնար երդնուլ՝ բայց հակառակն ալ չեմ կրնար պնդել։

— Ես վստահ եմ որ այս պալատին մէջ ո՛չ ոք Զիա փաշան կը սիրէ ու անոր վրայ համարում ունի։

— Ատիկա բան մը չապացուցաներ։ Ասկէ զատ, կը սխալիս, Ալփուս պէյ, մեր Վեհափառ տէրը Զիա փաշան կը սիրէ ու անոր վրայ համարում ունի և ատիկա բաւ է որ ամէնքս ալ սիրենք ու յարգենք զինքը։

— Բայց մեր Վեհափառ տէրը խաբուած է։

— Նախ պէտք է այդ բանը ապացուցանել․․․։

Ալփուս պէյ չպատասխանեց և պահ մը մտածման մէջ ինկաւ։ Իզզէթ փաշա անշուշտ ամբողջ հոգիով կ'ատէր երիտասարդ Թիկնապահը որ օրէ օր Ապտիւլ Համիտի համակրանքը շահելու վրայ էր և կը սպառնար դերակշիռ դիրք մը գրաւել Ելտըզի մէջ և ինք կուզէր որ ուէ կերպով մը այդ ոսոխը վարկաբեկ ըլլար իր տիրոջ առջև ու այս նպատակին հասնելու համար պատրաստ էր ամէն օժանդակութիւն ընելու և ի հարկին դաւադրութիւններու ալ դիմելու․ այսուհանդերձ ուզեց վարպետութեամբ վարուիլ Չէրքէզին հետ ու անոր ցոյց չտալ իր ներքին բաղձանքները։

— Եւ եթէ ապացոյց մը բերեմ ձեզի, ըսաւ Ալփուս պէյ պահ մը լուռ մնալէ ետքը, այն ատեն կը խոստանա՞ք ինծի աջակցելու․․․։

— Եթէ որ և է ամենափոքր ապացոյց մը կարենաս բերել որ հաստատէ թէ Զիա փաշա հեռուէն կամ մօտէն կը դաւէ մեր Վեհափառ տիրոջ դէմ, բնական է որ իմ պարտականութիւնս է ամէն կերպով աջակցիլ ձեզ և այդ դաւադրու-

թեան հեղինակը խայտառակել, պատասխանեց Իզզէք փաշա, որուն աչքերը ուրախութեամբ շողացին։

— Ճիշդ ձերին այս աջակցութիւնը խնդրելու համար էր որ ուզեցի ձեր վսեմութեան հետ տեսնուիլ, ըսաւ Ալպուս պէյ ոտքի ելլելով։

— Կրնաք վստահ ըլլալ իմ վրաս, միայն թէ ջանացէ՛ք որ յետոյ պզտիկ չմնանք, որովհետեւ այն ատեն աւելի նըպաստած կ՚ըլլանք այդ երիտասարդ բախտախնդրին վարկը բարձրացնելու մեր Վեհափառ տիրոջ քով։

Ալպուս պէյ խոնարհութիւն մը ընելով մեկնեցաւ փաշային քովէն։

Իրիկուան դէմ Սպտիւլ Համիտ լուր ղրկեց իր սիրական քարտուղարին և զայն իր քով կանչել տուաւ։ Իզզէթ փաշա որ ժամերէ ի վեր անհամբեր կը սպասէր այս վայրկեանին՝ յաղթականօրէն փութաց իր տիրոջ քով որուն հաղորդեց Մաք Լայնի հետ ունեցած իր տեսակցութիւնը և անոր տուած խոստումը երկու օրէն դաւադիրները ձերբակալելու մասին։

Սպտիւ Համիտ չափազանց ուրախացաւ այս աւետիսը լսելով և իր գոհունակութիւնը յայտնեց քարտուղարին որ այն, քա՛ն յաջող կերպով կրցած էր ի գլուխ հանել իրեն յանձնըւած պաշտօնը։

— Եթէ չորեքշաբթի օր Մաք Լայն իր խոստումը կատարէ, իրաւցնէ պիտի հաւատամ որ հրաշալի մարդ մըն է եղեր, ըսաւ բռնաւորը։

— Այս մասին ես բոլորովին վստահ եմ, պատասխանեց Իզզէթ, երբեք կարելի չէր աւելի ապահով կերպով խոստում մը ընել...։

— Բայց եթէ հետքերնին կրցած է գտնել, ի՞նչու համար անմիջապէս չէ ուզած ձերբակալել, առարկեց Սպտիւ Համիտ, որ ամէն իրողութեան մէջ կասկածելի կէտ մը գտնէր։

— Մաք Լայն իր գործողութեանց մասին պատմածներէս

դուրս չուզեց ուրիշ բացատրութիւն մը տալ, բայց քաղաքա-վարը:

Բռնաւորը հակառակ իր յայտնած այս կարծիքին՝ դարձեալ շատ ուրախացաւ Իզզէթ փաշայի բերած տեղեկու-թիւններէն:

---

ԳԼՈՒԽ Գ.

## ՁԵՐԲԱԿԱԼՈՒՄ

Աբտիւլ Համիտ իրաւունք չունէր կասկածելու Անգլիացիին հաւատարմութեան վրայ:

Երկու օր ետքը, չորեքշաբթի առտու, Մաք Լայն իր խոստումին հաւատարիմ, եկաւ Եըլտըզի պալատը և անմիջա-պէս ուզեց տեսնել Իզզէթ փաշան:

Համիտի սիրական քարտուղարը անոր ներկայութիւնը իմանալուն պէս՝ հրամայեց որ իր քով հրաւիրեն:

Մաք Լայն ինքնավստահ, գոհ և ուրախ դէմքով մը սեն-եակէն ներս մտաւ, համարձակ քայլերով յառաջացաւ մինչև փաշային քով, որ գրասեղանին մօտ ոտքի կեցած կը սպասէր՝ անոր ձեռքը թօթուեց և ըսաւ.

— Կը տեսնէ՛ք, փաշա, որ ժամադրութիւնս կը յարգեմ և ճիշդ ժամանակին կուգամ:

— Այդ մասին արդէն բացարձակօրէն վստահ էի:

— Եանիի գարեջրատան մէջ այդ բացարձակ վստահու-թիւնը չունէի ձեր վրայ, պատասխանեց Անգլիացին նրբօրէն ժպտելով:

— Այսինքն ձեր յայտարարութիւնները այնքա՛ն տարօրի-
նակ թուեցան որ պա՛հ մը տարակուսեցայ, բայց այդ տարա-
կուսանքը երկար չտեւեց:

— Ինչ որ է, հիմա փակենք այդ խնդիրը եւ աւելի կեն-
սական հոգերու վրայ խօսինք: Ինչպէս գիտէք, այսօր կը
կատարենք մեր փնտռած անձերուն ձերբակալութիւնը:

— Վստա՞հ էք որ վերջին փոյթկոտնին չպիտի յաջողին
փախչիլ, ինչպէս որ պատահեցաւ Ենիի Մահալլէի մէջ:

— Զօրքերս զգուշի ալ սա վստա՛հ եմ որ գիտենք պիտի
գտնենք զան այս պիտի երթանք փնտռելու:

— Եւ ե՞րբ որոշած էք կատարելու այս գործողութիւնը:

— Կէսօրէն ետքը, երկու ժամ, այն փոյթկոտնին որ
գալու պիտի ելլեն իրենց թաքստոցէն . . .

— Ձեր զօրապետը կ'ուզէ՞ք որ անմիջապէս հրաւիրեմ
մեր միհմանդարը այստեղ:

— Ինչպէս որ յարմար կը դատէք: Բայց անհրաժեշտ
պէտք է ձերբակալման մանրամասնութիւնները կարգադրենք:

— Եթէ պէտք ունիք անհրաժեշտ բացատրութեան եւ տեղեկութիւն-
ներու կրնանք ձեր տրամադրութեան տակ դնել:

— Ընդհակառակը կ'ուզեմ որ ամէն բան անոնց անտեղեակ
տանից խուզարկութիւն եւ այլն կը. եւ չարչարանք զգացուա-
ծագոյն չեմ եւ գիտեմ որ բաւական զօրքեր քիչ մարդով ալ
տանից չփախչին կը կատարուին:

— Ինչպէս որ կ'ուզէք, միայն թէ պէտք չէ երկարել-
նելով այս եւ է անխոհեմութեան մը պատճառաւ այդ մար-
դիկը յաջողին իրենց ձեռքը աղատել արդարութեան ձեռքէն:

— «Իրենց ձերբակալումը կ'երաշխաւորեմ», ըսաւ Մազ
Լայն, բանելը հանելի հանդի չեջախելով:

— Ուրեմն ըրէք ինչպէս որ կ'ուզէք, պատասխանեց Իզ-
զէթ փաշա հիացած իր խօսակցին ինքնավստահութեան վրայ:

— Ինծի պէտք է սառնին տար մարդ միայն եւ մէկ
քանի կառք:

— Արդեօք կարելի՞ է հարցընել թէ քանի՛ հոգի են ձերբակալուելիքները ։

— Որոշապէս չեմ կրնար ըսել, սակայն կարծեմ պիտի կրնանք 4—5 հոգի ձեռք անցնել այս անգամ ։

— Իսկ մնացածնե՞րը․․․ ։

— Այդ մասին չեմ կրնար այժմէն գուշակութիւն մը ընել ։

— Ուրեմն ձեզի պիտի տրուին միայն տասնի չափ հաւատարիմ անձեր ։

— Եւ մէկ քանի կառք ։

— Այո՛ ։

— Կարծեմ նոյնիսկ հարկ չի կայ ոստիկանութիւնը գործին մէջ խառնել և հոս, պալատին մէջ, շատ դիւրաւ կարելի է գտնել մեզի պէտք եղած օգնականները, ըսաւ Մաք Լայն ։

— Անշուշտ և նոյնիսկ եթէ հարկ ըլլայ մեր ուզած մարդերուն տասնապատիկը կրնանք գտնել պալատին մէջ ։ Արդ, սիրելի պարոն, ներեցէ՛ք որ երթամ պէտք եղած հրահանգները տալու որպէսզի ամէն ինչ պատրաստ ըլլայ ։ Հաճեցէ՛ք ինծի սպասել այստեղ ։

Իզզէթ փաշա դուրս ելաւ սենեակէն, մինչ Մաք Լայն թիկնաթոռի մը մէջ թաղուելով, սիկառէթ մը վառեց ու սպասեց ։

Կէս ժամէն աւելի տեւող բացակայութենէ մը ետքը Աբտիւլ Համիտի սիրական քարտուղարը վերադարձաւ և ներս մտնելուն պէս ըսաւ․

— Մեր վեհափառ տէրը կը փափաքի ձեզ տեսնել անմիջապէս ։

— Պատրաստ եմ, պատասխանեց Անգլիացին ոտքի ելլելով ։

Աբտիւլ Համիտ սիրալիր ու մտերմական ընդունելութիւն մը ըրաւ Անգլիացիին, առանց հանդիսաւոր արարողութիւն-

ները։ Նոյնիսկ զայն իր քովը նստեցուց և հրամայեց որ սիկալէթ ծխէ, ինչ որ անսովոր պատիւ մըն էր։

Մաք Լայն կրկնեց Սուլթանին ինչ որ արդէն ըսած էր քարտուղարին։

— Եւ ի՞նչ պիտի ընէք այդ մարդիկը ձերբակալելէ ետքը, հարցուց Սպտիւլ Համիտ։

— Ինչ որ ձեր վեհափառութիւնը յարմար տեսնէ։

— Կ'ուզեմ որ ուղղակի զիրենք հոս առաջնորդէք և իրենց նախնական հարցաքննութիւնը պալատին մէջ կատարուի։

— Ձեր հրամանը պիտի գործադրուի։

Պահ մը լռութիւն տիրեց ետքը, կասկածոտ բռնաւորը մտատանջ երևոյթով մը հարցուց.

— Միայն 4—5 հոգի՞ կարելի պիտի ըլլայ ձերբակալել։

— Այսինքն՝ առնուազն 4—5 հոգը... այս թիւը չեմ կրնար որոշ կերպով սահմանել։

— Կը կարծէ՞ք որ դաւադիրները բազմաթիւ են։

— Այո՛, և ենթադրուածէն շա՛տ աւելի բազմաթիւ։

— Ի՞նչ կ'ըսէք, գոչեց Սպտիւլ Համիտ վրդովուած ու մտատանջ երևոյթով մը... և որչափ կը կարծէք որ կը հասնի իրենց թիւը...

— Այդ մասին որոշ բան մը չեմ կրնար ըսել ձեր վեհափառութեան, պատասխանեց Մաք Լայն, բայց սա կրնամ վստահեցնել որ եթէ այսօր ձեր պետութեան մէջ հինգ հազար հոգի կան միայն այս կազմակերպութեան մասնակցող, վաղը անոնց թիւը կրնայ 50,000ի հասնիլ և տարին մը հարիւր հազարի... այս մասին կրնաք ապահով ըլլալ։

— Բայց ուրեմն այդ չորս հոգիին ձերբակալումը բանի մը չպիտի՞ ծառայէ։

— Ընդհակառակը մեծամեծ օգուտներ պիտի ունենայ։

— Ի՞նչ օգուտ, քանի որ հազարաւորներու խօսք կ'ընէք որ պիտի շարունակեն գործել ազատօրէն։

— Սա օգուտը պիտի ունենայ, Վեհափառ տէր, որ մօտէն

պէտի ճանչնաք զիրար ու իրարու միտք պէտի հասկնաք։

Սպատիլ Համլին այս խօսքերուն վրայ հազիւ կրցաւ զըսպել ուրախութեան շարժում մը և դէմքը, որ պահ մը առաջ զուարթ ու գոհունակ արտայայտութիւն մը ունէր, մէկէն մռայլ ու դաժան կերպարանք մը առաւ.

— Կը կարծէք որ այդ մարդոց հետ վիճաբանելու և իրենց գաղափարները հերքելու պէտի զիջանիմ, ըսաւ Անգլիացին նայելով խոժոռ ակնարկով մը։

Մաք Լայն առանց ազդուելու այս ակնարկէն՝ պատասխանեց.

— Երբեք յաւակնութիւն չունիմ ձեր վեհափառութեան խորհուրդներ տալու, այսուհանդերձ եթէ երբեք ձեր վեհափառութեան տեղը ըլլայի՝ պատժելէ առաջ այդ ձերբակալուածները, կը ջանայի իրենց դիտաւորութիւնն ու նպատակը հասկնալ և եթէ պէտք ըլլար գոհացում կուտայի իրենց...։

Այս խօսքերը ո՜րքան տարօրինակ երևցան որ նոյնիսկ Իզզէթ փաշա խոժոռ ակնարկ մը ուղղեց Անգղիացիին։

Սպատիլ Համլին չուզելով այլևս երկարել խօսակցութիւն մը որ իրեն համար բոլորովին անհաճոյ դարձուածք մը կ՚առնէր և միւս կողմէ վախնալով որ գուցէ Մաք Լայնի դժգոհութիւնը կը գրգռէ ճիշդ այն միջոցին ուր իրմէ մեծ ծառայութիւն մը սպասելու հարկին մէջն էր, լաւագոյն համարեց խնդիրը անոյշ տեղը կապել.

— Անօգուտ է, ըսաւ, խօսակցիլ մեր ապագայ ընթացքին վրայ, երբ տակաւին ոչ ոք ձերբակալուած է։ Նախ յանցաւորները գտնանք ու ձերբակալենք ու անկէ ետքը կրնանք որոշել թէ ինչ կերպով պէտի վարուինք իրենց հետ...։ Ուրեմն պարոն Մաք Լայն յաջողութիւն կը մաղթեմ ձեր այսօրուան ձեռնարկութեան համար և կը յուսամ որ պիտի կրնաք զայն յաջողութեամբ ի գլուխ հանել։

— Այդ մասին վստահ եմ, պատասխանեց Անգլիացին խրոխտ ամբարտաւանութեամբ մը։

— Լաւ ուրեմն, և ես ձեզի կը խոստանամ որ ձեր արժանի վարձատրութիւնը պիտի ստանաք մեր կողմէ։

— Իմ մեծագոյն վարձատրութիւնս պիտի ըլլայ ինծի յանձնուած պաշտօնը յաջողութեամբ գլուխ հանելս, պատասխանեց Մաք Լայն։

Այս խօսքին վրայ բռնաւորը կրկին աննշմարելի կերպով յօնքերը պռստեց, և ձեռքի շարժումով մը հասկցուց թէ ունկնդրութիւնը աւարտած էր։

Իզզէթ փաշա և Անգլիացին հեռացան Սուլթանին քովէն և եկան քարտուղարին սենեակը։

— Պարոն Մաք Լայն, ըսաւ Իզզէթ ժպտելով, կը տեսնամ որ երբեք չպիտի կրնաք սորվիլ արեւելեան վեհապետի մը հետ խօսելու կերպը։

— Միթէ նախատական բա՞ն մը ըսի ձեր վեհափառ տիրոջը, պատասխանեց Անգլիացին իր խօսակցին երեսը նայելով շեշտակի։

— Այդ էր պակաս... բայց այն ազատ ու անկաշկանդ ձեւը որով տուած էք մտածումներդ յայտնելու, այնպէս կըրնան վիրաւորիչ համարուիլ արքայական ականջներու համար որոնք միայն գեղանանած շողոքորթութիւններ լսելու վարժուած են։

— Ինչ որ ըսի ձեր սուլթանին խիստ բացարձակ և անկեղծ համարումներս էին և զանոնք իրեն յայտնելով իմ փափաքս էր ծառայութիւն մը մատուցանել... և քանի որ առիթը կ՚ընծայէք, ձեզի ալ հարկ կը համարեմ նոյնը կրկնելու... Եթէ կը կարծէք որ անզգալի փոքրիկ ու աննշան կազմակերպութեան մը դէմ կը գտնուիք որ կարելի պիտի ըլլայ մէկ քանի ձերբակալութիւններով բնաջինջ ընել, չարաչար կը սխալիք... Ինչ որ տեսայ, քննեցի և մանաւանդ գուշակեցի, որ յեղափոխական շունչը անցած է ամբողջ Թուրքիոյ վրայէն ու մէկ ծայրէն միւսը հրդեհած է զայն... ահա՛ իրողութիւնը։ Այսօր. տակաւին կարող չէք բան մը տեսնել, բայց

այն օրն ուր պիտի տեսնէք արդէն շատ ուշ պիտի ըլլայ եւ հրդեհին մէջ գուցէ դուք ամէնքդ ալ պիտի այրիք։

Ապտիւլ Համիտի հաւատարիմ քարտուղարը ահաբեկ նայուածք մը ուղղեց Անգլիացիին վրայ։

— Բայց, պարոն Մաք Լայն, գոչեց, ճշմարիտը խօսելու համար, շատ ահաւոր յայտնութիւն մը կ'ընէք եւ այն եղանակը որով կը խօսիք ենթադրել կուտայ որ եթէ ո՛չ համակիր՝ գոնէ ներողամիտ էք այդ չարագործներուն նկատմամբ։

— Ես ամէն բան կը դատեմ օտարականի ու չէզոքի աչքերով... դուք գուցէ իրաւունք ունիք չարագործներ տեսնելու այդ մարդոց մէջ որոնք ձեր կործանումը կը պատրաստեն, իսկ ես ներեցէ՛ք որ նոյն կարծիքը չունենամ...։

— Ուրեմն ի՞նչ են այդ դաւադիրները ձեզի համար։

— Դատի մը արդարութիւնը համոզուած եւ անոր յաղթանակին համար աշխատող անձնուրացներ, պատասխանեց Մաք Լայն հանդարտ ու յստակ շեշտով մը։

Իզզէթ փաշա յուզումէն պահ մը տժգունեցաւ, յետոյ շփոթ ու վարանած ձայնով մը ըսաւ։

Բայց այդ պարագային ի՞նչպէս կ'ըլլայ որ իրենց ձերբակալութեանը կ'աշխատիք, փոխանակ ձեր աջակցութիւնը նուիրելու իրենց արդար դատին...։

— Սակայն իմ խղճիս վերապահեալ խնդիր մըն է, պատասխանեց Անգլիացին։

Իզզէթ փաշա արդէն շատ դժգոհ էր խօսակցութեան առած ձեւէն եւ կ'ուզէր վերջ մը տալ. այս պատասխանին վրայ ըսաւ.

— Լա՛ւ ուրեմն թողունք որ ամէն մարդ իր խղճին համեմատ գործէ... դուք, ինչպէս ըսիք, օտարական ու չէզոք մըն էք. ու չէք կրնար մեր ներքին կացութեան վրայ ա՛յնքան ուղիղ ծանօթութիւն ունենալ որքան մենք... միայն թէ պարոն կը զգամ յայտնել թէ՝ ինչ որ ըրած էք հեռուէն մեր վնասին առաջ մասին բնաւ չհամապատասխաներ

իրականութեան։ Նորին վեհափառութիւնը բարեխնամ և իմաստուն հայր մըն է իր ժողովրդին համար, և եթէ երբեմն պէտք կը զգայ խստօրէն վարուիլ ապերախտներու դէմ, հաւատացէք որ ակամայ այդ խստութիւններուն կը դիմէ։

Մաք Լայն փոխանակ այս խօսքերուն պատասխան մը տալու, հարցուց.

— Արդեօք այն մարդիկը որոնք պիտի ընկերանան ինծի, պատրա՞ստ են...։

— Այո՛ ձեր հրահանգներուն կը սպասեն որպէս զի իրենց հետ խօսելու համար դժուարութիւն չկրէք. անգլիերէն գիտցող թարգման մըն ալ պիտի ընկերանայ ձեզի... ուրիշ բանի մը պէտք ունի՞ք արդեօք

— Այո՛, մոռցայ ըսելու որ լաւագոյն կ'ըլլայ՝ եթէ մեր տրամադրութեան տակ շոգենաւակ մը ունենանք։

— Շատ լաւ, անկէ դիւրին բան չի կայ... ուրեմն այդ ձեռնարկութիւնը ասիական եզերքին կո՛ղմը պիտի կատարուի...։

— Այո՛ Սկիւտարի բարձունքներու վրայ։

— Կը կարծէի որ այդ ոճրագործներուն բոյնը այդ կողմերն էր, ըսաւ Քարտուղարը

— Ինչո՞ւ կ'ըսէք, պատասխանեց Մաք Լայն ծաղրածու ձեւով մը, ցաւալի էր որ ձեր կասկածը նախապէս չյայտնեցիք ձեր մարդոց, գուցէ կրնային օգտուիլ անկէ և պէտք չէր միայն իմ աջակցութեանս դիմելու։

Իզզէթ զղջաց այս աւելորդ խօսքը ըսած ըլլալուն, սակայն ձայն չհանեց և պահ մը լուռ մնալէ ետքը, ոտքի ելաւ և ըսաւ.

— Ձեզ առանձին կը թողում քիչ մը ժամանակ, ներեցէք որ երթամ մէկ քանի կարեւոր գործերու կարգադրութեան համար, կէսօրին ճաշը միասնաբար այստեղ պիտի ընէք, քանի որ ձեռնարկումը իրիկուան դէմ տեղի պիտի ունենայ։

— Այո՛, հարկ չի կայ ժամը երեքէն առաջ մեկնելու:

Երբ Իզզէթ փաշա դուրս ելաւ սենեակէն, Մաք Լայն սիկառէք մը վառեց և թիկնաթոռի մը վրայ ընկողմանեցաւ, ոտքը ոտքին վրայ դրած.

— Զարմանալի՜ ճակատագիր, ըսաւ ինքնիրեն, արդեօք Թուրքիոյ վերածնութեանը մէջ դե՞ր մը վերապահուած է ինծի համար...:

Կէսօրէն ետքը, երբ մեկնումի ժամը հասաւ, Անգլիացին իր քով կանչել տուաւ անգլիերէն խօսող այն թարգմանը որ իրեն պիտի ընկերանար և ըսաւ.

— Ձեր մարդոցը հետ գացէ՛ք Սկիւտար և հոն նաւամատոյցը սպասեցէ՛ք, միայն թէ չըլլայ որ խմբովին երթաք և ուշադրութիւն գրաւէք:

— Ձեր հրահանգին համեմատ պիտի վարուինք:

— Եւ երբոր զիս տեսնաք չըլլայ որ քովս մօտենաք, այլ հեռուէն հետևեցէ՛ք ինծի:

— Շատ լաւ:

— Ուրեմն ցտեսութիւն:

Մաք Լայն այս հրահանգը տալէ քիչ ետքը առանձին Եըլտըզէն դուրս ելաւ, վարձու կառք մը բռնեց և Պէշիկթաշի նաւամատոյց գնաց, նախապէս պատուէր տալով որ շոգեմակոյկ մը ժամը հինգին միջոցները Սկիւտարի նաւամատոյցը գայ իրենց սպասելու:

Երբ հոնկէ շոգենաւ մտնելով Սկիւտարի նաւամատոյցը ելաւ, առաջին տեսած անձը եղաւ թարգմանը որ անտարբեր երևոյթով մը հոն կը սպասէր և որ իր ընդունած հրահանգին համեմատ, բնաւ չի տեսնելու զարկաւ զինքը:

Մաք Լայն փոխանակ կառք նստելու, ոտքով ուղղուեցաւ Փոսթա Եօլէն վեր, որպէս զի իր հետևորդները կարենան հեռուէն և առանց ուշադրութիւն գրաւելու հետևէն գալ:

Այս կերպով ու արագ արագ քալելով, ժամէ մը հասաւ

*Զամբրձայի բարձունքին այն անկիւնը ուր արդէն անգամ մը եկած էր և որ ծանօթ է մեր ընթերցողներուն։*

*Գրպանէն ժամացոյցը հանեց.*

*— Չորսուկէս, ըսաւ, ինքնիրեն, հաւանօրէն բաւական սխալ տարանք...*

*Նշան ըրաւ իրեն ընկերացող Թարգմանին որ հեռուն կեցած էր որ որպէս զի մօտենայ։*

*— Մարդիկդ, ըսաւ. անոր սա ժայռերուն չորքը հաւաքէ, հոս անցուդարձ չի կայ և ուշադրութիւն դրաւերելու չունին։*

*— Շատ լաւ, պատասխանեց միւսը։*

*Եւ իսկոյն հեռացաւ ընդունած հրամանը գործադրելու համար։*

*Եըլտըզի պալատէն Մաք Լայնի տրուած Թարգմանը որ խելացի և ուսեալ թուրք երիտասարդ մըն էր, չէր կրնար խելք հասցնել Անգլիացիին ընթացքին.*

*— Ինչ զարմանալի բան է այս, կ'ըսէր ինքնիրեն։ ամենակենտրոնական ձերբակալութիւն մը ընելու կ'երթանք ու հոս լեռան մը կողին վրայ կը հաւաքուինք, ուրկէ պէտք կրնանք այդ մարդիկը ձեռք ձգել... ես դեռ կ'ենթադրէի որ տան մը մէջ պէտք գտնէինք զանոնք ու տունը պաշարելով անոնց ներս պէտք մտնէինք... բայց նոյն իսկ [illegible] թեան մը համար պէտք եղած զօրութիւնը չունինք մեր տրամադրութեան տակ... արդեօք այս մարդը պարզապէս մեր քթէն խնդալ կ'ուզէ։*

*Այս խորհրդածութիւնները ընելով հանդերձ Թարգմանը գնաց իր ընդունած հրամանը գործադրելու և այդին անդին ցրուած տասը հոգին հաւաքելու Մաք Լայնի ցոյց տուած ժայռերուն չորքը. յետոյ վերադարձաւ Անգլիացիին քով որ բարձրիկ տեղ մը հողին վրայ նստած էր։*

*— Ձեր հրամանը կէտ առ կէտ գործադրեցի, ըսաւ։*

*— Այո՛, պատասխանեց Մաք Լայն թեթեւ մը ժպտելով, այս անգամ ամէն բան անոյշ... միայն թէ մոռցայ ուրիշ*

պատուէր մըն ալ տալու... բացարձակ կերպով ըսէ այդ մարդոց որ ո և է պատճառաւ երբեք զէնքի չդիմեն։

— Նոյն իսկ եթէ հակառակ կողմէն դիմադրութի՞ւն ըլլայ։

— Այո՛, նոյն իսկ եթէ դիմադրութիւն ըլլայ։

— Նոյն իսկ եթէ անոնք զէնքի՞ դիմեն։

— Նոյն իսկ այդ պարագային պէտք չէ որ զէնք գործածեն, պատասխանեց Անգլիացին վճռաբար։

Թարգմանը այս խօսքերուն վրայ վարանոտ ակնարկ մը ուղղեց իր խօսակցին, ակնարկ մը որ միանգամայն տարակուսանք կը յայտնէր։

— Բայց, թոթովեց, ըսածնիդ շատ տարօրինակ ու անսովոր կը թուի ինծի, ինչպէ՞ս կարելի է զէնքով դիմադրութեան մը նոյն կերպով չպատասխանել, ասիկա պարզապէս մեր մարդիկը մահուան ենթարկել կը նշանակէ։

— Ես ձեզ կը վստահեցնեմ որ երբեք զէնքով դիմադրութիւն չպիտի ըլլայ, պատասխանեց Անգլիացին, հետեւաբար ձեր երկիւղները գոյութեան իրաւունք չունին։

— Այդ տարբեր բան ուրեմն։ Այն ատեն ես ալ խօսք կու տամ թէ մեր մարդիկը երբեք զէնքի չպիտի դիմեն։

Երկու խօսակիցները ելեցին և անգլիացին գրպանէն փոքրիկ գիրք մը հանելով սկսաւ կարդալ, առանց չուրջը ուշադրութիւն դարձնելու։

Երիտասարդը հետզհետէ ա՛լ աւելի տարօրինակ կը գտնէր Մաք Լայնի ընթացքը, որ կարծես ո՛չ թէ կարեւոր ձերբակալումի մը համար այլ պարզապէս օդ առնելու եկած էր Զամբոճայի բարձունքը։

Բաւական երկար ատեն լուռ մնաց նստելէ ետքը, երբ միջոց մը Անգլիացին գիրքը վար դրաւ սիկառէթ մը վառելու համար, Թարգմանը չկրնալով համբերել, հարցուց.

— Ե՞րբ արդեօք պիտի երթանք ձերբակալութիւնները կատարելու։

— Մենք պէտք չունինք երթալ զանոնք փնտռելու, իրենք իրենց ոտքովը կուգան, պատասխանեց Անգլիացին ամենայն պաղարիւնով։

— Հո՛ս, այս լերան կողի՞ն վրայ։

— Այո՛… եթէ այդպէս չըլլար, ի՞նչ հարկ կար գալ այստեղ սպասելու։

Եւ Մաք Լայն փոքրիկ գիրքը գետնէն վերցնելով կրկին թաղուեցաւ իր ընթերցումին մէջ։

Ժամը եօթնին մօտեցած էր և արևը կը սկսէր խոնարհիլ հորիզոնին վրայ, երբ Մաք Լայն ժամացոյցը նայելով գոչեց․

— Կարծեմ այս մարդիկը ուշացան։

— Որո՞նց կը սպասէք, հարցուց Թարգմանը, որ միշտ քովը նստած էր։

— Ձերբակալութիւններուն, պատասխանեց, միւսը, առեղծուածային ժպիտով մը։

Յետոյ ոտքի ելաւ, մօտեցաւ ժայռերուն որոնց չուրջը կծկուած էին իրենց ընկերացող տասը անձերը, զանոնք ա՛լ աւելի իրարու մօտեցուց, կրկին պատուէրներ տուաւ, որպէս զի զէնք չգործածեն և յետոյ ժայռի մը վրայ նստելով՝ գըրքոյկը հանեց գրպանէն և ընթերցումը շարունակեց։

— Այս մարդուն խելքի՞ն եկած է արդեօք, մտածեց Թարգմանը որ չէր կարող բացատրութիւն մը տալ այս եղածներուն։

Մութը արդէն կ'սկսէր տարածուիլ լերան կողին ու շըրջակայ դաշտերուն վրայ։ Մաք Լայն իր գրքոյկը գոցեց անհամբերութեան շարժումով մը ոտքի ելաւ և սկսաւ ժուռ գալ․

— Տարօրինակ բան, կը մտմտար իր ակռաներուն տակէն, ինքնիրեն խօսելով, ժամը գրեթէ ութն է և տակաւին ո՛չ ոք երևան ելաւ, արդեօք զիս խաղի՞ բերին… բայց ի՞նչու համար… եթէ կ'ուզէին չձերբակալուիլ կրնային շատ դիւրաւ զիս մէջտեղէն վերցնել, քանի որ իրենց ձեռքը ինկած էի…

ու չեռայ պէտք չունէին այնքա՛ն երկար ու մանրամասն բա-ցատրութիւններ տալ ինձ իրենց երիտասարդ ընկերոջ ձեռ-քով... Ճշմարիտ փափաք կը՛ զգամ կոր, հակառակ նախա-պէս։ Նշած կարգադրութեան երթալ Թագաւորը բանտը և ներս մտնելու և էջէ կզզանդքին խօսքերը փոխած են մտա-քը խորտակելու. Հետս դառնած անձերը բաւական են այս աշխատութեան համար...

Յանկարծ Թարգմանը իր քով վազեց.

— Անծանօթ մը կայ ժայռերուն մէջ, գոչեց:

— Վերջապէ՛ս, ըսաւ Մաք Լոյն ցոյց տրուած կողմը ուղղուելով:

Երեւցաւ, անձնաւոր երիտասարդ մը, հանդարտ քայլե-րով կը յառաջանար:

Անգղիացիին հրահանգին վրայ, երեք հոգի դէպի այդ անծանօթ մարդուն գացին և քովը մօտեցան: Նոյն միջոցին հոն հասան նաև Թարգմանը և Անգղիացին:

— Ով էք դուք և ինչ գործ ունիք այստեղ, բսաւ Թարգմանը անծանօթին որ արդէն կանգ առած էր սպասելով դէպի իրեն յառաջացողները:

— Դուք ով էք որ այդ հարցումը ինծի կ՚ընէք, պա-տասխանեց առանց խռովելու:

— Մենք տէրութեան պաշտօնեաներ ենք, պատաս-խանեց Թարգմանը և պաշտօն ունինք ձեզ ձերբակալելու:

— Ուրեմն գիտէ՞ք իմ ով ըլլալս, քանի որ զիս ձերբա-կալելու կուգաք:

— Գիտենք որ դաւադիր մըն էք և պետութեան դէմ կը գործէք ու այսքանը բաւական է կարծեմ ձեզ ձերբակա-լելու համար:

— Ուրեմն աւելորդ խօսքերու պէտք չի կայ, պատաս-խանեց անծանօթը նոյն համարձակութեամբ... ձեր պարտա-կանութիւնը կատարեցէ՛ք:

Թարգմանը Մաք Լայնի դառնալով կամաց մը հարցուց:

— Պէ՞տք է իր ձեռքերը կապել։

— Կարծեմ անօգուտ է, պատասխանեց Անգղիացին, ջանանք առանց աղմուկի և ուշադրութիւն գրաւելու ընենք մեր գործը... այս մարդը դիմադրելու կամ փախչելու տրամադրութիւն չունի, թո՛ղ երեք հոգի առնեն տանին զինքը հո՛ն ուր կառքերը կը սպասեն ու կառք մը գտնելով իջեցնեն նաւահանգիստ ուր անշուշտ մեր շոգենաւակը եկած կը սպասէ և անոր մէջ հսկողութեան տակ պահեն մինչեւ որ մենք երթանք։

Այս խօսակցութեան միջոցին անծանօթը ամենայն համբերութեամբ դրպանէն սիկառէթի տուփը հանեց և հատ մը առնելով վառեց ու ծխել սկսաւ։

Թարգմանը իր մարդոց դառնալով բարձրաձայն ըսաւ։

— Այս էֆէնտին առաջնորդեցէք կառք ու տարէք նաւահանգիստ և նստեցուցէք հոն սպասող շոգենաւակին մէջ... եթէ երբեք փախչելու կամ ընդդիմութիւն ընելու փորձ ընէ, ձեզի տրուած հրամանը գործադրեցէ՛ք... կը հասկնա՞ք։

Յետոյ, երիտասարդը անծանօթին դառնալով աւելցուց.

— Կը յուսամ որ առիթ չէք տար բռնի միջոցներու դիմելու, այնքան ատեն որ հանդարտ մնաք ձեր մազին մէկ թելին իսկ դպչող չպիտի ըլլայ, ատոր կրնաք վստահ ըլլալ, բայց հակառակ պարագային՝ նոյնիսկ ձեր կեանքին չպիտի խնայենք... տեսէ՛ք ձեռքերնիդ անգամ կապել չեմ տար, վստահելով ձեր վրայ։

— Շնորհակալ եմ, ըսաւ անծանօթը հեգնօրէն ժպտելով... ապահով եղէք որ առիթ չպիտի տամ բռնութեան դիմելու։

Թարգմանը յանկարծ, խօսքը իր մարդոց ուղղելով ըսաւ։

— Աղէկ միտքս ինկաւ, էֆէնտիին վրան գլուխը խուզարկեցէ՛ք և եթէ զէնք ունի առէ՛ք։

Երիտասարդը, այս խօսքերը լսելուն պէս, երկու ձեռքերը վեր բարձրացուց ու ըսաւ։

— Հրամմեցէ՛ք խուզարկեցէ՛ք վրաս գլուխս։

Երեք մարդիկը ուշի ուշով նայեցան անծանօթին գըրպանները և հագուստներուն ամէն կողմը շօշափեցին։ Եւ ոչ իսկ գմելի մը կար քովը։

— Կը տեսնանք որ պետութեան համար շատ վտանգաւոր ու երկիւղալի դաւադիր մը չեմ, ըսաւ մարդը ժպտելով։

Թարգմանը այս խօսքին առանց պատասխանելու հրամայեց իր մարդոց.

— Օ՛ն ուրեմն, տարէ՛ք էֆէնտին և ըսածներս կէտ առ կէտ կատարեցէ՛ք։

Երեք հոգին ու անծանօթը ճամբայ ելան ու քիչ ետքը անյայտ եղան մութին մէջ։

— Ճշմարիտը խօսելու համար, զարմանալի չարագործներու հետ է գործերնիս ըսաւ Թարգմանը Մաք Լայնի... այս ի՞նչ գառնուկի պէս մարդ է... և ո՛չ իսկ դաշոյն մը կար քովը։ Արդեօք իրաւցնէ մեր փնտռած անձերէն մէ՞կն էր՝ թէ պարզապէս անմեղ անցորդ մը որ դիպուածով այս կողմերը եկած էր... և սակայն իր ձերբակալուելուն մասին զարմանք կամ դժգոհութիւն չյայտնեց բնաւ, կարծես թէ նախապէս գիտէր, նոյնիսկ պիտի ըսեմ որ ձերբակալուելու համար հոս կը սպասէր... շիտակը խելքս բնաւ չհասնիր կոր այս եղածներուն...

Անգլիացին մտացիր կերպով մը մտիկ ըրաւ այս դիտողութիւններուն առանց պատասխանելու։ Միւսը սակայն իր խորհրդածութիւնները յառաջ տարաւ բարձր ձայնով.

— Եւ ի՞նչ գործ ունէր այս մարդը, այս ժամուս, ժայռերուն մէջ միս մինակ. եթէ առանձին դաւադրութիւն մը կը սարքէր, պէտք չունէր մինչեւ հոս գալու, կրնար ո և է սրճարանի մը անկիւնը կամ իր տան մէջ իր դաւադրութիւնը սարքել... ճշմարիտը կը վախնամ որ խաղ մը կը խաղան մեզի ու քթերնուս կը խնդան։

— Որո՞նք խաղ մը կը խաղան, հարցուց յանկարծ Անգլիացին։

Թարգմանը ցնցուեցաւ ու շփոթեցաւ. զգաց որ չափէն աւելի խօսած էր: Իրա՛ւ է որ իր կասկածները Մաք Լայնի վրայ կը ծանրանային, իրա՛ւ է որ անոր ակնարկել ուզած էր իր վերջին խօսքերովը, այսուհանդերձ զղջաց այդ բառերը արտասանելուն: Իրեն հրաման եղած էր կուրօրէն հնազանդելու այդ մարդուն և անա՛ ինք համարձակած էր բացէ ի բաց քննադատել և նոյն իսկ ամբաստանել զայն... Խեղճը, բոլորովին շուարած, չկրցաւ խօսք մը գտնել:

— Ո՞վ է արդեօք խաղ խաղացողը, կրկնեց միւսը դէմքը խոժոռեցնելով:

— Ներեցէ՛ք, միտքս սխալ հասկցաք, կամ ես սխալ բացատրեցի, կմկմաց Թարգմանը:

— Կը կարծէք որ այս մարդը առանձի՞ն էր հոս, ըսաւ Մաք Լայն, կը կարծէք որ դաւադրութեան վայր մը չէ՞ այս տեղը, կը կարծէք որ ուրիշներ չկա՞ն այստեղ, մենէ մէկ քանի քայլ հեռուն, որոնք մութին մէջ կը դաւեն...

Երիտասարդ Թարգմանը զարմացած ու միանգամայն թերահաւատ դէմքով մը Անգլիացիին երեսը նայեցաւ:

— Բայց, ըսաւ, ո՛չ ոք կը տեսնամ չուրջս...:

— Իսկ այն մա՞րդը զոր քիչ մը առաջ ձերբակալեցինք... ուրկէ՞ մէջտեղ ելաւ:

— Իրա՛ւ, որ այդ բանը քիչ մը տարօրինակ թուեցաւ ինծի... ճիշդ գրեթէ մեր մարդոց գտնուած տեղէն յանկարծ երեւան ելաւ... միայն թէ՝ եթէ ճշմարիտ յեղափոխական մը, ճշմարիտ դաւադիր մըն էր ի՛նչու ընդդիմութեան փորձ մը, փախչելու ճիգ մը չըրաւ:

— Տասնեակներու հոգիի դէմ. առանձին, անձայն տեղ մը, ինչպէ՞ս կ'ուզէիք որ փորձէր դիմադրել... և յետոյ, ո՛վ գիտէ, գուցէ ձերբակալուիլ կ'ուզէր..., աւելցուց Մաք Լայն խընդալով:

Յետոյ տեսնելով որ իր բոլոր այս խօսքերը կարող չէին ցրուել ընկերակցին կասկածանքները, յարեց.

— Եկէ՛ք ինծի հետ որպէս զի ձեզի հետաքրքրաշարժ բաներ ցոյց տամ։

Եւ ժայռերուն մէջ քանի մը շրջան ընելէ ետքը կանգ առաւ քարի խոշոր հատորի մը առջեւ։

— Անտարակոյս այս քարին ետեւ պահուըտած են մեր փնտռած դաւադիրները, ըսաւ Թարգմանին։

— Ուրեմն ինչո՞ւ չէք ուզեր քարը մէկ կողմ առնել եւ ամենքը միասին ձերբակալել։

— Որովհետեւ վստահ եմ որ արդէն մէկիկ մէկիկ դուրս պիտի ելլեն ու օձիքնին ձեռք տան, մինչդեռ եթէ մենք ներս մտնենք՝ կրնան մեզի դիմադրել կամ իրենց թաքստոցին մէջ խաղի մը բերել... եթէ այդ վախը չունենայի, նոյն իսկ քարը վերցնելու պէտք ալ չէինք ունենար եւ կրնայի զայն բանալ առանց դժուարութեան...։

Այս բացատրութիւնները թէեւ բաւական լուրջ թուեցան երիտասարդին, այսու հանդերձ բոլորովին չփարատեցին իր կասկածները եւ պահ մը լուռ կենալէ ետքը, յարեց.

— Եւ սակայն քարին տակէն նոր մէկը դուրս ելած չունի...

Կարծես հերքում մը տալու համար այս խօսքին, քարը որուն մօտ կեցած էին, սկսաւ յամրաբար շարժիլ, խուլ շշնչիւն մը հանելով։

— Մէկ կողմ քաշուէ, ըսաւ մէկէն Մաք Լայն իր ընկերոջ թեւէն քաշելով ու քանի մը քայլ անդին տանելով, մինչ երիտասարդը յուզումէն կը սկսէր դողդղալ։

Քարը ինքն իր վրայ դառնալով՝ մութին մէջ բացուածք մը տեսնուեցաւ։ Րոպէ մը ետքը այդ բացուածքէն մարդկային կերպարանք մը դուրս կ'ելլէր։ Երկայնահասակ անձ մըն էր, սեւ վերարկու մը հագած։ Հազիւ թէ դուրս ելած էր, ծակը կրկին գոցուեցաւ։

Մարդը իր շուրջը գաղտագողի նայուածք մը նետելէ ետքը հազիւ մէկ քանի քայլ առած էր, երբ Անգլիացին ետեւէն հասաւ եւ ձեռքը ուսին վրայ դրաւ. մինչ Թարգմանը իր

քով գտնուած սուլիչը կը հնչեցնէր, իր մարդոց նշան տալու համար.

— Ամէն ընդդիմութիւն աւելորդ է, անձնատուր եղիք, գոչեց Մաք Լայն ֆրանսերէն լեզուով։

Երկայնահասակ մարդը գլուխը ետեւ դարձուց և գոչեց.

— Ա՜, դո՞ւք էք եղեր...։

Հազիւ թէ այս խօսքերը փոխանակուած էին, մօտերը պահնորդ կեցած եօթը անձերը վազեցին եկան, ձեռքերնին բէվոլվէրները կազմ ու պատրաստ բռնած։

— Ըսէ՛ք ձեր մարդոցը որ իրենց զէնքերը գրպաններնին դնեն, գոչեց Մաք Լայն, խօսքը թարգմանին ուղղելով, մեր բարեկամը, ինչպէս կը տեսնէք, փախչելու կամ դիմադրելու տրամադրութիւնը չունի։

Արդարեւ քարին ետեւէն երեւան ելլող անձը նոյն հանդարտութիւնը ցոյց կուտար զոր քիչ մը առաջ ցոյց տուած էր միւս ձերբակալեալը:

— Թոյլ կուտա՞ք որ, ըստ սովորութեան, ձեր վրան գլուխը խուզարկենք, ըսաւ Անգլիացին իրենց կալանաւորին։

— Անշուշտ, քանի որ օրէնքը այդպէս է, պատասխանեց միւսը։

Այս գործողութիւնը վայրկեանի մը մէջ կատարուեցաւ։ Մարդուն քովէն գտնուեցան փոքրիկ բէվոլվէր մը, քանի մը տեղական թերթեր և թղթապանակ մը, ինչպէս նաեւ քսակը զոր կրկին իրեն վերադարձուցին։

— Եւ այժմ, ո՞ւր պիտի տանիք զիս, հարցուց մարդը, անայլայլ դէմքով մը։

— Ձեր միւս ընկերոջ մօտ, պատասխանեց Մաք Լայն և թարգմանին դառնալով աւելցուց.

— Թո՛ղ երեք հոգի ընկերանան իրեն մինչեւ չոգեմակոյկ և իր վրայ հսկեն մինչեւ մերին գալը։

— Շատ լաւ։

Բիչ մը ետքը այս նոր խումբն ալ ճամբայ կ'ելլէր ու մութին մէջ անյայտ կ'ըլլար։

Հիմա Թարգմանին կասկածները գրեթէ բոլորովին փարատած էին։ Թաքստոցին յայտնութիւնը այնքա՜ն կարեւոր բան մըն էր որ կասկածի տեղ չէր թողուր. բայց ուրիշ մտատանջութիւն մը զինքը պաշարեց.

— Հիմա միայն չորս հոգի մնա՜ց մեր տրամադրութեան ներքեւ եւ եթէ տակաւին Թաքստոցէն չարունակեն մարդիկ դուրս ելլել, ինչպէ՞ս կարող պիտի ըլլանք ամէնքն ալ ապահով կերպով ձերբակալելու։

— Այդ մասին բնաւ հոգ մի՛ ըներ, ամէն բան հաշուի առնուած է եւ հոս գտնուողները բաւական են իրենց պաշտօնը ի գլուխ հանելու համար։ Միայն թէ խնդիրը այն է որ ժամանակը կ'անցնի . . .։

Եւ Մաք Լայն գրպանէն ժամացոյցը հանելով գոչեց.

— Օ՜, օ՜, արդէն իննուկէս է եղեր։ Դառնանք ժայռին մօտերը եւ մաղթենք որ շուտով դուրս գան միւս դաւաճաններն ալ . . .։

Այս մաղթանքը շուտով կատարուեցաւ։ Հազիւ թէ հինգ վայրկեան անցած էր, քարը կրկին ճռնչաց ու ինքն իր վրայ կամաց մը դառնալ սկսաւ ու երրորդ անձ մը երեւցաւ ժայռերուն մէջ։

Ինչպէս նախորդ երկուքը՝ այս երրորդ անձն ալ նոյն ձեւակերպութիւններով եւ նոյնքան դիւրութեամբ ձերբակալուեցաւ եւ երեք պահնորդներու հսկողութեամբ ճամբայ հանուեցաւ դէպի Սկիւտար։

Հիմա ժայռերուն քով միայն Անգլիացին, իրեն ընկերացող Թարգմանը եւ մէկ անձ մը մնացած էին։

— Եթէ տակաւին ներսը շատ մարդիկ կան, գործերնիս գէշ է կարծեմ . . . ըսաւ Թարգմանը մտատանջ երեւոյթով մը։

— Երթանք նայինք քանի հոգի մնացած է, պատասխա-

նեց Մաք Լայն յառաջանալով դէպի այն քարը որուն ետեւէն մէկիկ մէկիկ դուրս ելեր էին դաւադիրները։

Երիտասարդը անհաճոյ դէմքով մը իր ընկերոջ նայեցաւ․

— Ինչ կ'ընէք, ըսաւ, լաւագոյն է որ հոս դուրսը սպասենք, գոնէ աւելի ապահով կրնանք ըլլալ և եթէ հարկ ըլլայ կրնանք փախչելու միջոց մը գտնել։

— Բայց մենք փախչելու համար չեկանք հոս, այլ փախչողները բռնելու, պատասխանեց Մաք Լայն թեթեւ մը ժպտելով։

Ու մօտենալով քարին, ձեռքովը մութին մէջ շօշափելով գտաւ հոն ծածկուած կղպանքը և մատներու մէկ քանի շարժումով գիրերը տեղաւորեց պէտք եղածին պէս։ Քարը անձայն մըն ալ ճռնչեց ինքն իր վրայ և ծակ մը երեւցաւ։

— Ահաւասիկ մուտքը երեւցաւ ըսաւ Անգլիացին թարգմանին դառնալով, և ես ներս պիտի մտնեմ, եթէ դուք չէք համարձակիր հետս գալու, կրնաք հոս սպասել․․․։

Թարգմանը վարանոտ շարժում մը ըրաւ։ Իրա՛ւ է որ քաջութիւն չէր զգար հետեւելու այդ մութ ծակին մէջ իր Անգլիացի անծանօթին, այսուհանդերձ դուրսը մնալն ալ վատութիւն կը համարէր։

Ու յետոյ կը մտածէր որ իր այս ընթացքը անշուշտ պիտի լսուէր Եըլտըզի մէջ ու շատ գէշ տպաւորութիւն մը յառաջ պիտի բերէր, գուցէ նոյն իսկ իր աչքէ իյնալուն և ճամբուելուն պատճառ ըլլար։ Այս մտածումը ցնցեց ու ոգեւորեց զինքը․ հաստատամտութեամբ ծակին մօտեցաւ, ըէվոլվէրը ձեռքը բռնած ու ճիգ մը ընելով ինքն իր վրայ, ներս մտաւ։

— Ահա՛ եկայ, բայց դուք ո՞ւր էք, ըսաւ մութին մէջ բարձրաձայն խօսելով, այս խաւարին մէջ բան մը չեմ կարող տեսնել․․․։

Անգլիացին իբրեւ պատասխան լուցկի մը վառեց։ Աղօտ լոյս մը վայրկեանապէս լուսաւորեց գետնափոր ցած ուղին, ուրկէ անգամ մը մեր ընթերցողները անցուցինք։

— Աստուա՛ծ իմ այս ի՜նչ սարսափելի տեղ է, ի՞նչպէս կարելի է այստեղ գալ հաւաքուիլ, ըսաւ քթին տակէն Թարգմանը ֆրանսերէն լեզուով։

— Այո՛, այնպէս չէ՞, յարեց Մաք Լայն իր ճամբան շարունակելով, Եըլտըզի պալատը շատ աւելի հանգստաւէտ ու փառաւոր է քան այս նկուղը... բայց ի՛նչ ընենք, կան մարդիկ որ այս նկուղը աւելի կը նախընտրեն... և ահա՛ մենք կը ստիպուինք պալատէն գալու և զիրենք փնտռելու։

Երիտասարդը չպատասխանեց այս խօսքերուն։

Լուցկին, որ քիչ շատ գետնափորը կը լուսաւորէր, մարեցաւ, կրկին մութին մէջ ձգելով երկու անձերը։

Բայց այդ մթութեան մէջ հեռուէն կը տեսնուէր լոյսի բարակ շերտ մը որ ճեղքուածքէ մը կուգար։

— Ի՞նչ է արդեօք այս լոյսը, հարցուց Թարգմանը մտատանջ ձայնով մը։

— Իրենց ժողովարանին մէջ վառուած լոյսն է, պատասխանեց Մաք Լայն ամենայն հանդարտութեամբ։

— Ժողովարա՞ն, գոչեց միւսը աւելի դող ելած, բայց կարելի է որ տակաւին մէկ քանի հոգի կան հոն... արդեօք լաւագոյն չըլլա՞ր որ վերադառնանք։

— Եթէ կը վախնաք, ազատ էք վերադառնալու, ըսաւ Անգլիացին հեգնական շեշտով մը, որովհետև այս տեսակ գործողութիւններու միջոցին վախկոտները փոխանակ օգտակար ըլլալու կրնան շատ աւելի վնաս պատճառել... ահաւասիկ ձեզի մէկ քանի լուցկի որպէսզի վերադառնալու համար ճամբանիդ գտնաք։

— Ո՛չ, վախնալուս համար չէ որ այդ դիտողութիւնը կ'ընեմ, թոթովեց խեղճ Թարգմանը, որուն ձայնը կը դողար պարզապէս խոհեմութեան և գործը չվտանգելու համար... եթէ ո՛չ բնաւ հոգս չէ... եթէ վտանգ մը պիտի պատահի թո՛ղ պատահի, Աստուծոյ կամքը ինչ որ է ան կ'ըլլայ...։

Եւ երիտասարդը ինքզինքին սիրտ տալու համար այս խօս-

քերը ընելով դողդոջուն քայլերով մօտեցաւ Անգղիացիին որ կարծես հաճոյք կը զգար իր ընկերոջ վեհերոտութիւնը դիտելով։

— Լաւ մտիկ ըրէ՛, ըսաւ Անգղիացին. միթէ խօսակցութեան ձայներ չե՞ն լսուիր կոր։

Միւսը ականջ դրաւ ուշադրութեամբ ու շունչը բռնած.

— Ոչ՛, ես բան մը չեմ լսեր կոր, գուցէ հիմա լռեցին պատասխանեց։

Քանի մը քայլ ալ առնելով հասան ճեղքուածքին մօտ։

Մաք Լայն կամաց մը իր ընկերոջ ականջին փսփսաց.

— Մենէ ո՞վ առաջ ներս պիտի մտնէ ծակէն։

Թարգմանը՝ անհաբեկ՝ անոր երեսը նայեցաւ.

— Բայց կարծեմ ներս մտնելու պէտք չիկայ, կրնանք հոս սպասել և նախ ջանալ հասկնալու թէ քանի՞ հոգի կայ ներսը, պատասխանեց։

Մաք Լայն առանց պատասխանելու առաջ անցաւ ու ծակէն ներս մտնելով աներեւոյթ եղաւ։

Թարգմանը այնքա՛ն յուզուած էր որ ձեռքին մէջ րէվոլվէրը կը դողդղար և ակռաները իրարու կը զարնուէին։

— Եթէ հիմա զինքը մեռցունեն, ես ինչ պիտի ընեմ հոս մտածեց սոսկումով.

Եւ սակայն ոև է աղմուկ կամ հրազէնի պայթիւն չլսուեցաւ ներսէն միայն կնոջական ձայն մը բարձրացաւ յանկարծ.

— Պարոն Մաք Լայն բարի եկաք, ըսաւ այս ձայն ֆրանսերէն լեզուով, կը տեսնաք որ մեր ժամադրութիւնը յարգեցինք ու ձեզ պարապ չհանեցինք։

— Այս մասին արդէն վստահ էի պատասխանեց Անգլիացիին ձայնը, միայն թէ, տիկին, արդեօք պատրա՞ստ էք մեզի ընկերանալու համար.

— Անշուշտ։

Այս հանդարտ խօսակցութիւնը, մանաւանդ կնոջական ձայնը հանդարտեցուց երկտասարդ թարգմանը և քաջութիւն

տուած իրեն․ հօրմէն քայլերով մօտեցաւ ճեղքուածքին և գլուխը ներս երկարեց.

— Ո՞վ է այս մարդը, գոչեց կինը երիտասարդին գլուխը նշմարելով յանկարծ։

— Իմ հետեւորդներէս մէկն է, պատասխանեց Մաք Լայթ թեթեւ մը ժպտելով։

— Այս կնոջմէն զատ ուրիշ մարդ չի կա՞յ, ըսաւ թարգմանը, բոլորովին ներս մտնելով ու շուրջը դիտելով։

— Ապահով եղէք, ինէ զատ մարդ չի կայ, պատասխանեց կինը որ նշմարած էր անոր անհամբեր դէմքը։

— Եթէ կը հաճիք, կրնանք ճամբայ ելլալ, ըսաւ Անգղիացին դէպի կինը դառնալով,

Սակայն երիտասարդ թարգմանը որուն ամբողջ քաջութիւնը վրան եկեր էր առարկեց.

— Կարծեմ մեկնելէ առաջ կարեւոր գործ մը ունինք կատարելիք։

— Ի՞նչ գործ...։

— Խուզարկել այս թաքստոցին ամէն կողմը։

— Կարծեմ անօգուտ աշխատութիւն մը պիտի ըլլայ անտիկա, միջամտեց կինը, որովհետեւ բան մը չպիտի գտնէք։ Այստեղ ինչ որ կար ձեզի համար կարեւոր՝ արդէն ձեռք անցուցիք։

— Բայց մեր պարտականութիւնն է այս խուզարկութիւնը կատարել, գոչեց թարգմանը խրոխտ կերպով, ամենափոքր թուղթի կտոր մը կրնայ մեծ լոյս սփռել հոս սարքուած դաւադրութիւններուն վրայ։

Կինը արհամարհոտ կերպով մը ժպտեցաւ և պատասխանեց.

— Ըրէ՛ք ինչ որ հաճելի կը թուի ձեզի կամ ձեր պարտականութիւնը կը համարէք, բայց ես կը կրկնեմ որ անօգուտ աշխատութիւն մըն է այդ խուզարկութիւնը։

— Այս խուզարկութեան գնահատումը կարծեմ ձեզի չի պատկանիր, ըսաւ չոր կերպով մը երիտասարդը։

— Ընկերութեանդ խօսքը, ըսաւ Մաք-Լայն, թող իր պարտականութիւնը կատարէ խղճի մտօք. մնա-ցածն ալ կարծեմ այդ կուսակցութիւնը երբեք չկրնար առ-նել։

Իրաւ ալ Երիտասարդ Թարգմանը աչքը չորս կողմը պտըտ-ցընելով՝ ուրիշ բան չտեսաւ, այլ պատին երկայնքը դրուած փայտէ դաժ նստարան մը և մէջի կողը գրեթէ սպառած լամ-պայ մը:

— Կամք մը խնդրեցէ՛ք, ըսաւ կինը հեգնական շեշ-տով մը։

Երիտասարդը թէև առնուեցաւ կնոջ այդ հեգնութենէն, սակայն առանց յայտնի ընելու, սկսաւ ուշադրութեամբ զննել փայտէ նստարանին ներքևը, ուր միայն սիկառէթի պարապ տուփ մը գտաւ զոր խնամքով գրպանը տեղաւորեց: Յետոյ լամպան որ խոշոր քարի մը վրայ դրուած էր, տեղէն հանեց և ներքևը նայեցաւ, յետոյ փորձեց քարն ալ վերցնել սակայն չյաջողեցաւ։

Բոլոր այս խուզարկութիւն հազիւ քանի մը վայրկեան տեւած էր։

— Բարեկամ. արդեօք լմնցուցի՞ք ձեր փնտռտուքը, ըսաւ Անգղիացին իր ընկերոջ, որ չուարած ու ամօթահար կերպա-րանք մը առած էր։

— Այո՛, կմկմաց այս վերջինը, այո՛ բան մը չի կայ մէջ-տեղ. կարծեմ թէ այս դաւադիրները մեր այցելութեան կը սպասէին և նախապէս ամէն զգուշութիւն ձեռք առեր են... փնտռտուած հետքերը մէջտեղէն վերցնելով...

— Այո՛, միայն թէ խելք չեն ըներ ամենէն կարեւոր բաները, այն է իրենց անձերը փախցնել, պատասխանեց Անգ-ղիացին՝ չինակը զարմանալի անխռովութիւն։

Երիտասարդ Թարգմանը չպատասխանեց այս խօսքերուն որոնք ուղղակի ծաղրանք մըն էին իր ըրած գիտողութեան և խօսքը փոխելու համար ըսաւ.

— Եթէ կը հաճիք ճամբայ ելլենք և կարծեմ լաւ կ'ըլլայ եթէ լամպան միասին առնենք լուսաւորուելու համար, որովհետեւ մութին մէջ բաւական դժուար է քալել ցած գետնափորին մէջէն... մանաւանդ որ տիկինը մեզի պիտի ընկերանայ։

— Ո՛հ, իմ մասին մի՛ մտածէք, ես վարժուած եմ այդ գետնափորէն մութ տեղերէն երթալ գալու, պատասխանեց կինը անտարբեր ձեւով մը։

Այսուհանդերձ Թարգմանին տուած խորհուրդը շատ բանաւոր թուեցաւ Մաք Լայնի որ լամպան ինք ձեռքը առնելով՝ ճեղքուածքէն անցաւ և ըսաւ։

— Ես ձեզ կ'առաջնորդեմ, ինծի հետեւեցէք։

Քանի մը վայրկեան ետքը բաց օդին ելած էին։

Թարգմանը իր սուլիչը հնչեցուց և պահնորդը, որ մօտերը կը սպասէր, երեւցաւ։

— Հասան աղա, ըսաւ երիտասարդը, վերջապէս գործերնիս լմնցաւ ու կը մեկնինք։

— Վա՞յ, կի՞ն մըն ալ կայ եղեր մէջերնիդ, գոչեց պահնորդը դիտելով երկայնահասակ նիհար կինը։

— Այո՛, ինչո՞ւ կը զարմանաս...

— Չէի կրնար հաւատալ որ կիները այս տեսակ գործերու ալ կրնան մասնակցիլ պատասխանեց այն որուն Հասան աղա անունը տուած էր Թարգմանը։

Կինը որ այս խօսքերը լսած էր գլուխը դէպի Հասան աղային դարձուց և պատասխանեց.

— Իցի՛ւ թէ կիներուն չափ դուք ալ սիրտ ու արիութիւն ունենայիք... այն ատեն չպիտի ստորնանայիք այսպիսի դերեր կատարելու...

— Ինչպէ՛ս կը համարձակիք նախատել մարդիկ որոնք վեհափառ սուլթանին հրամանները կը կատարեն, գոչեց Թարգմանը այս խօսքերէն վիրաւորուած, մինչ Հասան աղան սպառնական կերպարանքով մը դէպի կնոջ վրան կը քալէր։

Սակայն Մաք Լայն իսկոյն միջամտեց և խրոխտ ձայնով մը գոչեց Թարգմանին երեսին.

— Կը հրամայեմ ձեզի պատկառանքով վարուիլ մեր կալանաւորին հետ, հակառակ պարագային գործ պիտի ունենաք ինծի հետ...։

Այս խօսքերը այնպիսի Թափով մը արտասանած էր որ երկու մարդիկը շփոթած մնացին և ետ ետ քաշուեցան։

— Տիկին, հաճեցէ՛ք ինծի հետեւելու, շարունակեց Անգլիացին քալել սկսելով։

Թարգմանը սակայն իր պաղարիւնութիւնը գտած ըլլալով և ուզելով կերպով մը փոխարինութիւն մը ստանալ ըսաւ.

— Մոռցանք տիկնոջ վրան գլուխը խուզարկելու, ինչպէս որ ըրինք միւս ձերբակալեալներուն։

—Ես պէտք չեմ տեսնար այդ խուզարկութեան, պատասխանեց Մաք Լայն կտրուկ կերպով։

— Բայց...

— Բաւական է ալ։

Անգլիացին ու կալանաւոր կինը արդէն բաւական ճամբայ առած էին։ Թարգմանը այս երկրորդ հարուածէն Թէև ա՛լ աւելի վիրաւորուած էր, սակայն պատշաճ չգտաւ խնդիր յարուցանել և իր ընկերոջ՝ Հասանի դառնալով ըսաւ։

— Օն, մենք ալ երթանք։ Այս մարդուն հետ վարուիլ անկարելի է... Բարեբաղդաբար գործերնիս յաջողութեամբ աւարտեցաւ։

— Երբեք չէի տեսած որ այսքան յարգանքով կը վարուին տէրութեան դէմ դաւաճանող չարագործներու հետ, դիտեց միւսը։

— Կ՚երեւայ որ եւրոպական քաղաքավարութիւնը այսպէս կը պահանջէ, պատասխանեց երիտասարդը հեգնական շեշտով մը։

Երբ փոքրիկ խումբը Սկիւտարի նաւամատոյցը իջաւ, շոգեմակոյկը հոն իրենց կը սպասէր։ Կէս գիշերը նոր հնչած էր

եւ ծառաստանայքին շրջակայքը գրեթէ ամայութիւն կը տիրէր։ Կատարուած գործողութիւնները գրեթէ աննշմարելի անցեր էին եւ հիմա չոգեմակոյկին քով միայն մէկ քանի ոստիկաններ կ'երեւային քամբերի մը հսկողութեան տակ։

Պալատական Թիկնապահ մը չոգենաւակին խելքին կողմը թիկնաթոռի մը մէջ ընկղմած սիկառէթ կը ծխէր։ Երբոր տեսաւ կնոջ եւ երեք անձերուն մօտենալը ոտքի ելաւ եւ եկաւ զանոնք դիմաւորելու։

— Բարի եկաք, ըսաւ Մաք Լայնի, բաւական ուշացաք եւ սկսեր էինք մտատանջ ըլլալ... մանաւանդ որ մեր վեհափառ սուլթանը քանի մը անգամ լուր ղրկած էր ձեր մասին։

— Լաւ ղրկեցի՞ք իրեն թէ ձերբակալութիւնները կատարուած էին։

— Բնականաբար... ամէն մէկ ձերբակալելոյն հանելուն, մասնաւոր բանբեր մը ղրկեցի, ինչպէս որ պատուէր տրուած էր ինծի։

— Եւ կը յուսամ որ ձերբակալուածները մինչեւ հիմա չփախցուցիք, ըսաւ Անգլիացին ժպտելով։

— Այդ մասին ապահով եղէք, երեքն ալ չոգենաւակին խցիկին մէջ բանտարկուած են... արդէն փախչելու որեւէ դրութիւն ցոյց չեն տար բնաւ։

— Աւելի աղէկ, պատասխանեց Անգլիացին դէպի չոգեմակոյկը յառաջանալով քողաւոր կնոջ հետ որ անհնարին հանդարտութեամբ եւ հաստատ քայլերով կը հետեւէր իրեն։

Երբ առաջին անգամ պալատական պաշտօնեայ մը Սկիւտարէն Երլտըզ գալով իմաց տուաւ թէ ձերբակալութիւնները սկսած են եւ թէ դաւադիրներէն մէկը չոգեմակոյկ փոխադրուած է եւ լուրը անմիջապէս հաղորդուեցաւ սուլթանին, Բռնաւորը տարօրինակ յուզում մը զգաց։

Օրերէ ի վեր մտատանջութեան մէջ կը տագնապէր։ Իրաւ է որ Մաք Լայն հաստատ կերպով երաշխաւորած էր այդ ձերբակալումը, սակայն Աբտիւլ Համիտ իր բնական կասկա-

ծողութեամբը թոյլտուելին վստահ չէր Անգլիացիներուն տուած հաւանութիւններուն և մինչև վերջին վայրկեանը կը վախնար որ իրենք խաղ մը պիտի խաղային ու կրկին այդ գաւառակները պիտի ծողոպրէին իր ձեռքէն։ Ասոր համար ձերբակալման լուրը, ինչպէս ըսինք. մեծ յուզում պատճառեց իրեն։ Անմիջապէս հրամայեց որ լրաբեր պալատականը իր ներկայութենէն վռնտեն և ինք անձամբ մանրամասն հարցափորձի մը ենթարկեց զայն։ Հիմա՝ ալ կասկածը փարատած էր։ Մաք Լայն զինքը չէր խաբած ու իր խոստումը պահած էր և յուզումին յաջորդեց ծայրայեղ ուրախութիւն մը։ Միայն թէ տակաւին մտատանջութեան կէտ մը կը մնար։ Արդեօք ուրիշներ ալ նոյնքան դիւրութեամբ պիտի ձերբակալուէի՞ն, թէ պիտի յաջողէին փախչիլ ու միայն մէկ անձ մը ձեռք պիտի իյնար....։

Այս մտատանջութիւնն ալ սակայն շատ երկար չտեւեց։ Հետզհետէ հասան ուրիշ երկու պալատականներ ալ որոնք աւետեցին երկրորդ և երրորդ անձերու ձերբակալումը։

Ապտիւլ Համիտ այնքան գոհ էր իր առած լուրերէն որ հրամայեց իսկոյն մեծամեծ դրամական նուէրներ տալ աւետաբերներուն, որոնք սակայն ձերբակալման գործին մէջ ո և է դեր չէին կատարած։ Իր այս ուրախ տրամադրութենէն մեծապէս օգտուեցաւ նաեւ իր սիրական քարտուղարը Իզզէթ փաշան որ մասնաւոր շնորհներու արժանացաւ։

Ապտիւլ Համիտ երբ վստահ եղաւ որ իր թշնամիները ձեռք ձգած էր, անմիջապէս Եըլտըզի մէջ անոնց ըլլալիք ընդունելութեան մասին սկսաւ խորհուրդներ յղանալ։

Իր որոշումն էր զանոնք նոյն գիշերն իսկ հարցաքննութեան ենթարկել կարելի եղածին չափ փութով անոնց արժանի պատիժը տալ։ Այդ պատիժը բնականաբար ուրիշ բան չէր կրնար ըլլալ, այլ եթէ ո և է կերպով զիրենք մէջտեղէն վերցնել, բնաջինջ ընել...

Ապտիւլ Համիտ հակառակ իր զգացած բուռն ուրախութեան, հակասական խորհուրդներու մատնուած, կը տարու-

բերէր, առանց կարենալ վճռական որոշում մը տալու։

Նախ կ'ուզէր որ ձերբակալուածներուն քննութիւնը մանրամասն կերպով տեղի ունենայ և գաղտնի կազմակերպութեան ամբողջ գործունէութիւնն ու նպատակը պարզուի և երևան ելլէ։ Կ'ուզէր որ կատարուելիք քննութեան մէջ ս և է թերացում չըլլայ, ամենափոքր զանցառութիւն մը տեղի չունենայ և ձերբակալուածները չկրնան բան մը ծածկել։ Միւս կողմէ կը փափաքէր սակայն որ խնդիրը նեղ շրջանակի մը մէջ յայտնուէր և ուրիշներէ ծածուկ մնար, օրերով չտեւէր ու անմիջապէս մէջտեղէն վերնար։ Երբեք չէր ուզեր որ լուրը տարածուէր, ժողովուրդը իմանար թէ գաղտնի և հզօր մարմին մը կար որ իրեն դէմ կը պայքարէր, թէ յեղափոխութեան և ըմբոստութեան գաղափարը մուտք գտած էր իր հպատակներուն մէջ։ Այսպէս ուրեմն Աբտիւլ Համիտ թէ գործը լաւ մը լուսաբանել և թէ կարելի եղածին չափ շուտով խեղդել կ'ուզէր։

Մինչ ձերբակալուածները տակաւին Ըլտըզ չէին բերուած, արդէն Սուլթանը իր մօտ հաւաքած էր բոլոր իր հաւատարիմ խորհրդականները, որպէս զի իր բոլոր փափաքներուն համեմատ որոշում մը տան։

Այդ արտասովոր խորհուրդը, Աբտիւլ Համիտի նախագահութեան տակ, հետևեալ որոշումները տուաւ։

Ա. Անմիջապէս, նոյն գիշերն իսկ, հարցաքննութեան ձեռնարկել։

Բ. Ձերբակալուածներու հարցաքննութիւնը կատարել ի ներկայութեան Իզզէթ փաշայի, Շաքիր փաշայի, Մէհմէտ փաշայի, Հաճի Ալի փաշայի, Աբտիւլ Ղանի աղայի, Թահսին փաշայի, Րաղըպ փաշայի և Գատրի պէյի։

Գ. Տրուելիք պատիժին վճիռը թողուլ վեհափառ սուլթանին։

Դ. Ամէն միջոց ձեռք առնել որպէս զի այս ձերբակա-

*լումներուն և հարցաքննութեանց լուրը կարելի եղածին չափ գաղտնի մնայ և Երլտըզի պալատին շրջանակէն դուրս չտարածուի ։*

*Արտասովոր խորհուրդը տակաւին կը շարունակուէր․ երբ լուր բերին թէ ձերբակալուածները, երեք այր և մէկ կին, ամենայն ապահովութեամբ փոխադրուած էին Երլտըզ և զատ զատ սենեակներու մէջ բանտարկուած ։*

*— Փա՜ռք քեզ Աստուած, գոչեց Իզզէթ փաշա, երկու թեւերը վեր բարձրացնելով կեղծաւորութեամբ ։*

*— Վերջապէս պետութեան թշնամիները Արդարութեան ձեռքը ինկան. աւելցուց Թահսին փաշա ։*

*— Աստուած երկար կեանք տայ մեր վեհափառ սուլթանին, աղօթեց ուրիշ չողոքորթ մը։*

*Ապտիւլ Համիտ թոյլ տուաւ որ իր պալատականներուն այս խնդութեան արտայայտութիւնները վերջ գտնեն, ու ետքը խօսքը լուրը բերող պալատականին ուղղելով՝ ըսաւ․*

*— Պարոն Մաք Լայն միասի՞ն եկաւ ձերբակալուածներուն հետ ։*

*— Այո՛, վեհափառ տէր, հոս է և ձեր վեհափառութեան հրամաններուն կը սպասէ ։*

*— Ըսէ իրեն որ հոս գայ ։*

*Քանի մը վայրկեան ետքը Անգլիացին երեւցաւ սրահին մէջ ։*

*— Ձեր մատուցած ծառայութենէն մեծապէս գոհ մնացի, ըսաւ Ապտիւլ Համիտ և իմ գոհունակութեանս իբրեւ ապացոյց երկու հազար ոսկի կը նուիրեմ ձեզ ։*

*— Շնորհակալ եմ, վեհափառ տէր, պատասխանեց Մաք Լայն խոնարհելով և իր աչքերը ուրախութենէն շողացին ։*

*Անգլիական ոստիկանութեան նախկին գաղտնի պաշտօնեան դրամը կը սիրէր և ճիշտ դրամի սիրոյն համար էր որ իր հանգիստը զոհելով եկած էր Պոլիս Սուլթանի ծառայութեան մէջ մտնելու ։ Երկու հազար ոսկիի գումարը իրեն համար հարըս-*

տութիւն մըն էր որ յանկարծ կ'իյնար երկինքէն ։ Իր պաշտօնէութեան միջոցին արդարեւ յաճախ յաջողութիւններ ունեցած եւ դրամական պարգեւներ ընդունած էր , սակայն այդ պարգեւները շատ աննշան բան մըն էին եւ այս արքայական նուէրը կարելի չէր անոնց հետ բաղդատել ։

Սամուէլ Համիտ իր սուր ակնարկովը իսկոյն նշմարեց իր խօսքերուն յառաջ բերած բարերար ազդեցութիւնը ։

— Պարոն Մաք Լայն , ըսաւ , ես կը փափաքիմ որ ձեր Պոլիս գալուն համար անգոհ չմնաք , այլ ընդհակառակը գոհ տրամադրութեամբ մեկնիք մեր քովէն . . . Թէեւ տակաւին շատ կանուխ է մեկնումի խօսք ընելու համար ․ քանի որ դեռ նոր սկսանք վայելել ձեր ծառայութիւնները ։

— Շատ շնորհակալ եմ ձեր Վեհափառութեան բարեացակամ խօսքերէն , պատասխանեց Անգղիացին , սակայն կը կարծեմ որ այսօր իսկ իմ պաշտօնս աւարտած է եւ եթէ ձեր Վեհափառութիւնը թոյլտուութիւն ընէ՝ վաղուընէ կ'ուզեմ ճամբու պատրաստութիւններս տեսնել ։

— Բայց ես չեմ կարծեր որ ձեր պաշտօնը աւարտած է ։ Միթէ միայն չորս հոգիի ձերբակալումով կը յուսա՞ք թէ ամէն բան վերջացած պիտի ըլլայ ։

— Ո՛չ այդ հաւատքը չունիմ , պատասխանեց Մաք Լայն հաստատ շեշտով մը ։

— Կը տեսնէ՞ք ուրեմն որ իրաւունք ունիմ ձեզ թոյլ չտալու որ մեկնիք ։ ըսաւ Սամուէլ Համիտ ։

— Բայց ես կը կարծեմ որ իմ պաշտօնս աւարտեցի . . . անշուշտ տակաւին շատ բան կը մնայ ընելիք , սակայն ասկէ ետքը կատարուելիք գործողութիւնները վստահ եմ որ առանց իմ օժանդակութեանս ալ կարելի է գլուխ հանել ։

— Պարոն Մաք Լայն , ամէն պարագայի քանի մը օր մեր հիւրն էք , հետեւաբար դեռ ժամանակ ունիք այս մասին խօսակցելու ։ Միայն թէ կ'ուզեմ որ այս մէկ քանի օրերը իմ պալատիս մէջ անցընէք իբր իմ անձնական հիւրս . . .

— Շնորհակալ եմ ձեր վեհափառութեան ցոյց տուած այս բարձր հոգածութենէն, պատասխանեց Անգլիացին խոնարհելով։

— Ուրեմն առ այժմ գացէք հանգստացէք ձեզի յատկացուած յարկաբաժինը, որովհետեւ կ՚ենթադրեմ որ չարաչար յոգնած ըլլալու էք եւ պէտք ունիք հանգստանալու։

— Արդարեւ, վեհափառ տէր, ամբողջ օրը ոտքի վրայ անցուցինք։

Մաք Լայն կռահելով որ ունկնդրութիւնը վերջացած էր կրկին խոնարհութիւն մը ըրաւ եւ սրահէն դուրս ելաւ։

Երիտասարդ պալատական թիկնապահ մը՝ Ջիա փաշա՝ դուրսը իրեն կը սպասէր։ Սուլթանը նախապէս որոշած էր որ այդ թիկնապահը Մաք Լայնի յատկացուի, իբրեւ եւրոպական լեզուներու հմուտ։

— Կը հաճի՞ք այս կողմէն գալ, որպէս զի ձեզ ձեր սենեակը առաջնորդեմ, ըսաւ Ջիա փաշա Մաք Լայնի, ինքզինքը ներկայացնելէ ու իրեն տրուած պաշտօնը բացատրելէ ետքը։

— Ամենայն հաճութեամբ, պատասխանեց Անգլիացին եւ իր հետեւորդին հետ սկսաւ պալատին նրբանցքներուն մէջ յառաջանալ։

Բաւական քալելէ ետքը դրան մը առջեւ կանգ առին։

Թիկնապահը դուռը բացաւ, մէկ կողմ քաշուեցաւ եւ Մաք Լայնի դառնալով ըսաւ։

— Հաճեցէ՛ք ներս մտնել։

Թանկագին գորգերով ծածկուած, կարմիր թաւշապատ թիկնաթոռներով զարդարուն ընդարձակ սրահ մըն էր, ելեքտրական լոյսով ողողուած։

— Ասիկա ձեր աշխատութեան եւ ընդունելութեան սենեակն է, բացատրեց թիկնապահը, Անգլիացիին դառնալով, իսկ ձեր ննջասենեակը ահաւասիկ, ըսաւ աջ կողմը դուռ մը բանալով։ Ննջասենեակին կից կը գտնուի նաեւ լոգարան մը

իր բոլոր մանրամասնութիւններով... կը յուսամ որ այս բնակարանին մէջ աւելի հանգիստ պիտի ընէք քան թէ Բերայի պանդոկը ուր կը գտնուէիք մինչեւ հիմա։

—Կեանքիս մէջ առաջին անգամն է որ այսքան պերճաշուք եւ արքայավայել սենեակներու մէջ պիտի բնակիմ, պատասխանեց Մաք Լայն նուրբ ծիծաղով մը։

—Եւ արժանի էք ասոր, ձեր մատուցած ծառայութեամբը, ըսաւ Ձիա փաշա նոյնպէս ժպտելով։

Այս քաղաքավարական խօսքերէն ետքը, Մաք Լայն թիկնաթոռի մը մէջ նստաւ եւ հրաւիրեց որ խօսակիցն ալ նոյնպէս նստի. յետոյ գրպանէն ծխափողը հանելով զայն լաւ մը լեցուց անգլիական խիստ հոտաւէտ ծխախոտով մը եւ ըսաւ։

— Հաւատացէ՛ք, Ձիա փաշա, Պոլիս հասնելէն ի վեր առաջին անգամն է որ բերնիս համով ծխափող մը պիտի քաշեմ... միայն թէ հաճոյքս կատարեալ ըլլալու համար մէկ բան մը կը պակսի։

— Ի՞նչ է արդեօք, պատասխանեց միւսը փութկոտութեամբ։

— Գաւաթ մը ուիսքի ճիշդ այն տեսակէն որմէ անգամ մը ճաշակեցի այս պալատին մէջ։

Խօսքը տակաւին աւարտած չէր, երբ թիկնապահը մատը կոխեց ելեքտրական կոճակին վրայ եւ զանգակը հնչեց։

Սեւազգեստ ծառայ մը երեւցաւ իսկոյն.

— Լաւագոյն ուիսքիէն շիշ մը եւ երկու գաւաթ եւ սառ բերէք, հրամայեց թիկնապահը։

Քառորդ մը ետքը Մաք Լայն եւ Ձիա փաշա, երկուքը դէմ դիմաց, իրենց առաջին գաւաթը կը պարպէին։

— Գուցէ պառկելու եւ հանգստանալու պէտք ունիք, ըսաւ թիկնապահը սիկառէթ մը վառելով, բայց պիտի խընդրէի որ նախապէս շնորհ ընէիք, մէկ քանի վայրկեան ինծի մտիկ ընելու։

— Ամենայն հաճութեամբ, մանաւանդ որ տակաւին քուն չունիմ։

— Գեղեցիկ յաջողութիւն մը ունեցաք երեւան հանելով գաղտնի կազմակերպութեան թաքստոցը, շարունակեց Ձիա փաշա, թէեւ այդ յաջողութեան մէջ, անկեղծօրէն խոստովանեցէք թէ դիպուածը աւելի օգնեց ձեզ, քան թէ ձեր ճարպիկութիւնը։

— Դիպուածէն օգտուիլն ալ միթէ ճարպիկութիւն մը չէ՛, պատասխանեց Մաք Լայն հանդարտութեամբ ծխամորճը քաշելով ու մուխը դէպի ձեղուն արձակելով։ Դիպուածը ամէն վայրկեան դէմերնիս կ'ելլէ, խնդիրը զայն ձեռքէ չփախցնելուն վրայ է։

— Այո՛, գուցէ այդ մասին իրաւունք ունիք, լաւ թիկնապահը թեթեւ վիրաւորումով մը, բայց խնդիրը արդէն ասոր վրայ չէ... չարիքը գործուած է արդէն եւ չորս հոգի այս միջոցիս ձերբակալուած են...։

— Չորի՞քը ըսիք, գոչեց Մաք Լայն զարմացումով իր խօսակցին երեսը նայելով, արդեօք Աբտիւլ Համիտի հաւատարիմ թիկնապահներէ՞ն մէկն է որ այդպէս կը խօսի...։

— Ո՛չ, պատասխանեց Ձիա փաշա խրոխտ ձեւով մը, հաւատարիմ թիկնապահը չէ որ այդպէս կը խօսի, այլ գաղտնի կազմակերպութեան անդամներէն մէկը։

— Ա՛ ուրեմն ձերբակալուածները ձե՞ր ընկերներն են։

— Այո՛։

— Բայց այդ պարագային պէտք է որ գիտնայիք թէ ինչ պարագաներու մէջ այս ձերբակալումը տեղի ունեցաւ։

— Ամէն բան գիտեմ։

— Լաւ ուրեմն, գոչեց Մաք Լայն իր գաւաթը վերստին լեցնելով... ծածկամտութենէ չեմ ախորժիր եւ կը նախընտրեմ որ բացէ ի բաց անկեղծախօսիմ դիմացինիս հետ... Ես ալ գիտէի որ դուք գաղտնի կազմակերպութեան անդամներէն մէկն էք եւ ամենէն գործօն եւ օգտակար անդամներէն։ Հիմա որ այս

անհրաժեշտ յայտարարութիւնները ըրինք իրարու, գանք բուն խնդրին։ Ձեր խօսքերէն կը գուշակեմ թէ ինէ ծառայութիւն մը կը սպասէք, այնպէս չէ՞…։

— Ճիշդ գուշակեցիք։

— Եւ ի՞նչ է այդ ծառայութիւնը։

— Այս ձերբակալուած չորս անձերը, ինչ որ ալ ըլլայ իրենց հարցաքննութեան արդիւնքը, ապահովաբար մահուան պատիժը պիտի կրեն, այդ պատիժը պիտի կրնայ օրինաւոր կամ ապօրէն ձեւով տեղի ունենալ և հաւանօրէն ապօրէն ձեւով մը պիտի կատարուի, աղմուկ չհարուցանելու և ուշադրութիւն չգրաւելու համար։

— Ներեցէ՛ք, ընդմիջեց Անգլիացին, ապօրէն մահուան պատիժը չեմ կրնար կոր ըմբռնել։

— Բացատրեմ ձեզի։ Այս չորս անձերը կը հարցաքննուին, յետոյ ա՛լ մէյ մըն ալ խօսքերնին չլսուիր և ահա՛ քանի մը օր ետքը. մին իր խցիկին մէջ կախուած կը գտնուի, միւսը փորհարութեամբ մը քանի մը ժամէն կը մեռնի, երրորդը գլխպուածով ջուրին մէջ կը խեղդուի, չորրորդը…

— Հասկցայ, հասկցայ, գոչեց Մաք Լայն դէմքը ծամածռելով և ակամայ սարսուռ մը զգալով։

— Լաւ ուրեմն, շարունակեց Ջիա փաշա, չենք ուզեր որ այդպիսի արկածներու զոհ երթան մեր ընկերները։

— Բայց ես ի՞նչ կրնամ ընել ատոր համար։

— Ձենէ մէկ ծառայութիւն մը կը սպասենք, այն է՝ ասկէ ետքը պատահելիք դէպքերուն հեղինակները գտնելու կամ զանոնք արգիլելու չաշխատիլ։

Անգլիացին մէկ քանի ումպ իր սիրական ըմպելիէն խըմելէ ու ծխախոտը ուժով մը քաշելէ ետքը, կը պատրաստուէր պատասխանելու երբ դուռը զարնուեցաւ։

— Մտէ՛ք, գոչեց Մաք Լայն։

Պալատական մը ներս մտաւ, յարգանքով բարեւեց և մինչեւ Անգլիացիին մօտ գալով և արծաթէ փոքրիկ ափսէ

մը մէջ դրուած թաւշապատ տուփ մը ներկայացնելով՝ ըսաւ։

— Վեհափառ Սուլթանը բարեհաճած է այս նուէրը ընել ձեր ազնուութեան։

Մաք Լայն թաւիշէ տուփը առնելով բացաւ ու չկրցաւ զսպել հիացողական բացագանչութիւն մը։ Միաձոյլ ոսկիէ ադամանդակուռ սիգարի հոյակապ տուփ մըն էր, որուն մէջ-տեղը խոշոր զմրուխտ մը և սուտակ մը կը շողային։

— Շնորհակալ եմ. շատ շնորհակալ եմ, Վեհափառ սուլթանին այս թանկագին նուէրին համար զոր գուրգուրանքով պիտի պահեմ, կմկմաց յուզուած շեշտով մը։

— Ձեր շնորհակալութիւնը Վեհափառ տիրոջս պիտի յայտնեմ, պատասխանեց տուփը ներկայացնող պալատականը և կրկին խոնարհութիւն մը ընելով դուրս ելաւ։

Երբ առանձին մնացին՝ Ջիա փաշա ըսաւ քմծիծաղով մը։

— Ըսելիք չկայ. մեծանձն և առատաձեռն Վեհապետ մը ունինք որ գիտէ արքայավայել կերպով վարձատրել իրեն ծառայողները։

— Արդարեւ հոյակապ նուէր մըն է, պատասխանեց Մաք Լայն, որ աչքերը չէր կրնար զատել ադամանդակուռ տուփին վրայէն... տեսէ՛ք անգամ մը ինչ նուրբ ու ճաշակաւոր արուեստագէտ գործ է...։

Եւ թաւշապատ տուփը երկարեց իր խօսակցին։

Ջիա փաշա առաւ զայն, երկարօրէն զննեց հասկցողի մը պէս և ըսաւ.

— Հրաշալի՜ բան է... առնուազն հինգ հազար ոսկի կ'արժէ։

Եւ տուփը վերադարձուց Անգլիացիին՝ տարօրինակ ակնարկ մը ուղղելով անոր երեսին։ Մաք Լայն հասկցաւ այդ ակնարկին նշանակութիւնը։

— Կը կարծէք որ այս նուէրը մեր սկսած խօսակցութեան վրայ է ո և է ազդեցութիւն մը կրնա՞յ ունենալ, ըսաւ։

— Երբեք այդպիսի նախատինք մը ըսել ձեզ մտքէս չեմ անցներ, պատասխանեց Թինկնապա՛նը, ուզելով մեղմել իր կասկածոտ ակնարկին յառաջ բերած անհաճոյ տպաւորութիւնը։

— Ուրեմն շարունակենք մեր խօսքը... կ'ըսէիք թէ կ'ուզէք որ ասկէ ետքը չէզոք դիրք մը բռնեմ պատահելիք դէպքերուն հանդէպ։

— Ճիշդ այդ ծառայութիւնը պիտի խնդրեմ ձենէ։

— Բայց գիտէ՞ք թէ որքան կը դժուարացնէք իմ կացութիւնս... ահա՛ վեհապետ մը որուն ծառայութեան մէջ պաշտօնավարելու յանձն առած եմ, որ զիս առատօրէն կը վարձատրէ, որ ամէն տեսակ պատիւներով կ'ողողէ և կ'ուզէք որ անոր դէմ դառնամ... միթէ ուղղամտութեան գո՞րծ է այս։

— Երբեք դաւելու առաջարկութիւն չենք ըներ ձեզ, այլ միայն չէզոք մնալու, բանի մը չխառնուելու և թոյլ տալու մեզ որ մեր ձեռքը եղած միջոցներով փրկենք այն ընկերները որոնք անգութ և անողոք բռնաւորի մը ճանկը ինկած են։

— Իրենց յօժար կամքով, աւելցուց Մաք Լայն։

— Այո՛, իրաւ է որ իրենց յօժար կամքովը անոնք ունեցան այս ձերբակալութիւնը, շարունակեց Ջիմ փաշա, բայց որպէսզի մեր պատրաստած ծրագիրը կարենայ իրագործուիլ, պէտք է որ այդ չորս անձերը ձերբակալուելէ ետքը ազատին...։

Մաք Լայն ոտքի ելաւ և սկսաւ ժուռ գալ սենեակին մէջ, խորին մտատանջութեան մը մատնուած։ Իր կեանքին մէջ երբեք չէր գտնուած այսպիսի երկդիմի կացութեան մէջ։ Երբեք չէր պատահած որ պէտք ունենայ համաձայնելու կամ դաշնակցելու իր հետապնդած անձերուն հետ։ Ու այս բանը կը նեղէր, կը տրտմեցնէր զինքը։

— Լաւագոյն է որ անմիջապէս մեկնիմ ըսաւ ինքնիրեն, այո՛ ուրիշ ճար չի կայ։ Ձերբակալութիւնը կատարուեցաւ, հետեւաբար ինծի յանձնուած պաշտօնը աւարտած է...։ Ասկէ ետքը հոս մնալով դիրքս վտանգելէ զատ բան մը չեմ կրնար ընել։

Այս խորհրդածութիւնը ինքնիրեն ընելէ ետքը, Մաք Լայն դարձաւ Թիկնապահին քով, աթոռի մը վրայ նստաւ, երկու ձեռքը ծունկերուն վրայ դրաւ, և վճռական ձայնով մը ըսաւ։

— Մէկ ճար մը կայ բոլոր այս կնճիռները լուծելու և ամէն ինչ դիւրացնելու... այն է իմ անմիջական մեկնումս... վաղը առտու կը վերադառնամ Լոնտոն։

—Ընդհակառակը ձեր հոս մնալը անհրաժեշտ է վտանգուած անձերուն պաշտպանութեան համար, պատասխանեց Ջիա փաշա։

— Բայց ես չեմ ուզեր իմ ազատութիւնս կաշկանդել ձեր շահուն համար, գոչեց Մաք Լայն ձայնը բարձրացնելով։

— Սակայն դուք մեր ազատութիւնը կաշկանդեցիք ձեր շահուն համար, պատասխանեց պալատական Թիկնապահը ինքն ալ ձայնը բարձրացնելով։

Այս պատասխանը այնքա՜ն բուռն ու անակնկալ էր որ Անգլիացին շփոթեցաւ և չկրցաւ անմիջապէս խօսք մը գտնել ըսելու։

Ջիա փաշա օգուտ քաղեց իր խօսակցին այս կացութենէն և շարունակեց.

— Այո՛ պարոն Մաք Լայն, ձեր խղճին կը թողում ամէն բան... եթէ խնդիրը սովորական ոճրագործներ ձերբակալելու վրայ ըլլար, անշուշտ խղճի հանդարտութեամբ այժմ կրնայիք վերադառնալ ձեր հայրենիքը և հոն ձեր կնոջ ու զաւակներուն հետ վայելել ձեր ստացած վարձքն ու նուէրները, բայց ահա՛ դուք ալ կը տեսնէք որ այն մարդիկը զորս հալածելու համար Պոլիս կանչուեցաք, ո՛չ թէ ոճրագործներ չեն, այլ ընդհակառակը անձնազոհներ՝ որոնք մարդկութեան մե-

ծագոյն ոճրագործին դէմ պայքար մղելու և իրենց թշուառ հայրենիքը վերականգնելու համար ամէն բան թողած, ամէն զրկանքի յանձնառու եղած, կռիւ կը մղեն։

Թիկնապահը յուզուած կանգ առաւ և Մաք Լալնի երեսը նայեցաւ ակնապիշ։

Անգլիացին իր ծխամորճը ուժով մը քաշեց, մուխը դէպի ձեղունը արձակեց և ըսաւ։

— Հոս պիտի մնամ։

— Շնորհակալ եմ. ուրեմն, պատասխանեց Զիա փաշա։

---

ԳԼՈՒԽ Ը.

## ՍԱԼԻՀԱ ՀԱՆԸՄԻ ՀԱՐՑԱՔՆՆՈՒԹԻՒՆԸ

Այն ընդարձակ սրահը որ արտասովոր Ատեանի մը փոխուած էր չորս ձերբակալուածները դատելու համար, Երլտըզի այն յարկաբաժինին մէջ կը գտնուէր որ Ապտիւլ Համիտի բնակութեան յատկացուած էր և որ կահաւորուած էր մասնաւոր շքեղութեամբ մը։ Այս դահլիճը ականաւոր հիւրերու ընդունելութեան կը ծառայէր և շատ հազուադէպ պարագաներու մէջ կը բացուէր։

Հարցաքննութիւնները այդ սրահին մէջ կատարելու հրամանն տրուելուն պէս, փութով պէտք եղած պատրաստութիւնները տեսնուեցան։ Սենեակին մէկ անկիւնը շեղակի մեծ գրասեղան մը բերուեցաւ կիսաբոլորակ ձեւով և շուրջը տասներկուքի չափ թիկնաթոռներ շարուեցան։ Յետոյ, այդ

գրասեղանէն երկու մէթր հեռաւորութեամբ, վարագոյրով ծածկուած դրան մը քով ուրիշ թաւշապատ աթոռ մը դրուեցաւ, որ պիտի ծառայէր իբրեւ ամբաստանեալներու նստարան:

Վարագոյրով ծածկուած դուռը կը հաղորդակցէր սենեակի մը հետ, ուրկէ ուղղակի Համիտի ննջարաններէն մէկը կ'երթըցուէր, որովհետեւ, ինչպէս յայտնի է, կասկածոտ Սուլթանը սովորութիւն չունէր միշտ միեւնոյն ննջասենեակին մէջ պառկելու: Այդ դուռը բացուելով, վարագոյրին ետեւէն, Ապտիւլ Համիտ կրնար, առանց տեսնուելու ամէն բան լսել ու դիտել, որովհետեւ վարագոյրին վրայ մասնաւոր ծակեր ալ բացուած էին: Ելեկտրական լոյսերը այնպիսի ձեւով մը յարմարած էին որ մինչ վարագոյրը մութին մէջ կը մնար, ամբաստանեալին աթոռն ու գրասեղանը լոյսի մէջ ողողուած էին:

Բոլոր այս մանրամասնութիւնները կատարուած էին Ապտիւլ-Համիտի հրահանգներուն համեմատ:

Ժամը, ըստ եւրոպացւոց, առտուան երեքն էր երբ դահլիճին աջակողմեան մեծ դուռը բացուեցաւ եւ հետըզհետէ ներս մտան Իզզէթ փաշա, Ապտիւլ Ղանի աղա, Ռաղըպ փաշա, Գատրի պէյ եւ ոստիկանութեան նախարար Շէֆիք փաշա որ վերջին վայրկեանին Համիտի հրամանով բերուած էր հարցաքննութեան ներկայ գտնուելու համար:

Բոլոր այս մարդիկը, իրենց դժնէ ու մռայլ կերպարանքով, աւելի դահիճներու քան թէ դատաւորներու կը նմանէին եւ յայտնի կը տեսնուէր որ ո՛չ թէ արդար գործ մը տեսնելու այլ չարաչուք ոճիր մը գործելու կը պատրաստուէին:

Ամենքն ալ յամր ու միօրինակ գնացքով մը յառաջացան կիսաբոլորակ գրասեղանին քով ու բազմեցան թիկնաթոռներուն մէջ: Մէկ քանի թիկնաթոռ պարապ մնացին: Մէջտեղը նախագահի աթոռին վրայ բազմեցաւ Համիտի սիրական քարտուղարը Իզզէթ փաշա:

Հազիւ թէ ամէնքը իրենց թիկնաթոռներուն վրայ տե-

ղաւորուած էին, երբ դահլիճին դուռը կրկին բացուեցաւ և ներս մտաւ Նէճիպ Մէլհամէ փաշան, զոր վերջին րոպէին Ապտիւլ-Համիտ ղրկած էր, որպէսզի ներկայ ըլլայ հարցաքննութեան։

Նէճիպ Մէլհամէ ինքնավստահ քայլով մը և թեթև հեգնական ժպիտ մը շրթունքներուն վրայ, մօտեցաւ Իզզէթ փաշայի և անոր ականջին քանի մը բառեր փսփսաց։

Իզզէթ իսկոյն ոտքի ելաւ և փութկոտ ձևով մը և բարձրաձայն ըսաւ․

— Փաշա էֆէնտի, կը խնդրեմ հաճեցէք նստիլ։

Նէճիպ Մէլհամէ բոլորակ սեղանին ծայրը պարապ թիկնաթոռի մը մէջ տեղաւորուեցաւ։

Նոյն միջոցին վարագոյրը, որուն մօտ դրուած էր ամբաստանեալներուն յատկացուած թաւշապատ աթոռը, թեթև մը սարսռաց։ Ապտիւլ Համիտ եկած էր իր տեղը գրաւելու և ծածկաբար ներկայ գտնուելու հարցաքննութեան։

— Մեր Վեհափառ տիրոջ փափաքին համեմատ, խօսք առաւ Իզզէթ փաշա, հարցաքննութիւնը պիտի սկսինք Սալիհա հանըմէն, որ դաւադիրներու գլխաւորը ըլլալ կը թուի։

— Շատ աղէկ, չատ աղէկ, ձայները լսուեցան մէկ քանի կողմէ։

Իզզէթ, գրասեղանին վրայ, իր քով դրուած արծաթեայ զանգակը հնչեցուց։

Սև ըրաէնկօթով մօրուսաւոր մարդ մը ներս մտաւ։

— Ներս բերէ՛ք Սալիհա հանըմը, ըսաւ Իզզէթ հանդիսական ձայնով մը։

Սևազգեստ մարդը խոնարհութիւն մը ըրաւ և դուրս ելաւ։

Սրահին մէջ ծանր ու ճնշող լռութիւն մը կը տիրէր։ Ամէնքը իրենց թիկնաթոռներուն մէջ անշարժ ու արձանացած կը մնային, առանց ո և է բառ մը փոխանակելու։

Դուռը բացուեցաւ կրկին ու այս անգամ Սալիհա հանըմ,

երկու հետեւորդներով, ներս մտաւ և յամրաքայլ սկսաւ յառաջանալ դէպի բոլորակ գրասեղանը։

Սալիհա հանըմ այնքա՛ն հաստատ ու կորովի գնացքով մը ու այնքա՛ն պատկառազդեցիկ վեհութեամբ մը ներս մտած էր որ բոլոր ներկաները տեսակ մը ակնածանքով համակուեցան։

Երբ բաւական մօտեցաւ սեղանին, Իզզէթ փաշա որ ակնարկը անքթիթ անոր վրայ յառած էր, կէս մը ոտքի ելլելով ըսաւ.

— Հանըմ էֆէնտի, հաճեցէ՛ք աթոռին վրայ նստելու, և ձեռքովը մատնանիշ ըրաւ թաւշապատ նստարանը։

Սալիհա, առանց բառ մը արտասանելու, ցոյց տուած տեղը ուղղուեցաւ և աթոռին վրայ նստաւ, դէմքը դէպի իր դատաւորներուն դարձուցած ու իր ակնարկը խրոխտաբար անոնց երեսին ուղղելով։

Իզզէթ փաշա, որ անհամբեր ձեռքով մը իր առջեւ դրըուած թուղթերու ծրար մը կը խառնշտկէր, գլուխը խոնհարած, դէպի ամբաստանեալը դարձաւ և ըսաւ.

— Ի՞նչ է ձեր անունը։

— Սալիհա։

— Ամուսնացա՞ծ էք։

— Այո՛... հալածական Նէճիպ պէյի հետ։

— Ո՞ւր է ձեր ամուսինը։

— Սուլթան Աբտիւլ Համիտին հարցուցէ՛ք։

Սալիհա հանըմ այս խօսքերը արտասանած ատեն փայլակ մը անցաւ իր աչքերուն մէջէն.

— Ի՞նչ ըսել կ'ուզէք, գոչեց Իզզէթ փաշա բարկաճայթ ձայնով մը, ձեզի կը հարցնեմ թէ ձեր ամուսինը ո՞ւր է, ո՞ղջ է... այս հարցումիս պատասխանեցէ՛ք ուղղակի։

— Ճիշդ ես ալ ատոր կը պատասխանեմ, շարունակեց Սալիհա հանըմ անյողդողդ ձայնով մը, և ձեզի կ'ըսեմ որ ամուսնոյս, հալածական Նէճիպ պէյի ողջ կամ մեռած ըլլալը ձեր Սուլթան Համիտին հարցուցէ՛ք...։

*— Բայց կ'երեւայ որ դուք ձեր կացութեան ծանրութիւնը չէք ըմբռներ կոր, գոչեց Իզզէթ, երեսին գոյնը նետած, ձեր այդ յանդգնութիւնը այսպիսի ատեանի մը առջեւ ոչ միայն անպատշաճ՝ այլ միանգամայն յիմարական է... ուստի կը հրաւիրեմ ձեզ որ խելքերնիդ գլուխնիդ ժողվէք ու հարցումներուս կանոնաւորապէս պատասխանէք։*

*— Կ'ուզէ՞ք որ իմ ու իմ ընտանիքիս պատմութիւնը ընեմ ձեզ, լաւ ուրեմն, մտիկ ըրէ՛ք, գոչեց կինը գլուխը բարձրացնելով։*

*— Մենք կ'ուզենք որ մեր հարցումներուն պատասխանէք միայն, ըսաւ Իզզէթ փաշա։*

*— Եւ ես կ'ուզեմ իմ ուզածիս պէս խօսիլ կամ բոլորովին լռել։*

*— Բայց մենք կրնանք ձեզ խօսեցնել տալ մեր ուզածին պէս եւ հակառակ ձեր կամքին, ըսաւ Իզզէթ, որ յայտնապէս կը սրդողէր այդ կնոջ յանդուգն ընթացքէն։*

*Սալիհա հանըմ ամենախորին արհամարհական ակնարկով մը պատասխանեց նախագահին սպառնալիքներուն։*

*— Իմացա՞ք ըսածներս, գոչեց միւսը դողահար ձայնով մը։*

*— Այո՛, Պատասխանեց Սալիհա ամենայն հանդարտութեամբ, եւ կը սպասեմ որ ի գործ դնէք այն միջոցները որոնցմով զիս պիտի կրնաք խօսեցնել։*

*— Գուցէ ձեր կնոջական հանգամանքին ապաւինելով կը կարծէք թէ կրնաք անպատիժ կերպով այսպէս ընդդիմախօսել եւ ըմբոստանալ այս բարձրագոյն ատեանին բայց չարաչար կը սխալիք, հոս ո՛չ կին կայ ո՛չ էրիկ մարդ, այլ վեհապետին ու պետութեան դէմ դաւաճանող ոճրագործներ, որոնց համար փրկութեան ուրիշ յոյս չմնար եթէ ո՛չ անկեղծ խոստովանութեամբ մը մեղմացնել իրենց սպասող պատիժին սաստկութիւնը... եթէ այդ խոստովանութիւնը յօժարակամ չը-*

նէք, այն ատեն կրնաք ապահով ըլլալ թէ սորվեր էք պատիժը տասնապատիկ աւելի խիստ պիտի ըլլայ . . . և միևնոյն ատեն պիտի սորվինք դիմելու տարբեր միջոցներու որոնք պիտի կրնան ձեր լեզուն բանալ . . . ։

— Ճիշդ այդ միջոցներուն կը սպասեմ ես ալ. հետաքր-քիր եմ գիտնալու թէ ինչ կերպով պիտի կրնաք խօսեցնել Սալիհան երբ խօսիլ չուզեր, և միևնոյն ատեն լռեցնել՝ երբ խօսիլ կ'ուզէ։

— Ուրեմն կը յամառի՞ք ու կը մերժէ՞ք խօսիլ։

— Ընդհակառակը, ըսաւ Սալիհա, որուն սովորաբար զժգոյն դէմքը յուզումէն գունաւորուած էր, ընդհակառակը խօսիլ կ'ուզեմ և եթէ խօսիլ չուզէի հոս չէի գար, որովհետև մի՛ կարծէք որ իմ կամքիս հակառակ հոս կը գտնուիմ։ Եթէ ձերբակալուեցայ, պատճառը այն է որ ուզեցի ձերբակալուիլ։ Միայն թէ պիտի խօսիմ իմ ուզածիս պէս և ո՛չ թէ ձեր ուզածին պէս . . . ։

Այս խօսքերը զորս հանդարտ՝ բայց միևնոյն ատեն կը-րակոտ շեշտով մը արտասանած էր Թրքուհին, խոր տպաւորութիւն մը գործեցին իրեն դատաւոր հոն բազմած պալատականներուն վրայ։ Երբեք չէին սպասեր այս նկարագրով մէկը գտնել իրենց դէմը, մանաւանդ կին մը։ Աբտուլ Համիտ ինքն ալ մասնաւորապէս ուզած էր որ նախ և առաջ կնոջմէն սկսի հարցաքննութիւնը, ո՛չ թէ անոր համար որ այդ կինը խումբին կարևոր պետերէն մէկը ըլլալ կը թուէր, այլ մանաւանդ որ կը յուսար շատ դիւրաւ խոստովանցնել զինքը և անկէ քաղած տեղեկութիւններէն օգտուիլ, միւսները խօսեցնելու համար։ Եւ ահա՝ այժմ անյուսալի ընդդիմութեան մը կը բախխէին։ Սալիհա այնպիսի կերպով մը ցոյց կուտար որուն առջև ակամայ կ'ընկրկէին։ Իզզէթ փաշայի սպառնալիքները ո և է արդիւնք չէին ունեցած ու հիմա ինք շուարած մնացեր էր։ Իրաւցնէ պէ՞տք էր որ այդ կինը չարչարանքներու ենթարկել տալ որպէսզի կարենար զայն խօսեցնել։ Ասիկա խնդիր մըն

էր որուն չէր համարձակեր իր կողմէ որոշում մը տալու։

Բոլորներուն հետ քանի մը վայրկեան ցած ձայնով խորհրդակցելէ ետքը, Իզզէթ կրկին խօսքը տիկինին ուղղեց և ըսաւ.

— Ձեր բռնած ընթացքը ո՛չ միայն անիմաստ ու տարօրինակ է այլև միանգամայն վտանգաւոր թէ՛ ձեզի և թէ ձեր ընկերներուն համար, որոնց վիճակը չափազանց կը ծանրացնէք այս կերպով։ Ձեր ընկերները մի՛ կարծէք թէ նոր յայտնութիւններ պիտի ընեն մեզի համար։ Մենք արդէն ամէն բան գիտենք, հետևաբար...։

— Հետևաբար կատակերգութիւն մըն է որ կը խաղաք այստեղ, գոչեց Սալիհա հանըմ, փաշային խօսքը կտրելով, եթէ ամէն բան գիտէք ուրեմն ինչու համար հոս այսպէս հանդիսաւորապէս չարուած կ'ուզէք զիս բռնի հարցաքննել։ Ատեա՞ն է այս թէ թատրոն, դատաւո՞ր էք դուք թէ դերասան...։

— Տիկին չափը կ'անցունէք կոր, պոռաց Իզզէթ բարկութենէն կասկարմիր կտրած, ինչպէ՞ս կը համարձակիք նախատել կայսերական ատեանին։

— Կայսերական հացկատակներ ըսէք, աւելի ճիշդ խօսած կ'ըլլաք. պատասխանեց կինը հանդարտութեամբ։

— Լռեցէ՛ք, պոռաց Իզզէթ այլայլած, կտրուկ կանգնելով թիկնաթոռին վրայէն։

Սալիհա արհամարհական ժպիտով մը գլուխը անդին դարձուց։

Այս պայմաններուն մէջ անկարելի էր հարցաքննութիւնը առաջ տանիլ։ Իզզէթ կրկին իր ընկերներուն հետ ցած ձայնով կարճ խօսակցութիւն մը ընելէ ետքը ոտքի ելաւ և դէպի դահլիճին դուռը ուղղուեցաւ։

Յայտնի էր որ Աբտիւլ Համիտի քով կ'երթար հրահանգ մը առնելու համար։

Իր բացակայութիւնը քառորդի մը չափ տևեց և այդ միջոցին խոր լռութիւն մը տիրեց սրահին մէջ։

Վերջապէս դուռը բացուեցաւ և փաշան կրկին երևցաւ։

Երբ կրկին բազմեցաւ իր նախագահական աթոռը, դէմքը առջի խստութիւնն ու դաժանութիւնը կորսնցուցած էր։ Ժպտերես քօլթխներուն հետ քանի մը խօսք փոխանակեց և յետոյ Սալիհա հանըմին դառնալով՝ ամենայն քաղցրութեամբ ըսաւ.

— Հանըմ էֆէնտի, քիչ մը առաջ, հաւանօրէն իմ խօսքերուս ոգին լաւ չըմբռնելով յուզուեցաք և կարգ մը խօսքեր ըսիք որոնք այսպիսի ատեանի մը առջև անվայել էին և ես ալ, բնականաբար ձեր այդ խօսքերէն ազդուած չկրցայ պարկեշտութիւնս պահել և ասկէ առաջ եկաւ ցաւալի թիւրիմացութիւն մը։ Այժմ կը խնդրեմ որ տեղի ունեցած այդ անպատեհ խօսքերը մոռնանք և չեղեալ համարենք։ Մեր նպատակն է ձեզ ո՛չ թէ իբրև թշնամիներ նկատել և ըստ այնմ վարուիլ այլ ուշի ուշով ուսումնասիրել և հասկնալ թէ ի՛նչ պատճառաւ ձեռնարկած էք կարգ մը արարքներու, որոնք դատապարտելի կ'երևան մեզի։ Եթէ ձեզի այդ արարքներուն մղող պատճառներուն մէջ արդարացի կէտեր կան՝ վստահ եղիք որ մեր վեհափառ տէրը, իր անսահման բարութեամբը և անհուն ներողամտութեամբը նկատողութեան պիտի առնէ զանոնք ու պարտուպատշաճը պիտի անօրինէ իր աննըման իմաստութեամբը։ Այսպէս ուրեմն, մեր կատարածը հարցաքննութիւն մը չէ, և մենք ալ դատաւորներ չենք, այլ տեսակ մը պետական խորհուրդ գումարուած է հոս ձեր դանգատները լսելու համար, ուստի նոյն իսկ ձեր շահը կը պահանջէ որ ամէն բան տեղն ի տեղօք ըսէք։

— Ճիշդ իմ փափաքս ալ այդ է. պատասխանեց Սալիհա հանըմ, որ նուրբ քմծիծաղով մը մակի ըրած էր Իզզէթի խօսքերը։

— Ուրեմն այժմ կրնաք մեզ հասկցնել, ըսաւ պալատականը զուարթութեամբ, հաճեցէ՛ք մեզ ըսել ձեր ո՛վ ըլլալը և ի՛նչ նպատակի ծառայելը։

Սալիհա հանըմ իր աթոռին վրայ շարժում մը ըրաւ, երեսը բոլորովին դէպի իր դէմը գտնուողները դարձնելու համար. յետոյ հանդարտ ու վճռական ձայնով մը սկսաւ խօսիլ.

— 43 տարեկան եմ, ըսաւ և ծնողացս երրորդ աղջիկ զաւակն եմ. հայրս, Հիւսնի էֆէնտի, Ապտիւլ Ազիզ կայսեր հաւատարիմ պաշտօնեաներէն էր և մինչև ետքը, ինչպէս յաջողութեան և փառքի վայրկեաններուն՝ նոյնպէս դժբախտութեան ատեն՝ հաւատարիմ մնաց անոր։ Երբ ամենքը իր անկումէն ետքը իրեն երես կը դարձնէին ապերախտութեամբ և կը սկսէին Ապտիւլ Համիտի նորածագ աստղին երկրպագել, անիկա հաւատարիմ ու անձնուէր մնաց իր նախկին վեհապետին և հակառակ իրեն եղած փայլուն խոստումներուն՝ չուզեց երբեք զայն ուրանալ։ Ես այն ատեն տասնըվեց տարեկան էի, բայց լաւ կը յիշեմ բոլոր այս խռովութիւնները, մանաւանդ որ խեղճ հայրս յաճախ մեզ իր քով կը կանչէր և մեզի կը պատմէր իր հոգեկան ամբողջ տառապանքները և այն անզօր կատաղութիւնը որ իր հոգին կը փոթորկէր, իր սիրելի վեհապետին կրած չարչարանքները և ստորնացումները տեսնելով։ Օր մըն ալ լալով մեզի պատմեց թէ ի՛նչպէս Ապտիւլ Ազիզ մեռած գտնուած էր իր սենեակին մէջ և թէ ի՛նչպէս այդ մահը անձնասպանութեան մը կը վերագրուէր։ Սակայն հայրս բնաւ երբեք չհաւատաց այդ երակները կտրելով ինքնասպան ըլլալու պատմութեան և մինչև ետքը կը գոչէր.

— Սպաննեցին, վստահաբար սպաննեցին զինքը։

«Տարի մը ետքը արդէն Սուլթան Մուրատ՚ալ գահընկէց եղած էր և Ապտիւլ Համիտ գահը բարձրացած։

«Այս միջոցին հայրս զիս ամուսնացուց Նէճիպ պէյի հետ որ հազիւ 26 տարեկան, արդէն փայլուն զինուորական մըն էր և հարիւրապետի աստիճան ունէր։ Թուրքեւռուսական պատերազմի միջոցին էր ու ամուսինս Պոլիս մնացած, Սուլթանին անձնական գունդերուն կը պատկանէր, բայց ամուսնութենէն հազիւ ամիս մը ետքը, չկրնալով հանդուրժել Պոլ-

սոյ մէջ ձեռքերը ծալլած մնայ, երբ իր ընկերները և պաշտօնակիցները հայրենիքի պաշտպանութեան համար պատերազմի դաշտը կը դիմեն, գործօն բանակի մէջ ծառայելու համար խնդրագիր մատուց և իր փափաքին համեմատ գրըկուեցաւ Պալքանեան բանակին մէջ: Ամբողջ պատերազմի միջոցին՝ անօրինակ քաջութիւն մը ցոյց տուաւ, Բլէվնայի հերոսական պաշտպանութեան ժամանակ մէկ քանի անգամներ վիրաւորուեցաւ Թշնամիին գնդակներէն և ի վերջոյ Օսման փաշայի բանակին հետ գերի ինկաւ, տակաւին յաջողեցաւ փախչիլ ու վերադառնալ Պոլիս՝ ուր խաղաղութիւնը կնքուելէ ետքը աստիճանի բարձրացում ստացաւ...

— Բայց Սալիհա հանըմ, ընդմիջեց Իզզէթ փաշա, ձեր յիշած այս բոլոր մանրամասնութիւնները ո և է կապակցութիւն չունին մեզ շահագրգռող նիւթոյ պարագաներուն հետ, ուստի կը խնդրեմ որ ձեր ընտանեկան կեանքին մասին տուած ծանօթութիւններդ բաւ համարելով, դառնաք ուղղակի նորագոյն դէպքերուն:

— Փաշա էֆէնտի, գոչեց Սալիհա հանըմ, յանկարծ բորբոքելով, հին ու նոր դէպքեր չի կան, այլ դէպքերու շղթայարում կայ միայն... եթէ կ'ուզէք երէկուան ոճիրները իմանալ, պէտք է որ նախ հին ոճիրները լսէք, որովհետև այս վերջինները առաջիններուն ուղղակի հետեւութիւններն են... իսկ եթէ իմ պատմութիւնս կը ձանձրացնէ ձեզի, այն ատեն կը լռեմ ու բերանս ա՛լ չեմ բանար:

Այս խօսքերը այնքան հաստատ ու վճռական շեշտով մը արտասանուած էին որ Իզզէթ փաշա խելքն զգաց որ դարձեալ քիչ մը առաջուան դժուարին կացութեան պիտի մատնուէր իրենց հարցաքննութիւնը եթէ ընդդիմախօսէր. ուստի համակերպութեամբ ըսաւ.

— Քանի որ ուրիշ ճար չի կայ, լա՛ւ ուրեմն, ձեր պատմութիւնը շարունակեցէ՛ք ինչպէս որ կ'ուզէք:

Սալիհա հանըմ խրոխտ ու յաղթական նայուածք մը

պառկելէ ետքը իր դաստառներուն վրայ, անայլայլ ձայնով մը սկսաւ խօսիլ, ճիշդ այն տեղէն ուր խօսքը ընդմիջուած էր.

— Այսպէս ամուսինս աստիճանի բարձրացում ստացաւ։ Քանի մը տարի ետքը Միհրան փաշայի դատաստանը տեղի կ'ունենայ։ Այդ դատը, ինչպէս գիտէք, Ապտիւլ Համիտի ոճիրներուն սկզբնաւորութիւնն է...

Այս խօսքերը որ ամենաբնական ձայնով մը արտասանուած էին, ափիբերան յուզումի մը մատնեցին բոլորակ դրասեղանին շուրջ բազմած պալատականները։ Իզզէթ փաշա դողահար ձայնով մը գոչեց։

— Բայց, հանըմ էֆէնտի, մեր ներողամտութիւնը չարաչար կը գործածէք կոր և ձեր խօսքերը անհանդուրժելի են այսպիսի Սուլթանի մը առջև... ինչպէ՞ս կը համարձակիք այդ տեսակ ամբարշտութիւններ ընել Վեհապետի մը որուն անունը օրհնութեամբ և երկիւղածութեամբ պէտք է յիշատակենք ամենքս ալ։

— Երբոր պատմութիւնս աւարտեմ, այն ատեն եթէ յարմար դատէք; ամէնքդ միասին ձեր օրհնութիւնները ըրէք, պատասխանեց կինը միշտ միևնոյն անայլայլ հանդարտութեամբ։

— Խօսեցէ՛ք, բայց նորէն կը կրկնեմ, զգուշացէ՛ք որբազան անուններ նախատելէ, եթէ ո՛չ չպիտի կրնանք մինչև ետքը ներողամտութեամբ վարուիլ։

— Այսպէս ուրեմն, Միհրան փաշայի դատաստանը սկսաւ, շարունակեց Սալիհա հանըմ... այդ միջոցին ամէն մարդ իր խղճմտանքը վաճառքի հանած էր պատիւներու արժանանալու և առաջ երթալու համար։ Անոնք որոնք երէկ Միհրան փաշայի հիացողներն ու կուսակիցներն էին, այսօր անոր դէմ կը դառնային ու զայն ամբաստանել կը ճգնէին։ Հայրս, Հիւսնի էֆէնտի, ինչպէս ըսի, Սուլթան Ապտիւլ Ազիզի հաւատարիմ պաշտօնեաներէն էր և ատոր համար չէր սիրեր Միհրան փաշան զոր Սուլթանին դաւընկէցութիւնը

պատրաստողներուն գլխաւորը կը նկատէր իրաւամբ։ Այսու-հանդերձ կը հիմնար անոր ազատամտութեան, հայրենասի-րութեան և կորովի նկարագրին վրայ։ Ապտիւլ Համիտ, որ գիտէր հօրս զգացումները Սահմանադրութեան հիմնադրին հանդէպ, ուզեց օգուտ քաղել անկէ և զայն իբրև ամբաս-տանող մը գործածել Միտհատ փաշայի դէմ։ Բայց հայրս այդ-պիսի վատութիւն մը չուզեց յանձն առնել և այդ առաջարկը Համիտի կողմէ իրեն բերող պալատականը դուրս վռնտեց ա-մենաբուռն անարգանքներով։

«Ասիկա բաւ եղաւ որ Ապտիւլ Համիտ հօրս մահացու թշնամին դառնայ։ Միտհատ փաշայի դատաստանէն ու աք-սորի ղրկուելէն քանի մը ամիս ետքը, հայրս ալ, առանց ո և է յայտնի չարժառիթի մը, յանկարծ, ամբողջ ընտանիքով կ'աքսորուէր Այնթապ ու անկէ ալ՝ Հալէպ։

— Բայց հանըմ էֆէնտի, այս պատմութիւնը կրնայ մինչև առտու տևել, առանց բուն խնդրին գալու, գոչեց Իգլէթ, որ կը զգար թէ Սալիհայի դիտաւորութիւնն էր ամ-բողջ Ապտիւլ Համիտի իշխանութեան ամբաստանագիրը ընել։

— Ես այդ պատմութիւնը քանըհինգ տարի ապրեցայ, դուք ալ կրնաք ուրեմն քանի մը ժամ մտիկ ընել, պատաս-խանեց Սալիհա հանդարտ ու կորովի ձայնով մը։

Պալատականը ճարահատեալ լռաւ.

— Շարունակեցէ՛ք, բայց կը խնդրեմ կարելի եղածին չափ համառօտելով անցած դէպքերը։

— Ինչո՞ւ կը վախնաք անցեալէն... ապագայէն վախ-ցէ՛ք, գոչեց Սալիհա, որուն հանդարտութիւնը յանկարծ տեղի տուած էր բուռն յուզումի մը։

— Մենք ո՛չ անցեալէն, ո՛չ ալ ապագայէն վախնալու պատճառ մը ունինք, պատասխանեց Իգլէթ ինքն ալ բար-կութենէն չինելով, քանի որ խղճերնիս հանդարտ է և մեր պարտականութիւնը հաւատարմութեամբ կը կատարենք։

— Այո՛, պոռաց կրկին Սալիհա, ձեր խղճին հանդար-տութիւնը ձեր դէմքերուն վրայ նկարուած է։

Եւ ցաւատանջ ժպիտ մը իր դէմքը ծամածռեց։

— Այս փոխանակուած խօսքերը ո՛ և է օգուտ մը չունին, ըսաւ Ապտիւլ Համիտի սիրական քարտուղարը, և եթէ այդպէս շարունակենք վերջը չենք կրնար ելլել... Հաճեցէք ժամ առաջ ձեր պատմութիւնը աւարտել և մանաւանդ բուն խնդրին վրայ խօսիլ։

— Բայց թող չէք տար որ կանոնաւոր կերպով պատմութիւնս առաջ տանիմ։

— Խօսեցէ՛ք, տիկին, խօսեցէ՛ք, ի սէր Աստուծոյ, գոչեց Իզզէթ անհամբեր և ճարահատեալ շեշտով մը։

— Այսպէս ուրեմն, Ապտիւլ Համիտ հայրս իր անձնուիրութեանը համար Այնթապ աքսորել տալէ ետքը, ուզեց նաև ոխակալութիւնը դարձնել իմ ամուսնոյս դէմ որ, ինչպէս ըսի, տիպար զինուորական մըն էր և օրինակելի ընթացք մը ունեցած էր պատերազմին ատեն։ Ինք ազատական և համարձակախօս ու միանգամայն անկեղծ անձ մը ըլլալով՝ երբեք կեղծաւորութեան նրբութիւններուն վարժուած չէր ու առիթը ներկայացած ատեն չէր վարաներ խիստ բառերով քննադատելու Համիտը և զինքը շրջապատող կեղծաւորներու և էնթրիկաններու խմբակը։

Սակայն բաւական էր արդէն զինքը դատապարտելու համար յաչս Ապտիւլ Համիտի որ պատեհ առիթի մը կը սպասէր իր վրէժը լուծելու համար, սակայն չէր համարձակեր բացէ ի բաց փորձանք մը բերել այդ մարդուն գլխին որ իր քաջութեան և անկեղծութեանը համար մեծ համակրանք կը վայելէր բանակին մէջ և նոյն իսկ իր թշնամիները կը պատկառէին իրմէ։ Համիտ սակայն հաստատապէս միտքը դրած էր այդ պատուական անձին կորուստը ո՛ և է ձևով մը։ Հօրս աքսորուելէն քանի մը ամիս ետքը, փոքրիկ ապստամբութիւն մը կը ծագէր Արաբիոյ մէջ և հարկ կ'ըլլար այդ ապըստամբները զսպելու համար զօրաբանակ մը ղրկել Եէմէն։ Ամուսինս, Նէձիպ պէյ, հրաման կըստանար այս արշաւա-

խօսքս ստէպ ստէպ ընդմիջէք, գիտցած ըլլաք որ ա՛լ բնաւ չեմ խօսիր։

— Կը խոստանամ ձեր խօսքը ա՛լ չընդմիջելու, բայց դուք ալ ջանացէք մանակի խրողութիւններուն վրայէն արագ անցնելու և բուն նիւթին գալու։

— Ամէն բան կարգաւ պիտի պատմեմ, պատասխանեց Սալինա հանդարտութեամբ։

Եւ իր պատմութիւնը առաջ տարաւ հետեւեալ կերպով.

— Ես և ամուսինս այնքա՛ն սերտ սիրով մը կապուած էինք իրարու որ Եէմէն երթալու հրամանը առնելուն պէս, առանց վարանումի յայտարարեցի թէ ես ալ իրեն պիտի ընկերանայի իմ երկու մանչ զաւակներովս։ Ամուսինս ճամբորդութեան դժուարութիւնները և կլիմայի դժուարութիւնները և վնասակարութիւնը նկատի առնելով՝ ուզեց ընդդիմանալ, բայց ես այնքա՛ն պնդեցի որ վերջապէս միասին մեկնեցանք մեր զաւակներուն հետ։

Արաբիա հասնելով, ես երկու զաւակներուս հետ մնացի Հոտէյտա, որ ծովեզերեայ քաղաք մը ըլլալով՝ բաղդատաբար աւելի բնակելի է օտարներուն համար, մինչ ամուսինս իր զօրաբանակին հետ մեկնեցաւ ներսերը։ Ապստամբները երկար չկրցան դիմադրել և մեր հասնելէն երեք ամիս ետքը ամէն բան հանդարտած էր և հրաման եկած էր զօրքերը վերադարձնելու։

Կը յուսայինք որ մենք ալ պիտի կրնայինք վերադառնալ և արդէն սկսած էինք մեր պատրաստութիւնները տեսնել, երբ բանակի հրամանատար փաշան ամուսինս իր քով կանչելով կը յայտարարէ.

— Ապստամբներու դէմ մղուած կռիւներուն ժամանակ ձեր ցոյց տուած արիութիւնն ու կորովը մեծապէս գնահատուած է և ապագայ խառնաշփոթութիւնները արգիլելու նպատակաւ հարկ դատուած է որ դուք հոս մնաք իբրեւ վերին օգնական Եէմէնի բանակին հրամանատարին։ Անիկա պատիւ

մըն է որ մեծ գոհունակութեամբ պիտի ընդունիք անշուշտ։

Ամուսինս բացարձակապէս մերժած է այդ պատիւը, ըսելով որ կը նախընտրէ Թուրքիոյ մէջ աւելի համեստ պաշտօն մը ունենալ. բայց ի զո՜ւր։ Հրամանատարը յայտարարած է որ պատերազմական նախարարութենէն եկած հրամանը վըճռական է։

«— Բայց ասիկա աքսոր մըն է ուրեմն, գոչած է ամուսինս։

«— Ինչպէս կ'ուզէք այնպէս համարեցէք», պատասխանած է փաշան։

Եւ ահա՛, այսպէս, երկրորդ անգամ ըլլալով, ամուսինս իր քաջութեան և հայրենիքի մատուցած ծառայութեանցը փոխարէն աքսորի կը դատապարտուէր։

Իրեն հանդէպ ցոյց տրուած այս անարդարութիւնը, սրտամըռնեցուցած ու դառնացուցած էր իր սիրտը։ Այսու հանդերձ ուզեց համբերութեամբ տոկալ ամէն բանի։ Հազիւ թէ քանի մը ամիս անցած էր, երբ հրաման ստացաւ Թայիֆ երթալու ուր կը գտնուէին Միտհաթ փաշա և իր ընկերները։

Կառավարիչը այդ հրամանը իրեն հաղորդելով ըսած էր.

— Մեր առած ստոյգ տեղեկութիւններուն համեմատ, Անգլիոյ մէջ, Միտհաթ փաշայի բարեկամներուն և կուսակիցներուն կողմէ դաւ մը կը պատրաստուի, աքսորեալները մասնաւոր նաւով մը փախցնելու համար, հետևաբար ստիպուած ենք ամենախիստ զգուշութիւններ ձեռք առնել և այս պատճառաւ է որ ձեզ հոն կը ղրկենք, որպէսզի այդ զգուշութիւններուն վրայ աչալուրջ կերպով հսկէք։ Գիտցէք որ ամենածանր պատասխանատուութիւն մը կայ ձեր վրայ և ըստ այնմ աչքերնիդ բացէք։

Այսպէս այդ պատուական ու արի զինուորականին բանտապահի անարգ դեր մը կուտային։

Ամուսինս չուզեց այդ նուաստացուցիչ պաշտօնը ընդունիլ, բայց կառավարիչը դիտել տուաւ որ մերժումը պարգա-

պէս ընկերութիւն մը և մանաւանդ աքսորեալներու մասին համակրութիւն մը պիտի համարուէր և կրնար մեծամեծ փորձանքներ բերել իր գլխին։

Ամսուան սկսադրին գնաց իր նոր պաշտօնատեղին, մինչ ես ու երկու մանչ զաւակներս մնացինք Հասքյոյ, որովհետև անկարելի էր դիմանալ Թայիֆի գարշելի կլիմային։

Հոն ամուսինս, Նէճիպ պէյ, ներկայ կը գտնուէր այն անարգ խոշտանգումներուն, անլուր տառապանքներուն որոնց մատնուած էին Մեծ Հայրենասէրը Միտհատ փաշա ու իր ընկերները։ Կը տեսնէ այն զրկումները որոնց ենթարկուած էին, այն ծայրայեղ զգուշութիւնները, կոշտ ու կոպիտ պաշտօնեաներու նախատական վարմունքը Համիտի զոհերուն հետ և իր աչքին ու սրտին մարդու հոգին կը խռովի ու կ'ըմբոստանայ, և օգտուելով իր պաշտօնէն կը ջանայ մեղմացնել աքսորեալներու թշուառ կեանքը, խստութիւնները զեղջելով և կարելի եղածին չափ հանգստութիւն շնորհելով բանտարկեալներուն։ Իր հրամանին տակ գտնուող ստորադաս պաշտօնեաները ատելութեամբ կը տեսնեն ամուսնոյս այս ընթացքը և զանազան զրպարտութիւններով ամէն ինչ կը տեղեկագրեն Պոլիս, Նէճիպ պէյը ցոյց տալով իբրև դաւադիր մը, որ աքսորեալներու փախուստը կը պատրաստէ։ Համիտ որ արդէն ամուսինս այդ պաշտօնին անուանած էր այսպիսի զրպարտութեան մը առիթ տալու համար, իսկոյն հրամանը կուտայ որ Նէճիպ պէյ ձերբակալուի ու բանտարկուի։

Այս լուրը առնելուս պէս, երկու զաւակներս Հասքյոյ կը թողում և խելայեղ կը մեկնիմ Թայիֆ։

Երբ հոն կը հասնիմ խեղճ ամուսինս արդէն ամէն յարաբերութենէ զրկուած զնդանը նետուած էր։ Հակառակ իմ բողոքներուս, աղաչանքներուս, արցունքներուս ու կոծերուս, անկարելի կ'ըլլայ զինքը տեսնել....։

— Բայց, տիկին, գիտէ՞ք որքան չարչարեցանք մեր հայրաքնութեան նետութեն․ ընդմիջեց Իզզէթ փաշա, որ յատայա-

տութեամբ կը մտածէր որ տակաւին շատ ժամանակ պիտի անցնէր մինչեւ որ վերենք չհասկցուող դաւաճանութեան եւ ապահնութեանց գայթին:

— Ինչպէս ըսի, նորէն կը կրկնեմ, գոչեց Սալէհա, պէտք է որ ամէն բան լսէք, այս պայմանաւ միայն պիտի խօսիմ... Եւ արդէն ձեզ չհասկցուող նիւթերուն կը մօտենանք. հետեւաբար քիչ մըն ալ համբերութիւն ունեցէք:

— Լաւ, շարունակեցէ՛ք տեսնենք:

— Օրերէ ի վեր ի զուր ճար մը կը փնտռէի ամուսինս փնտռելէն ազատելու կամ գոնէ անգամ մը իրեն հետ երես առ երես խօսիլ կարենալու համար, երբ իրիկուն մը, բանտի մարդերէն մէկը գաղտնաբար եկաւ գիս գտաւ եւ ամուսնոյս կողմէն նամակ մը յանձնեց ինծի: Այս նամակը կ'ըսէր. «Սիրելի կինս, ա՛լ իրար չպիտի տեսնենք. գիտեմ որ բանտին մէջ օրերէ ի վեր գիս մեռցնելու փորձեր կ'ընեն, այնպիսի մահուամբ մը որ բնական թուի կամ անձնասպանութիւն համարուի: Անշուշտ պիտի յաջողին իրենց այս խժդժային ծրագրին մէջ, բայց դուն գիտցած եղիր, եթէ մահուանս լուրը առնես, պարզապէս գիս սպաննած են Ապտիւլ Համիտի հրամանովը: Երկու զաւակներս քեզի կը յանձնեմ: Զանոնք Պոլիս տար եւ ջանա՛ որ կրթութիւն առնեն, մարդ ըլլան, ու օր մը կարենան մեր ամենուս վրէժը լուծել: Հայրերնին այդ վրէժխնդրութեան յոյսովը միայն պիտի կրնայ հանգիստ քնանալ իր գերեզմանին մէջ:»

— Ահա՛ այդ նամակին խօսքերը, զորս այնքան տարիներէ ետքը տակաւին բառ առ բառ կը յիշեմ:

Այս չարաշուք նամակը ստանալուս՝ գրեթէ խելագարեցայ, կ'ուզէի վազել բանտը, այս անգամ բանտին ներս մնալու եւ ամուսինս անպատճառ տեսնելու մտադրութեամբ: Պահապանները գիս ծեծելով դուրս հանեցին եւ մարած վիճակի մէջ փոխադրուեցայ տուն, ուր ամբողջ շաբաթ մը անկողնէն դու-

ուանցանքներու մէջ անցուցի։ Երիկս բանտին մէջ կախուած գտնուեր էր . . . ։

Սալիհա հանըմ իր պատմութենէն և անցեալի վերյիշում-ներէն յուզուած՝ սկսաւ դառնապէս արտասուել։ Զինքը մտիկ ընողներն ալ, հակառակ իրենց առերևոյթ հանդարտութեան չափազանց յուզուած էին և մեծ ճիգով կրնային անտարբեր կերպարանք մը պահել։

Իզզէթ փաշա ելեկտրական կոճակին դպաւ և սեւազգեստ սպասաւոր մը ներս մտաւ։

— Սրուակ մը եթեր և ջուր բերէք շուտով, հրամայեց։

Սալիհա սակայն գերմարդկային ճիգ մը ընելով ինքն իր վրայ, կրցած էր իր պաղարիւնութիւնը գտնել և թաշկինակը հանելով աչքերը կը չորցնէր։

Սպասաւորը ջուրն ու եթերը բերաւ և ներկայացուց տիկ-նոջ որ գաւաթին մէջ քանի մը կաթիլ սրուակէն կաթեցնելէ ետքը խմեց։

Քանի մը վայրկեան ետքը բոլորովին հանդարտած էր և առանց հրաւէրի սպասելու, խօսքը շարունակեց.

— Ամուսնոյս քովէն թուղթ մը գտնուած էր որուն վրայ անճոռնի գրով մը գրուած էր. «Յանցաւորութեանս խղճի խայթին չկրնալով տոկալ անձնասպան կ՚ըլլամ, աղօթելով Վեհափառ սուլթանիս կենացը և ներում խնդրելով կնոջմէս ու զաւակներէս»։ Այս թուղթը անպատկառ ստութիւն մըն էր Ապտիւլ Համիտի ոճիրը ծածկելու համար։ Ամուսինս պար-զապէս բանտին մէջ խեղդած էին Պոլսէն եկած հրամանի մը վրայ, ինչպէս քիչ ետքը ստուգուեցաւ նոյնիսկ խեղդողներէն մէկուն խոստովանութեամբը, որ իր գործած անլուր ոճրին ազդեցութեան տակ՝ իրաւցնէ անձնասպան եղաւ, ամէն բան գալ ինծի պատմելէ ետքը։

Սիրտս ու հոգիս ատելութեան և վրէժխնդրութեան կրա-կովը լեցուած՝ վերադարձայ Հալէպա, որպէսզի երկու որբ զաւակներս առնեմ և հայրենիքս վերադառնամ։ Բայց դա-

զան Աբտիւլ Համիտի դժոխային սեւ հոգին տակաւին չէր յագեցած վրէժխնդրութեան ծարաւէն։ Երբ մեկնիլ ուզեցի՝ բացարձակապէս արգիլեցին ինծի, ըսելով որ Պոլսէն մասնաւոր արտօնութիւն մը պէտք էր ատոր համար։ Ամբողջ երկու տարի այդ արտօնութիւնը չեկաւ, հակառակ անընդհատ խնդրանքներուս։ Յուսահատօրէն կը տեսնայի որ երկու զաւակներս օրէ օր հալումաշ կ՚ըլլային այդ դժնդակ ու մահացու կլիմային տակ եւ անզօր կատաղութեամբ մը չէի գիտեր ի՛նչ ընելիքս.

Նոր կառավարիչ մը եկած էր Հոտէյտա որ քիչ շատ ազնուասիրտ եւ բարի մարդու մը համբաւը կը վայելէր։ Այս մարդը որ կը խղճար իմ վիճակիս վրայ եւ անկեղծօրէն կը բաղձար դարման մը տանիլ անոր, վերջապէս օր մը ըսաւ ինծի.

«— Գիտե՞ս, ինչու համար քեզ չեն արտօներ Պոլիս դառնալու։

«— Ինչո՞ւ համար, հարցուցի։

«— Որովհետեւ կը վախնան թէ հոն դառնալէդ ետքը ամուսնոյդ մահը եւ բանտարկութիւնը խնդիր պիտի ընես եւ իր խեղդուած ըլլալու պարագան մէջտեղ հանես։

«— Եւ միթէ պէտք չէ՞ որ այդ բանը ընեմ, գոչեցի։

«— Ափսո՜ս, տիկին, ո՛չ թէ միայն պէտք չէ որ այդ բանը ընէք, պատասխանեց կառավարիչը, այլ պէտք է որ գրաւոր խոստմնառութիւն մը ընէք թէ երբէք այդ խնդիրը չպիտի յուզէք, եւ միայն այս կերպով գուցէ յաջողիք վերադարձի արտօնութիւնը ստանալ։

«— Երբեք այդպիսի վատութիւն մը չեմ գործեր, գոչեցի։

Բայց կառավարիչը այն ատեն կոչում ըրաւ իմ մայրական զգացումներուս։ Ըսաւ որ եթէ առանձին կին մը ըլլայի, միմիայն անձիս պատասխանատու, անշուշտ իրաւունք ունէի ուզած կերպովս վարուելու։ Բայց մէջտեղը երկու որբեր կա-

յին որուն կեանքը վտանգի մէջ էր Հայաստանի մէջ և որուն համար պատասխանատու էի իմ ամուսնոյս հանդէպ: Այս արդարացի ամբաստանութիւնը իր ազդեցութիւնը գործեց և պահ մը վարանելէ ետքը, կրկին ու կրկին ափսոսանքներուն վրայ, անցի առաջ և հաւանեցայ պէտք եղած յանձնառութեան գիրը ստորագրելու: Կառավարիչը խոստացաւ պէտք եղած կերպով այս թուղթը պատրաստել...:

— Եւ վերջապէս Պոլիս վերադարձաք ձեր զաւակներուն հետ, ընդմիջեց Իգդէթ փաշա:

— Ինչո՞ւ այդքան կ'անհանգստանաք, պատասխանեց Սալիհա՝ հանգիստ նուրբ ժպիտով մը, փաշա էֆէնտի... արդեօք Հայաստանի օդը անհամա՞յ է ձեզի:

— Ո՛չ, բայց վերջապէս ասոնք անկարեւոր մանրամասնութիւններ են:

— Գուցէ ձեզի համար, բայց ո՛չ ինծի. ու Սարաֆիլ Համիտի համար յանձն առի այդ ստորագրութիւնը և թուղթ մը ստորագրեցի որով կը յայտարարէի թէ ամուսինս անձնասպան եղած էր և թէ ես ալ համոզուած էի առաջին օրէն, թէ իր ձեռքի գիրովը անձնասպանութիւնը նախապէս ծանուցած էր ան. ասկէ զատ թուղթս կը վերջանար աղօթքներ ընելով Սարաֆիլ Համիտի արեւշատութեան համար: Այս թուղթը Պոլիս հասնելէն ամիս մը ետքը ազատութիւն կը տրուէր ինծի հայրենիքս վերադառնալու: Անկէ զատ՝ Սարաֆիլ Համիտ մեր համար ծախքերն ալ վճարելու յանձն կ'ընէր: Պոլսոյ մէջ տակաւին կեանքս անտանելի էր. ո՛չ ոք ունէի քովս: Ծնողքս աքսորուած էր Այնթապ. ի զո՛ւր արտօնութիւն խնդրեցի անոնց քով երթալու: Անկարելի եղաւ հրաման առնել: Իմ և զաւակներուս նիւթական անյոյս վիճակը ներկայացուցի ատեանին: Որպէսզի զիս ամչէ Պոլիս մնալու, հրաման ըրաւ որ իր անձնական գանձէն երկու զաւակներս գիմնազիոն վարժարանը դրուին և ինծի ալ փոքրիկ ամսական մը յատկացուց: Այս կարգադրութեամբ

նուիրակէս զանէ քիչ մը հանգստացայ, թէեւ հոգեկան տառապանքս օրէ օր կը սաստկանար։ Կրնա՞ք զգալ թէ ինչ սարսափելի բան է քու սիրականդ առեւանգել, խեղդամահ տապանիլ տալու մէկու մը չարչարանքը տեսնել։ Զաւակներս երբ խաղաղութեան աղբերքին հասան, այն ատեն իրենց մի ու մի պատմեցի հօրերնուն եղերական մահը և թաղած վրէժխնդրութեան կամքը։ Երկուքն ալ լալով ուխտեցին իրենց հօր վրէժին կամքը յարգել...

Իր զաւակներուն յիշատակը մթացնել Սալիհա հանգիստ ճամբայ և արցունքի կաթիլներ երեւցան իր աչքերուն մէջ։ Թաշկինակը հանեց աչքերը սրբեց և շարունակեց.

— Այդ թուականներուն խուլ պայքար մը արդէն սկսած էր Համիտի բռնակալութեան դէմ։ Հայերը արդէն ըմբոստութեան դրօշակը պարզած էին և իրենց դէմ հալածանքը կատաղօրէն կը շարունակուէր։

Թուրք երիտասարդութիւնն ալ կ'արթննար և ազատական Թուրքերը չկրնալով տանիլ Պոլսոյ ճնշող ու անտանելի մթնոլորտին տակ, հետզհետէ կը թողուին իրենց հայրենիքը և կ'երթային ապաստանիլ ազատ երկիրներու տակ նոր Թուրքիոյ ազատութեան պատրաստելու....։ Պոլսոյ մէջ շարժումը տակաւին շատ աննշան էր և Ապտուլ Համիտի հալածանքները ահ ու սարսափի մատնած էին ամէնքը։ Դպրոցական երիտասարդութիւնը մանաւանդ բուռն թափով մը փարած էր ազատական շարժումին և խորտակելու սկսած կապանքները, ատեն ատեն, մանաւանդ բժշկական ու զինուորական համալսարաններու մէջ։ Զաւակներս բնականաբար չէին կրնար հեռու մնալ այդ շարժումներէն իրենց հօր կամքը կար որ ամէնէն առաջ կը մղէր զիրենք հասուններուն մէջ և ես, բնականաբար, ոչ թէ զիրենք կը քաջալերէի և կը մղէի դէպի կ'առաջնորդէի՝ այդ ըմբոստացում։

Եւ տակաւին պէտք է ըսել որ այս վարժարաններուն մէջ եղած շարժումները ո և է գործնական արդիւնքի մը չէին յան-

դեր և միմիայն գաղափարային սահմաններու մէջ կը մնային :
Զաւակներս յաճախ կը կրկնէին ինձ.

— «Անգամ որ դպրոցական շրջանը աւարտենք ու բանակին մէջ մտնենք, այն ատեն պիտի կրնանք մեր ընկերներով գործնականապէս մեր գաղափարները յաղթանակել տալ և անշուշտ մեր սիրելի հայրը իր դերեզմանին մէջ, պիտի հրճուի ու մեզ պիտի օրհնէ :

Այս յոյսերով կը սնանէինք ամէնքս :

Եւ սակայն սուլթան Համիտ արդէն սկսած էր իր կասկածոտ աչքերը դարձնել երկրին ապագան և յոյսը եղող այդ դպրոցական պատանիներուն վրայ և իր գիշատիչ ճիրանը դէպի անոնց երկարել . . . :

— Բայց, տիկին, այդ պատմութիւնները կարճ կապեցէք ըսաւ Իզզէթ փաշա անհամբերութեան շարժում մը ընելով.

— Լսեցէ՛ք և զիս մտիկ ըրէք, պոռաց Սալիհա հանըմ բարկաճայթ շեշտով մը, զաւակներուս վրայ կը խօսիմ և չեմ ներեր որ ընդմիջէք . . . :

Նախագահը ստիպուեցաւ կրկին տեղի տալ, այդ տարօրինակ կնոջ իշխանական ձայնէն ազդուելով.

— Խօսեցէ՛ք, տիկին, խօսեցէք, կմկմաց :

— Ապտիւլ Համիտ իր հալածանքը սկսաւ նախ դպրոցներէն դուրս վտարելով ազատական համարուած ուսուցիչները և անոնց տեղ դնելով իր լրտեսներու և հացկատակներու խումբէն մարդիկ : Իր այս արարքը ա՛լ աւելի արծարծեց, դպրոցականներուն մէջ, ազատական ոգին. ու այն ատեն բուն իսկ այդ դպրոցական պատանիներուն դէմ սկսաւ անլուր հալածանքը : Նախ այդ պատանիներուն մէջէն ազատական գաղափարներ ունեցողները վռնտեցին դպրոցէն- անոնց ապագան ջախջախելով, յետոյ այդ պատիժը անբաւական համարելով՝ Ապտիւլ Համիտ զանոնք աքսորեց և ի վերջոյ, ալ աւելի արմատական միջոցի մը դիմելու համար, այդ վայրագ հրէշը զանոնք ծովամոյն խեղդել տուաւ ծածուկ կերպով :

— Առասպելներ են ատոնք, տիկին, ըսաւ Իզզէթ փաշա

տրուն ձայնը կը դողդոջէր՝ հանդարտ պաղատիւն մ'ալու համար իր բրած ջանքերուն։

— Չէ՛, փաշա էֆէնտի, խրատութիւններ են, ափսո՛ս, գոչեց Սալիհա հանըմ, առասպելական խրատութիւններ արդարև...։

— Ի՛նչ որ է, չարունակեցէ՛ք, ձեր պատմութիւնը... բարեբախտաբար ձեզ մտիկ ընողները կարող են դատել ձեր քանծներուն արժէքը։

Սալիհա հանըմ Իզզէթի այդ խօսքերը ընդունեց արհամարհանքի ժպիտով մը և չարունակեց.

— Այսպէս ուրեմն Աբտիւլ Համիտ իր հալածանքը, դըպրոցական պատանիներու դէմ, հետզհետէ սաստկացուց մինչև զանոնք խեղդամահ անյայտացնելու չափ։ Խորհրդաւոր անհետացումները երթալով աւելի յաճախ կը կրկնուէին և շատ անգամ երբ զաւակները արձակուրդով տուն կուգային, կը պատմէին իրենց այս կամ այն ընկերոջ երևան չելլելը օրերէ ի վեր։ Խեղճ ծնողքները հազիւ հազ կը համարձակէին իրենց կորսուած զաւկին համար տեղեկութիւն հարցնելու վարժարանի տնօրէնութենէն որ՝ անայլայլ՝ միշտ միևնոյն պատասխանը կուտար.

— Ձեր զաւակը դպրոցէն մեկնեցաւ բոլոր աշակերտներուն հետ ու ալ չվերադարձաւ, ի՞նչ կ'ուզէք որ ընենք, մենք ձեր զաւակներուն վրայ հսկել պարտաւոր ենք վարժարանին մէջ լոկ՝ անկէ դուրս՝ չենք կրնար հետերնին մէյմէկ պահապան դնել, մանաւանդ որ փոքրիկ մանուկներ ալ չեն։

Իսկ եթէ ծնողքները այս յայտարարութենէն չգոհանալով փորձէին աւելի յարուցանել, այն ատեն, վա՜յ իրենց, իրենք ալ ո և է պատրուակով մը կամ կ'աքսորուէին կամ բանտերու մէջ կը նետուէին...

— Կը տեսնեմ որ վիպասանի գեղեցիկ երևակայութիւն մը ունիք, Սալիհա հանըմ, ըսաւ Իզզէթ փաշա հեգնական շեշտով մը։

— Իսկ դուք գոհէի՞ք հացկատակի մը անամօթութիւնը, պատասխանեց Սալինա, բարկութենէն դողահար ձայնով մը։

— Ինչպէ՞ս, կը համարձակի՞ք Նորին Վեհափառութեան մէկ բարձր ու հաւատարիմ պաշտօնեան նախատել, գոչեց Իգլէթ յուզումէն կատակարմիր կտրած։

— Իսկ դուք ինչպէ՞ս կը համարձակի՞ք իր ամուսնոյն ու զաւակներուն վրայ ողբացող կին մը և մայր մը ծաղրել, պոռաց ա՛լ աւելի բարձր ձայնով ամբաստանեալի աթոռին վրայ նստող կինը։

Այս պատասխանը խթանի մը պէս եկաւ նախագահին գլխուն որ չկրցաւ պատասխանել և պահ մը խոր լռութիւն տիրեց սրահին մէջ։

— Այդ տագնապալի օրերուն միակ մխիթարութիւնս էր զաւակներս, որոնց կեանքին համար ահ ու դողի մէջ էի միշտ, թէև առերևոյթ չէի ուզեր իմ երկիւղներս ցոյց տալ իրենց։ Ամուսնոյս թողած վրէժխնդրութեան կտակին ու մայրական սիրոյ միջև անհունի, տաժանագին պայքար մը կը մղուէր ներսիդիս։ Մին միւսին չէր կրնար զոհել և սոսկալի կերպով կը սանձուէի։ Գիտէք որ զաւակներս այդ անյայտացած, խեղդամահ կամ ծովամոյն եղած պաշտօնեաներուն ընկերներն ու գործակիցներն էին և թէ օր մը կարգը իրենց պիտի գար...։ Արձակուրդի օրերը խեղդուկ մտատանջութեամբ մը կը սպասէի իրենց տուն վերադարձին, սրտատրոփ անձկութեան մը մատնուած, ուխտելով ամէն անգամ, որ զիրենք առնեմ փախչիմ, հեռու՝ օտար երկիր մը, ուր արիւնարբու դաղաղին ձեռքը չկրնայ հասնիլ... բայց անգամ մը որ զիրենք գրկիս մէջ կը սեղմէի, իրենց արի ու առնական դէմքը ձեռքերուս մէջ կ'առնէի, որոնց վրայ իրենց հօրը կենդանի պատկերը դրոշմուած էր, բոլոր անձկութիւններս, ըրած ուխտերս կը մոռնայի և փոխանակ իրենց զգուշութեան և խոհեմութեան յորդորներ կարդալու, ա՛լ աւելի զիրենք կը ջանայի մղել ըմբոստութեան ճամբուն մէջ... առերևոյթ

ներքին ձայն մը, զիս կը ներշնչէր ու կը դրդէր դէպի այդ ուղղութեամբ:

Այս տագնապայոյս օրերուն էր երբ անգամ մը զաւակներս կրկին արձակուրդով տուն եկան երկու օր մնալու և շաբաթ առտու մը մեկնեցան, նորանոր ընկերներ պակսեր էին վարժարանէն և խստութիւնը հետզհետէ կը սաստկանար:

— «Կարգը կարծեմ մեզի եկաւ», ըսաւ անդրանիկս, երբ միասին առանձնացած կը խօսէինք: Սովորութեանս համեմատ զինքը քաջալերեցի, ծածկելով իր ըրած խօսքերէն գոյացած անձկութիւնս...: Երկուշաբթի իրիկուան դէմ, յանկարծ տան դուռս զարնուեցաւ... Ազ-Սէրայի կողմերը փայտաշէն փոքրիկ տուն մը կը նստէի այդ միջոցին. պատուհանիս վանդակը վեր առնելով՝ տեսայ որ դուռը զարնողը քօլ—աղասի Հագգը պէյն էր, ամուսնոյս մտերիմ բարեկամներէն մէկը զոր երկար ատենէ ի վեր չէի տեսած և որուն Պոլիս գտնուիլն ալ չէի գիտեր: Իսկոյն դուռը բացի և ներս հրամցուցի. ահռելի կերպով տժգունած և այլայլած դէմք մը ունէր:

— «Ձեր զաւակներէն լուր ունի՞ք», հարցուց առանց նոյն իսկ ողջոյնի խօսքեր փոխանակելու:

— «Շաբաթ առտու կանուխ մեկնեցան վարժարան երթալու համար», ըսի դողահար ձայնով մը, և անկէ ի վեր լուր չունիմ... արդեօք դժբախտութիւն մը պատահած է:

Հագգը պէյ փոխանակ այս հարցումիս պատասխանելու, նոյն այլայլած կերպարանքով ըսաւ.

— «Շուտ, տիկին, երեսնիդ քօղ մը դրէք ու միասին եկէք ինծի հետ...:

Յետոյ աւելցուց.

— «Քաջ զինուորականի մը արժանաւոր ամուսինը եղած էք, կոչում կընեմ իրեն յիշատակին և կը խնդրեմ որ արիութեամբ վարուիք այս դժնդակ ժամուս...:

Այս խորհրդաւոր խօսքերը զիս չափազանց յուզեցին և զգացի որ մեծ աղէտ մը պատահած էր և սիրտս սկսաւ ուժ-

գին բաբախել. այսուհանդերձ չհամարձակեցայ ո և է հարցում մը ուղղել։ Իսկոյն ներս վազեցի, երեսս ծածկեցի և վերադարձայ իր քով։

Երբ փողոց ելանք, Հագգը պէյ առաջին պարապ կառքը կեցուց և միասին մէջը մտանք։

— «Եէտի Գուլէ տար մեզի», հրամայեց կառապանին։

Կառքը ճամբայ ելաւ։ Իմ յուղումս հետզհետէ կը սաստկանար սակայն կրկին չէի համարձակեր խօսք մը ուղղելու ամուսնոյս բարեկամին. ինքն ալ խոր լռութիւն մը կը պահէր։ Վերջապէս ըսաւ.

— «Տիկին, գիտէ՞ք որ ես ալ մանչ զաւակ մը ունէի, Հարպիէ վարժարանը կը յաճախէր... տասնըինը տարեկան զաւակ մը, Ձիա անուն։

— «Ձիա՛ն գոչեցի, կը յիշեմ որ զաւակներս յաճախ իրենց մէկ մտերիմ ընկերոջ խօսքը կ'ընէին որ Ձիա կը կոչուէր....։

— Այո՛, աւելցուց, ճիշդ այդ է, ձեր զաւակներուն մտերիմ ընկերը... այս տարի դպրոցական շրջանը պիտի աւարտէր...։

Սոսկալի դժբախտութեան մը նախազգացումը ունէի, բայց վատաբար կը լռէի ու բերանս առաջ չէր երթար հարցում մը ուղղելու։ Ինքն ալ, տեսնելով որ չեմ խօսիր, ալ խօսք մը չըսաւ և սիկառէթ մը վառելով սկսաւ ծխել։

Վերջապէս հասանք Եէտի Գուլէ և անկէ Գապլը Չէշմէի կողմը ուղղուեցանք, դէպի ծովեզերքը։ Հոն հագգը պէյ կառքը կեցուց և կառապանը ճամբեց, յետոյ ըսաւ.

— «Երթալիք տեղերնիս կառքի ճամբայ չկայ, ուստի քալելով պիտի շարունակենք մեր ճամբան։

— «Բայց ո՞ւր կ'երթանք, հարցուցի այս անգամ, ամբողջ քաջութիւնս ժողուելով:

— «Հայ ձկնորսի մը տնակը պատասխանեց զինուորականը։ Հազար ու մէկ մտածումներ միտքս կը պաշարէին, բայց

չէի կրնար որոշ գուշակութիւն մը ընել, միայն՝ թէ կը զգայի որ խնդիրը իմ զաւակներուս վրայ էր։

Բաւական քալելէ ետքը, վերջապէս ամայի ծովեզերքին մօտ, քարերու ետեւ ապաստանած խարխլիկ տնակի մը քով հասանք։ Տնակին դուռը բաց էր եւ սեմին վրայ ծերունի մը նստած՝ իր ուռկանը կը նորոգէր։

Ծերունին մեզ տեսնելուն պէս յորդական ձեւով մը ոտքի ելաւ.

— Բարեւ, ըսաւ Հագգը պէյ եւ յետոյ ձայնը ցածցնելով աւելցուց, հո՞ս է դպրոցական պատանին։

— Այո՛, ո՞ւր կուզէք որ ըլլայ, պատասխանեց ծերունի ձկնորսը տխուր դէմքով մը... միայն թէ, պէյ էֆէնտիս, կը խնդրեմ, Աստուծոյ սիրոյն, զիս ժամ առաջ ազատեցէ՛ք այս փորձանքէն, որովհետեւ ամէն ժամ ահ ու դողի մէջ եմ...։

— Հոգ մի ըներ բարեկամս, քանի մը ժամէն ա՛լ վախնալիք բան մը չես ունենար, ըսաւ Հագգը պէյ եւ տնակէն ներս մտաւ, նշան ընելով ինծի որ իրեն հետեւիմ.

Տնակին բակը, պառաւ կին մը գետին նստած գուլպայ կը հիւսէր։ Իր քովէն անցանք առանց զինքը բարեւելու եւ մտանք ցած ու փոքրիկ սենեակի մը մէջ որ ձկնորսութեան վերաբերեալ առարկաներով լեցուած էր։ Ծերունին կը հետեւէր մեզի։

— Ո՞ւր է մարդ չկայ այստեղ, հարցուց Հագգը պէյ. իր նայուածքը սենեակին չուրջը պտտցնելէ ետքը։

— Սնտուկին մէջ, ուռկաններուն տակ պահուըտած է, պատասխանեց ծերունին ձայնը ցածցնելով ու մօտեցաւ մէկ անկիւն մը դրուած խոշոր սնտուկի մը որուն կափարիչը վեր առաւ։

Սնտուկին մէջէն պատանիի մը գլուխը երեւցաւ։

— Դուրս ելիր, տղաս, մենք ենք ըսաւ Հագգը պէյ մեղմ ձայնով մը։

Պատանին սնտուկէն ելաւ եւ մօտեցաւ մեզի։ Զինուորականը ծերունիին դարձաւ եւ ըսաւ.

— Դուն գնա՛ կրկին դրան քով և հսկողութիւն ըրէ՛ և մեզի առանձին թող։

— Շատ աղէկ, պատասխանէ ծերունի ձկնորսը, միայն թէ ի սէր Աստուծոյ, կ'աղաչեմ զիս փրկեցէ՛ք այս վտանգաւոր վիճակէս...

Ծերունին դուրս ելլելէ ետքը, գէշ աղէկ տեղաւորուեցանք սնտուկի մը վրայ, մինչ պատանին, մեր դէմը, ուռկաններու կոյտի մը վրայ բազմեցաւ։

— Տղաս, ըսաւ Հագգը պէյ, խօսքը պատանիին ուղղելով, այս տիկինը քու երկու սիրելի ընկերներուդ, Ջէքիի ու Արիֆի մայրն է, և կ'ուզէ որ քու բերնէդ լսէ ամբողջ պատմութիւնը զոր երէկ ինծի պատմեցիր. ուստի ծայրէ ի ծայր անգամ մըն ալ կրկնէ, առանց բան մը ծածկելու... ինչպէս ըսի քեզի, ա՛լ վախնալիք բան մը չունիս և քու անձիդ ապահովութիւնը երաշխաւորուած է... քանի մը ժամէն պիտի մեկնիս այս անիծեալ տեղէն ու ա՛լ ազատ պիտի ըլլաս գազանին ճիրաններէն։

Զաւակներուս, Ջէքիի ու Արիֆի անուններուն յիշատակութիւնը լսելով, խորին յուզում մը զգացի և սիրտս սկսաւ անօրինակ սաստկութեամբ մը բաբախել, բայց և այնպէս հզօր ճիգ մը ըրի չտկարանալու համար։ Պատանին վեհերոտ ակնարկ մը պտտցնելէ ետքը իր չուրջը սկսաւ հետեւեալ պատմութիւնը ընել.

— Շաբաթ առտու կանուխ Սկիւտարէն իջայ, ժամանակին դպրոցս գտնուելու համար. երբ կամուրջ ելայ, ոստիկան մը ու լրտես մը քովս գալով զիս հրաւիրեցին իրենց ընկերանալու, ըսելով որ մէկ քանի տեղեկութիւններ պիտի հարցընէին։ Թէեւ կասկածեցայ և մտածեցի ընդդիմանալ, բայց այդ երկու անձերը այնքան քաղաքավարութեամբ և ակնածանքով կը վարուէին հետս, որ ի վերջոյ խոհեմութիւն համարեցի հետերնին երթալ, մտածելով որ դիմադրութիւնը գուցէ անօգուտ տեղը վիճակս պիտի ծանրացնէր, մանաւանդ որ իրենք

ալ մէկ քանի անգամ կրկնեցին թէ քառորդի մը խնդիր էր երթալ ու վերադառնալս։

Միասին կառք մը մտանք և ուղղուեցանք Զապթիէի դուռը, ուր զիս առաջնորդեցին սրահ մը, պատուիրելով որ հոն սպասեմ մինչև որ փաշան գայ։

Ժամէ մը ոստիկան մը եկաւ և զիս ոստիկանութեան նախարար Շէֆիք փաշայի քով առաջնորդեց։ Փաշան անունս, հօրս անունը, ծննդավայրս ու տարիքս հարցնելէ ետքը, — «այո՛, ըսաւ, ճիշդ մեր փնտռած դպրոցականն ես» — «Ուրիշ հարցում մը ունի՞ք ընելիք, հարցուցի. — «Ո՛չ պատասխանեց. — «Ուրեմն կրնա՞մ մեկնիլ»։ Փաշան փոխանակ պատասխանելու՝ զանգակը հնչեցուց ու ոստիկանական պաշտօնեայ մը կանչել տալու որուն հետ ցած ձայնով քանի մը խօսք փոխանակեց։ Յետոյ պաշտօնեան քովս եկաւ և ըսաւ — «Եկո՛ւր ինծի հետ»։ Երբ դուրս ելանք, ոստիկան մը ընկերացաւ մեզի և երեքս մէկ իջանք վարի բակը։

— «Միթէ այլ ևս չե՞մ կրնար վարժարան վերադառնալ, արդէն ուշ մնացի», ըսի պաշտօնեային։

— «Հոգ մի ըներ, կը վերադառնաս, պատասխանեց պաշտօնեան, միայն թէ տակաւին պզտիկ գործողութիւն մըն ալ կայ կատարուելիք։

Այս ըսելով՝ նշան ըրաւ հոն գտնուող պարապ կառքի և երեքս մէկ մէջը մտնելով ճամբայ ելանք։ Ի զուր, կառքին մէջ ուզեցի հասկնալ այս անակնկալ ձերբակալումին պատճառը, որովհետև փաշան ո և է հարցում չէր ուղղած ինծի և գոհացած էր մի միայն ինքնութիւնս հասկնալով. բայց պաշտօնեան չուզեց բացատրութիւն մը տալ, հաւանօրէն ինք՛ն ալ բան մը չէր գիտեր։ Կառքը մեզ բերաւ Սարայ Պուռնուի ծովեզերեայ զօրանոցը։ Հոն վար իջանք և զիս առաջնորդեցին բանտի նման փոքրիկ խուց մը և դուռը վրայէս կղպեցին, առանց ո և է խօսք ուղղելու։ Կասկածը ու մտատանջութիւնը պաշարած էին զիս բայց ի՞նչ կրնայի ընել... կէսօրին մօտ

խցիկին դուռը բացուեցաւ և պահապան մը հաց մը և կուժ մը ջուր դրաւ գետնին վրայ ու կրկին դուռը կղպելով մեկնեցաւ։

Ժամեր անցան, իրիկուն եղաւ, մութը կոխեց և տակաւին ո՛չ ոք երեւցաւ։ Սպասումէն ու մտատանջութենէ վաստակաբեկ, երկնցայ գետնին վրայ ու քունս տարաւ։ Կէս գիշերին մօտ էր երբ յանկարծ՝ դուռը բացուեցաւ և երեք հոգի, որոնց մէկուն ձեռքը լապտեր մը կար, երեւցան սեմին վրայ. իրենցմէ երկուքը քովս մօտեցան, թեւերս կռնակիս կապեցին և ըսին.— «քալէ տեսնենք»։ Մութ նրբանցքէ մը անցնելով հասանք ծովեզրը քարափին վրայ, ուր խոշոր նաւակ մը կը սպասէր։ Նաւակին մէջ արդէն ութը տասը հոգի կը նշմարուէին... զիս ալ հոն մտցուցին։ Առաջ, մութին մէջ, չէի կրցած հոն գտնուողներուն դէմքերը որոշապէս տեսնել, բայց անգամ մը որ նաւակ մտայ իսկոյն ճանչնայ ընկերներս, զինուորական վարժարանի աշակերտները...։ Ամենքս ալ այնքան սարսափած էինք որ չէինք կրնար բերաննիս բանալ և իրարու խօսք մը ուղղել։

Նաւակը ճամբայ ելաւ և գնաց մօտեցաւ քիչ մը անդին, ծովուն բացը կեցող փոքրիկ շոգենաւի մը որուն ծխնելոյզը կը մխար։ Մեզ շոգենաւ մտցուցին և հոն տեսանք որ մեր ընկերներէն ուրիշ դպրոցականներ ալ կան, ամենուն ալ թեւերը կապուած...։ Հազիւ թէ ոտքերնիս շոգենաւ դրած էինք և ահա՛ ճամբայ ելաւ և Սարայ Պուռնուէն դառնալով սկսաւ յառաջանալ Մարմարայի բացերը...։ Ահռելի մղձաւանջ մը ամենուս միտքը պաշարած էր ու կը զգայինք մեզի սպասող սոսկալի վախճանը, բայց մեր վրայ տիրած արհաւիրքը այնքան սաստիկ էր որ. ինչպէս ըսի, կարող չէինք բառ մը իսկ արտասանելու... պահ մը աչքս չուրջս պտտցուցի և տեսայ որ ինէ քիչ մը անդին կեցած էին Զէքի ու Արիֆ պէյերը, տիկնոջ զաւակները, ինչպէս քիչ մը առաջ ըսինք, իմ լաւա-

գոյն և սիրելի ընկերներս։ Գերագոյն ճիգ մը ընելով մօտեցայ իրենց և ըսի.

— «Ո՞ւր կը տանին մեզ։

— «Ծովուն յատակը, մեր անյայտացած ընկերներուն քով, պատասխանեց Ջէքի պէյ, խեղճ մայրերնիս...։

«Եւ երկու եղբայրները սկսան արտասուել լռիկ։

«Քիչ մը անդին կեցած էր նաեւ Օսման պէյը, ձեր զաւակը, նոյնպէս սարսափահար կերպարանքով մը։ Կամաց կամաց սիրտ առինք և սկսանք խօսակցիլ իրարու հետ, սակայն ասիկա շատ երկար չտեւեց... մեր դահիճները իսկոյն վրայ հասան և իրարմէ հեռացուցին։

«Վերջապէս Ջէք մէճէլի բացերը շոգենաւը իր ընթացքը դանդաղեցուց...։ Կամրջակին վրայ երեւցան ութը տասը հուժկու և չարաշուք դէմքով անձեր, ձեռքերնին երկաթի խոշոր կտորներ բռնած և ուսերնուն վրայ պարապ պարկերով...։ Ա՛լ կասկած չի կար, մեր վերջին ժամը հասած էր. անհելի վայնասուն մը թնդաց շոգենաւին մէջ. ողբ, կոծ, յուսահատութեան աղաղակ մը բարձրացաւ ամէն կողմէ... Նորանոր մարդիկ երեւցան կամրջակին վրայ, որոնք կատաղի թափով մը յարձակեցան ամէնէն աւելի աղմուկ բարձրացնողներուն վրայ ու բռնի կապկպելով պարկերուն մէջ դրին և անոնց շուրջը մէկ քանի երկաթ ձողեր կապելէ ետքը ծովը նետեցին... կարելի չէր երեւակայել աւելի անհելի, աւելի անլուր, աւելի սարսափելի տեսարան մը... [illegible] տեսայ Ջէքի ու Արիֆ պէյերը որոնք կատաղի ընդդիմութենէ մը ետքը, կապկպուած պարկերը դրուեցան... տեսայ նաեւ ձեր զաւակը Օսման պէյը որ նոյնպէս ծով կը նետէին ու յետոյ միւսները... Ես սարսափահար անկիւն մը կծկտած էի, լուռ ու շունչս բռնած, սակայն կը զգայի որ ի վերջոյ կարգը ինծի պիտի գար... յանկարծ՝ անձնապաշտպանութեան բնազդէն մղուած, երբ տեսայ թէ երկու հոգի դէպի ինծի կուգային, խելայեղ ոստում մը ըրի, գլխովս ու մարմինովս մէկ կողմ

հրեցի երկու դահիճները և ձեռքերս կռնակիս կապուած՝ ինք-
զինքս յաջողեցայ ծովը նետել...։

Ջուրին մէջ գերմարդկային ճիգ մը ընելով յաջողեցայ նախ թեւերես մին և յետոյ միւսը կապանքներէն ազատել և շնորհիւ լաւ լողացող մը ըլլալուս, կրցայ բաւական ատեն ջուրին տակ մնալէ ետքը ծովուն երեսը ելլել։ Աղետալի շո-գենաւը մինչ հոն էր և ճիշտ գլուխս դուրս հանած միջոցիս նոր պարկ մը ծովը նետուեցաւ և շուրջը կապուած երկաթ-ներուն պատճառաւ ուղղակի յատակը իջաւ։ Սարսափահար, կրկին ջուրին մէջ մխրճուեցայ և սկսայ լողալ յատակէն, մին-չեւ որ շունչս սպառելով ստիպուեցայ կրկին երեսը ելլել։ Բա-րեբախտաբար մթութիւնը այնքան սաստիկ էր և շոգենաւին մէջ այնպիսի իրարանցում մը կը տիրէր որ ոչ ոք ուշադրու-թիւն դարձուց ինծի և հաւանօրէն դահիճները այնպէս են-թադրած էին որ թեւերս կապուած ըլլալով ես ալ խեղդուած էի։ Կամաց կամաց լողալով բաւական հեռացայ շոգենաւէն որ իր եղեռնական գործը աւարտելով ճամբայ կ'ելլէր, Պոլիս դառնալու համար։ Ես մինչ կը շարունակէի յուսահատ յա-մառութեամբ մը լողալ. Թէեւ փրկութեան յոյս չունէի և կը զգայի որ քիչ ատենէն ուժասպառ պիտի ըլլայի։ Այս տագնա-պալի կացութեանս մէջ յանկարծ սեւ կէտ մը նշմարեցի ծո-վուն երեսը. թերեւս նաւակ մըն էր և այս մտածումը նոր ոյժ մը տուաւ ինձ և սկսայ յետին ճիգս թափել, անոր մօտենա-լու համար։ Այո՛, չէի սխալած, ձկնորսի նաւակ մըն էր որ հակառակ եղած արգելքին, գիշեր ատեն ելած էր ձկնորսու-թեան։ Սկսայ օգնութիւն աղաղակել և ձայնս լսուեցաւ նա-ւակին մէջ գտնուողներէն որոնք իսկոյն դէպի իմ կողմս սկը-սան թիավարել։ Քանի մը վայրկեան ետքը արդէն նաւակին մէջն էի։ Կէս ժամ ետքը կը հասնէինք այս տնակը ուր պէտք եղած անմիջական խնամքները ամենայն ազնուութեամբ տրուե-ցան ինծի։ Երբ յուզումս հանդարտեցաւ, յիշեցի իսկոյն իմ տագնապալի կացութիւնս և խորհեցայ իմ ազատարարներուս

միջոցաւ լուր ղրկել Հագգը պէյի, որուն հասցէն գիտէի, որ պէս զի գար գիս տեսնէր, քանզի Պոլսոյ մէջ ծնողք չունենալով չէի գիտեր թէ որո՛ւ դիմէի։

— Անաւասիկ, փաշա էֆէնտի, շարունակեց Սալիհա հանըմ, այս սոսկալի պատմութիւնը զոր ըրաւ այն դպրոցական պատանին։ Երկու զաւակներուս այս նահատակութիւնը զիս անէացուց։ Այն հզօր ճիգը զոր ըրած էի պաղարիւնութիւնս պահելու և պատանիին ամբողջ պատմութիւնը լսելու համար, բոլորովին սպառեց հոգեկան և ֆիզիքական զօրութիւնս և երբ պատմութիւնը աւարտեցաւ. ուշակորոյս գետին ինկայ, անկենդան դիակի մը պէս...։ Երբ տնեցիներուն և Հագգը պէյի խնամքներուն շնորհիւ խելքս գլուխս եկաւ և աչքերս բացի, ուրիշ խցիկի մը մէջ գտայ ինքզինքս, գետին փռուուած անկողնի մը վրայ։

Սալիհա հանըմ իր այս երկար պատմութենէն վաստակաբեկ, պահ մը լռեց և թաշկինակը հանելով ճակատը և երեսները սրբեց։ Նոյն միջոցին դուռը բացուելով՝ ներս մտաւ Իզզէթ փաշա և գնաց կրկին բազմելու նախագահական աթոռը, որուն վրայ առժամեայ կերպով նստած էր Թահսին փաշա։

— Տիկին, եթէ կը հաճիք, շարունակեցէք ձեր պատմութիւն ըսաւ Իզզէթ փաշա ծայրայեղ քաղաքավարութեան շեշտով մը։

«Երբ Հագգը պէյ տեսաւ որ տագնապս անցած է, շարունակեց Սալիհա հանըմ, ըսաւ ինծի. «Տիկին, այն հարուածը որ ձեզ կը ջախջախէ, նոյն սաստկութեամբ կ'իջնայ նաև իմ վրաս. ձեր ձեռքէն ձեր երկու մանչ զաւակները կը խլեն ու ծովուն մէջ խեղդամահ կ'ընեն չարաչար, իմ ալ նոյնպէս մէկ հատիկ զաւակս ձեռքէս կը յափշտակեն. մեր երկու սիրտերը միեւնոյն վէրքերովը կ'արիւնի և երկուքիս հոգիներն ալ միեւնոյն տանջանքներով կը գալարուի։ Այս ահռելի ցաւերուն մէջ մէկ բան միայն կրնայ մեզ մխիթարել, այն է՝ վրէժխնդրութիւնը ..վրէժխնդրութիւն յանուն մեր զաւակներուն և յանուն

հայրենիքի բոլոր զոհուած զաւակներուն... Թո՛ղ մեր կեանքը ա՛լ ասկէ ետքը միակ նպատակ մը ունենայ՝ այն է հայրենիքի փրկութիւնը և բռնաւորին ջախջախումը։ Այս բեղմնաւոր աշխատութեան մէջ միայն կրնանք մեր այրած սրտերուն սփոփանքը գտնել և տոկալ կեանքի բեռին։» Այս խօսքերը ամբողջ էութիւնս ցնցեցին, յիշեցի ամուսինս ու իր վրէժխնդրութեան գերագոյն կտակը ու զաւակներս որոնք այդ կտակին գործադրութեան նուիրուած էին և անա՛ իրենք ալ զոհ կ'երթային արիւնարբու բռնակալութեան... այդ ժամուն հոգիիս մէջ արձագանգեց հարիւրաւոր մայրերու ողբն ու կոծը և վրէժի աղաղակը և յանկարծ թօթափելով կանացի տկարութիւնս ոտքի ելայ և Հագգը պէյի ձեռք սեղմելով գոչեցի. «Այո՛, Թող այս վայրկեանէս մեր երկուքիս ճակատագիրը միանայ միեւնոյն նպատակին շուրջը, բռնակալութեան տապալումը, և հայրենիքի փրկութիւնը թո՛ղ ըլլայ ասկէ ետքը մեր կեանքին միակ նպատակը և թո՛ղ մեր ամբողջ հոգեկան ու ֆիզիքական զօրութիւնն ու կարողութիւնը դէպի հոն ձգտի»։ Պատանին որ աչքերը խոշոր բացած մեզի մտիկ կ'ընէր, եկաւ ձեռքերս համբուրեց սրտաշեղ յուզմունքով մը և ըսաւ. «Զիս ալ առէ՛ք ձեզի հետ, ես ալ կուզեմ հայրենիքի համար զոհուող ընկերներուս վրէժը լուծել....։» Անա՛ այսպէս, այդ ձկնորսի տնակին մէջ կազմուեցաւ այն քօմիթէն որ ձեզի այսօր այնքան սարսափ կը պատճառէ և որ անյողդողդ կերպով կը դիմէ իր նպատակին, առանց ձեր հալածանքներուն առջեւ տեղի տալու....։

Սալիհա հանըմ լռեց և գլուխը հակեց դէպի վար ուժասպառ երեւոյթով։ Անցեալի բոլոր աղէտալից վերյիշումները բոլորովին խռոված էին զինքը ու ալ խօսքը շարունակելու զօրութիւն չէր մնացած վրան։

Իգզէթ փաշա ժամացոյցը նայեցաւ. չորսը անցած էր և գրեթէ լուսնալու մօտ էր։

— Տիկին, ըսաւ մեր հարցաքննութիւնները կը վերջացը-

նենք և վաղը կը շարունակենք մնացած մասը. որովհետև կը տեսնեմ որ ո՛չ դուք խօսելու կարողութիւնը ունիք և ո՛չ ալ մենք մտիկ ընելու, մանաւանդ որ ձեր պատմութիւնը հասաւ այնպիսի կէտի մը որ բուն մեզ շահագրգռող հարցերուն շուրջը կը դառնայ...: Ուրեմն առ այժմ դացէք հանգչելու:

Այս խօսքերը արտասանելով՝ զանգակը հնչեցուց և սենեկապան մը երեւցաւ սեմին վրայ:

— Կանչեցէ՛ք պահապանները, որպէսզի տիկինը իր տեղը փոխադրեն, հրամայեց:

Եւ վայրկեան մը ետքը տեսանք որ Սալիհա հանըմ ներս բերած էին, եկան և ձերբակալեալը դուրս հանեցին սրահէն:

Դատաւորները իրենք ալ մէկիկ մէկիկ զիրար ողջունելէ ետքը դուրս ելան սրահէն:

---

## ԳԼՈՒԽ Թ.

# ՀԱՄԻՏ ՄՏԱՏԱՆՋ Է

Ինչպէս ըսինք, վարագոյրի մը ետեւէն, Ապտիւլ Համիտ ներկայ գտնուած էր Սալիհա հանըմի ամբողջ հարցաքննութեան Եւ սակայն ինք բոլորովին տարբեր բանի մը կը սպասէր: Ինք կը յուսար որ Սալիհա, ահ ու սարսափի մատնուած, իր պալատականներուն ոտքը պիտի իյնար և լեղապատառ աղաչանքներով ներում պիտի հայցէր ու կատարեալ խոստովանութիւններ պիտի ընէր, մէկիկ մէկիկ մատնելով իր բոլոր դաւակիցները և գաղտնի կազմակերպութեան բոլոր մանրամասնութիւնները: Սակայն, ընդհակառակը, ամբողջ ժամեր այդ տարօրի-

նակ կորովով կինը ուրիշ բան չէր ըրած այլ զինքը ամբաստանել ամենախայթանիչ բառերով ու նախատինքներով։ Համիտ իր Թագաւորէն քանի մը անգամ կատաղութեան նոպաներ ունեցած էր, ուզած էր հրամայել որ այդ կինը տանջանքներու ենթարկեն մինչեւ որ լեզուն բացուի և իր ուզածին պէս խօսեցնել տալ զայն, իսկ հակառակ պարագային, չարաչար մահուամբ մեռցնել...։ Բայց այս կատաղի գաղափարները վայրկեան պէս տեղի տուած էին խոհեմութեան առջև. իսկոյն զգացած էր որ այդ կինը չպիտի ընկճուէր ֆիզիքական չարչարանքներէ և իր մահը բանի մը չպիտի ծառայէր, ու լաւագոյն համարած էր համբերել, թոյլ տալ որ ուզածին պէս խօսի, մինչեւ որ կարգը գայ գաղտնի կողմակցութեան, դաւադրութիւններուն, ոճիրներուն և եթէ այն ատեն յամառէր բան մը չըսելու գործադրել բռնի միջոցները։ Իզզէթ փաշա որ հարցաքննութեան միջոցին երկու անգամ իր տիրոջ քով գացած էր, անոր հրահանգները առնելու համար, ինքն ալ իր վեհափառ տիրոջ կարծիքէն էր, այն է ամբաստանեալին հետ մեղմութեամբ վարուիլ և թոյլ տալ որ ուզածին պէս խօսի և յետոյ վճռել թէ ինչ դիրք բռնելու էր անոր հանդէպ:

Երբ հարցաքննութիւնը լմնցաւ, Իզզէթ երրորդ անգամ ըլլալով ներկայացաւ իր վեհափառ տիրոջ որ քունը աչքերէն փախած, թիկնաթոռի մը մէջ նստած էր։

— Վեհափառ տէր, ըսաւ կը յուսամ որ ձեր հրամանները կէտ առ կէտ կատարուեցան, թէև դժբախտաբար չկրցանք տակաւին մեզի պէտք եղած տեղեկութիւնները առնել իրմէ, այսուհանդերձ կը յուսամ որ վաղուան հարցաքննութեան մէջ կարելի պիտի ըլլայ զինքը հարկ եղածին պէս խօսեցնել։

— Այո՛, նախ պէտք է զինքը խօսեցնենք, ու յետոյ յաւիտեան լռեցնենք, պատասխանեց Համիտ չարաչուք դէմքով մը։

— Այդ կնոջ անպատկառ համարձակախօսութիւնը արդարև անպատիժ չկրնար մնալ, ըսաւ Իզզէթ։

Ապտիւլ Համիտ չպատասխանեց և պալատականը տեսնելով որ այլեւս խօսակցութիւնը աւարտած է, կամաց մը դուրս ելաւ, մանաւանդ որ խոնջէնքէն ու քնատութենէն ոտքի վրայ կենալու կարողութիւն չունէր:

Բանակալը իր թիկնաթոռին վրայ երկնցած՝ գրեթէ անքուն անցուց, երեւակայութիւնը անհուն մղձաւանջներով խռովուած Սալիհա հանըմի ամբաստանութիւնները, իր գործած ոճիրներուն մի առ մի յիշատակումը, իր գլխուն տեղացող նախատինքներն ու անէծքներն զինքը վեր ի վայր շրջած էին:

Արեւը արդէն ծագած էր երբ հազիւ կրցաւ պահ մը աչքերը փակել...:

Պալատին մէջ ամէն մարդ ոտքի վրայ էր արդէն և ամէնքը մտատանջ կերպարանքով մը կը մեկնաբանէին նախորդ գիշերուան դէպքերը: Չորս ձերբակալեալներու Երլտըզ բերուիլը ամէնուն ծանօթ էր արդէն և գիտէին թէ Սալիհա հանըմ երկար հարցաքննութիւն մը կրած էր որուն միջոցին ուրիշ բան չէր խօսած՝ այլ եթէ բռնակալութեան երկարամեայ շրջանին ոճիրներուն թուումը ըրած էր ամենաքաւան բառերով: Ու խորհրդաւոր կերպով իրարու կը կրկնէին, սարսափահար դէմքով մը, անոր բառերը, որոնք կտոր կտոր իմացած էին ներկայ գտնուող պալատականներուն բերնէն:

Ամէնուն կարծիքն ալ նոյն էր.

— Այդ կինը օր մը աւելի չկրնար ապրիլ այլեւս...:

Ու կը զարմանային որ Ապտիւլ Համիտ մինչև հիմա հրաման չէր ըրած զայն բնաջինջ ընելու:

Երկու բարձրաստիճան ներքինիներ որոնք ազատ մուտք ունէին Սուլթանին քով և երկու պալատական թիկնապահներ, անկիւն մը հաւաքուած այսպիսի խօսակցութեան մը զբաղած էին, երբ Ալպուս պէյ իրենց մօտեցաւ:

Չէրքէզը ուրախ և ճառագայթող դէմք մը ունէր:

— Վստահ եմ որ, ըսաւ, ձերբակալուած կնոջ՝ Սալիհա հանըմի վրայ կը խօսիք:

*Զարսը մէկէն կասկածոտ դէմքով մը անոր նայեցաւ, յետոյ ներքիններէն մին պատասխանեց։*

*— Այո՛, այսինքն կը խորհէինք թէ ի՛նչ սարսափելի պատիժ պէտք էր տալ այդպիսի կնոջ մը որ համարձակած է մեր վեհափառ տիրոջ դէմ հրապարակաւ նախատական լեզու մը գործածել... այս տեսակ անլուր ոճիրի մը համապատասխանող պատիժ որդարել դժուար է գտնել և մահուան պատիժի ամէն ձեւերն ալ քիչ կուգան այդպիսի յանցանք մը քաւելու համար...։*

*— Այդ կնոջմէն շատ աւելի մեծ յանցաւորներ ունինք Եըլտըզի մէջ, ըսաւ Ալպուս պէյ, յանցաւորներ որոնք երեսանց ընդհակառակը անոյշ լեզու կը գործածեն՝ բայց մութի մէջ ամէն տեսակ դաւ կը նիւթեն։*

*Այս տարօրինակ խօսքերը ալ աւելի յուզեցին այս չորս անձերը: Բայց զգացին որ առանց պատասխանի կարելի չէր թողուլ այսպիսի ծանր ակնարկութիւն մը և թիկնապահներէն մին բարկաճայթ չեչտով մը ըսաւ.*

*— Եըլտըզի մէջ եթէ մեր վեհափառ տիրոջ նուիրական անձին դէմ դաւադրող թշուառական մը կայ, ես իմ ձեռքս պատրաստ եմ իսկոյն սպաննելու զայն։*

*— Ուրեմն պատրաստուէ սուրդ պատեանէն քաշելու, ըսաւ Ալպուս պէյ չարաչուք ժպիտով մը։*

*— Այդպիսի մէ՞կը գտած էք Եըլտըզի մէջ...*

*— Ե՛ս, բնաւ երբէք, պատասխանեց Ալպուս պէյ, միայն թէ գիտցուածը երեւան հանած է որ հոս պալատին մէջ, սուլթանին վստահութիւնը անարժանաբար վայելող բարձր պաշտօնեայ մը որուն ուրկէ գալը և ով ըլլալը յայտնի չէ, այս միջոցիս կը դաւէ մեր վեհափառ տիրոջ ուխտեալ թշնամիներուն հետ։*

*— Բայց ո՞վ է այդ վատ արարածը...։*

*— Արեւը մարը չմտած կ'իմանանք պատասխանեց Ալպուս և բարեւելով չորս անձերուն քովէն հեռացաւ. որոնք շփոթած դէմքով մը անոր հեռանալը դիտեցին։*

— Ի՞նչ ըսել կ՚ուզէ այս Չէրքէզը, ըսաւ ներքինիներէն մէկը։

— Չեմ գիտեր թէ որո՞ւ ակնարկել ուզեց, սակայն վըստահ եմ որ պարապ տեղը այդ խօսքերը չըսաւ մեզի... կ՚երեւայ որ Ալպուս պէյ իր փնտռած որսը ձեռք ձգած է։

Արդարեւ Չէրքէզը պարզ մեծախօսութեան համար չէր որ այդպիսի ծանր ակնարկութիւն մը կ՚ընէր և իր դէմքին վրայ ճառագայթող ուրախութիւնը ցոյց կուտար թէ յաղթական գործ մը տեսած էր։

Ալպուս պէյ չորս անձերուն քովէն հեռանալէ ետքը, ուղղուեցաւ պալատին այն յարկաբաժինը ուր կը գտնուէին Իզզէթ փաշայի գրասենեակները և ընդունելութեան սրահը։

Եւ սակայն տակաւին շատ կանուխ էր և Սուլթանին սիրական քարտուղարը, որ արդէն շատ ուշ քնացած էր, չէր եկած իր սենեակը։

Ալպուս պէյ բաւական ատեն անհամբերութեամբ ժուռ եկաւ նրբանցքին մէջ։ Յետոյ կրկին գնաց, ասդին անդին, խօսակցութեան խառնուելու և ուրիշներուն ալ կրկնելու այն խօսքերը զորս քիչ մը առաջ ըրած էր։ Վերջապէս տեսնելով որ ժամանակը բաւական յառաջացած է, կրկին վերադարձաւ Իզզէթ փաշայի մօտ։

— Փաշան հո՞ս է, հարցուց պահապանին։

— Այո՛, հիմա եկաւ։

— Ուրեմն իմացուր որ անպատճառ և անմիջապէս զինքը տեսնել կուզեմ, խիստ կարեւոր գործի մը համար։

Վայրկեան մը ետքը Ալպուս պէյ արդէն Իզզէթ փաշայի քովն էր։

— Փաշա էֆէնտի, ըսաւ ուրախ և յաղթական դէմքով մը, այս անգամ փաստերով կը ներկայանամ ձեզ։

— Ի՞նչ փաստ, հարցուց փաշան զարմացած երեւոյթով մը։

— Բայց միթէ մոռցա՞ք մեր վերջին տեսակցութիւնը...։

— Այո՛, այո՛, կը յիշեմ, գոչեց Իզզէթ փաշա, դաւա-

դրութեան մը խօսք կ'ընէիք, կ'ըսէիք որ նոյնիսկ Եըլտըզի մէջ մեր վեհափառ տիրոջ դէմ դաւաճանողներ կը գտնուին...

— Ճիշդ այդպէս կ'ըսէի և նոյնիսկ մասնաւոր անուն մըն ալ տուի, երիտասարդ Թիկնապահի մը անունը։

— Թիկնապա՞հ, իրա՛ւ որ միտքս չմնաց պատասխանեց պալատական քարտուղարը որ բացարձակ կերպով կը ստէր և շատ լաւ միտքը պահած էր Ալպուս պէյի արտասանած անունը։

— Շիտակը մտքէս ելած էր. բայց հիմա որ ըսիք այդ անունը, լաւ յիշեցի։

— Եւ խօստացայ այս մասին ձեզի վաւերական ապացոյց մը բերել։

— Այո՛։

— Ու դուք ալ ի փոխարէն խոստացաք այն ատեն ձեր պաշտպանութիւնն ու աջակցութիւնն շնորհել ինծի։

— Բնականաբար, երբոր փաստերով ապացուցանէք որ այս պալատին մէջ կամ նոյնիսկ այս պալատէն դուրս անձ մը կայ որ կը դաւաճանէ մեր վեհափառ տիրոջ նուիրական անձին դէմ, իմ ամենէն մեծ փափաքս ու պարտականութիւնս է այդ դաւաճանին դէմ ելլել, և եթէ հարկ ըլլայ, իմ կեանքիս վըտանգելով այդ թշուառականը ջախջախել և իրեն արժանաւոր պատիժը տալ։

— Լաւ ուրեմն, ահաւասիկ այս փաստը...։

Եւ Ալպուս պէյ գրպանէն հանեց փոքրիկ թուղթ մը և ներկայացուց Իզզէթ փաշայի։ Քարտուղարը առաջին ակնարկով ճանչցաւ թուղթին վրայ գրուած գիրը որ Թիկնապահ Զիա փաշային գիրն էր, թէև իր ստորագրութիւնը չէր կրէր։ Բայց հազիւ թէ կարդալ սկսած էր Ջէրքէզը զայն կեցուց և ըսաւ.

— Սպասեցէ՛ք ետքը կը կարդաք. նախ պէտք է պատմեմ թէ այս թուղթը ինչպէս ձեռք անցուցած եմ։

— Լա՛ւ, խօսեցէ՛ք, ըսաւ Իզզէթ փաշա ընթերցումը ընդհատելով և թուղթը քովը գտնուող փոքրիկ սեղանին վրայ

գնելով, իրաւունք ունիք, նախ իմանանք թէ այս թուղթը ի՛նչ պարագաներու տակ ձեր ձեռքը կը գտնուի։

— Գիտէք որ երէկ իրիկուն ձերբակալուած և հոս բերուած կինը Սալիհա, իր հարցաքննութիւնը աւարտելէ ետքը, Սուլթանին մասնաւոր հրամանին վրայ, տարուեցաւ կայսերական հարէմին կողմը իրեն յատկացուած սենեակի մը մէջ փակուելու, նոյնիսկ նորին վեհափառութեան աղջկան անմիջական հսկողութեանը տակ։ Ամենախիստ արգելք կար իրեն հետ ոևէ կերպով հաղորդակցելու և խօսելու, նոյնիսկ անցնելու այն սենեակին քովէն որուն մէջ Սալիհա փակուած էր՝ միակ պառաւ աղախինի մը պաշտօն յանձնուած էր որոշեալ ժամերուն բանտարկեալին կերակուրը տանելու և դուռնէն ներս ձգելով ետ դառնալու, առանց խօսք մը ընելու. աւելի ապահովութեան համար, հրաման եղած էր որ այդ պառաւ աղախինն ալ խիստ հսկողութեան ենթարկուի և արգելափակուած մնայ այնչափ ատեն որ յարաբերութիւն ունենայ Սալիհայի հետ...։

— Ալպուս պէյ, ընդմիջեց պալատական քարտուղարը, այդ բոլոր կարգադրութիւնները մեր վեհափառ տէրը ինծի հետ խորհրդակցելով հրամայեց, հետևաբար բոլոր այդ մանրամասնութիւնները ծանօթ են ինծի... Ջանացէ՛ք միայն այս թուղթին ի՛նչպէս ձեռք անցնիլը պատմել։

— Լա՛ւ, լաւ, պատասխանեց Ալպուս պէյ, ճիշդ ատիկա պիտի պատմեմ։ Հարցաքննութենէն ետքը, երբ Սալիհա իրեն յատկացուած սենեակը փոխադրուեցաւ, սոսկալի ջղային տագնապի մը մատնուեցաւ և հարկ եղաւ պալատի բժիշկներէն մէկը կանչել որպէս զի պէտք եղած դարմանները տանի։ Իր տագնապը այնքան սաստիկ է եղեր որ պահ մը հարէմին մէջ յուզում տիրեր է և կարելի չէ եղեր հսկողութիւնը կատարել այն խստութեամբ որով հրամայուած էր։ Այդ խառնաշփոթութեան միջոցին՝ Տիլարայի ծառայութեան մէջ գտնուող աղախին մը կը փորձէ մտնել Սալիհայի գտնուած սենեակին՝ բայց աղջիկս՝ Պէլքիս՝ որ կասկածներ ունէր թէ՛ այդ աղախի-

նին և թէ անոր տիրուհիին մասին, անմիջապէս ետևէն կ'իյնայ և զայն վարպետութեամբ իր քով կանչելով՝ սպառնալիքով իր յարկաբաժինը կը տանի և հոն կը ստիպէ զայն ըսելու թէ ի՛նչ պատճառաւ Սալինայի սենեակը երթալ կը փորձէր։ Աղջիկը կը շփոթի, կը թոթովէ և չկրնար որոշ պատասխան մը տալ. այն ատեն աղջիկս, իր աղախիններուն օգնութեամբ այդ աղջկան վրան գլուխը խուզարկել կուտայ և վրայէն այս թուղթը կ'ելլէ... ահա այս թուղթին գտնուելուն պատմութիւնը։ Այժմ մեզի կը մնայ որոշել թէ ի՛նչ պիտի ընենք։

— Իսկ Սալինա ի՞նչ կ'ըլլայ, հարցուց Իզզէթ որ այդ ջղային տագնապէն լուր չունէր և հետաքրքիր էր տեղեկութիւն ստանալու։

— Բժշկին դարմաններուն շնորհիւ կը հանդարտի... բայց խնդիրը անոր վրայ չէ։

Իզզէթ յամրաբար առաւ փոքրիկ սեղանին վրայ դրուած թուղթը և հետեւեալ բառերը կարդաց։

«Քաջութիւն. յարատեւէ՛ այդ ուղղութեամբ. բարեկամներ կը հսկեն. ամէն ինչ կարգին է»։

Այս բառերը թէեւ քիչ, բայց շատ բան կը հասկցնէին. այսուհանդերձ քարտուղարը այդ թուղթը անտարբերութեամբ կրկին սեղանին վրայ դրաւ ըսելով.

— Դժբախտաբար թուղթը ստորագրուած չէ և կարելի չէ ասոր վրայ հիմնուելով մէկը ամբաստանել... կրնամ առարկել թէ դիտմամբ պատրաստուած է։ Բայց գիրէն յայտնի չէ՞ որո՛ւն ըլլալը...։

— Այս գիրը շատ կը նմանի ձեր ակնարկած անձին գիրին, ատոր ըսելիք չի՛կայ, բայց կրնայ վարպետութեամբ նմանցուած ըլլալ...։

— Սակայն աղջկան խոստովանութիւնը կայ մէջտեղ...։

— Վա՛յ, աղջիկը խոստովանա՞ծ է... այն ատեն խնդիրը կը փոխուի։ Ուրեմն պատմեցէք տեսնեմ այդ խոստովանութիւնը։

—Աղջիկը թուղթը վրայէն գտնուելուն պէս սարսափահար, աղջկանս ոտքը կ'իյնայ եւ կը՛ խնդրէ որ զինքը չմատնէ, խոստանալով ամէն բան տեղն ի տեղօք պատմել։

— Եւ ի՞նչ կը պատմէ տեսնենք...։

— Կը պատմէ թէ այդ թուղթը Թիկնապահ Ձիա փաշայի կողմէ տրուած էր Սալիհա հանըմի յանձնուելու համար։

— Փաշան իր ձեռքո՞վը թուղթը տուած էր աղջկան։

— Ոչ, երրորդի մը միջնորդութեամբ։

— Եւ ո՞վ է այդ երրորդը։

— Հարէմին ծառայութեան մէջ գտնուող յոյն կին մը։

Իզզէթ փաշա պահ մը ինքնիրեն խորհրդածեց, յետոյ վճռաբար ըսաւ իր խօսակցին.

— Լա՛ւ, հիմա ամէն բան կը հաղորդեմ մեր վեհափառ տիրոջը։

— Պիտի խնդրէի որ ես ալ ընկերանայի ձեզ որպէս զի եթէ հարկ ըլլայ, լրացուցիչ բացատրութիւններ ալ տամ, ըսաւ Ալպուս պէյ, որ կը վախնար թէ այս յայտնութեան ամբողջ փառքը Իզզէթը կը յափշտակէր իրմէ։

— Շատ աղէկ, միայն թէ նախ պէտք է որ ես Սուլթանին հետ առանձին տեսնուիմ, եւ եթէ ինք հրաման ընէ՝ այն ատեն քեզ ալ իր քով կը կանչենք։

— Այո՛, ես քեզի հետ կուգամ եւ դուրսը կը սպասեմ... պէտք չէ մոռնալ որ այս դաւադրութեան մէջ անպատճառ Տիլարան ալ մասնակցութիւն ունի։

— Ի՞նչ ապացոյց ունիք այս մասին։

— Նախ որ Տիլարա Ձիա փաշայի ձեռքով պալատ բերուած ու Սուլթանին ներկայացուած է եւ երկրորդ Թըլթատար աղջիկը Տիլարայի աղախիններէն մէկն է։

— Այո՛, անշուշտ ատոնք շատ ծանր կասկածներ կրնան ներշնչել, բայց դրական փաստեր չեն... ինչ որ ալ ըլլայ, թող մեր վեհափառ տէրը այդ մասին ինք կատարէ դատաստանը. մենք միայն իրողութիւնը տեղն ի տեղօք պատմելով կը գոհանանք։

Ալպուս պէյ դժգոհութեան շարժում մը ըրաւ, սակայն չպատասխանեց, վախնալով որ գործին յաջողութիւնը բոլորովին կը խանգարուի։

Երկու անձերուն միջեւ վայրկեան մը լռութիւն տիրելէ ետքը կայսերական քարտուղարը ըսաւ.

— Սպասեցէ՛ք այստեղ, վստահ եմ որ Սուլթանը հիմա զիս իր քովը կանչել պիտի տայ այն ատեն միասին կ'երթանք։

Եւ որպէսզի խօսքը կարճ կապէ, սիկառէթ մը հրամցուց Ալպուս պէյի և ինք սկսաւ թղթատել իր առջև դրասեղանին վրայ դրուած թուղթերու խոշոր դէզ մը զանոնք ամենայն հետաքրքրութեամբ աչքէ անցունելու երեւոյթով մը։

Իրականապէս սակայն Իզզէթ բնաւ ուշադրութեան չէր առներ այդ թուղթերը։ Իր միտքը միակ մտածումով մը պաշարուած էր այդ միջոցին, այն է, այս կարեւոր յայտնութեան ամբողջ փառքը իրեն սեփականել։ Ասիկա շատ դիւրին խընդիր մը չէր։ Ալպուս պէյ երբեք թոյլ չպիտի տար որ իր ձեռք բերած յաջողութիւնը իրմէ յափշտակէին և Չէրքէզը այնպիսի յանդուգն ու խորամանկ մարդ մըն էր որ կարելի չէր խաղի բերել։ Եւ սակայն Սուրիացի Իզզէթ փաշան ալ խորամանկութեան մասին վար չէր մնար անկէ և նոյնիսկ կը գերազանցէր զայն։ Այս մտածումներուն մէջ խորասուզուած Իզզէթ երկար ատեն անքարբառ մնաց, աչքերը յառած միեւնոյն թուղթին վրայ զոր չէր կարդար...

Յանկարծ սենեակին դուռը զարնուեցաւ.

— Մտէ՛ք, գոչեց քարտուղարը։

Իր հաւատարիմ պահապանն էր եկողը։

— Վեհափառ Սուլթանը ձեզ կ'ուզէ ըսաւ.

Միեւնոյն վայրկեանէ մղուածի պէս Իզզէթ փաշա և Ալպուս պէյ ոտքի ելան։

— Անմիջապէս կ'երթամ կոր իր քով, պատասխանեց քարտուղարը, դէպի դուռը ուղղուելով.

Չէրքէզը, առանց բառ մը արտասանելու, քայլ առ քայլ

կը հետեւէր անոր։ Շատ մը նրբանցքներէ անցնելէ ետքը վերջապէս հասան կայսերական սրահին դրան առջեւ, ուր քանի մը հաւատարիմներ կեցած էին։

— Ալպուս պէյ, ըսաւ Իզզէթ բարձր ձայնով, դուք հոս սպասեցէք եւ երբ մեր Վեհափառ տէրը հրաման ընէ՝ ձեզ ներս կանչել կուտամ։

Չէրքէզը խոնարհումով մը պատասխանեց այս խօսքերուն։ Իզզէթ հաստատ քայլով անցաւ իր առջեւ բացուող դուռնէն եւ իր տիրոջ ներկայացաւ։

Ապտիւլ Համիտ Սալէհա հանըմի հարցաքննութեան ազդեցութեան տակ եւ անքուն ու մտատանջ գիշերէ մը ետքը, շատ գրգռուած ու դժգոհ տրամադրութեան մը մէջ էր։ Քարտուղարը, որ իր տէրը խիստ լաւ ուսումնասիրած էր եւ անոր դիմագիծերուն ամենափոքր փոփոխութիւններէն կը հասկնար թէ ի՛նչ կ'անցնէր մտքէն, իսկոյն գուշակեց թէ փոթորիկ մը պիտի պայթէր եւ ըստ այնմ պատրաստուեցաւ։

— Հաւնեցա՞ր երէկուան խեղկատակութեանդ, գոչեց Համիտ, երբ հազիւ թէ Իզզէթ սովորական խոնարհումները կատարելով՝ յամրաքայլ դէպի իրեն կը մօտենար։

— Ի՞նչ բանի մէջ արդեօք անհաճոյ եղայ իմ վեհափառ տիրոջս, թոթովեց քարտուղարը։ դիտմամբ շփոթած ձեւ մը տալով իր խօսքերուն։

— Կատարած հարցաքննութիւնդ պարզապէս ինծի դէմ դաւադրութիւն մըն է, չարանենգ բանսարկու, փոխանակ յանցաւորը խոստովանեցնելու՝ թոյլ տուիր որ անլուր նախատինքներ համարձակի արտասանել մեզի դէմ։

— Բայց, վեհափառ տէր, քանի՛ անգամ զինքը արգիլեցի խօսելէ եւ եկայ ձեզմէ հրահանգ խնդրելու եւ ձեր բարձր հրամանին վրայ միայն թոյլ տուի որ ուզածը խօսի։

— Բոլոր ատոնք քու կողմէդ սարքուած դաւեր են, գոչեց Ապտիւլ Համիտ, որուն չարաչուք նայուածքը այդ միջոցին կատաղութիւն եւ վայրագութիւն կ'արտայայտէր. այո՛,

Նըլտըզի մէջ իսկ այդ չարագործները իրենց արբանեակները, իրենց գործակիցները, իրենց դաւադիրները ունին և անոնց գլխաւորն ալ դո՛ւն ես... ահա ինչ որ կը տեսնեմ հիմա, բայց գիտցիր որ ո՛չ մէկերնիդ պիտի կրնաք իմ բարկութենէս խուսափիլ։

— Ձեր վեհափառութեան ըսածները շատ ճիշդ են, պատասխանեց Իգլէթ խոնարհելով, անգամ մըն ալ կ՚ապացուցանեն ձեր յստակատեսութիւնը և ամեն բան ճիշդ գուշակելու հանճարային կարողութիւնը։

— Ի՞նչ կը համարձակիս զիս ծաղրելու, շուն քեզի, գոչեց բռնաւորը սպառնական շարժում մը ընելով։

— Վեհափառ տէր, ի՞նչպէս կրնաք ենթադրել որ ձեր ստրուկ գերին նուաստս այդպիսի ոճրագործութիւն մը մտքէն անցունել։ Ես պարզապէս կը հաստատեմ ձեր բանը թէ Նըլտըզի մէջ իսկ դաւադիրներ կան որոնք կը գործակցին այդ ծածուկ կազմակերպութեան, որուն գլխաւոր անդամները, փա՛ռք Աստուծոյ ձեռք ձգեցինք։

— Եւ այդ Նըլտըզի դաւադիրներուն գլխաւորն ալ դուն ես։

— Այս կէտին մէջ է ահա որ ձեր բարձր վեհափառութիւնը կը սխալի, պատասխանեց Իգլէթ, այս անգամ կորովի ու հաստատ շեշտով մը։

— Արդարացուր տեսնեմ ինքզինքդ։

— Ո՛չ թէ միայն ինքզինքս պիտի արդարացնեմ, եթէ հարկ կը տեսնէք, այլ ատկէ շատ աւելի բան մը պիտի ընեմ. Նըլտըզի մէջ ձեր անձին դէմ դաւողները և գաղտնի կազմակերպութեան հետ յարաբերութիւն ունեցողները ձեզ պիտի յայտնեմ։

Այս խօսքերը զորս Իգլէթ փաշա խորին համոզումի հաստատ շեշտով մը արտասանած էր, մեծ տպաւորութիւն մը գործեցին բռնաւորին վրայ։ Բարկութիւնը մէկէն իջաւ, դէմքին կատաղութիւնն ու աչքերուն խոժոռութիւնը անյայտացան ձայնը յանկարծ քաղցրացաւ.

— Իզզէթ, բաւ, աւելի մօտեցիր և ըսէ ըսելիքդ։

— Վեհափառ տէր, պատասխանեց քարտուղարը քիչ մը ևս յառաջանալով, առաջին օրէն, ինչպէս դուք, ես ևս կը կասկածէի թէ նոյն իսկ այս պալատին մէջ ձեր չուրջը, կային վատ ու ապերախտ անձեր որոնք մոռնալով ամէն մարդկային արժանապատուութիւն և շնորհ, միացած էին ձեզի դէմ դաւադրող թշուառականներուն և անոնց հետ ծածկաբար կը գործակցէին...։ Բայց իմ այս կասկածանքս ապացուցանելու համար հաստատուն փաստեր կը պակսէին և ես թէև մէկ քանիներու վրայ բնազդական կասկած մը ունէի, բայց չէի համարձակեր զանոնք ձեր վեհափառութեան յայտնելու, որպէսզի որոշ փաստերու չգոյութենէն՝ իբրև սուտին զրպարտիչ մը չթուէի ձեր աչքերուն։ Այսուհանդերձ, գաղտնաբար կը զննէի, կը խուզարկէի չուրջս, կասկածելի երևցողները կը հետապնդէի և կը սպասէի այն օրուան ուր կարող պիտի ըլլայի դրական արդիւնքի մը հասնիլ։ Այսօր բարեբախտութիւնը ունիմ ծանուցանելու ձեր վեհափառութեան որ վերջապէս յաջողեցայ իմ այս դժուարին ջանքերուս մէջ...

— Ի՞նչ կ'ըսես, գոչեց Աբտիւլ Համիտ, որուն աչքերը տարօրինակ փայլով մը շողացին, Եըլտըզը մէջ դաւադիրնե՞ր գտար։

— Դաւադիրներ գուցէ չափազանցութիւն ըլլայ, վեհափառ տէր, բայց այս վայրկեանիս ապացոյցներ ունիմ որ գոնէ հատ մը կայ... եթէ ոչ աւելի։

— Եւ ո՞վ է այդ թշուառականը։

— Ան ո՛վ, վեհափառ տէր, ձեր շնորհները ամենէն աւելի վայելող, ձեր վստահութեան արժանացած, իր կեանքը ձեզի պարտական, վերջապէս ձեր բոլոր բարիքներուն արժանացած մէկն է որ այդ մեղապարտ ոճիրը կը գործէ...։

— Բայց անունը ըսէ տեսնեմ, գոչեց բռնաւորը, որուն համբերութիւնը սպառած էր։

— Անունը... կայսերական թիկնապահ Զիա փաշա։

— Զիա փաշա, այն որ այնքան հաւատարմութեան փորձեր տուած է, որուն այնքան բարիքներ ըրած եմ։

— Այո՛, վեհափառ տէր, բուն իսկ այդ ապերախտը։

— Գիտե՞ս որ ո՛րքան ամենածանր ամբաստանութիւն մըն է ըրածդ մէկու մը մասին որ իմ կատարեալ վստահութիւնս կը վայելէ։

— Գիտեմ, վեհափառ տէր, և ճիշդ ասոր համար սպասեցի որ դրական փաստով մը ներկայանամ ձեզ։

— Ո՞ւր է տեսնենք այդ փաստը։

Ահաւասիկ։

Եւ Իզզէթ փաշա գրպանէն հանեց մեզի ծանօթ թուղթը։ Աբտիւլ Համիտ ակնարկ մը նետեց երկտողին վրայ, գիրը ճանչցաւ իսկոյն և ըսաւ.

— Այո՛. այս փաստը բաւական է զինքը անմիջապէս բնաջինջ ընելու համար...։

Այս չարաշուք խօսքերը արտասանելէ ետքը՝ բռնաւորը բոպէ մը լռեց. յետոյ շարունակեց.

— Զինքն առանձին ըլլալու չէ, անպատճառ իր մեղսակիցները ունի պալատին մէջ, պէտք էր որ անոնք ալ երեւան հանէիր։

— Ես ալ ճիշդ ձեր վեհափառութեան կարծիքէն եմ. վստահ եմ որ ուրիշ դաւաճաններ ունինք Երլտըզի մէջ, սակայն պէտք է խոհեմութեամբ վարուինք, որպէս զի կարենանք զանոնք ալ ձեռք ձգել... և ճիշդ այս նկատումով, ըստ իս լաւագոյն կ'ըլլայ որ Զիա փաշայի դէմ ձեռք առնուելիք միջոցներուն մասին յախուռն կերպով չվարուինք։

— Այդ վատը պէտք է անմիջապէս ձերբակալել և փակել տալ պալատին մէջ. յետոյ կը խորհինք թէ ի՛նչ պատիժ պիտի սահմանենք իրեն։

— Ձեր վեհափառութիւնը ինչ որ յարմար տեսնայ այնպէս պիտի ընենք։

— Իսկ անկէ զատ, տակաւին որո՞ւ վրայ կասկածներ ունիս...։

— Վեհափառ տէր, մինչեւ որ ձեռքս դրական ապացոյցներ չըլլան՝ չեմ ուզեր ո՛չ ոք ամբաստանել...։

— Բայց ես կը հրամայեմ որ քու կասկածներդ յայտնես, գոչեց բռնաւորը։

— Վեհափառ տէր, ներեցէ՛ք որ այս մասին տակաւին բան չըսեմ:

— Խօսէ՛, պոռաց Ապտիւլ Համիտ, ձայնը աւելի բարձրացնելով, խօսէ՛ եթէ ոչ քեզ ալ Զիայիին քով կը ղրկեմ։

Իզզէթ փաշա վայրկեան մը վարանեցաւ, յետոյ տեսնելով որ ճար չկար խուսափելու, վճռաբար որոշեց խօսիլ։

— Ալպուս պէյի վրայ կը կասկածիմ, ըսաւ խուլ ձայնով մը, գլուխը դէպի գետին խոնարհելով։

— Ալպուս պէյ, բայց անիկա Զիայի մահացու թշնամին է։

— Կը մոռնա՞ք որ Զիա փաշան ալ ձեր ամենահաւատարիմ ծառան ձեւացած էր երեսանց, սակայն, ինչպէս կը տեսնէք, մութին մէջ ձեզի դէմ կը դաւէ։ Այդ մարդոց ո՛չ թշնամութեան, ո՛չ բարեկամութեան կարելի է վստահիլ. անոնց համար մէ՛կ բան մը գոյութիւն ունի աշխարհիս երեսը, իրենց անձնական շահը եւ կիրքերուն գոհացումը։ Ես, արդէն ըսի ձեր վեհափառութեան, որոշ ու դրական փաստեր չունիմ Ալպուս պէյի դէմ, սակայն իր մասին կասկածելու համար շատ պատճառներ ունիմ...։

— Որո՞նք են այդ պատճառները, ըսէ տեսնենք, գոչեց Ապտիւլ Համիտ, որ խորին հետաքրքրութեամբ մտիկ կ՚ընէր իր սիրական քարտուղարին խօսքերը։

— Վեհափառ տէր, եթէ հրաման կ՚ընէք, ձեր վեհափառութեան մի առ մի թուեմ այն իրողութիւնները որոնք տեղի տուած են իմ կասկածներուս։

— Ամէն բան ըսէ՛ մանրամասնօրէն։

— Երբ առաջին անգամ մտքիս մէջ կասկածներ ծագեցան Զիա փաշայի մասին եւ շատ ծածուկ կերպով սկսայ իր վրայ

հսկողութիւն մը կազմակերպել իմ հաւատարիմ անձերուս ձեռքով, Ալպուս պէյ կռահեց իրողութիւնը և եկաւ ինքնաբերաբար ինձ ըսելու որ ծանր կասկածներ ունէր Թիկնապահ Ջիա փաշայի մասին...: Վայրկեան մը հաւատացի իր խօսքերուն և իրեն ըսի որ եթէ կարենար իր խօսքերը հաստատող փաստեր հայթայթել ինծի, ես ալ իրեն պիտի աջակցէի...:

— Այդ Ալպուսը ինծի ալ եկաւ դաւադրութեան խօսքեր ընելու, ընդմիջեց Ապտիւլ Համիտ, նոյնիսկ երեք օր պայմանաժամ ուզեց ըսածները հաստատելու համար, բայց ինք մասնաւորաբար կ'ակնարկէր չէրքէզ Հասանին ու իր աղջկան ինչպէս նաև անոնց հետ ծածկուած ուրիշ անձերու...:

— Կը տեսնէ՞ք ուրեմն, վեհափառ տէր, որ այդ մարդը ինքզինքը հաւատարիմ ցոյց տալով և իբր թէ դաւաճաններ հետապնդելու ձև մը առնելով, ուրիշ նպատակ չունէր այլ եթէ իմ կատարած խուզարկութիւններուս միջամտելու ըլլալ և զանոնք անյաջողութեան մատնել և ահա այս նպատակին հասնելու համար էր որ ինքզինքը կատաղի թշնամի ցոյց կու տար Ջիա փաշային ու նոյնիսկ բացէ ի բաց զայն կ'ամբաստանէր ինձ, առանց ապացոյց մը տալու և միմիայն իմ բերնէս տեղեկութիւններ քաղելու նպատակով: Բարեբախտաբար իր խաբեբայական ընթացքը շուտով նշմարեցի և զինքը բոլորովին հեռու պահեցի իմ ծածկաբար կատարել տուած քննութիւններէս, այնպէս որ չի կրցաւ իր նպատակին հասնիլ: Վերջապէս այս առտու կրցայ ձեռք ձգել այս թուղթը զոր Ջիա փաշա կայսերական հարէմին պատկանող աղախինի մը միջոցաւ փորձած էր Սալիհայի ձեռքը հասցնել, օգտուելով այս վերջնոյն մէջ ջղային տագնապին առթած հարէմի մէջ տիրող շփոթութենէն:

— Բայց այդ պատմութեանդ մէջ չեմ տեսներ Ալպուս պէյի կասկածելի մէկ դերը, նկատել տուաւ բռնաւորը, որ դիւրաւ համոզուող մէկը չէր, հակառակ իր ծայրայեղօրէն կասկածոտ բնաւորութեան:

— Հիմա ձեր վեհափառութեան պիտի ներկայացնեմ այդ դերը, պատասխանեց Իզզէթ փաշա։ Հազիւ թէ այս թանկագին թուղթը ձեռք ձգած էի, Ալպուս պէյ եկաւ զիս գտաւ և առաջարկեց որ այդ թուղթը, որուն ձեռք անցնելը իմացած էր, անյայտացնեմ... հակառակ պարագային սպառնացաւ ինծի։

— Ի՞նչ կ'ըսես, գոչեց Աբտիւլ Համիտ ժգունելով, համարձակեցա՞ւ այդպիսի բան մը ընել։

— Այո՛, և նոյն իսկ աւելին ըրաւ, չուզեց քովէս վայրկեան մը իսկ բաժնուիլ և չեմ գիտեր թէ ի՛նչպէս իր ձեռքէն պիտի ազատէի, երբ բարեբախտաբար ձեր կողմէ կանչուեցայ և անմիջապէս դուրս ելայ սենեակէս հոս գալու համար։ Այն ատեն Ալպուս պէյ առանց օձիքս թող տալու հետեւեցաւ ինծի՝ ճամբան խոստում առնելով ինէ որ այդ թուղթին նկատմամբ բան մը չըսեմ ձեր վեհափառութեան։ Այսպէս երկուքս միասին հասանք մինչև ձեր վեհափառութեան դրան առջև և ես ներս մտայ։

— Իսկ Ալպո՞ւսը։

— Դուրսը կ'սպասէ կոր, վեհափառ տէր, խնթովեց քարտուղարը կեղծ երկիւղի շեշտով մը։

— Ինչպէ՞ս կը համարձակի մինչև հոս, իմ յարկաբաժինս գալ, գոչեց բռնաւորը մէկէն ի մէկ այլայլելով.

Այս անգամ Իզզէթ հասած էր իր նպատակին և յաջողած էր վեհապետին միտքը պղտորելու։ Կասկածը՝ մէկէն բոյն դրած էր մտքին մէջ և ա՛լ հանգիստ չէր կրնար մնալ։

— Բայց եթէ Ալպուս Զիայի հետ համաձայն է և գիտէ այս թուղթին ձեռք անցնիլը, ըսաւ իր քարտուղարին, այն ատեն անմիջապէս իմաց պիտի տայ անոր և անոնք պիտի կրնան խուսափիլ մեր ձեռքէն... գուցէ մինչև հիմա այդ գործը տեսած է։

— Չեմ կարծեր, վեհափառ տէր, պատասխանեց Իզզէթ փաշա, թուղթը իմ ձեռքս անցնելէն անմիջապէս ետքը Ալ-

պուս պէյ իմ քովս եկաւ, զայն անհետացնել տալու նպատակով և տակաւին առեն չունեցաւ իր մեղսակիցը տեսնելու, քանի որ ինծի ընկերացած է մինչև հոս և դուրսը կը սպասէ։

— Բայց կարելի է մինչև հիմա ձգած գացած է...։

— Ո՛չ, կը սպասէ որ զինքը ընդունիք, ինչպէս որ ես իրեն խոստացայ, ժամանակ չանցնելու համար։

Համիտ անմիջապէս իր ելեկտրական զանգակը հնչեցուց։

Իր հաւատարիմը երեւցաւ սրահին մէջ։

— Ո՞վ կայ դուրսը, հարցուց բռնաւորը։

— Ալպուս պէյը կայ որ կը սպասէ, պատասխանեց միւսը։

Այս պատասխանը բոլորովին հաստատեց Ապտիւլ Համիտի կասկածները և կերպով մը վաւերացուց կայսերական քարտուղարին ըսածները։ Բռնաւորը Իզզէթ փաշայի հետ կարճ խորհրդակցութիւն մը ընելէ ետքը, հրաման ըրաւ որ իսկոյն ձերբակալեն Զիա փաշան և Ալպուս պէյը և զանոնք բանտարկեն, պալատին մէջ, առանձին առանձին, ամէն հաղորդակցութենէ զրկելով։

Ալպուս պէյի ձերբակալումը անմիջապէս կատարուեցաւ, բայց երբ գացին Զիա փաշան փնտռելու, տեսան որ սենեակին մէջ չէր։ Քառորդ մը առաջ Եըլտըզէն մեկնած էր ստիպողական գործ մը պատրուակելով։ Բռնաւորը երբ իմացաւ այս փախուստը, սոսկալի կատաղութեան մը մէջ ինկաւ և հրաման ըրաւ որ ամենախիստ խուզարկութիւններ կատարեն ամէն կողմ, փախստականը գտնելու և ձերբակալելու համար։

Այս նոր դէպքը բոլորովին տակն ու վրայ բրած էր Ապտիւլ Համիտը։ Որքան ալ կասկածներ ունեցած էր իր շուրջը դաւադիրներ գտնուելու մասին, այսուհանդերձ չէր ուզած այսպիսի կարելիութեան մը բացարձակ կերպով հաւատալ։ Հիմա իրողութիւնը կը ցուցնէր իր առջև որոշ ու անհերքելի կերպով։ Այսպէս հակառակ իր ձեռք առած ամէն ծայրայեղ միջոցներուն, իր շուրջը սփռած սարսափին կամ շուրջիններուն շռայլած շնորհներուն, դարձեալ իրեն դէմ դաւադրու-

թիւններ կը սարքուին։ Եւ ո՞վ էին այդ դաւադիրներուն պարագլուխները. Նոյն իսկ ամէնէն աւելի իր շնորհներուն, պատիւներուն, փառքերուն արժանացած անձեր...։

Ու բռնաւորին այնպէս կը թուէր թէ ճակատագրային անողոք հալածանք մը կար իրեն դէմ, թէ բոլոր չուրջինները մէյմէկ ուխտուած թշնամիներ էին իր արիւնին ծարաւի, թէ չի կար մէկը որուն վրայ կարելի ըլլար բացարձակ կերպով վստահիլ...։

Սկսաւ կատաղօրէն ժուռ գալ ընդարձակ սրահին մէջ, ամենի ա՛նարգներ ուղղելով անտեսանելի թշնամիներու դէմ ու սոսկալի սպառնալիքներ մռլտալով քիթին տակէն անոնց հասցէին։

Իշխէթ փաշա, անկիւն մը կծկուած, կը դիտէր իր վեհափառ տէրը, ամենախոնարհ դիրքով մը, լուռ և երկիւղած։ Կը սպասէր որ բարկութեան և ջղագրգռութեան առաջին մոլուցքը անցնի, որպէսզի կարենայ խօսիլ օգտակարապէս։ Բարտուղարը թէև արտաքուստ խռովուած ու վհերոտ կերպարանք մը ունէր, սակայն ներքնապէս շատ զգօն ու միանգամայն հանդարտ էր։ Կ'ըմբռնէր իր վեհափառ տիրոջ հոգեկան վիճակը, կը զգար որ կասկածանքը ահռելի կերպով կը կրծէր անոր բովանդակ էութիւնը և կը պատրաստուէր օգուտ քաղել անոր այս տրամադրութենէն, ջանալով գրաւել անոր բոլոր վստահութիւնը և ինք առանձին իշխել անոր մտքին ու հոգիին վրայ։

Բռնաւորը բաւական ժամանակ ժուռ գալէ ետքը, յանկարծ եկաւ կեցաւ Իշխէթ փաշայի առջև։

— Այսօր պէտք է որ ամէն բան վերջանայ, գոչեց, այսօր պէտք է որ իմ թշնամիներս ամենքն ալ ջախջախուին ու բնաջինջ ըլլան ու հատ մը չմնայ իրենցմէ...։

— Վեհափառ տէր, ձեր բարձր ու նուիրական կամքը ինչպէս որ ուզէ այնպէս պիտի ըլլայ բնականաբար։

— Կ'ուզեմ որ այսօր այդ չորս ձերբակալուածներուն հար-

ցաքննութիւնը աւարտի և անմիջապէս իրենց արժանի պատիժը կրեն։

— Ինչպէս որ հրաման կ՚ընէք, Վեհափառ տէր։

— Նոյնպէս պէտք է որ այսօր պատժուին Սլպուս պէյն ու Զիան...։

— Պիտի պատժուին, Վեհափառ տէր։

— Եւ իրենց հետ պէտք է որ երեւան ելլեն ու պատժուին բոլոր մեղսակիցները, ո՛վ որ ալ ըլլան, ո՛ւր որ ալ գտնուին։

— Վեհափառ տէր, քանի որ հրաման կ՚ընէք, բնականաբար այդպէս պիտի ըլլայ...։

— Եթէ այս հրամաններս կէտ առ կէտ չգործադրես, պիտի կարծեմ որ դո՛ւն ալ իմ թշնամիներուս համախոհ ես։

— Կարծեմ իմ անդրդուելի հաւատարմութեանս մասին շատ ապացոյցներ տուած եմ արդէն ձեր վեհափառութեան և նոյն իսկ այս միջոցին իմ հաւատարմութեանս մէկ նոր և ամենավերջին ապացոյցը տալու համար եկած էի, պատասխանեց քարտուղարը հաստատ ու ինքնավստահ ձայնով մը։

Ապտիւլ Համիտ չպատասխանեց, պահ մը կրկին խորասուզուեցաւ մտածումներու մէջ, յետոյ, մէկէն սրտաշեղ մեղմութեամբ մը ըսաւ.

— Իզզէթ գիտեմ որ դուն իմ միակ անկեղծ բարեկամս ես այս պալատան մէջ, գիտեմ որ դու միայն զիս կը սիրես սրտանց և ասոր համար կեանքս քեզի կը վստահիմ, ըրէ ինչ որ կարող ես զիս փրկելու համար բոլոր յայտնի և ծածուկ թշնամիներուս ձեռքէն և գիտցած եղիր որ պիտի գիտնամ քու ծառայութիւններդ գնահատել։ Քեզ լիազօր իշխանութիւն կուտամ, այսօրուընէ սկսեալ, որպէս զի գիտցածիդ պէս վարուիս այս դաւադրութիւնները բնաջինջ ընելու համար... Նորէն կը կրկնեմ, միայն քու վրադ վստահութիւն ունիմ, գնա՛ և անմիջապէս գործի ձեռնարկէ, և մանաւանդ Ջանայ Սալիհայի և իր դաւակիցներու հարցաքննութիւնը

լմնցնել այսօր... մի՛ մոռնար տուած հրամաններս։

Իզզէթ փաշա, դէմքը յաղթանակի խոնարհութեամբը ճառագայթուած, սովորական դեղնամած ուրախութիւնները ըրաւ և հեռացաւ իր վեհափառ տիրոջ քովէն։

Երբ Ապտիւլ Համիտ առանձին մնաց, ըսաւ ինքնիրեն.

— Ո՛վ գիտէ, գուցէ այս Իզզէթը իմ ամենէն մեծ թըշնամիս է...։

---

### ԳԼՈՒԽ Ժ

## ՍԱԼԻՀԱ ՀԱՆԸՄԻ ՀԱՐՑԱՔՆՆՈՒԹԵԱՆ ՇԱՐՈՒՆԱԿՈՒԹԻՒՆԸ

Իզզէթ փաշա իր վեհափառ տիրոջ քովէն յաղթականօրէն դուրս ելլելուն պէս խոյն հրահանգ ղրկեց պալատականներուն որ գան կրկին գումարուին այն սրահը ուր նախորդ գիշեր տեղի ունեցած էր Սալիհա հանըմի հարցաքննութիւնը։

Կէս ժամ ետքը արդէն ամէնքն ալ եկած էին իրենց թիկնաթոռները գրաւելու։

Իզզէթ փաշա ամենէն ետքը ներս մտաւ դանդաղէն, հը-պարտ ու գոռոզ կերպարանքով մը։ Առաւօտուն դէպքերը արդէն Եըլտըզի ամէն կողմը տարածուած էին, գիտէին թէ նոր յայտնութիւն մը եղած էր, թէ Սալըմա պէյ ձերբակալուած էր, Զէքի փաշա ձերբակալութեան վրայ էր և թէ բոլոր ասոնք Իզզէթ փաշայի շնորհիւ կատարուած էին և թէ Սուլթանը զայն իր քով կանչելով երկարօրէն խօսակցած ու խորհրդակցած էր միասին։ Բոլոր այս չինիլները նոր փայլ մը և նո

*ազդեցութիւն կուտային Ապտիւլ Համիտի սիրական քարտուղարին, այնպէս որ սրահէն ներս մտած ատեն միւս բոլոր պալատական փաշաները սովորականէն աւելի յարգանքով ընդունեցին զինքը։*

*Հազիւ թէ նախագահական աթոռին վրայ բազմած՝ Իզզէթ փաշա անմիջապէս խօսքը Սալիհա հանըմի ուղղելով ըսաւ.*

*— Տիկին, պարտք կը զգամ մեր հարցաքննութիւնները վերսկսելէ առաջ ձեզի իմաց տալ որ այլեւս բնաւ երբեք թոյլ չպիտի տամ որ ձեր նիւթէն շեղիք, այլ պէտք է որ ջանաք մի միայն իմ ընելիք հարցումներուս պատասխանել, հակառակ պարագային՝ գիտցած եղէք որ երէկուան ներողամըտութեամբ չպիտի վարուիմ ձեզի հետ։*

*— Արդէն ինչ որ կ'ուզէի ըսել ամէնքն ալ ըսի, պատասխանեց Սալիհա հանըմ ամենայն հանդարտութեամբ, հետեւաբար ո՛չ ձեր ներողամտութեան և ոչ ալ ձեր սպառնալիքներուն պէտք կայ այլեւս և կարծեմ թէ մեր այս օրուան տեսակցութիւնը շատ շուտով պիտի վերջանայ։*

*Սալիհա հանըմ որոշապէս շեշտեց «տեսակցութիւն» բառը։*

*— Մեր հարցաքննութեան տեւողութիւնը, պատասխանեց Իզզէթ՝ ինքն ալ շեշտելով «հարցաքննութիւն» բառին վըրայ, ձեր կամքէն կախուած չէ, այլ հարցաքննութեան ընթացքէն։*

*— Խօսիլ կամ չխօսիլը միմիայն իմ կամքէս կախուած է։*

*— Սալիհա հանըմ, ըսաւ, պալատականը որ կը տեսնար թէ իր ընդդիմախօսը հետզհետէ յարձակողական դիրք մը կը բռնէր, ինչ որ իր գործին չէր գար բնաւ, մենք հոս շատ ներողամտութեամբ և բարեացակամութեամբ հաւաքուած ենք և մեր վեհափառ տէրն ալ նոյն զգացումները կը տածէ. հետեւաբար փոխանակ իրարու դէմ ելլելու, ջանանք կարելի եղածին չափ մեղմութեամբ վարուիլ և այս կերպով դուք ամենէն աւելի կ'օգտուիք. ուրեմն սկսինք մեր հարցաքննութեան։*

Երէկ մանրամասնօրէն պատմեցիք ձեր ամբողջ կեանքը և եկաք հասաք մինչև այն կէտը ուր Հագգը պէյի ու դպրոցական պատանիի մը հետ, հայ ձկնորսի մը տնակին մէջ, կերպով մը դաշնակցած էիք պայքար մղելու համար երկրին օրինաւոր իշխանութեան դէմ։ Այժմ հաճեցէք շարունակել ձեր պատմութիւնը այս կէտէն։

— Այո՛, պատասխանեց Սալիհա հանըմ հաստատ շեշտով մը, երկուքս միասին մեր սիրելի զոհերուն վրայ այս նուիրական ուխտը ըրինք ետքը, Հագգը պէյ ըսաւ. «Ա՛լ ասկէ ետքը չենք կրնար կենալ Պոլսոյ մէջ ուր անկարելի է մեր նպատակը իրագործել և ուր հաւանօրէն, ուշ կամ կանուխ, մենք ալ զոհ պիտի երթանք բռնաւորին կատաղութեան. այսօրուընէ իսկ պիտի թողունք Պոլիսը և ազատ երկնքի մը տակ մեր պայքարի ծրագիրը պիտի պատրաստենք»։

— Պոլիսը թողուլ հեռանալ, մանաւանդ իմ զաւակներուս չարաչար մահուընէն ետքը, իմ ալ մեծագոյն բաղձանքս էր, բայց ինչպէ՞ս կարելի էր. ո՛չ նիւթական միջոցներ ունէի և ո՛չ ալ կարողութիւն խուսափելու Համիտի լրտեսներուն հալածանքէն։ Հագգը պէյ կռահեց իմ մտատանջութիւնս և ըսաւ. «Դուք անհոգ եղէք, ես ամէն բան պատրաստած եմ և մութը կոխելուն պէս պիտի թողունք այս տնակը և պիտի հեռանանք Պոլսէն։» Իրաւ ալ երբ գիշերը վրայ հասաւ և խաւարը տիրեց ամէն կողմ, ծերունի ձկնորսն ու իր տղան մեզ մտցուցին իրենց նաւակը և ճամբայ ելանք դէպի ծովուն բացը։ Չէի գիտեր թէ ո՛ւր կ'երթայինք, բայց և այնպէս ո և է բացատրութիւն չպահանջեցի Հագգը պէյէն որ ինձ բացարձակ վստահութիւն մը ներշնչած էր և գործակցիլ ուխտած էի կուրօրէն։ Բաւական ժամանակ ծովուն բացերը տատանելէ ետքը, Հագգը պէյ որ նայուածքը ուշա-

դիր յառած էր դէպ ի Սարայ Պուրնուի կողմերը, ուրախութեան ճիչ մը արձակելով գոչեց.

— «Ահաւասիկ մեր նաւը կուգայ կոր։»

Արդարեւ մթութեան մէջ առագաստանաւ մը կը յառաջանար յամրաքայլ։ Կէս ժամ չանցած նաւը արդէն մօտեցած էր մեզի. Նաւակը իսկոյն մօտեցաւ, հոնկէ չուանէ սանդուխ մը վար իջեցուցին եւ անոր միջոցաւ երեքս ալ մտանք առագաստանաւը որ յունական դրօշակ պարզած էր։ Երկու հոգի մեզ կը սպասէին հոն։ Հագգը պէյ զանոնք ներկայացուց ինձ, ըսելով.

— Ահա բռնակալութեան երկու զոհեր ալ... մեր եղբայրները ու ապագայ գործակիցները։

Առագաստանաւը արագօրէն հեռացաւ ցամաքէն եւ սկսաւ սուրալ ջուրերուն երեսը, յաջող հովի մը շնորհիւ։ Հետեւեալ օրը անվտանգ անցանք Չանաք Գալէէն եւ մտանք Արշիպեղագոսի մէջ։ Չորս օր ետքը հասած էինք յունական Շիրա կղզին ուր ցամաք ելանք։ Մեր այս չորեքօրեայ ուղեւորութիւնը բաւական եղած էր խիստ սերտ յարաբերութեամբ մը կապելու մեր ամենուս սիրտերը։ Հինգերնիս ալ միեւնոյն եռանդով ու միեւնոյն յոյսերով տոգորուած էինք։ Ամէնքս ալ բռնաւորին ու բռնակալութեան դէմ միեւնոյն անհաշտ ու ոխերիմ ատելութիւնը կը տածէինք, որովհետեւ ամէնքս ալ հաւասարապէս մեր արիւնլուայ հոգիին խորը կը զգայինք անոր յօշոտիչ հարուածները....։

— Սալիհա հանըմ, բռնաստեղծութիւն ըսելու հարկ չի կայ, ընդմիջեց Իզզէթ փաշա, դուք հոս իբրեւ ամբաստանեալ եկած էք եւ ոչ թէ իբրեւ դատախազ, հետեւաբար անոր համեմատ խօսեցէք....։

— Ոչ, փաշա էֆէնտի, կը սխալիք, իբրեւ ամբաստանեալ չեմ եկած, այլ իբրեւ ամբաստանիչ, պոռաց Սալիհա անյողդողդ ձայնով մը։

— Դուք ձերբակալուած էք ձեր գործած կամ թելադրած

ոճիրներուն հաշիւը տալու համար, պատասխանեց պալատական քարտուղարը ինքն ալ ձայնը բարձրացնելով։

— Իսկ Համի՞տ, ինչո՞ւ իր ոճիրներուն հաշիւը տալ չուզեր...։

— Լսեցէ՛ք, եթէ ոչ ձեզ չարաչար պատժել կուտամ, պոռաց Իգլէթ ձեռքը ուժգին սեղանին զարնելով։

Բայց Սալիհա հանըմ անայլայլ հանդարտութեամբ մը պատասխանեց։

— Աշխարհի մէջ չի կայ պատիժ մը ու չարչարանք մը որ կարենայ զիս վախցնել ու լռեցնել։

Իգլէթ փաշա այս պատասխանին վրայ կը պատրաստուէր աւելի խիստ լեզուով մը խօսիլ, սակայն յանկարծ ինքզինք ժողվեց, զգաց որ այդ կնոջ դէմ ո եւ է սպառնալիք ազդեցութիւն չպիտի ընէր եւ թէ լաւագոյն էր մեղմութեամբ վարուիլ հետը, ուստի կեղծ բարեացակամութեամբ մը ըսաւ.

— Կը տեսնեմ որ անվախ եւ արիասիրտ կին մըն էք եւ երբէք չպիտի փորձեմ ձեզ սպառնալիքներով խօսեցնել տալ, որովհետեւ գիտեմ որ ամէն անվախ ու արիասիրտ անձերը միեւնոյն ատեն մեծասիրտ ու անկեղծ կ՚ըլլան, ուստի ձեր մեծասրտութեան եւ անկեղծութեան միայն կոչում ընելով՝ կը խնդրեմ որ մի առ մի եւ որոշ կերպով պատասխանէք ձեզ ըրելիք հարցումներուս։

— Ուրախ եմ որ վերջապէս կ՚ըմբռնէք թէ ինչպէս խօսելու է ինծի հետ, ըսաւ Սալիհա հանըմ հեգնոտ ժպիտով մը եւ ես ալ ձեր այս ընթացքին փոխարէն պատրաստ եմ անկեղծօրէն պատասխանելու ձեր բոլոր այն հարցումներուն որոնք յարմար տեսնեմ։

Այս պատասխանը թէեւ բոլորովին չէր գոհացներ Իգլէթ փաշան, այսու հանդերձ այնպէս մը ցոյց տուաւ թէ գոհ մընացած էր Սալիհայի խօսքերէն եւ ըսաւ.

— Շատ ուրախ եմ որ վերջապէս իրարու միտք հասկըցանք, ուրեմն առանց ժամանակ անցնելու ձեր հարցաքննու-

թիւնը առաջ տանինք։ Այսպէս ուրեմն Շիրա կղզիին մէջ կազմեցիք ձեր առաջին Քօմիթէն որ հինգ անձերէ կը բաղկանար, այդ անձերէն մին դուք էիք, միւսը Հաջգը պէյը, երրորդը դպրոցական պատանին, իսկ միւս երկուքը, տակաւին չ'ըսիք թէ ո՞վ էին, կը հաճի՞ք անոնց անունները ալ տալ։

— Ո՛չ, պատասխանեց Սալիհա հանըմ։

— Բայց անհրաժեշտ է որ ըսէք այդ անունները, պնդեց Իզզէթ փաշա։

— Բնաւ երբէք պէտք չեմ զգար իմ ընկերներս մատնելու, պատասխանեց վճռաբար։

— Լաւ, թողունք առ այժմ այս մանրամասնութիւնը... Ուրիշ նոր ընկերակիցներ ունեցա՞ք յետոյ։

— Բնականաբար և նոյնիսկ մեր կարծածէն ու ենթադրածէն աւելի, այնպէս որ Պոլսէն մեկնելէս տարի մը առաջ արդէն ամէն կողմ կազմակերպութիւններ ունէինք...։

— Ո՞վ էին ձեր այդ նոր ընկերները։

— Բոլոր քաղաքակրթութեան զոհերը, բոլոր արդարութեան և ազատութեան ծարաւի հոգիները, բոլոր ճշմարիտ հայրենասէրները, բոլոր պարկեշտ մարդիկը...։

— Բայց կը խնդրեմ, ատոնք անորոշ խօսքեր են, անուններ տուէք մեզի...։

— Զինուածներ, անիրաւուածներ, հալածուածներ, ազատասէրներ, հայրենասէրներ, ահա՛ իրենց անունները։

— Բայց, տիկին, այս պայմաններուն մէջ չէինք կրնար առաջ տանիլ մեր հարցաքննութիւնը, դուք խոստացաք անկեղծօրէն պատասխանել իմ հարցումներուս, գոնէ յարգեցէ՛ք ձեր խոստումը։

— Ես խոստացայ պատասխանել այն հարցումներուն, որոնց պատասխանել յարմար կը սեպեմ, երբեք ձեզի չխոստացայ ընկերներս մատնել։

— Ինչ որ է, առ այժմ թող ձեր ընկերներուն անունները գաղտնի մնան, քանի որ դուք այդպէս կը պնդէք։

տրդէն այդ կէտը մեծ կարեւորութիւն չունի մեզի համար, որովհետեւ գրեթէ անոնց մեծ մասը կը ճանչնանք... տակաւին այս առտու ձերբակալեցինք ձեր ընկերներէն Թիկնապահ Զիա փաշան, որ մինչեւ այսօր յաջողած էր մեր վեհափառ տէրը չարաչար խաբել, իբրեւ հաւատարիմ ծառայ մը ներկայացնելով ինքզինքը:

Ինչպէս գիտենք, Թիկնապահը տակաւին ձերբակալուած չէր, բայց այդպիսի անակնկալ յայտնութիւն մը ընելով կը յուսար ազդել Սալիհա հանըմի վրայ: Սակայն այս վերջինը շատ անտարբեր ձեւով մը ընդունեց այս խօսքերը եւ գոհացաւ ըսելով.

— Չէի գիտեր որ Թիկնապահ Զիա փաշան ալ բռնակալութեան թշնամիներէն մին էր, շատ ուրախ եմ ձեր տուած լուրին համար:

— Ինչպէ՛ս, չէիք գիտեր որ Զիա փաշայ ձեր ընկերներէն է, գոչեց Ասրաֆեյ Համիտի քարտուղարը, եւ սակայն գաղտնապէս իրարու հետ կը թղթակցէիք...:

— Չեմ հասկնար թէ ինչ ըսել կ'ուզէք, ես երբեք թղթակցած չեմ այդպիսի անձի մը հետ:

— Բայց ինք գաղտուկ նամակներ գրած է ձեզ...:

— Այդպիսի նամակ չեմ ընդունած:

— Չէք ընդունած, որովհետեւ յաջողած ենք տակաւին ձեզի չհասած՝ ձեռք անցնելու:

— Բան մը չեմ կրնար պատասխանել այս մասին:

— Սակայն թողունք այս խնդիրը: Հիմա ըսէք տեսնեմ ձեր գաղտնի կազմակերպութեան գործունէութիւնը:

— Մեր գործունէութեան նպատակը շատ պարզ է, այն է ամէն կարելի միջոցներով տապալել բռնութիւնը եւ անոր տեղ հաստատել ազատական ու սահմանադրական կառավարութիւն մը, որով միայն կրնայ փրկուիլ ու ապրիլ թշուառ հայրենիքը:

— Եւ այս նպատակին համա՞ր է որ ոճիրներ կը գործէք:

— Մենք միայն մէջտեղէն կը վերցնենք այն խոչընդոտները որոնք մեզ կ'արգիլեն, ո և է միջոցաւ, մեր նպատակին հասնելու։

— Ուրեմն կը խոստովանիք թէ ձեր ձեռքով կատարուած են Գանտիլլիի, Էրէնքէօյի, Զամլըճայի և Սկիւտարի ոճիրները։

— Բնականաբար կը խոստովանիմ, քանի որ բացարձակ ճշմարտութիւն է, նոյն իսկ կրնամ աւելցնել թէ ասկէ ետքն ալ հաւանաբար պէտք պիտի ունենանք այդ ծայրայեղ միջոցներուն դիմելու, միայն թէ կրնաք վստահ ըլլալ որ Ապտիւլ Համիտ բռնաւորութիւնը պահելու համար որչափ ոճիր որ կը գործէ՝ մենք անոր մէկ հարիւրերորդը անգամ գործելու չպիտի ստիպուինք՝ ազատութիւնը բերելու համար...։

— Քանի որ կը խոստովանիք այս ոճիրներուն ձեր ձեռքով գործուած ըլլալը, ուրեմն ըսէք նաև թէ ձեր ընկերներէն որո՞նց ձեռքով կատարուած են ասոնք...։

— Այս կէտը Ազատութեան դատին համար կարևորութիւն չունի. անհասներով չզբաղինք բնաւ... ի՞նչ փոյթ թէ վրէժխնդիր ձեռքը Հասանին, Ահմէտին, Միհրանին կամ Եորկիին ըլլայ, բաւ է որ հարուածը չվրիպի...։

— Քանի որ քրիստոնեաներու անուններ կու տաք մեզի, կ'ենթադրեմ որ ձեր գաղտնի կազմակերպութեան մէջ Հայեր և Յոյներ ալ ունիք։

— Անշուշտ ունինք, միթէ անոնք ալ մեզի պէս չե՞ն տառապիր բռնակալութենէն։

— Պիտի շարունակէ՞ք մերժել ձեր մեղսակիցներուն անունը տալ։

— Եւ դուք տակաւին պիտի համարձակի՞ք անոնց անունները հարցնելու ինծի...։

Հարցաքննութիւնը այս կերպ շարունակուելով ո և է արդիւնք չպիտի ունենար։ Իզզէթ փաշա զգաց թէ դժուարին

կացութեան մը մատնուած էր և հարկ էր դուրս ելլել անկէ։ Վայրկեան մը լռեց, իր շուրջը գտնուողներուն հետ ցած ձայնով խորհրդակցեցաւ. յետոյ ձայնը բարձրացուց և վճռաբար ըսաւ.

— Վերջին անգամ ըլլալով, Սալիհա հանըմ, կ'ազդարարեմ ձեզ որ չենք կրնար այլեւս մեր հարցաքննութիւնը այս ձեւով շարունակել։ Մինչեւ հիմա ձեր կնոջական հանգամանքը նկատի առնելով՝ չափազանց ներողութեամբ վարուեցանք ձեզի հետ, յուսալով որ դուք ալ պիտի կրնաք գնահատել մեր այս վարմունքը, գնահատել և ըստ այնմ պարտ ու պատշաճ կերպով ձեր խոստովանութիւնները ընել և մեր հարցումներուն կէտ առ կէտ պատասխանել։

«Դժբախտաբար մեր ցոյց տուած ներողամտութիւնը պատճառ եղաւ որ դուք անպատկառ ընթացք մը բռնէք, ձեր յանցաւորի դիրքը մոռնաք և տեսակ մը ամբաստանիչ դառնալով համարձակիք խենթ ու խելառ խօսքեր ընել մեր վեհափառ տիրոջ նուիրական անձին ու անոր կառավարութեան դէմ։ Այս բանը այլեւս կարելի չէ շարունակել։ Մենք մինչեւ հիմա դաւող չարագործը մոռցանք և մեր խօսքը մոլորեալ կնոջը ուղղեցինք, հիմա սակայն առենը եկաւ մոռնալու որ մեր դէմինը կին մըն է և ուղղակի դաւադիր չարագործին հետ պիտի խօսինք։

«Գիտէք որ արդարութիւնը միջոցներ ունի խոստովանիլ չուզող չարագործներուն լեզուն բանալու և զանոնք սոխակի պէս խօսեցնել տալու, ջանացէ՛ք որ չստիպէք մեզ այդ միջոցներուն դիմելու։ Հասկցա՞ք»։

Այս վերջին բառը Իզզէթ փաշա արտասանեց խոժոռ ու ատելութեամբ լի նայուածք մը ուղղելով Սալիհա հանըմին, որ հանդարտ ու անտարբեր, հեգնական, նուրբ ժպիտով մը մտիկ կ'ընէր այդ սպառնալիքներուն։

— Իմացա՞ք ինչ որ ըսի, պոռաց քարտուղարը իր դիմացինին արհամարհոտ լռութենէն կատղած։

— Այո՛, լսեցի ձեր ըսածները, պատասխանեց Սալիհա հանդարտ ձայնով մը, զիս խոստովանեցնելու համար սպառնալիքներ ըրիք, կարծեմ ու զեցիք չարչարանքներու ակնարկել, ուզեցիք հասկցնել որ զիս տանջանքի պիտի ենթարկէիք խօսեցնել տալու համար... պարզապէս կը խղճամ ձեր վրայ, կը խղճամ մանաւանդ Ապտիւլ Համիտի վրայ որ կնոջ մը ամուսինը չարաչար սպաննել տալէ և երկու զաւակները ծովուն մէջ խեղդամահ ընելէ ետքը, տակաւին կը կարծէ թէ չարչարանք ու տանջանք մնացած է այդ կնոջ համար։ Կ'ուզէի տեսնել որ այդ դժոխային ոգին այս չարչարանքներէն ու տանջանքներէն յետոյ, ի՞նչ աւելի սոսկալի չարչարանք կրնայ տալ ինծի...։

— Գիտէ՛ք որ ձեր այդ խօսքերովը ձեր մահուան վճիռը կ'արտասանէք։

— Ձեզի պէս վատերն են որ մահուընէ կը վախնան, գոչեց Սալիհա որուն ձայնը յուզումէն դողդղալ կը սկսէր։

Իր ու ընկերներուն ճակտին նետուած այս նախատինքէն այլայլած՝ Իզզէթ փաշա բարկութեամբ ոտքի ելաւ և սկսաւ ուժգնօրէն զանգակը հնչեցնել։

Դահճապետ մը խոյս ներս խուժեց։

— Պահապանները կանչեցէ՛ք ու թող աս կինը իր տեղը տանին, գոչեց փաշան։

Յետոյ դէպ ի Սալիհա հանդիման դառնալով բարկաճայթ շեշտով մը ըսաւ.

— Զարաչար պիտի զղջաք ձեր այս ընթացքին համար, բայց ալ օգուտ չունի։

Քանի մը վայրկեան ետքը, Սալիհա արդէն հեռացած էր սրահէն։

— Փաշա էֆէնտիներ, ըսաւ Իզզէթ, խօսքը իր շուրջիններուն ուղղելով, ինչպէս տեսաք, անկարելի է մեղմութեամբ խօսեցնել այս կինը և հարցաքննել զինքը, ուստի փոխանակ պարապ տեղը ժամավաճառ ըլլալու, լաւագոյն է

որ միւս ձերբակալուածներու հարցաքննութեան սկսինք, գուցէ անոնցմէ կրնանք քաղել մեր ուզած տեղեկութիւնները․ գալով այս կնոջ, իր մասին ինչ ընթացք բռնելնիս թող մեր վեհափառ տէրը ինք որոշէ։

Ներկաները համամիտ գտնուեցան իրենց Նախագահին այս խորհուրդին և իսկոյն հրաման տրուեցաւ որպէս զի ձերբակալներէն երիցագոյնը ներս բերուի։

Բայց նոյն միջոցին թիկնապահ մը գալով Իզզէթ փաշան հրաւիրեց Սուլթանին քով։

Ապտիւլ Համիտ իր թաքստոցէն ներկայ գտնուած էր Սալիհա հանըմի երկրորդ հարցաքննութեան և կատաղութեամբ լսած էր անոր խօսքերը։ Երբ որ Իզզէթ իր տիրոջ քով եկաւ հասկցաւ թէ հոգեկան իր տրամադրութեան մէջ էր նիկա։

— Այս կինը պէտք է անմիջապէս ամենասոսկալի չարչարանքներու ենթարկել և խօսեցնել տալ, գոչեց իր սիրական քարտուղարին, և եթէ տակաւին յամառի իր այս ընթացքին մէջ, չարչարանքը շարունակել մինչև որ սատկի․․․ այդ կինը, ա՛լ ասկէ ետքը ապրելու իրաւունք չունի։

— Ես ալ բացարձակապէս ձեր վեհափառութեան կարծիքէն եմ։

— Գալով միւս ձերբակալուածներուն, շարունակեց Ապտիւլ Համիտ, իրենց հետ ալ նոյն կերպով պէտք է վարուիլ, նախ անուշութեամբ ջանալու է զիրենք խոստովանեցնելու, եթէ խօսիլ չուզեն՝ պէտք է բռնի միջոցներու դիմել ու յետոյ զիրենք ոչնչացնել․․․ ու այս ամէնը պէտք է այսօր ըլլայ․․․ չեմ ուզեր որ խնդիրը երկարաձգուի։

— Ձեր վեհափառութեան կամքը պիտի կատարուի, պատասխանեց քարտուղարը ամենայն ակնածութեամբ։

— Եւ բոլոր այս եղածները պէտք է ծածուկ մնան, ժողովուրդը պէտք չէ որ բան մը իմանայ այս անցած դարձածէն։

— Այս մասին կրնաք կատարելապէս ապահով ըլլալ... պալատէն դուրս ոչ ոք բան մը գիտէ այս գաղտնի կազմակերպութեան մասին։

Այս խօսակցութենէն ետք Իզզէթ փաշա վերադարձաւ հարցաքննութեան սրահը, ուր արդէն բերուած էր ձերբակալուածներէն մին։

Այս վերջինը քառասուն տարեկանի մօտ, յաղթակազմ, դեղին պեխերով գեղեցիկ մարդ մըն էր, որուն անայլայլ կերպարանքը իր սրտին արիութիւնը ցոյց կուտար։ Խրոխտ կերպարանքով մը նստած էր այն աթոռին վրայ ուր քիչ մը առաջ տեսանք Սալիհա հանըմը։ Իզզէթ փաշա իր թիկնաթոռին մէջ բազմելէ ետքը պահ մը ուշադիր քննեց այս մարդը և իսկոյն հասկցաւ որ աչքը վախցնելով կարելի չպիտի ըլլար խօսեցնել զինքը և թէ լաւագոյն էր խորամանկութեան դիմել. ուստի մեղմ ու աղու ձայնով մը ըսաւ.

— Ձեր հարցաքննութիւնը չեմ յուսար որ երկար տեւէ, որովհետեւ արդէն մեր պէտք եղած տեղեկութիւնները կրցանք քաղել Սալիհա հանըմէն որ իմաստութիւնը ունեցաւ ամէն բան տեղն ի տեղօք խոստովանելու, ինչ որ իրեն համար բարիք մը պիտի ըլլայ և պիտի նպաստէ իրեն սահմանուած պատիժը թեթեւցնելու և միանգամայն զինքը անօգուտ տանջանքներէ ազատելու։ Այսուհանդերձ, ձեւակերպութեան համար, կ'ուզեմ ձեզի ևս հարցաքննել և կը յուսամ որ դուք ալ, ձեր ընկերուհիին պէս, դժուարութիւն չէք յարուցաներ ու մեր հարցումներուն որոշ կերպով կը պատասխանէք։ Եւ այս բանը ամէնէն աւելի ձեզի կրնայ նպաստաւոր ըլլալ։

— Կը յուսամ որ ինէ ալ այնչափ գոհ պիտի մնաք որչափ գոհ մնացած էք Սալիհա հանըմէն, պատասխանեց ամբաստանեալը ամենայն հանդարտութեամբ։

Այս պատասխանէնէն քաջալերուած՝ նախագահը սկսաւ իր հարցաքննութեան։

— Նախ ձեր անունը ըսէ՛ք։
— Ալի։
— Ձեր հօրը անունը։
— Եուսուֆ։
— Ի՞նչ գործով կը զբաղիք։
— Հայրենիքի փրկութեան նուիրական գործովը։
— Կը խնդրեմ, ուղղակի և որոշ կերպով պատասխանեցէ՛ք իմ հարցումներուս, ի՞նչ է ձեր արհեստը։
— Նախկին զինուորական մըն եմ։
— Իսկ հիմա՞.
— Հիմա . . . յեղափոխական։
— Որքա՞ն ժամանակէ ի վեր։
— Վեց տարիէ ի վեր։
— Ապացոյցներ ունինք թէ դուք մասնակից գտնուած էք Գանախլլիի մէջ գործուած երեակ սպանութիւններուն։
— Այդ մասին ապացոյց չունիք, այլ միայն կասկածներ պատասխանեց այն որ ինքզինքը Ալի անուանած էր։
— Կ'ուրանա՞ք ձեր մասնակցութիւնը։
— Բնաւ երբէք, միայն թէ կ'ըսեմ որ դուք այդ մասին ո և է ապացոյց չունիք։
— Եւ սակայն կ'ընդունիք որ այդ ոճիրներուն մասնակցած էք։
— Գործին մէջ ոճիր չկայ։ Մեր կազմակերպութիւնը որոշած է մէջտեղէն վերցնել բոլոր այն վատերը որոնք անձնական շահու համար գործիք կ'ըլլան բռնակալութեան և կ'ուզեն հայրենիքի ազատութիւնը զոհել իրենց գձուձ եսութիւններուն. այդ երեք անձերը անհատապէս այս տեսակ վատեր էին ուստի մեր կազմակերպութեան որոշումը գործադրեցինք։ Եւ այս տեսակ որոշումներ պիտի շարունակուին գործադրուիլ ամէն անգամ որ պէտք ըլլայ.
— Ձեր այդ հայրենասիրական գործողութիւնները ամեն քաղաքակիրթ երկիրներու մէջ մէկ անուն մը միայն ունին, այն է հասարակ ոճրագործութիւն, ըսաւ Իզզէթ փաշա։

— Իսկ ձեր կազմակերպած ջարդերուն ի՞նչ անուն կու-տան քաղաքակիրթ երկիրներու մէջ, հարցուց Ալի:

Իզզէթ որ Սալիհա հանըմի հարցաքննութենէն ստացած փորձառութեամբը հասկցած էր որ այս տեսակ վիճաբանու-թիւններու մէջ պէտք չէր մոլորիլ, իսկոյն խօսքը փոխեց:

— Որո՞նք էին ձեր միւս ընկերները Գամաւիլլի այդ ե-ղեռնագործութեան մէջ:

— Կազմակերպութեան այն անդամները որոնց վիճակ-ուած էր տրուած որոշումը կատարել:

— Անունները ըսէ՛ք:

— Մեր ընկերները մատնելու սովորութիւնը չկայ մեր մէջ:

— Բայց մենք կրնանք ձեզ ստիպել որ այդ անունները ըսէք:

— Փորձեցէ՛ք տեսնեմ:

— Կը համարձակի՞ք սպառնալիք ընել մեզի, գոչեց նա-խագահը բարկութեամբ:

— Ինչո՞ւ չէ, բաւական զօրութիւն ունինք սպառնալու ձեզի:

— Կ'երեւայ որ չէք գիտեր թէ ձեր բոլոր ընկերները ձեր-բակալուած են այս միջոցին, շնորհիւ Սալիհա հանըմի խոս-տովանութիւններուն, ըսաւ Իզզէթ փաշա, յուսալով որ միւսը պիտի խաբուի այս խօսքերէն:

— Իրա՞ւ կ'ըսէք, պատասխանեց միւսը ծաղրածու ձեւ-ով մը, ուրեմն մէկ օրուան մէջ կարո՞ղ եղաք ձերբակալելու այն միլիոնաւոր Օսմանցիները որոնք անլուր բռնակալութեան մը տակ ապրելէ յուսահատ որոշած են այս երկիրը փրկել իր ոխերիմ թշնամիներու ձեռքէն եւ զայն ազատական սահմանա-դրութեամբ մը օժտել: Ուրեմն մէկ օրուան մէջ կրցա՞ք ա-զատութեան յաղթանակը պատրաստելու աշխատող հազարա-ւոր անձնազոհ Օսմանցիները գտնել ու բանտարկել: Բայց այդպիսի գործ մը կատարելու համար ոչ ձեր խաֆիէներու

վոհմակը, ոչ ձեր ոստիկանները և ոչ իսկ ձեր բանակը բաւական է...

— Գիտէ՞ք որ ձեր այս յոխորտանքները ձեզի շատ սուղի պիտի նստին, գոչեց Նախագահը։

— Պարզապէս ճշմարտութիւնը կ՚ըսեմ ձեզ ոչ թէ կը յոխորտամ։

— Վերջին անգամ կը հրաւիրեմ ձեզ որ ուղղակի և որոշ կերպով իմ հարցումներուս պատասխանէք, փոխանակ խենթութեան խօսքեր ընելու։

— Ես ալ վերջին անգամ ձեզ կը յայտարարեմ որ արդէն ամբողջ ըսելիքներս ըսի և թէ ասկէ ետք միտք չունիմ ձեզ պատասխանելու։

— Բայց մեզ պիտի ստիպէք որ ձեզ բռնի խօսեցնենք ասանք։

— Այդ ձեր գիտնալիք բանն է։

— Վերջին անգամ դարձեալ կը կրկնեմ, պիտի պատասխանէ՞ք հարցումներուս։

— Ո՛չ, ըսաւ Ալի այնպիսի հաստատ շեշտով մը որ Իգդէթ՝ փաշա հասկցաւ թէ զայն խօսեցնելու համար ո և է փորձ անօգուտ էր և թէ հարկ էր ուրիշ միջոցի դիմել։

Իսկոյն զանգակը զարկաւ և հրամայեց որ ամբաստանեալը իր տեղը փոխադրեն։ Յետոյ զատ զատ բերել տուաւ նաև միւս երկու ձերբակալուածները, որոնց մին բուն իսկ այն խաղալցի կեղծ քահանան էր որուն Պոլիս հանելը պատմեցինք և որուն շնորհիւ Մաք Լայն կրցած էր Զամըճայի թաքստոցը գտնել։ Ընթերցողները, ինչպէս կը յիշեն, այդ կեղծ քահանան հայ մըն էր, որուն իր սանահօրուհին Վահրամ անունը տուած էր։

Վահրամի հարցաքննութիւնն ալ շատ երկար չտևեց։ Երիտասարդը առանց դժուարութեան յայտարարեց իր հայ ըլլալը և գաղտնի կազմակերպութեան մասնակցիլը Օսմանեան հայրենիքը ազատելու համար բռնակալութեան ճանկերէն։ Ըսաւ թէ ինք իբրև Օսմանցի կը գործէր և ոչ թէ իբրև Հայ և

իր նպատակն էր նպաստել Օսմանեան հայրենիքին վերածնունդեան և Սահմանադրութեան հաստատումին։

Ըսաւ նաև որ իրենց կազմակերպութեան մէջ, առանց ցեղի ու կրօնի խտրութեան, անձնազոհներ կային որոնք իրենց կեանքին գնովը պիտի աշխատէին ազատութեան յաղթանակին։ բայց երբ Իզզէթ փաշա ուզեց մանրամասնութիւններու մէջ մտնել և կազմակերպութեան գաղտնիքներուն տեղեկանալ, երիտասարդը բացարձակօրէն յայտարարեց թէ բառ մը չպիտի ըսէր այդ մասին։ Ի զուր պալատական քարտուղարը իր սպառնալիքները կրկնեց, տանջանքի ու չարաչար մահուան խօսքեր ըրաւ։ Երիտասարդը անդրդուելի մնաց և յամառօրէն լռութիւն պահեց։

— Սպասեցէ՛ք քիչ մը և ամէնքդ ալ տախտակներու պէս պիտի խօսիք, գոչեց Իզզէթ զանգակը բարկութեամբ հնչեցնելով։

Երբ պահապանները եկան՝ նախագահը հրամայեց որ Վահրամն ալ իր տեղը տանին և չորրորդ ձերբակալուածը բերեն։

Այս չորրորդը, գուցէ մեր ընթերցողները արդէն գուշակեցին, բուն իսկ մեր վէպին սկիզբը ճանչցած «Տաֆադ»ի խմբագիր Սարըգ պէյն էր։

Իզզէթ փաշա ամէնէն աւելի յոյսը դրած էր երիտասարդ խմբագրին վրայ։

— Այս մարդը, կը խորհէր ինքնին, տակաւին նոր մտած է կազմակերպութեան մէջ, միւսներուն կորովը ու փորձառութիւնը ունենալու չէ ու ո՛չ անոնց չափ մոլեռանդ յեղափոխական մըն է։ Ինք վայրկենական տպաւորութեան մը տակ դրդուած միացած է. անոնց հոգեկան զօրութիւնը չպիտի կրնայ ունենալ։

Այս յոյսերով օրօրուած՝ ուզեց մեղմօրէն սկսիլ իր հարցաքննութիւնը։

— Սարըգ պէյ, ըսաւ փաղաքշական ձայնով մը, ձեզի

հետ կ՚ուզեմ բոլորովին տարբեր կերպով վարուիլ, որովհետեւ գիտեմ թէ դուք պատուաւոր, պարկեշտ եւ ազնիւ երիտասարդ մըն էք, միեւնոյն ատեն շատ ուսեալ եւ խելացի, եւ շատ փայլուն ապագայ մը ունիք ձեր առջեւ։ Այդ ապագան իրաւ է որ վայրկենական մոլորումի մը պահուն ջախջախեցիք, բայց մենք գիտենք թէ դուք ի բնէ ազնիւ ու պարտաճանաչ քաղաքացի մըն էք եւ թէ կարելի է այդ մոլորումը դարմանել, ապաւինելով մեր վեհափառ տիրոջ բարեացակամութեան եւ անսահման ներողամտութեան։ Ես նոյն իսկ յանձնառու կ՚ըլլամ ձեր մասին բարեխօսելու Նորին Վեհափառութեան եւ այժմէն կը խոստանամ որ այս բարեխօսութիւնը ապարդիւն չպիտի ըլլայ, միայն թէ ատոր փոխարէն կ՚ուզեմ որ դուք ալ բոլորովին անկեղծօրէն պատասխանէք իմ հարցումներուս եւ մեզի պէտք եղած դիւրութիւնները տաք որպէս զի կարող ըլլանք այդ չարագործներու ընկերակցութենէն մաքրել մեր պետութիւնը։

— Ո՞ր չարագործներու ընկերակցութեան մասին կը խօսիք, հարցուց Սարգ միամիտ կերպարանքով մը։

— Այն ընկերակցութեան մասին որուն դուք ալ դըժբախտաբար եւ անգիտակցաբար մասնակցած էք։

— Ես հայրենասէրներու ընկերակցութեան մը կը պատկանիմ եւ ոչ թէ չարագործներու....։

— Խնդիրը ատոր վրայ չէ, փութաց ըսել Իզզէթ փաշա, էականը այն է որ այժմ այդ գաղտնի ընկերութիւնը պետութեան դէմ կը դաւէ եւ ամէն ճշմարիտ Օսմանցիի պարտականութիւնն է կառավարութեան աջակցիլ որպէս զի այդ վտանգաւոր մարմինը չկրնայ այլեւս վնասել հանրային ապահովութեան։

«Շնորհիւ մեր վեհափառ Սուլթանին արդէն այդ կազմակերպութեան գլխաւորները ձեռք անցուցինք եւ մնացածները ալ անցընելու վրայ ենք, ուստի մենէ ճշմարտութիւնը ծածկելով ուրիշ բան բրած չպիտի ըլլաք եթէ ոչ ձեր վիճակը ծանրացնել, առանց ո եւ է օգուտի։»

— Փաշա էֆէնտի, ձեր պերճախօսութիւնը անօգուտ տեղը կը սպառէք, պատասխանեց Սաթըգ պէյ անյողդողդ չեչտով մը, ձեզի հետաքրքրող հարցերու մասին բան մը չի պիտի կրնաք քաղել բերնէս...։

— Բայց արդէն ձեր միւս երեք ընկերները շատ բան խոստովանեցան։

— Կը զրպարտէք զիրենք, գոչեց այս անգամ երիտասարդ խմբագիրը բարկաճայթ ձայնով մը, իմ ընկերներս վատեր չեն։

— Սաթըգ պէյ, կը ցաւիմ որ մեր բարեացակամութիւնը չարաչար կը գործածէք ու չէք ուզեր օգտուիլ անկէ. սակայն գիտցած եղէք որ յետոյ շատ պիտի զղջաք...։

— Կ'արհամարհեմ ձեր այդ սպառնալիքները, ըսաւ Սաթըգ խրոխտ կերպարանքով մը։

— Գիտցած եղէք որ ձեզ խօսեցնելու համար բռնութեան պիտի դիմենք։

— Դուք ալ գիտցած եղէք որ մենք ալ ֆիզիքական չարչարանքներու դիմանալու չափ հոգեկան կորով պիտի ունենանք։

Նախագահը յուսահատական շարժում մը ըրաւ։ Այս մարդոց հետ կարելի չէր անուշութեամբ գլուխ ելլել։ Նոյն իսկ այս նորամուտ երիտասարդը չէր ուզեր խոստովանիլ եւ միւսներէն աւելի յամառութիւն ցոյց կուտար։

Իզզէթ յոգնած երեւոյթով մը սեղանին վրայ դրուած զանգակը անգամ մըն ալ հնչեցուց եւ պահապանները կանչել տալով՝ հրամայեց որ Սաթըգ պէյը իր տեղը փոխադրեն,

Հարցաքննութիւնը լմնցած էր առանց ո եւ է արդիւնքի։

Այս ապարդիւն հարցաքննութիւններէն ետքը այլեւս չորս ձերբակալուածներուն բախտը վճռուած էր։ Եթէ երբեք զղջում յայտնած ըլլային, «աման»ի գային, իրենց մեղապարտութեան համար ներում հայցէին ու մանաւանդ ամէն բան տեղն ի տեղօք պատմելով՝ ծածուկ կազմակերպութեան բոլոր գաղտ-

նիւթերը յայտնէին, Աբտիւլ Համիտ իր անսպառ գթասրտութեամբը դուցէ ներողամիտ հոգի մը ցոյց պիտի տար իրենց հանդէպ ու զանոնք մշտնջենական գնտանի մը մէջ փակելով պիտի գոհանար։ Բայց այդ անուղղայ ըմբոստները ոչ միայն գաղտնիք մը դուրս չհանեցին՝ այլ նոյնիսկ համարձակեցան բացէ ի բաց նախատինքներ տեղալ նորին վեհափառութեան դէմ և իրենց մեղաւորի դիրքը մոռնալով՝ մէյմէկ ամբաստանիչներ դառնալ։ Բռնաւորը այս աստիճան յանդգնութեան չէր սպասեր բնաւ։ Երբեք չէր կասկածեր թէ իր իշխանութեան ներքեւ տակաւին կը գտնուէին այս աստիճան անկեղծութիւն, կորով ու նկարագիր ունեցող անձեր։ Համիտ կը կարծէր որ իր երկարամեայ ապականիչ ու անբարոյացուցիչ իշխանութեան շնորհիւ կրցած էր ամբողջ Օսմանցիները վատասերել, անոնց հոգիէն մէջէն խլել բոլոր ազնիւ ու բարձր զգացումներու սերմերը և զանոնք միայն անասնական բնազդներով ապրող արարածներու վերածել։ Հիմա սոսկումով կը տեսնար որ ցեղին մէջ ապստամբական արիասրտութիւնը չէր ջնջուած՝ այլ տակաւին աւելի զօրացած էր և կը սպառնար աւելի ուժգնութեամբ մը պոռթկալու։ Այդ մարդիկը ոչ թէ վախ չէին զգար իր բռնակալութենէն, ընդհակառակը կը սպառնային անոր, նոյն իսկ իրենց շղթայուած վիճակին մէջ։ Ու նոյն իսկ այդ ըմբոստութեան ոգին անձնաւորողը Թրքուհի մըն էր․․․։

Աբտիւլ Համիտ երբ վարագոյրին ետեւէն երիտասարդ խմբագրին՝ Սաարգի հարցաքննութիւնն ալ լսեց, աւելի բարկութեան մը մատնուեցաւ և պահ մը խորհեցաւ այդ չորս ըմբոստներն ալ իր ներկայութեանը բերել տալ ու զանոնք իր ձեռքովը սպաննել, ամենուն գլուխներն ալ ատրճանակի մէյմէկ հարուածով պայթեցնելով։

Յետոյ մէկէն իր բարկութիւնը դարձաւ իր սիրական քարտուղարին Իզզէթի դէմ, որուն հետ տակաւին նոյն առտուն իսկ այնքան սիրալիր եղած էր։

— Այս մարդը չկրցաւ իրեն յանձնուած պաշտօնը լաւ կատարել, մտածեց, առաջին վայրկեանէն պէտք էր սարսափեցնել այդ մարդիկը, մինչդեռ ինք թոյլ վարուեցաւ հետերնին, ուզեց անուշութեամբ գործ տեսնել եւ ատոր համար գործը այս ընթացքը առաւ։

Եւ իսկոյն իր մօտ կանչել տուաւ Նէճիպ Մէլհամէ փաշան։

— Նէճիպ, ըսաւ անոր, շատ դժգոհ մնացի կատարուած հարցաքննութիւններէն։

— Ինչո՞ւ համար, վեհափառ տէր, հարցուց պալատականը։

— Որովհետեւ ոչ թէ արդիւնք մը չտուին, այլ առիթ մը եղան որ այդ մարդիկը անպատկառ ակնարկութիւններ ընելու համարձակին... եւ բոլոր ատոր յանցանքը Իզզէթինն է որ չկրցաւ պէտք եղած կորովը ցոյց տալ։

— Այո՛, թերեւս կարելի էր աւելի խստութեամբ հարցաքննութիւնը կատարել պատասխանեց Նէճիպ Մէլհամէ, այսուհանդերձ կը կարծեմ որ Իզզէթ փաշա շատ վարպետութեամբ գործը վարեց... միայն թէ այդ դաւադիրները տարօրինակ մարդիկ են...։

— Ես վստահ եմ որ եթէ դուն կատարէիր հարցաքննութիւնները, լաւագոյն արդիւնք մը կ՚ունենայինք։

Իր տիրոջ այս գնահատութեան վրայ Նէճիպի աչքերը ուրախութենէն շողացին, բայց կեղծ համեստութեամբ մը գլուխը ծռեց եւ չպատասխանեց։

— Հիմա կ՚ուզեմ որ երկրորդ անգամ, դուն առանձին հարցաքննես զիրենք, քու յարմար տեսած ձեւովդ։

— Որչափ ալ ինծի յանձնուած պաշտօնը դժուարին ըլլայ, այսուհանդերձ պատրաստ եմ ամենայն յօժարութեամբ իմ վեհափառ տիրոջս կամքը կատարելու, պատասխանեց Նէճիպ։

— Այդ մարդիկը, շարունակեց բռնաւորը, ինչ որ ալ

ըլլայ իրենց նոր հարցաքննութեան արդիւնքը, այլեւ անօգուտ է որ ապրին, քանի որ իրենց կեանքը պետութեան վընասելէ ուրիշ նպատակ մը չունի․ ուստի պէտք չունիս հետեւնին մեղմութեամբ վարուելու... կրնաս զիրենք խօսեցնելու համար ամէն միջոցի դիմել։

— Ամէն միջոց պիտի փորձեմ, վեհափառ տէր։

— Քու հանճարամտութեանդ կը թողում միջոցներու ընտրութիւնը, միայն կրնաս վստահ ըլլալ որ զիրենք քեզի կը յանձնեմ եւ քենէ հաշիւ չպիտի պահանջեմ եթէ զիրենք խօսեցնելու համար ձեռք առած միջոցներուդ հետեւանքով փորձանք մը պատահի իրենց։

— Ձեր կամքը պիտի կատարեմ, վեհափառ տէր, պատասխանեց Նէճիպ Մէհմէտ իբրեւ պատասխան իր ամբողջ այդ չարաչուք թելադրութիւններուն։

— Եթէ յաջողիս օգտակար բան մը իմանալ իրենցմէ, զիս չափազանց գոհ պիտի թողուս։

— Ամէն բան պիտի ընեմ իմ վեհափառ տիրոջս հաճելի ըլլալու համար։

Աբտիւլ Համիտի հրամանը բացորոշ էր։ Նէճիպ Մէհմէտ իր գործը պիտի կրնար մեղցնելու առաջեան խոչընդակ առզանանք խօսեցնելու համար։ Միայն թէ պիտի յաջողէ՞ր իր այս դաժանի պաշտօնին մէջ։ Իրաւ է որ Նէճիպ Մէհմէտ շատ անգամներ յաջողած էր սպառնալիքներով կամ չարչարանքներով ահաբեկել ձերբակալուած յանցաւոր ու յաճախ աբոլորովին անմեղ մարդիկ եւ զանոնք խօսեցնել տալ։ Բայց այս նոր ձերբակալուած մարդիկը երբեք չէին նմաներ անոնց․ այս բանն էր որ մտատանջութիւն կը պատճառէր իրեն։

Այսու հանդերձ իր վարանումը բնաւ յայտնի չըրաւ Աբտիւլ Համիտի քով, այլ ընդհակառակը խրոխտ մեծխօսիկութեամբ մը ըսաւ․

— Կը յուսամ որ ինծի յանձնուած պաշտօնը պիտի կրնամ յաջողութեամբ գլուխ հանել եւ արժանանալ ձեր բարձր վե

հանրապետութեան գնահատութեան, միայն թէ կը խնդրեմ որ ինծ քիչ մը ժամանակ շնորհք ընե՛ք...

— Ի՞նչ ժամանակ, գոչեց բռնաւորը, ընդհակառակը ես կ'ուզեմ որ այս խնդիրը կարելի եղածին չափ շուտ լմննայ:

— Պիտի խնդրէի որ գոնէ նոր հարցաքննութիւնը անմիջապէս չսկսէինք և գոնէ մինչև այս գիշեր ինծի միջոց տրուէր պէտք եղած պատրաստութիւնները տեսնելու... մանաւանդ որ լաւագոյն կ'ըլլայ այս նոր հարցաքննութիւնները գիշեր ժամանակ կատարել:

— Կը հասկնամ ինչ որ ըսել կ'ուզես, պատասխանեց Ապտիւլ Համիտ ձայնը մեղմացնելով, այո՛, այո՛, իրաւունք ունիս, լաւագոյն է որ գիշերը կատարուին այս գործողութիւնները... գնա և ուզածիդ պէս պատրաստութիւնները տե՛ս:

Նէճիպ Մէհեմէտ գետնամած խոնարհութիւններ ընելէ ետքը, մեկնեցաւ իր տիրոջ քովէն:

---

ԳԼՈՒԽ ԺԱ.

## ՍԱԼԻՀԱ ՀԱՆԸՄԻ ՉԱՐՉԱՐԱՆՔԸ

Մութը չկոխած՝ արդէն պալատականը իր ամբողջ պատրաստութիւնները տեսած էր:

Երլտըզի պալատին գետնայարկի մէկ նկուղին մէջ սենեակ մը հարցաքննական ատեան ձևացուցած էր: Մէկ անկիւն մը դնել տուած էր փայտէ սեղան մը, առանց ծածկոյթի, որուն վրայ չէչ մը մելան, մէկ քանի գրիչ և թուղթերու դէզ մը կ'երևար միայն: Սեղանին քով դրուած էին երեք խախուտ անպաճոյճ աթոռներ: Ամբողջ նկուղը լուսաւորելու համար, սեղանին վրայ դրուած երկու մոմ բաւական համարուած էր: Այս խիստ նախնական յարդարումը անհամբերօրէն չա-

բաշուք երեւոյթ մը կու տար այդ նկուղին։ Արդէն Նէճիպ Մէհմէտի նպատակն ալ այդ էր։ Սեղանին վերը, մութին մէջ զետեղուած էր նաեւ փայլուն քառակուսի աթոռակ մը, ադամանդներով յարդարուած։

Գիշերը արդէն բաւական յառաջացած էր ու այդ շու-բաշուք գետնայարկը տակաւին թաղուած էր խորունկ հանդարտութեան մը մէջ։

Նէճիպ Մէհմէտ ընդհանրապէս այդ տեսակ հաճոյքըննութիւններու մէջ ընդունուած սովորութեան համեմատ, ուզած էր որ կէս գիշերէն ետքը, երբոր քանի մը արթնցնելով բերել տայ ամբաստանեալները եւ այնպէս հաճոյանալ։ Այդ փորձը յաճախ լաւ արդիւնքներ տուած էր իրեն։

Այսպէս ուրեմն, շատ ուշ ատեն, նկուղին մէջ կայմիսակի դուռը բացուեցաւ եւ գաղտնի քայլերով ներս մտաւ պալատական փաշան՝ երկու անձերու ընկերակցութեամբ։ Յամր յամր յառաջացաւ մինչեւ անկիւնի սեղանը եւ անոր քով, յատուկ աթոռին վրայ բազմեցաւ, մինչ իրեն ընկերացողները ոտքի մնացած էին։ Փաշան անմիջապէս մէկուն դառնալով ըսաւ.

— Ո՞ւր է, Սէլիմ Աղա Սամսաքը եւ իր ընկերները։

— Փաշա էֆէնտի, իրեն ըսինք որ հոս գտնուի, սակայն տակաւին չէ եկած։

— Գնա՛ զինքը գտիր եւ բե՛ր որ անմիջապէս գայ։

Միւսը այս հրամանը առնելուն պէս մեկնեցաւ եւ քանի մը վայրկեան ետքը վերադարձաւ հսկայ ու յաղթանդամ արաբի մը հետ, որուն սեւ դէմքը, դուրս ցցուած կարմիր շրթունքները ու պլպլացող աչքերը, մութին մէջ ահռելի կերպարանք մը կու տային իրեն։

Այդ վիթխարի մարդը Սէլիմ Աղա Սամսաքն էր, Սուդանցի խափշիկ մը որ Եգիպտոսի մէջ դահիճի պաշտօն վարած էր տարիներով, յետոյ ըմբշամարտութիւններու մասնակցած ու մեծ համբաւ շահած էր Գահիրէի ու Աղեքսանդրիոյ մէջ։ Նշանաւոր ըմբիշներ մինչեւ Եգիպտոս ճամբորդած էին՝ հետը չափուելու համար ու անկէ պարտուած։ Իր համբաւը հասած

էր մինչեւ Պոլիս և Ելտըզի մէջ գտնուող Եգիպտացի մը առաջարկած էր իր հայրենակցին Պոլիս գալ և Սուլթանի ծառայութեան մէջ մտնել իբրեւ պալատան ըմբիշ։ Սէիտ Էպու Սամաք խանդավառութեամբ ընդունած էր այս առաջարկը և անմիջապէս փութացած էր Պոլիս գալ ու երթալ իր հայրենակիցը գտնել։ Իր հսկայ հասակը, կորովի կազմուածքը, դուրս ցցուած այտերը և սեփ սեւ աչքերը սարսափով համակած էին զինքը առաջին անգամ տեսնողները, այսու հանդերձ դիւրաւ կրնած էր ընդունուիլ Ելտըզի պալատին մէջ, Նոյն իսկ Ապտիւլ Համիտ ուզած էր մօտէն տեսնել զինքը և անոր վայրենի կերպարանքը հաճոյ թուած էր իրեն և դրամական մեծ պարգեւ մը ըրած էր։ Այդ օրէն, Սէիտ Էպու Սամաք, իբր Սուլթանին կողմէ գնահատուած մէկը, յարգանք ու ակնածանք ներշնչած էր ամէնուն։ Եւ սակայն Ապտիւլ Համիտ սիրահար չէր ըմբշամարտութիւններու և պալատի ըմբիշները գրեթէ երբեք առիթ չէին ունենար իրենց վեհափառ տիրոջ ցոյց տալու ուժերնին ու ճարպիկութիւննին։ Սէիտ Էպու Սամաք ծոյլ ու անգործ կեանք մը կը վարէր պալատին մէջ, չկարենալով պէտք եղածին չափ իր քաջագործութիւնները ցուցադրել, այսու հանդերձ գոհ էր իր վիճակէն։ Ատեն ատեն զինքը կը գործածէին՝ սարսափ ազդելու համար վեհերոտ ձերբակալեալներու որոնք Ելտըզ կը բերուէին հարցաքննութեան համար։ Այսպէս, Սէիտ Էպու Սամաք կամաց կամաց իր ըմբիշի պաշտօնը մոռցած՝ իր հին դահիճի դերը կը կատարէր։

Սուտանցին երբ եկաւ Նէճիպ Մէլհամէի դէմը՝ իր հըսկայական հասակը ծռեց և ակնածալի բարեւ մը տուաւ։

— Սէիտ, ըսաւ փաշան արաբերէն լեզուով, քու ծառայութեանդ պէտք ունինք։

— Պատրաստ եմ ձեր հրամանին, պատասխանեց միւսը։

— Չորս չարագործներ ձերբակալած ենք, որոնք մեր վեհափառ տիրոջ նուիրական անձին դէմ կը դաւէին. այդ անձերը մինչեւ հիմա անուշութեամբ չուզեցին իրենց խոս-

տոլանութիւնները ընել և նոյն իսկ համարձակեցան նախատական ընթացք մը ունենալ մեզի հանդէպ։ Հիմա զիրենք բռնութեամբ խօսեցնել պիտի տանք։

— Լա՛ւ, կը խօսեցնենք ըսաւ Սուտանցին չարաչուք դէմքով մը։

— Ո՞ւր են միւս երկու ընկերներդ։

— Դուրսը ձեր հրամանին կը սպասեն։

— Շատ աղէկ, առ այժմ դուն առանձին բաւական ես, եթէ պէտք ունենանք միւսներն ալ կը կանչենք։

— Ինշալլա՛հ պէտք չմնար։

— Մանաւանդ որ մեր առաջին հարցաքննելիքը կին մըն է։

— Կի՞ն մը, ըսաւ սեւը արհամարհոտ ձեւով մը, կին մը որ կը համարձակի Էրիկմարդոց հրամանին անսաստել, Աստուա՛ծ իմ, ի՜նչ օրերու հասանք։

— Եւ դուն վստա՞հ ես որ պէտք եղածին պէս պիտի կրնաս խօսեցնել այդ կինը։

— Եթէ Սպաւ Սամաք այդչափի ալ կարողութիւն չունենայ, ա՛լ ինչ երեսով կրնայ ապրիլ աշխարհիս վրայ։

— Քիչ մը ետքը պիտի տեսնենք քու խօսքերուդ իրական արժէքը, պատասխանեց փաշան, որ այս խօսակցութիւնը ընելով սեւամորթին հետ, պարզապէս զայն ա՛լ աւելի գրգռել կ'ուզէր։

Յետոյ, իր հրամանին վրայ, Սուտանցին գնաց կեցաւ այն աթոռին ետեւը, որուն վրայ պիտի նստեցնէին ամբաստանեալը։

— Գնա՛ և Սալիհա հանըմը հոս բերել տուր, պատուիրեց Նէճիպ Մէհմէտ իր քովը գտնուող անձին։

Երբ միւսը մեկնեցաւ տրուած հրամանը գործադրելու համար, պալատականը աչք մը պտտցուց գետնայարկին շուրջ և իր քննութենէն գոհ մնաց։ Արդարեւ այդ նկուղը, մերկ ու աղտոտ կերպով լուսաւորուած կամ գրեթէ մթութեան մէջ թաղուած, որովհետեւ սեղանին վրայ դրուած երկու մոմերը հազիւ անորոշ լոյս մը կը սփռէին, չարաչուք և դժընդակ տպաւորութիւն մը կը գործէր մարդուն երեւակայու-

թևան վրայ։ Հոս չի կար առաջուան լուսաշող ու պերճօրէն կահաւորուած դահլիճին զուարթ ու անդորրիչ երևոյթը, այլ ընդհակառակն արհաւիրքն ու վրդովմունքը կը տիրէր ամէն կողմ։

— Կարծեմ թէ այս սրահին յարդարումը աւելի յարմար է քան միւսինը, մտածեց ինքնին Նէճիպ Մէլհամէ, և թէ այստեղ այդ կինը չպիտի համարձակի խօսիլ այն ձևով որով կը խօսէր դահլիճին մէջ...։ Բայց աստի, Ապու Սամաքն ալ մոռնալու չէ։

Վերջապէս, կէս ժամ ետքը, նկուղին դուռը բացուեցաւ և մութին մէջ ներս բերին Սալիհա հանըմը։

— Ինչո՞ւ այսչափ ուշացար, հարցուց խոժոռ ձայնով մը Նէճիպ Մէլհամէ։

— Տիկինը կը քնանար և զինքը արթընցնելու և տեղէն հանելու համար քիչ մը ժամանակ կորսնցուցինք, պատասխանեց այն անձը որ Սալիհան փնտռելու գացած էր։

— Նստեցուցէ՛ք զինքը սա աթոռին վրայ, շարունակեց Նէճիպ Մէլհամէ նոյն խոժոռ շեշտովը, և որպէս զի հանդարտ մնայ, թևերը և ոտքերը կապեցէ՛ք աթոռին։

Երեք անձերը որոնք Սալիհայի կ'ընկերանային՝ զայն աթոռին քով առաջնորդեցին։ Տիկինը առանց խօսք մը արտասանելու կամ դժուարութիւն յարուցանելու, նստաւ յարդէ աթոռին վրայ և թող տուաւ որ թևերն ու ոտքերը կապեն անոր։ Այս գործողութիւնը տասը վայրկեանի չափ տևեց։

— Հիմա դուք տեղերնիդ գացէք, հրամայեց պալատականը, խօսքը երկու պահապաններուն ուղղելով, իսկ դուն Մահմուտ պէյ, եկո՛ւր տեղդ նստէ, որպէս զի մի առ մի արձանագրես այս կնոջ խոստովանութիւնը։

Հրամանը իսկոյն գործադրուեցաւ։

Այն ատեն Նէճիպ Մէլհամէ, խօսքը Սալիհա հանըմին ուղղելով, յօնքերը պռստած, դաժան ու խիստ դէմքով մը, ըսաւ.

— Մի՛ կարծեր որ կնոջ մը պէս պիտի վարուիմ հետդ. ինծի համար այդ աթոռին վրայ նստողը կին մը չէ, այլ հասարակ չարագործ մը և միանգամայն պետութեան դէմ գործող դաւաճան մը։ Դու և ընկերներուդ արարքները աշխարհի բոլոր երկիրներուն մէջ կախաղանով կը պատժուին. անիկա պէտք է որ գիտնաս։ Անկէ առաջ գուցէ չափազանց ներողամտութեամբ վարուեցանք ձեզի հետ և մեր այս ներողամտութիւնը ձեր կողմէ իբրև տկարութեան նշան համարուեցաւ։ Ալ հիմա ներողամտութեան շրջանը լմնցած է և ծայրայեղ խստութեամբ պիտի վարուիմ հետդ։ Այս մասին վեհափառ տիրոջս կողմէն բացարձակապէս արտօնուած եմ. քու կեանքդ իմ ձեռքս է և ուզածիս պէս իշխանութիւն ունիմ անոր վրայ։ Մի՛ կարծեր որ լալով, պոռալով կամ սպառնալով կրնաս ո և է կերպով ազդել իմ վրաս։ Այս նկուղը բաւական խորունկ ու պատերն ալ բաւական հաստ են՝ ամէն աղաղակ, ճիչ ու դոռում գոչում խեղդելու համար։ Միակ յոյս մը կը մնայ քեզի ողջ ելլելու համար այս տեղէն. այն է՝ առանց կեղծիքի ու ամենայն ճշդութեամբ պատասխանել քեզի ըլլալիք հարցումներուն և յետոյ ապաւինիլ կայսերական գթութեան... փրկութեան ուրիշ ճամբայ չունիս....։

Պալատականը պահ մը լռեց, թոյլ տալու համար որ իր խօսքերը իրենց ազդեցութիւնը գործեն, յետոյ շարունակեց.

— Մեր վեհափառ տէրը սոսկալի կերպով բարկացած է ձեր լիրբ ու անպատկառ վարմունքին համար, յորմէհետէ հարցաքննութեան ենթարկուեցաք և նոյն իսկ որոշած էր առանց նոր հարցաքննութեան մը, ձեզ ամէնքդ ալ չարաչար մահուամբ մը բնաջինջ ընել։ Վերջապէս մենք յաջողեցանք զինքը համոզելու որ իբրև վերջին փորձ անգամ մըն ալ ձեզ հարցաքննենք և անկէ ետքը իր հրամանը գործադրենք... հետևաբար քու կեանքդ թելէ մը միայն կախուած է և ո՛չ թէ միայն քու կեանքդ՝ այլ նաև ընկերներուդ կեան-

քը, որովհետեւ մենք համոզուած ենք որ քու չխօսելու յամառութիւնդ է որ չար օրինակ կ'ըլլայ անոնց... այսպէս եթէ կ'ուզես զոնէ քու ընկերներուդ կեանքը փրկել, պէտք է որ մեր հարցումներուն տեղն ի տեղօք պատասխանես:

— Կարծեմ բոլորովին անօգուտ յոգնութիւն մը յանձն առած էք այս երկրորդ հարցաքննութեան փորձին դիմելով, պատասխանեց Սալիհա հանըմ ամենայն հանդարտութեամբ, ինչ որ պէտք էր ըսել արդէն ըսի... տարիներէ ի վեր մեր հայրենիքը արիւնարբու բռնակալութեան մը տակ կը հեծէ եւ հսկայաքայլ դէպի անկում կը դիմէ: Այս աղետալի դրութեան վերջ մը տալու համար մենք ուխտած ենք մինչեւ ետքը կռուիլ, առանց կասելու նոյն իսկ մահուան դիմաց...:

— Լռէ՛, բանախօսութիւն արտասանելու ժամանակ չէ, պոռաց Նէճիպ Մէլհամէ, ձեռքը ուժգին սեղանին զարնելով ու ոտքի ելլելով, այդ յիմարաբանութիւնները շատ լսեցինք արդէն... դուք հոս կը գտնուիք հաշիւ տալու համար կարգ մը անմեղ մարդիկներու սպանութեան մասին... պիտի ըսէ՞ք թէ ո՞րոնք են այդ ոճիրները գործողները, այո՛ կամ ոչ...:

— Ո՛չ, պատասխանեց Սալիհա հանըմ հաստատ շեշտով մը:

Նէճիպ Մէլհամէ, որ կրկին աթոռին վրայ նստած էր, մէկէն ոտքի ցատկեց բարկութեամբ, արագ քայլերով ուղղուեցաւ դէպի դիմացի դուռը եւ զայն բանալով պոռաց.

— Սէիտ Ապու Սամաք:

— Հրամմեցէք, փաշա էֆէնտի, պատասխանեց Սուտանցիին խռպոտ ձայնը:

— Շուտ ներս եկո՛ւր...

Հսկայ սեւամորթը երեւցաւ մթութեան մէջէն: Փաշան անոր թեւէն բռնեց եւ բերաւ կեցուց Սալիհա հանըմի դէմը: Յետոյ վերադարձաւ սեղանին մօտ, անոր դարակներէն մին բացաւ ու մէջէն մորթէ շինուած կարճ ու հաստկեկ մտրակ մը առաւ ու բերաւ Սուտանցիին տուաւ:

— Այս կինը, ըսաւ Ապու Սամաքի, ոճրագործներու գաղտնի ընկերութեան մը պետն է, ընկերութիւն որ նպատակ ունի մեր վեհափառ տիրոջ դէմ դաւաճանելու և անոր հաւատարիմ ծառաները մէկիկ մէկիկ սպաննելու... հիմա զինքը պիտի հարցաքննեմ և եթէ չուզէ հարցումներուս պատասխանել, այս մտրակով քու պաշտօնդ պիտի կատարես ամենայն խստութեամբ։

— Պատրաստ եմ ձեր հրամանին պատասխանեց Նախկին դահիճը։

Նէճիպ Մէլհամէ վերադարձաւ իր աթոռը, սեղանին վրայ դրուած թուղթերու ծրարը պահ մը աչքէ անցուց և յետոյ ըսաւ, խօսքը հանըմին ուղղելով․

— Այստեղ ունինք շարք մը ոճրագործութիւններու տեղեկագիրները, նախ Գանտիլլի ծովեզերեայ տան մը մէջ 1904 օգոստոս 20ին սպաննուած գտնուած են երեք անձեր, յետոյ Էրէնքէօյ, հորի մը մէջէն երեւան ելած է սպաննուած անձի մը գլուխը, յետոյ Ջամլըճայի մօտերը գտնուած է պարախիղպան Էօմէրի գլուխը․ յետոյ նոյնպէս Սկիւտարի բարձունքներուն վրայ սպաննուած երկու կիներ, որոնց գլուխները, սնտուկի մը ամփոփուած, բերուած են Պէշիկթաշի ոստիկանատունը․ բոլոր այս խորհրդաւոր սպաննութիւններուն համար ձեր ծածուկ կազմակերպութիւնն է որ կ՚ամբաստանուի և այս մասին դուք ալ չէք ուրացած ձեր մասնակցութիւնը, արդ՝ կ՚ընդունի՞ք որ այս բոլոր ոճիրները ձեր կողմէ կատարուած են։

— Այո՛, պատասխանեց Սալիհա հանըմ։

— Դուք ուղղակի՞ մասնակցած էք այդ սպաննութիւններուն։

— Ո՛չ։

— Ուրեմն ի՞նչ եղած է ձեր դերը այդ ոճիրներուն մէջ։

— Ոճիր և սպաննութիւն բառերը նախ չեմ ընդունիր բնաւ, պատասխանեց Սալիհա հանըմ նոյն հանդարտութեամբ

որով խօսած էր անկէ առաջ. գերագոյն մարմնի մը կողմէ տրուած վճիռի մը համեմատ, այդ պատիժները սահմանուեցան, հետեւաբար ոճիրի խօսք պէտք չէ ընել:

— Գերագո՞յն մարմինին մէջ կը գտնուէիք դուք ալ:

— Այո՛:

— Իսկ միւս անդամները որո՞նք էին:

— Անոնք ալ, ինծի պէս բռնակալութեան դէմ կռուող հայրենասէրներ...:

— Ինչ է այդ հայրենասէրներուն անունները:

— Չեմ ուզեր ըսել:

— Կը հրամայեմ ձեզ որ մի առ մի այդ անունները տաք:

— Չեմ ուզեր ըսել:

— Հակառակ պարագային պիտի ստիպուիմ տարբեր կերպով վարուիլ ձեզի հետ:

— Կը սպասեմ այդ տարբեր վարմունքին:

— Գիտէ՞ք որ ասկէ ողջ դուրս չպիտի ելլէք, եթէ այդ անունները չի տաք:

— Դագաղ մը մահուընէ չի վախնար, պատասխանեց Սալիհա հանըմ ամենայն հանդարտութեամբ:

— Ի՞նչ ըսել կ'ուզես, գոչեց Նէճիպ Մէլհամէ բարկաճայթ շեշտով մը:

— Ըսել կ'ուզեմ որ տարիներէ ի վեր արդէն ներսիդիս կը կրեմ ամուսնոյս և երկու զաւակներուս դիակները զորս Աբտիւլ Համիտ սպաննեց, հետեւաբար դագաղ մըն եմ ես...:

— Այս թանձր պատերը այդ տեսակ բանաստեղծութիւններու համար ականջ չունին, խելքդ գլուխդ ժողվէ՛, պոռաց պալատականը:

— Այս թանձր պատերէն դուրս ու աւելի վեր ուրիշ մը կայ որ իմ խօսքերս կը լսէ ու զիս և ձեզ կը դատէ, պատասխանեց Սալիհա, որուն դէմքը՝ մթութեան մէջ, տարօրինակ փայլով մը կը շողար:

— Ձեր մեղսակիցներուն անունները պիտի տա՞ք անմիջապէս, գոչեց Նէճիպ Մէլհամէ, որ յուզումէն կը դողար, տեսնելով որ այդ կինը, հակառակ իր ձեռք առած միջոցներուն, երբեք վախնալու երեւոյթ չունէր։

— Գանախլըի մէջ և ուրիշ տեղեր գործուած այդ բոլոր ապստամբութիւններուն միակ հեղինակը և պատասխանատուն Ապտիւլ Համիտն է։

— Մեղսակիցներուն անունները տո՛ւր, կրկնեց փաշան չառագունած դէմքով մը։

Սալիհա հանըմ ա՛լ չպատասխանեց։

— Սէիտ Աղա Սամադ, պոռաց Նէճիպ Մէլհամէ, պաշտօնդ կատարէ։

Այն ատեն Սուտանցի հսկան իր մտրակը բարձրացուց և սկսաւ կատաղի կերպով հարուածներ տեղալ հէ՛գ կապկապուած կնոջ կռնակին։

Եւ սակայն մարտիրոսուհին հիանալի համբերատարութեամբ մը դիմադրեց այդ հարուածներուն։ Ո՛չ կսկիծի աղաղակ մը, ո՛չ դէմքի ծամածութիւն մը ունեցաւ։ Երբեք կարելի չէր հաւատալ որ այդ աղջկան մարմինը այսչափ դիմադրութեան ուժ պիտի ունենար։

Փաշային մէկ նշանին վրայ՝ սեւամորթը իր հարուածները դադրեցուց․

— Ըսէ՛ տեսնենք մեղսակիցներուդ անունները, գոչեց Նէճիպ Մէլհամէ։

— Վատ թշուառական մըն ես, քու արիւնարբու տիրոջդ արժանի, ըսաւ Սալիհա հանըմ իբրեւ պատասխան։

Մտրակին հարուածները վերսկսան ա՛լ աւելի կատաղութեամբ։

Բայց այս անգամ հէ՛գ կինը ա՛լ չկրցաւ դիմանալ ու մարեցաւ։

Աղա Սամադ հարուածները դադրեցուց։

— Մարեցաւ, ըսաւ խօսքը փաշային ուղղելով։

— Լա՛ւ, հիմա խելքը գլուխը կը բերենք, պատասխանեց Նէճիպ Մէլհամէ և իր քովը նստող գրագրին դառնալով աւելցուց.

— Երեսը քիչ մը ջուր սրսկէ՛ ու սա սրուակը հոտոտել տուր։

Եւ գրպանէն հանելով գրագրին ներկայացուց փոքրիկ սրուակ մը։ Նէճիպ որ այս տեսակ հարցաքննութիւններ շատ անգամ ըրած էր, պէտք եղած միջոցները ձեռք առած էր արդէն։

Շնորհիւ տրուած խնամքներուն՝ քառորդ մը ետքը Սալիհա հանըմ աչքերը բացաւ։

— Ի՞նչպէս ես, մարիլիքդ անցա՞ւ, հարցուց պալատականը խոժոռ ձայնով մը, չար ակնարկ մը ուղղելով իր զոհին երեսին։

— Այո՛, պատասխանեց կինը նուաղեալ ձայնով մը։

— Խօսելու կարողութիւն ունի՞ս։

— Այո՛, կրկնեց Սալիհա։

— Ուրեմն ըսէ տեսնենք մեղսակիցներուդ անունները։

— Վա՛յ, թշուառական, մրմնջեց կինը իր ակռաներուն մէջէն։

— Կ'երեւայ որ դեռ չէ հասունցած, նկատել տուաւ Սուտանցին հեգնական ձեւով։

— Պիտի խօսի՞ս, վերջապէս սպառաց Նէճիպ Մէլհամէ կատաղութեամբ։

— Չէ՛, չպիտի խօսիմ...

Հանդարտ ու կորովի շեշտով մը տրուած այս պատասխանին վրայ՝ պալատականը պահ մը ապշած մնաց ու չկրցաւ խօսք մը արտասանել։ Բայց մէկէն ըմբռնեց որ ա՛լ անկարելի է ընկրկիլ ու տեղի տալ և թէ հարկ էր մինչեւ ծայրը երթալ։

— Ապու Սամաք գոչեց սեւամորթին դառնալով, գնա՛ ու կրակամանն ու երկաթը բե՛ր...։

Սուտանցին հեռացաւ հրամանը կատարելու համար։ Սալիհա հանըմ որքան ալ անզրդուելի կերպով մը ցոյց կուտար արտաքուստ, այսու հանդերձ ահուելիօրէն կը չարչարուէր։ Մորակի անողոք հարուածները արիւնլուայ ըրած էին իր կռնակի միսերը։ Կը զգար արիւնին չիթ չիթ վազելը կռնակէն ի վար և չապիկը որ կը փակչէր մարմինին։ Իր կապկըպուած ոտքերն ու թեւերը սոսկալի կերպով կը՝ կրկնապատկէին իր չարչարանքը։

Նէճիպ Մէլհամէ ըմբռնեց անոր դժնդակ վիճակը և զգաց թէ այդ կինը Փիլիքեան ինչ տանջանքներու մատնուած էր այդ վայրկեանին և փորձեց օգուտ քաղել անկէ։

— Քու յամառութիւնդ պարզապէս անիմաստ կը գտնեմ, ըսաւ, ձայնին խոժոռութիւնը քիչ մը մեղմացնելով, այնքա՛ն անիմաստ որքան ալ անօգուտ և նոյն իսկ վնասակար քեզի համար։ Լռութիւն պահելով ուրիշ բան մը ըրած չես ըլլար, եթէ ո՛չ քեզ և ընկերներդ չարաչար մահուան մը դատապարտել, մինչդեռ խօսելով՝ գուցէ կայսերական գթութեան արժանանաս, չարչարանքներէ ազատիս ու կեանքդ փրկես։ Իսկ եթէ կը կարծես թէ քու պահած լռութեամբդ կրնաս փրկել ձեր ազատ մնացած մեղսակիցները, ատոր մէջն ալ կը սխալիս. ինչպէս յաջողեցանք ձեզ ձերբակալել, անշուշտ անոնք ալ պիտի յաջողինք ձեռք ձգել... միայն թէ փոխանակ այսօր արդարութեան ձեռքը իյնալու, ամիսէ մը կամ երկու ամիսէն պիտի իյնան, ահա՛ բոլոր տարբերութիւնը։ Ուստի վերջին անգամ կոչում կ'ընեմ քու խոհեմութեանդ... ըսէ՛ տեսնենք մեղսակիցներուդ անունները։

Սալիհա հանըմին Փիլիքեան տուայտանքները իրենց ծանրագոյն աստիճանին հասած էին. մորակի հարուածները որոնք տրուած ատեն այնքա՛ն սաստկօրէն չէր զգացած, այժմ, հետզհետէ զինքը ահուելի ցաւերով կը սկսէին տանջել։ Ամբողջ իրանը կարծես կասկարայի մը վրայ կ'այրէր, թեւերն ու ոտքերը կ)ընդարմանային, գլուխը պայթելու աստի-

ճան կը կոտտար, ու գաղափարները կը շփոթուէին. զգաց որ Նորէն պիտի նուաղէր ու ինքզինքը կորսնցնէր. և սակայն իր հոգեկան ամբողջ զօրութիւնը ժողվեց, և իբրև պատասխան Նէճիպ Մէլամէի մատնութեան հրաւէրին, ըսաւ.

— Ո՞ւր է կրակարանն ու երկաթը...:

Նոյն րոպէին ներս մտաւ Սուտանցին երկու ձեռքերովը խոշոր աման մը բռնած, որուն մէջ ճարճատուն կրակ մը կը շողար:

— Ահաւասիկ քու փնտռածդ, ըսաւ Նէճիպ Մէլամէ չարաշուք դէմքով մը:

Ասլու Սամաք կրակարանը քիչ մը հեռուն դրաւ այն աթոռէն որուն վրայ կը գտնուէր Սալիհա և յետոյ թեւին տակ պահուած երկաթ ձող մը կրակին մէջ մխրճեց:

— Մորակը պէտք եղածին պէս դաս մը չեղաւ քեզի, շարունակեց պալատականը Սալիհա հանըմի դառնալով, այժմ աւելի ազդու միջոցի մը պիտի դիմենք, որովհետև, Նորէն կը կրկնեմ, մեր վեհափառ տէրը մեզի պաշտօն յանձնած է ո և է միջոցի առջեւ չընկրկելու, նոյն իսկ եթէ այդ միջոցներուն հետեւանքով մահ պատահի... և մենք ստիպուած ենք մեր տիրոջ կամքը կատարելու:

Սալիհա կարծես չէր լսեր այդ խօսքերը: Գլուխը կուրծքին վրայ հակած լուռ մնաց:

— Մենք չէինք ուզեր այս տեսակ ծայրայեղութիւններու դիմել, սակայն քու յամառութիւնդ մեզ կը ստիպէ, շարունակեց պալատականը:

Սալիհա անշարժ կը մնար միշտ. առանց տրտունջի ձայն մը հանելու, առանց կենդանութեան նշան մը տալու. կարծես կը քնանար:

— Օ՛ն, մէկ կողմ թո՛ղ յամառութիւնդ և ըսէ՛ անմնմ մեղսակիցներուդ անունները, որպէս զի ազատիս քեզի սպասող տանջանքներէն:

Սալիհա հանըմ գերագոյն ճիգ մը ընելով՝ գլուխը վեր վերցուց և բոլոր ուժը ժողվելով գոչեց.

— Անիծեա՛լ ըլլայ այն արիւնարբու գազան Աբտիւլ Համիտը որ իմ ամուսինս և երկու զաւակներս յափշտակեց ինէ և անիծեալ ըլլաք դուք ամէնքդ որ մեր թշուառ հայրենիքը կը կործանէք...:

— Նշանակեցի՞ր այս խօսքերը, պոռաց Նէճիպ Մէհմէտ գրասեղանին քով նստած գրագրին:

Միւսը գլխով հաստատական պատասխան տուաւ:

— Աղա Սամսաք, շարունակեց փաշան, երկաթը կարմրեցա՞ւ:

Սուտանջին փայտէ կոթով երկաթէ ձողը, որ կրակարանին մէջ մխրճուած էր, դուրս քաշեց, որու շէկ գոյնը մռայլ ու չարաշուք լոյս մը սփռեց զնդանափորին մէջ, և ըսաւ.

— Այո՛, կարմրցեր է:

— Ուրեմն գործի սկսէ՛:

— Ո՞ր կողմէն պիտի սկսինք, հարցուց սեւամորթը ահռելի պաղարիւնութեամբ մը:

Նէճիպ Մէհմէտ պահ մը իր զոհին նայեցաւ, որ աչքերը արհաւիրքով լեցուն՝ հրաշէկ երկաթին կը նայէր, և յետոյ պատասխանեց.

— Նախ՝ կռնակէն...:

Աղա Սամսաք կարմիր երկաթը կամաց կամաց մօտեցուց հէ՛գ կապկպուած կնոջ կռնակին: Նախ՝ խանձէ հոտ մը տարածուեցաւ նկուղին մէջ, այրած լաթի անախորժ հոտ մը, յետոյ ահռելի աղաղակ մը լսուեցաւ: Սալիհան էր որ իր մի-սերուն այրիլը կը զգար...:

— Խօսէ՛, տո՛ւր անունները, եթէ ո՛չ...

Նէճիպ Մէհմէտ չկրցաւ խօսքը աւարտել, յանկարծ, նկուղին դուռը ուժգին հարուածով մը բացուեցաւ և կէս մթութեան մէջ երեւցաւ Իզզէթ փաշայի այլայլած և խելայեղ

դէմը, որ խոյանալով Սուտանցիին վրայ՝ անոր թեւը բռնեց և ետ քաշեց հրաշէկ երկաթը։

— Ի՞նչ կ՚ընես, թշուառական, գոչեց Ապու Սամաքի երեսին, ի՞նչպէս կը համարձակիս ձեռք վերցնել կնոջ մը վրայ ու զայն չարչարանքի ենթարկել, չե՞ս գիտեր որ անիկա մեր Վեհափառ Սուլթանին հիւրը կը համարուի և այս պատճառաւ իր անձը նուիրական է....։

Սուտանցին՝ ապուշ ապուշ՝ մէյմը Նէճիպի ու մէյ մը Իզզէթի կը նայէր առանց պատասխանելու։

Նէճիպ Մէլհամէն ալ Ապու Սամաքի չափ շփոթած ու շըւարած էր այս անակնկալ միջամտութենէն. այսուհանդերձ կը զգար որ Սուլթանին սիրական քարտուղարը ինքն իրմէ չէր որ այս միջամտութիւնը կ՚ընէր, հետեւաբար ինքզինք արդարացնելու ձեւով մը կմկմաց։

— Կը ներէք, փաշա էֆէնտի, բայց կարծեմ մեր ըրածը մեր վեհափառ տիրոջ հրահանգներուն համեմատ է...։

— Ո՛չ, ո՛չ, ըսաւ միւսը ա՛լ աւելի պոռալով, դուք որ Վեհափառ տիրոջ մեծանձնութիւնը, բարութիւնը, խղճահարութիւնը և գութը մօտէն կը ճանչնաք, ինչպէ՞ս կրնաք ենթադրել որ այդպիսի հրահանգ մը կրնայ տալ...։

— Բայց այս առտու ինք անձամբ ըսաւ որ...։

— Սխա՛լ, էֆէնտիմ, սխալ, կ՚երեւայ որ խնդրին մէջ թիւրիմացութիւն մը կայ, իր հրահանգը սխալ հասկցած ըլլալու էք... ձեզի կ՚ըսեմ և կը կրկնեմ որ մեր վեհափառ տէրը այդպիսի հրահանգ մը չկրնար տուած ըլլալ, կը հասկնա՞ք փաշա էֆէնտի... ես հիմա իր քովէն կուգամ կոր։

Այս վերջին խօսքերը բաւական սպառնալից էին ամէն բան հասկցնելու համար։ Նէճիպ Մէլհամէ գլուխը ծռեց և պատասխանեց.

— Այո՛, իրաւունք ունիք, ես սխալ հասկցած ըլլալու եմ։

— Վեհափառ Սուլթանը կը հրամայէ որ, շարունակեց

*Իզզէթ փաշա, Սալիհա հանըմին ամեն կերպով խնամք տարուի և ո՛չ ոք համարձակի անոր մազին մէկ թելին իսկ դըպչելու, հակառակ պարագային չարաչար պատիժ պիտի կրէ, ո՛վ որ ալ ըլլայ։*

*Սուլթանը, որ հոն անշարժ կեցած էր, ահ ու սարսափով լսեց այս խօսքերը և կամաց մը եաւ եաւ երթալով, անհետացաւ եղաւ բաց մնացած դռնէն։*

*Յայտնապէս կ'երեւար որ Իզզէթ փաշա դիտմամբ պոռալով կը խօսէր, որպէս զի Թուրք հերոսուհիին կողմէ իր խօսքերը լսուին։ Եւ սակայն Սալիհա հանըմ կենդանութեան նշան չէր տար. աչքերը փակ, կարծես կը քնանար, իր չուրջը անցած դարձածին անուշադիր։*

*— Բայց այս խեղճ կինը մարեր է, ըսաւ Սուլթանին քարտուղարը մէկէն անոր քով փութալով։*

*— Քիչ մը առաջ թէև անգամ մը մարեցաւ, բայց խելքը գլուխը բերինք, պատասխանեց Նէճիպ Մէհմէտ։*

*Իզզէթ փաշա բռնեց կնոջ ձեռքը։ Սալիհա հանըմ խոլոյն աչքերը բացաւ և ըսաւ.*

*— Ո՛չ, մարած չեմ, աչքերս գոցեցի՝ որպէսզի չտեսնեմ ձեր խաղացած կատակերգութիւնը և եթէ կարենայի՝ ըլլար ականջներս ալ պիտի խփէի, որպէսզի ձեր արտասանած խօսքերն ալ չլսէի*

*— Բայց հանըմ էֆէնտի, ինչո՞ւ այսպիսի անհաշտ ընթացք մը կը բռնէք մեզի հանդէպ, ըսաւ Իզզէթ փաշա մեղմ ու փաղաքշական ձայնով մը։ Չէ՞ք տեսներ որ մեր վեհափառ տէրը որքա՛ն մեծանձնութեամբ և բարութեամբ կը վարուի ձեզի հանդէպ... ո՛ր վեհապետ նոյնքան ներողամիտ համբերատարութիւն ցոյց պիտի տար իրեն դէմ դաւադրողներուն մասին...։ Եթէ ձեզի չարչարանքներու ենթարկեցին՝ վստահ եղէք որ ասիկա մեր վեհափառ տիրոջ կամքին դէմ էր բացարձակապէս և ապացոյցն ալ այն է, որ զձեզ հոս զրկեց որպէս զի ամէն կերպով հոգ տանին ձեր հանգստութեան...*

ալ խմաց տուէ՛ք որ ախինոջ քով փութայ և պէտք եղած խնամքները տայ։

Նէճիպ փութաց այս հրահանգները հաղորդել դրանեպանին քով նստած պալատապանին, որ սահմռկած երեւոյթով մը կը դիտէր իր աչքերուն առջեւ պարզուող այս տարօրինակ ու անակնկալ տեսարանը։ Յետոյ, երկու փաշաները եկան Սալիհա հանըմին քով և սկսան ամենայն փափկութեամբ և զգուշութեամբ անոր աչքերուն և թեւերուն կապերը քակել։

Սալիհա երբ ինքզինք կապանքներէն ազատ զգալով՝ սկսաւ իր ընդարմացած անդամները շարժել. անհուն ցաւեր զգաց ամբողջ իրանին երկայնքը և սարսափելի ճիչ մը արձակեց։ Բայց չուզելով այդ մարդոց քով տկարութեան նշաններ ցոյց տալ, խոյն հզօր ճիգ մը ըրաւ ինքն իր վրայ ու խեղդեց ցաւի աղաղակները։

Բանի մը վայրկեան ետքը պահապանները եկան զինքը իր սենեակը տանելու համար։ Սալիհա հանըմ իր զօրութեան վստահելով, ուզեց առջի երթալ, ուժաթափ ինկաւ աթոռին վրայ, անզօր ձայնով մը կմկմալով.

— Չէ՛, չեմ կրնար քալել...։

— Երկար ու կակուղ թիկնաթոռ մը բերէ՛ք ու անով փոխադրեցէ՛ք զինքը, հրամայեց Իզզէթ փաշա։

Քառորդ մը ետքը, չորս մարդիկ, փափուկ բարձերով պատած թիկնաթոռի մը մէջ կը փոխադրէին Սալիհա-հանըմը։

Այսպէս ուրեմն չարչարանքներով սկսած երկրորդ հարցաքննութիւնն ալ վերջ կը գտնէր առանց ո և է արդիւնքի։

## ԳԼՈՒԽ ԺԲ.

# ԹՈՒՆԱՒՈՐ ԴԱՇՈՅՆԸ

*Եւ սակայն ի՞նչ դարձած էր որ յանկարծ Ապտիւլ Համիտ իր սիրական քարտուղարին միջոցաւ հրամայած էր վերջ դնել չարչարանքներուն և ծայրայեղ փափկութեամբ վարուիլ ձերբակալուած հերոսուհիին հետ։*

*Համիտ, որուն անողորմ ու արիւնարբու բնազդը իր ամէն արարքներուն կ՚առաջնորդէր, մեծ յոյս դրած էր Նէճիպ Մէլհամէի կատարելիք այս նոր հարցաքննութեան վրայ։ Իր Ֆիզիքական ցաւերէն ու մահուընէն զզուած անօրինակ սարսափը կը կարծէր թէ ամէն մարդու համար բնական բաներ էին և թէ ո՛չ ոք կրնար դիմադրել անոնց։ Հոգեկան կորովի վրայ գաղափար չունէր։ Եւ ճիշդ ատոր համար կը կարծէր թէ այս անգամ Նէճիպ Մէլհամէ յաջողութեամբ գլուխ պիտի հանէր իրեն յանձնուած պաշտօնը։*

*Կէս գիշերին մօտ, երբ նկուղին մէջ, չարաշուք պալատականը Սայտ Սամաքի օժանդակութեամբ իր գործը հարցաքննելու սկսած էր, Ապտիւլ Համիտ իր պալատի կանանոցի բաժնին պատուհաններէն մէկուն մէջ թիկնաթոռի մը վրայ բազմած՝ օրուան ժուռնալները աչքէ կ՚անցընէր, ատեն ատեն քովը դրուած կաթի գաւաթէն ումպ ումպ խմելով։*

*Այդ օրուան ժուռնալները կ՚երեւայ որ շատ շահեկան չէին և բռնաւորը իր ընթերցումը կը կատարէր մտացիր ու մեքենական կերպով։*

Նախապէս հրամայած էր Նէճիպ Մէլհամէի որ Սալիհա խոստովանութեան ճամբուն մէջ մտնելուն պէս, իր բրած առաջին յայտնութիւնները անմիջապէս իրեն հաղորդուին, առանց սպասելու հարցաքննութեան վախճանին և այժմ անհամբերութեամբ կը սպասէր փաշային կողմէ գալիք տեղեկագրին։

Պահ մը ձեռքը բռնած բուռնալը սեղանին վրայ դրաւ, աչքերը գոցեց և մրափել սկսաւ։ Ապտիւլ Համիտ գիշերները այնքան անհանդարտ քուն մը ունէր որ յաճախ այդպէս՝ նստած տեղը՝ կ'սկսէր քնանալ, բայց այդ քունը կամ մանաւանդ կէս թմրութիւնը շատ կարճ կը տևէր և իսկոյն, սոսկալի երազի մը կամ մղձաւանջի մը ազդեցութեան տակ, ընդոստ կ'արթննար։

Այս անգամ ալ հազիւ թէ քանի վայրկեանի չափ աչքերը փակած էր, երբ մէկէն արթնցաւ և կասկածոտ ակնարկ մը պտտցուց շուրջը, աչուըները շփելով։

Յանկարծ սոսկումով ոտքի ցատկեց և ետ ետ գնաց, աչքերը անչափօրէն բացած արհաւիրքի արտայայտութեամբ մը։

Սեղանին վրայ, ճիշդ իր քովը, տասը սանդիմէթր մեծութեամբ քառակ դաշոյն մը դրուած էր, որուն փայլուն պողպատը շլացուցիչ կերպով կը փայլէր։ Դաշոյնին տակ թուղթ մը դրուած էր։

Ապտիւլ Համիտ բաւական ատեն՝ անքթիթ՝ գրեթէ մագնիսացած՝ նայեցաւ այդ դաշոյնին, առանց շարժում մը ընելու։

Սոսկում մը տիրած էր վրան, իբր թէ այդ դաշոյնը պիտի գար իր սիրտը մխուելու...։

Վերջապէս բոլոր ոյժը ժողվելով՝ մօտեցաւ սեղանին ու անոր վրայ դրուած զանգակը հնչեցուց.

Իր հաւատարիմ պահապանը, որ միշտ դրան ետև կը սպասէր, չերևցաւ։ Ապտիւլ Համիտ ա՛լ աւելի սարսափած՝ կրկին հնչեցուց զանգակը։ Ո՛չ ոք ներս եկաւ։

Նոյն միջոցին աչքերը դարձեալ յառեցան դաշոյնին վրայ և տեսաւ որ այն թուղթը որուն վրայ գրուած էր, գլխերով ծածկուած էր։ Դողահար ձեռքով մը թուղթը քաշեց դաշոյնին տակէն և հետևեալը կարդաց.

«Եթէ երբեք չորս ձերբակալուած անձերուն կեանքին դպչիս, եթէ երբեք զանոնք չարչարանքներու և տանջանքներու ենթարկել տաս, քու մահդ անխուսափելի է։ Այս դաշոյնը սեղանիդ վրայ դնող ձեռքը կրնայ նոյնքան դիւրութեամբ զայն քու կուրծքդ մխել և վայրկենապէս սպաննել։ Այն թոյնը, որուն մէջ թաթխուած է այս դաշոյնը, կարող է իր ազդեցութիւնը գործել վայրկենապէս, և չի կայ մարդկային զօրութիւն մը որ քեզ անկէ փրկէ։ Եթէ մեր հրամաններուն չհնազանդիս, քու կեանքդ մեր ձեռքն է։»

Այս թուղթը իբրև ստորագրութիւն կը կրէր լատինական երկու գլխագրեր M. A.։

Աբդուլ Համիտ ահ ու սարսափով կարդաց այդ տողերը և յանկարծ զգաց թէ այդ սպառնալիքը ո՛րքան ճշմարիտ էր։

— Այո՛, մրմռաց ինքնիրեն, այս դաշոյնը հոս բերողը կրնար նաև իմ սիրտս ալ մխել...։

Եւ այս կարելիութիւնը անհնարին սարսափի մը մատնեց զինքը։ Մէկէն յիշեց թէ այդ վայրկեանին իսկ, ձերբակալուած անձերէն մին, Սալիհ Համըտ, տանջանքի ենթարկուած էր Եըլտըզի նկուղներուն մէջ..։ ու խելայեղ կերպին, զանգակը հնչեցուց մարդ ղրկելու համար։

Այն ատեն Աբդուլ Համիտ իր ամբողջ քաջութիւնը ժողվելով, ռեվօլվէրը ձեռքը բռնած, մօտեցաւ սրահին դրան ու կամաց մը զայն բացաւ.

Իր հաւատարիմ սպասաւորը և ուրիշ պահնորդ պալատական մը, դրան քով, աթոռին վրայ նստած կը քնանային։

Աբդուլ Համիտ բարկութեամբ հրմշտկեց զիրենք, բայց անկարելի եղաւ զանոնք արթնցնել։

— Թմրեցուցիչ դեղ մը տուած են իրենց, վճռեց իսկոյն և կրկին իր սրահը վերադարձաւ։

Բայց իր անձկութիւնը հետզհետէ կ՚աւելնար, մանաւանդ երբ կը մտածէր թէ նամակին սպառնալիքը գործադրութեան պիտի դրուէր, քանի որ արդէն Սալիհա տանջանքի ենթարկուած էր։

— Այս ինչ սոսկալի կացութիւն, այս ինչ սոսկալի կացութիւն, կը կրկնէր յուսահատօրէն սրահին մէջ ժուռ գալով։

Սենեակին քով կանգ առաւ, կրկին թուղթը կարդաց, յետոյ անհանգիստ ձեռքով մը դաշոյնը առաւ, գրպանը դրաւ, և սրտադող քայլերով դուրս ելաւ սրահէն, ու ձեռքովը իր գըրպանին մէջ շոյելով րէվօլվէրին կոթը։

Սադըք Համիտ իսկոյն փնտռել տուած էր Իզզէթ փաշան և Նէճիպի քով ղրկեց որպէսզի Սալիհա հանըմի չարչարանքը դադրեցնէ։

Արդէն տեսանք թէ Սուլթանին սիրական քարտուղարը ինչպէս կատարեց իրեն յանձնուած պաշտօնը։

---

## ԳԼՈՒԽ ԺԳ.

## ՇԷՐԼՕՔ ՀՕԼՄՍ ԵՒ ՋԻՒԱ ՓԱՇԱ

Սադըք Համիտ մինչև առտու անելքի տագնապ մը անցուց։ Խորհրդաւոր դաշոյնն ու նամակը զինքը խռովեցուցած էր։ Այն վայրկեանին ուր կը կարծէր իր ձեռքին մէջ ունենալ դաւին կազմակերպութիւնը և զայն ջախջախած ըլլալ, տակաւին անիկա իր քթին տակ կը շարունակէր գործել անօրինակ յանդգնութեամբ մը։ Երբոր վստահ եղաւ որ Սալիհա

հանըմ իր սենեակը փոխադրուած է և բժշկական խնամքներ կ'ընդունի, թէ անոր կեանքը վտանգի մէջ չէ և թէ կրած չարչարանքին հետքերը կրնան դիւրաւ անհետանալ, մեծ շունչ մը առաւ և իր կեանքը քիչ մը ապահովութեան մէջ զգաց։ Այն ատեն իր առաջին մտածումը եղաւ մանրակրկիտ քննութիւն մը բանալ, հասկնալու համար թէ դաշոյնը ի՞նչպէս իր քով դրուած էր քնացած միջոցին։

Պալատի բժիշկներուն սթափեցուցիչ դեղերուն շնորհիւ, վերջապէս կարելի եղաւ իր հաւատարիմ պահապանը և Թիկնապահը արթնցնել իրենց խոր քունէն։ Բայց այս զարթումը բանի մը չէր ծառայած։ Երկուքն ալ չէին գիտեր թէ ի՞նչպէս յանկարծ խոր քունի մը մէջ ընկղմած էին միևնոյն ժամանակ։

Իրենց յայտարարութեան համեմատ, ո՛չ ոքի հետ յարաբերութիւն ունեցած էին, ո՛չ մէկուն ձեռքէն ըմպելի կամ ոև է բան ընդունած էին և ո՛չ ոք տեսած էին իրենց հսկած դրան քովերը։ Եւ սակայն գրեթէ միևնոյն վայրկեանին քնացած էին երկուքն ալ։

— Իրարու հետ ցած ձայնով կը տեսակցէինք, յայտարարեց պահապանը, յետոյ պահ մը լռեցինք և ա՛լ անկէ ետքը չեմ յիշեր ի՞նչ եղաւ, ճիշդ այդ րոպէին էր որ երկուքս ալ քնացած էինք։

Նոյնը հաստատեց նաև Թիկնապահը։

Մեծ դահլիճին մէջ ուր ամենէն հաւատարիմ պալատականները հաւաքուած էին, Ապտիւլ Համիտ, խորին մտատանջութեան մէջ ինկած, սարսափահար դէմքով մը մտիկ կ'ընէր իր առջև տեղի ունեցած քննութեան։ Տոմսակին մէջ գրուած սպառնալիքները անընդհատ իր ականջներուն կը հնչէին. մութին մէջ կարծես կը տեսնէր Թունաւոր դաշոյնը, դէպ իրեն ուղղուած։ Կատարուած քննութեան ապարդիւնութիւնը ա՛լ աւելի տագնապներու մատնեց զինքը և վայրկեան մը այն աստիճան ընկճուեցաւ որ Իզզէթ փաշայի հետ առանձնանա-

րով, ըսաւ թէ չորս ձերբակալուած անձերը անմիջապէս հարկ էր ազատ արձակել, ներում խնդրելով իրենց մասին կատարուած հարցաքննութեան համար:

— Բայց, վեհափառ տէր, ի՞նչպէս կարելի է սանկ ազատ թողուլ բո՛ւն իսկ ձեր անձին դէմ դաւաճանող անձերը, ա՛լ անկէ ետքը ի՞նչ կերպով կարելի պիտի ըլլայ սանձել զիրենք:

Ապտուլ Համիտ այս դիտողութեան վրայ, վայրկեան մը իր պաղարիւնութիւնը գտաւ և ըսաւ:

— Այո՛, իրաւունք ունիս, կարելի չէ այդ մարդիկը ազատ թողուլ, բայց... իմ կեանքս վտանգի մէջ է... գոնէ մեր կատարած քննութիւնը արդիւնք մը տար:

— Վեհափառ տէ՛ր, ինչո՞ւ չէք ուզեր օգտուիլ Շէրլօք Հոլմսի ներկայութենէն, անգամ մը զինքը կանչենք և իրեն խորհուրդ հարցնենք, կարելի է անիկա լոյս մը սփռէ այս մութ խնդրին վրայ:

— Անմիջապէս կանչեցէ՛ք զինքը. գոչեց Ապտուլ Համիտ, այո՛, իրաւունք ունիք, անիկա կրնայ երևան հանել այս գաղտնիքը:

Քանի մը վայրկեան ետքը Մաք Լայն, զոր գացած անկողինէն հանած էին, եկաւ այն դահլիճը ուր կը գտնուէր Սուլթանը իր հաւատարիմ պալատականներով:

Անգլիացի գաղտնի ոստիկանը քունէն ընդոստ արթնցողի կերպարանքը ունէր:

— Կը ներէք որ ձեզ անհանգիստ ըրինք ձեր քունին մէջ, ըսաւ Իզզէթ փաշա, խօսքը անոր ուղղելով, բայց պատահած դէպքը այնքան կարևոր է որ մեր վեհափառ տէրը չկարենցաւ այս անգամ ալ ձեր փորձուած ճարտարութեան և փորձառութեան դիմելու, մանաւանդ որ ո և է յապաղում կրնար յաջողութիւնը բոլորովին վտանգել:

— Ի՞նչ է խնդիրը, հարցուց Շէրլօք Հոլմս, կամ բո՛ւն անունով Մաք Լայն, աչքերը շփելով:

Սուլթանին անձնական քարտուղարը մանրամասնօրէն պատմեց դաշոյնին և սամակին պատմութիւնը, ինչպէս նաև երկու պահապաններուն յանկարծական թմրութիւնը:

Մաք Լայն ուշադիր մտիկ ըրաւ ամէն պատմուածները, յետոյ ուզեց տեսնել պահապանը և թիկնապահը: Երկուքն ալ կանչուեցան: Թիկնապահը որ եւրոպական կրթութիւն ստացած տղայ մըն էր, կատարելապէս տեղեակ էր ֆրանսերէն լեզուին և Անգլիացին այդ լեզուով սկսաւ խօսիլ հետը:

— Առաջին օրէն, ըսաւ խօսքը անոր ուղղելով, երկուքդ ալ գրեթէ միևնոյն վայրկեանին սկսաք քնանալ:

— Այո՛, պատասխանեց թիկնապահը:

— Քնանալէ առաջ ոևէ է ըմպելի կամ ջուր չխմեցի՞ք:

— Բնաւ երբէք:

— Սիկառէ՞թ:

— Այո՛, մեր տուփերուն մէջ եղած սովորական սիկառէթները:

— Ամէն մէկը իր տուփին սիկառէթը խմե՞ց թէ իրարու հրամցուցիք:

— Փոխն ի փոխ իրարու հրամցուցինք ըսաւ թիկնապահը:

— Կը յիշէ՞ք թէ վերջին անգամ ո՛վ հրամցուց սիկառէթը, հարցուց Մաք Լայն:

— Իրաւ որ այդ մանրամասնութիւնը լաւ չեմ յիշեր և որուն պատասխանը մը չեմ կրնար տալ... Ինչ որ գիտեմ վստահօրէն, այն է որ մինչև հիմա իրարու սիկառէթ հրամցուցինք:

— Երկուքդ ալ միևնոյն տեսակ ծխախոտ կը գործածէ՞ք:

— Ոչ, իմինները եգիպտական են, մինչ ընկերս Ռէժիի սիկառէթներ կը գործածէր:

— Կը յիշէ՞ք թէ քանի սիկառէթ ծխեցիք իրարու մօտ գտնուած միջոցնիդ:

— Ճշդապէս չեմ կրնար յիշել, բայց կարծեմ հինգ վեց հատ մը ծխեցինք:

Մաք Լայն պահ մը ճակատը շփեց, յետոյ ըսաւ.

— Թուցէ ձեր ընկերոջ յիշողութիւնը աւելի զօրաւոր ըլլայ, քիչ մըն ալ զինքը հարցափորձենք:

Եւ Իզզէթ փաշայի դառնալով աւելցուց.

— Հաճեցէ՛ք հարցնել իրեն թէ՝ նախ ո՞վ սիկառէթ հրամցուց:

Պաշտօնեան դարձաւ դէպ ի Սուլթանին անձնական սպասաւորը եւ հարցումը կրկնեց թուրքերէն լեզուով:

— Ես սանտուխին նստած էի դրան քով՝ երբ Թիֆլիսցին եկաւ եւ ըսաւ կը փնտռէ որ սուլթանին անձամբ իր մէկ սիկառէթ մը ուզէ բերել. «իմ սիկառէթներս եգիպտական են, հատ մը քովերնիդ ունի՞ք բերանիս ըլլալու համար:» Ասոր վրայ՝ տուփս հանեցի եւ մէյմէկ հատ ծխեցինք:

— Յետո՞յ...:

— Յետոյ, փոխադարձաբար ես իրմէ եգիպտական սիկառէթ մը ուզեցի բերանիս ըլլալու համար... եւ այսպէս շարունակեցինք:

— Իսկ վերջին անգամ ո՞վ սա հրամցուց սիկառէթը:

Մարդը պահ մը խորհեցաւ, ձեռք մը բրաւ ճակտին համար, յետոյ վարանոտ կերպով մը ըսաւ.

— Ճիշդը լաւ չեմ յիշեր, բայց կարծեմ թէ Թիֆլիսցին ալ էր...: Միայն թէ կը կրկնեմ, վստահ չեմ այդ մասին, կրնայ ըլլալ որ ես հրամցուցած ըլլամ...:

Վայրկեան մը ի վեր Մաք Լայն գրեթէ անուշադիր կը հետեւէր այս հարցափորձին, իր երեւակայութիւնը կարծես ուրիշ հեռաւոր տեղեր կը թափառէր եւ յանկարծ ըսաւ.

— Իրաւ. որ կարելի չէ որեւէ եզրակացութեան մը հանգիլ... պէտք է ուրիշ կերպ ուղղենք մեր քննութիւնը, ամէն ապացոյցին բաւական է որ գործին շարունակութիւնը վարուենք... միայն թէ պիտի խնդրեմ նորին վեհափառութենէն որ բարեհաճի, գոնէ քանի մը ժամուան համար, ինծի յանձնել սենեակին վրայ պահուած դաշոյնը եւ տուփակը:

Մաք Լայնի խնդիրքը անմիջապէս կատարուեցաւ և Անգլիացին այդ տեղեկութիւնները առնելով՝ կը պատրաստուէր հեռանալ Ապտիւլ Համիտ ի քովէն երբ յանկարծ Իզզէթ փաշայի դառնալով ըսաւ.

— Կը խնդրեմ հարցուցէ՞ք դրան քով հսկող պահապանին թէ՝ թիկնապահը տակաւին իր քով չեկած, ինք առանձին սիկառէթ ծխա՞ծ էր։

Հարցումը կրկնուեցաւ թուրքերէն լեզուով։

— Ո՛չ, պատասխանեց պահապանը հաստատ շեշտով մը։

— Վստա՞հ էք այդ մասին։

— Այո՛, որովհետև ուզեցի ծխել սակայն տեսայ որ քովս լուցկի չի կար։

— Շատ լաւ, ըսաւ Մաք Լայն և խոնարհութիւն մը ընելով՝ դուրս ելաւ դահլիճէն։

Դրան դուրսի կողմը սակայն, հո՛ն ուր պահապանն ու թիկնապահը թմրած վիճակի մէջ գտնուեր էին, կանգ առաւ և սկսաւ ուշադրութեամբ գետինը դիտել։ Մէկէն ուրախութեան ճիչ մը արձակեց և գետինը դրուած ամանի մը մէջէն խնամքով ժողվեց վառուած լուցկիի փայտեր։ Ամէնուն ալ ծայրերն քննեց եւ ըսաւ ինքնիրեն.

— Բոլորն ալ 'նոր վառուած լուցկիներ են, ճիշդ իմ փնտռածներս...։

Յետոյ զանոնք համրեց.

— Վեց հատ... կասկածներս կը հաստատուին, շարունակեց ինքնիրեն խօսելով։

Գտածին ստորիկանութեան նախկին պաշտօնեան յատուկ ուշադրութեամբ քննեց դրան արծաթէ խնձորակը, գրպանէն խոշորացոյց մը հանելով.

— Վա՛յ, վա՛յ, շարունակեց մռմռալով, բրինձի փոշիի մէկ քանի հատիկներ մնացեր են հոս... կարծես թէ կնոջ ձեռք մը դպեր է դրան խնձորակին... արդեօք կը սխալի՞մ... անգամ մըն ալ քննենք։

Եւ ա՛լ աւելի ուշադրութեամբ առաջ տարաւ իր զըննութիւնը.

— Չէ՞, եզրակացուց, սխալմունք չի կայ, իրաւցնէ բրինձի փոշիներ են... խնդիրը կը կնճռոտի, կամ մանաւանդ աւելի կը լուսաբանուի... կարծեմ քանի մը որոշ նշաններ ունինք որոնք կրնան մեզի առաջնորդել... հիմա սենեակ երթանք ու դաչոյնն ու սամեւակը քննենք մասամփոփ կերպով:

Եւ Մաք Լայն արագ քայլերով հեռացաւ դրան քովէն ու նրբանցքներուն մէջ աներեւոյթ եղաւ:

Սրահը գտնուող թղթապահները և բարապանները զարմանքով կը դիտէին այդ քննութիւնները որոնցմէ բան մը չէին հասկնար:

Վառուած լուցկիները ուրախութեամբ և խնամով գրպանելը զիրենք բոլորովին ապշահար ըրաւ.

— Ի՞նչ պիտի կրնայ հասկնալ այդ լուցկիներէն, հարցուց թղթապահ մը իր քովի ընկերոջ:

— Ոչինչ, պարզապէս ինքզինքը գործի վրայ ցոյց տալու համար հնարուած բաներ են ասոնք:

— Գուցէ վառուած լուցկիներու հանաքածոյ մը կ'ընէ ըսաւ ուրիշ մը խնդալով, Անգլիացիները այս տեսակ տարօրինակ մնաամոլութիւններ ունին:

Եւ սակայն այս հեղինակին ախտարկութիւնները գուցէ չափազանցուած էին: Անգլիացին իր սենեակը առանձնանալէ ետքը, լուցկիները գրպանէն հանեց, սեղանին վրայ շարեց և սա խորհրդածութիւնը ըրաւ.

— Վեց լուցկի վառուած է, հետեւաբար վեց անգամ սիգարէթ ծխած են այդ մարդիկը: Գիտենք որ առաջին անգամ պահապանը սիգարէթ հրամցուած է թղթապահին և անկէ ետքը փոխն ի փոխ շարունակած են իրարու հրամցնել. հետեւաբար երկրորդ անգամ թղթապահը առած է, երրորդ անգամ պահապանը, չորրորդ անգամ թղթապահը, հինգերորդ անգամ պահապանը և վեցերորդ անգամ թղթապահը: Վերջին

սիկառէթը Թիկնապա՛նը հրամցուցած է և այս սիկառէթներուն վրայ երկուքը միասին խոր քունի մէջ ինկած են։ Կասկած չի կայ թէ այս քունը սովորական չէր, այլ արտաքին պատճառի մը արդիւնքը և հաւանօրէն սիկառէթներու մէջ դըրուած թմրեցուցիչի մը հետեւանքը։ Թիկնապա՛նը ուզած է պահապանը քնացնել և որպէս զի կասկածի տեղի չի տայ ինքն ալ անոր հետ ծխած է թմրեցուցիչ սիկառէթէն։ Երկուքը խոր քունի մէջ թաղուելէ ետքն է որ դաշոյնն ու ատրճանակը դըրուած են Սուլթանին քովը։ Ո՛վ բերած է զանոնք... դրան խնձորակին վրայ գտնուած բրինձի փոշին ենթադրել կու տայ թէ կին մըն էր դուռը բացողը, հաւանօրէն կայսերական կանանոցի կիներէն մէկը։ Բայց եթէ դուռը բացած ու ներս մտած միջոցին Ապտիւլ Համիտ մրափած չըլլար, կամ յանկարծ արթննար... որովհետեւ Ապտիւլ Համիտի մրափումը պարզապէս դիպուածի արդիւնք էր և ո՛չ թէ թմրեցուցիչէ մը յառաջ եկած։ Կինը ներս մտնելէ ետքը տեսաւ միայն որ Համիտ կը քնանար...։ Այդ, այդ կինը ներս մտած ատեն դաշոյնն ու ատրճանակը սեղանին վրայ դնելու նպատակ չունէր, այլ ուրիշ նպատակ մը անշուշտ։ Նպատակ մը որ ի գլուխ պիտի հանէր Համիտի արթուն վիճակին մէջ... և ատկէ ուրիշ բան չէր կրնար ըլլալ, եթէ ո՛չ Համիտը ՍՊԱՆՆԵԼՈՒ նպատակը։ Այսպէս ուրեմն, կ'ենթադրեմ որ Ապտիւլ Համիտ իր կեանքը փրկեց քնանալով։ Կինը զայն քնացած գտնելով, գոհացաւ միայն սպառնալիքով, ահա՛, ըստ իս, ճշմարտութիւնը...։ Բայց պէտք է խոստովանիլ որ բոլոր այս կարգադրութիւնները շատ ճարտարութեամբ եղած են։ Հիմա քննենք դաշոյնն ու ատրճանակը։

Մաք Լայն այս երկար մենախօսութիւնը ընելէ ետքը զաւաթ մը սուրճի խմեց, ծխախոտը վառեց և սեղանին առջև անցաւ, լամբային լոյսը բարձրացնելով ու գրպանէն հանելով Ապտիւլ Համիտը սպառնալի մահուան երկու առարկաները։

— Անաւասիկ վտանգաւոր փոքրիկ խաղալիք մը, ըսա-

Մաք Լայն, դաշոյնը ուշի ուշով քննելով, պողպատը ածելիի մը պէս սուր է և կրնայ մանուկի մը ձեռքին իսկ մահացու զէնք մը ըլլալ… ո՛ւր մնաց կնոջ մը ձեռքը:

Դաշոյնը սեղանին վրայ դնելէ ետքը, Անգլիացին ատրճանակը ձեռքը առաւ:

— Դժբախտաբար թուրքերէն գրուած է ու բան մը չպիտի կրնամ գուշակել գիրերէն, մենախօսեց կրկին, բայց թուղթը արդեօք գաղտնիք մը երևան չպիտի հանէ՞… ասիկա նամակի սովորական թուղթ մըն է որուն մէկ ծայրը կտրուած է… և ինչո՞ւ հարկ տեսեր են կտրել, հաւանօրէն անոր համար որ հոն անուն և հասցէ մը կար, տպագրուած en tête մը, ինչպէս սովորաբար կ'ունենան առևտրական հաստատութիւնները, փաստաբանները, պանդոկները, ընկերութիւնները նամակաթուղթերը: Ամենէն հաւանականը այն է որ պանդոկի մը նամակաթուղթը եղած ըլլայ և առաջնակարգ պանդոկի մը, որովհետև հաստ և ընտիր նամակաթուղթ մըն է …փաստաբանները և ընկերութիւնները այս տեսակ թուղթ չեն գործածեր, մանաւանդ որ անոնց նամակաթուղթերը մեծ ֆորմա կ'ըլլան, մինչդեռ աս փոքր է…: Այո՛, հաւանօրէն ատրճանակը գրուած է պանդոկի մը մէջ և ասիկա շատ դիւրին է ստուգել…:

Եւ Մաք Լայն իր զննութեան արդիւնքէն գոհ՝ հանուեցաւ և անկողին մտաւ, ուր քնանալէ առաջ, տակաւին երկար ատեն մտածեց այս խորհրդաւոր դաշոյնին ու ատրճանակին վրայ:

Հետևեալ առտու կանուխ, դէմքը փոխած գեղին կեղծ պեխով մը և թեթև կապուտակոյն ակնոցներով բոլորովին կերպարանափոխ եղած՝ Անգլիացի վաճառի տարազով Երրորդէն դուրս ելաւ պաշտօնական թիկնապահի մը ընկերակցութեամբ: Բայց հազիւ թէ Պէշիկթաշի Թամիլէյի կայարանը հասած էին բաժնուեցան թիկնապահէն և կառք մը վարձելով ուղղակի Բերա ելան:

Նախ չուզեց գնալ Բերա-Բալաս, ուր լաւ նախաճաշ մը ընելէ ետքը, անցաւ ընթերցումի սրահը, քանի մը թերթեր թղթատեց, յետոյ անտարբեր կերպով ծառայէն նամակի թուղթ ուզեց: Ծառան փութաց իսկոյն հրամանը կատարելու: Մաք Լայն իսկոյն նշմարեց որ բերուած թուղթը չէր նմաներ իր գըրպանը գտնուած նամակի թղթին:

— Ուրիշ տեղ պէտք է նայիլ, մտածեց:

Պահ մը ետքը դուրս ելլելով Բերա-Բալասէն, քիչ մը վար Օթէլ Բրէօքէրը մտաւ եւ որպէսզի առանց կասկածի տեղի տալու կարենայ իր գործը տեսնել, սենեակ մը վարձել ուզեց առաջին յարկին վրայ:

Անմիջապէս զինքը առաջնորդեցին շքեղապէս կահաւորուած ննջասենեակ մը:

— Այո՛, այս սենեակը շատ աղէկ գործիս կուգայ:

— Ուրեմն կ՚ուզէ՞ք պահել այս սենեակը:

— Բնականաբար:

— Շատ լաւ, այդ պարագային հարկ է որ ձեր անունը նշանակենք:

Մաք Լայն բառ բախտի անգլիական անուն մը տուաւ:

— Բեռ չունի՞ք միասին, հարցուց ծառան:

— Բեռներս Թարապիայի պանդոկը ձգած եմ, վաղը պիտի փոխադրեմ, պատասխանեց Անգլիացին եւ յոգնած երեւոյթով մը թիկնաթոռի մը մէջ տեղաւորուեցաւ:

Ծառան դուրս ելլելէ առաջ հարցուց.

— Արդեօք ո եւ է բանի մը պէտք ունի՞ք:

— Այո՛, կը խնդրեմ նամակի թուղթ եւ պահարան բերէք ինծի, պատասխանեց Մաք Լայն, քանի մը նամակներ ունիմ գրելիք:

— Անմիջապէս:

Արդարեւ քանի մը վայրկեան ետքը ծառան վերադարձաւ ծրար մը նամակաթուղթ, պահարան, կաղամար եւ գրիչ մը բերելով, զանոնք սեղանին վրայ դրաւ եւ հեռացաւ:

Դուռը գոցուելուն պէս Մաք Լայն թիկնաթոռին վրայէն ցատքեց և դէպի սեղանը դիմեց։ Հազիւ թէ նամակաթուղթերը առաւ, ուրախութեան ճիչ մը արձակեց.

— Ճիշդ գրպանի թուղթս է, ըսաւ ինքնիրեն։

Սոմսակը հանեց գրպանէն ու լաւ մը բաղդատեց սեղանին վրայ դրուած թուղթին հետ։ Այո՛, կասկած չկար, միևնոյն թուղթն էր, միայն թէ սոմսակի թուղթին վերի մասը կտրըւած էր, այնքան տեղ որքան օթէլին անունը և հասցէն գրըւած էին։

— Արդեօք կրնա՞մ հետևցնել թէ այս պանդոկին մէջ մնացակից մը ունին մեր բարեկամները, հարցուց ինքնին... հիմա հարկ է մէկիկ մէկիկ հոս գտնուողները աչքէ անցնել... յաճախորդներուն մեծ մասը կարծեմ ճաշը այստեղ կ'ընէ, հետևաբար ես ալ ցերեկուան ճաշս հոս պիտի ընեմ և տեսնենք թէ ինչ արդիւնք կ'ունենայ։

Եւ տակայն ցերեկուան տակաւին բաւական ժամանակ կար։ Մաք Լայն սիկառ մը վառեց, սենեակէն դուրս ելաւ և վար իջնելով դռնապանին ըսաւ որ կառք մը կանչէ իրեն համար։

Նոյն միջոցին պանդոկին տնօրէնը նոր յաճախորդին հաճելի ըլլալու դիտաւորով՝ մօտեցաւ գաղտնի ոստիկանին և քաղաքավարական խոնարհութիւն մը ընելով հարցուց.

— Արդեօք ձեր ընտրած սենեակէն գոհ մնացի՞ք... եթէ կ'ուզէք կրնանք ծովուն կողմը լաւագոյն սենեակ մը տալ։

— Ոչ՛, շնորհակալ եմ, պատասխանեց Մաք Լայն. այս սենեակը շատ յարմար է ինծի և պէտք չեմ զգար փոխելու... արդէն երկար ատեն մնալու դիտաւորութիւն չունիմ։

— Ինչպէս որ կը հաճիք...։

— Կը փափաքիմ նաև ճաշս այստեղ ընել։

— Շատ լաւ, կրնաք վստահ ըլլալ որ շատ գոհ պիտի մնաք։

— Արդեօք այս միջոցին բազմութիւն ունի՞ք պանդոկին մէջ։

— Ո՜հ, ո՛չ, հազիւ 15-16 հոգի... այժմ պանդոկներու եղանակը չէ։

— Եւ ձեր յաճախորդներուն ամենքն ալ ճաշերնին պանդո՞կը կ'ընեն։

— Ի բաց առեալ երկու հոգի։

«Իցի՜ւ թէ իմ փնտռածս այդ երկու հոգիին մէջ չըլլար», մտածեց Մաք Լայն. յետոյ բարձր ձայնով շարունակեց.

— Ուրեմն, այսպէս, կէսօրին հոս պիտի գտնուիմ ճաշելու համար։

Անգլիացին իր ժամանակը սպաննելու համար դէպ ի Մեծ փողոցը ուղղուեցաւ, կանգ առնելով բոլոր վաճառատուններու ցուցափեղկին առջև։ Այժմ մտածում մը իր միտքը կը պաշարէր։

— Եթէ յաջողիմ, կը խորհէր, դաշոյնին ու տոմսակին գաղտնիքը երևան հանել, ինչ որ շատ հաւանական է, ի՞նչ պիտի ընեմ, կրկին այդ հայրենասէրները պիտի մատնե՞մ իրենց դահիճին ձեռքը և ինչո՞ւ համար... ես ինծի առաջարկուած պաշտօնը արդէն կատարեցի, վարձքս ալ առայ, ա՛լ ասկէ ետքը պէտք չունիմ Ապտիւլ Համիտի ծառայելու, ո՛չ մէկ յանձնառութիւն, ո՛չ մէկ պայմանագրութիւն կայ մէջերնիս... եթէ այս գաղտնիքը լուսաբանելու կը հետամտիմ՝ պարզապէս բնազդական մղումի մը գոհացում տալու համար է... չէ՛, անկարելի է որ ինքնաբերաբար այդ մարդիկը մատնեմ նիւթական ակնկալութեան մը փոխարէն. ատիկա ամենաստորին վատութիւն մը պիտի ըլլայ, իմ անունիս ու համբաւիս անարժան։ Եթէ գործս հասարակ ոճրագործներու, մարդասպաններու հետ ըլլար, տարբեր բան...։

Այս տեսակ խորհրդածութիւններու մէջ ընկղմած՝ Մաք Լայն երկար ատեն պտտեցաւ Մեծ փողոցին երկայնքը և կէսօրուան մէջ վերադարձաւ իր պանդոկը։

Անմիջապէս զինքը առաջնորդեցին պանդոկի փառաւոր ճաշասրահը։ Արդէն մէկ քանի յաճախորդներ սկսած էին ա-

առանձին փոքրիկ սեղաններու վրայ ճաշել: Ինքն ալ դրան մօտ սեղան մը ընտրեց, ուրկէ ամբողջ սրահը և ներս մտնող եկողները կրնան դիտել:

Քառորդ մը ետքը գրեթէ ամբողջ յաճախորդներն ալ եկած էին, բայց Մաք Լայն ի զո՛ւր անոնց ամէն մէկին դէմքերը իր սուր ու խուզարկու նայուածքին քննութեանը կ'ենթարկէր. ո և է կասկածելի նշան չէր տեսնար ո՛չ մէկին վրայ: Ամէնքն ալ օտարականներ կը թուէին, Անգլիացի, Ֆրանսացի կամ Գերմանացի ճամբորդներ կամ զբօսաշրջիկներ: Իրենցմէ ո՛չ մէկը տեղացիի կերպարանքն ու դէմքը կը մատնէր:

— Եթէ կարելի ըլլար ամէն մէկին հետ մէյմէկ խօսք փոխանակել, գուցէ պիտի կրնայի հետք մը գտնել, մտածեց նախկին գաղտնի ոստիկանը:

Եւ սակայն չդադրեցաւ իր խուզարկու ակնարկը պտըտցնելէ ճաշողներուն վրայ:

Հեռու, անկիւն մը, պատուհանին քով երիտասարդ մը կը ճաշէր. կլորիկ դիմագիծներով թուխ մարդ մըն էր, բոլորովին ածիլուած՝ եւրոպացի դերասանի մը կամ կառապանի մը պէս: Ճաշարան մտած ատեն ո՛չ ոք բարևած էր և ո՛չ ոք իրեն խօսք մը ուղղած էր: Մաք Լայն մանաւանդ ուշադրութեամբ դիտեց այդ մարդը որ մտահոգ երևոյթ մը ունէր և ատեն ատեն դրան կողմը կը նայէր մէկու մը սպասելու պէս:

Մաք Լայն իրեն ծառայող սպասաւորին հարցուց.

— Սա անկիւնը, պատուհանին քով առանձին ճաշող պարոնը արդեօք Ճէյմս Սմիթ անգլիացի թղթակիցը չէ՞...:

— Ո՛չ, պարոն, պատասխանեց սպասաւորը, անգլիացի չէ այլ Ֆրանսացի:

— Վստա՞հ էք, որովհետև շատ կը նմանի իմ ըսած անձին, որ մէկ քանի ամիսէ ի վեր Պոլիս կը գտնուի:

— Կը սխալիք, պարոն, ըսաւ միւսը թեթև ժպիտով

մը, այս պարոնը հազիւ երկու օր է որ պանդոկը կը գըտնուի և ուղղակի Բարիզէն եկած է ու կը կոչուի Արման Տիւպուա և քանի մը օրէն ալ Ռուսիա պիտի մեկնի, ըստ իր յայտարարութեան...։

— Ճշմարիտ է ուրեմն, սխալած եմ, պատասխանեց Մաք Լայն։

«Այսպէս ուրեմն այս մարդը երկու օրէ ի վեր միայն հոս կը գտնուի, մտածեց ինքնիրեն, ահա՛ թանկագին ծանօթութիւն մը... և սակայն իր դէմքը ծանօթ կը թուի կոր ինծի... մեղք որ ակնոց դրած է, կ՚ուզէի իր աչքերը տեսնել։

Արդարև Արման Տիւպուա թեթև կապտագոյն ակնոց մը դրած էր։

— Հէ՞, ըսաւ մէկէն Մաք Լայն ձեռքը բռնած ու շուրթերուն մօտեցուցած գաւաթը սեղանին վրայ դնելով, մինչ նայուածքը չէր զատեր անկիւնի երիտասարդին վրայէն, արդեօք սխալեցա՞յ... չէ, չսխալեցայ, որոշապէս տեսայ... շարունակենք զինքը դիտել, գուցէ շարժումը պիտի կրկնէ...։

Քառորդ մը ետքը ճաշը աւարտած էր և սուրճ կը հրամցընէին։ Անգլիացին վայրկեան մը աչքը չէր հեռացուցած անկիւնի երիտասարդէն։ Յանկարծ ինքնիրեն ըսաւ.

— Այո՛, շարժումը կրկնեց, ա՜լ բնաւ տարակոյս չի կայ... այդ մարդը կը մոռնայ թէ ածիլուած է և ատեն ատեն պեխերը ոլորելու շարժում մը կ՚ընէ, ինչ որ սովորական բան մըն է պեխերնին նոր ածիլած անձերու համար։ Տարակոյս չի կայ ուրեմն որ այս մարդը տակաւին նոր ածիլել տուած է իր պեխերը... գուցէ երկու օր առաջ։ Երևակայութեամբ սեւ ու թաւ պեխեր դնենք դէմքին վրայ ու ակնոցը հանենք... «Թօհաֆ» բան, այն ատեն կարծես ճիշդ Զիա փաշային պիտի նմանի... այո՛, գիրութիւնը, հասակը, շարժուձևը մեր պաշտօնական թիկնապահը կը յիշեցնեն որ երկու օրէ ի վեր անյայտ եղած է...։

Այսպէս կը մենախօսէր Մաք Լայն երբ անկիւնի մարդը ոտքի ելաւ և սկսաւ յառաջանալ դէպ ի դուռը որուն մօտ նստած էր գաղտնի ոստիկանը, ինչպէս գիտենք:

— Գոնէ իր զինուորական քալուածքը փոխէր, մտածեց Մաք Լայն զայն դիտելով:

Արդարև ածխուած անծանօթը մարտական գնացքով մը անցաւ սրահին մէջէն ու դուրս ելաւ:

Մաք Լայն իր ծխամորճը լեցուց, հեշտանքով մը վառեց զայն՝ ու սուրճը խմեց կամաց կամաց: Յետոյ հարցուց սպասաւորին:

— Ո՞ր թիւ սենեակը կը բնակի պարոն Արման Տիւպուա:

— Երկրորդ յարկ՝ թիւ 18:

— Ա՜, ուրեմն դրացի ենք եղեր...:

Յետոյ, հանդարտ քայլերով ուղղուեցաւ երկրորդ յարկը և թիւ 18 սենեակին դուռը կամաց մը զարկաւ:

— Մտէ՛ք, ըսաւ ձայն մը ներսէն:

Անգլիացին դուռը բացաւ և ներս մտաւ.

— Ի՞նչ կ'ուզէք, ըսաւ միւսը չփոխած երեւոյթով մը:

— Վայրկեան մը ձեզի հետ տեսակցիլ:

— Բայց ձեզ ճանչնալու պատիւը չունիմ:

— Շուտով կրնանք իրարու հետ ծանօթանալ...:

— Կը խնդրեմ դուրս ելէ՛ք սենեակէս, անծանօթներու հետ խօսքի բռնուելու սովորութիւն չունիմ:

Անգլիացին փոխանակ այս խօսքերէն աղդուելու, ամենայն պաղարիւնով գրպանէն այցաքարտ հանեց և իր խօսակցին ներկայացուց ըսելով.

— Երբ անունս կարդաք, պիտի տեսնէք որ անծանօթ մը չեմ:

Միւսը քարթը առաւ և արագ ակնարկ մը նետեց վրան.

— ՄԱՔ ԼԱՅՆ, մրմնջեց աժգունելով, յետոյ մէկէն իր յուզումը զսպելով աւելցուց.

— Բայց պատիւ չունիմ այս անունով մէկը ճանչնալու...:

— Ի՞նչ շուտ կը մոռնաք ձեր բարեկամները, Ջիմ փաշա, ըսաւ Անգղիացին թեթեւ հեգնական ժպիտով մը:

Հազիւ թէ այս խօսքերը արտասանած էր, միւսը գրպանէն րէվօլվէր մը հանելով չեչտակի ուղղեց Մաք Լայնի դէմքին:

— Տղայութիւն մի՛ ընէք, պարապ տեղը ինքզինքնիդ կը վտանգէք, գոչեց այս վերջինը:

— Բայց ի՞նչ է ձեր դիտաւորութիւնը, ըսաւ միւսը միշտ րէվօլվէրը ձեռքը բռնած:

— Դիտաւորութիւնս ձեզ մեռնել չէ, պատասխանեց Մաք Լայն հաստատ ձայնով մը:

— Պատուոյ խօսքերնի՞դ է այդ:

— Այո՛, ճէնթըլմէնի խօսք:

— Ուրեմն հանեցէ՛ք նայիմ·

Եւ Ջիմ փաշա, որովհետեւ նոյն ինքն էր Արման Տիւպուա անունով ծածկուողը, րէվօլվէրը գրպանը դրաւ եւ գնաց դուռը կղպեց:

— Գիտէ՞ք որ ձեր ծրագիրը կատարելապէս յաջողեցաւ, ըսաւ Մաք Լայն թիկնաթոռի մը մէջ տեղաւորուելով եւ իր մարած ծխախոտը վառելով:

— Ի՞նչ ծրագիր . . . :

— Թունաւորուած դաչոյնին ու ատամնակին ծրագիրը ձերբակալուած անձերը մեռցնելու ու չարչարանքէն փրկելու համար:

— Բայց ի՞նչպէս կրնաք յաջողած ըսել. քանի որ ամէն բան երեւան եկած է, պատասխանեց Ջիմ փաշա յուսահատ շարժումով մը, տեսնելով որ Անգղիացին ամէն բան գիտէր:

— Ընդհակառակը, ո՛չ մէկ բան երեւան եկած է, պատասխանեց Մաք Լայն հանդարտութեամբ, ձեր դաչոյնները միայն ես գիտեմ, ես գիտեմ թէ Սուլթանին հաւատարիմ պահապանին հետ դաւող թիկնապահն է, քնացուցիչ սիկառէթ տուփը, ես գիտեմ թէ դաչոյնն ու ատամնակը կին մը

բերած գրած է Համիտի ոսպանին վրայ, եւ գիտեմ թէ այդ-
ատեանը այս պանդոկին մէջ գրուած է, եւ գիտեմ թէ Սր-
ման Տիւպուա Զիա փաշան է...:

— Բայց ի՞նչպէս կրնաք իմանալ այս ամենքը, ուրեմն մատնիչ մը կայ մեր մէջ:

— Քարը, փայտը, թուղթը, պողպատը, օդն ու ջուրը մեզմէ մատնիչներ են, եթէ կարող ըլլանք զանոնք փարպե-տութեամբ հարցափորձել, պատասխանեց Մաք Լայն...

— Ուրեմն դո՛ւք կրնաք ինքնիրեն գուշակել այդ ամէն խորդութիւնները:

— Այո՛ և խիստ բնական կերպով...

Ու Մաք Լայն մի առ մի պատմեց այն ամէն նշանները որոնց շնորհիւ կրցած էր երեւան հանել այդ խորհրդաւոր գործը:

Զիա փաշա հիացմամբ մտիկ ըրաւ այս պատմութիւնը, այդ տարօրինակ մարդուն գիտական կարողութեանը վրայ զարմացած: Յետոյ, յանկարծ, մտատանջ երեւոյթով մը հարցուց.

Իսկ հիմա որ ամէն բան գիտէք, ի՞նչ պիտի ընէք:

— Ոչինչ, պիտի ջանամ մոռնալու:

— Սակայն այս գործին ընթացքը ձեզի յանձնուած է անշուշտ:

— Այո՛, գիս Սուլթանին քով կանչեցին և ուզեցին որ այս մութ խնդրով զբաղիմ, բայց երբեք յանձնառութիւն մը չունիմ և միայն գրած եմ այնուր թողուլ Սուլթանին ծառայութիւնը, որովհետեւ ինչ որ տեսայ Եըլտըզի մէջ, իմ խիստ կարճ ըմբռնութեան միջոցին գիս, չափազանց զզուեցուց և հաւանօրէն այսօր վար կը փնտռտանամ հայրենիքս, կինս ու զաւակներուս քով...:

Վայրկեանի մը չափ լռութիւն տիրեց երկու խօսակիցներուն մէջ. յետոյ Զիա փաշա ոտքի ելաւ, Անգլիացիին քով գնաց և յուզուած ձայնով մը ըսաւ.

— Ազնուական անձ մըն էք դուք և ասոր ապացոյցը արդէն մի քանի անգամներ տուիք. Իրա՛ւ է որ մեզ հալածելու պաշտօնով եկաք Պոլիս, սակայն նոյն իսկ ձեր պաշտօնին գործադրութեան մէջ միշտ մեծանձնութեամբ վարուեցաք մեզի հետ, այնպէս որ մենք ձեզ իբրև թշնամի մը չենք նկատեր, այլ ճշմարիտ բարեկամ մը և իբր բարեկամի մըն է որ այժմ պիտի խօսիմ ձեզի հետ։

— Խօսեցէ՛ք, ըսաւ Մաք Լայն, և վստահ եղէ՛ք որ ես ալ ձեզ իբրև բարեկամ մտիկ պիտի ընեմ։

— Ցաւով մեկնելու խօսք ըրի՛ք քիչ մը առաջ, շարունակեց Զիա փաշա, արդ, ես ձենէ պիտի խնդրեմ որ քիչ մըն ալ մնաք Պոլիս ուր ձեր կարողութեան պէտք ունինք։

— Լաւ ուրեմն, ըսաւ Մաք Լայն խնդալով, կ'ուզէք որ Սուլթան Համիտի ծառայելէ ետքը հիմակ ալ ձեզի՞ ծառայեմ։

— Մենք ծառայութիւն չենք ընդունիր, որովհետև ծառայութիւնը վարձատրութիւն կ'ենթադրէ և մենք կարող չենք վարձատրել, մենք միայն գործակցութիւն կը խնդրենք ձենէ....։

— Լա՛ւ. ասոր խօսք չունիմ, պատասխանեց զուարթ կերպով մը... և կը խոստանամ ձեռքէս եկածին չափ օգտակար ըլլալ ձեզի, հիմա որ լաւ մը հասկցած եմ ձեր ծածուկ գործունէութեան նպատակը և համակրած անոր։

— Շնորհակալ եմ ձեր այս գնահատումին համար, ըսաւ Զիա փաշա, ուրեմն ներեցէ՛ք որ առանց ժամանակ կորսնցնելու բացատրեմ ձեզ թէ ի՛նչ ծառայութիւն կը սպասենք ձենէ։

— Խօսեցէ՛ք, ձեզ մտիկ կ'ընեմ։

— Այս միջոցիս Պոլիս կը գտնուի մեր գործօն ընկերներէն մէկը որ, Էսկիշէհիրէն եկած ու Մեծ փողոցի Թօքաթլեան պանդոկը իջեւանած է։ Անպատճառ պէտք ունիմ այս ընկերոջ հաղորդելու կարգ մը տեղեկութիւններ և միանգամայն

իրեն իմացնելու Ապտիւլ Համիտի վրայ՝ մեր ի գործ դրած վերջին ճնշումին արդիւնքը։ Արդ, ես, հակառակ իմ ծրագրուած ըլլալուս, չեմ ուզեր անձամբ իր քով երթալ, որովհետեւ գիտեմ թէ ամենախիստ խուզարկութիւններ կ՚ըլլան զիս ձերբակալելու համար եւ թէ Բերայի ամէն կողմը, մանաւանդ Թօքաթլեանի չուրջը, լրտեսներով ու գաղտնի ոստիկաններով պաշարուած է։ Մեր ընկերը տակաւին չգիտեր Եըլտըզէն իմ փախուստս, հետեւաբար ինքն ալ մտքէն չանցըներ գալ զիս հոս գտնելու, թէեւ այդ բանն ալ շատ վտանգաւոր կրնայ ըլլալ, որովհետեւ ինքն ալ արդէն կասկածի տակ է։

— Հասկցայ խնդիրը, կ՚ուզէք որ ես ձեր կողմէ երթամ զինքը տեսնեմ եւ պէտք եղածը հաղորդեմ։

— Ճիշդ այդ ծառայութիւնը պիտի խնդրեմ ձենէ։ Նախ ծրար մը ունիմ որ իրեն պիտի յանձնուի, յետոյ կը խնդրեմ որ իրեն մանրամասնօրէն պատմէք իմ Եըլտըզէն փախչելուս եւ այս պանդոկը ապաստանելուս պարագաները, ինչպէս նաեւ դաշոյնին ու տամսակին խնդիրը եւ ձերբակալուած անձերուն չարչարանքն ու մահուան վտանգէ ազատ ըլլալնին, վերջապէս ինչ որ դուք ինէ աղէկ գիտէք։

— Բայց ձեր ընկերը ի՞նչպէս պիտի վստահի ինծի։

— Իմ կողմէս գրուած երկու տող բաւական է զինքը վստահեցնելու համար...։

Այս խօսակցութենէն կէս ժամ ետքը Մաք Լայն կը ներկայանար Թօքաթլեան օթէլը եւ ուղղակի կը դիմէր մուտքին ձախ կողմը գտնուած գրասենեակը, ուր երիտասարդ մը բազմած էր.

— Սալի պէյը արդեօք հո՞ս է, կը հարցնէր երիտասարդ պաշտօնեային։

— Այո՛։

— Ո՞ր թիւը։

— Առաջին յարկ՝ թիւ 4։

Մաք Լօյն ուղղուեցաւ սանդուխներէն վեր և 4 թիւ սենեակին դուռը զարկաւ։

Դուռը անմիջապէս բացուեցաւ և Անգլիացին դէմ առ դէմ գտնուեցաւ գեղեցիկ դիմագիծներով երիտասարդի մը հետ։

— Ո՞վ կը փնտռէք, պարոն, ըսաւ երիտասարդը։

— Սա՛ի պէյը։

— Ես եմ։

— Ձեզի համար յանձնարարական մը ունիմ, ըսաւ Մաք Լօյն, Ձիա փաշայի տուած մանուար տոմսը ներկայացնելով։

Այս տոմսը, որուն վրայ երիտասարդը արագ ակնարկ մը նետեց, մոգական ազդեցութիւն մը ըրաւ։ Անմիջապէս փութաց ներս հրաւիրելու Անգլիացին և յետոյ սենեակին դուռը խնամքով գոցեց։

Ոստիկանութեան նախկին գաղտնի ոստիկանը ուշի ուշով դիտեց իր հիւրընկալը։

Այն որ Սա՛ի պէյի անունը կը կրէր, հազիւ 32 տարեկան, միջահասակ, թուխ ու կորովի դիմագիծերով երիտասարդ մըն էր։ Իր մտացի ու աշխոյժ դէմքը առաջին վայրկեանէն համակրութիւն կը ներշնչէր և իր աչքերուն անկեղծութիւնը ցոյց կուտար թէ այդ երիտասարդը անկարող էր ոեւէ կեղծիքի ու խաբէութեան։

Անգլիացին զայն ուշադրութեամբ դիտելով՝ ինքնիրեն սա խորհրդածութիւնը ըրաւ.

— Ահաւասիկ մարդ մը որուն նմանը կարելի չէ գտնել Երլտըզի պալատին մէջ։

Արդարև Սա՛ի թուրք յեղափոխական երիտասարդութեան ամենէն մաքուր տիպարներէն մին էր։ Մեծահանձն, անձնուէր ու հրապուրիչ հոգի մը որ իր դպրոցական կեանքին մէջ իսկ ընդվզած էր բռնակալութեան դէմ և որուն միակ նպատակը եղած էր իր հայրենիքի ազատագրութիւնը։ Տարիներէ ի վեր արդէն, իր գաղափարակից երիտասարդներուն հետ, անձկայրն անհամբերութեամբ կը սպասէր այն վայրկեանին ուր պիտի

կրնար իր ծրագիր իրագործել։ Այդ վայրկեանը ներկայացեր էր, երբ օր մը, դիպուածով, հանդիպեր էր որ Սալիհա հանըմին երբ այդ ազնիւ ու հայրենասէր տիկինը արդէն իր անձը նուիրած էր հայրենիքի վերականգնման սրբազան գործին։

Կարճ տեսակցութիւն մը բաւական եղեր էր այդ երկու հոգիներուն մէջ անջինջ կապ մը հաստատելու համար և այդ օրէն ի վեր Սա՛ի, ամէնէն գործօն անդամը դարձած էր գաղտնի կազմակերպութեան։ Սա՛ի որ օր մը նշանաւոր դեր մը պիտի կատարէր Օսմանեան վերահաստատուած Սահմանադրութեան առաջին օրերուն, մեր պատմութեան շրջանին, երկրորդական պաշտօնեայ մըն էր Խարիճէի մէջ, ուր սակայն հակառակ իր աւերեւոյթ աննշան դիրքին, ամենակարեւոր դեր մը կը կատարէր, միութեան օղակ մը ըլլալով բոլոր գործօն ուժերուն միջեւ։

Վերջերս Խարիճէէն եկած էր Պոլիս կարգ մը կենսական խնդիրներու կարգադրութեան համար և հոս գաղտնածածուկ կերպով կ'աշխատէր գաղտնի գօմիթէին գործերուն, հանգուցեալ հայրենասէր Մանեասի Զատէ Րէֆիք պէյի հետ, իր գործունէութեան կեդրոնատեղին հաստատելով Գատըգիւղ, Մաըրըր Օղլու Թարլասի կողմերը։

Մաք Լայն, առանց ժամանակ կորսնցնելու, իրեն յանձնուած պաշտօնը խղճի մտօք կատարեց, նախ իրեն վստահուած ծրարը յանձնելով և յետոյ մանրամասնօրէն պատմելով բոլոր այն դէպքերը զորս մեր ընթերցողները գիտեն արդէն։

Սա՛ի պէյ անյապաղօրէն մտիկ ըրաւ այս ամէնքը որոնք կենսական կարեւորութիւն ունէին իրեն համար. յետոյ աւելցուց.

— Իսկ հիմա, սիրելի պարոն Մաք Լայն, ի՞նչ ընթացք կը կարծէք որ բռնէ մեր Աբտիւլ Համիտ ձերբակալուածներուն հանդէպ։

— Ես կը կարծեմ որ, պատասխանեց Անգլիացին, իր առաջին վախը անցնելէ և անձնական պաշտպանութեանը հա-

մար ամենախիստ միջոցներ ձեռք առնելէ ետքը, նորէն պէտք վերադառնայ իր հին խորհրդին և ամէն միջոց պէտք գործածէ՝ իր զոհերը բնաջինջ ընելու համար:

— Ճիշդ ես ալ ձեր գաղափարէն եմ, գոչեց Սա՛ի պէյ, այդ մարդը որչափ ատեն որ գահին վրայ ապրի՝ կարելի չէ երբեք փառաւորութիւն ունենալ: Մեր յանդուգն արարքը անշուշտ ժամանակաւոր ցնցում մը յառաջ բերաւ, բայց եթէ չկրնանք անմիջապէս օգտուիլ անկէ, նորէն մեր ընկերները կորսուած են... և ափսո՜ս, կարելի չէ մեր բրածը կրկնել...: Ձեր փաշային փախուստովը մեր ուժը չարաչար տկարացած է Եւրոպայի մէջ և եթէ մէկ քանի հաւատարիմներ ունինք հոն, անոնք անկարող են կարեւոր գործ մը տեսնելու...:

— Ուրեմն առանց ժամանակ կորսնցնելու հարկ է օգուտ քաղել Ապտիւլ Համիտի ներկայ հոգեկան կացութենէն...:

— Այո՛, բայց ի՞նչպէս, հարցուց Սա՛ի պէյ մտատանջ կերպով մը ճակատը շփելով:

Անգլիացին անմիջապէս չպատասխանեց, կարծես միջոց մը կը խորհէր, ճար մը կը մտածէր:

Ի վերջոյ ըսաւ.

— Անշուշտ դաշինքի սպառնալիքը ի գործ դնելով՝ չէի՞ք յուսար թէ ձեր ընկերները անմիջապէս ազատ կը թողուին:

— Ո՛չ, այդ յոյսը չունէինք, մեր մեծագոյն նպատակն էր զիրենք չարչարանքէ ու անմիջական մահուընէ ազատել, ժամանակ շահիլ և այսպիսով ատեն ունենալ վերջնական փրկութիւննին պատրաստելու:

— Բայց, առարկեց Մաք Լայն, նախապէս գիտնալու էիք թէ երբոր ձերբակալուին՝ բոլոր այս չարչարանքները պիտի պատահէին և մահուընէ չպիտի կրնային փրկուիլ... ուրեմն ինչո՞ւ ուզեցին ձերբակալուիլ... որովհետև գիտէք անշուշտ որ եթէ ես գացի զիրենք գտայ իրենց Ջամլըճայի թաքստոցին մէջ, անիկա նոյն իսկ իրենց կամքովն էր և կրնային այդ վտանգէն խուսափիլ կամ զիս սպաննելով՝ և

կամ ինէ պատուոյ խօսք առնելով թէ իրենց զաւակները չպիտի յայտնէի։

— Երբ մեր ընկերները ձերբակալուեցան՝ ամէն պատրաստութիւն առնուած էր մեծ եղելութեան մը համար որ ո՛չ միայն զիրենք պիտի փրկէր բռնաւորին ճանկերէն, այլ նոյն իսկ մեր դժբախտ հայրենիքը պիտի ազատէր զինքը մահացնող բռնաւորին ու անոր արբանեակներուն ձեռքէն, պատասխանեց Սա՛ք պէյ, սակայն ափսո՛ս որ վերջին րոպէին ամէն ինչ խանգարուեցաւ... անիկա այժմ չեմ կրնար բացատրել ձեզի, բայց օր մը կ'իմանաք... խնդիրը այն է որ հիմա մեր կազմակերպութիւնը՝ ձախողութեան շրջան մը կը բոլորէ և ճիշդ այս միջոցին է որ հարկ է մեր ոյժերը ժողուել գերագոյն կռիւը մղելու համար...։

Երիտասարդ Սա՛ք պէյ ոտքի ելաւ․ իր եռանդուն և ոգևորուած խօսակցութիւնը աչքերուն պայծառ ու անկեղծ արտայայտութիւնը գրաւած էին Մաք Լայնի համակրութիւնը և մաքուր կը ջանար ճար մը գտնել օգտակար ըլլալու համար իր բարեկամին։

— Սա՛ք պէյ, ըսաւ Անգլիացին ի վերջոյ, ես ինչպէս ըսի Ձեր փաշային, պատրաստ եմ ամէն կերպով աջակցելու ձեզ, միայն թէ ցոյց տուէք ինծ այն ծառայութիւնը զոր պէտք է որ կատարեմ։

— Շնորհակալ եմ ձեր բարեացակամութենէն, պատասխանեց երիտասարդը Մաք Լայնի ձեռքը բռնելով, և վստահ եղէք որ երբեք չպիտի մոռնանք ձեր ըրածները։ Մեր հայրենիքը որ այսօր ոտնակոխ կ'ըլլայ կարգ մը անխիղճ թշուառականներու գարշապարին տակ՝ արժանի է ամէն ազնիւ սիրտ կրողներու համակրանքին և դուք իբրև ամէնէն ազատասէր երկրի մը զաւակը չէք կրնար անտարբեր մնալ անձերու մասին որոնք ինքզինքնին ազատութեան և արդարութեան յաղթանակին համար զոհած են։

Մաք Լայն ինքն ալ ոտքի ելաւ, սենեակին մէջ քանի մը

շրջան ըրաւ, յետոյ Սա՛ի պէյի քով դառնալով ըսաւ։

— Մեր ձերբակալուած բարեկամները ապահովաբար չենք կրնար ազատել, բայց գուցէ յաջողինք զանոնք աքսորել տալ միթէ ասով կը գոհանա՞ք։

— Անշուշտ, պատասխանեց Սաի պէյ, անգամ մը որ Եըլտըզի որջէն հեռանան, մահուան ու չարչարանքի անմիջական վտանգէն խուսափին, մինչ կրնան յուսալ որ զիրենք փրկելու ճար մը պիտի գտնենք։

— Ուրեմն գործը ինծի թողուցէ՛ք, պատասխանեց Անգլիացին վճռաբար։

Բանի վայրկեանի չափ ևս խօսակցելէ ետքը, Մաք Լայն կը մեկնէր Սա՛ի պէյի քովէն և կը վերադառնար Եըլտըզի պալատը։

Անգլիացին երբ պալատ հասաւ, իսկոյն զինքը կոչեցին Իզզէթ փաշայի քով որ անհամբեր իրեն կը սպասէր։

— Ի՞նչ լուր, կրցա՞ք հետք մը գտնել, հարցուց փաշան վրդոված դէմքով մը։

— Ափսո՛ս, պատասխանեց գաղտնի ոստիկանը յուսահատ երեւոյթով մը, անկարելի եղաւ ինծի ամենափոքր հետք մը գտնել որուն շնորհիւ կարելի ըլլար այս առեղծուածը լուծել։

— Բայց մեր վեհափառ տէրը ամբողջ յոյսը ձեր վրայ դրած է և ժամերէ ի վեր անհամբեր ձեր գալուստին կը սպասէ։

— Կը ցաւիմ որ այս անգամ չպիտի կրնամ օգտակար ըլլալ Սուլթանին։

— Գոնէ ի՞նչ կարծիք կազմեցիք այս յանդուգն արարքին մասին.

— Նոր կարծիք մը չկազմեցի, միայն թէ ա՛լ աւելի հաստատուեցայ այն կարծիքին մէջ զոր հոս գալէս քիչ ետքը կազմած էի, այսինքն թէ՝ գաղտնի կազմակերպութիւնը շատ զօրաւոր արմատներ ունի նոյն իսկ Եըլտըզի պալատին մէջ և թէ շատ զգուշութեամբ պէտք է վարուիլ...։

— Ի՞նչ կը հասկնաք զգուշութեամբ վարուիլ ըսելով։

— Պարզապէս ըսել կ'ուզեմ թէ իրենց դէմ հալածանքը պէտք չէ ծայրայեղութեան մղել... երեւակայեցէ՛ք թէ այդ մարդիկը, եթէ ուզէին, փոխանակ դաշոյնը Սուլթանին քով դնելու կրնային անոր սիրտը մխել, քանի որ կրցած էին, քնացած միջոցին, մինչեւ քովը մօտենալ... հետեւաբար նոյն իսկ Սուլթանին անձնական ապահովութիւնը կը պահանջէ որ՝ ժամանակ մը գոնէ՝ մեղմ ընթացք մը բռնուի անոնց հանդէպ, մինչեւ որ կարելի ըլլայ երեւան հանել Եըլտըզի մէջ իրենց մեղսակիցները։

— Ուրեմն խորհուրդ կուտաք որ տեղի՞ տանք այդ եղեռնագործներուն առջեւ...։

— Բնաւ երբեք, պատասխանեց Մաք Լայն, այլ միայն կը կարծեմ որ լաւագոյն է անօգուտ խստութիւններու չդիմել։

— Բայց ի՞նչ դիրք պէտք է բռնենք հիմա ձերբակալուած չորս անձերու մասին... իրենցմէ ներո՞ւմ խնդրենք եւ ապա ազատ թողունք որպէս զի իրենց ոճիրները անպատիժ շարունակեն... բայց անկարելի բան է ատիկա... ատիկա Սուլթանական իշխանութեան ժխտումը ըսել է։

— Ես երբեք այդպիսի բան մը չըսի կարծեմ, ըսաւ Անգլիացին ամենայն համբերութեամբ, եւ նոյն իսկ գաղտնի քօմիթէին ալ կ'երեւայ որ այդպիսի յաւակնութիւն մը չունի... յիշեցէ՛ք Սուլթանի անկողնին քով դրուած սպառնալից տոմսակին խօսքերը. «Եթէ երբեք չորս ձերբակալուած անձերուն կեանքին դպչիս, եթէ երբեք զանոնք չարչարանքներու եւ տանջանքներու ենթարկես ալ, քու մահդ անխուսափելի է։» Ահա՛ տոմսակին մէջ պարունակուած սպառնալիքը։ Ինչպէս կը տեսնէք՝ երկու որոշ պահանջում կը ներկայացնէ. Ա. իրենց ընկերները մահուան չենթարկել. Բ. զանոնք չտանջել։ Ազատ արձակելու խօսք չի կայ տոմսակին մէջ։ Ընդունեցէ՛ք որ այդ գաղտնի կազմակերպութիւնը հակառակ իր զօրութեան՝ շատ համեստ է իր պահանջումներուն մէջ։ Եւ չմոռնամ աւելցնելու որ իրենց ըրած պահանջումները շատ ալ օրի-

նական են, որովհետև քաղաքական յանցաւորները, նոյն իսկ եթէ ոճիր գործեն, ո՛չ մէկ քաղաքակրթեալ երկրի մէջ մահուան պատիժ կը կրեն, նոյնպէս յանցաւորները տանջանքի ենթարկելը բարբարոս սովորութիւն մըն է որ այլեւս վերցած է ամէն տեղ։ Այսպէս ուրեմն, ես կը կարծեմ որ այս չորս անձերը կրնաք բանտարկութեամբ կամ աքսորով պատժել, առանց ձեր վրայ հրաւիրելու գաղտնի կազմակերպութեան սպառնալիքները։

Մաք Լայն լռեց։ Իշխէթ փաշա բաւական ժամանակ մտածկոտ մնաց. յետոյ ըսաւ.

— Կարծեմ իրաւունք ունիք, այս մտքով պիտի խօսիմ մեր վեհափառ տիրոջ և պիտի ջանամ որ խնդիրը ժամ առաջ վերջ մը գտնէ, որովհետև ես իսկ ինքզինքս ապահովութեան մէջ չեմ զգար կոր։

— Եւ ո՛չ ալ ես, աւելցուց Անգլիացին, և նոյն իսկ պիտի խնդրեմ Սուլթանէն որ այլեւս իմ պաշտօնս աւարտած նկատելով, հրաման տայ մեկնելու... այժմ ձեր թշնամիները որոշապէս կը ճանչնաք, գիտէք որ անոնք հասարակ ոճրագործներ չեն, այլ յեղափոխականներ որոնք քաղաքական նպատակի մը կը ձգտէք, գիտէք նաև որ անոնք բազմաթիւ են և շատ զօրաւոր. ա՛լ ասկէ ետքը ձեզի կ'իյնայ անոնց մասին ձեր բանելիք ուղղութեան համար որոշում մը տալ։ Գաղտնի ոստիկանը, մանաւանդ օտարազգի գաղտնի ոստիկան մը որ ո՛չ թէ միայն դրամի համար՝ այլ նաև համոզումով կը գործէ, այս խնդիրներուն մէջ գործ չունի։

— Ներեցէ՛ք որ վերջին ծառայութիւն մըն ալ խնդրեմ ձենէ, պատասխանեց Սուլթանին սիրական քարտուղարը, մեր վեհափառ տէրը, ինչպէս ըսի քիչ մը առաջ, անհամբեր ձեր գալուն կը սպասէր. ուստի կը խնդրեմ որ հիմա միասին իր քով երթանք և իրեն կրկնէք ինչ որ այժմ հոս ըսիք։ Ձեր խօսքերը մեծ կշիռ կրնան ունենալ և կը դիւրացնեն մեր դիմումը։

— Պատրաստ եմ ձեզ ընկերանալու։

Իզզէթ փաշա Մաք Լայնի հետ իսկոյն ճամբայ ելաւ դէպի Ապտիւլ Համիտի յարկաբաժինը։ Սուլթանը արդարեւ մտատանջ անհամբերութեամբ կը սպասէր Անգլիացիին վերադարձին, վստահ ըլլալով որ անիկա իր սովորական ճարպիկութեամբը գտած պիտի ըլլար հնար մը որով Թունաւոր դաշոյնին գաղտնիքը պիտի լուծուէր։

Երբ իր ակնկալութեանց ի դերեւ ելլելը լսեց, Ապտիւլ Համիտ խորին թախծութեան մը մէջ ինկաւ.

— Ուրեմն կարելի չպիտի ըլլայ Եըլտըզի պալատին մէջ իսկ զիս հալածողները գտնել, գոչեց։

Այն ատեն Մաք Լայն պարզեց իր տեսութիւնը եւ ըսաւ որ, ըստ իրեն, Սուլթանին կեանքը որեւէ վտանգի մէջ չը պիտի ըլլար, եթէ ձերբակալուած անձերը մահուան պատժի ու չարչարանքներու ենթակայ չըլլային։

— Մահուան պատիժ չպիտի տամ իրենց եւ ո՛չ ալ չարչարանքներու պիտի ենթարկեմ, գոչեց Ապտիւլ Համիտ կատաղութեամբ, բայց եւ այնպէս չեմ կրնար թողուլ որ այդ չարագործները պետութեանս մէջ ազատօրէն ինծի դէմ դաւեն։

— Վեհափառ տէր, բանտարկեցէ՛ք զիրենք, ըսաւ Իզզէթ փաշա։

— Այո՛, բանտարկեմ որպէս զի իրենց կուսակիցները զիրենք բանտէն ազատեն ու քթիս խնդան, որո՞ւ վրայ կարելի է վստահիլ, ո՞ր բանտին ու ո՞ր բանտապանին վրայ, քանի որ ամէնքը ինծի դէմ կը դաւաճանեն, նոյն իսկ իմ պառկած սենեակիս մէջ, գոչեց Ապտիւլ Համիտ յուսահատ շեշտով մը։

Մաք Լայն, որ Ապտիւլ Համիտի արտասանած խօսքերը չէր հասկցած եւ անոր շարժումներէն ու արտայայտութեան ձեւէն միայն գուշակած էր որ Սուլթանը ծայրայեղ մտատանջութեան մը մատնուած էր, ուզեց ինքն ալ խօսքի խառնուիլ։

— Արդեօք ի՞նչ բան ձեր վեհափառութեան այսքան մտատանջութիւն կը պատճառէ, հարցուց։

Քարտուղար փաշան փութաց խսկոյն Անգլիացիին բացատրելու Համիտի խօսքերը։

— Ես ալ վեհափառ Սուլթանին կարծիքէն եմ, ըսաւ Մաք Լայն, այդ մարդիկը բանտարկելով կացութիւնը աւելի կը ծանրանայ և կրնայ տեղի տալ կարգ մը անպատեհութիւններու. ըստ իս, լաւագոյն միջոցն է զանոնք աքսորել։

— Աքսորել բայց ո՞ւր...։

— Հեռաւոր ու ապահով տեղ մը, ձեր պետութիւնը բաւական ընդարձակ է և կարծեմ աքսորի համար տեղ չպակսիր։

Ապտիւլ Համիտի հաճոյ թուեցաւ աքսորի այս գաղափարը. հեռաւոր տեղ մը աքսորել և այնպէս մը ընել որ յետոյ մէկիկ մէկիկ «բնական մահուամբ» մեռնէին։ Ասով թէ՛ իր նպատակին հասած կ'ըլլար թէ՛ երեւոյթները փրկած։ Անմիջապէս մաքին մէջ ծնաւ զանոնք Եէմէն աքսորելու գաղափարը։ Հո՛ն առանձին զնտաններու մէջ զանոնք կրնար բանտարկել տալ, աչքէ հեռու, և նոյն իսկ տանջանքներու ենթարկելով՝ դուցէ յաջողէր խոստովանցնել զիրենք. Եւ սակայն Ապտիւլ Համիտ չուզեց որ աքսորականները ինք որոշած ըլլայ և Իզզէթ փաշայի դառնալով հարցուց.

— Դո՛ւն ինչ կ'ըսես պարոն Մաք Լայնի յայտնած գաղափարին մասին։

— Կարծեմ թէ շատ օրինաւոր է, պատասխանեց քարտուղարը։

— Ես կը նախընտրէի զիրենք, եթէ կարելի էր, բոլորովին ազատ թողուլ կամ գոնէ մօտակայ և օդասուն տեղ մը ղրկել, բայց քանի որ դուք այդպէս յարմար կը տեսնէք, թո՛ղ ձեր ուզածին պէս ըլլայ, ես այս խնդրոյն մէջ բոլորովին ձեռնպահ կը մնամ։

Այս կեղծաւոր խօսքերուն իմաստը խսկոյն ըմբռնեց Իզզէթ փաշա և իր տիրոջ հաճելի երեւնալու համար պատասխանեց.

—Մենք գիտենք որ ձեր վեհափառութիւնը իր անհուն բա-

ընտրութեամբ և Ներողամտութեամբ միշտ կը փափաքի մեղմօրէն վարուիլ նոյն իսկ չարագործներու հանդէպ, մանաւանդ երբ անոնք ուղղակի իր նուիրական անձին դէմ կը գործեն: Սակայն այս պարագայիս, խնդիրը նոյն իսկ պետական ապահովութեան շուրջը կը դառնայ և մենք կը խնդրենք որ մեզի թոյլ տաք այս պարագային կրօնքի ընթացք մը բռնելու պետութեան դէմ դաւաճանող այս դաւադիր կազմակերպութեան դէմ: Ներողամտութիւնը այլեւս տկարութիւն մը պիտի ըլլայ մեր կողմէ, այնպէս չէ՞ պարոն Մաք Լայն, հարցուց քարտուղարը:

— Ասոնք պետական ներքին խնդիրներ են որոնց մասին իմ կարծիքս ո և է կշիռ չկրնար ունենալ, պատասխանեց Մաք Լայն, միայն թէ այդ մարդիկը եթէ անպատճառ պիտի պատժուին, ըստ իս, ինչպէս ըսի, աքսորը յարմարագոյն պատիժ կրնայ ըլլալ:

— Ո՞ւր կ'ուզէք աքսորել զիրենք, հարցուց Աբտիւլ Համիտ իր քարտուղարին դառնալով:

— Այս մասին կ'ուզեմ խորհրդակցիլ իմ պաշտօնական ընկերներուս հետ և յարմարագոյն տեղ մը որոշել:

— Այո՛, այդպէս շատ աղէկ կ'ըլլայ, ըսաւ Սուլթանը, շատոնց խորհուրդ մը կազմէ և անոնց կարծիքն ալ առ, անմիջապէս որոշում մը տուէ՛ք. Իրենց ըսէ որ ես ա՛լ շատ չեմ [illegible] զբաղիլ այդ ձերբակալուածներու խնդրով և [illegible] [illegible] կը թողում ձեզ որ ուզած կարգադրութիւնները ընէ՛ք, միայն թէ չեմ ուզեր որ այդ մարդիկը տանջանքի կամ մահուան վտանգի ենթարկուին:

— Ձեր բարձր վեհափառութեան այս փափաքը մեզի համար նուիրական է:

Այս տեսակցութենէն անմիջապէս ետքը, Իզզէթ փաշա իր մօտ հրաւիրեց պալատական փաշաները և անոնց հաղորդեց Սուլթանին կամքը:

Փաշաները կարճ խորհրդակցութենէ մը ետքը, որոշեցին

որ չորս ձերբակալուած անձերը Եէմէն աքսուին անմիջապէս և հոն հարցաքննութեան ենթարկուին Պոլսէն յատկապէս ղըրկուած հարցաքննիչի մը կողմէն։

Այս որոշումը Իզզէթ փաշա հաղորդեց Ապտիւլ Համիտի։ Բռնաւորը արդէն գիտէր տրուելիք որոշումը և առանց դիտողութեան ընդունեց զայն։

— Կրնայ ըլլալ որ ճամբորդութեան միջոցին իրենցմէ մէկ երկուքը հիւանդանալով մեռնին և հարկ ըլլայ դիակները ծովը նետել, դիտել տուաւ Քարտուղարը, արդեօք ձեր վեհափառութիւնը այսպիսի պատահականութեան մը մասին անպատեհութիւն մը կը տեսնէ՞։

— Լաւ է որ ուշադրութիւն ըլլուի և հիւանդ չըլլան, պատասխանեց Բռնաւորը, քանի որ որոշում տրուած է զիրենք հարցաքննելու Եէմէն փոխադրուելէն ետքը։ Հարցաքննութիւնը կատարուելէն վերջը, եթէ հիւանդութիւն պատահի, այն ատեն տարբեր բան։

— Ուրեմն կը ջանանք ձեր վեհափառութեան փափաքին գոհացում տալու։

— Ե՞րբ ճամբայ պիտի ելլեն։

— Երբոր հրաման ընէք։

— Կարծեմ որչափ շուտ այդ գործողութիւնը կատարուի այնքա՜ն լաւ կ՚ըլլայ, այդ մարդիկը քանի՛ Եըլտըզին մէջ մընան՝ ես չպիտի կրնամ հանդիստ ըլլալ։

— Ուրեմն այս գիշեր զիրենք ճամբայ կը հանենք։

— Շատ մեծ գաղտնապահութեամբ սակայն, ո՛չ ոք պէտք է իմանայ անոնց մեկնումը և ո՛ր կողմ երթալնին։

— Ամէն զգուշութիւն ձեռք պիտի առնենք այս մասին։

Յետոյ Ապտիւլ Համիտ մասնաւոր հրահանգներով կարգադրեց այս աքսորին ու ճամբորդութեան բոլոր մանրամասնութիւնները, ինք մի առ մի որոշելով բոլոր այն անձերը որոնք պիտի ընկերանային չորս ձերբակալուածներուն. անոնց

վրայ հսկելու և զանոնք մինչև իրենց աքսորավայրը տանելու համար։

Մինչ Եըլտըզի պալատին մէջ ամէն ոք այս կարգադրութիւններով կը զբաղէր, Մաք Լայն կը փութար Բերա, Սա՛ի պէյի ու Զիա փաշայի մօտ, անոնց իմացնելու համար Սուլթանին տուած որոշումը։

---

## ԳԼՈՒԽ ԺԴ.

# ԴԷՊԻ ԱՔՍՈՐ

Հակառակ Սուլթանին յայտնած փափաքին՝ կարելի չեղաւ ձերբակալուած անձերը անմիջապէս ճամբայ հանել, որովհետև Նաւահանգիստին մէջ Թրքական պատրաստ շոգենաւ մը չի կար Կարմիր ծով ղրկելու համար։ Ապտիւլ Համիտ թէև շատ սրտնեղութիւն զգաց ասոր համար. սակայն ստիպուեցաւ համակերպիլ։ Հիմա իր ամբողջ մտածումը սևեռած էր դէպի Եէմէն, հո՛ն ուր պիտի փոխադրուէին իր զոհերը և ուր պիտի մնային յաւիտենապէս, ուրիշ հարիւրաւոր հայրենասէրներու հետ, որոնք զանազան պատճառներով արդէն աքսորուած էին այդ մահացու կլիմային տակ։

Հազիւ թէ աքսորի որոշումը տրուած, Ապտիւլ Համիտի առաջին գործը եղաւ կարգ մը պատուանշաններ բաշխել այն անձերուն, որոնց կը զգար թէ ապագային պէտք պիտի ունենար Արաբիոյ մէջ։ Նոյնպէս պաշտօնեաներու մէջ փոփոխութիւններ մտցուց և զանազան աստիճաններ շնորհեց իրեն հաւատարիմ համարած անձերուն։

Հօտէյտայի կառավարիչ Նուսրէթ փաշան նոյն պաշտօնով

փոխադրել տուաւ Տէօտէադած: Իւլայի առաջին աստիճան տուաւ եօթներորդ զօրաբանակի ընդհանուր պետերուն առաջին ճիւղի անօրէն Մուսթաֆա Ֆէհմի պէյի, Մէքքէի դատաւոր անուանեց Իսհաք էֆէնտի զատէ Մէհմէտ Ճէմալէտտին էֆէնտին և Մէտինէի դատաւոր՝ Մէհմէտ Սանուլլահ էֆ.ն:

Վերջապէս նոյեմբեր 20 չորեքշաբթի օրը լուր հասաւ թէ Մահմուտէի շոգենաւ մը պատրաստուած էր և Սարայ Պըռունիի մօտ կը սպասէր պէտք եղած վայրկեանին մեկնելու համար:

Ապտիւլ Համիտի հրամանին համեմատ՝ որոշուեցաւ որ չորս կալանաւորները կէս գիշերին մօտ փոխադրուէին շոգենաւ և շոգենաւն ալ հետեւեալ առտու արշալոյսին ճամբայ ելլէ:

Օրերէ ի վեր Սալիհա հանըմ և իր երեք ընկերները առանձին սենեակներու մէջ փակուած, թէեւ լաւ կը խնամուէին բայց բոլորովին արտաքին յարաբերութիւններէ զրկուած էին: Անկարող եղեր էին դուրսէն տեղեկութիւն մը առնելու կամ խրատու հետ յարաբերութիւն ունենալու և այս վիճակը զիրենք շատ կը մտատանջէր: Սալիհա հանըմ մանաւանդ չէր կր[illegible] [illegible] հանդուրժել այս անստոյգ վիճակին: Իր կրած չարչարանքները այժմ մոռցած էր բոլորովին և կը նախընտրէր կրկին հարցաքննութեան ենթարկուիլ, քան թէ այսպէս ամէն յարաբերութենէ զրկուած մնալ: Մէկ քանի անգամ փորձած էր խօսեցնել իրեն ծառայող կերակուր բերող կի[illegible], [illegible] անկարելի եղեր էր բերնէն խօսք մը առնել: Նկուղին մէջ իր կրած հարցաքննութիւնը, տանջանքներուն յանկարծական կեցալով դադրիլը և Իզզէթ փաշայի անակնկալ մի[illegible]թիւնը զինքը չափազանց հետաքրքրած էին: Կռահած էր որ Սուլթանին ընթացքի այդ փոփոխումը ինքնաբերաբար չէր եղած, այլ արդիւնքն էր արտաքին ճնշումի մը որ միայն իրենց ընկերներուն կողմէ կարելի էր գործուիլ: Այսպէս ուրեմն իրենց ազատ մնացած ընկերները կ'աշխատէին և [illegible] կը յաջողէին ազդեցութիւն բանեցնել Ապտիւլ

*Համիտի վրայ։ Այս մտածումը կը սրտապնդէր զինքը։ Եւ սակայն օրերը կ'անցնէին ու ինք փակուած կը մնար սենեակին մէջ։*

*Գիշերը, անքուն, իր անկողնին վրայ երկնցած, այս մտածումներով կը տոգորուէր, երբ յանկարծ իր սենեակին դուռը զարկին։*

*— Ո՞վ է ան, հարցուց Սալիհա, անկողնին մէջ նստելով։*

*— Դուռը բացէ՛ք, ըսաւ դուրսէն առնական ձայն մը։*

*Թրքուհին իսկոյն անկողնէն վար ցատկեց, մոմը վառեց, շտապաւ չրջազգեստը հագաւ և եկաւ դուռը բանալու։*

*Երեք հոգի դրան առջև կը սպասէին։*

*— Ի՞նչ կայ, ի՞նչ կ'ուզէք այս ժամուս, գոչեց Սալիհա իր ձեռքի մոմը մօտեցնելով անծանօթներուն երեսին։*

*Իրենցմէ մին որ գլխաւորը ըլլալ կը թուէր, պատասխանեց.*

*— Կը ներէք, տիկին, ձեզ անհանգիստ ընելնուս համար, բայց մենք պարզապէս մեզի տրուած հրամանը կը գործադրենք....։ Հաճեցէք պատրաստուիլ մեզի հետ գալու համար։*

*— Ո՞ւր պիտի երթանք։*

*— Կայսերական հրացանակիրներու պէս Թահիր փաշան ձեզի կը սպասէ։*

*Թահիր փաշայի անունը թեթեւ սարսուռ մը տուաւ Սալիհա հանըմին, բայց [illegible].*

*— Շատ լաւ, սպասեցէ՛ք քիչ մը, որպէս զի պատրաստուիմ։*

*Եւ դուռը գոցելով, գնաց հագուելու։*

*Քառորդէ մը արդէն պատրաստ էր։*

*Երեք անձերը և Սալիհա հանըմ ճամբայ ելան։ Թրքուհին իր պաղարիւնութիւնը բոլորովին գտած էր և հաստատ քայլերով կը հետեւէր զինքը փնտռելու եկողներուն, որոնք խիստ ակնածանքով կը վարուէին իրեն հետ։*

Կարգ մը նրբանցքներէ անցնելէ ետք կանգ առին դրան մը առջև և այն որ պահ մը առաջ տիկնոջ հետ խօսած էր դուռը զարկաւ ։

— Մտէ՛ք, ըսաւ ձայն մը ներսէն ։

Եւ փոքրիկ խումբը մտաւ ելեքտրական լոյսով լուսաւորուած ընդարձակ սրահ մը, որուն մէջտեղը, Թանչապատ թիկնաթոռի մը մէջ բազմած էր Թահիր փաշա․

— Ահաւասիկ Սալիհա հանըմը բերինք, ձեր հրամանին համեմատ, ըսաւ տիկինին ընկերացող անձերէն մին ։

— Շատ լաւ, պատասխանեց փաշան․ յետոյ, խօսքը Թրքուհիին ուղղելով շարունակեց․

— Վեհափառ Սուլթանին հրամանաւ այս իրիկուն պիտի մեկնիք ։

— Ո՞ւր, հարցուց Սալիհա ։

— Տօլմա Պահչէ ու անկէց շոգեմակոյկով մը Սարայ Պուռնիի առջև գտնուող շոգենաւը ։

— Բայց ո՞ւր պիտի տանի զիս այդ շոգենաւը ։

— Չեմ գիտեր, ինծի պաշտօն յանձնուած է ձեզ մինչև շոգենաւ առաջնորդելու ։

— Իսկ իմ միւս ընկերնե՞րս ։

— Անոնց մասին լուր չունիմ ։

— Անոնք ալ չպիտի՞ ընկերանան ինծի շոգենաւուն մէջ ։

— Չեմ գիտեր ։

Յայտնի էր որ Թահիր փաշա հրահանգ ստացած էր չխօսելու․ ուստի Սալիհա հանըմ ա՛լ աւելի առաջ չտարաւ իր անօգուտ հարցուփորձը և ըսաւ․

— Լա՛ւ, պատրաստ եմ, կրնանք մեկնիլ ։

Եւ փոքրիկ խումբը կայսերական հրացանակիրներու պետին առաջնորդութեամբ ճամբայ ելաւ ։

Երլտըզի մուտքի մեծ դրան քով մէկ քանի կառքեր կը սպասէին ։ Սալիհա Թահիր փաշայի հետ այդ կառքերէն մէկը մտաւ, մինչ իրենց ընկերացող մարդոցմէ մին կառապանին քով կը բազմէր ։

— Միւս կառքերն ալ հաւանօրէն իմ ընկերներուս համար է, մտածեց Սալիհա։

Եւ այս մտածումը զինքը սրտապնդեց։ Խորհեցաւ թէ գուցէ շոգենաւին մէջ, ուր կը տանէին զինքը, պիտի կրնար անոնց հետ տեսնուիլ։ Բայց և այնպէս այս գիշերային գնացքը դէպ ի ծով՝ անհուն կասկածներ կ՚արթնցնէր մտքին մէջ, սոսկալի յիշատակներ երեւակայութեանը առջև կը ցցուէին, իր երկու զաւակներուն խեղդամահ կորնչումը կը յիշէր Մարմարայի բացերը։ Բայց բո՛ւն իսկ այդ վերյիշումը, հակառակ իր ամբողջ դաւանութեան։ կորով կը ներշնչէր ու կը սրտապնդէր զինքը։

— Ծովուն տակ պիտի երթամ զաւակներուս միանամ, կը խորհէր, անոնց կրած տագնապը, անոնց չարչարանքը պիտի կրեմ ու անոնց մահը պիտի ճաշակեմ... միթէ պէ՞տք է սոսկալ ասոր համար։

Խոր մթութիւն մը կը տիրէր դուրսը. երկինք թանձր ամպերով ծածկուած էր և առեն առեն՝ հեռուն փայլակի ցոլացումներ կ՚երեւային, իբրև մօտալուտ փոթորիկի նշանը։

Կառքը, որ արագընթաց կը սուրար, տասը վայրկեանէն հասաւ Տօլմա Պաղչէ և գնաց կանգ առաւ քարափին վրայ, որուն քով շոգեմակոյկ մը կը փչար։

— Ահաւասիկ շոգենաւը մեզի կը սպասէ, ըսաւ Թահիր փաշա կառքին դուռը բանալով, · իցի՛ւ թէ փոթորիկը չծագած կարենայինք մինչև միւս շոգենաւը փոխադրուիլ։

— Ի՞նչ վնաս ունի փոթորիկը, պատասխանեց Սալիհա հանըմ, ծովուն յատակը միշտ ջուրերը հանդարտ են։

Թահիր փաշա այս խօսքերուն չպատասխանեց, հաւանօրէն չկրնալով ըմբռնել անոնց նշանակութիւնը։

Վայրկեան մը ետքը արդէն տեղաւորուած էին շոգեմակոյկին յետնախորշը գտնուած խցիկին մէջ և սակայն նաւը ճամբայ չէր ելլեր։

— Ինչո՞ւ չենք մեկնիր, հարցուց Սալիհա։

— Ուրիշ մարդիկներու կը սպասենք, պատասխանեց փաշան։

Թրքուհիին սիրտը խայտաց այս խօսքերէն և հասկցաւ իսկոյն որ այդ ուրիշ մարդիկը իր ընկերներն էին։

Արդարև քիչ մը ետքը սկսան հետզհետէ ուրիշ երեք կառքեր գալ ու կենալ քարափին եզրը և Սալիհա իր խցիկի փոքրիկ պատուհանէն, մութին մէջ, կրցաւ ճանչնալ իր ընկերները։ Կը սպասէր որ զանոնք ալ իր գտնուած տեղը առաջնորդէին, բայց իր այս յոյսը ի դերև ելաւ։ Երեք անձերը շոգենաւակին ցռուկի կողմը տեղաւորուեցան, առանձին առանձին։ Սալիհա հանըմ տեսաւ որ բաց ի իր ընկերներէն ատոնց հետ եղող պահապաններէն ուրիշ հինգ վեց հոգի ալ մտան նաւը, որոնք հաւանօրէն պալատական պաշտօնեաներ էին։

— Ապտիւլ Համիտ կ'երևայ որ փառաւոր թաղում մը և յուղարկաւորութիւն մը պատրաստած է մեզի, խորհեցաւ ինքնիրեն։

Շոգենաւակը վերջապէս ճամբայ ելաւ և ուղղուեցաւ դէպ ի Սարայ Պուրնու։

Փայլակները հետզհետէ կը մօտենային և որոտումի խուլ ձայնը կը լսուէր հեռուէն։ Յայտնի կ'երևար որ փոթորիկը շուտով պիտի պայթէր։ Սալիհա հանըմ իր խցիկին մէջ կըծկուած, զառն մտածումներու մէջ ընկղմած էր։ Հիմա կատարելապէս համոզուած էր թէ զինք ու իր ընկերները ուղղակի մահուան կ'առաջնորդէին ու թէև մեռնելու գաղափարը զինքը կը խրտչեցնէր և սակայն հոգին կատաղութեամբ կը բորբոքէր մտածելով թէ Ապտիւլ Համիտ կրկին կը յաջողէր ջախջախել յեղափոխականները, թէ իրենք ալ պիտի երթային միանալու ուրիշ հազարաւոր զոհերու [illegible], առանց կարենալ տեսնելու բռնակալութեան կործանումը և հայրենիքի վերածնունդը։

Շոգենաւակը մութին մէջ յամրաքայլ մօտեցաւ Սարայ

Պուռնուի մօտ խարսխած մեծ չոգենաւի մը։

— Փառք Աստուծոյ անվտանգ հասանք, ըսաւ Թահիր փաշա ոտքի ելլելով ու խօսքը տիկնոջ ուղղելով։

Սալիհա չպատասխանեց և մեքենաբար ինքն ալ ոտքի ելաւ։

Երբ չոգենաւին նեղ սանդուխէն վեր մագլցելով՝ հասան կամրջակին վրայ, Սալիհա սոսկումով տեսաւ որ Նէճիպ Մէլհամէն հո՛ն կեցած էր սեւամորթ Ապու Սամաքի հետ։ Այդ երկու չարաչուք անձերը իր աչքին առջև պատկերացուցին քանի մը օր առաջ կրած չարչարանքները Երլտըզի պալատին նկուղին մէջ, և պժգանքով գլուխը անդին դարձուց։ Սակայն Նէճիպ Մէլհամէ առանց ուշադրութիւն դարձնելու տիկնոջ այդ արհամարհական վերաբերումին, ժպտուն դէմքով մը մօտեցաւ իրեն և ըսաւ.

— Բարի եկաք, Սալիհա հանըմ, օդին պատճառաւ մտատանջութեան մէջ էի, վախնալով որ գուցէ յանկարծական փոթորիկի մը կը բռնուիք....։

— Շնորհակալ եմ ձեր հոգածութենէն, պատասխանեց Թրքուհին չոր կերպով մը։

— Մեր Վեհափառ տէրը գիս յատկապէս հոս ղրկեց որպէս զի ձեր հանգստութեան համար պէտք եղածը կարգադրենք, և ձեր ճամբորդութիւնը կարելի եղածին չափ հանգիստ պայմաններու մէջ կատարէք....։

— Ձեր Վեհափառ տէրը լաւագոյն բան մը ըրած կ՚ըլլար եթէ նախ ինծի ըսէր թէ ո՛ւր կը տանին զիս, պատասխանեց Սալիհա հանըմ որ հետզհետէ աւելի կը զզուէր Նէճիպ Մէլհամի կեղծաւորական ձեւերէն։

— Ինչպէ՛ս, գոչեց Նէճիպ Մէլհամէ, միթէ չէ՛ք գիտեր թէ Երլտըզի մէջ գումարուած բարձրագոյն Ատեանը թէև ձեզ և ձեր ընկերները մահուան դատապարտեց, սակայն Վեհափառ Սուլթանը այդ վճիռը ջնջեց և զայն աքսորի փոխեց...

— Վա՜յ, ուրեմն մեզի այս շոգենաւով մեր աքսորավա՞յրը կը ղրկեն... արդեօք կրնա՞մ գիտնալ թէ ո՞ր կողմը կ'աքսորուինք:

— Վեհափառ Սուլթանը կը փափաքէր որ օդասուն տեղ մը որոշուի ուր կարենաք հանգիստ ապրիլ, օրինակի համար Հռոդոս կղզին, սակայն ափսո՜ս որ Բարձրագոյն Ատեանը իր ամբողջ ուժովը դիմադրեց մեր վեհափառ տիրոջ և ի վերջոյ որոշեց որ Եէմէն ղրկուիք, սակայն կրնաք վստահ ըլլալ որ հոն երկար չպիտի մնաք և մեր վեհափառ տէրը որոշած է քիչ ատենէն ձեզ և ձեր ընկերները Հռոդոս փոխադրել, երբ միտքերը քիչ մը հանդարտին...:

Թահիր փաշա որ քիչ մը հեռուն կեցած էր՝ մօտեցաւ երկու խօսակիցներուն:

— Կարծեմ թէ լաւագոյն է որ տիկինը իր խուցը փոխադրենք, որովհետև հիմա անձրևը պիտի սկսի տեղալ, ըսաւ:

Արդարև մէկ քանի կաթիլներ կ'իյնային արդէն:

Սալիհա հանըմ երկու փաշաներու ընկերակցութեամբ առաջնորդուեցաւ ներքնայարկի սրահը որ աղօտ կերպով լուսաւորուած էր:

Նէճիպ Մէլհամէի կեղծաւորական խօսքերը որքան որ զզուեցուցած էին, այսուհանդերձ հետաքրքրութեամբ մտիկ ըրած էր: Սուլթանին կողմէ ըսուած այդ խօսքերը, դայն չքմեղացնելու ճիգերը, իրենց մասին եղած խստութիւնները ուրիշներու վրայ բեռցնելու փորձը ցոյց կու տային թէ Ապտիւլ Համիտ տակաւին երկիւղ ունէր իրենցմէ, ինչ որ կ'ապացուցանէր թէ իրենց դուրսը մնացած ընկերները կը գործէին:

Սալիհա հակառակ Նէճիպ Մէլհամէին զգացած զզուանքին, ուզեց դայն քիչ մըն ալ խօսեցնել և դէպ ի անոր դառնալով ըսաւ.

— Միթէ իմ ընկերներս ալ միևնոյն տե՞ղը կ'աքսորուին:

— Այո՛, ամէնքդ ալ միասին պիտի երթաք մինչև

Եէմէն, իսկ Եէմէնի մէջ ձեր մասին ըլլալիք կարգադրութիւնը թողուած է տեղական իշխանութեան։

— Շոգենաւին մէջ կարելի չպիտի՞ ըլլայ որ իրարու հետ տեսնուինք։

— Շոգենաւին տէրը նաւապետն է, հետեւաբար իր կամքէն կախուած է այդ մասին հարկ եղած ու իր պատշաճ տեսած տնօրէնութիւնը ընել, մենք մեր կողմէ չենք կրնար միջամտել, քանի որ ինքն է պատասխանատուն ձեզ ողջամբ աքսորավայրը տանելու համար։

Նոյն միջոցին նոր անձ մը սենեակէն ներս մտաւ և Նէճիպ Մէլհամէի մօտենալով՝ ըսաւ.

— Ամէնքն ալ շոգենաւ բերուեցան և իրենց յատկացուած տեղերը դրուեցան, այնպէս որ այժմ կազմ ու պատրաստ ենք մեկնելու համար, միայն թէ հարկ է արշալոյսին սպասել...։

— Շատ լաւ, նաւապետ էֆէնտի, պատասխանեց պալատականը. յետոյ Սալիհա հանըմին դառնալով ըսաւ.

— Ահաւասիկ ձեզի կը ներկայացնեմ մեր Օսման նաւապետը, որ պաշտօն ունի ձեզ տանելու մինչև Եէմէն, կը յուսամ որ իրմէ գոհ պիտի մնաք։

Օսման նաւապետը խոժոռ դէմքով մը նայեցաւ Սալիհա հանըմի և ըսաւ.

— Տիկինը եթէ նաւուն օրէնքներուն հպատակի, բնականաբար ինէ դժգոհ մնալու պատճառ մը չպիտի ունենայ։

— Արդեօք կարելի չէ՞ որ իմ ընկերներուս հետ յարաբերութիւն ունենամ ճամբորդութեան միջոցին։

— Ո՛չ, պատասխանեց Օսման նաւապետը, զբօսական պտոյտ չէ մեր ըրածը, այլ դէպ ի աքսորավայր ճամբորդութիւն մը, և քանի որ ինծի պաշտօն յանձնուած է ապահով կերպով ձեզ փոխադրել, բացարձակապէս անպատշաճ կը գտնեմ այդ տեսակ թոյլտուութիւնները։

— Կը տեսնէք որ մեր նաւապետը քիչ մը խիստ է, ըսաւ Նէճիպ Մէլհամէ, խօսքը Սալիհայի ուղղելով, ես եթէ իր տեղը ըլլայի գուցէ ձեր խնդիրքը չէի մերժեր...։

— Ամէն մարդ իր գործը գիտէ, ըսաւ Օսման Նաւապետը չոր կերպով մը։

Յետոյ երկու փաշաներուն դառնալով՝ աւելցուց․

— Կարծեմ լաւ կ'ընէք եթէ անմիջապէս մեկնիք, որովհետև շատ չանցած փոթորիկը պիտի պայթի։

Կարծես Նաւապետին խօսքը հաստատելու համար նոյն րոպէին սոսկալի որոտում մը լսուեցաւ։

— Այո՛, այո՛, մեկնինք, գոչեց Թահիր փաշա, ա՛լ այստեղ գործ մը չունինք, մեր պաշտօնը լիովին կատարեցինք և մեր վեհափառ Սուլթանին հրամանները կէտ առ կէտ գործադրեցինք։

— Ուրեմն, Օսման Նաւապետ, աւելցուց Նէճիպ Մէլհամէ, վերջին անգամ ձեր խնամքին յանձնելով այս չորս կալանաւորները, կը խնդրեմ որ ամենայն զգուշութեամբ զանոնք իրենց սահմանուած տեղը տանիք։

— Այդ մասին անհոգ եղիք պատասխանեց Նաւապետը, մինչև Եէմէն ապահով կը հասցնեմ և Սատանան անգամ զանոնք չկրնար ձեռքէս փախցնել․․․։

## ՎԵՐՋ ԵՐԿՐՈՐԴ ՀԱՏՈՐԻՆ



# ԱՊՏԻՒԼ ՀԱՄԻՏ
ԵՒ
# ՇԷՐԼՕՔ ՀՈԼՄՍ

ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ՊԱՏՄԱԿԱՆ ՎԷՊ

ԳՐԵՑ

ԵՐՈՒԱՆԴ ՕՏԵԱՆ

## ԵՐՐՈՐԴ ՀԱՏՈՐ





Կ. ՊՈԼԻՍ
1912

Տպագրութիւն Թ. ՍԱԳԱԵԱՆ



# ԱՊՏԻՒԼ ՀԱՄԻՏ ԵՒ ՇԷՐԼՈՔ ՀՈԼՄՍ



## ԵՐԿՐՈՐԴ ՄԱՍ

## ԹՈՒՐՔ ՀԵՐՈՍՈՒՀԻ ՄԸ



### ԳԼՈՒԽ ԺԴ.

### ԴԷՊԻ ԱՔՍՈՐ

(ՇԱՐՈՒՆԱԿՈՒԹԻՒՆ)

*Երկու փաշաներուն մեկնելէն ետքը, Սալիհա հանըմ, նաւապետին հրամանին վրայ, առանձին խցիկ մը առաջնորդուեցաւ, ուր միայնակ թողուցին զինքը, դուռը վրայէն կըղպելէն ետքը։ Միւս երեք կալանաւորներն ալ զատ զատ խըցիկներու մէջ բանտարկուեցան, բոլորովին զրկուած արտաքին յարաբերութենէ։*

*Որոտումներուն յաջորդած էր կարկտախառն անձրև մը որ ամբողջ ժամ մը տեւեց։ Յետոյ օդը հանդարտեցաւ և երկինք պայծառացաւ։ Արշալոյսին, արևուն ծագումէն առաջ, շոգենաւը շարժիլ սկսաւ և ուղղուեցաւ դէպի Տարտանէլ։ Այնքան հին ու դանդաղաշարժ շոգենաւ մըն էր որ մութը կոխելուն հազիւ կրցաւ Չանաք-Գալէ հասնիլ և պարտա-*

ւորուեցաւ գիշերը նեցուցին բերանը միայ, հետեւեալ առտու իր ճամբան շարունակելու համար։

Սալիհա հանըմ և իր ընկերները ճամբորդութեան տեւողութեան միջոցին միշտ իրենց խցիկներուն մէջ բանտարկուած կը մնային։ Օրուան մէջ հազիւ մէկ երկու անգամ իրենց թոյլտուութիւն կ'ըլլար պահապաններու հսկողութեան տակ երթալ իրենց պէտքերը գոհացնելու։ Ի զո՛ւր քանի մը անգամ փորձեր էին այդ խստութիւնը մեղմացնել Նաւապետին դիմում ընելով։ Օսման զափտան ամէն անգամ չոր կերպով մերժեր էր իրենց խնդիրքը։

Շոգենաւը Հոդըա հասնելով տասներկու ժամի չափ մնաց հոն, թէ՛ պարենաւորուելու և թէ կարգ մը բանտարկեալներ դուրս հանելու համար։ Բանտարկեալները հակառակ իրենց մասին ցոյց տրուած խստութեան, բաւական լաւ տրամադրութեան մէջ էին։ Ծովուն մէջ խեղդամահ կորնչելու մղձաւանջը որ ինչպէս Սալիհա հանըմի՝ նոյնպէս միւս երեք ձերբակալեալներու հոգին խռոված էր, այժմ անցեր էր։ Յայտնի կ'երեւար որ Աբտիւլ Համիտ դիտաւորութիւն չունէր զիրենք ձուկերուն ճարակ ընելու և թէ անոր դիտաւորութիւնն էր զիրենք բանտել տալ իրենց աքսորավայրերուն մէջ, հաւանօրէն յամր ու անշշուկ մահուամբ մը. և ասիկա, իրենց դառն վիճակին մէջ, մխիթարական բան մըն էր։

Շոգենաւը Հոդըաէն մեկնելէն ետքը ուղղուեցաւ դէպի Աքեա, ուր նոյնպէս հայ բանտարկեալներ ունէր ցամաք հանելիք։ Հազիւ թէ քաղաքին մօտեցած էր, երբ մեքենային խանգարում մը ունեցաւ և մեծ դժուարութեամբ կրցաւ հասնիլ Աքեա, ուր ստիպուեցաւ երեք օր մնալ վերանորոգուելու համար։ Երբ որ շոգենաւը բոլորովին պարպուեցաւ բացի մեզի ծանօթ չորս կալանաւորներէն ուրիշ աքսորեալ չմնաց. Օսման Նաւապետը իր խստութիւնները մեղմացուց և թոյլ տուաւ Սալիհա հանըմին և իր ընկերներուն որ ցերեկները շոգենաւին կամրջակին վրայ մէկ քանի ժամ պտտին և նոյնիսկ իրարու հետ խօսակցին, իրենց պահապաններուն ներկայութեանը։

Այս Թոյլտուութիւնը մեծ սփոփանք մը եղաւ հէգ աքսորականներուն համար, որոնք իրենց ձերբակալումէն ի վեր իրարու երես չէին տեսած։ Արդէն երկու օրէ ի վեր այդ Թոյլտուութիւնը կը տեւէր. երբ երրորդ առտուն Նաւապետը եկաւ աքսորականներուն քով, որոնք վերնայարկը նստարանի մը վրայ բազմած կը խօսակցէին և իրենց ըսաւ.

— Հիմա անմիջապէս պէտք է որ ձեր խցիկներուն մէջ բանտարկուիք, մինչև Եէմէն հասնելնիս...։

— Բայց ինչո՞ւ համար, Օսման էֆ., կը տեսնէք թէ մեր տեսակցութենէն կամ կամրջակին վրայ գտնուելէն ոև՛է ընաս մը չի գար, ըսաւ աքսորականներէն մին։

— Մեր պատուոյն վրայ խօսք կուտանք որ երբեք փախչելու խորհուրդ չունինք, աւելցուց Սալիհա հանըմ։

— Ես ալ գիտեմ որ այդպէս է, պատասխանեց Նաւապետը, և ինչպէս տեսաք երբ հոս հասնելէ ետքը չոգենաւը պարպուեցաւ, առաջին գործս եղաւ ձեզի դէմ ձեռք առնուած խստութիւնները մեղմել, բայց դժբախտաբար այս վայրկեանիս Եըլտըզէն հեռագիր մը ստացայ որ զիս կը ստիպէ, հակառակ կամքիս, տարբեր կերպով վարուելու։ Ահաւասիկ այդ հեռագիրը դուք ալ կրնաք կարդալ.

Եւ Նաւապետը գրպանէն թուղթ մը հանելով երկարեց երեք անձերէն ամենէն տարեցին։

Հեռագիր մըն էր որ ուղղակի Եըլտըզէն կուգար և պալատի առաջին քարտուղար Թահսին փաշայի ստորագրութիւնը կը կրէր.

«Եէմէն տարուելիք չորս բանտարկեալները, կ՚ըսէր այս հեռագիրը, առանձին խցիկներու մէջ փակեցէ՛ք մինչև իրենց տեղերը հասնիլը, զանոնք բացարձակօրէն արգիլելով արտաքին յարաբերութենէ։»

— Կը տեսնէք որ հրամանը բացորոշ է, ըսաւ Օսման Նաւապետ, և չեմ կարող ուրիշ կերպ վարուիլ։

— Կատարեցէ՛ք ձեր տիրոջ հրամանը, պատասխանեց ան որ հեռագիրը կարդացած էր։

*Այսպէս ուրեմն, կարճատեւ ազատութենէ մը ետքը, չորս ընկերները կրկին ծայրայեղ խստութեան մը կ'ենթարկուէին։*

*Մեր պատմութեան ընթացքին մէջ պիտի տեսնենք թէ ի՛նչ պարագաներու տակ Ապտիւլ Համիտ պէտք տեսած էր այդ խստութեան դիմելու։*

*Նոյն իրիկունն իսկ շոգենաւը ճամբայ ելաւ Աքեայէն դէպ ի Բօրթ-Սայիտ, սակայն այնքա՜ն դանդաղ կերպով կ'ընթանար որ հազիւ երեք օր ետքը կրցաւ հասնիլ եգիպտական նաւահանգիստը եւ խարսխել Սուէզի ջրանցքին բերանը, Ֆէրտինան տը Լէսէփսի հոյակապ արձանին դէմ։*

*Հազիւ թէ շոգենաւը կանգ առած էր, Օսման նաւապետ նաւակ մը մտնելով ցամաք ելաւ։ Շոգենաւը գիշերը պիտի անցնէր ջրանցքէն, հետեւաբար բաւական ժամանակ ունէին եւ նաւապետը կ'ուզէր օգուտ քաղել քիչ մը զբօսնելու համար քաղաքին մէջ։*

*Բարափին վրայ ելլելով՝ ուղղուեցաւ ծովեզրը գտնուող գարեջրատուն մը ուր եւրոպացի աղջիկներ կը նուագէին եւ ուր հաւաքուած էին ամէն ազգէ նաւազներ։*

*Օսման քափտան առանձին սեղանի մը քով նստաւ եւ գարեջուր ապսպրեց։*

*Նոյն վայրկեանին տեղացի արաբ մը որ իրեն հետ գարեջրատուն մտած էր, մօտեցաւ.*

*— Վա՞յ, Օսման էֆէնտի, ի՞նչպէս է՞ք, բարի եկաք, ըսաւ ձեռքը նաւապետին երկարելով, արդեօք հիմա՞ հասաք, ուրկէ՞ կուգաք, Եէմէնէ՞ն թէ Պոլիսէն։*

*— Հրամմեցէ՛ք Խաւակա Թէվֆիք, պատասխանեց նաւապետը իր խօսակցին, հիմա եկանք Աքեայէն եւ այս իրիկուն ճամբայ կ'ելլենք դէպ ի Սուէզ, անկէց ալ Եէմէն երթալու համար։*

*Օսման նաւապետը շատ լաւ կը ճանչնար իրեն մօտեցող եգիպտացին որ շոգենաւուներու միջնորդ մըն էր եւ յաճախ ծառայութիւն կը մատուցանէր նաւապետին ուղեւորներ բերելով։*

Խաւակա Թէվֆիգ իսկոյն ընդունեց նաւապետին հրաւէրը և աթոռ մը առնելով տեղաւորուեցաւ անոր քով։

— Եթէ ձեր շոգենաւը Եէմէն կ՚երթայ, շատ աղէկ լուր մը ունիմ ձեզի տալիք, ըսաւ Խաւակա Թէվֆիք, գրպանէն սիկառէթի տուփը հանելով ու հատ մը հրամցնելով նաւապետին։

— Ի՞նչ է տեսնենք այդ աղէկ լուրդ։

— Շոգենաւին մէջ պարապ քամարաներ ունի՞ս։

— Եթէ ճամբորդի մասին է խօսքդ, պարապ տեղը մի յոգնիր. այս անգամ երբեք դուրսէն ճամբորդ չենք ընդունիր։

— Ինչո՞ւ համար։

— Որովհետև այդպէս հրաման եղած է մեզի.

Օսման նաւապետ իրաւցնէ Պոլիս. Պալատին կողմէ ամենախիստ հրաման ստացած էր երբեք դուրսէն ճամբորդ չընդունիլ շոգենաւին մէջ։ Այս արգելքը կրկնուած էր նաև Հռոդոսի մէջ, ուր կարգ մը ճամբորդներ մերժած էր առնել։

— Բայց, ըսաւ, Խաւակա Թէվֆիք արդեօք կարելի չէ՞ բացառութիւն մը ընել...

— Բնաւ երբեք։

— Գիտէք որ հիանալի շահ մը կար երկուքնուս համար ալ... հազուագիւտ առիթ մը որ յաճախ չպատահիր։ Երբ հեռուէն ձեզ տեսայ ուրախութենէս ինչ ընելիքս չգիտցայ. որովհետև երկու օրէ ի վեր Ճիտտէ գացող շոգենաւ մը կը փնտռեմ կոր։

— Շատ կը ցաւիմ որ չպիտի կրնանք ընել, ես ալ կը փափաքէի որ կարելի ըլլար ճամբորդներ առնել, սակայն ինչպէս ըսի, այդ մասին բացարձակ հրաման կայ... որովհետև խիստ վտանգաւոր մարդիկ կը փոխադրենք...։

Եւ Օսման նաւապետ խօսքը փոխելով շարունակեց.

— Հիանալի է այս գարեջուրը, ի՞նչ ալ պաղեցուցեր են, Պոլսոյ մէջ դժուար է սանկ պաղ գարեջուր գտնել, ի բաց առեալ Բէրայի մէջ...։

— Քանի որ այդքան հաճելի երեւցաւ ձեզի, մէյ մէկ հատ ալ խմենք։

Ու եգիպտացին սպասաւորը կանչելով՝ հրամայեց որ գաւաթները լեցնէ։ Յետոյ, կրկին դարձաւ իր նիւթին։

— Եթէ սա ուղեւորներուն մասին կարենաք բան մը ընել, շատ լաւ գործ մը պիտի ըլլայ։

— Անկարելի է, բարեկամ, գոչեց Օսման Նաւապետ, քանի մը ոսկի շահելու համար չեմ կրնար ինքզինքս վտանգել... Թո՛ղ քիչ մը սպասեն, անշուշտ ուրիշ շոգենաւ մը կը գտնուի։

— Ես ալ նոյն խորհուրդը տուի իրենց, բայց իրենք ալ կը պնդեն որ անպատճառ ստիպուած են այսօր մեկնիլ...։

— Ո՞վ են այդ ուղեւորները, հարցուց Նաւապետը իր գաւաթը պարպելով։

— Անգլիացի ընտանիք մը, երկու կիներ եւ երեք էրիկ մարդ, ընդամենը հինգ հոգի։

— Անգլիացի ընտանիք մը, ըսաւ Նաւապետը զարմացական դէմքով մը. ի՞նչ գործ ունին Ճիտտէի մէջ։

— Չեմ գիտեր, բայց կարծեմ Ճիտտէ չպիտի մնան եւ հոնկէ Ճիպութի պիտի անցնին։

— Բայց կրնան այս տեղէն ուղղակի Ճիպութի երթալ եւ շատ ալ դիւրաւ շոգենաւ կը գտնեն։

— Ես ալ նոյն խրատը տուի, սակայն կ՚երեւայ որ ստիպուած են անպատճառ Ճիտտէէն անցնելու։

— Ուրեմն թո՛ղ ուրիշ դուռ զարնեն, եզրակացուց Նաւապետը։

— Բայց գիտէք որ մարդիկը պատրաստ են նոյնիսկ մարդ գլուխ տասնըհինգ ոսկի տալ այս ճամբորդութեան համար, այսինքն՝ 75 ոսկի։

Գումարը այնքա՜ն պատկառելի էր որ Նաւապետին պահ մը աչքերը խոշոր խոշոր բացաւ, եգիպտացիին երեսը նայեցաւ մտածկոտ երեւոյթով մը, բայց յետոյ տխուր հաճոյակերպութեամբ մը պատասխանեց։

— Մե՛ղք որ կարելի չէ օգտուիլ, իրա՛ւ է որ այսպիսի առիթ յաճախ չի պատահիր:

Երկու բարեկամները վայրկեան մը լռեցին և յետոյ սկըսան ուրիշ նիւթերու վրայ խօսիլ գարեջուրի գաւաթները պարպելով:

Յանկարծ Խաւակա Թէվֆիք քարափէն անցնող մէկը նշմարելով՝ նստած տեղէն վեր ցատքեց և շտապաւ դուրս ելաւ գարեջրատունէն: Օսման Նաւապետ ակնարկովը հետեւեցաւ բարեկամին որ գնաց անցորդին քով ու անոր հետ պահ մը խօսակցելէ ետքը, երկուքը մէկէն մտան կրկին գարեջրատուն և եկան իրեն քով.

— Ահաւասիկ Ճիտտէ երթալ ուզող ուղեւորներէն մին, ըսաւ Խաւակա Թէվֆիք, նորեկը ներկայացնելով նաւապետին:

Օսման էֆէնտի քաղաքավարութեամբ ոտքի ելաւ և իր քով հրամցուց անծանօթը:

Այո՛, պատասխանեց նորեկը Փրանսերէն լեզուով, կ'ուզէինք այսօր անպատճառ մեկնիլ Ճիտտէ, բայց՝ մեր բարեկամը, Խաւակա Թէվֆիք, մեզ յայտնեց թէ ձեր շոգենաւը բնաւ ուղեւոր չպիտի առնէ:

— Դժբախտաբար այսպէս հրահանգ ստացած եմ Պոլսէն, պատասխանեց Օսման Նաւապետ նոյն լեզուով:

— Մեր մեկնումը այնքան անհրաժեշտ էր որ նոյն իսկ տրամադիր էինք նիւթական մեծամեծ զոհողութիւններ ընելու, շարունակեց Անգլիացին:

— Այո՛, մեր բարեկամը յայտնեց որ նոյն իսկ ՚մարդ-գլուխ 15 ոսկի պիտի վճարէք, պատասխանեց Նաւապետը:

— Եւ եթէ պէտք ըլլայ այդ գումարին կրկինն ալ կը վճարենք, ըսաւ միւսը:

Բայց, աւելցուց Նաւապետը, մեր բարեկամը կ'ըսէ թէ ձեր դիտաւորութիւնը Ճիպութի երթալ է. այս պարագային պէտք չունիք Ճիտտէ անցնելու, քանի որ հոս շատ դիւրաւ ուղղակի շոգենաւեր կրնաք գտնել հոն դացող և շա՛տ աւելի հանգստաւէտ, քան թէ մեր շոգենաւը:

— Խնդիրը այն է որ Խաւալա Թէվֆիքի չենք բացատրած ամէն բան, ըսաւ Անգլիացին, մենք կ'ուզենք անպատճառ Ծիտտէ երթալ, որովհետև մասնաւոր զբօսանաւ մը մեզ այնտեղ կը սպասէ...։

— Ա՛, ուրեմն ցամաք ելլելու դիտաւորութիւն չունիք։

— Բնաւ երբեք, պարզապէս մէկ շոգենաւէն միւսը պիտի փոխադրուինք։

— Վստա՞հ էք որ այդ զբօսանաւը անպատճառ պատրաստ պիտի գտնէք հոն հասած ատեննիդ։

— Այսինքն եթէ կարենանք անմիջապէս ճամբայ ելլել, շոգենաւը հոն գտնելնուս բացարձակապէս վստահ ենք, բայց եթէ հինգ վեց օր ուշանանք, հաւանաբար պիտի մեկնի առանց այլեւս մեզի սպասելու և ահա՛ ճիշդ ասոր համար է որ կ'աճապարենք մեկնելու։

Նաւապետը պահ մը լռեց և սկսաւ մտածել։

«Այս մարդիկը, կը խորհէր ինքնիրեն մինչև հարիւր յիսուն ոսկի տալու պատրաստ են հինգ հոգիի փոխադրութեան համար և կարծեմ կրնանք գաղտուկ կերպով գործը տեսնել, քանի որ Ծիտտէ ելլելու դիտաւորութիւն չունին և անմիջապէս մէկ շոգենաւէն միւսը պիտի փոխադրուին... յետոյ ինծի եղած արգելքը պարզապէս Թուրքերու մասին է, որպէս զի շոգենաւին մէջ խաղ մը չխաղան ու ուղեւորները փախցընելու փորձ չընեն, արդ այս մարդիկը Անգլիացիներ են և լուր՝ անգամ չունին թէ մեր շոգենաւին մէջ ուղեւորներ կան, հետևաբար որ և է վտանգ չի կայ, մանաւանդ որ իրենցմէ երկուքն ալ կին են եղեր։»

Անգլիացին կարծես գուշակեց Նաւապետին մտքին անցածները և յանկարծ ըսաւ.

— Հիմա որ իմացաք թէ ինչ պայմաններու մէջ պիտի կատարենք մեր ուղեւորութիւնը, գուցէ կրնանք համաձայնութեան մը գալ։

— Շիտակը ես ալ շատ կը փափաքիմ այս ծառայութիւնը

մատուցանել ձեզի, սակայն ափսո՜ս որ տրուած հրամանը շատ բացարձակ է։

— Բայց քանի որ կարելի պիտի ըլլայ մեր այս փոխադրութիւնը գրեթէ բոլորովին ծածկել և մեզ ցամաք չհանած ուրիշ շոգենաւ մը պիտի փոխադրէք, կրնաք առանց անպատեհութեան այս ծառայութիւնը մատուցանել մեզ... բաց աստի այդ արգելքը ձեր վրայ դրուած է, ինչպէս մեր բարեկամ Խուսկա Թէվֆիք ինծ բացատրեց, ձեր շոգենաւին մէջ գտնուած աքսորեալներու առթիւ, արդ, կրնաք ապահով ըլլալ որ մենք ոչ և է փորձ չպիտի ընենք անոնց հետ յարաբերութեան մտնելու կամ զանոնք փախցնելու...

Անգլիացին այս խօսքերը արտասանեց խնդալով։ Յետոյ, խօսքը երկարացնելով ըսաւ։

— Այսպէս ուրեմն, այս փոխադրութեան հաւանելով, ոչ և է կերպով անսաստած չէք ըլլար ձեզ տրուած հրամանին ոգւոյն, ոչ և է պատասխանատուութիւն չէք հրաւիրեր ձեր վրայ և միւս կողմէ հարիւր յիսուն ոսկի շահ մը կ'ընէք...։

Օսման նաւապետ վարանոտ շարժում մը ըրաւ որ ո՛չ հաւանութիւն կը նշանակէր և ո՛չ ալ մերժում, բայց Անգլիացին տեսաւ որ նախկին ընդդիմութիւնը շատ տկարացած էր։

— Վերջին նոր խօսք մը ըսեմ, շարունակեց. շեշտակի նաւապետին նայելով, երկու հարիւր ոսկի կը վճարեմ. եթէ այս փոխադրութիւնը կատարելու յանձն առնէք... կ'ընդունի՞ք, այո՛ կամ ո՞չ։

Օսման էֆ. Խուսկա Թիվֆիքի դարձաւ հարցական ակնարկով մը։

— Մարդ յիմար ըլլալու է այսպիսի առաջարկ մը մերժելու համար, ըսաւ Եգիպտացին։

Երկու հարիւր ոսկի. արդարև արհամարհելի գումար մը չէր և այսպիսի բացառիկ շահ մը յաճախ չէր ներկայանար։ Բախտ մըն էր այս որ իր ոտքովը կուգար և Եգիպտացին ըսածին պէս յիմարութիւն էր մերժելը։

— Ձեր պատասխանին կը սպասեմ, ըսաւ Անգլիացին
ոտքի ելլելով։

— Լա՛ւ, կ'ընդունիմ, պատասխանեց Նաւապետը, բայց
պայմանով մը։

— Ի՞նչ պայման։

— Մեր շոգենաւը գիշերը պիտի անցնի Ջրանցքէն, հետե-
ւաբար պէտք է որ դուք ալ գիշերը գաք, ճիշդ շոգենաւը
ճամբայ ելած միջոցին. յետոյ, ձեր կերակուրը պէտք է միա-
սին բերէք։

— Շատ լաւ, պատասխանեց Անգլիացին, ժամը քանի՞ին
ճամբայ պիտի ելլէք։

— Ժամը ճիշդ ինին.

— Ուրեմն մենք ալ շոգենաւ կուգանք ինին տաս
մնացած։

— Այո՛։

— Կ'ուզէ՞ք որ իբրև թերհաշիւ ձեզի վճարում մը ընեմ

— Շատ շնորհակալ կ'ըլլամ։

Անգլիացին գրպանէն արծաթ քսակ մը հանեց և սե
ղանին վրայ համրեց քանի անգլիական ոսկի։ Յետոյ, ըսաւ

— Հաճեցէ՛ք ընկալագիր մը տալ ինծի։

— Ամենայն սիրով, պատասխանեց Նաւապետը գրպանէ
տետրակ մը հանելով և խնդրած ընկալագիրը պատրաստելով

Անգլիացին թուղթը գրպանեց և բարեւելով մեկնեցաւ։

— Ահաւասիկ անյուսալի բախտ մը, գոչեց Խուակ
Թէվֆիք երբ Նաւապետին հետ առանձին մնաց։

Օսման էֆէնտի իր ստացած ոսկիներուն հինգը բարեկամ
տուաւ, ըսելով.

— Ահա՛ քու միջնորդչէքդ:

— Միթէ քիչ չէ՞ աս, երկու հարիւր ոսկիի համար, ըս
միւսը դժգոհ դէմքով մը:

— Մեծ պարգեւը Անգլիացիներէն պիտի առնես անշուշ
պատասխանեց Նաւապետը խնդալով։

Եգիպտացին առանց պատասխանելու դրամը գրպանե

յայտնի էր որ նաւապետին դիտողութիւնը ճիշդ էր, քանի որ Տաւակա Թէվֆիք չպնդեց իր պահանջումին վրայ։

Քանի մը գաւաթ գարեջուր եւս խմելէ ետքը, երկու բարեկամները իրենց հաշիւը մաքրեցին ու հեռացան սրճարանէն։

Մինչեւ իրիկուն Օսման նաւապետ զուարթ օր մը անցուց Տաւակա Թէվֆիքի հետ, ուտելով, խմելով, զբօսնելով։ Գիշերուան ճաշն ալ քաղաքը ընելէ ետքը, եօթուկէսին վերադարձաւ շոգենաւ, մեկնումի պատրաստութիւններուն հսկելու համար։

Ճիշդ ժամը իննին քառորդ մնացած նաւապետը իր կամրջակին վրայէն նշմարեց նաւակ մը որ շոգենաւին կը մօտենար եւ իսկոյն հրամայեց իր մարդոց որ նաւակին մէջ գտնուողներուն թոյլ տան շոգենաւ ելլելու։

Քանի մը վայրկեան վերջ երկու կին եւ երեք այրեր որոնց մին գիտենք նաւապետին հետ տեսակցող անձն էր, մտան շոգենաւ եւ նաւապետի յարկաբաժինին մէջ տեղաւորուեցան։

Կիները յոգնած եւ քիչ մը անհանգիստ ըլլալով, իրենց խուցերնին քաշուեցան, մինչ երեք այրերը դուրսը մնացին։ Այս հինգ ուղեւորները իբրեւ բեռ սնտուկ մը միայն ունէին զոր կիներու խցիկը դրին։

Նաւապետը զարմանք յայտնեց այդքան երկար ուղեւորութեան մը համար այսքան քիչ բեռ ունենալնուն, սակայն Անգլիացին բացատրեց թէ իրենց սնտուկները ուղղակի Ճիպութի ղրկած են արդէն եւ թէ հետերնին ճամբու անհրաժեշտ պիտոյքները միայն առած են։

Նաւուղիղը արդէն եկած էր գրաւելու նաւապետին տեղը եւ ելեկտրական գործիքը դրուած էր շոգենաւին ցռուկը իր լուսարձակումներով ճամբան լուսաւորելու համար։

Ժամը իննը քառորդ անցած շոգենաւը սկսաւ դանդաղօրէն շարժիլ եւ մտնել Ջրանցքին մէջ։

Մինչեւ Սուէզ նաւապետը գրեթէ գործ չունէր այլեւս եւ

Ֆրանսացի նաւուղիին պաշտօնն էր շոգենաւը անցնել Ջրանց-քէն ։

Երեք Անգլիացիները իրենց ուխսքիի շիշը դրած էին մէջ-տեղ և Նաւապետն ալ հրաւիրեցին մասնակցելու իրենց ։ Օսման էֆէնտի Թեթեւ ընդդիմութենէ մը ետքը, ընդունեց հրաւէրը և անցաւ սեղանին քով ։

— Հիմա կարգադրենք մեր հաշիւին մնացորդը, ըսաւ այն Անգլիացին որ ցերեկը տեսնուած էր Նաւապետին հետ, և ոս-կիով լի քսակ մը ներկայացուց, ըսելով.

— Հաճեցէ՛ք համրել:

— Հարկ չի կայ համրելու, պատասխանեց Նաւապետը ժպտելով ու քսակը գրպանելով ։

Յետոյ, ուխսքիի գաւաթը պարպելով, ուրախ զուարթ հեռացաւ ուղեւորներուն քովէն և գնաց կամրջակին վրայ ։

Շոգենաւը խիստ դանդաղօրէն կ'երթար, Ջրանցքը անց-նելու համար պահանջուած կանոնական դանդաղութենէն շատ աւելի կամաց ։

— Այս ընթացքով կէս գիշերին չի պիտի կրնանք Իսմա-յիլիա հասնիլ դիտել տուաւ ուղեւորներէն մին իր ընկերնե-րուն ։

— Հոգ չէ, պատասխանեց միւսը. բաւ է որ ժամը երե-քին արդէն անցած ըլլանք Իսմայիլիայէն... մեր ընկերները ապահովաբար որոշուած տեղը պիտի գտնուին ։

— Դուք հոս կեցէք, ես երթամ Նաւապետէն հասկնամ թէ շոգենաւը ժամը քանի՞ մղոն արագութեամբ կը քալէ կոր, այս կերպով կրնանք որոշ հաշիւ մը ընել և ըստ այնմ մեր ընելիքներն ալ կարգադրել, ըսաւ իրենցմէ մին ոտքի ելլելով ու դէպէ կամրջակը ուղղուելով ։

Միւս երկուքը երբ առանձին մնացին պահ մը լռութիւն պահեցին. յետոյ մին ըսաւ, խօսքը իր ընկերոջ ուղղելով.

— Զիա փաշա, պէտք է որ կարելի եղածին չափ շուտ հասկնանք թէ շոգենաւին ո՛ր կողմը փակուած են մեր ընկեր-ները և ջանանք մեր ներկայութիւնը իմացնել իրենց ։

— Իրաւունք ունիս և ես անմիջապէս այդ բանին վրայ աշխատիմ, պատասխանեց Ապտիւլ Համիտի Նախկին Թիկնապահը... Ինծի այնպէս կը թուի թէ մենք շատ հեռու ըլլալու չենք, հաւանօրէն վարի յարկի խցիկներուն մէջ կը գտնուին... սպասենք որ Մաք Լայն վերադառնայ ու ատեն ատեն գործի կը սկսինք։

Այսպէս ուրեմն, ինչպէս մեր ընթերցողները կը տեսնեն, այդ անգլիական ընտանիքի անունով շոգենաւ մտնող անձերը ուրիշ մարդիկ չէին՝ այլ ծածուկ կազմակերպութեան անդամները, որոնց միացած էր նաև մեր բարեկամը Մաք Լայն։

Հազիւ թէ Ըլտըզի պալատին մէջ բանտարկուած չորս անձերը շոգենաւ փոխադրուած էին դէպ ի Եէմէն աքսոր ղըրկուելու համար, Մաք Լայն փութացած էր երթալ գտնել Սաի պէյը և անոր հաղորդած էր սուլթանական որոշումը։

Եռանդուն Թուրք յեղափոխականը այս լուրը իմանալով՝ չափազանց ուրախացեր էր նախ, բայց յետոյ սոսկալի մտատանջութիւն մը պաշարած էր զինքը։

— Եթէ այս խեղճերը ճամբան կամ Եէմէն հասնելուն պէս, որ եւ է միջոցաւ սպաննեն, խորհած էր ինքնին և իր այս երկիւղը հաղորդած էր նաև Մաք Լայնի։

Ու յանկարծ զանոնք իրենց ճամբորդութեան միջոցին փախցնելու մտածումը ծնունդ առած էր մտքին մէջ։ Այս գաղափարը այնքան գեղեցիկ ու յանդուգն էր որ իսկոյն խանդավառեց Անգլիացին։

— Այո՛, գոչեց ինքն ալ, պէտք է անկարելին փորձէք ձեր ընկերները ազատելու համար, և եթէ պէտք ըլլայ, ես ալ կը մասնակցիմ ձեզ։

Ընծայուած այս օժանդակութիւնը յնքան թանկագին էր որ Սաի պէյ երախտագիտութեամբ Մաք Լայնի ձեռքերը բռնեց և կաթոգին կերպով սեղմեց զանոնք։

— Դուք եթէ մեզի միանաք, արդէն գործը յաջողած կրնանք նկատել, ըսաւ.

Անգլիացին Սաի պէյին քովէն բաժնուելով՝ շիտակ գնաց գտաւ Զիա փաշան որուն հաղորդեց իրենց ծրագիրը։ Թիկնապանը անմիջապէս իր հաւանութիւնը տուաւ և պատրաստակամութիւնը յայտնեց անմիջապէս գործի ձեռնարկելու։

Եւ սակայն երեք հոգի բաւական չէին այսպիսի դժուարին գործ մը ի գլուխ հանելու համար։ Հարկ էր ուրիշ օժանդակներ ալ գտնել, և յետոյ գործունէութեան ծրագիր մը հարկ էր պատրաստել։ Մաք Լայն խկոյն յղացաւ ծրագիր մը և զայն հաղորդեց իր երկու նոր ընկերներուն։ Այդ ծրագրին համեմատ, աքսորեալները չոգենաւին մէջէն փախցնելու փորձը տեղի պիտի ունենար Սուէզի ջրանցքին մէջ։ Ցանդուգն ու միանգամայն խիստ ճարտարօրէն յղացուած ծրագիր մըն էր այս։ Երեքը միասին որոշեցին անմիջապէս ճամբայ ելլել Փորթ Սաիտ երթալու համար, ուր վստահ էին թէ պիտի կրնային հասնիլ Մահսուսէի չոգենաւէն օրեր առաջ։

Քանի մը ժամուան մէջ բոլոր այս կարգադրութիւնները ընելէ ետքը, Մաք Լայն վերադարձաւ Եըլտըզի պալատը և ուզեց խկոյն Իզզէթ փաշայի ներկայանալ։

— Փաշա էֆէնտի, ըսաւ Աբտիւլ Համիտի սիրական քարտուղարին, ըսէք Ձեր Վեհափառ տիրոջ որ վաղն իսկ կը մեկնիմ Անգլիա։

— Ինչո՞ւ համար, գոչեց Իզզէթ զարմանքով։

— Որովհետև այս վայրկեանիս իսկ նամակ մը ստացայ, որով իմաց կուտան ինծի որ կինս ծանրապէս հիւանդ է եղեր և կը պահանջէ որ անմիջապէս իր քովը փութամ... այս նամակը ստանալէս ի վեր գրեթէ խելքս կորսնցուցած եմ... հիմա հեռագրեցի կնոջս որ առաջին կառախումբով ճամբայ կ'ելլեմ և եկայ մեկնումս ձեզի իմացնելու։

— Այս պարագային մեզ ուրիշ բան չմնար ընելիք եթէ ո՛չ ձեր մեկնումը դիւրացնել։

— Ուրեմն շատ շնորհակալ պիտի ըլլամ ձեր վսեմութեան եթէ իմ մնաք բարովի խօրին յարգանքներս հաղորդէք Սուլթանին և միևնոյն ատեն երախտագիտական զգացումներս ալ

յայտնէք իրեն, իմ մասիս ցոյց տուած բարեացակամութեանը համար ։

— Անմիջապէս մեր վեհափառ տիրոջ պիտի հաղորդեմ ձեր ըսածները, պատասխանեց Իզզէթ փաշա ։

Եւ արդարեւ Սուլթանին անձնական քարտուղարը իսկոյն փութաց Ապտիւլ Համիտի քով, Մաք Լայնի մեկնումը ծանուցանելու համար ։ Համիտ գրեթէ այլեւս ծառայութիւն մը չէր սպասեր ճարպիկ ու խորամանկ Անգլիացիէն. ուստի առանց դիտողութեան ընդունեց այդ մեկնումի լուրը, նոյնիսկ հրամայեց Իզզէթ փաշայի որ 500 ոսկիի նուէր մը տան Մաք Լայնի իբրեւ ճամբու ծախք և բաց աստի ադամանդակուռ ապարանջան մը ընծայեն տիկին Մաք Լայնի տրուելու համար ։

Անգլիացին Սուլթանին այս նոր առատաձեռնութիւնները թէեւ չէր ուզեր ընդունիլ, բայց և այնպէս մտածեց թէ մերժում մը կրնար կասկածներու տեղի տալ. ուստի շնորհակաթիւն յայտնելով քարտուղարին դրամն ու ապարանջանը առաւ ու մեկնեցաւ պալատէն, միտքը դնելով որ այդ 500 ոսկին գործածէ չորս աքսորականներուն ազատման ։

Հետեւեալ օրն իսկ Մաք Լայն, Զիա փաշա և ուրիշ երեք անձեր որոնք ծածուկ կազմակերպութեան կը վերաբերէին, ռումանական շոգենաւով կը մեկնէին Աղեքսանդրիա ։ Մինչ Սաի պէյը կը մնար Պոլիս իբրեւ մայրաքաղաքի քոմիթէին պետը ։

Աղեքսանդրիոյ մէջ Զիա փաշա անմիջապէս իրեն օժանդակներ գտաւ որոնց հետ դաւադիրներու խումբը հասաւ Բորթ Սայիտ, մինչդեռ աքսորականներ բերող շոգենաւը տակաւին Աքեա չէր հասած ։

Հոն, մէկ քանի օրուան մէջ, պատրաստեցին իրենց գործունէութեան ծրագիրը, որուն արդիւնքը պիտի պատմենք հիմա ։

Հիմա վերադառնանք այն շոգենաւը որուն մէջ կը գտնուին չորս աքսորեալները և անոնց օգնելու համար հոն մըտնող անձերը ։

Ջիա փաշա որ կատարեալ Անգլիացիի կերպարանք մը առած էր․ խցիկէն դուրս ելաւ և ուղղուեցաւ շոգենաւին ներքնայարկը։

— Արգիլուած է, ըսաւ նաւազ մը, երբ Ջիա փաշա փորձեց աւելի առաջ երթալ։

— Արգիլուա՞ծ, ինչո՞ւ համար, պատասխանեց նախկին թիկնապահը Թրքերէն լեզուով։

Նաւազը զարմանքով անոր երեսը նայեցաւ։ «Ինք «եասաք տըր» բառը Թուրքերէն արտասանած էր թէև, բայց ընաւ չէր կարծեր թէ Անգլիացին իրեն Թուրքերէն պիտի պատասխանէր, մանաւանդ այնքա՜ն մաքուր արտասանութեամբ։

Նախկին թիկնապահը թէև նշմարեց նաւազին զարմացումը, բայց առանց ուշադրութիւն դարձնելու շարունակեց․

— Ի՞նչ է քու անունդ։

— Մուսթաֆա պատասխանեց միւսը։

— Լաւ ուրեմն Մուսթաֆա աղա, ըսաւ Ջիա հաստատ շեշտով մը․ պէտք է հիմա ինծի յայտնես թէ ո՛ւր կը գտնուին չորս աքսորեալները որոնք Օսման նաւապետին յանձնուած էին Եէմէն տարուելու համար։

— Ի՞նչ իրաւունքով այդ հարցումը կ՚ընէք ինծի, շուտով տեղերնիդ դարձէ՛ք, եթէ ո՛չ բռնի կը հեռացնեմ ձեզի։

— Եթէ իրաւունք չունենայի այդ հարցումը ընելու, հոս քու քովդ չէի գար, պատասխանեց Ջիա այնպիսի կորովի շեշտով մը որ նաւազը վարանում մը զգաց։

— Բայց ո՞վ էք դուք, գոչեց նախկին թիկնապահին երեսը նայելով։

— Քանի որ կը յամառիս ինծի հնազանդելու, ուրեմն ըսեմ քեզի թէ ո՛վ եմ ես, շարունակեց Ջիա... ես պալատական թիկնապահ մըն եմ որ պաշտօն ունիմ ծածկաբար հսկելու Օսման նաւապետին վրայ և տեսնելու թէ իրեն տրուած հրամանները կէտ առ կէտ կը գործադրուի՞ն, և թէ պէտք եղած հսկողութիւնը կ՚ըլլա՞յ աքսորեալներուն վրայ... հիմա հասկցա՛ր իմ ո՛վ ըլլալս։

Այս խօսքերը այնքա՛ն անձնավստահ ձայնով մը ըսուած էին և այնքա՛ն մաքուր Թուրքերէնով մը որ նաւազը ափ ի բերան մնաց և չկրցաւ անմիջապէս պատասխան մը գտնել. Նախկին Թիկնապահը օգուտ քաղելով իր խօսակցին այս շփոթութենէն՝ խօսքը առաջ տարաւ և ըսաւ.

— Մուսթաֆա աղա, մեծամեծ կասկածներ կը ծանրանան Օսման նաւապետի վրան և ասոր համար ահա՛ պէտք տեսնուած է որ գաղտնապէս խիստ հսկողութիւն մը ի գործ դնենք... և եթէ մեր կասկածները ստուգուին, այն ատեն Օսման նաւապետը և իրեն օժանդակողները իրենց ամենախիստ պատիժը պիտի կրեն, կը հասկնա՞ս։

— Բայց, էֆէնտի, ես պարզ նաւազ մըն եմ, ես այս տեսակ գործերու չեմ խառնուիր և միայն ինծի տրուած հրամանը կը գործադրեմ, պատասխանեց Մուսթաֆա դող ելած։

— Ես ալ քենէ ուրիշ բան չեմ պահանջեր եթէ ո՛չ քեզի տրուած հրամանը կէտ առ կէտ կատարես... բայց ո՛չ թէ Օսման նաւապետին հրամանը՝ այլ մեր տալիք հրամանները.. այն ատեն ո՛չ թէ միայն սպառնացող պատիժէն կ'ազատիս այլ նոյն իսկ վարձատրութիւն ալ կը գտնես...։

— Բայց ինչպէ՞ս գիտնամ որ դուք ձեր ըսածին պէս պալատական պաշտօնեայ մըն էք...

— Ասիկա քիչ ետքը աչքովդ պիտի տեսնես և համոզուիս, երբոր Սուէզ հասնինք և հո՛ն նաւապետը ձերբակալել տանք տեղական իշխանութեան, մեր ձեռքը գտնուած իշխանութեան ոյժովը.

Այս օդային խօսքերը զորս նախկին Թիկնապահը անդրդուելի պաղարիւնութեամբ և խրոխտութեամբ մը կ'արտասանէր, մեծապէս ազդեցին խե՛ղճ նաւազին վրայ որ իրապէս սկսաւ վախ զգալ։

— Ինծի նայէ՛ աղաս, շարունակեց Զիա փաշա ձայնը մեղմացնելով, քեզի անկեղծօրէն կ'ըսեմ որ այս միջոցիս, եթէ տակաւին յամառիս, քու կացութիւնդ ալ նաւապետինին չափ

վտանգաւոր կը դառնայ. իսկ եթէ հաւանիս մեր հրամաններուն ինքնաբերաբար հնազանդելու, այն ատեն ընդհակառակը մեծամեծ շնորհներու կրնաս արժանանալ...։

Նաւազը, գլխիկոր՝ այս խօսքերը մտիկ ըրաւ, առանց բառ մը արտասանելու։

— Մի՛ կարծեր որ, շարունակեց Նախկին Թիկնապահը, անպատճառ քու ծառայութեանդ պէտք ունինք և ասոր համար կը ջանամ քեզ համոզելու, կրնաս ապահով ըլլալ որ արդէն Սուէզ հասնելուս պէս, այս նաւուն հրամանատարը պիտի փոխուի, ինչպէս նաև բոլոր անոնք որ մեր հրամաններուն չեն ուզած հպատակիլ. իմ նպատակս է միայն քեզի օգտակար ըլլալ և ջանալ որ, եթէ կարելի է, անմեղ տեղը չվնասուիս քու նաւապետիդ գործած արարքներէն, այլ ընդհակառակը օգուտ քաղես ներկայ դէպքերէն ու ապագադ ապահովես...։

— Բայց, էֆէնտի, ի՞նչ կը պահանջէք որ ընեմ...

— Ոչինչ, կամ մանաւանդ շատ չնչին բան մը պատասխանեց Զիա փաշա, ձայնը զգալապէս մեղմացնելով։

Յետոյ, գրպանէն հինգ ոսկի հանելով Նաւազին տուաւ և ըսաւ.

— Կը տեսնեմ որ դուն խելացի ու խօսք հասկցող մարդ մըն ես, կ'ուզեմ որ այս դրամը ընդունիս իբրև իմ կողմէս նուէր մը։

Մուսթաֆա ոսկիներուն տեսքէն շլացաւ. երբեք այդքան գումար մէկ անգամէն իր գրպանը չէր մտած։ Ամբողջ հարստութիւնն մն էր որ յանկարծ երկինքէն կ'իյնար։

— Էֆէնտի, Աստուած երկար կեանք տայ ձեզի, շատ շնորհակալ եմ կմկմաց յուզուած շեշտով մը։

— Ասիկա դեռ բան մը չէ, ըսաւ Նախկին Թիկնապահը. եթէ մեր հրամաններուն համեմատ վարուիս, խոհեմութեամբ շարժիս և մեր յանձն առած պաշտօնը դիւրացնես, կրնաս ապահով ըլլալ թէ ասկէ շատ աւելի մեծ նուէրներ պիտի

ստանաս և միանգամայն քու մեծերուդ գնահատութեան պիտի արժանանաս...

Նաւազը այս վերջին յայտարարութիւններէն ա՛լ աւելի ոգեւորուած, պատասխանեց։

— Պատրաստ եմ ձեր բոլոր հրամաններուն հնազանդելու, միայն թէ ապահովցուցէք զիս որ գլխուս փորձանք մը չպիտի պատահի և իրաւցնէ դուք յանուն մեր վեհափառ Սուլթանին կը գործէք և պաշտօն ունիք հսկելու մեր նաւապետին վրայ։

— Աստոր ապացոյցը, ինչպէս ըսի, քիչ մը ետքը պիտի տեսնես, երբոր շոգենաւը Սուէզ հասնի, առ այժմ քեզի ուրիշ ապացոյց չեմ կրնար տալ...։

Յետոյ, պահ մը խորհելէ ետքը, աւելցուց.

— Կարդալ գիտե՞ս։

— Ո՛չ, պատասխանեց Նաւազը։

— Մե՛ղք ուրեմն, շարունակեց Զիա փաշան որովհետեւ եթէ կարդալ գիտնայիր կրնայի քեզի պաշտօնաթուղթեր ցոյց տալ որոնք մեր ո՛վ ըլլալը կը յայտնեն, բայց քանի որ կարդալ չես գիտեր, ինչպէս կ՚ուզես որ քեզի ապացոյցներ տամ։

Այս անպատկառ սուտը զոր յեղափոխականը ամենայն պաղարիւնով մէջտեղ նետեց՝ կատարելապէս յաջողեցաւ։ Մուսթաֆա խոնարհ կերպարանքով մը մրմռաց.

Այո՛, իրաւունք ունիք, այդ պաշտօնաթուղթերը չեմ կրնար կարդալ... բայց ձեր խօսքերը բաւական են, հիմա կատարելապէս համոզուեցայ որ դուք պաշտօնական հանգամանք ունիք։

— Ուրեմն այս վայրկեանէս քեզ մեր քով պաշտօնի կը կոչեմ և կը յուսամ որ մեզի գոհ կը թողուս և մեր շնորհներուն կ՚արժանանաս, ըսաւ Զիա փաշա իշխանաբար։

Միւսը այս խօսքերը ընդունեց խորին ակնածական բարեւով մը։

Հիմա ցոյց տո՛ւր Նայիմ այն խցիկները որոնց մէջ դրուած են մեր սիրեցեալ Սուլթանին և պետութեան դէմ դաւաճանող անիծեալ անձերը։

— Էֆէնտի, հաճեցէք ինծի ընկերանալ որպէս զի ձեզի առաջնորդեմ։

Երկուքը մէկէն նեղ անցքէ մը անցան և քիչ մը ետքը կանգ առին դրան մը առջև։

— Այս խցիկին մէջ կը գտնուի հանըմը, որ միւս երեք անձերուն հետ շոգենաւ բերուեցաւ, ըսաւ նաւազը ձայնը ցածցնելով։

— Բա՛ց տեսնեմ դուռը. հրամայեց Զիա փաշա։

— Ի՞նչ կ'ըսէք, անկարելի է, մրմնջեց Մուսթաֆա շփոթած։

— Ինչո՞ւ համար։

— Որովհետև բանալին նաւապետին քով պահուած է։

— Բայց եթէ դուրս ելլելու պէտք ունենան...։

— Դուրս ելլելու պէտք չունին, միայն օրը անգամ մը նաւապետին հսկողութեամբ դուռները կը բանանք և խցիկները կը մաքրենք և իրենց կերակուրները կը բաժնենք։

— Բայց միթէ դուռները բաւական հաստատ կերպով գոցուա՞ծ են։

— Այդ մասին կրնաք վստահ ըլլալ, բաց ասկէ, եթէ դուռը խորտակել ուզեն, ո՞ւր պիտի փախչին...։

— Ինչ որ է, կարծեմ պէտք եղածին չափ զգուշութիւն ձեռք չէ առնուած այս չարագործներուն դէմ, ըսաւ նախկին թիկնապահը դժգոհ դէմքով մը։

— Մենք պարզապէս նաւապետին հրամանները կը գործադրենք, անկէ դուրս բան մը չենք խառնուիր, պատասխանեց Մուսթաֆա ինքնարդարանցումի երևոյթով մը։

— Բնական է որ բուն պատասխանատուն անիկա է, ըսաւ թիկնապահը։

Յետոյ, նոյն հրամայողական շեշտովը աւելցուց.

— Հիմա ցոյց տուր տեսնեմ միւս խցիկները։

Նրբանցքին մէջ տասը քայլի չափ յառաջանալէ ետքը, նաւազը կանգ առաւ և ըսաւ։

— Ահաւասիկ իրենցմէ մէկը այս խուցը կը գտնուի։

— Թիւ 16 խուցը, ըսաւ ինքնիրեն Ջիա։

— Շարունակենք մեր ճամբան։

— Միւս երկուքը ձախ կողմն են, դիտել տուաւ նաւազը հետեւաբար, պէտք է ետ դառնանք ու սրահէն անցնինք։

Քանի մը վայրկեան ետքը Ջիա փաշա ամբողջ խցիկներն ալ տեսած և իրենց գտնուած տեղերը մտքին մէջ տպաւորած էր։

— Ուրիշ հրաման մը ունի՞ք, հարցուց Մուսթաֆա, երբ այս գործողութիւնը լմնցաւ։

— Առ այժմ ո՛չ, միայն կ'ուզեմ որ մեր խօսակցութեան և ըրածներուն մասին ո՛չ ոքի խօսք մը ընես, մինչև որ Սուէզ հասնինք, ուր ամէն բան պիտի յայտնուի։

— Գլխուս վրայ։

Ջիա փաշա բաժնուեցաւ իր նոր դաւակցին քովէն և ուղղուեցաւ վերնայարկի սրահը ուր կը գտնուէին իր երկու ընկերները։ Օսման նաւապետ կրկին եկած միացած էր և ուիսքիի նոր գաւաթ մը պարպելու վրայ էր։

— Հազիւ կէս գիշերին պիտի կրնանք հասնիլ Իսմայիլիա կը յայտարարէր Օսման, պատասխանելով իր խօսակիցներէն մէկուն հարցումին։

— Շոգենաւը կանգ պիտի առնէ՞ հոն։

— Բնաւ երբեք։

— Ձեր աքսորեալները միթէ խցիկէն դուրս բնաւ չե՞ն ելլեր, հարցուց յանկարծ նախկին Թիկնապահը։

— Մինչև Աքեա զիրենք բաւական ազատ թողած էի, բացատրեց նաւապետը, բայց նոր հեռագրով նոր հրահանգներ ստացայ պալատէն որոնք խստիւ կը պատուիրէին զանոնք ամէն յարաբերութենէ արգիլել, հետեւաբար պարտաւորեցայ զատ զատ խցիկներու մէջ փակել։

— Ուրեմն շատ վտանգաւոր անձեր են ասոնք։

— Այո՛, կ'երեւայ թէ ուղղակի Սուլթանին անձին դէմ կը դաւաճանեն եղեր։

— Արդեօք ցկեա՞նս աքսորի դատապարտուած են։

— Որոշապէս չեմ գիտեր, բայց անշուշտ այդպէս ըլլալու է, պատասխանեց Նաւապետը որ շատ դժգոհ էր այս խօսակցութենէն։

Եւ սակայն Զիա փաշա, հակառակ Նաւապետին չկամութեան, ուզեց խօսակցութիւնը առաջ տանիլ նոյն նիւթին վրայ։

— Քիչ մը առաջ, ըսաւ, ուզեցի վար իջնել և շրջան մը ընել շոգենաւին ներքնայարկը և ահա նաւազ մը որ հոն կեցած էր, զիս արգիլեց Թրքերէն խօսքեր մը ընելով որոնցմէ միայն «եասաք» բառը հասկցայ... կ'երեւայ որ աքսորեալները այդ տեղ կը գտնուին։

— Այո՛, զատ զատ խուցերու մէջ դրած են... բայց ինչո՞ւ այդքան կը հետաքրքրուիք իրենցմով։

— Որովհետև պիտի փորձեմ զիրենք փախցնել, պատասխանեց Զիա փաշա։

Օսման Նաւապետ և միւսներն ալ սկսան խնդալ։

— Ինչո՞ւ կը ծիծաղիք, շարունակեց նախկին Թիկնապահը լրջօրէն, այո՛, կ'ուզեմ փախցնել ո՛չ թէ զիրենք ազատելու համար, այլ շահադիտական նպատակով։

— Ինչպէ՞ս, հարցուց Մաք Լայլ։

— Բայց շա՛տ պարզ կերպով, զանոնք ազատելէ ետքը, քանի որ այդքան կարեւոր դաւադիրներ են, կը ծախեմ Ապտիւլ Համիտի և վստահ եմ որ Սուլթանը իր ծանօթ առատաձեռնութեամբ ամէն մէկուն համար տասնական հազար ոսկի կը վճարէ։

– Շիտակը հանճարեղ գաղափար մըն է այդ և ես ալ կը մասնակցիմ այս գործողութեան, գոչեց Մաք Լայն խնդալով։

Յետոյ, դառնալով իրենց միւս ընկերոջ, որ լուռ կեցած էր, աւելցուց.

— Իսկ դուք պարոն Ճէյմս, չէ՞ք ուզեր ընկերանալ մեզ։

— Ինչո՞ւ չէ, պայմանաւ որ մեր Նաւապետն ալ շահա-

կից ընենք մեր ստանալիք դրամին. պատասխանեց այն որուն Մաք Լայն Ճէյմս անունը տուած էր։

— Բնական է, գոչեց Զիա փաշա, մեր ստանալիք գումարին մէկ քառորդը իրենն է, միայն թէ հարկ է որ ինքն մեզի աջակցի։

Նաւապետը բոլորովին նեղուած կերպարանք մը ունէր և բնաւ խօսք մը չէր արտասաներ։

— Ըսէ՛ք տեսնենք, կ'ընդունի՞ք մեր առաջարկը, պնդեց Զիա փաշա, խօսքը Օսման էֆէնտիին ուղղելով։

Այս անգամ խեղճ մարդը ստիպուեցաւ ուղղակի պատասխանելու.

— Դուք եթէ իմ տեղս ըլլաք, ի՞նչ կ'ընէք. ըսաւ։

— Առանց վարանելու կ'ընդունիմ, պատասխանեց Զիա։

— Իսկ ես, առանց վարանելու կը մերժեմ, պատասխանեց Նաւապետը, ոտքի ելլելով ու պատրաստուելով դուրս երթալու։

— Ձեզի ժամ մը ատեն կուտանք վերջնական որոշումնիդ տալու համար, ըսաւ Զիա փաշա միշտ ծիծաղելով, եթէ ձեր պատասխանը մերժողական ըլլայ՝ այն ատեն մենք առանձին կը գործենք։

Օսման Նաւապետ առանց պատասխանելու դուրս ելաւ։ Երեք ընկերները սկսան խորհրդակցիլ։ Ժամը արդէն տասներմէկը անցած էր և հեռուէն Իսմայիլեայի ելեկտրական լոյսերը կ'երեւային Ջրանցքին երկայնքը։ Զիա փաշա մանրամասնօրէն պատմեց իր քննութիւններուն արդիւնքը։

— Գիտէք որ շատ ժամանակ չունինք կորսնցնելու, ըսաւ Մաք Լայն խօսք առնելով, մինչեւ երեք ժամ ամեն բան կատարուած պէտք է ըլլայ. ուստի անմիջապէս գործի սկսինք. Նախ հարկ է որ մեր ներկայութիւնը և ծրագիրը հաղորդենք աքսորեալներուն...

— Բայց դժբախտաբար իրենց խցիկներուն դուները կղպուած են և բանալիները ալ, ինչպէս ըսի, նաւապետին քով կը գտնուին։

— Շոգենաւի խցիկի մը դուռը խորտակել բան մը չէ, վճռեց Մաք Լայն, և քանի որ պահապան նաւազը մեր տրամադրութեան ներքև է, գործը շատ կը դիւրանայ։

— Ամէն պարագային՝ գործելու ժամանակը հասաւ, վրճռեց Ջիա փաշա ժամացոյցը նայելով, ես կ'երթամ կոր մեր երկու ընկերները կանչելու։

— Թիկնապահը սրահէն դուրս ելաւ և վայրկեան մը ետքը վերադարձաւ երկու երիտասարդներու հետ։ Այս երկու երիտասարդները պարզապէս այն անձերն էին որոնք իբրև կին ծպտուած մտեր էին շոգենաւ միւս երեքին հետ։

— Հիմա հետևեցէք ինծի, ըսաւ նախկին Թիկնապահը և յառաջացաւ դէպ ի այն սանդուխը որ ներքնայարկը կ'առաջնորդէր։ Միւս չորսը իր ետևէն գացին։

Վարը, միևնոյն տեղը և միևնոյն դիրքին մէջ կեցած էր Մուսթաֆա. երբ յանկարծ տեսաւ այդ հինգ անձերը, չփոթեցաւ և զարմանքով Ջիա փաշայի երեսը նայեցաւ.

— Ձայն մի՛ հաներ, հրամայեց Ջիա, մեր ընկերներն են որոնք կ'ուզեն աքսորեալներու խցիկները քննել, դուն հոս սպասէ՛ և թոյլ մի՛ տար որ մարդ վար իջնէ:

— Ես իր քով կը մնամ, որպէս զի լաւագոյն կերպով կատարենք պահպանութիւնը ըսաւ իբրև կին ծպտուած երիտասարդներէն մին. սանդուխին գլուխը կենալով ու միևնոյն ատեն գրպանէն հանելով ըէվոլվէր մը։

Բոլոր այս փոխանակուած խօսքերը և գործողութիւնները անհնարին տագնապներու մատնեցին նաւազը, որ սակայն չհամարձակեցաւ ձայն հանել և եղած տեղը մնաց։

Ջիա փաշա իր ընկերներով շիտակ գնաց այն խցիկը որ փակուած էր Սալիհա հանըմ և դուռը զարկաւ քանի մը անգամ։

— Ո՞վ է այն, հարցուց տիկնոջ ձայնը ներսէն։

— Ես Ջիան և միւս ընկերներդ, ձեզ ազատելու եկած ենք, ըսաւ Թիկնապահը բերանը դրան կղպանքին կպցնելով։

Ներսէն զարմացական ճիչ մը պատասխանեց այս խօսքերուն ։

— Պատրաստուեցէ՛ք որպէս զի վայրկեանը հասնելուն պէս կարենանք մեկնիլ, շարունակեց Զիա փաշա ։

— Բայց խցիկիս դուռը կղպուած է, առարկեց Սալիհա հանըմ ։

— Հոգ մի՛ ընէ՛ք, եթէ պէտք ըլլայ մենք դուռը կը խորտակենք, պատասխանեց միւսը ։

Յետոյ չորսը մէկէն ուղղուեցան դէպ ի միւս խցիկները և իրենց բանտարկուած ընկերներուն նոյն պատուէրը տուին։ Խե՜ղճ աքսորականները այս անակնկալ օգնութենէն այնքա՜ն սիրտ առին որ վայրկեանի մը մոռցան իրենց քաշած բոլոր տառապանքները ։

Խումբը վերադարձաւ սանդուխին գլուխը, ուր Նաւազն ու իրենց ընկերներէն մին կը սպասէին ։

Զիա փաշա իբրև կին ծպտուած երկրորդ երիտասարդին դառնալով ըսաւ․

— Դուն ալ հոս կեցիր և Մուսթաֆա աղային հետ հսկեցէ՛ք որպէս զի մեր կարգադրութիւններուն հակառակ բան մը չպատահի ։

Ապա ֆրանսերէն լեզուով աւելցուց․

— Ուշադրութիւն ըրէ՛ք Նաւազին վրայ և բնաւ թոյլ մի տաք որ ձեր քովէն վայրկեան մը հեռանայ ։

Երբ Զիա փաշա, Մաք Լայն և Ճէյմս սրահ վերադարձան, տեսան որ շոգենաւը Իսմայիլեայի առջևէն կ՚անցնէր ։

Տենդայոյզ վիճակ մը ունէին երեքն ալ ։ Քանի իրենց յանդուգն գործողութեան կատարման վայրկեանը կը մօտենար, այնքա՜ն իրենց յուզումն ալ կ՚աւելնար ։

— Եթէ չկրնա՛նք յաջողիլ, ըսաւ Զիա փաշա ամէնուս վիճակն ալ սոսկալի պիտի ըլլայ ։

— Ինքզինքնիս սպաննելէ զատ ուրիշ ընելիք չմնար մեզի, աւելցուց Ճէյմս ։

— Զյուսահատինք, բարեկամներ, խրատեց Մաք Լայն, մինչեւ հիմա գործը յաջող գնաց եւ պատճառ մը չունինք ենթադրելու որ ասկէ ետքը անյաջողութեան պիտի մատնուի։

— Նաւապետը կարելի չպիտի ըլլայ մեր կողմը շահիլ։

— Այն ատեն միջոցներ ձեռք առնենք որ գոնէ մեզի արգելք չկրնայ յարուցանել։

— Ինչպէ՞ս․․․։

— Ատիկա ինծի թողուցէ՛ք, պատասխանեց Մաք Լայն վճռաբար։

Անգլիացին այնքան մեծ համբաւ մը կը վայելէր իր ընկերներուն քով, իր հնարամտութեան վրայ այնքա՜ն խորին համոզում ունէին որ այս յայտարարութիւնը զիրենք սըրտապնդեց։

— Քանի որ յանձն կ'առնէք Նաւապետը չէզոքացնել կամ անկարողութեան մատնել, ամէն բան կը դիւրանայ, ըսաւ Զիա փաշա։

Նոյն միջոցին սրահին դուռը բացուեցաւ եւ Նաւապետը երեւցաւ․

— Կէս գիշերը անցած է եւ տակաւին քնանալու տրամադրութիւն չունի՞ք, ըսաւ խօսքը օտարականներուն ուղղելով։

— Ոչ, պատասխանեց Մաք Լայն Ջրանցքին մէջ ուղեւորութիւնը այնքա՜ն չահեկան է որ կ'ուզենք արթուն մնալ մինչեւ Սուէզ։

— Բայց հազիւ արշալոյսին կը հասնինք Սուէզ։

— Արդէն ժամը չորսին կը լուսնայ, հետեւաբար երկար չպիտի սպասենք։

— Ինչպէս որ կ'ուզէք այնպէս ըրէ՛ք, ես պիտի երթամ քիչ մը քնանալու, պատասխանեց Նաւապետը։

— Ուրեմն գիշեր բարի:

Օսման Նաւապետ բարեւելով դուրս ելաւ։

Մաք Լայն իր ծխափողը վառեց եւ սկսաւ ծխել խորին մտածումի մը մէջ թաղուած։ Իր ընկերները լուռ մնացին.

գիտէին որ Անգլիացին կարեւոր բռնի մը վրայ կը մնացէր և չէին ուզեր անոր արգելք ըլլալ՝

Գրեթէ կէս ժամ այսպէս նստարանին վրայ ընկողմանած՝ գաղտնի ոստիկանը իր ծխափողը քաշեց ու ծուխը դէպի ձեղուն փչեց, աչքովը հետեւելով անոր ելեւէջներուն։

Ի վերջոյ, Զիա փաշա մտատանջ երեւոյթով մը ժամացոյցը նայեցաւ և ըսաւ.

— Գիտէ՞ք որ ժամը մէկին կը մօտենայ...։

—Մէկ, գոչեց Մաք Լայն ոտքի ցատքելով, ուրեմն գործելու ժամը հասած է...

Ցետոյ իր երկու ընկերներուն դառնալով աւելցուց.

— Դուք հոս սպասեցէ՛ք, ես հիմա կը վերադառնամ. և սրահէն դուրս ելաւ։

— Ո՞ւր կերթայ արդեօք, ըսաւ Զիա իր ընկերոջ։

— Անշուշտ իր մտքին մէջ ծրագրածը գործադրելու պատասխանեց միւսը։

Քառորդ մը ետքը Անգլիացին վերադարձաւ զուարթ կերպարանքով մը։

— Երթա՛նք մեր ընկերները հանենք իրենց խցիկներէն ըսաւ։

— Դոնէ խցիկներու դռները խորտակելու համար երկաթի կտոր մը գտնէինք, դիտել տուաւ Թիկնապահը։

— Պէտք չի կայ այդ տեսակ միջոցներու դիմելու, պատասխանեց Մաք Լայն, ահաւասիկ խցիկներու բանալիները։

Եւ գրպանէն հանեց չորս փոքրիկ բանալիներու տրցակ մը։

— Ուրեմն յաջողեցա՞ք Օսման Նաւապետը մեր կողմը շահելու։

— Այդ բանը չփորձեցի, միայն յաջողեցայ բանալիները գտնել և առնել։

— Բայց եթէ արթննայ և արգելք յարուցանէ մեզի դէմ և կամ նոյն իսկ իր մարդոցը ձեռքով մեզ բռնել տայ...։

— Այդ մասին վախ չի կայ, Օսման Նաւապետ պէտք

եղածին չափ պիտի քնանայ մինչև որ մեր գործը աւարտենք։ Բայց պարապ խօսքերով ժամավաճառ չըլլանք և գործին նայինք:

Վայրկեան մը ետքը երեքը միասին իջան ներքնայարկը ուր սանդուխին գլուխը կեցած էին Մուսթաֆա և երկու երիտասարդները։

— Մուսթաֆա աղա, ըսաւ Զիա փաշա իր հրամայողական չեչտովը, Օսման Նաւապետ խցիկներուն բանալին մեզի յանձնեց, ուստի պիտի երթանք աքսորեալներուն քով մեր քննութիւնները կատարելու։

— Ո՞ւր են բանալիները, հարցուց Նաւազը թերահաւատ դէմքով մը։

— Մեր բարեկամին քով։

Եւ Մաք Լայնի դառնալով ֆրանսերէն լեզուով հարցուց.

— Հաճեցէք բանալիները ինծի տալու։

Անգլիացին իր գրպանէն հանեց տրցակը։

Նաւազը որ անցած դարձածէն տեղեկութիւն չունէր և կ'ենթադրէր թէ նաւապետը իր ձեռքով յանձնած էր բանալիները, այլենս ոեւէ տարակոյս չունեցաւ այս մարդոց պաշտօնական հանգամանքին վրայ և ամենայն խոնարհութեամբ պատասխանեց,

— Պատրաստ եմ ձեր հրամաններուն։

— Հիմա համոզուեցա՞ր որ մենք խաբեբաներ չենք, ըսաւ Զիա թեթև ժպիտով մը։

— Էֆէնտի, երբեք ձեր խօսքերուն վրայ կասկած չունեցայ, միայն թէ...

Զիա փաշա թոյլ չտուաւ որ խեղճ մարդը իր խօսքը աւարտէր և ըսաւ.

— Վնաս չունի, վնաս չունի, հիմա ամէն բան կարգադրուեցաւ և ասկէ ետքը եթէ մեզի հաւատարմաբար ծառայես, ինչպէս ըսի, կրնաս յուսալ որ լաւ կերպով պիտի վարձատրուիս։

— Աստուած մեր Թագաւորին և ձեզի երկար կեանք պարգևէ, պատասխանեց նաւազը խոնարհաբար բարևելով։

— Դուն հոս, սանդուխին գլուխը սպասէ, շարունակեց Թիկնապահը և թող մի՛ տար ոչ ոքի որ վար իջնէ, մինչև որ մենք վերադառնանք։

— Շատ լաւ էֆէնտի, բայց արդէն այս յարկաբաժինը ոչ ոք կրնայ գալ. Նաւապետը բացարձակապէս արգիլած է։ Միայն ինծի արտօնութիւն տրուած է հոս մնալու, որպէսզի պապանութիւն ընեմ։

— Լաւ ուրեմն շարունակէ՛ քու պահպանութիւնդ և նոյն իսկ եթէ Նաւապետն ալ վար իջնել ուզէ՝ թող մի՛ տար, հասկցա՞ր։

— Անհոգ եղի՛ք, էֆէնտի, հիմա որ գիտեմ ձեր ո՛վ ըլլալը, ո՛չ նաւապետ մտիկ կ՚ընեմ և ո՛չ ուրիշ մարդ։

Հինգ դաւադիրները նաւազը հոն ձգելէ ետքը եկան ու կանգ առին Սալիհա հանըմի խցիկին առջև։ Ջիա փաշա դողահար ձեռքով մը սկսաւ փորձել ձեռքը գտնուած բանալիները և վերջապէս յաջողեցաւ անոնցմէ մէկով խցիկին դուռը բանալ։

Սալիհա որ անկողնին վրայ նստած կը սպասէր, իր ընկերը նշմարելուն պէս ուրախութեամբ վեր ցատքեց և դէպի ան որ յառաջացաւ։

— Ամենքս ալ վստահ էինք որ մեզի գաղանին ճանկերուն մէջ չպիտի ձգէիք, գոչեց. բայց չէինք յուսար որ պիտի կրնայինք այսչափ շուտով օգնութեան հասնիլ մեզի։

— Ձեր ձերբակալման առաջին վայրկեանէն մեր միակ գործն ու նպատակը եղաւ ժամ առաջ ձեզ փրկել Համիտի ձեռքէն, պատասխանեց Ջիա փաշա։

Յետոյ, միւս ընկերներն ալ մօտեցան Սալիհա հանըմի և քանի մը վայրկեան ցած ձայնով խօսակցեցան, փոխադարձաբար իրարու լուրեր հաղորդելով։ Այս տեսակցութիւնը անշուշտ շատ պիտի երկարէր եթէ Մաք Լայն չմիջամտէր ըսելով։

— Օն, բարեկամներ, վայրկեանները շատ սուղ են, վերջը, երբ մեր գործը աւարտենք և ազատ հողի վրայ ըլլանք, կրնաք ուզածնուդ չափ խօսիլ։

— Այո՛, իրաւունք ունի մեր բարեկամը, ըսաւ Սալինա հանըմ, գացէ՛ք և մեր փրկութեան գործին աշխատեցէ՛ք։

— Իսկ դուք, պատասխանեց Մաք Լայն, պատրաստ կեցէ՛ք որպէսզի վայրկեանը հասնելուն պէս հեռանաք շոգենաւէն։

— Բայց ի՞նչ է ձեր փախուստի ծրագիրը, հարցուց Սալինա մտատանջ երեւոյթով մը։

— Շատ պարզ է, բացատրեց Անգլիացին, շոգենաւը, ինչպէս կը տեսնէք, խիստ դանդաղ կ՚ընթանայ ջրանցքին մէջ և այս գնացքը պիտի պահէ մինչև Սուէզ։ Ցամաքն ալ, ահա՛ հազիւ քանի մը մէթր հեռու է մենէ։ Արդ, քիչ մը ետքը նաւակ մը, որ յատկապէս պատրաստուած է, վստահելի անձերու հսկողութեան տակ, պիտի մօտենայ շոգենաւին. այն ատեն մեզի ուրիշ բան չպիտի մնայ ընելիք, այլ եթէ մի առ մի նաւակին մէջ իջնել և իսկոյն ցամաք ելլել ուր ուրիշ բարեկամներ մեզի կը սպասեն փոխադրութեան միջոցներով։

Այս բացատրութիւնը տալէ ետքը Մաք Լայն և իր ընկերները հեռացան Սալինա հանըմի քովէն և գացին տեսնել միւս աքսորականները որոնց նոյնպէս հաղորդեցին իրենց ծրագիրը։

— Հիմա ուրիշ բան չունինք ընելիք՝ այլ սպասել մեր նաւակին, եզրակացուց Անգլիացին երբ իր ընկերներով կամըրջակին վրայ ելաւ։

Շոգենաւը միշտ կը շարունակէր դանդաղօրէն ընթանալ իր ցռուկէն ելեկտրական լուսարձակներ շողացնելով ջրանցքին երկու եզերքներուն վրայ։ Նաւապետը չէր երեւնար, արդէն գործ մը չունէր կատարելիք, քանի որ շոգենաւը մինչև Սուէզ յանձնուած էր ջրանցքի ընկերութեան նաւուղիղին. Նաւազները նոյնպէս կը քնանային և ընդհանուր հան-

դորրութիւն մը կը տիրէր նաւուն մէջ։ Իսմայիլիայէն արդէն հեռացած էին և ջրանցքը հետզհետէ նեղցած էր, այնպէս որ վերնայարկէն ջուրը գրեթէ չէր երեւնար և կարծես շոգենաւը ցամաքին վրայէն կ՚ընթանար։ Աջ կողմը ափրիկեան ցամաքն էր որուն վրայ լոյսեր կ՚երեւային, ինչպէս նաև ծառերու և տուներու ստուերներ, մինչ ձախ կողմը կը տարածուէր ասիական անապատը, լերկ ու անբնակ։

Հինգ դաւադիրները անխօս կեցած էին վերնայարկը և մտատանջ անձկութեամբ աչքերնին յառած ջուրին վրայ, կը փնտռէին փրկարար նաւակը։

Յանկարծ, Ջիա փաշա որ ձեռքը փոքրիկ դիտակ մը ունէր և անով կը զննէր իր շուրջը, յաղթական ճիչ մը արձակեց.

— Ահաւասիկ նաւակ մը, որուն մէջ երեք հոգի կը նշմարեմ... անպատճառ մեր նաւակը ըլլալու է...

Իր ընկերները իրենց ակնարկը ուղղեցին ցոյց տրուած կողմը։ Արդարև հեռուն, ասիական եզերքին կպած նաւակ մը կ՚երեւար։

— Շո՛ւտ մեր ընկերներուն իմաց տանք որպէս զի հոս հաւաքուին, ըսաւ Մաք Լայն։

Երկու երիտասարդները իսկոյն վար փութացին և վայրկեան մը ետքը Սալիհա հանըմ իր երեք ընկերներով երեւցաւ կամրջակին վրայ։

Հիմա ասիական ցամաքին մօտ գտնուող նաւակը որոշապէս կը տեսնուէր, ինչպէս նաև մէջը գտնուող երեք անձերը որոնք թիակները ձեռքերնին պատրաստ կեցած էին, անշուշտ շոգենաւին մօտենալուն սպասելով.

Ասկէ զատ ցամաքին վրայ, բաւական հեռուն աւազուտ դաշտին մէջ մէկ քանի լոյսեր կը պլպլային ու մարդոց և անասուններու ստուերներ կը շարժէին։

— Մեր փախուստի կարաւանը ըլլալու է, դիտել տուաւ Ջիա փաշա իր ընկերներուն։

Ամէնքը սրտատրոփ անձկութեան մը մատնուած էին և քանի չոգենաւը առաջ կ'ընթանար իրենց յուզումն ալ այնչափ կը սաստկանար: Եւ սակայն ամէն ինչ յաջող կը թուէր. չոգենաւին մէջ միշտ նոյն մեռելային լռութիւնը կը տիրէր. ո՛չ մէկ նաւաստի կամ պաշտօնեայ կ'երեւար կամրջակին վրայ, նաւապետը կը շարունակէր իր խոր քունը, շնորհիւ Մաք Լայնի թմրեցուցիչ սրուակին զոր կամաց մը շնչել տուած էր: Նաւուղիղները վերը իրենց գործին զբաղած էին, ուշադրութիւննին կեդրոնացուցած՝ չոգենաւին ուղղութեան վրայ:

Ա՛լ հիմա որոշապէս կը տեսնուէր նաւակը որ հազիւ քանի մը հարիւր մեթր հեռուն կը գտնուէր և սակայն չոգենաւը այնքա՛ն դանդաղ կ'ընթանար որ տակաւին քանի մը վայրկեան ունէին անոր մօտ հասնելու համար:

— Սնտուկը բերէ՛ք, հրամայեց Մաք Լայն իր շուրջիններուն:

Երկու հոգի անմիջապէս վար սրացան և բերին սնտուկը որուն մէջ կաշիէ գօտիներ և պարաններ կային: Ակնթարթի մը մէջ ամէն մէկը գօտիները իր մէջքը կապեց և պարանները հաստատեց նաւուն երկաթներուն: Հազիւ թէ այս գործողութիւնները աւարտած էին, նաւակը որ այլեւս քիչ մը անդին էր, բաժնուեցաւ ցամաքէն և թիակի քանի մը հարուածներով մօտեցաւ չոգենաւին:

— Նախ տիկին Սալիհան նաւակ իջեցնենք, գոչեց Մաք Լայն:

Այս խօսքերը հազիւ թէ արտասանած էր, արդէն հերոսուհիին մէջքի գօտիին օղակէն պարանը անցուցած՝ զինքը նաւակ կ'իջեցնէին. յետոյ իրեն հետեւեցան երեք աքսորականները, ետեւէ ետեւ:

Նաւակին մօտենալը և կամրջակին վրայ տեղի ունեցած խարանցումը սակայն աննշմարելի չէր անցած նաւուղիղներէն որոնք յանկարծ սուլիչը հնչեցուցին:

Սուլիչին այս ձայնէն մէկ քանի նաւաստիներ վազեցին եկան.

— Շոգենաւին մէջէն մարդ կը փախչի կոր, նաւապետը կանչեցէ՛ք, պոռաց նաւուղիղներէն մին։

Մէկ վայրկեանի մէջ իրարանցումը այնքա՜ն մեծցաւ որ գրեթէ ամէն մարդ ոտքի վրայ էր, ի բաց առեալ Օսման նաւապետէն զոր հազիւ հազ կրցած էին քունէն արթնցնել և որ սակայն կարող չէր եղած տակաւին ոտքի վրայ ելլելու։

Այս շփոթութենէն օգտուելով, իբրև կին ծպտուած երկու երիտասարդները ալ յաջողած էին նաւակ ցատքել։ Կամրջակին վրայ կը մնային Մաք Լայն, Ձիա փաշա և այն որուն Ճէյմս անունը տուած էին իրենց ընկերները։

Մաք Լայն տեսնելով որ շոգենաւին մարդիկը դէպի իրենց կողմը կը վազէին և թէ ժամանակ չի կար նաւակ ցատքելու, իսկոյն նաւակը շոգենաւին կապող պարանը քակեց և պոռաց վարը գտնուողներուն։

— Հեռացէ՛ք և իսկոյն ցամաք հանեցէք ինքզինքնիդ։

Յետոյ երեքը մէկ իրենց րէվոլվէրը հանեցին և իրենց վրայ խուժողներուն ուղղելով գոչեցին.

— Եթէ քայլ մըն ալ առաջ գաք կը զարնենք։

Այս սպառնալիքը փրկարար ազդեցութիւն մը ըրաւ. Նաւաստիները իրենց եղած տեղը կանգ առին։ Նոյն միջոցին Օսման նաւապետ երևցաւ կամրջակին վրայ, տակաւին քնատ վիճակի մէջ և առանց ըմբռնելու անցած դիպուածը։

Նաւակը արդէն բաւական հեռացած էր շոգենաւէն ու ցամաքին մօտեցած և մէջը գտնուողները մէկիկ մէկիկ դուրս կ՚ելլէին ու վազելով կը հեռանային դէպի հեռուն գտնուող պլպլացող լոյսերը։

— Ի՞նչ կայ, ի՞նչ պատահեցաւ, գոչեց նաւապետը իր մարդոց դառնալով։

— Շոգենաւէն մարդ կը փախցնեն, պատասխանեց նաւաստիներէն մին։

Այս բառերը մէկէն նաւապետին խելքը գլուխը բերին։

— Աքսորեալնե՛րը, աքսորեալնե՛րը, գոչեց յուսահատ շեշտով մը, ո՞ւր են, փախա՞ն թէ տակաւին նաւուն մէջն են։

Ոչ ոք որոշ բան մը գիտէր այդ մասին, փախուստը այնքա՛ն արագ, անակնկալ կերպով տեղի ունեցած էր, իրարանցումը այնքան մեծ էր որ չէին կրցած բան մը նշմարել։

— Շոգենաւը կեցուցէ՛ք, հրամայեց նաւապետը նաւուղիղներուն, յետոյ խելայեղ ոստումով մը վազեց դէպի երեք անձերը որոնք րէվոլվէրը ձեռքերնին անշարժ կեցած էին։

— Ո՞ւր են աքսորեալները. դո՞ւք փախցուցիք, ոռնաց անոնց երեսին։

— Աքսորեալները արդէն չէզոք հողի վրայ են ու ազատ Ապտիւլ Համիտի ճիրաններէն, պատասխանեց Զիա փաշա, իսկ դուք Օսման նաւապետ, հաճեցէ՛ք եղած անցքերնիդ հանդարտ մնալ, եթէ չէք ուզեր դնդակով մը գետին տապալիլ։

Այս պատասխանը այնքա՛ն հանդարտ ու միանգամայն հաստատ շեշտով մը տրուեցաւ որ նաւապետը սարսռաց և քանի մը քայլ ետեւ գնաց։

Եւ սակայն այս կացութիւնը երկար չէր կրնար տեւել, հետզհետէ նորանոր նաւազներ ու շոգենաւի զանազան պաշտօնեաներ կը հասնէին և որ կը բոլորուէին երեք անձերուն շուրջը։ Շոգենաւը, նաւապետին հրամանին վրայ կանգ կ'առնէր և նաւուղիղներն ալ կուգային կը միանային միւսներուն առանց տակաւին ճշգրտօրէն հասկցած ըլլալու տեղի ունեցած դէպքերը։

Մաք Լայն և իր ընկերները մէկ կողմէ րէվոլվէրը ձեռքերնին, իրենց շուրջ գտնուողներուն կը նայէին, միւս կողմէ գաղտագողի իրենց ակնարկը կ'ուղղէին դէպի ցամաք, տեսնելու համար թէ իրենց ընկերները բաւական հեռացա՞ծ էին։

Նաւապետը, որ հակառակ իրեն եղած սպառնալիքին, պաղարիւնութիւնը չէր կորսնցուցած, այլ ընդհակառակը աւելի խրոխտ ու կորովի կերպարանք մը առած էր, գոչեց.

— Զէնքերնիդ վար դրէ՛ք ու անձնատուր եղէ՛ք, եթէ ո՛չ մենք զէնքի պիտի դիմենք։

Օսման էֆէնտի այս խօսքերը արտասանած էր ֆրանսերէն լեզուով, որովհետև մինչև այն ատեն տակաւին կը կարծէր թէ իր դէմինները իրաւցնէ Անգլիացիներ էին։ Այս հրամանը արձակելէ ետքը իր շուրջը գտնուող նաւաստիներուն դառնալով ըսաւ, Թրքերէն։

— Ձենէ երկուքը թո՛ղ երթան պահպանութիւն ընեն երկու տիկիններու խցիկին առջև և թող չի տան որ դուրս ելլեն։

Այս խօսքերը Ջիմ փաշայի ծիծաղը շարժեցին, որ նաւապետին դառնալով Թրքերէն լեզուով ըսաւ․

— Անօգուտ է այդ յոգնութիւնը, որովհետև այդ երկու տիկինները արդէն հեռացած են շոգենաւէն։

Օսման էֆէնտի իր դիմացինին այնքան մաքուր և զուտ տաճկական շեշտով Թրքերէն խօսիլը լսելով ափ ի բերան մնաց։

— Այդ տիկինները պարզապէս մեր ընկերներն էին որ կանացի զգեստով ծպտուած էին ձեզի կասկած չներշնչելու համար, շարունակեց Ջիմ փաշա։

Մաք Լայն, որ առանց այս խօսակցութենէն չահագրգռուելու, աչքը միշտ ասիական ցամաքին յառած էր, կամաց մը փսփսաց իր ընկերոջ։

— Օ՛ն, ատենը հասաւ, ծով նետուինք։

Նոյն միջոցին մէկ քանի նաւաստիներ կ'երևային կամրջակին վրայ, հրացաններով զինուած։

Բայց հազիւ թէ անոնք մէկ քանի քայլ առած էին, արդէն երեք ընկերները ոստում մը ընելով ինքզինքնին ջրանցքը նետեցին և սկսան դէպի ցամաք լողալ։

Այս գործողութիւնը այնքա՜ն արագ ու անակնկալ կերպով կատարուեցաւ որ ոչ ոք կրցաւ արգիլել։

Վայրկեան մը ետքը արդէն Մաք Լայն, Ջիմ փաշա և Ճէյմս ցամաք ելած էին և վազելով կը դիմէին դէպի հեռուն պլպլացող լոյսերը։

Նաւապետը հրամայեց որ կրակ ընեն փախստականներ

վրայ, բայց գնդակներէն ոչ մին հասաւ անոնց և արդէն խելոյն ըմբռնեց թէ այդ արարքը որքա՛ն ծանր պատասխանատուութիւն կրնար բերել իր վրայ և անմիջապէս կրակը դադրեցնել տուաւ։

Բոլոր այս դէպքերը, զոր մանրամասնօրէն պատմեցինք, հազիւ քառորդ մը տևած էին։ Ժամը տակաւին երեքը չէր եղած, երբ փախստականները արդէն տափարակ տարածութեան մէջ կը հեռանային իրենց համար նախապէս պատրաստուած ձիերուն վրայ հեծած։

Օսման նաւապետ կամրջակէն կը տեսնէր ափական եզերքին վրայ լոյսերուն շարժիլը և արագ արագ հեռանալը։ Նաւուն պատնիշակին կռթնած, յուսահատ կատաղութեամբ մը իր նայուածքը սևեռեց այդ հեռացող լոյսերուն, մինչև որ անոնք բոլորովին աներևոյթ եղան մթութեան մէջ։

Օտարական նաւուղիղներէն մին մօտեցաւ իրեն և ուսին զարնելով ըսաւ.

— Նաւապետ, հոս պիտի մնա՞նք թէ ճամբանիս պիտի շարունակենք։

Օսման էֆէնտի իր խոր մտածումէն սթափելով, դարձաւ դէպի անոր և ըսաւ.

— Կարծեմ միակ և օրինաւոր միջոցն է անմիջապէս Սուէզի եգիպտական իշխանութեան դիմել և խնդրել որ փախստականները հետապնդել տալով ձերբակալէ և ձեզի յանձնէ պատասխանեց նաւուղիղը։

— Բայց մինչև որ Սուէզ հասնինք, խնդիրը բացատրենք և իշխանութիւնն ալ գործել սկսի, արդէն անոնք շատ հեռացած պիտի ըլլան։

— Իրաւունք ունիք, բայց մենք ալ ուրիշ ճար չունինք. չոգենաւը չենք կրնար վերադարձնել Իսմայիլիա, և նոյն իսկ եթէ ցամաք ելլէք և Իսմայիլիա երթալ փորձէք, կրկին մէկ քանի ժամ պիտի գործածէք, բաց աստի՝ Իսմայիլիայի իշխանութիւնը ինքն իր գլխուն բան մը չպիտի ընէ առանց Սուէզ

հարցնելու, հետեւաբար, ինչպէս կը տեսնէք, ստիպուած էք համակերպիլ ճակատագրին:

Օսման Նաւապետ յուսահատ հառաչ մը արձակեց: Արդարեւ Նաւուղիղին դիտողութիւնը շատ ճիշդ էր և ճար չի կար ուրիշ միջոց մը գտնելու:

— Եւ սակայն, ըսաւ, դուք ալ վկայ էք որ ես ձեռքէս եկածը ըրի և նոյնիսկ զէնքի դիմեցի և սակայն փախուստը այնքա՜ն անակնկալ կերպով կատարուեցաւ որ չկրցանք արգիլել:

— Այդ մասին անհոգ եղիք, պատասխանեց Նաւուղիղը ես և ընկերս պատրաստ ենք հարկ եղած տեղը վկայելու որ դուք ձեր պարտականութիւնը մինչև ետքը լիուլի կատարեցինք...

— Շնորհակալ եմ, պատասխանեց խեղճ Նաւապետը յուզուած շեշտով:

Յետոյ հրաման ըրաւ որ շոգենաւը իր ճամբան շարունակէ:

Շոգենաւին մէջ, բացի չորս աքսորականներէ, ուղեւոր մըն ալ կար որ Արաբիա կ'երթար և ներքին գործերու նախարարութեան կողմէ յանձնարարուած էր նաւապետին: Այդ ուղեւորը Սամի պէյ կը կոչուէր և ըստ իր յայտարարութեան Ճիտտէ կ'երթար իբրեւ երմաական պաշտօնեայ:

Սամի պէյ, հազիւ երեսունըհինգ տարեկան, սեւ մօրուքով, թուխ ու խաժուադէմ մարդ մըն էր, և ուղեւորութեան միջոցին հազիւ քանի մը անգամ խօսք փոխանակած էր նաւապետին հետ և այդ փոխանակած խօսքերն ալ կա՛մ օդին և կամ ծովուն վիճակին վրայ էին. անկէ դուրս գրեթէ ո և է նիւթի վրայ չէր խօսեր և ամբողջ օրը կամրջակին վրայ, հետը բերած ճօճաթոռին մէջ ընկողմանած կ'անցնէր սիկառէթ ծխելով ու թէսպիհ դարձնելով:

Սամի պէյ իր խցիկին մէջ կը քնանար երբ փախուստը տեղի ունեցաւ: Շոգենաւուն մէջ տիրող աղմուկն ու իրարան-

ցումը զինքը արթնցուցին և շտապով հագուեցաւ ու վազեց կամրջակին վրայ։ Երբ հոն հասաւ, արդէն ամէն ինչ կատարուած էր և շոգենաւը կրկին ճամբայ կ'ելլէր, պահ մը կանգ առնելէ ետք։

Անմիջապէս իր շուրջը գտնուող անձերուն մօտեցաւ, իրարանցումին պատճառը հասկնալու համար։ Երբ որ իրեն պատմեցին աքսորեալներու փախուստը սաստիկ կերպով յուզուեցաւ և երեսին գոյնը նետեց։

— Ի՜նչ, մրմռաց ձեռքը ճակտին տանելով, աքսորեալները փախա՜ն... անկարելի բան է այդ։

— Դժբախտաբար իրողութիւնը այս է, պատասխանեց իր խօսակիցը։

— Բայց ինչպէ՞ս յաջողեցան խցիկներէն դուրս ելլել քանի որ բանտարկուած էին։

— Մանրամասնութիւնները տակաւին յայտնի չէ, սա չափը միայն գիտենք որ Բօրթ-Սայիտէն իբրև ճամբորդ շոգենաւ մտնող երեք մարդիկը և երկու կիները, որոնք Անգլիացի ձևացած էին, աքսորեալներու ընկերներն էին, նոյնիսկ ստուգեցինք որ կնոջ հագուստ կրողները երկու երիտասարդ էին։ Անկէ զատ, ուրիշ դաւակիցներ ալ իրենց կը սպասէին հոս նաւակի մէջ, վերջապէս շատ մեծ վարպետութեամբ պատրաստուած էր ամէն բան։

Սամի պէյ այս պատմութիւնը լսեց, չարագուշակ կերպով գլուխը օրօրելով. յետոյ հեռացաւ և գնաց նաւապետին քով, որ վերնայարկին սրահը, բազմոցին վրայ նստած էր, գլուխը երկու ձեռքերուն մէջ առած։ Խեղճ մարդը այնքա՜ն խոր մտածումներու մէջ ընկղմած էր որ չիմացաւ Սամի պէյի ներս մտնելը։

Այս վերջինը կամաց կամաց մօտեցաւ իրեն և կամաց մը ուսին զարկաւ։ Օսման նաւապետ ցնցուեցաւ և մէկէն գլուխը վեր վերցուց.

— Իմացայ որ չորս աքսորեալները քիչ մը առաջ շոգենաւէն խոյս տուեր են, ըսաւ խոժոռ ձայնով մը։

— Ափսո՜ս, պատասխանեց Նաւապետը։

— Բօրթ-Սայիտէն չոգենաւ մտնող օտարականներն են եղեր փախցնողները։

— Այո՛, կմկմաց խեղճ Օսման էֆէնտի։

— Արդ, Պոլիսէն ձեզի հրահանգ տրուած էր ընաւ ուրիշ ճամբորդ չընդունիլ չոգենաւին մէջ, ինչո՞ւ ուրեմն այդ հրամանը չյարգեցիք։

Նաւապետը, հակառակ իր յուզումին ու ճնշուած կերպարանքին, զարմանքով իր խօսակցին երեսը նայեցաւ և ըսաւ.

— Ի՞նչ իրաւունք ունիք ինծի այդ դիտողութիւնները ընելու, ես եթէ պակասութիւններ գործած եմ՝ տանիք ինծի և մեծերուս կը վերաբերին և ո՛չ թէ ձեզի պէս պարզ ճամբորդի մը։

— Եթէ իրաւունք չունենայի այս դիտողութիւնները ընելու, ընաւ բերանս չպիտի բանայի, պատասխանեց Սամի պէյ խիստ ձայնով մը։

— Բայց ո՞վ էք դուք։

— Ես յատկապէս պաշտօն ունիմ ձեր վրայ հսկելու և եթէ այս ըսածիս չէք հաւատար, ահաւասիկ ապացոյցը։

Այս ըսելով Սամի պէյ գրպանէն թղթապանակը հանեց և թուղթ մը առնելով Նաւապետին ներկայացուց։

Օսման էֆէնտին իրեն տրուած թուղթը ուշադրութեամբ կարդաց, դէմքը աժգունեցաւ և թուղթը Սամի պէյի վերադարձնելով, կմկմաց.

— Կը ներէք, չէի գիտեր ձեր պաշտօնը։

Արդարև այդ լռակեաց ուղևորը. որ իբր թէ եւրոպական նախարարութեան կողմէ պաշտօնով Ճիտաէ կ՚երթար, Եըլտըզի պալատականներէն մին էր զոր Ապտիւլ Համիտ յատկապէս նշանակած էր իբրև լրտես թէ՛ Նաւապետին և թէ աքսորեալներուն վրայ։

— Բայց Սամի պէյ, հաւատացէք որ այս փախուստի գործին մէջ ես բնաւ յանցանք չունիմ, կակազեց Օսման էֆէնտի, հետզհետէ յուզուած։

— Ընդհակառակը ո՛չ թէ միայն յանցաւոր էք, այլ նոյն իսկ աւելի առաջ երթալով պիտի ըսեմ որ մեղսակից ալ էք։

— Բայց ինչպէ՞ս կրնաք այդպիսի ամբաստանութիւն մը ընել։

— Ինչո՞ւ այդ կեղծ Անգլիացիները ընդունեցաք չոգենաւին մէջ, քանի որ բացարձակ պատուէր կար մարդ չընդունելու։

— Այո՛, այդ մասին իրաւունք ունիք. սխալեցայ իրենց խօսքին վստահելով։

— Կամ մանաւանդ իրենցմէ կաշառուելով։

— Ի՜նչպէս կաշառուիլ։

— Անշուշտ, միթէ գիտենք առանց դրա՞մի ընդունեցիք չոգենաւին մէջ։

— Պարզապէս նաւուղչէքը վճարեցին, ... ատիկա կաշա՞ռք է։

— Ի՞նչ է նաւուղչէքը։

— Մարդ գլուխ երեք ոսկի, կմկմաց նաւապետը որուն ձայնը կը դողդղար հետզհետէ։

— Ուրեմն այդ հինգ անձերուն համար միայն տասնըհինգ ոսկի՞ առաք։

— Այո՛, պատասխանեց միւսը հազիւ լսելի ձայնով մը։

Սամի պէյի դէմքին վրայ չար ժպիտ մը նկարուեցաւ։

— Կը տեսնամ որ դիմացինիդ շատ միամիտ կը կարծէք կոր, ըսաւ հեգնական շեշտով մը։

— Չեմ հասկնար թէ ի՛նչ ըսել կ'ուզէք։

— Ըսել կ'ուզեմ որ զիս խաբել կը ջանաք առանց խորհելու որ ես գուցէ ամէն բան գիտեմ։

Այս խօսքերը այնքա՜ն վստահ կերպով արտասանած էր որ Օսման նաւապետ սարսռաց, և սակայն չընկրկեցաւ և կրցածին չափ հանդարտ ձայնով մը հարցուց.

— Ի՞նչ է ձեր գիտցածը։

— Իմ գիտցածս այն է որ, շարունակեց Սամի պէյ հանդարտ և հաստատ ձայնով մը, ո՛չ թէ տասնըհինգ ոսկի՝ այլ մէկ քանի հարիւր ոսկի ստացաք այդ մարդերէն զիրենք շոգենաւուն մէջ առնելու համար։

— Բոլորովին սուտ զրպարտութիւն մըն է այդ, գոչեց Օսման նաւապետ դողահար ձայնով մը։

— Դժբախտաբար ո՛չ, պատասխանեց միւսը նոյն հանդարտութեամբ, Բօրթ-Սայիտի մէջ, ինծի յանձնուած պաշտօնիս բերմամբ, ձեր վրայ գաղտնաբար հսկեցի, տեսայ քարափին վրայ գարեջրատուն մտնելնիդ, Եգիպտացիի մը հետ տեսակցելնիդ, որուն ով ըլլալն ալ ետքէն իմացայ, նոյնպէս տեսայ օտարականի մը հետ բանակցութիւնը և անկէ իբրև կանխավճար ձեր ընդունած դրամը որ արդէն տասնըհինգ ոսկիէն աւելի էր և որուն մնացորդն ալ հոս, շոգենաւուն մէջ, ճիշդ այս սրահը ձեզի տրուեցաւ, ինչպէս կը տեսնէք իմ ըսածներուս մէջ սուտ զրպարտութիւններ չկան...

Խեղճ նաւապետը հակառակ ինքն իր վրայ ըրած ջանքերուն հետզհետէ կ'ընկճուէր և ճար մը կը մտածէր այդ մարդու ձեռքէն ազատելու համար։ Հիմա բոլորովին մոռցած էր փախստականները և այս նորագոյն փորձանքը շատ աւելի մտատանջութիւն կը պատճառէր իրեն։ Եւ սակայն փորձեց կրկին ինքզինքը պաշտպանել։

— Կրնայ ըլլալ որ այդ մարդերէն աւելի գումար մը առած ըլլամ, սակայն այդ իրողութիւնը չապացուցաներ որ ես իրենց մեղսակիցն եմ և թէ իրենց ծրագիրը գիտնալով զանոնք շոգենաւիս մէջ առի։

— Այդ մասին վճիռ մը արձակելը ձեր դատաւորներուն կ'իյնայ։

— Ի՞նչ դատաւոր, գոչեց նաւապետը այլայլած։

— Բնական է որ այդ փախուստին մասին քննութիւն մը պիտի բացուի և դուք ալ պիտի ստիպուիք ձեր բացատրու-

թիւնները տալ, այն ատեն կը վճռուի թէ հինգ հոգիի համար մինչև Եէմէն ճամբորդութեան ի՞նչ օրինաւոր գին կարելի է պահանջել... և յետոյ, երբոր աքսորեալներուն փախուստը ձեզի իմացնելու եկեր են՝ խոր քունի մէջ կը ննջէք եղեր և թէ նոյնիսկ դժկամակութեամբ ուզեր էք արթննալ և անկողնէն ելլել... այդ քունն ալ, ճիշդ փախուստի միջոցին, շատ տարօրինակ պիտի երևի երբ քննութիւն բացուի:

Օսման Նաւապետ ինքն ալ չէր կրցած բացատրել իր այդ խոր քունը և երբ Սամի պէյ այս ակնարկութիւնը ըրաւ, կարող չեղաւ խօսք մը ըսել ինքզինքը արդարացնելու համար:

— Կը տեսնեմ որ կրկին քուներնիդ եկեր է, շարունակեց լրտեսը հեգնական շեշտով մը, ուստի ձեզի առանձին կը թողում որպէսզի հանգստանաք, հիմա կրնաք ա՛լ աւելի հանդարտ սրտով քնանալ, քանի որ շոգենաւին մէջ ուրիշ աքսորեալներ չեն մնացած...:

Սամի պէյ այս խօսքերուն վրայ բարևելով դուրս ելաւ:

Նաւապետը, երկար ատեն բազմոցին վրայ մնաց, խոր մտածումներու մէջ թաղուած. յետոյ յուզումէն ու քնատութենէն յաղթահարուած՝ աչքերը փակեց:

---

# ԵՐՐՈՐԴ ՄԱՍ

## ԴԷՊԻ ԱՆԿՈՒՄ

### ԳԼՈՒԽ Ա.

### ԱՊՏԻՒԼ ՀԱՄԻՏ ԿԸ ՍԿՍԻ ՅՈՒՍԱՀԱՏԻԼ

*Հետեւեալ առտուն արշալոյսին շոգենաւը հասաւ Սուէզ և կանգ առաւ ծովուն բացը, մաքսատան դիմաց։*

*Օսման Նաւապետ կամրջակին վրայ կեցած, կը պատրաստուէր ցամաք ելլելու, երբ Սամի պէյ մօտեցաւ իրեն.*

*– Լաւ ուրեմն, ըսաւ ի՞նչ պիտի ընէք այժմ, գոնէ չի՞ պիտի փորձէք փախստականները ձերբակալել տալու։*

*— Անշուշտ, պատասխանեց Նաւապետը, անմիջապէս եգիպտական իշխանութեան պիտի դիմեմ և պիտի պահանջեմ որ ոստիկանական իշխանութեան միջոցաւ հետապնդեն զանոնք։*

*— Եւ կը կարծէ՞ք որ եգիպտական իշխանութիւնը փութայ ձեր պահանջումին գոհացում տալու և նոյնիսկ ենդադրելով որ հաւանի իր ոստիկանները ղրկելու, կը կարծէ՞ք որ անոնք յաջողին փախստականներուն հետքը գտնել, որոնք արդէն 4—5 ժամէ ի վեր անապատի ճամբան ձեռք առած են։*

*— Բայց ուրիշ ի՞նչ կ'ուզէք որ ընեմ։ եթէ դուք լաւագոյն միջոց մը ունիք բացատրեցէք և զայն գործադրենք։*

*— Իմ գիտցածս այն է որ ամէն հետապնդում անօգուտ ժամավաճառութիւն է և թէ լաւագոյն է հրահանգի սպասել այս-*

տեղ, որովհետեւ այլեւս ճամբանիդ շարունակելու պատճառ մը չունիք, քանի որ աքսորեալները հոս չեն։

— Լա՛ւ ուրեմն ձեր ըսածին պէս կ՚ընենք, պատասխանեց նաւապետը, որ արդէն իր ի՛նչ ընելիքը չէր գիտեր.

Քանի մը վայրկեան ետքը երկուքը միասին նաւակ կը մտնէին ցամաք ելլելու համար։ Հազիւ թէ ոտքերնին քարափ դրին՝ խոյս հեռագրատուն դիմեցին եւ հոն Օսման նաւապետ հետեւեալ հեռագիրը խմբագրեց Եըլտըզի պալատին քարտուղարութեան ուղղուած.

«Չորս աքսորեալները Սուէզի ջրանցքէն անցած ատեննին գիշեր ժամանակ խոյս տուին դուրսէն եկած օգնութեան շնորհիւ։ Ձեր հրահանգին կը սպասենք Սուէզի մէջ։»

— Երբ հեռագրատունէն դուրս ելան, Սամի պէյ բաժնըւեցաւ նաւապետէն։ Ասիկա մեծ թեթեւացում մը եղաւ խե՛ղճ Օսման էֆէնտիի համար որ ազատ. շունչ մը առաւ։ Յորմէհետէ Սամի պէյ իր ո՛վ ըլլալը յայտնած էր նաւապետին, այս վերջինը իր հանգստութիւնը կորսնցուցած էր բոլորովին։ Իրաւ է որ ինք այդ կատարուած փախուստին մէջ ո եւ է մեղսակցութիւն չունէր, այսուհանդերձ հակառակ տրուած հրամանին օտարականներ իր շոգենաւը ընդունած ըլլալուն պարագան զինքը չափազանց կը վտանգէր եւ մեծ փորձանք մը կը սպասէր իրեն երբոր Պոլիս հասնէր։ Շատ դժուար պիտի ըլլար իր անմեղութիւնն ապացուցանել. երեւոյթները իրեն դէմ էին եւ սակէ զատ, յայտնապէս կ՚երեւար որ Սամի պէյ իր մեղսակցութեանը համոզուած էր եւ ըստ այնմ վկայութիւն պիտի տար. եւ այն ատեն ի՛նչ պիտի ըլլար իր վիճակը. առ նուազն բանտարկութիւն եւ աքսոր։

— Ապահովաբար փախստականներուն տեղ զիս պիտի զրկեն Եէմէն, մտածեց եւ այս մտածումը սարսափեցուց զինքը։

Խորին թախծութեան մը մատնուած՝ իր դէմը ելլող սըրճարանը մտաւ ու սեղանի մը առջեւ նստաւ, սուրճ մը ապսպրելու։

Ամբողջ ժամ մը մնաց հոն իր վիճակին վրայ խորհելով։ Սամի պէյի սպառնական խօսքերը միշտ իր ականջին կը հընչէին և անընդհատ իր արարքները կը քննէր իր յանցաւորութեան չափը որոշելու համար։

— Այո՛, կ՚ըսէր ինքնիրեն յանցաւոր եմ և կարելի չէ ինքզինքս արդարացնել։ Նախ շատ միամտօրէն խաբուեցայ այդ օտարականներէն և զիրենք շոգենաւ մտցուցի, իրենց վճարած գումարին քանակութենէն շլացած․ յետոյ, շոգենաւին մէջ, պէտք եղածին չափ զգուշութիւն չըրի իրենց վրայ․ նոյն իսկ աքսորեալները փախցընելէն ետքը, անմիջապէս զանոնք հետապնդելու չձեռնարկեցի, թէև այդ բանը շատ դժուար էր․․․։

Յանկարծ միտքը մտածում մը ինկաւ․

— Բայց ինչո՛ւ համար Սամի պէյ չուզեր որ անմիջապէս տեղական կառավարութեան դիմեմ և անոր օժանդակութիւնը խնդրեմ փախստականները գտնելու համար․․․ անիկա իմ պարտականութիւնս էր և ես ասոր մէջն ալ թերացայ․․․ արդեօք այդ լրտեսը դիտմա՞մբ այս խորհուրդը տուաւ ինծի, որպէս զի իմ յանցանքս աւելի ծանրացնէ․․․ և ես ապուշի պէս իր խօսքին հաւատացի։

Այս նոր մտածումը ա՛լ աւելի տագնապներու մատնեց զինքը։

— Եւ սակայն խորհեցաւ, հիմա կրնամ երթալ և պէտք եղած դիմումը ընել, թէև բաւական ժամանակ կորսնցուցի, այսուհանդերձ գոնէ իմ պարտականութիւնս կատարած կ՚ըլլամ։

Եւ այս որոշումը տալով՝ իսկոյն դուրս ելաւ սրճարանէն և ուղղուեցաւ ոստիկանատունը ուր արաբացի միւտիրի մը բացատրեց գլխուն եկած փորձանքը։

Ոստիկանատան պաշտօնեան պատասխանեց թէ խնդիրը քաղաքական գոյն մը ունի, հետեւաբար ինք չկրնար միջամտել մինչև որ կեդրոնին լուր չի տայ ու անկէ հրաման չստանայ։

*Օսման էֆէնտի խնդրեց որ իսկոյն հեռաձայնով պէտք եղած բանակցութիւնները կատարէ։ Միւտիրը խոստացաւ, բայց միանգամայն զգացուց թէ ինք յոյս չունէր որ այդպիսի հեռապնդումի մը մասին հրաման տրուի և աւելցուց նաև որ շատ դժուար և գրեթէ անկարելի էր այլևս փախստականները գտնել, քանի որ արդէն 5-6 ժամէ ի վեր հեռացած էին։*

*Հակառակ այս յուսահատական պատասխանին՝ Նաւապետը ոստիկանատունէն դուրս ելաւ բաւական թեթևցած.*

*— Ինչ որ ալ ըլլայ գոնէ խիղճս հանդարտ է, մտածեց, իմ պարտականութիւնս կատարեցի...։*

*Ցերեկուան մօտ, ճաշարան մը նստած կերակուր ուտելու կը պատրաստուէր, երբոր չոգենաւուն առաջին մեքենավարը տեսաւ որ փողոցէն կ'անցնէր. իսկոյն իր սեղանը հրաւիրեց զայն։*

*— Վա՜յ Օսման նաւապետ, հո՞ս էք եղեր, ըսաւ նորեկը, ես ալ ձեզի կը փնտռէի ժամէ մը ի վեր...։*

*— Ի՞նչ կայ որ, հարցուց նաւապետը չփոթած կերպարանքով մը։*

*— Շատ կարեւոր լուր մը ունիմ ձեզի հաղորդելիք։*

*— Ըսէ՛ տեսնենք։*

*— Շոգենաւուն մէջ մեզի հետ ճամբորդող Սամի պէյը ութ-տասը զինեալ մարդոց հետ ճամբայ ելաւ փախստականները հալածելու համար, իրենց նաւակ մտնելը և ջրանցքին միւս կողմ անցնիլը տեսայ...։*

*Այս անակնկալ լուրը նորանոր մտատանջութիւններու մատնեց նաւապետը։*

*— Վա՜յ չունչանորդի, ըսաւ, զիս ուզեց արգիլել որ դիմում չընեմ տեղական իշխանութեան, որպէս զի ինք իր ձեռքով գործ տեսնէ ու փառք ու պատիւ տիրանայ և միեւնոյն ատեն զիս ա՛լ աւելի վտանգէ... Բայց ո՞վ էին այդ զինեալ մարդիկը... անշուշտ ոստիկաններ չէին.*

— Չէ՛, պատասխանեց մեքենավարը, հարցուցի փընտըռեցի և հասկցայ որ պէտէվլիներ են եղեր զորս Սամի պէյ վարձեր է կարեւոր գումարներ վճարելով։

Այս անակնկալութիւնները բոլորովին վերի վայր շրջեցին Նաւապետը. հասկցաւ թէ Սամի պէյ զինքը խաղի բերած էր և նորէն ինկաւ խոր մտածումի մը մէջ։ Բայց այս անգամ երկար չտեւեց և վճռական որոշում մը տուաւ։ Մեքենավարէն բաժնուեցաւ, իսկոյն շոգենաւ վերադարձաւ, իր խցիկը գնաց, օտարականներէն ընդունած դրամը և իր պահեստի գումարը առաւ գրպանից. յետոյ կրկին նաւակ մտնելով վերադարձաւ ցամաք և ուղղակի գնաց կայարան և տոմսակ մը առաւ Ալեքսանդրիոյ համար և մտաւ վակոն։ Քառորդէ մը կառախումբը ճամբայ ելաւ, մինչ Օսման էֆէնտի, մտատանջութիւնը փարատած, ինքնիրեն կ՚ըսէր.

— Թո՛ղ Ապտիւլ Համիտ ու Սամի պէյ, եթէ կրնան զիս ձեռք անցնեն ու պատժեն։

Մինչդեռ Սուէզի մէջ մեր պատմած դէպքերը տեղի կ՚ունենային, աքսորեալներու փախուստը ծանուցանող հեռագիրը կը հասնէր Եըլտըզ և իսկոյն Իզզէթ փաշայի ձեռքով բռնաւորին կը հաղորդուէր։

Պօմպա մը եթէ նոյն միջոցին Եըլտըզի մէջ պայթէր, այնքա՛ն չպիտի ցնցէր Ապտիւլ Համիտ որքան ցնցուեցաւ այդ կարճ հեռագիրը կարդալով։

Գուժաբեր թուղթը ձեռքին մէջ՝ ինկաւ թիկնաթոռին վրայ ու հոն անշարժ մնաց, առանց բառ մը արտասանելու։ Իր սիրական քարտուղարը ինքն ալ այդ անակնկալ լուրէն շփոթած, չէր գիտեր ի՛նչ ընելիքը, և գլուխը կախ, իր տիրոջ կը նայէր։

Ի վերջոյ իր ամբողջ քաջութիւնը ժողվելով՝ քարտուղարը ըսաւ.

— Վեհափառ տէ՛ր, ի՞նչ պատասխան պիտի տանք այս հեռագրին։

Ապտիւլ Համիտ յանկարծ գլուխը վեր վերցուց և իբրև միակ պատասխան՝ պոռաց իր քարտուղարը երեսին.

— Դուրս կորսուէ՛։

Իզզէթ փաշա այդ խօսքերը կրկնել չտուաւ, խոնարհութիւն մը ըրաւ և դուրս սպրդեցաւ սենեակէն։

Բռնաւորը ծայրայեղ սրտաբեկութեան մը մատնուած՝ գամուեր մնացեր էր իր աթոռին վրայ։

Այդ թաքուն զօրութիւնը որ իր դէմ կը գործէր և որուն չէր կրցած յաղթել, նախ զինքը կատաղութեան մատնած էր և այժմ ալ, կամաց կամաց զինքը յուսահատութեան կը մըղէր։ Իր երկարամեայ բռնակալութեան շրջանին առաջին անգամ ըլլալով վհատութիւն մը կը զգար և միանգամայն խոնջէնք մը։ Աներևոյթ ձայն մը իր ներսիդիէն իրեն կ'ըսէր թէ անկումի ու նահանջի աղետալի վայրկեանը կը մօտենար և թէ իր ահեղ զօրութիւնը զոր քսանհինգ տարուան մէջ հաստատուած էր, կը սկսէր տեղի տալ ուրիշ անտեսանելի և անըմբռնելի զօրութեան մը առջև որ օրէ օր կը մեծնար և որ կը սպառնար զինքը փշրել։

Ու միևնոյն ատեն կը զգար որ իր կողմէ ամենափոքր տկարացում մը իր կործանումը պիտի փութացնէր.

— Եթէ փոքրիկ զիջողութիւն մը ընեմ՝ արդէն նոյն վայրկեանին գործս լմնցած է, կը խորհէր։

Իր չուրջը գտնուող հաւատարիմներուն վրայ այլևս ոև է վստահութիւն չունէր։ Իրեն այնպէս կը թուէր որ ամենքն ալ իրեն դէմ կը դաւէին և սակայն անոնցմէ չէր կրնար բաժնուիլ։ Գաղտնի զօրութիւն մը զինքը անոնց կը կապէր։ Ամէն անգամ որ իր հինաւուրց պալատականներէն մէկը մեռնէր, Ապտիւլ Համիտ լայն շունչ մը կ'առնէր, կարծես թշնամիէ մը ազատածի պէս։

Հոգեկան այս տագնապալի կացութեան մէջ, ոյժ և օգնութիւն կը սպասէր ամէնէն անհեթեթ միջոցներէ։ Հմայքներու, դիւթութիւններու, գուշակութիւններու կը դիմէր, իրեն

սպառնացող վտանգները վանելու համար։ Հիմա, Եըլտըզի պալատին մէջ, ամէնէն ազդեցիկ անձը դարձած էր ծերունի Էպիւլ Հիւտան, որ իր տիրոջ երազները կը մեկնէր կամ կախարդական միջոցներով գուշակութիւններ կ՚ընէր։ Բռնաւորը ժամերով կը փակուէր այդ հնարամիտ ծերունիին հետ և անոր մոգական ձեռնածութիւններուն շնորհիւ կը փարձէր իր գլխէն հեռացնելու չար ոգիները և զանոնք չէզոքացնելու։

Իր սիրական քարտուղարը դուրս վռնտելէ ետքը, Աբտիւլ Համիտ տակաւին բաւական ժամանակ սեւ մտածումներու մէջ թաղուած մնաց, յետոյ մէկէն ոտքի ելաւ, զանգակը հնչեցուց և հրամայեց որ Էպիւլ Հիւտան իր քով բերեն։

Հրամանը խոյն գործադրուեցաւ և ծերունի կախարդը եկաւ իր տիրոջ ներկայացաւ սովորական խոնարհութիւններով։

— Էպիւլ Հիւտա, ըսաւ Աբտիւլ Համիտ, մինչև հիմա քու խաբեբայական հնարքներովդ զիս խաբեցիր ու իմ քթիս խնդացիր, բայց հիմա ժամանակը հասաւ որպէսզի կա՛մ քու կարողութեանդ ճշմարիտ ապացոյցը տաս և կա՛մ քու խաբեբայութիւններուդ պատիժը կրես։

Հնարամիտ ծերունը այս խօսքերը ամենայն երկիւղածութեամբ լսեց, գլուխը խոնարհած. յետոյ պատասխանեց.

— Ինչ որ կը յայտնեմ ձեր վեհափառութեան, պարզապէս գերագոյն ոգիներու ազդեցութեամբն է որոնց մէկ անարժան խողովակն եմ ես. հետևաբար եթէ [illegible] յայտնութիւններուս մէջ խաբեբայութիւններ կան, անոնց պատասխանատուն գերագոյն ոգիներն են ո՛չ թէ ես որ հողեղէն արարած մըն եմ և առանց երկնային օժանդակութեան՝ մարդոց ամէնէն տգէտն ու ապիկարը։

Աբտիւլ Համիտ խոժոռ նայուածք մը ուղղեց կախարդին և ըսաւ.

— Պարապ խօսքեր մտիկ ընելու ժամանակ չունիմ, եթէ իրաւցնէ ոգիներու հետ հաղորդակցութիւն ունիս, հիմա որ

*ճշդապէս պիտի պատասխանես քեզի ընելիք հարցումներուս և եթէ տալիք պատասխաններդ յետոյ չստուգուին ու սուտ ելլեն, գիտցած եղիր որ ձեռքէս չես կրնար ազատիլ երբեք։*

*— Իմ մարմինս արդէն միշտ ձեր վեհափառութեան ձեռքին մէջն է, պատասխանեց ծերուկը, իսկ հոգիս Աստուծոյ յանձնած եմ։*

*Յետոյ աւելցուց․*

*— Յոյս դերագոյն ոգիներու աջակցութեան վրայ դնելով պատրաստ եմ ձեր վեհափառութեան հրամանները կատարելու։*

---

## ԳԼՈՒԽ Թ.

## ԿԱԽԱՐԴԱԿԱՆ ԳՈՐԾՈՂՈՒԹԻՒՆ ՄԸ

*Այս խօսքը արտասանելէ ետքը Էպլիւլ Հիւտա սկսաւ յամրաբար սրահին շրջանը ընել թեւերը շարժելով ու գլուխը օրօրելով, մինչ բանտուորը թիկնաթոռի մը մէջ ընկողմանած, տարտամ ակնարկով մը կը դիտէր ծերունին։*

*Կախարդը քանի վայրկեանի չափ այսպէս շրջեցաւ անիմանալի բառեր մրմռալով քթին տակէն և աստիճանաբար իր քայլերը արագելով ու գլխուն ճօճումը սաստկացնելով։*

*Քիչ շատ ողջմտութիւն ունեցող անձի մը համար այս տեսարանը բնականաբար ծիծաղելի ու միանգամայն պժգալի պիտի ըլլար, սակայն Աբտիւլ Համիտ, գրեթէ երկիւղած ուշադրութեամբ մը կը հետեւէր ծերունիին քայլերուն և շարժումներուն, անոնցմէ գերմարդային օգնութիւն մը ակնկալելով։*

*Էպլիւլ Հիւտա յանկարծ սկսաւ ոստոստումներ ընել, յե-*

տող գրպանէն երկար համրիչ մը հանելով՝ զայն իր գլխուն շուրջը դարձնել։ Ոտքի, գլխու և թեւերու այս անընդհատ շարժումները զինքը այն աստիճան յոգնեցուցին ու սպառեցին որ սկսաւ հեւալ շնչասպառ երեւոյթով մը և ի վերջոյ ծունկերուն վրայ ինկաւ ու անշարժ մնաց, աչքերը դէպի ձեղուն սեւեռած՝ վերացումի և յափշտակութեան վիճակի մը մէջ։

Քիչ մը ետքը շրթունքը սկսան շարժիլ, աներեւոյթ էակներու հետ խօսելու պէս։ Անհասկնալի բառեր արտասանեց, դէմքը մերթ խոժոռեցաւ, մերթ զուարթացաւ, երկիւղի և ուրախութեան ծամածռութիւններ ձեւացնելով և ի վերջոյ գոչեց.

— Հարցուցէ՞ք, Վեհափառ տէր, ոգիները պատրաստ են պատասխանելու։

Այս խօսքերը արտասանելէ ետքը Էպլիւլ-Հիւտա աչքերը գոցեց, գլուխը միշտ դէպ ի ձեղուն դարձուցած։ Կարծես կը քնանար արձանացած վիճակի մէջ։

— Կ'ուզեմ որ ըսեն թէ ի՛նչ կը սպառնայ ինծի։

Էպլիւլ Հիւտա, միշտ աչքերը գոց, սկսաւ շրթունքը շարժել առանց բառ մը արտասանելու. յետոյ, կամաց կամաց, անկապակից խօսքեր արտասանեց և ի վերջոյ ըսաւ.

— Այո՛, ոգիներն են որ կը խօսին, անոնք որոնց համար ո՛չ անցեալը, ո՛չ ներկան և ո՛չ ապագան գաղտնիք ունին. անոնք որ ժամանակէն դուրս կ'ապրին և սկիզբն ու վախճանը միեւնոյն ատեն կը տեսնեն... մօտ ատենէն, գուցէ վեց եօթը ամիսէն, մեծ վտանգ մը կը սպառնայ Ձեր վեհափառութեան, անակնկալ, սոսկալի վտանգ մը, ուղղակի ձեր անձին ու ձեր կեանքին դէմ... հարիւրաւոր դիակներ կ'երեւան, կտոր կտոր եղած, բայց Վեհափառ տէր, Աստուած իր աջը կ'երկարէ ահա՛ ու կը տարածէ ձեր վրայ, փրկանքը կ'ընդունի առանց ձեզ վնասելու...

Ապտիւլ Համիտ որ հեւ ի հեւ և սրտատրոփ կը հետեւէր իր ծերունի գուշակին խօսքերուն, լայն շունչ մը առաւ,

կարծես թէ նոյն րոպէին իսկ սպառնացող վտանգէն ազատած ըլլար և գրպանէն թաշկինակը հանելով՝ իր քրտնաթոր ճակատը սրբեց։

— Յետո՞յ, հարցուց կրկին դողահար ձայնով մը։

— Թշնամիներ ամէն կողմ, շարունակեց Էպիւլ Հիւտա. որոնք ձեր Վեհափառութեան դէմ կը դաւեն, որոնք կը խուժեն ամէն կողմէ, հետզհետէ բազմանալով... այո՛, ոգիները այնպէս կ՚ըսեն... ահա՛ կը հասնին նոյնիսկ Պոլիս, նոյն իսկ պալատին մօտ, նոյն իսկ պալատէն ներս...։ փախէ՛ք, ահա ձեր նուիրական անձին մօտեցան... բայց չէ՛, չեն համարձակիր ձեր կեանքին դպչելու, չէ՛ չեն համարձակիր, չեն համարձակիր...։

Էպիւլ Հիւտա երեսի վրայ ինկաւ, ճակատը տախտակամածին զարնելով այնպիսի ուժգնութեամբ մը որ բաղխումին ձայնը ցնցեց Ապտիւլ Համիտը։ Գուշակը հինգ վայրկեան մնաց այդպէս ճակատը գետնին. իբր թէ բաղխումին սաստկութենէն մարած ըլլար, յետոյ յանկարծ գլուխը վեր առաւ, աչքերը բացաւ և սկսաւ ուժով մը շնչել, երկար ատեն շունչը բռնած մէկու մը պէս։

— Տակաւին հարցումներս չլմնցուի, ըսաւ բռնաւորը՝ ծերունիին նայելով։

— Բայց, վեհափառ տէր, ոգիները գացին, կակազեց Էպիւլ Հիւտա աղերսարկու շեշտով մը։

— Թո՛ղ նորէն գան։

— Վեհափառ տէր, ոգիները մահկանացուներու կամքին չեն հնազանդիր։

— Էպիւլ Հիւտա, ըսաւ Ապտիւլ Համիտ ձայնը մեղմելով, կարևոր հարցումներ ունիմ տակաւին, որոնց պատասխանը ստիպողական է. գիտեմ որ շատ յոգնեցար. և քեզի ժամ մը հանգիստ կը շնորհեմ և ասկէ զատ 500 ոսկի նուէր կ՚ընեմ, միայն թէ կ՚ուզեմ որ ոգիները կրկին կանչես։

— Աստուած երկար կեանք տայ թագաւորիս, պատասխանեց ծերունին մինչև գետին խոնարհելով։

Հինգ հարիւր ոսկի նուէրը բոլորովին մոռցնել տուած էր իր յոգնութիւնը և հիմա կ'ուզէր օգտուիլ Ապտիւլ Համիտի տրամադրութենէն. ուրիշ նուէր մըն ալ կորզելու համար։ Իր ըրած յայտնութիւնները թէև անախորժ բաներ էին և սակայն խորին ազդեցութիւն գործած էին բռնաւորին ախտաւոր երևակայութեանը վրայ։ Արդէն Էպիւլ Հիւտա որ երկար ատենէ ի վեր իր տիրոջ հետ յարաբերութեան մէջ էր, նշմարած էր որ Ապտիւլ Համիտ աւելի կարևորութիւն կուտար և կը զգածուէր իր գուշակութիւններէն երբոր աղետաւոր յայտնութիւններ ընէր. մինչդեռ լաւատես գուշակութիւններուն շատ հաւատք չէր ընծայեր և կը կարծէր որ ծերունին իրեն հաճելի ըլլալու համար ոգիներուն սուտ խօսեցնել կուտար։

Կէս ժամի չափ հանգչելէ ետքը, կախարդը ըսաւ.

— Վեհափառ տէր, կը զգամ որ գերագոյն ոգիները տակաւին մեր շուրջը կը դեգերին ու չեն հեռացած, եթէ հրաման կ'ընէք օգուտ քաղենք իրենց ներկայութենէն ու կրկին հրաւիրենք զիրենք հարցափորձելու համար։

— Լա՛ւ, սկսէ տեսնենք քու գործողութիւններուդ, պատասխանեց բռնաւորը։

Էպիւլ Հիւտա, որ միշտ ծունկի եկած կը մնար տախտակամածին վրայ, ոտքի ելաւ և սկսաւ իր քիչ մը առաջուան շրջանները ու շարժումները ճիշդ միևնոյն ձևով։

Երբ կրկին, աչքերը գոց գետին ինկաւ, գլուխը դէպ ի ձեղուն երկարած, գոչեց.

— Հարցուցէ՛ք, վեհափառ տէր, ոգիները պատրաստ են պատասխանելու։

Ապտիւլ Համիտ, որ անհամբեր կը սպասէր այդ վայրկեանին, ըսաւ.

— Կ'ուզեմ հասկնալ թէ Պոլսէն Եէմէն աքսորուած չորս աքսորեալները որոնք շոգենաւը Սուէզի Ջրանցքէն անցած ատեն խոյս տուած են, ո՞ւր կը գտնուին։

Ծերուկ կախարդին չրթունքը սկսան շարժիլ և քիչ յետոյ ըսաւ։

— Ոգիները ահա՛ կը պատասխանեն և կ՚ըսեն թէ այդ չորս անձերը ուրիշ բազմաթիւ մարդերով շրջապատուած՝ կը փախչին դէպ ի աւազուտ անապատը... արագ արագ կը փախչին առանց ետեւնին նայելու. բայց ահա՛ ուրիշներ որոնք ձիերնիք կը հալածեն ու պիտի հասնին անոնց, այսպէս կ՚ըսեն ոգիները։

—Պիտի հասնի՞ն ու պիտի բռնեն փախստականները, բայց ո՞վ են այդ ետեւնէն վազողները, գոչեց Ապտիւլ Համիտ յուզուած ձայնով մը։

— Այո՛, փախստականներուն ետեւէն կը հալածեն և կամաց կամաց անոնց կը մօտենան, ու փախստականները չեն կասկածիր թէ իրենց ետեւէն եկողներ կան... իրենց ընթացքը կը դանդաղեցնեն... ահա միւսները մօտեցան, մօտեցան...

Կախարդը կրկին գետին տապալեցաւ, ճակատը տախտակամածին զարնելով ու անշարժ մնաց։

Ապտիւլ Համիտ տհաճութեան շարժում մը ըրաւ.

— Այս մարդը պարզապէս, կա՛մ կը զառանցէ և կամ զիս խաբել կ՚ուզէ, ըսաւ ինքնիրեն, ո՞վ պիտի հալածէ փախստականները անապատին մէջ... խորամանկ ծերուկը ինծի հաճելի ըլլալու համար միտքէն առասպելներ կը հնարէ...

Էպիւլ Հիւտա գլուխը վեր առաւ և աչքերը բացաւ.

— Վեհափառ տէ՛ր, գոհ մնացի՞ք ոգիներու պատասխաններէն, հարցուց։

— Այդ ոգիներուն պատասխանները քեզ սուղի պիտի նստին, գոչեց ռնաւորը սրտմտած շեշտով մը, կը կարծես որ այդ խաբեբայութիւններուդ հաւա՞տք կ՚ընծայեմ... բայց արդէն առաջուց ըսի որ եթէ ըսածներդ չհաստատուին՝ այս անգամ քու արժանի պատիժդ պիտի գտնես... ուստի պատրաստուէ՛...։

— Վեհափառ տէր, գերագոյն ոգիները չեմ կարծեր որ սուտ խօսին, պատասխանեց ծերուկը խոնարհ՝ բայց հաստատուն ձայնով մը և եթէ նոյնիսկ իրենց խօսքերուն ճշմարտութիւնը կարելի չըլլայ հաստատել, ես պատրաստ եմ ոգիներու սիրոյն ձեր յարմար տեսած պատիժը կրել անտրտունջ։

Ապտիւլ Համիտ, առանց պատասխանելու, բարկութեամբ գլուխը անդին դարձուց, մինչ Էպիւլ Հիւտա ողորմուկ դէմքով մը ծունկի եկած, անշարժ կը մնար։

Յանկարծ դուռը զարնուեցաւ և Իզզէթ փաշա ներս մտաւ։ Քարտուղարին դէմքը կը ճառագայթէր և յայտնի էր որ աղէկ լուր մը կը բերէր։ Բռնաւորը իր թափանցող աչքերովը իսկոյն հասկցաւ ասիկա և զուարթ ձայնով մը հարցուց.

— Ի՞նչ կայ տեսնենք։

— Հեռագիր մը ստացայ այս միջոցիս Սամի պէյէն, որ ինչպէս յայտնի է, ձեր վեհափառութեան, չորս աքսորեալները փոխադրող շոգենաւին մէջ կը գտնուէր հսկողութիւն կատարելու համար, ըսաւ քարտուղարը։

— Ի՞նչ հեռագիր է, կարդա նայինք։

Իզզէթ փաշա իր ձեռքը գտնուած թուղթը բացաւ և հետեւեալը կարդաց.

«Սուէզի ջրանցքէն անցած միջոցնուս, գիշեր ատեն, երբ շոգենաւին մէջ ամէն մարդ քնացած էր, չորս աքսորեալները յաջողեցան փախչիլ, Բորթ-Սայիտէն, Նաւապետին թոյլտուութեամբ, շոգենաւին մէջ մնացող հինգ անձերու օժանդակութեամբ։ Շատ կասկածներ կան Օսման նաւապետի մեղսակցութեան մասին։ Ես, պարտ համարեցի Սուէզ հանելուս պէս զինուած օժանդակներու խումբ մը կազմել և փախստականներուն ետեւէն իյնալ և կը յուսամ որ շնորհիւ Աստուծոյ և վեհափառ Սուլթանին բախտի յաջողիմ զիրենք գտնել ու ձերբակալել, Երբ այս հեռագիրս Պոլիս հասնի, ես արդէն ճամբայ ելած և գուցէ նպատակիս հասած կ՚ըլլամ։»

Այս հեռագրին ընթերցումը խորին ազդեցութիւն մը ըրաւ Ապտիւլ Համիտի վրայ որուն աչքերը ուրախութենէ շողալ սկսան։ Յանկարծ նշմարեց ծերունի կախարդը որուն դէմքը նոյնպէս յաղթականօրէն կը ճառագայթէր։

— Արդէն ես այդ հեռագրին պարունակութիւնը գիտէի, ըսաւ Ապտիւլ Համիտ խօսքը իր սիրական քարտուղարին ուղղելով գոհունակ դէմքով մը՝ նոյն իսկ այդ հեռագրին մէջ չեղած մանրամասնութիւններն ալ գիտեմ...։

— Ճշմարիտը, վեհափառ տէր, զիս չափազանց կը զարմացնէք, պատասխանեց Իզզէթ փաշա, որովհետեւ հեռագիրը ճիշդ այս վայրկեանիս հասաւ եւ ես ալ փութացի անմիջապէս ձեր վեհափառութեան մատուցանել։

— Իմ տեղեկութիւններս հեռագրի միջոցաւ չեն հասած, շարունակեց բռնաւորը որ խիստ լաւ տրամադրութեան մը մէջ կը գտնուէր, այլ գերմարդկային միջոցներով։

— Վեհափառ տէր, ներեցէ՞ք որ խոստովանիմ թէ ձեր ըսածները չեմ ըմբռներ։

— Եւ սակայն շատ պարզ են ըսածներս, ինչ որ այդ հեռագիրը կը հաղորդէ, մեր շէյխ Էպիւլ Հիւտան մանրամասնօրէն պատմեց ինծի։

— Զարմանալի՜ բան, գոչեց քարտուղարը։

— Այո՛, եւ անոնք որ իր կարողութեան վրայ հաւատք չունին ու կը ծաղրեն զինքը կամ խաբեբայի մը տեղ կը դնեն, թող ամօթահար մնան, որովհետեւ, նորէն կը կրկնեմ Էպիւլ Հիւտա ո՛չ թէ միայն աքսորեալներուն հետապնդուած ըլլալը ըսաւ, այլ նոյն իսկ հաւաստեց թէ Սամի պէյ անոնց քով հասած ու ձերբակալած է զանոնք... այնպէ՞ս չէ Շէյխ Էպիւլ Հիւտա, աւելցուց Ապտիւլ Համիտ դէպ ի ծերունի գուշակը դառնալով։

Կախարդը ուրախ ու զուարթ դէմքով մը մօտեցաւ իր տիրոջ, մինչեւ գետին խոնարհութիւն մը ըրաւ եւ ըսաւ.

— Ես այս յայտնութիւններուն մէջ ոեւէ արժանիք մը

չունիմ պարզապէս երկնային ոգիներուն և ձեր բարձր վեհափառութեան միջև միջնորդի մը դերը կը կատարեմ...

— Եւ ես քու միջնորդչէքդ առատօրէն պիտի վճարեմ, պատասխանեց բռնաւորը թեթև մը ժպտելով...

— Աստուած ձեզի երկար կեանք պարգևէ։

Այս սուլթանական նոր շնորհը ապահովաբար 500 ոսկիէն պակաս չպիտի ըլլար, որով Էպիւլ Հիւտայի երկնային ոգինեները մէկ օրուան մէջ հազար ոսկի պիտի վաստկցնէին իրեն։

— Հիմա ա՛լ գնա՛ հանգչէ, որովհետև ոգինները քեզ շատ յոգնեցուցին, ըսաւ ծերունիին դառնալով։

— Ձեր վեհափառութեան կամքը կատարողը երբեք չի յոգնիր, պատասխանեց Էպիւլ Հիւտա, խոնարհելով ու ետև ետև երթալով մինչև դուռը։

Երբ Համիտ առանձին մնաց իր քարտուղարին հետ ըսաւ.

— Այս մարդը ճշմարտապէս տարօրինակ կարողութեան տէր է և կը հաւատամ որ ոգիներու հետ հաղորդակցութիւն ունի։

— Այնպէս է, ես ալ ձեր վեհափառութեան կարծիքէն եմ, պատասխանեց քարտուղարը շողոքորթութեամբ, եթէ ո՛չ անկարելի էր որ կարենար գիտնալ Սամի պէյի արշաւանքը, քանի որ այդ մասին մենք ո և է տեղեկութիւն չունինք։

— Հիմա պէտք է որ միջոցներ ձեռք առնենք դաւաճան նաւապետին դէմ, այդ մարդը գուցէ գաղտնի քօմիթէին անդամներէն է... շ՛ուտ ոստիկանութեան նախարարին լուր ղրկէ որպէսզի իր բնակած տանը մէջ գտնուողները ձերբակալուին. նոյնպէս պէտք է շուտով ձերբակալել բոլոր անոնք որոնց հետ ինքը կը տեսնուի կամ յարաբերութիւն ունի, այս գործողութիւնները պէտք է կատարուին առանց ժամանակ կորսնցնելու։

— Շատ աղէկ, վեհափառ տէր, այս վայրկեանին պէտք եղած հրահանգները կուտամ։

— Անկէ զատ, իսկոյն Սուէզ իրեն հեռագրէ՝ որ անմի-

Ջապէս իր չոգենաւով ճամբայ ելլէ Պոլիս վերադառնալու համար. Նոյնպէս Տարտանէլ լուր ղրկուած է որ չոգենաւը հոն հասնելուն պէս զայն վար դնեն ու նաւապետը ձերբակալելով, խիստ հսկողութեան տակ հոս ղրկեն։

— Հիմա ինչ որ հարկէ՝ կը հնազանդիմ։

— Այդ դաւաճանը և իր մեղսակիցները պէտք չէ որ մեր ձեռքէն խուսափին գոչեց բռնաւորը, հետզհետէ բորբոքելով։

— Շնորհիւ ձեր վեհափառութեան, ինչպէս ամենուն ալ արժանի պատիժը կուտանք։

— Օ՜ն, ժամանակ մի անցներ և գնա՛ հրամաններս կատարելու։

Համիտի սիրական քարտուղարը խոնարհելով հեռացաւ իր տիրոջ քովէն։

---

ԳԼՈՒԽ Գ.

## ԱՆԱՊԱՏԻՆ ՄԷՋ

Սամի պէյ մեծախօս ու խաբեբայ մարդ մը չէր։ Լրտեսութեան անարգ պաշտօնը ընդունած էր, բայց զայն քաջութեամբ և հաւատարմօրէն կը կատարէր։ Այն համոզումը ունէր թէ արդար և պատուաւոր ասպարէզ մըն էր իր ընտրածը։ Պոլսոյ մէջ իսկ, իր լրտեսութեան պաշտօնին մէջ, մեծամեծ ծառայութիւններ մատուցած էր Ապտիւլ Համիտի, հալածելով ու մատնելով բոլոր անոնք որ ազատական ձգտումներ ունէին ու կը համարձակէին բռնակալութեան դէմ բողոքելու։ Անգամ մը չէ վա-

բանած նոյնիսկ ժուռնալ մը գրել իր քեռայրին դէմ որ ազատական զինուորական մըն էր և որուն հետ միեւնոյն երդիքին տակ կը բնակէին։ Այս ժուռնալին վրայ քեռայրը Ֆիզան աքսորուած էր և իր քոյրն ալ սրտին ցաւէն հիւանդանալով մեռած։ Բազմաթիւ էին նաև անոնք որոնք զոհ գացած էին իր կեղծուպատիր բարեկամութեան և միամտութիւնը ունեցած էին մտերմական խօսակցութեան մը մէջ ազատական գաղափարներ յայտնելու կամ Եըլտըզի բռնաւորին վրայ քննադատութիւններ ընելու։

Իր այս նկարագրով Սամի պէյ սոսկումի առարկայ մը դարձած էր ամէնուն համար. իր եղբայրներն անգամ կը վախնային հետը խօսքի բռնուելէ, որովհետև վստահ էին որ կարող էր նոյն իսկ զիրենք մատնելու։ Ամէն մարդ կը ջանար խուսափիլ իր ներկայութենէն, այնպէս որ ալ գրեթէ առանձին կ'ապրէր ու այս բանը ա՛լ աւելի կատաղութեամբ կը լեցնէր իր հոգին։ Դէմը եկողին դէմքին վրայ կը ջանար կարդալ անոր մտքէն անցածը, վտանգաւոր մտածումներ գուշակել և զանոնք Եըլտըզ տեղեկագրել։

Երբ իրեն պաշտօն յանձնուեցաւ չորս աքսորեալներուն վրայ հսկելու և մինչև Արաբիա անոնց ընկերանալու, մեծ վարձատրութեան մը փոխարէն. շատ գոհ մնաց, որովհետև վերջին ժամանակներս այնքա՜ն ծայրայեղ կասկածանքով կը վարուէին իրեն հետ որ առիթ չէր ունենար ծառայութիւն մը մատուցանելու իր տիրոջ։ Հիմա կը յուսար որ իր շրջանակէն հեռանալով՝ պիտի կրնար նոր զոհեր գտնել զանոնք գազանին կլափը նետելու համար։ Առաջին օրէն աչքը տնկած էր Օսման Նաւապետին վրայ, որ քաղաքին ապականիչ մթնոլորտէն դուրս, ազատ ծովուն վրայ ապրելով միշտ ու լրտեսներու շարունակական վախին ազդեցութեան տակ չըլլալով, խօսելու և իր գաղափարները արտայայտելու աւելի ազատ ձև մը ունէր և յաճախ իր մտածումը ըսելու քաջութիւնը կ'ունենար։ Սամի պէյ արդէն որոշած էր այդ մարդուն կորուստը երբոր Սու-

էզի Ջրանցքին մէջ փախուստը տեղի ունեցաւ։ Այդ անակընկալ պատահարը խորապէս ցնցեց զինքը։

— Եթէ կարենամ այս առթիւ փայլուն ծառայութիւն մը մատուցանել Սուլթանին, ա՛լ վճռականօրէն բախտս շինած կ'ըլլամ, մտածեց, փառք, պատիւ, հարստութիւն, ամենուն ալ կը տիրանամ։

Բայց այդ ծառայութիւնը մէկ կերպով միայն կարելի էր մատուցանել, այն է փախստականները ձեռք ձգելով և զանոնք կրկին Ապտիւլ Համիտի դարձնելով։ Արդարև չափազանց դժուարին ձեռնարկ մըն էր այս, բայց վարձատրութիւնը այնքա՜ն մեծ պիտի ըլլար որ կ'արժէր փորձել։ Եւ Սամի պէյ չվարանեցաւ։

Ինչպէս տեսանք, Սուէզի մէջ յաջողեցաւ քանի մը ժամուան մէջ, շնորհիւ իր քովը գտնուած դրամին, արկածախնդիր Պէտէվիներէ խումբ մը կազմել և մեզ ծանօթ հեռագիրը պալատ ուղղելէ ետքը, անոնց հետ անցնիլ ասիական եզերքը, իր արշաւանքը սկսելու համար։

Սամի պէյ Պաղտատի և Պէյրութի մէջ պաշտօնավարած ըլլալով, ո՛չ թէ միայն ծանօթ էր արաբերէն լեզուին՝ այլ նաև խիստ լաւ կը ճանչնար Պէտէվիներու կեանքն ու բարքերը։

Մէկ քանի խօսքով բացատրած էր իրենց արշաւանքին նպատակը՝ անոնց ըսած էր որ Սուլթանին ծառայութեան մէջ կը մտնէին և թէ գործը եթէ յաջողէր մեծամեծ վարձատրութիւններ կը սպասէր իրենց։ Բայց ապագայի խոստումներով միայն չգոհանալով՝ կանխիկ գումարներ ալ տուած էր իրենց։

Սամի պէյ երբ ափ յափոյ կազմած իր փոքրիկ խումբով անցաւ ասիական եզերքը, կարճ խորհրդակցութիւն մը ունեցաւ Պէտէվիներու մեծին՝ Շէյխ Սալէհի, հետ որ 55 տարեկան, կայտառ ու պատկառելի ծերունի մըն էր։

— Կարծեմ թէ մեր կազմած խումբը բաւական չէ մեր ձեռնարկը յաջողութեամբ գլուխ հանելու համար, դիտել տուաւ։

— Քանի՞ հոգի են փախստականները։

— Չորս հոգի աքսորեալները որոնց մին կին է, հինգ իրենց ընկերները և երեք հոգի նաւակին մէջ սպասողները որոնք նաւակը ձգելով անոնց հետ գացին, ուրեմն ընդ ամենը 12 հոգի, մինչդեռ մենք եօթը հոգի ենք միայն։

— Այո՛, իրաւունք ունիս, պէտք է նոր օժանդակներ ալ գտնենք, պատասխանեց Պէտէվին... առ նուազն հինգ հոգի ևս պէտք է, որպէսզի ուժերը հաւասար ըլլան, յետոյ ոտքով չէ՞ որ պիտի յաջողինք այդ փախստականներուն ետեւէն հասնիլ, պէտք է նաև ուղտեր վարձել կամ ծախու առնել։

— Դրամը ինէ, պէտք եղածները ճարել քենէ, պատասխանեց Սամի պէյ։

— Երբոր դրամ կայ մէջտեղ ամէն բան կը դիւրանայ։

Ապտիւլ Համիտի գործակալը իբրեւ պատասխան՝ ձեռքը գրպանը տարաւ և ափ մը ոսկի առնելով Պէտէվինին երկարեց։ Ծերունի Արաբացիին աչքերը շողացին, ոսկիները սահեցուց իր մէջքի մետաքսէ գօտիին մէջ և ըսաւ.

— Օ՛ն, գործի սկսինք։

Փոքրիկ խումբը արագօրէն քալել սկսաւ աւազուտ ու տափարակ դաշտին մէջ և ժամ մը ետքը հասաւ փոքրիկ գիւղ մը ուր քանի մը արմաւենիի ծառեր կ՚երեւային։ Շէյխ Սալէհ իսկոյն գիւղին ծերունիները իր գլուխը ժողվեց և անոնց հետ գաղտնաբար խորհրդակցեցաւ, մինչ Սամի պէյ ծառի մը տակ կը հանգչէր։

Այդ խորհրդակցութեան արդիւնքը այն եղաւ որ իրիկուան դէմ արդէն տասներկու ուղտ և ուրիշ վեց գիւղացի Պէտէվիններ ալ պատրաստ կը սպասէին գիւղին ծայրը։

Այսպէս, արշաւախումբը, ա՛լ աւելի զօրացած, ճամբայ ելաւ և շուտով անյայտացաւ աւազուտ դաշտին մէջ։

Երբ բաւական ճամբայ առին, լրտեսը մօտեցաւ Պէտէվիններու պետին և ըսաւ.

— Շէյխ Սալէհ, ինչպէ՞ս պիտի կրնաք այսպէս ըստ բախտի երթալով փախստականներուն հետքը գտնել...։

— Այդ մասին բնա՛ւ միտքդ մի չարչարեր, պատասխանեց ծերունին, անապատը միայն ուրիշները կրնայ մոլորեցնել, մինչդեռ մենք անոր ամէն ծակը ծուկը գիտենք և կրնանք, աչքերնիս գոց, մեր ճամբան գտնել... ասկէ զատ տասը ճամբայ չի կայ այս անապատէն անցնելու համար, այլ միայն մէկ ուղի մը, հետևաբար վախ չի կայ, խնդիրը այն է որ կարենանք իրենց ետևէն հասնիլ, անապատէն դուրս չելած:

— Եւ որչա՞փ ժամանակ պէտք է այս անապատէն անցնելու համար:

— Առ նուազն մէկ օր, այն ալ անընդհատ ու արագօրէն ուղտը քշելով:

— Ուրեմն պարապ տեղը այս արշաւանքը կազմակերպեցինք:

— Ինչո՞ւ համար:

— Որովհետև մեր հետապնդած անձերը տասներկու ժամէ ի վեր է որ արդէն ճամբայ ելած են...:

— Այո՛, բայց անոնք ստիպուած են դէպի մեր ուղղութեամբը գալու շեղակի կերպով, մինչդեռ մենք ուղղակի կ'երթանք, այնպէս որ վեց ժամի չափ կը շահինք և այն ատեն մեզ իրարմէ բաժնող հեռաւորութիւնը միմիայն վեց ժամի կը իջնէ:

— Այդ ալ սակայն բաւական մեծ հեռաւորութիւն մըն է:

— Անշուշտ եթէ այդ մարդիկը Պէտէվիներ ըլլային և վարժութիւն ունենային ուղտով ժամերով ճամբորդելու...: Ես վստահ եմ որ անոնք ամէն ժամ պիտի ստիպուին կանգ առնելու և հանգչելու մանաւանդ որ իրենց հետ կին մըն ալ ունին:

— Շատ իրաւացի է այդ դիտողութիւնդ, պատասխանեց Սամի պէյ հիանալով իր առաջնորդին նրբամտութեան վրայ. ուրեմն կրցածնուս չափ մեր ընթացքը արագենք... ես ուղտ հեծնելու վարժուած եմ. ուստի իմ մասիս վախնալիք բան մը չունինք:

Արշաւախումբը արդարև սկսաւ աւելի արագ երթալ։

Արևը արդէն հորիզոնին ետև անյայտ կ'ըլլար և հաճելի զովութիւն մը կը տիրէր։ Ամենքը լռած էին և միմիայն ուղտերու ոտնաձայնը կը լսուէր աւազին վրայ։

Սամի Պէյ հակառակ իր խօսքերուն, կը սկսէր սոսկալի կերպով յոգնիլ ուղտին անընդհատ ելևէջներէն, այսուհանդերձ ինքզինք կը զսպէր։ Փախստականներուն ետևէն հասնելու փափաքը այնքա՛ն սաստիկ էր իր մէջ որ մոռցնել կուտար ամէն ֆիզիքական տառապանք։

Շէյխ Սալէհ և իր ընկերները միշտ կը քշէին իրենց ուղտերը և յաճախ կը ստիպուէին ետևնին դառնալ, իրենց միացնելու համար Սամի պէյը որ միշտ հեռու կը մնար։

Ա՛լ գիշերը բոլորովին պատած էր ամէն կողմ, բայց երկինքը այնքա՛ն պայծառ էր որ յստակօրէն կը տեսնուէր անսահման անապատը։ Չորս ժամէ ի վեր այսպէս կ'երթային և տակաւին ո և է հետք չէին գտած։ Սամի պէյ որ Շէյխ Սալէհի խօսքերէն այնքա՛ն յոյս առած էր, կը սկսէր անհամբերութեան նշաններ ցոյց տալ, մանաւանդ որ կը զգար թէ այդ արշաւը երկար ատեն չպիտի կրնար շարունակել և թէ իր ոյժերը, հակառակ իր կամքին, զինքը կը լքէին։

Այս կէս մը յուսահատական կացութեան մէջ էր երբ Շէյխ Սալէհի ձայնը զինքը կանչեց։ Իսկոյն փութաց իր ուղտը անորինին մօտեցաւ։

— Կարծեմ մեր նպատակին հասանք, ըսաւ Պէտէվին։

— Ինչպէ՞ս, գոչեց Սամի պէյ։

— Հեռուն, հորիզոնին վրայ սև կէտերու շարժիլը չե՞ս նշմարեր կոր։

Սամի պէյ աչքերը խոշոր խոշոր բացաւ և դէպի ցոյց տրուած տեղը մը ուղղեց։

Բայց ինք անապատի զաւակներուն վարժ ու հեռատես աչքերը չունէր․ ի զո՛ւր իր նայուածքը յառեց դէպի անսահման հորիզոնը։

— Ոչ՛, բան մըն ալ չեմ նշմարեր կոր։

— Զարմանալի՜ բան, գոչեց Շէյխ Սալէհ, ես ընդհակառակը յստակօրէն կը տեսնեմ կոր ամբողջ խումբ մը որ կը յառաջանայ և որուն քանի հոգիէ բաղկացած ըլլալը քիչ մը ետքը պիտի հաշուեմ։ Հիմա վազցնենք մեր հեծանեյլները։

Սանձի պարզ շարժում մը բաւական եղաւ որպէսզի Պէտէվլիներու մեծաւորին ուղտը իր ընթացքը արագէ։ Միւս ուղտերը ինքնաբերաբար հետեւեցան իրենց առաջնորդին օրինակին։

Աւազուտ անապատին մէջ այս արշաւանքը կէս ժամու չափ տեւեց։

— Այո՛, ապահովաբար մեր փնտռած փախստականներն են, ըսաւ Շէյխ Սալէհ, ետին դառնալով ու խօսքը Սամի պէյին ուղղելով, ա՛լ հիմա որոշ կերպով կը տեսնեմ կոր զիրենք, մէկ, երկու, երեք, չորս, հինգ, վեց, եօթը, ութը, ինը՛, տասը հոգի են․․․։

— Այո՛, այո՛, ըսին միւս Պէտէվլիներն ալ որոնք իրենց պետին խօսքերը լսած էին, տասը հոգիի չափ կան և իրենց ուղտերն ալ յոգնած կ'երեւան կոր, որովհետեւ դանդաղօրէն առաջ կ'երթան։

Սամի պէյ կրկին զննեց հորիզոնը և երերացող ստուերները։

— Ճիշդ է․ ըսաւ, ես ալ այժմ կը տեսնեմ կոր․․․։

— Շիտակը չէի յուսար որ այսչափ շուտ պիտի հասնինք ետեւնուն, շարունակեց Շէյխ Սալէհ․ կ'երեւայ որ ճամբան արգելք մը ունեցած են և տեղ մը կանգ առած․․․ բախտը մեզի յաջող կ'երեւայ և Աստուած մեզի հետ է։

— Միայն թէ ի՞նչ ապահովութիւն ունինք թէ այդ խումբը մեր փնտռած փախստականներէն կազմուած է, առարկեց Սամի պէյ։

— Ներքին ձայն մը ինծի կ'ըսէ որ անոնք են, պատասխանեց Շէյխը, արդէն կէս ժամէն յայտնի կ'ըլլայ, որովհետեւ կը յուսամ որ այս ընթացքով շուտով պիտի հասնինք իրենց։

Խօսակցութիւնը հոս կանգ առաւ և ուրիշ ձայն չէր լըսուեր եթէ ոչ ուղտերու ոտնաձայնը աւազին վրայ։

Սամի պէյ, հակառակ իր անտանելի յոգնութեան և ֆիզիքական տառապանքին, անհուն հրճուանք մը կը զգար այժմ։ Աչքը չէր կրնար զատել հորիզոնին վրայ որոշապէս տեսնուած սև կէտերէն, որոնք հետզհետէ կը մեծնային։

Օ՜հ, եթէ իրաւցնէ փախստականները ըլլային անոնք, եթէ յաջողէր ձեռք ձգել այդ չորս աքսորեալները և իրենց ընկերները, եթէ ամէնքը մէկէն կարենար Պոլիս տանիլ ու յանձնել Աբտիւլ Համիտին, ի՜նչ մեծ փառքի և պատիւի պիտի արժանանար, ի՜նչ փայլուն դիրք մը պիտի գրաւէր Եըլտըզի պալատին մէջ, և բոլոր անոնք որ զինքը չէին սիրեր կամ նոյնիսկ կ՚ատէին, որքա՜ն ակնածանքով պիտի խոնարհէին իր զօրութեանը առջև։ Սամի պէյ այդ հեռապատկերը աչքին առջև բերելով, նոր ոյժ ու կորով կը ստանար ու բոլորովին կը մոռնար իր ոսկորներուն ջախջախումը յարաշարժ ուղտին տատանումներէն։

Քսան վայրկեան ևս այսպէս յառաջացան գրեթէ վազն ի վազ։ Հիմա ա՛լ հեռուէն տեսնուած ստուերները որոշ կերպարանքներ առած էին, միայն թէ չէյխ Սալէհ սխալած էր իր քիչ մը առաջուան հաշիւին մէջ․ ո՛չ թէ տասը, այլ ութը ուղտեր միայն կ՚երևային։ Այս կէտը Սամի պէյ դիտել տուաւ Պէտէվիներու մեծաւորին։

— Այո՛, սխալ տեսայ, պատասխանեց Շէյխը։ Բայց աւելի աղէկ, եթէ մեր թշնամիները փոխանակ տասնի՝ միայն ութը հատ են, յաղթանակը աւելի ապահով կ՚ըլլայ։

— Երբոր մօտենանք իրենց, ի՞նչպէս պիտի վարուինք, հարցուց Սամի պէյ։

— Նախ պէտք է որ բոլորովին վստահ ըլլանք թէ մեր տեսած մարդիկը բո՛ւն իսկ փախստականներն են, յետոյ զիրենք կը հրաւիրենք անձնատուր ըլլալու և եթէ դիմադրեն,

այնատեն մեր զէնքերուն կը դիմենք․ կարծեմ անկէ ուրիշ միջոց չի կայ իրենց հետ բանակցելու։

— Իրաւունք ունիս, մրմռաց Ապտիւլ Համիտի գործակատարը իր ակռաներուն մէջէն։

Եւ սակայն կ'երեւար որ միւս խումբը վերջապէս նշմարած էր իրենց ետեւէն եկողները և կասկածելով անոնց դիտաւորութեան վրայ, արագած էր իր ընթացքը։

— Ա՜, կը սկսին փախչիլ․ ուրեմն անոնք են, գոչեց Շէյխ Սալէհ, իր ուղտին ընթացքը ա՛լ աւելի արագացնելով։

Յայտնի կ'երեւար որ միւս խումբը նշմարած էր թէ մեր Պէտէվիները իրենց ետեւէն ինկած էին, որովհետեւ յանկարծ սովորական ճամբէն շեղելով՝ դէպի ձախ դարձաւ։

— Օ՛ն, ձեզ տեսնեմ, վազցուցէ՛ք ձեր ուղտերը, գոչեց չէյխը իր մարդոց, խումբին գլուխը անցնելով։

Միւսները նոյնքան արագ կարող չէին փախչիլ և երկու խումբերուն միջեւ եղած հեռաւորութիւնը հետզհետէ կը կարճընար։ Կէս ժամէ ի վեր այս արշաւը կը շարունակուէր երբ միւս խումբը մէկէն կեցաւ։

— Հասկցան որ չպիտի կրնան փախչիլ, ու հիմա դիմադրութեան կը պատրաստուին, ըսաւ Շէյխ Սալէհ։

Պէտէվիններու մեծին խօսքը կարծես հաստատելու համար՝ դիմացի կողմէն մէկ քանի հրացաններ պարպուեցան և գնդակները սուրալով անցան իրենց գլխուն վրայէն։

— Դուք ալ կրակ ըրէ՛, գոչեց չէյխը, օրինակը ինք տալով և հրացանը պարպելով։

Երկու խումբերուն միջեւ կռիւը սկսած էր։ Տասը վայրկեանի չափ տեւեց այս հրացանաձգութիւնը, առանց երկու կողմին վնաս մը պատճառելու։

— Առա՛ջ, հրամայեց Շէյխ Սալէհ, ջանանք աւելի մօտենալու, որպէսզի կարենանք մեր գնդակները օգտակարապէս գործածելու։

Հազիւ թէ քիչ մը յառաջացած էին, նոր հրացանաձը-

գութիւն մը, շատ աւելի ուժգին, ոկսաւ Դիմացի կողմէն և այս անգամ Պէտէվլիններէն մին, վիրաւորուած, վար գլտորեցաւ ուղտին կռնակէն։

— Ապու Հասան, վիրաւորուեցա՞ր, հարցուց Շէյխը, գետին ինողին դառնալով։

— Այո՛, պատասխանեց միւսը, բայց կարծեմ վէրքս մահացու չէ։

Դիմացի կողմէն արձակուած երկրորդ գնդակ մը այս անգամ անկենդան գետին փռեց Շէյխ Սալէհի քովն ի վեր կռուող Պէտէվլի մը։

Այս երկու զոհերը, Պէտէվլիները գրգռած էր և անոնց վրէժը լուծելու համար սկսան ա՛լ աւելի կատաղօրէն իրենց հրացանները պարպել։ Եւ սակայն ուրիշ գնդակ մը երրորդ Պէտէվլի մըն ալ գետին ձգեց, ծանրապէս վիրաւորուած։

Այս ձախողուածքը պահ մը յուսահատեցուց Շէյխ Սալէհը որ կատաղօրէն գլուխը շարժելով մռնչեց։

— Թշուառականները մենէ լաւագոյն կերպով նշան կ՚առնեն կոր . . .։

Իրա՛ւ ալ մինչ Սամի պէյի խումբը երեք հոգի կը կորսընցնէր, միւսներէն տակաւին ո՛չ ոք միասուեր էր։

— Պէտք է որ աւելի մօտենանք իրենց, ըսաւ Շէյխ Սալէհ . . . Թո՛ղ Ալլահ մեզի օգնական ըլլայ։

Եւ ահա խումբը սկսաւ յառաջանալ խօլական արշաւով մը, միեւնոյն ատեն հրացանաձգութիւնը շարունակելով։

Սամի պէյ, բոլորովին վտանգաւոր, հազիւ հազ կրնար իր ուղտը առաջ քշել և գերմարդկային ջանքեր կ՚ընէր իր ֆիզիքական կորովը պահելու։ Պիտի նախընտրէր անշուշտ իր եղած տեղը մնալ և թոյլ տալ որ իր ընկերները յառաջանային առանձին, բայց ասիկա ո՛չ թէ միայն վատութիւն մը պիտի ըլլար, այլ և գուցէ անոնց եռանդը խակ պիտի մարէր, ուստի բոլոր ուժը հաւաքեց և հեւի հեւ հետեւեցաւ կռուող-

ներուն՝ որոնք վառօդին հոտէն գինովցած, առաջ կը խու-ժէին սպառնական աղաղակներ արձակելով։

Այս կատաղի յարձակումը չշուարեցուց միւսները որ ա-ռանց իրենց տեղերէն քայլ մը ետ երթալու, շարունակեցին հրացանաձգութիւնը։ Այս անգամ, Պէտէվիններուն մէջէն եր-կու հոգի մէկէն ինկան գնդակներու տակ։ Յետոյ, ուրիշ գըն-դակ մը մեռած գետին տապալեց երրորդ մը։

Շէյխ Սալէհ յանկարծ իր ուղտին գլուխը դարձուց և գոչեց.

— Փախէ՛ք, ընկերներ...

Իրենցմէ արդէն վեց հոգի վիրաւոր կամ մեռած, ինկած էին և ծերունի Պէտէվին կը տեսնար որ այլեւս կարելի չէր պայքարը շարունակել։ Յայտնապէս կ՚երեւար որ թշնամին իրենցմէ զօրաւոր էր թէ՝ իր զէնքերով, թէ հրացանաձգու-թեամբ։ Եւ ահա՛ ասոր համար փախուստի հրամանը արձա-կած էր և օրինակն ալ տուած՝ իր հեծած ուղտը ետ դարձը-նելով ու խօլական վազքով մը զայն քշելով։ Սամի պէյ, յու-սահատ կատաղութեամբ մը, ինքն ալ իր ուղտը ետ դարձուց և սկսաւ վազցնել։

Թշնամի խումբը պահ մը անշարժ կեցաւ, հրացանաձգու-թիւնը դադրեցնելով, կարծես խորհրդակցելու համար, յետոյ յանկարծ սկսան հալածել փախչողները։

Շէյխ Սալէհ և Պէտէվինները զգացին սպառնացող վտան-գը, նոր ուժգնութեամբ մը սկսան իրենց ուղտերը վազցնել ու մէկէն ցիր ու ցան բաժնուեցան իրարմէ, անսահման անա-պատին մէջ։ Սամի պէյ, որ արդէն ետև մնացած էր, շուա-րած մնաց, չորս դին նայեցաւ, փախչողներուն մէջ Շէյխ Սա-լէհը որոշելու և անոր հետեւելու համար, սակայն չկրցաւ և ինքն ալ առանձին, ըստ բախտի, ուղտը առաջ քշեց։

Պէտէվիններու այս ցիր ու ցան բաժանումը շուարեցուց միւս խումբը որ հրաժարեցաւ իր հալածանքէն։ Միայն թէ իրենցմէ մին իր ուղտը առաջ քշեց. տեսնելով որ Սամի պէյ

առանձին մնացած էր ։ Սուլթանին գործակատարը տեսաւ այդ առանձին թշնամին որ դէպի իրեն կուգար, ուզեց փախչիլ, բայց ա՛լ կարողութիւն չէր մնացած վրան և հազիւ դժուարաւ կրցաւ քանի մը հարուած տալ խեղճ կենդանիին որուն վրայ հեծած էր և որ չէր գիտեր ի՛նչ ուղղութեամբ երթալը ։

Պէտէվիները արդէն աներեւոյթ եղած էին և հորիզոնին վրայ ցիր ու ցան միայն սեւ կէտեր կը նշմարուէին ։ Յանկարծ հրացան մը պայթեցաւ Սամի պէյի ետեւէն՝ յետոյ երկրորդ և երրորդ հարուած մը և կենդանին որուն վրայ կը գտնուէր, կքեցաւ ու գետին ինկաւ ։ Հարուածները զայն վիրաւորած էին ոտքէն ։

— Սամի պէյ վար ցատքեց ուղտին կռնակէն և սկսաւ իր հրացանը փնտռել որ գետին ինկած էր, բայց հազիւ թէ զայն նշմարած ու գետին ծռած էր, նոր գնդակ մը եկաւ զինքն ալ վիրաւորելու աջ թեւէն ։ Սուր ճիչ մը արձակեց, բնազդաբար ձախ ձեռքը վիրաւորեալ թեւին վրայ դրաւ և այնպէս անշարժ մնաց ։

Հալածիչը արդէն իրեն մօտեցած էր ու ուղտէն վար ցատքելով՝ րէվօլվէրը ձեռքը բռնած պէպի իրեն կը յառաջանար ։

— Մի՛ շարժիր, եթէ ո՛չ գլուխդ կը ջախջախեմ, պոռաց իր վրայ գալով ։

— Ի՞նչ կ՚ուզես ինէ, պատասխանեց Սամի պէյ այլայլած դէմքով մը ։

Միւսը չպատասխանեց, եկաւ վիրաւորեալին քով, ծռեցաւ, անոր դէմքը զննեց և յետոյ, հեգնական ժպիտով մը, ըսաւ.

— Վա՛յ, Սամի պէյ, դո՞ւք էք եղեր, ուրեմն չենք սըխալած մեր ենթադրութեան մէջ.

Լրտեսը, իր կարգին, ուշադրութեամբ նայեցաւ իր խօսակցին և իսկոյն ճանչցաւ այն երիտասարդներէն մին որ Բօրթ-Սայիտէն, իբրև կին ծպտուած, իրենց չոգենաւը մտած էր ընկերներով ։

— Այո՛, ես ինքս եմ, ըսաւ խրոխտ շեշտով մը։

— Բայց կարծեմ դուք ելմական նախարարութեան կողմէ իբրեւ պաշտօնեայ Արաբիա կ'երթայիք՝ ուրեմն ի՞նչ գործ ունիք գիշեր ատեն այս անապատին մէջ։

— Եթէ չեմ սխալիր դուք ալ Ճիտտէ կ'երթայիք հոնկէ Ճիպութի անցնելու համար, եւ ահա՛ դուք ալ գիշեր ատեն անապատին մէջ կը գտնուիք, պատասխանեց Սամի պէյ, մինչ իր վիրաւորեալ թեւը բռնելով, ու աչքը չհեռացնելով իր հրացանին վրայէն որ իր քովը, աւազին վրայ կը հանգչէր։

Երիտասարդը նշմարեց թէ ո՛ւր կ'ուղղուէին Սամի պէյի ակնարկները. արագ շարժումով մը ծռեցաւ, հրացանը գետնէն առաւ եւ հեռուն նետեց։ Այդ միջոցին Սամի պէյ, ձախ ձեռքը ետեւ տարաւ եւ ռէվոլվէրը հանելով իսկոյն երիտասարդին վրայ ուղղեց եւ կրակ ըրաւ։

Գնդակը վրիպեցաւ սակայն եւ երկրորդ հարուածը չքաշած, արդէն երիտասարդը իր վրայ խոյացեր ու ձեռքէն, յափշտակած էր զէնքը։

— Հիմա կարծեմ կրնանք հանդարտօրէն խօսիլ, ըսաւ երիտասարդը։

Սամի պէյ պատասխան չտուաւ։

— Գիտեմ որ մեզի հալածելու համար կուգայիր, շարունակեց, ո՞ւր էին միւս ընկերներդ։

— Վատեր որոնք զիս ձգելով փախան, պատասխանեց վիրաւորը։

— Անիկա անորոշ խօսք մըն է. յայտնապէս ըսէ՛ ո՛րոնք էին ընկերներուդ... եւ մանաւանդ զիս խաբել մի փորձեր, գիտես որ կեանքդ ձեռքիս մէջն է։

Սամի պէյ, որուն վէրքը շատ թեթեւ էր, շարժում մը ըրաւ, աւազին վրայ տեղաւորուեցաւ եւ ըսաւ.

— Քեզ խաբելու պէտք չունիմ, այո՛, ձեզի կը հալածէի եւ կը յուսայի որ պիտի կրնայի աքսորեալները ձեռք անցնել եւ զանոնք կրկին յանձնել օրինաւոր իշխանութեան։ Անոնց

վրայ հսկելու պաշտօն ունէի և, իբրև հաւատարիմ պաշտօնեայ, իմ պարտականութիւնս էր այս մասին ձեռքէս եկածը ընել։ Ատոր համար, երբոր շոգենաւը Սուէզ հասաւ, իսկոյն Պէտէվիններէ խումբ մը կազմեցի և ճամբայ ելայ, ահա՛ իրողութիւնը... հիմա քանի որ զինաթափ եղած եմ և դուն զինեալ ես, կրնաս ուզածդ ընել։

— Ուրախ եմ որ անկեղծօրէն ամէն բան խոստովանեցար պատասխանեց երիտասարդը։ Հիմա պատրաստուէ՛ քու արժանի պատիժդ ընդունելու...։

— Ինչ ընել կ՚ուզես, գոչեց Սամի պէյ յուզուած ձայնով մը։

— Ընել կ՚ուզեմ որ իբրև գաղտնի կազմակերպութեան անդամ պաշտօն յանձնուած է ինծի ձեզ պատժելու և այս պաշտօնս այժմ պիտի կ՚ատարեմ։

— Ի՞նչ, գոչեց Սամի պէյ, անզէն մարդ մը որ ինքզինք պաշտպանելու ո և է միջոց չունի. որ թևէն վիրաւորուած է որ ոտքի կանգնելու իսկ կարող չէ, միթէ պիտի կրնա՞ս պաղարիւնութեամբ սպաննել այսպէս որովհետև կ՚ենթադրեմ որ քու ըսած պատիժդ պարզ մարդասպանութիւնէ ուրիշ բան չի կրնար ըլլալ։

— Եւ քու տէրդ, որուն դուն հաւատարմաբար ծառայելու համար այսպէս մեզի հալածեցիր մինչև անապատներուն խորը միթէ տարբեր կերպո՞ կը վարուի, միթէ ինքն ալ անզէն ու անպաշտպան մարդիկը սպաննել չի՞ տար, ամէն օր ամէն ժամ և միթէ դուն ալ նոյնը չպիտի ընէի՞ր եթէ մեզի քու ձեռքիդ մէջ ունենայիր...

Սամի պէյ չպատասխանեց։

Երիտասարդը շարունակեց.

— Ես որ քեզի կը խօսիմ այս ժամուս, գիտե՞ս ո՛վ եմ... Հարպիէի վարժարանին նախկին աշակերտ մը որ քեզի պէս վատ խաֆիէներու ձեռքով ձերբակալուած, բանտարկուած, տանջանքներու ենթարկուած ու յետոյ կապկպուելով, ծովը

նետուած է խեղդուելու համար... իր շատ մը ընկերներուն հետ և որ հրաշքով մը կրցած է ազատիլ ու իր կեանքը նը-ւիրել ազատութեան և վրէժխնդրութեան գործին...։ Եւ դուն կ'ուզես որ յանուն խղճահարութեան կամ մեծանձնութեան, յե՞տս ընկրկիմ, կ'ուզես որ ներողամտութիւն կամ գո՞ւթ ու-նենամ այնպիսի արարածներու մասին որոնց կեանքը ոճիր ու վատութիւն կը ներկայացնեն, որոնք ո՛չ թէ միայն պատճառ կ'ըլլան հազարաւոր անմեղներու չարաչար մահուան, այլ նոյն իսկ աւելի մեծ եղեռն մը կը գործեն հայրենիքը մատնելով... դուն, առանձին, ո՞վ գիտէ քանի՜ քանի՜ թշուառ զոհերու արիւնը ունիս խղճմտանքիդ վրայ. որքա՜ն անէծքներ արդեօք գերեզմաններու խորէն, կ'ուղղուին քու անարգ էութեանդ... քեզի բնաջինջ ընելը ոչ թէ ոճիր մը՝ այլ աստուածահաճոյ ա-ղօթք մըն է....։

Երիտասարդը այս խօսքերը արտասանելէ ետքը, գրպա-նէն ռէվոլվէրը հանեց և ուղղեց Սամի պէյի ճակատին, որուն մինչև այն ատեն պահած պաղարիւնութիւնը տեղի տուած էր սոսկալի յուզումի մը։ Գոյնը ահռելի կերպով դեղնած էր և շրթունքը կը դողդղային։ Մահուան անխուսափելի պատկերը կը ցցուէր իր սահմռկած աչքերուն։

— Ներէ՛ ինծի, մրմնջեց ահռելի ձայնով մը։

— Թո՛ղ Աստուած ներէ, եթէ կուզէ, պատասխանեց ե-րիտասարդը և կրակ ըրաւ, ետեւէ ետև երեք անգամ։

Ապտիւլ Համիտի հաւատարիմ լրտեսը ահռելի հռնդիւն մը արձակեց և անշունչ գետին ինկաւ։

Իր փառասիրական երազները վերջացած էին....։

Երիտասարդը պահ մը տխրութեամբ դիտեց իր ոտքերուն առջև փռուած դիակը։

— Այս ոճիր ալ Համիտի հաշուոյն պէտք է անցնի, խոր-հեցաւ։

Յետոյ, մօտեցաւ իր ուղտին որ իր ոտքերուն վրայ նըս-

*տած կը հանգչէր, վճռական հանդարտութեամբ մը։ Հեծա-ւոր քամակը և զայն ոտքի հանեց ու արագօրէն վաղցնելով աներեւոյթ եղաւ անապատի մթութեան մէջ։*

---

ԳԼՈՒԽ Դ.

## ՔՕՄԻԹԷՆ ԿԸ ԳՈՐԾԸ

*Մեր վերը պատմած դէպքերէն քանի մը ամիս ետքը, 1905 յունվարի մէջ, ցուրտ օր մըն էր։ Մինչեւ իրիկուն գը-րեթէ անընդհատ ձիւնած էր և փողոցները ճերմակ սաւանով մը պատած էին։ Մութը կոխելէ ետքը, ձիւնը ա՛լ աւելի սաստկացած, խոշոր խոշոր կ՚իջնար։*

*Ղալաթիոյ կամուրջին հրապարակը մեծ եռուզեռում մը կար, ամէն մարդ կը փութար ժամ առաջ տունը համնիլ, տաքուկ վառարանին քով հանգչելու համար, ու ձիւնին տակ բազմութիւնը կը շտապէր Թիւնէլ կամ Թրամվէյի կառքերը։*

*Այդ շտապող ամբոխին խառնուած կը քալէին երկու հո-գի, թեւթեւի, միեւնոյն հովանոցին տակ պատսպարուած։ Այդ անձերէն մին քառասուն տարեկանի մօտ, նիհար, եր-կայնահասակ և անմօրուս մէկն էր, իսկ միւսը շատ աւելի ե-րիտասարդ, հազիւ քսանըհինգ տարեկան խարտեաշ ու վառ-վռուն աչքերով, միջահասակ ու գիրուկ անձ մըն էր։ Կա-մուրջին կողմէն գալով՝ ուղղուեցան դէպի Թրամվէյի գիծը, հոն պահ մը վարանած մնացին, կարծես իրենց երթալիք տե-ղը չի գիտնալով, յետոյ կրտսերը ըսաւ ցած ձայնով.*

— Ո՛չ Թռամվայը, ո՛չ Թիւնէլը բաւական ապահով չեն մեզի համար, լաւագոյն է որ ոտքով ելլենք Բերա:

— Ես ալ այդ կարծիքը ունիմ, պատասխանեց ընկերը, միայն թէ այս սարսափելի օդին մինչև Բերայ քալելը հաճելի բան մը չէ:

— Վնաս չունի. աւելի անհաճոյ փորձանքներէ ազատ մնալու համար, կ'արժէ այս պզտիկ նեղութիւնը յանձն առնել:

Եւ երկու ընկերները Եիւքսէք Գալտըրըմի ճամբան բռնեցին:

Ցուրտէն ու ձիւնէն մորակուած՝ արագ արագ կը քալէին տաքնալու համար և գրեթէ տասը վայրկեանէն հասան Թիւնէլի հրապարակը: Բայց այս հեւ ի հեւ վերելքը զիրենք ուժաթափ ըրած էին:

— Գիտես որ շատ ճամբայ ունինք քալելիք, ըսաւ խարտեաշ երիտասարդը որ իր ընկերէն աւելի փոքր ըլլալով հանդերձ անոր ֆիզիքական կորովը չունէր, իմ վրաս ա՛լ կարողութիւն չի կայ... պէտք է որ քիչ մը հանգչինք:

— Բայց այստեղ ո՞ւր կրնանք նստիլ, առանց ինքզինքնիս վտանգելու, պատասխանեց միւսը...: Շիտակ ճամբան բոլոր գարեջրատուններն ու սրճարանները խաֆիյէներով լեցուն են:

— Ես կողմնակի փողոցներուն մէջ ապահով տեղ մը գիտեմ:

— Լաւ ուրեմն հոն երթանք, եթէ անպատճառ հանգըստանալու պէտք ունիս:

Այսպէս խօսելով՝ մինչև Սամալը Մէսճիտ հասած էին: Խարտեաշ երիտասարդը իր ընկերը այդ փողոցը մտցուց և բաւական յառաջանալէ ետքը կանգ առաւ նպարավաճառի մը խանութին առջև:

Խանութին խորը փոքրիկ անկիւն մը կար ուր երեք սեղան դրուած էր: Այդ սեղաններէն երկուքը արդէն բռնուած էին յոյն և իտալացի յաճախորդներու կողմէ, երրորդը պարապ

կը մնար։ Մեր երկու ընկերները անոր շուրջը նստեցան և մէյ-մէկ գաւաթ քօնեաք ապսպրեցին։

— Այս ի՜նչ աղտոտ տեղ է, գիտել տուաւ երկայնահասակ անձը։

— Ընդհակառակը ամենէն մաքուր տեղն է, քանի որ խաֆիէ չի կայ հոս, պատասխանեց միւսը, և կրնանք ազատօրէն խօսիլ, որովհետև նոյնիսկ թուրքերէն հասկցող ալ չի կայ մեր շուրջը։

— Ուրեմն այսպէս, ըսաւ տարեցը սկսուած խօսակցութիւն մը շարունակելով, մեր հայ հայրենակիցներուն հետ բանակցութիւնները յաջող ճամբու մէջ են։

— Այո՛, վերջին անգամ Ժընէվ ու Բարիզ գտնուած միջոցիս երկար տեսակցութիւններ տեղի ունեցան և շատ մը թիւրիմացութիւններ, որոնց պատճառաւ իրարու կասկածանքով կը նայէինք, լուսաբանուեցան. տեսանք որ երկու կողմէն մղուած պայքարին նպատակը նոյնն էր, հետևաբար յիմարութիւն պիտի ըլլար միասին չգործակցիլ։

— Իսկ Եգիպտոսի՞ մէջ։

— Հոն ալ կատարեալ համաձայնութիւն կը տիրէ և արդէն իսկ հայկական քօմիթէն սկսած է աջակցիլ մեզի... իր կազմակերպութեան շնորհիւ է որ մեր թղթակցութիւնները կը կատարուին և մեր տետրակներն ու թուղթերը կը ղրկուին ու կը ցրուուին երկրին ամէն կողմը և մանաւանդ Անատօլուի մէջ... գիտես արդէն որ ես ալ Եգիպտոսէն գալու և անվըտանգ Պոլիս մտնելու համար իրենց աջակցութեան դիմեցի։

— Այո՛, բայց դժբախտաբար հոս գալէդ ետքը չկրցաւ պէտք եղածին պէս ինքզինքդ ծածկել, ներկայութիւնդ իմացուեցաւ և նոյնիսկ նշմարուեցաւ և հիմա ամբողջ ոստիկանութիւնն ու խաֆիէներու բանակը քեզ կը հալածէ։

— Աստուած ողորմած է, պատասխանեց խարտեաշ երիտասարդը իր քօնեաքի գաւաթը պարպելով, ահա տասնըհինգ օրէ որ հոս եմ, ամէն օր փողոցները կը շրջիմ և ՚տակաւին

չձերբակալուեցայ, և եթէ այսպէս շարունակէ, տակաւին երկար առնն գրկուած պիտի մնամ մեր Վեհափառ Սուլթանին միսաֆիրհանէն վայելելէ, որուն համը բերանս մնացած է երեք տարիէ ի վեր....։

— Գիտե՞ս որ երէկ իրիկուն Սաւի պէյը Էտտիրնէէն հոս հասաւ, հարցուց տարեցը, խօսակցութեան նիւթը փոխելով...։

— Վա՜յ, գոչեց միւսը, չէի գիտեր, ի՞նչու մինչև հիմա այդ լուրը չհաղորդեցիր ինծի։

— Զուզեցի փողոցին մէջ այդ տեսակ նիւթի վրայ խօսիլ հոտ, ասկէ զատ արդէն հիմա պիտի տեսնաս զինքը։

— Ի՞նքն ալ հո՛ն պիտի ըլլայ։

— Բնականաբար։

— Արդեօք գիտե՞ս թէ ի՛նչ բանի համար եկած է։

— Հաւանօրէն կատարուելիք գործողութեան վրայ խորհրդակցելու համար։

— Իսկ Ջիա՞ն։

— Ան ալ հոս է...

— Լաւ ուրեմն գործերնիս յաջող է... մեր սիրելի Սուլթանը նորէն հաճոյքի ժամեր պիտի անցընէ։

— Բայց կարծեմ յոգնութիւնդ առիր, օ՛ն ճամբանիս շարունակենք, փոխանակ այստեղ շատախօսելու....։

— Կեցցի՛ր, քօնեաք մըն ալ խմենք, ըսաւ խարտեաշ երիտասարդը որ չափազանց ուրախացած էր իրեն հաղորդած տեղեկութիւններէն, ստամոքսնիս քիչ մը տաքցնենք, որպէսզի կարենանք դուրսի ցուրտին դիմադրել։

— Թեզ ամառուան տաքին ալ կը ճանչնանք, պատասխանեց միւսը խնդալով։

Այսուհանդերձ տեղի տուաւ իր բարեկամին, որ առիթէն օգտուեցաւ ո՛չ թէ մէկ՝ այլ երկու երեք գաւաթ ևս խմելու Ցետոյ, երկուքը մէկէն դուրս ելան և ետեւի փողոցներէն ճամբանին շարունակեցին։

Ձիւնը դադրած էր թէև, բայց փոխարէն ցուրտը աւելի սաստկացած։ Երկու ընկերները Թէփէ-Պաշիէն անցնելով ուղղուեցան Թալա-Պաշիի կողմը և անկէ Թաքսիմի զինուորական ջրհանկիրներու ղօրանոցին ետեւէն Տօլապ-Տէրէ գացին ու հոնկէ ալ Թաթավլայէն անցնելով Ֆէրիքէօյ հասան։

Հոն այլեւս զիրենք աւելի ապահով զգալով անշուշտ, Թըռամվէյի ճամբան ելան ու դէպի Նշան-Թաշ ուղղուեցան և կանգ առին պարտէզի մը առջև որուն երկաթեայ վանդակապատ դուռը ներսէն գոցուած էր։

— Ահաւասիկ վերջապէս հասանք, ըսաւ երկայնահասակ մարդը իր ընկերոջ, զանգակը հնչեցնելով։

— Փա՛ռք Աստուծոյ, պատասխանեց միւսը, հաւատա՛ որ ա՛լ ոտքերուս վրայ ոյժ չմնաց և եթէ քիչ մըն ալ չհասնէինք, ճամբան պիտի մնայի։

Մանկամարդ աղախին մը երեւցաւ պարտէզին մէջ որ մինչև երկաթեայ վանդակին առջև եկաւ և ուշադրութեամբ դուրսը կեցող երկու մարդիկը դիտեց։

— Ժուլիա, զիս չճանչցա՞ր, ըսաւ երկայնահասակ մարդը խօսքը, աղջկան ուղղելով։

— Վա՛յ, դո՞ւք էք եղեր Հիւսնի պէյ, գոչեց աղախինը դրան երկաթէ նիգը քաշելով, կը ներէք մութին մէջ չկրցայ անմիջապէս ճանչնալ։

Դուռը արդէն բացուած էր և երկու ընկերները մտան պարտէզ, մինչ մանկամարդ աղջիկը կրկին դուռը կը կղպէր։

Պարտէզին խորը, անբեւաթափ լերկ ծառերով շրջապատուած քառական խոշոր տուն մը կար, որուն ներքնայարկի պատուհանները լուսաւորուած էին։

— Այս տունը, բացատրեց տարեցը իր ընկերոջ, մեր ամենէն ապահով ապաստանարանն է։ Տանտիրուհին աւստրիացի մըն է որ լաւ յարաբերութիւններ ունի իր դեսպանատան հետ, այնպէս որ իր բնակարանը բացարձակապէս անբռնաբարելի է....։

— Այս տեսակ տուն մը ձեռք անցնել լաւ մտածեր էք, ըսաւ կրտսերը։

— Այս տունը շատ առաւելութիւններ ալ ունի, որոնցմէ գլխաւորը Եըլտըզի պալատան մօտ ըլլալն է, նոյնիսկ վերի յարկէն պալատը կը տեսնուի...։

Երիտասարդ սպասուհին պարտէզին դուռը կղպելով արագօրէն վերադարձած էր, հիւրերը ներս հրամցնելու համար։

Երկու հիւրերը ձիւնով ծածկուած իրենց վերարկուները մաքրելով սպասուհիին առաջնորդութեամբ դէպի աջ կողմ ուղղուեցան։

Բաւական յառաջանալէ յետոյ սպասուհին հիւրերէն խընդրեց որ այդ սրահին մէջ քիչ մը սպասեն, իրենց գալը իմացնելու համար։

Սրահը բազմոցներով և թիկնաթոռներով զարդարուած էր։

Անկիւնը դրուած յախճապակիէ վառարանին մէջ փայտերը կը ճարճատէին, եւ խոշոր լամբար մը բոլոր սրահը կը լուսաւորէր։

Երկու հիւրերը երբ այս տաքուկ սենեակը մտան՝ շատ գոհ մնացին։ Հիւսնի պէյ իր ընկերը վառարանին դիմացը հրամցնելով ինքն ալ թաւիշով ծածկուած փայտէ մտուկին վրայ նստաւ։

Հազիւ թէ քանի մը վայրկեանէ ի վեր հոն կը գտնուէին, երբ յանկարծ սրահին դուռը բացուեցաւ և կին մը ներս մըտաւ։

Ծարտեաշ երիտասարդը այդ կինը տեսնելով իսկոյն տեղէն ցատքեց, անոր ընդ առաջ վազեց և ձեռքը բռնելով համբուրեց յուզումով.

— Վա՛յ Արիֆ, դո՞ւն ես եղեր, գոչեց կինը, ինքն ալ փոխադարձաբար երիտասարդին ճակատը համբուրելով։

— Շնորհակալ եմ Աստուծոյ որ այս օրուան արժանացայ գոչեց երիտասարդը... կը կարծէի որ ալ ձեզի վերստին տեսնելու բախտը չպիտի ունենայի...։

Յետոյ, ուշադրութեամբ կնոջ դէմքին նայելով՝ շարունակեց.

— Բայց, Սալիհա հանըմ, որքա՜ն նիհարցած էք....։

— Կը խնդրեմ, զիս Սալիհա հանըմ մի՛ կոչէք, այլ Մատամ Թապիւռէ, այդ անունով կը ճանչնան զիս այստեղ....։

— Բայց հոս առանձին գտնուած միջոցիս կարծեմ վտանգ մը չի կայ ձեր բուն անունը տալու մէջ։

— Անշուշտ ո՛չ, բայց բերանդ կը վարժուի և յետոյ ուրիշներուն քովն ալ այդպէս կ'անուանես, մինչդեռ պէտք է որ ընդհակառակը վարժուիս միշտ զիս տիկին Թապիւռէ կոչելու, պատասխանեց կինը ժպտելով։

Յետոյ ինքն ալ թիկնաթոռի մը մէջ բազմելով, վառարանին քով, սկսաւ խօսակցիլ երկու նորեկներուն հետ։

Ներս մտնող կինը արդարեւ Սալիհա հանըմն էր....։

Իր կրած տառապանքները, որոնց օրը օրին հետեւեցանք, զինքը չէին ընկճած բնաւ։ Թէեւ աւելի նիհարցած էր, սակայն աչքերը կը պահէին իրենց աշխոյժն ու կենդանութիւնը։

Արիֆ իր ակնարկը չէր կրնար հեռացնել անոր վրայէն ու միամիտ հիացումով մը կը դիտէր այդ կինը որ կարծես իր վրայ կը կեդրոնացնէր օսմանեան ամբողջ յեղափոխական ոգին.

— Ինչո՞ւ այդքան ուշադրութեամբ զիս կը դիտես. արդեօք շա՞տ փոխուած եմ, ըսաւ Սալիհա խօսքը երիտասարդին ուղղելով։

— Ո՛չ, ընդհակառակը բնաւ չէք փոխուած. ճիշտ այդ բանն է որ զիս կը զարմացնէ, պատասխանեց Արիֆ... ձեր կրած վերջին տառապանքներէն ետքը՝ կը կարծէի որ ձեզ շատ ընկճուած պիտի գտնեմ...։

— Ամուսնոյս և զաւակներուս հոգիները իմ վրաս կը հսկեն և միշտ կը զօրացնեն, ըսաւ Սալիհա հանըմ... վրէժխնդրութեան ծարաւը այնպիսի հզօր ազդեցութիւն մը ունի որ ամենէն տկար կարծուածներուն ալ կորով կու տայ... բայց բաւական է որչափ որ իմ անձովս զբաղեցանք, աւելի կարեւոր գործեր ունինք կատարելիք, անմիջապէս զբաղինք....։

— Ինչպէս որ կը փափաքիք, պատասխանեց երիտասարդը ամենայն խոնարհութեամբ։

— Ես բարի լուրեր կը բերեմ ձեզի Եգիպտոսէն, ըսաւ Սալիհա հանըմ, խօսքը առաջ տանելով, Գահիրէի ու Աղեքսանդրիոյ մեր ընկերները հիանալի եռանդով մը կ'աշխատին․․ մեր հայ հայրենակիցներուն հետ վերջապէս կրցանք համաձայնիլ և արդէն իսկ միասին գործակցութեան սկսած ենք, մեր թերթերն ու բրօփականտի տետրակները, որոնց միջոցաւ, ապահով կերպով, թէ՛ Պոլսոյ և թէ՛ Անատոլուի գաւառներուն մէջ կրնանք կոր տարածել․․․ բայց միմիայն գաղափարը տարածելով արդիւնքի մը չենք կրնար հասնիլ, պէտք է որ այլես լրջօրէն գործի սկսինք, մեր ուժերը ժողվենք ու վճռական քայլը առնենք, առանց ժամանակ տալու իրենց որ մեզ ջախջախելու փորձեր ընեն։ Ես և միւս ընկերներս ատոր համար ամէն վտանգ աչք առնելով կրկին վերադարձանք Պոլիս։

— Մենք ալ արդէն անհամբեր գործելու ժամուն կը սպասենք, պատասխանեց Արիֆ որուն աչքերը սկսան շողալ Սալիհա հանըմի խօսքերուն ազդեցութեան տակ, մենք ալ գիտենք որ միմիայն խօսելով ու գրելով չէ որ պիտի կրնանք մեր հայրենիքը բնաջինջ ընող բռնաւորէ ազատել և ազատութեան նոր դարագլուխը բանալ։

— Իսկ դուք, Հիւսնի պէյ, ի՞նչ բարի լուր կը բերէք մեզի, հարցուց Սալիհա հանըմ, դէպի երկայնահասակ անձը դառնալով։

— Այսօր հասած նամակները շատ յուսալից են, պատասխանեց միւսը, Սելանիկ Էտիրնէ, Մանասթըր գրեթէ մեզի հետ են և նշանի մը կը սպասեն գործելու համար։

— Լաւ ուրեմն, քիչ ատենէն այդ նշանը պիտի տրուի իրենց, ըսաւ Սալիհա հանըմ, նշանակալից ձեւով մը։

Նոյն միջոցին դուռը բացուեցաւ և Սաի պէյ ու Սատըգ պէյ ներս մտան։ Շաֆագի երիտասարդ խմբագիրը որ մեր

վէպին սկզբնաւորութեան մէջ տեսանք, յեղափոխական կազմակերպութեան մէջ մանելէն ի վեր շատ աւելի լուրջ ու խոհուն կերպարանք մը առած էր։ Աչքերը նոյն աշխոյժ ու մըտացի նայուածքը պահած էին, սակայն կարծես անոնց խորը տեսակ մը թախծութիւն ծածկուած էր։ Իր յանկարծական անյայտացումէն ի վեր, որուն դրուագները մանրամասնօրէն պատմեցինք, վտանգալից և յուզումնալից կեանք մը անցուցեր էր ամիսներէ ի վեր, որ իրեն համար բոլորովին նոր էր։ Իր անձնուէր գործունէութիւնը բոլոր ընկերներուն համակրանքը գրաւած էր և կրցած էր քիչ ատենի մէջ մեծ ազդեցութեան մը տիրանալու։ Սալիհա հանըմ մանաւանդ մեծ համարում ունէր իր վրայ և զայն «իր հոգեւոր զաւակը» կ'անուանէր, և յաճախ պարծանքով կը յիշէր թէ ինք եղած էր Սարգ. պէյը յեղափոխութեան մէջ մտցնողը։ Իր անյայտացումին հետեւանքով՝ երիտասարդ խմբագրին ծնողքը և ազգականները անհնարին հալածանքներու մատնուած էին, իրենց տուները քանի՛ քանի՛ անգամներ պաշարուած ու խուզարկուած էր լրտեսներու և ոստիկաններու կողմէ և մէջը գտնըւողները բանտարկուած, հարցաքննուած ու կերպ կերպ նեղութիւններու մատնուած էին։ Այս բանը Սարգիսի համար տակաւին խղճի խայթ մը եղած էր և յաճախ մտքէն անցուցած էր երթալ անձնատուր ըլլալ բռնաւորին, որպէսզի իրենները հալածանքէ ազատին։ Սակայն Սալիհա հանըմ, իր գերագոյն ազդեցութեան շնորհիւ կրցաւ զինքը ետ կեցնել։

— Երբ մէկը հայրենիքի փրկութեան համար կ'աշխատի ու կը զոհուի, պէտք չէ որ անկէ դուրս բան մը նկատողութեան առնէ, կը կրկնէր Սարգիսի, հայրենիքը եսասէր սիրուհի մըն է որ մենէ կը պահանջէ ամէն բան մոռնալ, միմիայն իրմով զբաղելու համար։

Ու այսպէս, Սարգ., արդարև կամաց կամաց մոռցած էր ամէն բան. ա՛լ ո՛չ ծնողք, ո՛չ ազգական, ո՛չ բարեկամ կը մտածէր, ամբողջ հոգւոյն ու էութեամբը նուիրուած էր ա-

ղատութեան վսեմ գործին և սրտատրոփ անհամբերութեամբ կը սպասէր այն վայրկեանին ուր վերջապէս պիտի կրնար իր կեանքը զոհել իր գաղափարին յաղթանակին համար։ Սատը-գի հայրենասիրութիւնը ա՛լ տեսակ մը մոլեռանդութեան փոխ-ուած էր և նահատակուելու տենչանքովը կը տոչորէր։ Իր ըն-կերները գիտէին այս տրամադրութիւնը և կը վախնային որ օր մը գուցէ մէկ յանդուգն արարքովը թէ՛ իր և ընկերնե-րուն կորստեան պատճառ պիտի ըլլար և ատոր համար միշտ կը հսկէին իր վրայ։ Ամէն անգամ որ վտանգաւոր գործ մը կար կատարուելիք՝ Սատըգ առաջ կը նետուէր և կ'ուզէր որ այդ գործը իրեն յանձնուի։

Այն ատեն Սալիհա հանըմ կը միջամտէր և զայն կը հա-մոզէր, ըսելով թէ աւելի վճռական պարագաներուն հարկ էր պահել իր յանդգնութիւնը, որուն ապահովաբար օր մը պէտք պիտի ունենային։ Սատըգ դժգոհութեամբ տեղի կուտար և սակայն ներսիդիէն հետզհետէ կատաղութիւնը կ'աւելնար և անհամբեր կը սպասէր յարմար առիթի մը, որպէսզի իր անձ-նուիրութեան ապացոյցները տայ։

Նոյն օրը սակայն Սալիհա հանըմ ըսած էր իրեն.

— Սատըգ պէյ, աչքդ լոյս, կարծեմ թէ վայրկեանը հա-սաւ որ վերջապէս քու բաղձանքիդ պիտի հասնիս։

— Ի՞նչ կայ որ, հարցուցած էր նախկին խմբագիրը։

— Խիստ վտանգաւոր գործողութիւն մը կայ կատարուե-լիք, որուն համար երկու անձնուէր ընկերներու պէտք ու-նինք։

— Լաւ ուրեմն, գոչած էր Սատըգ ուրախութեամբ, ես պատրաստ եմ, ջանացէ՛ք միւսն ալ գտնել։

— Ան ալ գտնուած է արդէն։

— Վա՜յ, ո՞վ է արդեօք, կրնա՞մ իմանալ իր անունը, քանի որ իրեն հետ գործակից պիտի ըլլամ։

— Այս իրիկուն զինքը քեզի պիտի ներկայացնեմ.

Սատըգ պէյ այս աւետիսը լսելով, մինչև իրիկուն սրտա-

*տրուփ անհամբերութեամբ մը սպասած էր այն երանելի վայրկեանին ուր իրեն պիտի ներկայացնէին իր գործակիցը որուն հետ խիստ վտանգաւոր գործ մը պիտի կատարէր։ Այդ գործին մասին տակաւին ո և է գաղափար մը չունէր, չէր գիտեր թէ իր ընկերները ի՛նչ ծառայութիւն կ՚ակնկալէին իրմէ, այսուհանդերձ երախտագիտութեամբ ընդունած էր իրեն եղած առաջարկութիւնը։*

*Երբ Սափ պէյի հետ մտաւ այն սրահը ուր կը գտնուէին Սալիհա հանըմ և երկու նորեկները, ակնարկը խելօյն սեւեռեց խարտեաշ երիտասարդին վրայ զոր Սալիհա հանըմ Արիֆ անուանած էր. Հիւմնի պէյը կը ճանչնար արդէն, սակայն այդ միւս երիտասարդը անծանօթ էր իրեն։*

*— Այս ըլլալու է ինձ տրուելիք գործակիցը, մտածեց խելօյն։*

*Սպասեց որ զիրար իրարու ներկայացընեն, սակայն այսպիսի արարողութիւն մը տեղի՛ չունեցաւ։*

*— Հոս ամենքս ալ ընկերներ ենք և կրնանք ազատօրէն խօսիլ, ըսաւ Սալիհա հանըմ։*

*Ամբողջ ներկայացումը այս եղաւ։*

*— Ո՞ւր են մեր միւս ընկերները, հարցուց Հիւմնի, կարծեմ տակաւին երկու հոգի կը պակսին։*

*— Այո՛, հիմա անոնք ալ կուգան, բայց մենք կրնանք մեր խօսելիքը խօսիլ։*

*— Ուրեմն ձեզ մտիկ կ՚ընենք, պատասխանեց Հիւմնի, խօսքը տիկնոջ ուղղելով։*

*— Մեր վերջին ժողովներուն մէջ, սկսաւ խօսիլ Սալիհա հանըմ, գլխաւորապէս զբաղեցանք սա հարցով թէ՝ ի՞նչ դիրք պիտի բռնէինք այն դաւաճաններուն նկատմամբ որոնք իբրև մեզի համակիր ու գաղափարակից ցոյց տալով ինքզինքնին, յաջողած էին ինչ ինչ գաղտնիքներ ձեռք ձգել և յետոյ այդ գաղտնիքները վաճառել Աբտիւլ Համիտի։ Այդ վատերը անշուշտ արժանի էին մեր կողմէ չարաչար պատժուելու, որով-*

հետեւ իրենց անարգ մատնութեան շնորհիւ մեր կարգ մը ընկերները և գաղափարակիցները ձերբակալուեցան, բանտարկուեցան կամ աքսորուեցան։ Անշուշտ ամենքս ալ համաձայն էինք որ այդ թշուառականները հարկ էր յեղափոխութեան վրէժխնդիր գնդակներովը կամ դաշոյններովը պատժել, սակայն ոմանք խորհեցան թէ արդեօք կ՚արժէ՞ր այդ ստորին արարածներուն համար վտանգել մեր անձնուէր ընկերներուն կեանքը և թէ լաւագոյն չէ՞ր զանոնք առ այժմ մէկ կողմ դնել և մեր բոլոր ոյժն ու կարողութիւնը կեդրոնացնել բռնաւորին դէմ...։ Այս պատճառաւ ահա՛ պահ մը վարանում տիրեց մեր ժողովներուն մէջ, բայց նոր դէպք մը վրայ հասաւ որ այլեւս ամէն վարանում փարատեց։ Այդ իրողութիւնը որուն կ՚ակնարկեմ՝ ամենամեծ ցաւ մը եղած է ամենուս համար և վստահ եմ որ երբոր դուք ալ իմանաք՝ դուք ևս բուռն զայրոյթ մը և միևնոյն ատեն հոգեկան անհնարին վիշտ մը պիտի կրէք։

Այս խօսքերը խորին ազդեցութիւն մը գործեցին ներկաներուն վրայ, ի բաց առեալ Սայի պէյէ որ արդէն եղելութեան տեղեակ կը թուէր։ Ամենքը իրենց ուշադրութիւնը կրկնապատկեցին և Սալիհա հանըմ, պահ մը լռելէ ետքը, խօսքը առաջ տարաւ.

— Մեր յեղափոխական կեանքին մէջ, ըսաւ, մեր կրած չարչարանքները, հալածանքները, մեր սիրելի զոհերը, մեր բանտարկութիւնները ու աքսորները այնքա՛ն սրտաբեկ չըրին մեզի որքան անկեղծ ու հաւատարիմ կարծուած ընկերի մը մատնութիւնը, ընկեր մը որ երկար ատեն մեր ամէն գաղտնիքներուն տեղեակ, մեր ամէն գործերուն մասնակից եղած էր, որուն անձնուիրութիւնն ու հաւատարմութիւնը ա՛լ ամէն փորձերու ենթարկուած կը կարծուէր...։

— Ո՞վ է այդ անարժան թշուառականը, գոչեց Սաադ պէյ զայրագին ձայնով մը և ինչպէ՞ս մինչև հիմա տակաւին թոյլ կուտանք որ արևուն տակ ապրի այդպիսի արարած մը...։

Սալիհա հանըմ Նախկին խմբագրին դարձաւ, ձեռքովը զայն լռութեան հրաւիրեց և հաստատուն ձայնով մը ըսաւ․

— Այդ վատոգի մատնիչը Զիա փաշան է։ Համիտի Նախկին թիկնապահը որ մինչև Եգիպտոս եկաւ մեզ շոգենաւին մէջէն փախցնելու համար․․․։

Զիա փաշայի անունին այս կերպ յիշատակումը կայծակի հարուածի մը ազդեցութիւնը գործեց մտիկ ընողներուն վրայ․

— Զիա՛ փաշան, աղաղակեց Հիւսնի պէյ, այն որ այնքա՛ն անգամներ իր կեանքը վտանգած էր, այն որ ամենէն անձնուէր յանդուգն յեղափոխականը կը նկատուէր, այն որուն վրայ շատ աւելի վստահութիւն ունէի քան բո՛ւն իսկ իմ անձիս վրայ։

— Այո՛, շարունակեց Սալիհա հանըմ, անհաւատալի այդ ամենէն աւելի անձնուէր կարծուած մեր ընկերն է որ մեզ կը մատնէ և ճիշտ այս պատճառաւ մեր սիրտը կ'արիւնի։

— Բայց, դիտել տուաւ Արիֆ որ հակառակ իր երիտասարդ հասակին միւսներէն աւելի իր պաղարիւնութիւնը պահած էր, արդեօք ձեր այս ըսածները ապացուցեալ իրողութիւններու վրայ հիմնուա՞ծ են․

— Այո՛ բարեկամ, դժբախտաբար ենթադրութիւն չէ ինչ որ կ'ըսեմ՝ այլ դժբախտ իրականութիւն մը․․․ Զիա փաշա հինգ օրէ որ Պոլիս կը գտնուի և Նախկին պալատական թիկնապահի պաշտօնին մէջ վերահաստատուած է, մեծամեծ պատիւներով։ Իսկ թէ բռնաւորին այս շնորհներուն արժանանալու և իր Նախկին պարտքերը մոռցնելու համար ինչ վատութիւններ բրած է, ատիկա այժմ պիտի ըսեմ ձեզի։

— Աստուա՛ծ իմ, այս ինչ սոսկալի յայտնութիւններ կը լսենք կոր, գոչեց Սաըդ պէյ, ձեռքը յուսահատօրէն ճակտին տանելով։

— Գիտես որ, Սաըդ, շարունակեց Սալիհա հանըմ, խօսքը Նախկին խմբագրին ուղղելով, երբ միասին շոգենաւէն փախանք և անապատի ճամբան բռնեցինք, Զիա փաշան էր

որ ամենէն աւելի աշխատեցաւ մեր փախուստը դիւրացնելու համար և նոյնիսկ կրնանք ըսել որ Մաք Լայնի հետ ինքն էր որ այդ փախուստի ծրագիրը յղացաւ ու գործադրեց, նոյնիսկ իր գրպանէն վճարելով բոլոր ծախքերը...:

— Այո՛, այդ բոլոր իրողութիւնները մանրամասնօրէն գիտեմ, պատասխանեց Սատըրդ, քանի որ չորս աքսորեալներէն մէկն ալ փախուստը դուրս հանելու համար իր գրպանէն 4-5000 ոսկի ծախսած է:

— Արդ, ըսաւ Սալիհա հանըմ, Զիա այս անձնուիրութեան և նիւթական զոհողութեան փորձերը տալով չի գոհացաւ, անկէ ետքը, երբոր մէկ քանի օր անապատին մէջ թափառելէ ետքը, վերջապէս Իսմայիլիա վերադարձանք ու հոնկէ Գահիրէ գացինք, դարձեալ Զիան էր որ առատաձեռն կերպով ո՛չ թէ միայն մեր բոլոր ծախքերը հոգաց, այլ նոյն իսկ Մաք Լայնի ալ մեծ նուէր մը տալով զինքը Անգլիա, իր ընտանիքին քով ղրկեց, քանի որ այդ ազնիւ անձէն ուրիշ ծառայութիւն մը չունէինք սպասելիք:

— Այդ իրողութիւններուն ալ տեղեակ եմ, պատասխանեց Սատըրդ:

— Այո՛, հոս գտնուող մեր միւս ընկերները չեն գիտեր և ես կ'ուզեմ որ ամէնքն ալ տեղն ի տեղօք իմանան ամէն բան: Շաբաթ մը Գահիրէ մնալէ ետքը մեր ընկերները քօմիթէին վերաքերեալ գործերով զանազան տեղեր մեկնեցան և դուն ալ, Սատըրդ պէյ, ճամբայ ելար Ժընէվ, ապա Ցունաստան և անկէ Սելանիկ երթալու համար: Այն ատեն Գահիրէի մէջ ես և Զիա առանձին մնացինք և կրկին շարունակեցինք մեր գործունէութիւնը: Զիա միշտ անձնուէր եռանդ մը ցոյց կու տար և օրէ օր համարումս կ'աւելնար իր վրայ: Օր մը սակայն տխուր կերպարանքով մը վերադարձաւ այն բնակարանը ուր միասին կը գտնուէինք: Այս տխրութիւնը զիս զարմացուց, որովհետև ընդհանրապէս միշտ զուարթ կը տեսնէին զինքը, նոյնիսկ ամենէն դժնդակ պարագաներու մէջ: Ուզե-

ցի այդ յանկարծական փոփոխութեան պատճառը հասկնալ, սակայն ինք խուսափողական պատասխաններ տուաւ և ես անպատշաճ համարեցի հարցումներս շարունակել: Անկէ ետքը հետզհետէ այդ մելամաղձութիւնը աւելցաւ, ժամերով կ'առանձնանար ու չէր ուզեր մեզի երևնալ և մօտերնիս եկած ատենն ալ լուռ և մխուր կը մնար: Յայտնի կ'երևնար որ հոգեկան մեծ տագնապի մը մատնուած էր: Եւ սակայն ինք իր գաղտնիքը կը պահէր և ես մէկ քանի անգամ զինքը խօսեցնելու փորձեր ընելէ ետքը, ա՛լ ետևէն չինկայ, տեսնելով որ հարցումներս զինքը աւելի կը նեղէին: Զիա փաշա հոգեկան այս կացութեան մէջ կը գտնուէր երբ Բարիզէն խիստ կարևոր գործի մը համար մեր ընկերները զինքը ուզեցին: Այս պարագան զիս չափազանց ուրախացուց.

— Գնա՛ շուտով, խրատեցի իրեն, գուցէ ճամբորդութիւնը և քաղաքի փոփոխութիւնը փարատեն այն տխրութիւնը և մտածումները որոնք ժամանակէ մը ի վեր քու վրադ կը ճնշեն և որոնց պատճառը և ո՛չ մէկերնիս հասկցած ենք:

— Տխրութեան ո և է պատճառ չունիմ, պատասխանեց չոր կերպով մը:

Վերջապէս, չերկարեմ, մեկնեցաւ Բարիզ ուր կը գըտնուէր մեր Գոմիթէին ամենէն կարևոր մէկ անդամը՝ և հիմնադիրը, Հագգը պէյ, և որուն հետ շատ մը կարևոր խընդիրներու վրայ խորհրդակցութիւններ կատարեց: Ես միշտ Եգիպտոսէն լուր կ'առնէի իր մասին: Երբոր Հագգը պէյ գաղտնապէս Պոլիս մտաւ, Զիա ինքն ալ, ըստ տրուած որոշումին՝ Պուլկարիա պիտի երթար տինամիթի և պօմպայի մէկ քանի փորձերու անձամբ հսկելու համար, ուրկէ ետքը պիտի վերադառնար Բարիզ, իսկ ես Եգիպտոսէն Պոլիս պիտի գայի Հագգը պէյի հետ գործակցելու համար: Բոլոր այս կարգադրութիւնները վճռականօրէն որոշուած էին և անոր համեմատ ահա ես եկայ Պոլիս, ուր եկած էր նաև Հագգը պէյ....:

Սալիհա հանըմ պահ մը լռեց, այս երկար բացատրու-

թիւնը զինքը յոգնեցուցած էր, յետոյ գաւաթ մը ջուր խըմելէ ետքը, խօսքը առաջ տարաւ։

— Հազիւ թէ քանի մը օրէ ի վեր հոս հասած էի, երբ Էտիրնէէն Սաի պէյի կողմէ տոմսակ մը ստացայ որ կ՚ըսէր. «Զգուշացէ՛ք Ջիա փաշայէն, մեզ մատնած կամ մատնելու վըրայ է։ Մինչեւ որ ճշմարտութիւնը չյայտնուի, պէտք չէ որ նոր գաղտնիքներ հաղորդէք իրեն։» Կրնաք երեւակայել որ այս տոմսակը ի՜նչ սոսկալի տագնապներու մատնեց զիս. չէի ուզեր աչքերուս հաւատալ եւ սակայն վստահ էի նաեւ որ Սաի պէյ թեթեւօրէն այսքան ծանր ամբաստանութիւն մը չի պիտի ընէր Ջիաի պէս ընկերոջ մը մասին։ Մէկ կողմէն մեր անձնական պաշտպանութեան համար հարկ եղած զգուշութիւնները ձեռք առինք անմիջապէս եւ միւս կողմէ խնդրեցի Սաի պէյի որ փութայ Պոլիս գալու եւ բերանացի կերպով ապացուցանելու իր ամենածանր ամբաստանութիւնը։ Երկու օր ետքը Սաի պէյ եկաւ....։

— Հիմա, եթէ կը ներէք, ըսաւ Սաի պէյ, Սալիհա հանըմի խօսքը ընդհատելով, թողունք որ տիկինը քիչ մը հանգչի եւ ես շարունակեմ իր պատմութիւնը, քանի որ խնդիրը այժմ իմ ամբաստանութեանս շուրջը կը դառնայ...։

— Այո՛, այո՛, դուք խօսեցէք, ըսաւ Հիւսնի։

— Պուլկարիա գտնուած միջոցին՝ Ջիաի քով իբրեւ գործակից կը գտնուէր ուրիշ ընկեր՝ մը, որ արդէն Ֆիլիպի մէջ հաստատուած էր եւ Մակեդոնեացի յեղափոխականներու հետ յարաբերութիւններ կը մշակէր։ Այս ընկերը կը նշմարէ որ Ջիա խիստ մտերմօրէն եւ կարելի եղածին չափ ծածկաբար կը տեսակցէր անծանօթի մը հետ։ Մէկ քանի անգամներ կը հարցնէ թէ ո՛վ էր արդեօք այդ անծանօթը. Ջիա կը պատասխանէ թէ իր աքսորականներէն մէկն է որ Պարիզէն փախած է։ Այս Պատասխանը թէեւ շատ ճշմարտանման կրնար համարուիլ սակայն չգոհացնէր մեր ընկերը որ կը սկսի իրեն ծանօթ հաւատարիմ Պուլկարի մը ձեռքով հսկողութիւն կատարել անծանօթին վրայ։

Եւ ահա կ'իմացուի թէ անծանօթը Սօֆիայի Օսմանեան քօմիսէրին տունը կը մտնէ կ'ելլէ։ Այս իրողութիւնը բնականաբար ա՛լ աւելի կասկածները կ'աւելցնէր և հսկողութիւնը կը կրկնապատկուի։ Վերջապէս մեր ընկերը իր պուլկար բարեկամին միջոցաւ կ'իմանայ թէ Զիա մէկ քանի անգամներ խիստ գաղտնաբար տեսակցած է Օսմանեան քօմիսէրին հետ։ Ասոր վրայ, ա՛լ չի կրնար համբերել և իսկոյն բացատրութիւններ կը պահանջէ Զիա փաշայէն որ խստօրէն կը պատասխանէ «Ոչ ո՛ք իրաւունք չունի իմ գործերուս խառնըւելու»։ Եւ ահա քանի մը օր ետքը Զիա փաշա անյայտ կ'ըլլայ ու այժմ կ'իմանանք որ Պոլիս եկած ու արդէն Եըլտըզ կը գտնուի և վերահաստատուած է իր թիկնապահի պաշտօնին մէջ։

— Լաւ, բայց մինչև հիմա արդեօք մատնութիւն մը ըրա՞ծ է, հարցուց Արիֆ։

— Դժբախտաբար այո՛, պատասխանեց Սալիհա հանըմ, ես թէև կրցայ խուսափիլ և այստեղ գալ ապաստանիլ, երբ իմացայ Զիայի մատնութիւնը, սակայն, ափսո՜ս, Հագգը պէյ չկրցաւ օձիքը ազատել և այս միջոցիս մեր սիրելի ընկերը Ապտիւլ Համիտի ճանկը ինկած է ուրիշ եօթը ընկերներու հետ...։

Այս յայտնութիւնը սոսկալի տպաւորութիւն մը գործեց Հիւսնիի, Արիֆի և Սատըքի վրայ։ Երեքն ալ միասին զարմանքի և բարկութեան աղաղակ մը արձակեցին երբոր Հագգըի անունը լսեցին։

— Անմիջապէս պէտք է սպաննել այդ վատ թշուառականը, գոչեց Սատըգ, և ես առանձին պիտի երթամ իմ ձեռքովս զինքը գետին փռելու, նոյնիսկ եթէ դուք ընդդիմանաք...։

— Իրաւունք չունիս այդպիսի բան մը ընելու, ըսաւ Սալիհա ամենայն հանդարտութեամբ, այն օրէն ուր մեր կազմակերպութեան մէջ մտար այլևս, դուն չես քու կամքիդ ու մահուանդ տէրը...։

— Բայց ինչպէ՞ս կարելի է հանդուրժել որ այդպիսի ճիւաղ մը մեր սիրելի ընկերները Ապտիւլ Համիտի ձեռքը մատնէ։

— Ո՞վ ըսաւ թէ մենք պիտի հանդուրժենք ատոր և իրեն արժանի պատիժը չպիտի տանք, պատասխանեց Սալիհա։

Այս խօսքերը հանդարտեցուցին նախկին խմբագիրը որ յուզումէն կը դողդղար։

Հագգը պէյի ձերբակալումը արդարև մեծ հարուած մըն էր դաղտնի կազմակերպութեան համար։

Ինչպէս ըսինք արդէն, ինքն էր գրեթէ յեղափոխական շարժումին բո՛ւն հիմնադիրը Սալիհա հանըմին հետ և բարոյական ազդեցութիւնը շատ մեծ էր բոլոր անդամներուն վըրայ։

Հագգը պէյ, որ նախկին զինուորական մըն էր, իր քաջարութեան և յանդգնութեան կը միացնէր նաև մեծ խոհականութիւն և իմաստութիւն մը։

Ասկէ զատ իր ազնիւ, անկեղծ ու բարեսիրտ նկարագիրը ընդհանուր համակրանքի առարկայ եղած էր։

Իր ընկերները միշտ կը ջանային զինքը հեռու պահել վըտանգաւոր գործերէ և յաճախ այնպէս մը կը կարգադրէին որ արտասահմանի մէջ անցնէր ժամանակին մեծ մասը։

Բայց վերջերս ա՛լ կարելի չէր եղած զինքը համոզելու որ հեռու մնայ, մանաւանդ երբ տեսած էր որ Սալիհա հանըմ, այնքա՛ն վտանգներէ անցնելէ ետքը, կրկին Պոլիս վերադարձած էր յեղափոխական գործը առաջ վարելու համար։

Եւ ահա՛ այդ թանկագին անձն էր որ այժմ բռնաւորին ձեռքը կ'իյնար ընկերի մը մատնութեամբ։

— Ո՞ւր կը գտնուի այժմ մեր սիրելի ընկերը, հարցուց Սաաըդ։

— Ահա՛ այդ բանը պիտի ջանանք հասկնալ, ըսաւ Սալիհա հանըմ, առ այժմ ինչ որ գիտենք՝ սա է թէ ձերբակալուածին պէս Ելտըզ տարուած ու հոն մէկ քանի օր պահուած է, յե-

տոյ զէնքը հեռացուցած են Եըլտըզէն, սակայն չի գիտցուիր թէ ո՛ւր է հիմա։

Ո՛չ ոստիկանութեան բանտն է և ո՛չ ալ աքսոր ղրկուած է, այս մասին կրնանք ապահով ըլլալ. մեր Եըլտըզի և Ջապթիէի ընկերները որոշ կերպով կը հաստատեն ասիկա։

Կ'երեւայ որ Սուլթան Աբտիւլ Համիտ մեր փախուստէն ետքը այլեւս վստահութիւն չունի իր շոգենաւներուն վրայ և ո՛չ ալ իր բանտերուն ու բանտապահներուն վրայ....։

— Թերեւս զայն ծածկաբար սպաննել տուած է, ըսաւ Սարգ։

— Ո՛չ, այդ ոճիրը տակաւին չէ գործուած, սակայն հաւանական է որ գործուի, եթէ մենք մեր ոյժը ցոյց չի տանք և սարսափի չմատնենք Եըլտըզի գազանները։

— Ուրեմն առանց ժամանակ կորսնցնելու գործի սկսինք գոչեց Սարգ որ անհամբերութեամբ կ'այրէր։

— Անշուշտ պիտի սկսինք, շարունակեց Սալիհա հանըմ հանդարտ կերպով, և արդէն ճիշդ ատոր համար է որ այս իրիկուն հոս ժողվուած ենք։

Այս ցերեկ գործադիր մարմինը նիստ գումարելով որոշումներ տուաւ զոր այժմ պիտի հաղորդեմ ձեզի։

Նախ որոշեցինք մահուամբ պատժել Ջիա փաշան իր բացայայտ մատնութիւններուն համար։

Երկրորդ՝ մեր բոլոր ճիգը թափել Հագգը պէյը ազատելու միջոցը գտնելու համար։

Այս երկրորդ որոշումը արդէն գործադրութեան դրուած է մեր ընկերներուն ձեռքով և կը յուսանք որ պիտի յաջողինք բայց նոյնիսկ մեր այս յաջողութիւնը կախուած է առաջին պարագայէն։

Եթէ կարող ըլլանք անմիջապէս Ջիայի պատիժը գործադրել, միւս աշխատութիւնը շատ կը դիւրանայ։

Ջիա քանի ողջ մնայ մեզի համար սարսափելի վտանգ մըն է, նախ որ մեզ ամենքս գրեթէ անձամբ կը ճանչնայ,

մեր գաղտնիքները գիտէ, գիտէ նաև մեր գործունէութեան եղանակը։

Այդ մարդը մինչև հիմա իրա՛ւ է որ իր ձեռքէն եկած չարիքը չգործեց մեզի դէմ ու միայն Հագգը պէյր և իր մէկ քանի ընկերներ մատնելովը գոհացաւ, բայց և այնպէս կրնայ տակաւին շատ փորձանքներ բերել մեր գլխին, եթէ զինքը երկար ատեն անպատիժ թողունք։

— Շատ ճշմարիտ է ձեր ըսածը ընդմիջեց Հիւանի։

— Այսպէս ուրեմն մահու պատիժը վճիռը տրուած է, շարունակեց Սալիհա հանըմ, գալով անոր գործադրութեանը որոշեցինք զայն յանձնել Սատըգ և Արիֆ պէյերուն, որոնց պիտի օժանդակէ նաև մեր մէկ ուրիշ ընկերը։

— Ո՞վ է այդ ընկերը, հարցուց հետաքրքրութեամբ Սատըգ պէյ։

— Առիկա ձեզի պիտի իմացնենք երբոր ատենը գայ, պատասխանեց Սալիհա հանըմ։ Այժմ կ'ուզեմ գիտնալ թէ ձեզ յանձնուելիք ծանր ու դժուարին գործը կատարելու յանձնառու կ'ըլլա՞ք։

— Ի՛նչ միթէ կը կարծէք թէ պիտի վարանէի՞, գոչեց նախկին խմբագիրը խանդավառութեամբ ոտքի ելլելով, ո՛չ թէ Ջիա մը՝ այլ և բոլոր հայրենիքի մատնիչները բնաջնջելու համար պատրաստ եմ իմ արիւնիս ամենավերջին կաթիլը զոհելու....։

— Իսկ դո՞ւն, Արիֆ, հարցուց Սալիհա հանըմ, խօսքը խարտեաշ երիտասարդին ուղղելով։

— Պարտականութիւնս պիտի կատարեմ, ըսաւ երիտասարդը։

— Յօժա՞ր կամքով, ըսաւ Սալիհա։

— Մարդս իր պարտականութիւնը պէտք է յօժար կամքով կատարէ, պատասխանեց Արիֆ ամենայն պաղարիւնով։

—Կեցցե՛ս գոչեց տիկինը, աւելի կը սիրեմ քու այդ պարզ խօսքերդ քան թէ մեր Սատըգ բարեկամին ծայրայեղ խանդավառութիւնը։

*Այս դիտողութիւնը անհաճոյ թուեցաւ նախկին խմբագրին, բայց իր հիացումն ու անձնուիրութիւնը այնքա՜ն մեծ էր դէպի Սալիհա հանըմ որ տհաճութեան ո և է նշան ցոյց չտուաւ, միայն թէ ըսաւ.*

*— Երբոր գործելու ժամը հասնի, պիտի տեսնէք որ ծայրայեղ խանդավառուածն ալ պաշտպանութիւն ունեցողին չափ արժէք պիտի ունենայ:*

*— Այդ մասին կասկած չունիմ, պատասխանեց յեղափոխականուհին, այս կերպ դարմանելով իր վիրաւորանքը:*

*Պահ մը լռութիւն տիրեց ետքը. ափկինը կրկին խօսք առաւ.*

*— Ուրեմն այսպէս, ըսաւ, հիմա ամէն բան հասկցաք և գիտէք թէ մեր գաղտնի քօմիթէն ի՜նչ ծառայութիւն կը ըսպասէ ձենէ. Ջանացէ՛ք որ ձեր գործունէութեամբը արժանի ըլլաք դասուելու ազատութեան մարտիրոսներուն մէջ:*

*— Ե՞րբ պիտի երթանք մեր նուիրական գործը կատարելու, հարցուց Սաաըդ, այս իրիկո՞ւն, թէ վաղը... ես պատրաստ եմ անմիջապէս ճամբայ ելլելու:*

*— Շատ աճապարողը ուշ կը հասնի իր նպատակին, պատասխանեց Սալիհա, երբոր գործելու ժամը հասնի մենք քեզի լուր կուտանք, առ այժմ ձեր միակ ջանքը թո՛ղ ըլլայ օձիքնիդ ձեռք չի տալ և միշտ պատրաստ գտնուիլ:*

---

## ԳԼՈՒԽ Ե.

# ՄԱՏՆԻՉԸ

*Ապրիլ մէկ 1905 ուրբաթ օրուան Պոլսոյ թերթերը սա լուրը կը հրատարակէին որ անշուշտ այդ ժամանակ անուշադիր անցաւ շատ մը ընթերցողներու կողմէ.*

«Սկիւտարի Նուհ Գույուսի կողմը, առջի օրը, ոստիկան Ահմէտ էֆ. իբրեւ շրջուն պահակ պտտած ատեն, երկու մարդ տեսաւ, որոնք մէյմէկ կողով շալկած կ'երթային երկչոտ քայլերով: Ոստիկանը առանց յայտնի ընելու, հետեւէն հետեւեցաւ անոնց: Այդ մարդիկը բաղչայի արտերը մտնելով, կողովները վար առին և կարգ մը առարկաներ թաղեցին հողին մէջ: Ոստիկանը իսկոյն անոնց մօտեցաւ և երկուքն ալ ձերբակալեց: Քննութիւն կատարուելով հաստատուեցաւ թէ ատոնք Եուսուֆ ու Թէֆիք անուն անձերն են և թէ թաղուած առարկաներն ալ տասը կտոր ծռմռկած պղինձներ: Հարցաքննութեամբ յայտարարեցին թէ երկու ընկերներ ալ ունին Ալի ու Իսմայիլ անուն և թէ այդ պղինձները երկաթագործ Սիմոնի տունէն գողցած են: Զուգադիպութեամբ մը Ալի ու Իսմայիլ Պոլսոյ կողմը ձերբակալուելով նոյն օրը Սկիւտարի ոստիկանութեան ղրկուած էին»:

Այդ լուրը, որ սովորական գողութեան մը անկարեւոր երեւոյթը ունէր, ինչպէս բոլոր, առանց ուշադրութիւն դրաւելու կարդացուեցաւ շատերուն կողմէ: Եւ սակայն նոյն անտարբերութիւնը ցոյց չտուին երկու անձեր որոնք առաւուն թերթին մէջ այդ գողութեան և ձերբակալութեան լուրը կարդացին: Այդ երկու անձերէն մին Թուրք և միւսը հայ էին և միասին նստած էին Պոլիս, Սիրքէճիի կայարանին դէմ գտնուող սրճարաններէն մին: Այդ ցուրտ ու անձրեւոտ առտուն տակաւին ոգեւորութիւն չի կար փողոցները և սրճարանին մէջն ալ հազիւ մէկ քանի հոգի կ'երեւային որոնք եկած էին սուրճ կամ թէյ խմելու:

Մեր ակնարկած երկու բարեկամները քով քովի նստած նոյնպէս թէյ կը խմէին, Հայը «Արեւելք» թերթը կը կարդար իսկ Թուրքը «Սապահ»ը աչքէ կ'անցնէր:

Յանկարծ Թուրքը խորին յուզումով մը իր ընկերոջ դարձաւ և ցած ձայնով մը ըսաւ անոր.

— Սոսկալի բան մը կայ...

— Ի՛նչ, հարցուց միւսը խելքն ալ գող եղած։

— Կարդա՛ ատ կասը։

Եւ անոր ցոյց տուաւ թերթին այն մասը ուր պատմուած էր մեր վերը յիշուած ձերբակալութիւնը։

Հայը արտասուելէն աչք մը նետեց և խելքն ալ մէկէն չփոթեցաւ։

— Սարսափելի՛ բան, գոչեց։

— Ինչ պիտի ընենք հիմա։

— Եթէ Սիմոնի տունը խուզարկութիւն կատարեն մեր բոլոր ծրարներնիս ջուրը կ՚իյնան և ամենքս ալ կը վտանգուինք։

— Հիմա անմիջապէս հարկ է որ իր տունը երթանք և ջանանք առաջ տեղեկութիւն մը ունենալ...։

— Հաւնեցայ մտքիդ՛ և խոյս արագ վափօրով Սկիւտար անցնինք։

Երկու ընկերները թէյին դրամը վճարեցին և ուղղուեցան դէպի Սիրքէճիի նաւամատոյցը ուր բարեբախտաբար Սկիւտար երթեւեկող բեռնատարն շոգենաւը կեցած էր և կը պատրաստուէր ճամբայ ելլելու։

Իրաւամբ մեր երկու բարեկամները իրաւունք ունէին յուզուելու այդ լուրէն որովհետև չորս ձերբակալուած անձերը Եուսուֆ, Թէվֆիք, Ալի և Իսմայիլ, ինչպէս նաև երկաթագործ Սիմոն, ամենքն ալ մեր ծանօթ դաշնակ քօմիթէին անդամներէն էին։ Լուրը, այն ձեւով որով թերթերու մէջ կ՚երեւար, բաւական խեղաթիւրուած էր։ Խնդիրը ո՛չ տասը կիլօ պղինձի, ո՛չ ալ գողցուած ապրանքներու վրայ էր, այլ շատ աւելի ծանրակշիռ հանգամանք մը ունէր։ Բայց ոստիկանութիւնը իր տեղեկագրին մէջ հարկ համարած էր ճշմարտութիւնը ծածկելու և դիտմամբ լուրը այդ ձեւով տալու որպէս զի տարածուած այլընդայլոյ գրոյցները հերքուի։

Հազիւ թէ մեր երկու բարեկամները տոմսակնին առին ու շոգենաւ մտան, շոգենաւը սուլեց ու ճամբայ ելաւ։

— Եթէ Սիմոնին տունը խուզարկած են գործերնիս գէշ է, կը կրկնէր։

Այս տագնապեցուցիչ մտատանջութիւններով պաշարուած հասան Սկիւտար և իսկոյն դուրս ցատքեցին շոգենաւէն։

Սիմոնի երկաթագործի խանութը շուկային կողմնակի փողոցներէն մէկուն մէջ կը գտնուէր։ Իսկոյն դէպի այն կողմը ուղղուեցան, ջանալով ծածկել իրենց ներքին յուզումը և դուրսէն անտարբեր կերպարանք մը առնելով։

Երբ փողոցին ծայրը հասան տեսան որ խանութը ոստիկաններով պաշարուած էր։ Եւ ոչ ոքի թոյլ կուտային փողոց մանելու։

— Ախա՛ռ, ըսաւ հայը կամաց մը իր Թուրք ընկերոջ ականջէն, ամէն բան երեւան ելած է... խանութը կը խուզարկեն կոր, ա՛լ յոյս չի կայ։

— Կարծեմ լաւ կ'ընենք եթէ կրկին շոգենաւ մտնենք ու հեռանանք, փոխանակ այս տեղուանքը թափառելու, պատասխանեց միւսը նոյնպէս ցած ձայնով։

— Բայց գոնէ քիչ մը տեղեկութիւն քաղենք անցած դարձածին վրայ... դուն իբրեւ Թուրք կասկածելի չես, ուստի մօտեցիր սա սիմիթճիին ու հարցափորձէ զինքը։

Եւ հայը մատովը ցոյց տուաւ ծերունի Թուրք սիմիթճի մը որ հոն կեցած էր և մէկ երկու հոգիի հետ կը խօսակցէր։

Թուրքը անմիջապէս մօտեցաւ սիմիթճիին և ըսաւ.

— Խէր է իշալլահ... ի՞նչ է այս իրարանցումը, գողութի՞ւն մը պատահեցաւ։

— Ի՞նչ գողութիւն, գոչեց սիմիթճին, ապստամբի՛ վըտանգ մը անցուցինք... մազ մնաց որ ամենքս ալ օդը պիտի ելլէինք...։

— Ի՞նչ կ'ըսես, ըսաւ Թուրքը կեղծ յուզումով մը, ի՞նչ պատահեցաւ որ...։

— Սա երկաթագործ Սիմոնը, որո՞ւն մտքէն կ'անցնէր, Բօմպիճ է եղեր, հիմա եկան խանութը կոխեցին ու քան

հոս պօմպա գտան... խոշոր խոշոր պօմպաներ որոնց մէկ հատը բաւական է ամբողջ Սկիւտարը օդը հանելու համար... բարեբախտաբար ոստիկանութիւնը ժամանակին լուր առեր է և կրցաւ բոլորը մէկ ձեռք անցնել...:

— Իսկ երկաթագործը... անշուշտ ձերբակալեցին...:

— Թշուառականը կ'երևայ թէ իմացեր է գլուխը գալիքը և կծիկը դրեր է ժամ մը առաջ, բայց անշուշտ օձիքը ձեռք պիտի տայ. արդարութեան ձեռքէն ո՞ւր կրնայ փախչիլ...:

— Էյ խանութը բնաւ մարդ չի կա՞ր:

— Իր աշկերտը կար. տասներչորս տարեկան տղայ մը... բռնեցին տարին, բայց կ'երևայ որ ինքն անմեղ է, խեղճը երբոր տեսաւ թէ խանութին մէջ պօմպաներ պահուած է, վախէն մարեցաւ:

— Բայց միթէ պօմպաները մէջտե՞ղ դրուած էին:

— Ի՞նչ կ'ըսես, գետնին տակը փորեր, յատուկ տեղ շիներ ու հոն պահեր է, բայց ոստիկանութիւնը տակաւին խանութը չխառնած իմացեր է ուր պահուած ըլլալնին, այնպէս որ գալերիան պէս գտան ու մէջտեղ հանեցին:

— Իրաւցնէ՛ սարսափելի վտանգ մը անցուցեր էք, բաւթաւրքը գլուխը օրօրելով, փա՜ռք Աստուծոյ որ ժամանակին կարելի եղեր է առաջը առնել:

— Ո՛չ թէ միայն մենք, այլ բոլոր պոլսեցիները, գոչեց սիմիթճին, որովհետև Սիմոնին քօմիթէն միտք ունի եղեր այդ պօմպաներով Սկիւտարը, Գատը-Գիւղը, Քուզկունճուքը, Պէյլէրպէյը, կամուրջները, Կըզ Կուլէսին, վերջապէս եղածը չեղածը օդը հանելու... վա՛յ թշուառական մարդ վա՛յ, բնաւ մաքերնուս չէր անցներ որ այդպիսի վտանգաւոր արարած մը կար մեր մօտիկը: Տակաւին երէկ իրիկուն ինէ սիմիթ առաւ ու բաւական ալ հետը խօսեցայ... եթէ այն ատեն գիտնայի քօմիթէ ըլլալը, հաւատա՛յ որ իսկոյն գլուխը կը ջախջախէի...:

— Պօմպաները ո՞ւր փոխադրեցին...

— Ամենայն զգուշութեամբ ծածկելով տարին ու հոնկէ մաւունայի մը մէջ տեղաւորեցին ու կարծեմ Պոլիս պիտի տանին :

— Իսկ հիմա ի՞նչ կ'ընեն կոր տակաւին խանութին մէջ :

— Ի՞նչ պիտի ընեն, ամէն ծակը կը քննեն կոր, յուսալով որ դեռ նոր պօմպաներ ալ պիտի գտնեն :

Թուրքը խիստ պէտք եղածը իմացեր էր, ուստի մարդէն սիմիթ մը ծախու առնելէ ետքը հեռացաւ և սկսաւ դէպի Նաւամատոյց երթալ, ուր արդէն ուղղուած էր իր ընկերը :

— Ի՞նչ լուր ունինք, սիմիթճին խօսեցուցի՞ր, հարցուց այս վերջինը Թուրք ընկերը իր քով մօտենալուն պէս :

— Այո՛ և բաւական կարեւոր տեղեկութիւններ քաղեցի :

— Պատմէ տեսնենք :

Թուրքը մի առ մի կրկնեց ինչ որ լսած էր սիմիթճիէն :

— Այսպէս ուրեմն Սիմոն օձիքը ազատեր է, դուցէ հայը ուրախութեամբ, ամէն պատահած դժբախտութեան մէջ մեծ բախտ մըն է... կրնանք ապահով ըլլալ որ մէյ մը այսանկէն փախչելէն ետքը, ա՛լ ոստիկաններուն ձեռքը չի՛յնար : Խանութէն զատ՝ արդեօք տո՞ւնն ալ խուզարկած են :

— Տղա՛կը այդ մասին տեղեկութիւն մը չտուաւ, բայց ենթադրաբար խուզարկած պիտի ըլլան, տանէն փաստաթուղթ բան մը գտնելու :

— Այս նոր մանրամասնութիւնը որո՞ւն գործն է արդեօք, ըսաւ հայը հարցական դէմքով մը ընկերոջը երեսը նայելով :

Միւս ձեռքովը շարժում մը ըրաւ, որով ըսել կ'ուզէր. «չեմ գիտեր» :

Եւ սակայն երկուքն ալ միեւնոյն կասկածներով պաշարուած էին ու չէին համարձակեր զանոնք իրարու յայտնել :

Մեր վէպին նախորդ գլուխին մէջ տեսանք որ գաղտնի կազմակերպութիւնը Թիֆլիսական Ջիա փաշայի մահը վճռած և գործադրութիւնը յանձնած էր Արմէն և Սմբատ ընկերներուն ու-

րանց պիտի օժանդակէր երրորդ անձ մը։ Այդ, վճիռը կարելի չէր եղած գործադրել, սա պարզ պատճառաւ որ Զիա փաշա յանկարծ աներեւոյթ եղած էր Երլաքլէն։ Անկէ ի վեր մէկ քանի ամիս անցեր էր ու տակաւին մատնիչը երեւան չէր ելած։

Մահուան վճռին հետեւեալ օրն իսկ տեղի ունեցած այս անակնկալ անյայտացումը նախ մեծ զարմանք պատճառած էր ամենուն, յետոյ տեղի տուած էր սարսափելի կասկածի մը։

— Արդեօք մեր ընկերներուն մէջ նոր մատնիչ մը կար որ անմիջապէս Զիա փաշային իմաց տուաւ իրեն սպառնացող վտանգը եւ զայն հեռացուցած Պոլիսէն, ըսեր էր Սալիհա հանըմ։

Այս կասկածը այնքան օրինաւոր էր որ միւս ընկերներն ալ սկսեր էին խորհիլ եւ անձկութեամբ հարցնել թէ ո՞վ էր արդեօք իրենց մէջէն այն անարժան արարածը որ կ՚երթար մատնիչի մը դեր կը համաձայնէր։ Եւ ամենէն սարսափելին այն էր որ Զիային դէմ արձակուած վճիռը միայն ութը հոգիի ծանօթ էր եւ եթէ մատնիչ մը կար, հարկ էր այդ ութին մէջէն փնտռել։

Այդ նոր ձերբակալութիւնները եւ երկաթագործ Սիմոնի խանութին խուզարկութիւնն ու պոմպաներու երեւան հանուիլը դարձեալ կուգար խռովել ամենուն միտքերը եւ երկու ընկերները, չայխանին մէկ անկիւնը կծկած, խոր մտատանջութեան մը մատնուած էին։

Երբ կամուրջը հասան երկուքը միասին ուղղուեցան Ղալաթիա։

— Ի՞նչ պիտի ընենք հիմա, հարցուց հայր։

— Լաւագոյն բանն է երթալ եւ մեր ընկերները գտնել։

— Ուրեմն Թրամվայ նստինք։

Կէս ժամ ետքը Շիշլի, Օսման պէյի պարտէզին առջեւ վար կ՚իջնէին եւ կ՚երթային այն տունը ուր անգամ մը տա-

րինք մեր ընթերցողները և ուր կը գտնուէր մեր վէպին հերոսուհին՝ Սալիհա հանըմ։

Երբ երկու ընկերները իրենց գալուստը ծանուցանելէ ետքը, մտան վարի սրահը ուրկէն հոն ժողվուած էին Սալիհա հանըմ, Արիֆ, Հիւսնի, Սատըգ և երկու անձեր։

— Վա՜յ, հրամմեցէ՛ք նայինք, ըսաւ Սալիհա երկու նորեկներուն, ինչպէ՞ս ես Արամ և դուն Օսման...։

— Շատ գէշ, պատասխանեցին երկուքը միաբերան։

— Ի՞նչ կայ որ...։

— Միթէ չիմացա՞ք նոր ձերբակալութիւններն ու խուզարկութիւնները, հարցուց Արամ։

— Անշուշտ իմացանք և բո՛ւն աղբիւրէն.

— Որմէ՞։

— Սիւճանէն։

— Միթէ զինքը տեսա՞ք...։

— Այո՛, հոս պտըտտած է։ Միայն թէ ինք շիտակը ըսելու համար մեծ տեղեկութիւն մը չունի, քանի որ իր ընկերներուն ձերբակալութիւնը լսելուն պէս՝ խանութը թողած և հոս եկած է։ Եթէ դուք նոր բան մը գիտէ՛ք, հաղորդեցէ՛ք։

Երկու ընկերները մանրամասնօրէն պատմեցին ինչ որ տեսած ու լսած էին Սկիւտարի մէջ։

— Պէտք է խոստովանիլ որ մեր կացութիւնը շատ ծանր է, ըսաւ Սալիհա հանըմ երբ նորեկները իրենց պատմութիւնը աւարտեցին, մինչև հիմա մեզի դէմ եղած հալածանքները մեծ վնաս չէին պատճառեր, որովհետև ոստիկանութիւնն ու լրտեսները բառ բախտի կը գործէին, առանց որոշ ուղղութեան կամ որոշ հետքեր ունենալու, սակայն հիմա, ափսո՜ս, այնպէս չէ...։

Աւաղ Համիտ վերջապէս յաջողեցաւ մեր մէջէն մատնիչ մը ձեռք ձգելու և մատնիչ մը որ տեղեակ է մեր բոլոր գաղտնիքներուն և անոր շնորհիւ այժմ գիտակցաբար կը գործէ... եթէ այսպէս շարունակուի, հետզհետէ ամենքս ալ կըր-

նանք ձեռք լինալ և անօգուտ կերպով զոհուիլ, առանց մեր սուրբ նպատակին հասնելու... սիրելի ընկերներ պէտք է որ վճռական որոշում մը տանք:

Այս խօսքերը խորին ուշադրութեամբ լսուեցան: Ամենուն դէմքին վրայ անձկութիւնը դրոշմուած էր և ո՛չ ոք կը համարձակէր խօսք առնել և խօսելու:

— Կա՛մ այն է որ ամենքս ալ պէտք է թողունք փախչինք, շարունակեց Սալինա, և կամ այն է որ պէտք է մեր վերջին ճիգը թափենք...

— Մեր ընկերներուն մէջ չեմ կարծեր թէ մէկը գտնուի վտանգին առջեւէն փախչելու վատութիւնը ունենայ, ըսաւ Արիֆ:

— Ամենքս ալ պատրաստ ենք մեր կեանքը զոհելու հայրենիքի և ազատութեան համար, աւելցուց Սարգ:

Նոյն միջոցին սպասուհին դուռը բացաւ և Սալինա հանըմի այցաքարտ մը ներկայացուց: Տիկինը քարտին վրայ աչք մը նետելէ ետքը ըսաւ.

— Անմիջապէս զինքը ներս հրամցուր:

Յետոյ, իր ընկերներուն դառնալով աւելցուց.

— Շէվքէթն է եկողը, անպատճառ կարեւոր լուր մը ունենալու է:

Շէվքէթ հազիւ քսանըհինգ տարեկան ուսեալ և եռանդուն երիտասարդ մըն էր, որ շնորհիւ իր հօրը բարձր դիրքին՝ յաջողած էր Եըլտըզի պալատը պաշտօնի կոչուիլ կայսերական քարտուղարութեան մէջ: Իր ուշիմութեան շնորհիւ քիչ ժամանակուան մէջ կրցած էր բաւական կարեւոր դիրք մը ունենալ և մանաւանդ սիրելին դառնալ Թահսին փաշայի որուն կատարեալ վստահութիւնը կը վայելէր: Եւ սակայն Շէվքէթ իր դպրոցական շրջանէն սկսեալ ջերմ ու հաւատացեալ յեղափոխական մըն էր ու այդպէս ալ մնացած էր հակառակ Եըլտըզի մէջ պաշտօն առնելուն: Իր դպրոցական ընկերներէն ոմանք աքսորուեր, ուրիշներ անյայտացեր էին, մէկ քա-

նիններ ալ Եւրոպա ապաստանած էին ։ Շէվքէթ միշտ յաջողած էր այդ յեղափոխական գաղափարակիցներուն հետ յարաբերութիւն մշակել, առանց ինքզինք վտանգելու և շատ անգամ իր գրուած գիրքին շնորհիւ, անոնց մեծապէս օգտակար ըլլալ ։ Իր անձնուիրութեան և անկեղծութեան այնպիսի փայլուն ապացոյցներ տուած էր որ այժմ Սալիհա հանըմ և իր ընկերները զայն իբրև սրտակից ընկեր կը նկատէին և երբեք չէին վարաներ իրմէ ծառայութիւններ խնդրելու, զորս յօժարակամ կը կատարէր ։

Երբ սրահէն ներս մտաւ Շէվքէթ յուզուած կերպարանք մը ունէր և այդ բանը հոն եղողները խիստ նշմարեցին ։

— Ի՞նչ լուր կը բերես մեզի, խռոված երեւոյթ մը ունիս, ըսաւ Սալիհա, երիտասարդը բարեւելէ ետքը ։

— Արդարեւ խիստ կարեւոր լուր մը պիտի հաղորդեմ ։

— Խօսէ՛ տեսնենք ։

— Թիկնապահ Զիա փաշա վերադարձաւ պալատ ։

— Ե՞րբ ։

— Երէկ առտուընէ ի վեր ։

— Բայց ինչո՞ւ մինչև հիմա այդ լուրը չհաղորդեցիր . . . գիտես թէ որքա՜ն կարեւոր էր և եթէ երէկ առտու իմացած ըլլայինք գուցէ շատ մը դժբախտութիւններու առաջքը կըրնայինք առնել ։

— Այո՛, բայց անկարելի էր առանց կասկածի տեղի տալու պալատէն հեռանալ և ասոր համար ստիպուեցայ մինչև հիմա գալուստս յապաղել ։

— Ինչ որ է, պատասխանեց Սալիհա հանըմ ներողամիտ ժպիտով մը, բերած լուրդ մեզի համար այնքան կարեւոր է որ կը ներենք յապաղումդ ։ Հիմա ըսէ՛ տեսնենք թէ այդ մատնիչը ի՞նչ կ՚ընէ հոն հասնելէն ի վեր ։

— Իրա՛ւ որ այս մասին որոշ տեղեկութիւն մը չպիտի կրնամ տալ, պատասխանեց երիտասարդը, միայն սա նշմարեցի որ պալատ հասնելէն ի վեր շատ մտատանջ և զբաղուած

երեւոյթ մը ունի։ Երէկ առաւօտէն ի վեր կորսուեր է տղան, անգամ պալատէն դուրս ելաւ...։

— Չկրցա՞ր իմանալ թէ ինչ էր իր այս խուսափումին պատճառը։

— Ափսո՜ս, չկրցայ բան մը իմանալ այս մասին, բայց ինծի այնպէս կը թուի որ Ձեր փոքր այս միջոցին միմիայն անձնական խնդիրներով զբաղած է և բոլոր մտատանջութիւններս անձնական սահմանի մը շուրջը կը դառնան...։

Շէվքէթի այս խօսքերը հեգնական ձեւով մը ընդունուեցան նախարարներուն կողմէ։

— Բնականաբար իր անձը կը մտատանջէ, քանի որ գիտէ թէ մահուան դատապարտուած է, ըսաւ Սաիդը, բայց կը յուսամ որ այս անգամ չկրնար խուսափիլ իրեն սպասող արժանաւոր պատիժէն։

— Իսկ Աբտիւլ Համիտ ինչ վիճակի մէջ է, հարցուց Սալիհա հանըմ։

— Միշտ անկար ու հիւանդ, ամէն օր բժշկական խորհրդակցութիւններ կը կատարուին, բայց խիստ գաղտնի կը պահուին ինչ որ ցոյց կու տայ թէ իր վիճակը ծանրացած է։ Երէկ օրէ ի վեր գրեթէ ս և խօսքով զրկուած չանի և ամէն բան Իզզէթ փաշայի ձեռքը մնացած է։ Հին պալատականները կ'ըսեն թէ երբեք իր սուլթանական վիճակը այս աստիճան մտահոգութեան պատճառած չէր։

Նախարարը վայրկեան մը լռեց, և յետոյ խորհրդաւոր ձեւով մը ըսաւ,

— Գիտէ՞ք որ սուլթանին այս ծանր հիւանդութեան պատճառ եղաւ որ Ձեր փոքր երեւան ելլէ։

— Ինչպէ՞ս, հարցուց Սալիհա հետաքրքրութեամբ։

— Գիտէք այդպէս բառ ինծի պալատական մէկ բարեկամս պատմեց Շէվքէթ։ Ձեր փոքր երբ իր պալատին մէջ ունեցած մարդիկներու ձեռքով իմացեր է թէ Սուլթանը ծանր հիւանդ է և թէ ս և է գործով զբաղիլ կառավարութիւնը չա–

նի, խոկոյն վերադարձեր է պալատ… որովհետև Զիա ո՛չ թէ միայն ծածուկ Քօմիթէին՝ այլ նաև Սուլթանին ձեռքէն փախեր է…։

— Ի՜նչ տարօրինակ խօսքեր կ՚ընես, ըսաւ Սալիհա հանըմ, զարմանքով երիտասարդին նայելով։

— Ես պարզապէս ձեզ կը կրկնեմ ինչ որ իմացայ բարեկամէս և որուն անկեղծութիւններուն մասին շատ վստահութիւն ունիմ։

— Այս ամէն պատմութիւններուն մէջ մեզի համար կարևորագոյն պարագան այն է որ Զիա փաշա կրկին երևան ելած է ու այժմ Եըլտըզի պալատը կը գտնուի, ըսաւ Արիֆ, իսկ գալով անոր հոն վերադառնալուն պատճառներուն տակա կարևորութիւն չունի… հիմա խորհինք թէ ինչպէս այդ մարդուն արժանի պատիժը պէտի տանք առանց զայն մեր ձեռքէն փախցնելու։

— Շատ ճիշդ է ձեր ըսածները, պատասխանեց Սալիհա հանըմ, անօգուտ խօսքերով ժամավաճառ ըլլալու ատեն չէ։

— Եթէ կրկին ձեր նախկին որոշումը գործադրելու մտադիր էք, պէտք է որ աճապարէք, ըսաւ Շէվքէթ, որովհետև շատ կը կասկածիմ որ այդ մարդը դարձեալ աներևոյթ պիտի ըլլայ։

Պալատական քարտուղարը քիչ մըն ալ հոն մնալէ ու խօսակցելէ ետքը, մեկնեցաւ, խոստանալով նոր անկեղծութիւններ հաղորդել, եթէ ունենար։

Իր մեկնելէն ետքը Սալիհա և իր ընկերները երկար խորհրդակցութիւն մը ունեցան և որոշեցին նոյն գիշերն իսկ Զիա փաշան սպաննել տալ պալատին մէջ։ Նախապէս արդէն միջոցը գտած էին իրենցմէ մէկ քանի հոգի մտցնելու, այդ գործը գլուխ հանելու համար։

— Այս անգամ կը յուսանք որ մեր ձեռքէն չպիտի կրնայ խուսափիլ այդ վատ թշուառականը, ըսաւ Սաաըդ, որ

յանձն առած էր այդ վտանգաւոր գործողութեան մասնակցելու և որուն համար արդէն իր կեանքը տրամադրած էր։

— Աստուած ինչպէս որ անօրինած է, այնպէս կ'ըլլայ, պատասխանեց Հիւսնի։

Ամբողջ օրը խորհրդակցութեամբ անցաւ։ Ուրիշ մէկ քանի ընկերներ ևս եկան հանդիպեցան և մասնակցեցան խորհրդակցութեան։ Հիմա յայտնի կ'երեւար որ վերջին ձերբակալութիւններն ալ Զիայի նոր մատնութեան հետևանքն էին և այս բանը ա՛լ աւելի ատելութիւն կը գրգռէր իրեն դէմ։ Եթէ չի կրնային զինքը անմիջապէս մէջտեղէն վերցնել, այդ մարդը գուցէ մէկ երկու օրէն պիտի կրնար զիրենք ամենքն ալ ձերբակալել տալ, մանաւանդ որ, ինչպէս ըսինք, առաջին կասկած մը պաշարած էր ամենուն միտքը, այն է թէ նոր մատնիչ մը կար մէջերնին որ յարաբերութիւն ունէր Զիայի հետ և որուն ազդարարութեանց շնորհիւ առաջին անգամ կրցած էր խուսափիլ վրիժառու պատիժէն։

Գիշերը վրայ հասած էր արդէն և ամենքը մեր գիտցած տան ներքնայարկին մէջ հաւաքուած կը խօսակցէին, երբ անծանօթ մնացած նոր մատնիչին վրայ դարձաւ խօսքը։

— Նորէն եթէ Զիա իմանայ մեր այս օրուան որոշումները և կրկին անյաջող ըլլայ, ի՞նչ պիտի ընենք, ըսաւ յանկարծ Արիֆ, որ ինչպէս գիտենք, Սատըքի հետ մահուան պատիժը գործադրելու սահմանուած էր։

Այս հարցումը, մէկէն ի մէկ մէջտեղ նետուած, ընդհանուր յուզում մը առաջ բերաւ։ Ամենքը շփոթած՝ իրարու նայեցան, անգամ մը կասկածանքով։

— Ես կ'առաջարկեմ որ, ըսաւ Սատըք, մինչև որ մեր որոշումը չգործադրենք, ո՛չ ոք դուրս ելլէ այս տունէն։ Այս կերպով կրնանք վստահ ըլլալ թէ մատնութիւն անոր չպիտի ունենայ։

— Այո՛, գոչեց Սալիհա հանըմ, շատ խելացի խօսք մը ըսաւ մեր ընկերը, ես ալ համամիտ եմ իրեն, այս գիշեր բացի

Սատրպէն ու Սրբիթէն, մինչ ո՛չ մէկը այս անցքէն դուրս պէտք է ըլլէ։

— Սրդարև շատ խելացի միջոց մըն է բարեկամներս առաջարկածը, պատասխանեց Սքրիթ, միայն թէ, ափսո՛ս, քիչ մը ուշ մնաց...։

— Ինչո՞ւ համար, գոչեց նախկին խմբագիրը։

— Որովհետև կը տեսնեմ որ մեր մէջէն մէկը արդէն բացակայ է։

Սալիհա հանդէպ աչքը իր չորս բոլորը դարձուց և ըսաւ.

— Իրա՛ւ, Հիւսնի պէյը չեմ տեսնար մեր մէջ։

Անմիջապէս զանգակը հնչեցուց և սպասաւորը երևցաւ։

— Ո՞ւր է Հիւսնի պէյը, հարցուց Սալիհա։

— Քիչ մը առաջ մեկնեցաւ, պատասխանեց ուղիղը։

— Ըսաւ որ երկու ժամէն կրկին պիտի վերադառնայ։

Այս անակնկալ մեկնումը որ մինչև այն ատեն աննշմարելի մնացած էր, յանկարծ ընդհանուր խռովութեան նիւթ դարձաւ։ Արդեօք Հիւսնին էր այն ընկերը որ զիրենք կը մատնէր։

Եւ սակայն միւս կողմէ, Հիւսնի շատ մը պարագաներու մէջ կատարեալ անձնուիրութիւն ցոյց տուած էր և ամէնքն ալ կը վկայէին որ խանդավառ հայրենասէր մըն էր ու մէկնոյն ատեն անհաշտ թշնամի մը բռնակալութեան և մանաւանդ Աբտիւլ Համիտի, որուն զոհերէն մէկը եղած էր ինք։

— Բոլոր այս պարագաները շփոթութեան կը մատնէին Սալիհան ու իր ընկերները, որոնք չէին կրնար վճռական եզրակացութեան մը յանգիլ։

— Ինչ որ ալ ըլլան մեր կասկածները, այլևս չենք կրնար մեր որոշումը յետաձգել, այս տեսակ պարագաներու մէջ վարանումը ամէնէն աղէտաւոր բանն է, վճռեց Սալիհա, մենք պէտք է, մեր նախապէս տրուած որոշման համեմատ, այս գիշեր իսկ գործենք։

— Այո՛, այո՛, գոչեցին միւսները, ո՛վ չենք կրնար այս անգամ ալ առիթը փախցնել...:

— Եթէ նոյնիսկ հակառակիք, մենք պիտի երթանք մեր պաշտօնը կատարելու, ինչպէս չէ՞ Արիֆ, դիմեց Նախկին խմբագիրը, խօսքը իր խօսակցին ուղղելով:

— Անշուշտ պիտի երթանք, բայց արդէն հակառակող ալ չի կայ, պատասխանեց Արիֆ:

Մութը արդէն վրայ հասած էր և մեր բարեկամները կը շարունակէին իրենց խօսակցութիւնը, որուն եկած էր մասնակցելու նաև երկաթագործ Սիմոն: Նախկին խմբագիրը ատեն ատեն ժամացոյցը կը նայէր անհամբերութեամբ: Որոշուած էր որ երեկոյեան ժամը 10ին պիտի մեկնէին տունէն և նախապէս ձեռք առնուած միջոցներու շնորհիւ պիտի մտնէին Եըլտըզի պալատը, ուր պիտի կրնային երթալ մինչև մաբեյնիչ թիքնապաշին յարկաբաժինը: Եւ սակայն բոլոր այդ գործողութիւնները հազար ու մէկ վտանգներ կը ներկայացնէին, ու Արիֆի և Սատըքի ընկերները մտատանջութեան մատնուած՝ քանի՛ մեկնումի վայրկեանը կը մօտենար այնքա՛ն կը տագնապէին:

— Ժամը իննուկէսն է, ըսաւ Սալիհա հանըմ, միջոց մը իր խօսքը ընդհատելով:

Այս պարզ խօսքերը խորին տպաւորութիւն մը յառաջ բերին և ամէնքը իրենց խօսակցութիւնը դադրեցուցին:

Այսպէս ուրեմն կէս ժամէն իրենց երկու սիրելի ընկերները պիտի երթային կեանքերնին վտանգելու, անողոք վճիռ մը գործադրելու համար...: Այս մտածումը բոլորն ալ կը յուզէր:

Նոյն իսկ Սատըք որ այնքան եռանդ ու անհամբերութիւն ցոյց կու տար, կը սկսէր յուզուիլ քանի՛ մեկնումի վայրկեանը կը մօտենար: Նախկին խմբագիրը երկիւղ մը միայն ունէր, այն է որ գուցէ իրենց գործը չկատարած՝ ձեռք պիտի իյնան ու զուր տեղը զոհուին:

— Եթէ յաջողինք ու յետոյ մեզ բռնեն կամ մեռցնեն, բնաւ հոգս չէ, կը կրկնէր։

Լռութեան մէջ յանկարծ Սերիֆ ոտքի ելաւ և ըսաւ.

— Կարծեմ մեկնելու վայրկեանը հասաւ, ժամը տասնին տասը կայ… երթանք որպէսզի մեր ընկերները չսպասցնենք։

Սատըրգ ինքն ալ ոտքի ելաւ։

Ճնշիչ լռութիւնը կը շարունակուէր և ո՛չ ոք սիրտ կ'ընէր բերանը բանալու և խօսք մ'ըսելու։

Յանկարծ պարտէզին դրան զանգակին ձայնը լսուեցաւ։

— Ո՞վ է արդեօք այս ժամուս եկողը, ըսաւ Սալիհա հանըմ։

Յետոյ, երիտասարդներուն դառնալով աւելցուց.

— Սպասեցէ՛ք քիչ մը որ հասկնանք։

Երկու վայրկեան ետքը սպասուհին ներս մտաւ։

— Անծանօթ մը եկած է և ձեզ տեսնել կ'ուզէ, ըսաւ Սալիհա հանըմին։

— Ո՞վ է…։

— Չեմ գիտեր, առաջին անգամն է որ հոս կուգայ։

— Առանձի՞ն է։

— Այո՛։

— Ըսէ՛ որ չեմ կրնար զինքը ընդունիլ մինչև որ իր ո՛վ ըլլալը չյայտնէ։

Սպասուհին դուրս ելաւ և քիչ մը ետքը վերադարձաւ։

— Ահաւասիկ իր այցետոմսը, ըսաւ փոքրիկ թուղթ մը երկարելով Սալիհային։

Տիկինը աչք մը նետեց այցետոմսին վրայ և աղաղակ մը արձակեց.

— Ի՞նչ կայ, ի՞նչ ունիս, աղաղակեցին ներկաները իր քով փութալով։

— Տեսէ՛ք, ըսաւ Սալիհա, քարթը Սատըրգի երկարելով։

Սատըրգ առաւ զայն և բարձրաձայն կարդաց. «ՋԻԱ ՓԱՇԱ, ԱՐԲՈՒՆԻ ԹԻԿՆԱՊԱՀ»։

Այս անունը լսելով ամէնքը ապշութեամբ իրարու երես նայեցան։

— Անկարելի բան է այս, խաղ մը ըլլալու է պարզապէս, գոչեց նախկին խմբագիրը։

— Այս աստիճան անպատկառ յանդգնութիւն կարելի չէ երեւակայել, աւելցուց Արիֆ։

— Կ'երեւայ որ տունը պաշարել տուած է և մեզի ձերբակալելու կուգայ, ըսաւ Միմոն։

— Ի՞նչ պատասխան պէտք է տալ այս անձին, հարցուց սպասուհին ֆրանսերէն լեզուով, չկրնալով ըմբռնել հոն գտնուող անձերուն յուզումը։

— Ըսէ՛ք որ ներս հրամմէ, պատասխանեց, Սալիհա հանըմ, ամենայն հանդարտութեամբ։

Սպասուհին դուրս ելաւ։

— Բայց տիկին, գոչեց Սատըգ, ի՞նչպէս թոյլ կուտաք որ այդ մարդը մեր քովը գայ․․․։

— Քանի որ մինչեւ հոս եկած է, ըսել է թէ կարեւոր բան մը ունի մեզի ըսելիք, պատասխանեց Սալիհա։

— Բայց եթէ մեզի մատնելու եկած է․․․։

— Չեմ կարծեր, մեզ մատնելու կամ ձերբակալելու համար պէտք չունէր ինք անձամբ գալու։

— Հիմա որ այդ մատնիչը մեր տեղը իմացաւ, ա՛լ ամէնքըս ալ կորսուած ենք գոչեց Սատըգ։

— Ո՛վ գիտէ, պատասխանեց Սալիհա իր անխռով ձայնովը։

— Կրնանք մենք կորսուիլ, աւելցուց Արիֆ, բայց ինքն նախ այստեղ չանսատակ կ'ըլլայ։

Եւ դողահար ձեռքով մը րէվոլվէրը հանեց գրպանէն։

— Շո՛ւտ գրպանդ դիր զէնքը, հրամայեց Սալիհա։

— Մատնիչ մը ընդունելու համար կարծեմ ուրիշ կերպ չենք կրնար ընել, ըսաւ Սատըգ, ինքն ալ րէվոլվէրը գրպանէն հանելով։

— Կը հրամայեմ որ զէնքերնիդ գրպաննիդ դնէ՛ք և հանդարտ նստի՛ք, առանց խօսքի խառնուելու, գոչեց Սալիհա։

Այս խօսքերը այնքա՜ն տիրական կերպով արտասանած էր որ երկուքն ալ գլխիկոր համակերպեցան և զէնքերը անյայտացուցին։

Այդ միջոցին դուռը բացուելով Զիա փաշա ներս մտաւ։

Զիա փաշա ծանրախոհ և համարձակ երևոյթով մը քանի մը քայլ առնելէ յետոյ սրահին մէջ, դուռը գոցեց, և խօսքը հոն գտնուողներուն ուղղելով, ըսաւ․

— Բարև, ընկերնե՛ր։

Ոչ ոք այդ բարևը առաւ։ Ամէնքն ալ լուռ մնացին և ատելութեամբ լեցուն իրենց նայուածքները անոր վրայ ուղղեցին։ Զիա փաշա, առանց զգածուելու, քանի մը քայլ ևս յառաջանալով, ըսաւ․

— Ներողութիւն, միտքս բացատրելէ առաջ պէտք կը զգամ նստելու, որովհետև շատ յոգնած եմ։

Զիա փաշա, առանց հրաւէր ընդունելու, թիկնաթոռի մը մէջ նստաւ։

Յետոյ ներկաներուն վրայ լուռ և հրացայտ նայուածք մը ձգեց։ Իսկ թեթև ու աննշմարելի ժպիտ մը ուղղեց Սալիհա հանըմի, որ թիկնաթոռի մը մէջ նստած էր։ Միւսները ոտքի վրայ կեցած էին։

Զիա փաշա Արիֆ ու Սատըգ պէյերու կողմը դառնալով ըսաւ․

— Այս գիշեր պիտի սպաննէիք զիս․ այդ յոգնութենէն ձեզ ազատելու համար է որ հոս եկայ։ Վտանգաւոր գործ մըն է մինչև Եըլտըզի պալատը երթալ, զիս սպաննելու համար։ Եթէ յաջողէիք ալ ձեր կեանքը վրայ պիտի տայիք անպատճառ, մինչ հոս կրնաք անվտանգ կերպով սպաննել զիս։

Զիա փաշա այդ խօսքերը ընելէ յետոյ պահ մը լուռ մնաց։ Կարծես թէ պատասխանի կը սպասէր։ Սակայն տեսնելով որ ձայն հանող չկար, խօսքը շարունակեց․

— Իրաւ է որ ատկէ առաջ անհետացայ, երբ իմացայ որ իմ մասին մահավճիռ մը տուած էք, սակայն չէի կրնար այն ատեն մեռնիլ, որովհետեւ գործս աւարտած չէր...։ Բնականաբար կ'ուզէք որ այդ գործին ինչ ըլլալը ձեզի յայտնեմ։ Ձեզի եւ հայրենիքիս հանդէպ գործած մատնութիւններս լրացած են այդ գործով. հետեւաբար մահը այսուհետեւ նշանակութիւն չունի ինծի համար, սակայն կը խնդրեմ որ նախ իմ բացատրութիւններս լսէք. եթէ այդ շնորհը չընէք ինծի, ահաւասիկ կուրծքս բաց է...։

Ու Զիա փաշա վերարկուին կոճակները քակելով, կուրծքը ցուցուց Սաադ եւ Արիֆ պէյերուն։

— Ահաւասիկ պատրաստ եմ, ըսաւ։

Երկու երիտասարդները շուարած, Սալիհա հանըմի երեսը նայեցան։

Սալիհա հանըմ խօսքը Զիա փաշայի ուղղելով, ըսաւ.

— Խօսէ՛, մտիկ կ'ընենք. հոս ո՛չ թէ մարդասպաններ, այլ դատաւորներ կան։

— Շնորհակալ եմ, պատասխանեց Զիա փաշա։ Ապահով եղէք որ ամէն ինչ անկեղծօրէն պիտի յայտնեմ, եւ ինքզինքս արդարացնելու ո եւ է ջանք չպիտի ընեմ։

— Մենք ալ անպատճառ քեզ յանցաւոր համարելու չպիտի աշխատինք, ըսաւ Սալիհա հանըմ։

Թիկնապահը սա պատասխանը տուաւ.

— Շա՛տ լաւ, հիմա իրար կը հասկնանք։

Արիֆ եւ Սաադ պէյերը, որոնք թշնամական դիրքով ոտքի վրայ կեցած էին, մէյ մէկ աթոռ առնելով նստան։

Զիա փաշայի խօսքերը աստիճանաբար մեղմացուցին երկու երիտասարդներու քինախնդիր զգացումները, Զիա փաշա այդ պարագան նշմարելով, գոհունակ երեւոյթով մը շարունակեց խօսքը.

— Կ'ընդունիմ որ մեր գաղտնի ընկերութեան եւ ընկերներուս հանդէպ շատ ստորին կերպով վարուեցայ եւ ըրած եր-

դումս դրժեցի... անկէ զատ՝ կը խոստովանիմ որ գործած արարքներուս համար տրուած մահուան վճռին արժանի եմ... Երլտըզի պալատը մտնելու համար, մեր ընկերները Ապտիւլ Համիտի մտնելու չքաշուեցան, բայց բոլոր այս բաները ո՛չ դրամի, ո՛չ փառքի և ո՛չ ալ Թշնամութեան համար ըրի, այլ խելայեղ յուսահատութեան մը վայրկեաններուն, երբ Ինքզին-քիս տէրը չէի։

Սալիհա հանըմ Զիա փաշայի խօսքը ընդմիջելով ըսաւ.

— Ի՞նչ բան կը բռնադատէր քեզ, այդ բաները ընելու համար։

— Սէրը մղեց, ըսաւ Զիա փաշա, ամօթապարտ ու գըլ-խիկոր.

Զիա փաշայի այդ պատասխանը զարմանքով լռեցաւ ու ամենքն ալ իրարու երես նայեցան։

Սալիհա հանըմ տեսնելով որ Զիա փաշա լուռ կը մնար, խօսքը անոր ուղղելով.

— Շարունակեցէք, ըսաւ։

Զիա փաշա խօսքը շարունակեց դողահար շրթունքներով

— Այո՛, սէրն է որ այդ յիմարութիւնը գործել տուաւ ինծի։ Ինքզինքիս տէրը չէի. ըսաւ միտքէս չէր անցներ թէ սէրը այնքան պիտի տառապեցնէր զիս որ օրին մէկը ամէն բան պիտի մոռնայի, նոյնիսկ հայրենիքս ու պատիւս պիտի զոհէի։

Կայսերական Թիկնապահը կը ջանար իր վիշտը զսպել։

— Այո՛, յարգոյ փաշան, կը սիրէի այն աղջիկը, Տիլա-րան, զոր ես ձեռքովս տարած յանձնած էի Ապտիւլ Համիտի ...։ Սկիզբները պարզապէս համակրութիւն մը ունէի այդ աղջկան նկատմամբ, բայց այդ զգացումը բուռն սիրոյ մը փոխուեցաւ իմ մէջս, տեսնելով որ Տիլարա անզուսպ տար-փանքով մը կը սիրէր զիս։ Այդ հոգեկան վիճակէն օգուտ քաղելով Տիլարան հլու գործիք մը դարձուցի. իմ Թելադրու-թիւններուս վրայ, Տիլարա կարգ մը ծառայութիւններ

մատոյց մեր գաղտնի քօմիթէին։ Դուք ալ աղէկ գիտէք թէ այդ աղջիկը ինչ անմխալելի ծառայութիւններ ըրած է մեզի։ Այդ համակրութիւնը աստիճանաբար սաստկանալով զօրաւոր տարփանքի մը փոխուեցաւ։ Տիլարայի մասին Ապտիւլ Համիտէն նախանձելուս, աւելի բուռն ատելութիւն մը կը զգայի Սուլթանին նկատմամբ։ Այդ միջոցին էր որ դուք ձերբակալուեցաք ու աքսորուեցաք, մինչ ես խոյս կուտայի պալատէն։ Սուէզի ջրանցքին մէջ պատահած դէպքերը յայտնի են։ Այդ տագնապալի օրերուն, մեր գործերով զբաղած ըլլալուս, Տիլարայի սէրը մոռցած էի։ Սակայն Գահիրէ երթալէս յետոյ հանդարտութիւնս գտած ըլլալով դարձեալ միտքս ինկաւ Տիլարան, ու անոր սէրը արծարծեցաւ իմ մէջս։ Թերեւս Սալիհա հանըմ Գահիրէ գտնուած միջոցին իմ վշտագին, յուսահատ և մտահոգ երեւոյթս նշմարած էր։

— Այո՛, կը յիշեմ ձեր վշտագին և յուսահատ վիճակը։ Այդ հոգեկան վիճակը ամենուս ուշադրութիւնը գրաւած էր։

— Այդ վիճակը հետզհետէ ծանրացաւ։ Եըլտըզի պալատին մէջ ունեցած հաւատարիմ բարեկամներէս մէկուն միջոցաւ իմացայ թէ Տիլարա խիստ հետապնդումներու ենթարկուած էր։ Ապտիւլ Համիտ գուշակած ըլլալով անոր և իմ միջեւ եղած գաղտնի յարաբերութիւնները, Տիլարա արքայական կանանոցին մէջ բանտարկուած, ամեն յարաբերութենէ զրկուած, թշուառ կեանք մը կ'անցնէր իր հակառակորդին՝ Գէլքիսի քմահաճ խոշտանգումներուն ենթարկուած. ահա՛ ինչ որ ինծի կ'իմացնէր բարեկամս։ Այն մտածումը թէ իմ սիրած ու պաշտած աղջիկս, իմ պատճառաւս խեղ լքումի, բանտարկութեան ու չարչարանքներու ենթարկուած է, զիս բոլորովին խելայեղ ըրաւ։ Կ'ուզէի Պոլիս վերադառնալ, երթալ ազատել այդ թշուառ աղջիկը բռնաւորին ձեռքէն ու իրեն վերադարձնել ազատութիւնը զոր ինծի համար կորսնցուցած էր. բայց ինչպէ՞ս կրնայի ընել այդ բանը... յետոյ խորհեցայ երթալ Ապտիւլ Համիտի ոտքը իյնալ, ներում խնդրել և այս

կերպով ազատել Տիգրան։ Բայց այս միջոցն ալ անհնարին էր որովհետեւ շատ լաւ կը ճանչնայի Սպտիւլ Համիտը եւ կրնայի վստահ ըլլալ որ ո եւ է աղաչանք ու պաղատանք չպիտի կըրնար ազդել այդ բռնաւորին սրտին վրայ եւ թէ իմ անձնազոհութիւնս ո եւ է օգուտ չպիտի կրնար ունենալ։ Այս տագնապալից մտածումներուս մատնուած միջոցիս նոր նամակ մը առի բարեկամէս։ Այդ նամակը կ'իմացնէր թէ Տիգրա հիւանդ էր, թէ արգելափակումը զինքը արդէն հիւծած, մաշեցուցած էր եւ թէ բժիշկները վախ յայտնած էին թէ շուտով զոհ պիտի երթար թոքախտին...։

Այս նոր դուժաբեր տեղեկութիւնները զիս բոլորովին խելայեղութեան մատնեցին. ա՛լ խելքս բոլորովին կորսնցուցած էի, բանականութիւն, կամք, ինքնագիտակցութիւն խոյս տուած էին ինէ ու այս հոգեկան վիճակին մէջ ահա՛ Գահիրէէն ճամբայ ելայ Սօֆիա երթալու համար։

Հոն պահուած միջոցիս՝ Երլտըզի կանանոցին հետ յարաբերութիւն ունեցող օտարահպատակ կին մը եկաւ զիս գտաւ եւ ինծի յանձնեց Տիգրայի մէկ նամակը։ Այս գրութեամբ հէգ թշուառ աղջիկը կոչում կ'ընէր իմ սիրոյս եւ կ'աղաչէր որ զինքը փրկէի իր անտանելի կացութենէն ու միեւնոյն ատեն կը յայտնէր որ եթէ քիչ մըն ալ տեւէր իր ներկայ վիճակը, ապահովապէս չպիտի կրնար տոկալ ու զոհ պիտի երթար զինքը արդէն կրծել սկսող ահռելի հիւանդութեան։ Նամակը բերող կինը ինքն ալ բերանացի կերպով հաստատեց նամակին մէջ գրուածները եւ ըսաւ որ եթէ ճար մը չկրնայի գտնել իր սիրականին ազատութեան փութալու համար, անոր մահուանը պատճառ պիտի ըլլայի։ Ձեզ կը թողում երեւակայել որ իմ հոգեկան կացութեանս մէջ այս նոր լուրերը ի՛նչ ազդեցութիւն ըրին իմ վրաս։ Սկսայ օտարուհիին հետ խորհրդակցիլ փրկութեան ճամբայ մը գտնելու համար։

— «Միակ միջոց մը կայ, ըսաւ ինծ խօսակիցս, այն է ջանալ կրկին Սուլթանին վստահութիւնը գրաւել եւ Երլտըզի

մէջը նղունուիլ: Այն օրը ուր Սուլթանը ներէ քեզի, միեւնոյն ատեն պիտի ներէ նաեւ Տիկարայի, քանի որ այս վերջինը միմիայն քու պատճառաւդ է որ ներկայ խստութիւններուն ենթարկուած է:

— «Բայց ինչպէ՞ս կարելի է կրկին Սպտիւլ Համիտի աչքը մտնել և անոր վստահութիւնը գրաւել բոլոր այս եղածներէն ետքը, պատասխանեցի յուսահատութեամբ:

— «Անկարելի բան չիկայ, խորհուրդ տուաւ խօսակիցս քենէ աւելի մեծ յանցաւորներ յաջողած են Պոլիս դառնալ և իրենց նախկին դիրքէն աւելի փայլուն դիրքեր գրաւել, բաւ է որ իրենց զղջումը և հաւատարմութիւնը կարենան ապացուցանել... և քեզի համար ասիկայ դժուար բան մը չէ:

— «Ի՞նչ ապացոյց կրնամ տալ, ըսի բոլորովին խելքս գլխէս գացած:

— «Քու գտնուած կացութեանդ մէջ միթէ դժուա՞ր է հաւատարմական ապացոյցներ տալ, դուն որ իբրև յեղափոխականներու պետերէն մին այնքա՜ն գաղտնիքներ ունիս քովըդ, որոնց մէկ հատին տիրանալու համար Սուլթանը պատրաստ է այնքա՜ն զոհողութիւններ ընելու...»:

Այս խօսքերը ահուելի ցնցում մը յառաջ բերին իմ ներսիդիս, ուզեցի հեռանալ այդ նենգաւոր· կնոջ քովէն որ կը փորձէր զիս անարգութեան անդունդը գլորել: Բարկութեամբ ոտքի ելայ և գոչեցի.

— Աւելի կը նախընտրեմ մեռնիլ, քան թէ այդպիսի վատութեան մը յանձնառու ըլլալ...:

Կինը առանց իր պաղարիւնութիւնը կորսնցնելու, ամենայն հանդարտութեամբ պատասխանեց.

— Եթէ խնդիրը միմիայն քու անձիդ վրայ ըլլար, իրաւունք ունէիր այսպէս խօսելու, բայց մտածէ՛ որ քու այս բռնած ընթացքիդ պատճառաւ, անմեղ աղջիկ մը որ քեզ կը սիրէ, զոհ կ'երթայ: Եւ այս աղջկան ներկայ կացութեան ամբողջ պատասխանատուութիւնը քու վրադ կը ծանրանայ...:

Միթէ նուա՞զ մեծ վատութիւն մըն է քու ըրածդ երբ դուն վտանգին մէջ կը ձգես կը փախչիս, ազատ երկիր մը կ'երթաս ուր կրնաս ուզածիդ պէս շնչել, ու ապրիլ, մինչ բանտարկութեան ու չարչարանքներու մէջ կը թողուս քու տկար զոհդ որուն միակ յանցանքը եղած է քեզ անկեղծ ու բուռն սիրով մը սիրելը։ Եւ երբ խեղճ մահամերձ աղջիկը երկու ձեռքը քեզ կ'երկարէ ու օգնութի՛ւն կ'աղաղակէ, դուն անտարբերութեամբ կռնակդ կը դարձնես և հանգիստդ չխանգարելու համար մեծանձնութիւն ծախել կ'ուզես։ Եթէ ճշմարտապէս սիրէիր Տիլարան, չպիտի վարանէիր գլուխը ազատելու համար ամէն բանի յանձնառու ըլլալ, որովհետև ճշմարիտ ու անկեղծ սէրը ամէն բան կը մաքրէ։

Այս խօսքերը կրկին պղտորեցին միտքս, փորձութեան չենթարկուելու համար իսկոյն հեռացայ քովէն ու գացի առանձնութեան մէջ մտածումներս ամփոփելու։

Միակ սեւեռուն գաղափար մը ամբողջ էութիւնս կը լլկէր, այն էր Տիլարայի կեանքը վտանգի մէջ ըլլալուն գաղափարը և երբ կը մտածէի թէ ես գուցէ կրնայի փրկել զայն բոլորովին խելքս կը կորսնցնէի։

Ամբողջ գիշերը անքուն անցուցի խենթի մը պէս թափառելով փողոցները։ Հետեւեալ օրը կինը կրկին եկաւ զիս գտաւ և սկսաւ դարձեալ զիս համոզելու ջանալ։

— Եթէ երբեք մատնութիւն մըն ալ ընես, կը կրկնէր ինձ, գործած չարիքդ ժամանակաւոր պիտի ըլլայ, որովհետև անգամ մը որ պալատան մէջ վերստանաս քու նախկին դիրքդ ու ազդեցութիւնդ, կրնաս անոնց շնորհիւ գործած չարիքդ դարմանել։

Այս թելադրութիւնը ամենէն աւելի ազդեց իմ վրաս։ Խորհեցայ թէ իրաւամբ կրնայի գուցէ գործելիք չարիքներս դարմանել և այն ատեն մատնութիւնը այլևս գէշ գործ մը չի թուեցաւ աչքերուս։ Կինը հասկցաւ որ ընդդիմութիւնս կը

տկարանար և սկսաւ աւելի համոզել զիս։ Վերջապէս ճարահատ՝ ըսի իրեն․

— «Բայց Ապտիւլ Համիտի հետ ի՞նչ կերպով կարելի է բանակցիլ․․․։

— «Ատիկա շատ դիւրին է, պատասխանեց, չիտակ Սոֆիայի կայսերական քօմիսէրին կը դիմես, զղջումդ և Պոլիս դառնալու փափաքդ կը յայտնես և կը խնդրես որ իսկոյն պալատ հաղորդեն և հրահանգ ուզեն․ Տեսնենք ի՛նչ պատասխան կու տայ Ըլտըզէն և ըստ այնմ կ՚որոշես ընելիքդ։

Եւ թախանձեց որ իսկոյն, առանց վայրկեան մը կորսնցնելու այդ դիմումը ընեմ։ Հոգեկան այնպիսի տագնապի մը մատնուած ու ջլատուած էի որ ոչխարի մը համակերպութեամբ գործադրեցի իր ըսածը։ Գացի քօմիսէրը գտայ և ներում հայցելու պատրաստակամութիւնս յայտնեցի։

Քօմիսէրը, կ՚երեւակայէք անշուշտ, շատ սիրալիր ընդունելութիւն մը ըրաւ ինծ և ըսաւ թէ փափաքս իսկոյն պիտի հեռագրէ Ըլտըզ․ միեւնոյն ատեն ուզեց որ ես ալ զղջումի հեռագիր մը խմբագրեմ և իրեն յանձնեմ որպէսզի միասին ղրկէ։ Ա՛լ բռնուած էի յորձանքին մէջ և կարելի չէր ետ դառնալ։ Իր պահանջումը կատարեցի։

Երկու օր ետքը պատասխանը կը հասնէր։ Սուլթանը բացարձակ ներում կը շնորհէր ինծի և զիս կը վերահաստատէր իմ Թիկնապահի պաշտօնիս մէջ և միեւնոյն ատեն 500 ոսկի կը ղրկէր իբրև ճամբու ծախք։ Այս լուրը հաղորդելով ինձ, Կայսերական քօմիսէրը ըսաւ․

— Կը տեսնես որ մեր Վեհափառ Տէրը որքա՜ն բարեացակամութիւն ցոյց կու տայ քեզի հանդէպ, բայց ատոր փոխարէն ալ քենէ յանձնառութիւններ կը պահանջէ ի հարկէ։

— Ի՞նչ յանձնառութիւն հարցուցի դող ելած։

— Նախ պէտք է բացարձակ կերպով խօսք տաս թէ այլեւս ո և է մասնակցութիւն չպիտի ունենաս յեղափոխական

քոմիթէներու հետ և թէ չպիտի դաւես Վեհափառ Սուլթանին դէմ։

— Այդ մասին պատրաստ եմ պատուոյս վրայ երդում ընելու, ըսի։

— Բայց ասիկա բաւական չէ, աւելցուց, պէտք է նաև որ ձեռքէդ եկածին չափ օգնես մեզի որպէսզի պետութեան և Վեհապետին դէմ դաւաճանող այդ վնասակար արարածները չէզոքացնենք ու չկրնան իրենց եղեռնական գործերը առաջ տանիլ։

Ասիկա, ինչպէս կը տեսնէք, մատնութեան առաջարկն էր պարզապէս։ Պահ մը լուռ մնացի, առանց կարենալ պատասխան մը գտնելու։

— Առանց այս էական պայմանին անկարելի է որ վայելես Վեհափառ Սուլթանին շնորհները, շարունակեց քոմիսէր պէյը։

— Որոշ կերպով ըսէ՛ք թէ ի՞նչ կը պահանջէք ինէ, կըմկըմացի։

— Շատ բնական բան մը, պատասխանեց, այսինքն թէ՝ երբոր ձեզի դիմում ըլլայ՝ տեղեկութիւններ տաք Քոմիթէի անդամներուն մասին ձեր գիտցածներուն վրայ։

— Ձեզի՞ պիտի տամ այդ տեղեկութիւնները, հարցուցի։

— Բնաւ երբէք, այլ երբոր Պոլիս վերադառնանք և երբ առիթը ներկայանայ, այն ատեն միայն գուցէ կրնայ պատահիլ որ այդ առիթը բնաւ չներկայանայ, այն ատեն ո՛չ ոք ձեզ պիտի ստիպէ խօսելու։

— Լա՛ւ, այդ պայմանն ալ կ'ընդունիմ, ըսի։

Անկէ ետքը, երկու անգամ եւս տեսակցեցայ քոմիսէր պէյին հետ և կրկին հեռագրով հաղորդուեցաւ Պալատ իմ յանձնառութիւններս։ Վերջապէս, չերկարեմ, քանի մը օր ետքը Սօֆիայէն ճեպընթաց կառախումբով կը մեկնէի Պոլիս Սիրքէճիի կայարանը երբ հասայ, տեսայ որ Թահսին փաշա անձամբ եկած էր զիս դիմաւորելու։ Հազիւ թէ վակօնէն ի-

ջած էի, զիս ողջագուրեց և համբուրեց, համակրանքի չափազանց ցոյցեր ընելով:

Պալատական կառքով մը հասանք Եըլտըզ և իսկոյն Սապտիւլ Համիտ զիս իր ներկայութեանը ընդունեց և խիստ սիրալիր ձայնով մը ըսաւ.

— Դուն թէև ինծի դէմ գործեցիր, բայց քեզ այնչա՜փ կը սիրեմ և այնքա՜ն վստահ եմ քու զղջումիդ անկեղծութեանը որ բոլորովին կը մոռնամ անցեալը և այս վայրկեանէս կրկին իմ նախկին համակրանքս կը շնորհեմ քեզի և կուզեմ որ դարձեալ իմ անձնական թիկնապահի պաշտօնդ վարես:

Խորին շնորհակալութիւնս յայտնեցի և դուրս ելայ քովէն Եըլտըզ հասնելով՝ բնականաբար առաջին գործս եղաւ տեղեկութիւն առնել Տիկրանի մասին: Միշտ բանտարկուած և հսկողութեան ներքև էր և միշտ ակար ու անհամբեր կը ըսպասէր իմ վերադարձիս: Անմիջապէս միջոց գտայ գալուստս իրեն իմացնելու և միևնոյն ատեն ունկնդրութիւն մը խընդրեցի Սուլթանէն: Սապտիւլ Համիտ ամենայն հաճութեամբ ընդունեց զիս:

— Վեհափառ Տէր, ըսի, այս պալատին մէջ մէկը կայ որ անմեղ անձը և իմ պատճառաւս, հալածանքներու ենթարկուած է իմ փախուստէս ի վեր, այժմ որ ինծի՝ ներեցիք հարկ է որ միևնոյն ատեն իրեն ալ ներէք:

— Ո՞վ է այդ անմեղ զոհը, հարցուց Սապտիւլ Համիտ անուշութեամբ:

— Խեղճ աղջիկ մը որ ձեր համակրութեան արժանացած էր:

— Տիկրա՞ն, հարցուց:

— Այո՛, Վեհափառ Տէր, պատասխանեցի, անոր շնորհը կը խնդրեմ ձենէ:

Սապտիւլ Համիտ պահ մը լուռ մնաց, յետոյ շեշտակի աչքերուս մէջ նայելով պատասխանեց:

— Տիլարան քեզի կ'ուտամ կ'ուզե՞ս․․․։

Այս անակնկալ խօսքերը այնքա՛ն իմ բաղձանքներս կը գերազանցէին որ երախտագիտութեամբ Համիտի ոտքերը ինկայ և շնորհակալութիւն յայտնեցի։ Այն ատեն ինք ինծի ըսաւ․

— Պէտք չի կայ երախտագէտ ըլլալու, որովհետև ես ալ ի փոխարէն քենէ ուրիշ ծառայութիւն մը կը սպասեմ։

— Հրամայեցէ՛ք, Վեհափառ տէր, գոչեցի։

— Գիտեմ որ, շարունակեց, Քօմիթէին գլխաւորը և իր մէկ քանի ընկերները Պոլիս կը գտնուին, գիտեմ նաև որ դուն իբրև այդ Քօմիթէին գլխաւոր անդամներէն մին, գիտես իրենց Թաքստոցը․․․ արդ, ի փոխարէն, պէտք է որ դուն ալ այդ մարդիկը ինծի յանձնես։

Պատասխանեցի թէ այդ ծառայութիւնը չպիտի կրնայի մատուցանել, որովհետև իմ Պոլիս վերադառնալուս հետեւանքով՝ նախկին ընկերներս ինէ կը կասկածէին և անշուշտ նախազգուշական միջոցներ ձեռք առած էին արդէն, բաց աստի ըսի որ այս միջոցիս Պոլսոյ մէջ Քօմիթէէն ո և է մէկը չի կար։

Բայց այս խօսքերս բնաւ չհամոզեցին Սպտիւլ Համիտը, որ յանկարծ իր մեղմ ու անոյշ խօսուածքը դադրեցուց և դաժան ձեւով մը ըսաւ․

— Չարաչար կը ստես կոր, ես ապահով անգէ իմացած եմ որ Քօմիթէին գլխաւորը Պոլիս կը գտնուի քանի մը ընկերներով և դո՛ւն ալ անպատճառ իրենց եղած տեղը գիտես․․․և եթէ տակաւին յամառիս ու չուզես բան մը ըսել, գիտցած եղիր որ նախ չարաչար մահուամբ մեռցնել պիտի տամ Տիլարան ու անկէ ետքն ալ քեզ զնտաններու մէջ պիտի փըտացնեմ։

Սարսափահար մտիկ ըրի այս սպառնալիքներուն, առանց կարենալ բերանս բանալու։

— Կ'երդնում որ վաղն առտու Տիգրան մեռած պիտի ըլլայ, գոչեց Սապախըլ Համիտ, ձայնը հետզհետէ բարձրացնելով:

Ա՛լ խելքս կորսնցուցած էի, շուարած ու շփոթած կրկին ոտքերը ինկայ ու մէկիկ մէկիկ ամէն բան յայտնեցի... ամէն բան բան որ կը պահանջուէր ինէ... Մնացածը ա՛լ գիտէք: Հիմա կը սպասեմ ձեր վճիռին:

Ձիա փաշա լռեց:

Ամէնքը լուռ ու մունջ իրարու երես կը նայէին, խորապէս յուզուած թիկնապահին երկար պատմութենէն:

Վերջապէս Սալիհա հանըմ խօսք առաւ.

— Արդարեւ քու պատմութիւնդ շատ սրտայոյզ է. ըսաւ և կը զգամ թէ ինչ հոգեկան տանջանքներէ անցած ես և անշուշտ մեղմացուցիչ պարագայ մըն է ասիկա քեզի համար, բայց երբեք չես կրնար քու ընկերներուդ առջև արդարանալ: Գործած մատնութիւնդ կայ ու կը մնայ իր բոլոր ահեղ հետեւանքներովը: Ուրիշ դատաւորներ գուցէ քու հոգեկան տըկարութիւններուդ ներէին: Բայց մենք՝ յեղափոխականներս՝ չենք կրնար ընել այդ բանը, մանաւանդ երբ կը տեսնանք որ քու մատնութիւններուդ զոհ կ'երթան մեր լաւագոյն ու թանկագին ընկերները: Ահաւասիկ իմ կարծիքս: Իսկ դուք ի՞նչպէս կը վճռէք:

Եւ Սալիհա հանըմ դարձաւ իր միւս ընկերներուն.

— Ամէնքս ալ համակարծիք ենք ձեզի, պատասխանեցին միաբերան:

— Ուրեմն ես ալ պատրաստ եմ պատիժս կրելու, ըսաւ Ձիա փաշա խրոխտաբար իր կուրծքը կրկին բանալով:

Բայց Սալիհա հանըմ իսկոյն կեցուց զինքը.

-- Չէ՛, ըսաւ, այստեղ մեր յարկին տակ, իբրև մեր հիւրը կը նկատենք քեզ և հետևաբար քու անձդ նուիրական է: Մեր որոշումը պիտի ջանանք գործադրել այն պայմաններուն մէջ որով կարգադրուած էր նախապէս:

— Այսինքն պիտի փորձէք զիս տանել Եըլտըզի պալա՞տը։

— Այո՛, պատասխանեց Սալիհա հանըմ հաստատ ձայնով մը։

— Ուրեմն ձեզի կը յայտարարեմ որ այդ բանը այլեւս անկարելի է։

— Ինչո՞ւ համար։

— Որովհետեւ ասկէ ետքը ա՛լ ոտքս չպիտի դնեմ հոն։

Զիա փաշա այս խօսքերը արտասանելով, իր աչքերը պտտցուց ներկաներուն վրայ, որոնք զարմացած երեւոյթ մը ունէին եւ անխօս մտիկ կ'ընէին այս յայտարարութեան։

— Այո՛, շարունակեց Թիկնապահը, այսօրուընէ սկսեալ ա՛լ չեմ կրնար Եըլտըզի Պալատին սեմէն ներս մտնել, որովհետեւ ձեզի չափ եւ գուցէ ձենէ ալ աւելի Աբտիւլ Համիտ զիս կը հալածէ։ Այս խօսքերս թերեւս տարօրինակ թուին ձեզի եւ սակայն զուտ ճշմարտութիւններ են, եւ եթէ կ'ուզէք, պատմութեանս շարունակութիւնը ընեմ, որպէսզի դուք ալ համոզուիք։

— Խօսէ՛ տեսնենք, ըսաւ Սալիհա հանըմ։

— Մատնութեան գործը կատարելէ անմիջապէս ետքը, Աբտիւլ Համիտ, հաւատարիմ իր խոստումին, Տիկրանեան արձակել տուաւ ու զայն ինծի յանձնեց։ Կրնաք երեւակայել մեր երկուքին ուրախութիւնը։ Այս ազատութիւնը հրաշալի ազդեցութիւն մը ըրաւ խեղճ աղջկան վրայ, ու մէկ քանի օրուան մէջ գրեթէ բոլորովին առողջացաւ։ Իմ երջանկութիւնս կատարեալ պիտի ըլլար, եթէ ատեն ատեն գործած արարքիս խղճի խայթը զիս չտանջէր։ Իրա՛ւ է որ Տիկրանեայի քով ամէն բան կը մոռնայի, սակայն երբ առանձին գտնուէի, հոգեկան սոսկալի տագնապներու կը մատնուէի։ Մտքիս մէջ շարունակ կը փնտռէի ո եւ է միջոց մը, որով պիտի կրնայի ըրած չարիքս դարմանել եւ սակայն տակաւին բան մը չէի կրնար գտնել։

Այս դառն կացութեանս մէջ Աբտիւլ Համիտ կրկին զիս

քոմը կանչեց և ըսաւ թէ իմ տուած տեղեկութեանցս վրայ ձերբակալուած անձերը խոստովանութիւններ ըրած էին, որոնցմէ կ'երեւար թէ ուրիշ յեղափոխական խումբեր գոյութիւն ունէին Պոլսոյ մէջ և թէ այդ խումբերը մեծ դաւադրութիւն մը պատրաստելու վրայ էին, ուստի ստիպեց զիս որ նորանոր մատնութիւններ ընեմ:

Պատասխանեցի թէ ա՛լ բան մը չէի գիտեր և թէ բոլոր ունեցած տեղեկութիւններս հաղորդած էի:

Համիտ նորէն պնդեց և ես կրկին ըսի թէ բան մը չէի գիտեր.

— Լա՛ւ, ըսաւ չարաչուք բռնաւորը, քանի որ բան մը չես գիտեր, ա՛լ չխօսինք այս մասին:

Յետոյ կարգ մը գործեր յանձնեց ինծ և հրամայեց որ նոյն գիշերը պալատ մնամ: Մոռցայ ըսելու որ Տիլարայի հետ միանալէս ետքը, Գուրու-Չէշմէի բարձունքին վրայ խօնախ մը կը բնակէի մէկ քանի օրէ ի վեր իմ սիրականիս հետ, Սուլթանին մասնաւոր արտօնութեամբը:

Գործերս լմնցնելէ և պալատին մէջ անցնելէ ետքը, հետեւեալ առտու կանուխ փութացի բնակարանս երթալ.

Հազիւ թէ ներս մտած էի, սպասաւորներուս դէմքը տեսնելով հասկցայ որ արտաքոյ կարգի անցքեր պատահած էին:

— Ի՞նչ կայ, ի՞նչ ունիք, հարցուցի շուարած:

— Ինչպէ՛ս փաշա էֆէնտի չէ՞ք գիտեր պատահածը, պատասխանեց սենեկապանս:

— Շո՛ւտ խօսէ՛ տեսնեմ գոչեցի անհամբեր, գուշակելով որ մեծ դժբախտութիւն մը պատահած էր:

— Երէկ գիշեր, ըսաւ սենեկապանս, ոստիկաններ և պալատական պաշտօնեաներ եկան տունը կոխեցին ու ամէն կողմ խուզարկեցին....:

— Յետո՞յ, հարցուցի այլայլած, կը յուսամ որ վտանգաւոր բան մը չգտան:

— Ո՛չ, արդէն բոլոր այդ խուզարկութիւնները կարծեմ

պարզ ձեռնածութիւններ էին...։ Միայն թէ ամէն բան աւարտելէ ետքը, հանըմ էֆէնտին բռնեցին կառ.ք դրին ու տարին...։

— Բայց ո՞ւր տարին, գոչեցի խելայեղ յուզումով մը։

— Բան մը չըսին, սակայն կ'ենթադրենք որ բանտ տարած ըլլալու են։

Իսկոյն հասկցայ թէ հարուածը ուրկէ՛ կուգար։ Կառքս նետուեցայ և վերադարձայ Եըլտըզ ուր մէկ քանի ինձ հաւատարիմ պալատականներ խօսեցնել տալով իմացայ որ Տիլարա Եըլտըզ բերուած ու կանանոցը դրուած էր։

Ժամ մը ետքը ներկայացայ Սուլթանին։

— Վեհափառ Տէր, ըսի, արդեօք ի՞նչու համար Տիլարան գիշերանց բնակարանէս բռնի բափշտակուած ու պալատ բերւելով կրկին բանտարկուած է կանանոցին մէջ։

— Որովհետև, պատասխանեց Ապտիւլ Համիտ ամենայն հանդարտութեամբ, Տիլարան պայմանով մը քեզի տրուած էր և դուն այդ պայմանը չուզեցիր յարգել, հետևաբար զայն ետ կ'առնենք քենէ...։

Համիտ այս խօսքերը արտասանեց ամենայն հանդարտութեամբ. յետոյ րոպէ մը լռելէ ետքը շարունակեց.

— Ես կ'ուզեմ որ ինծի ծառայողները կատարեալ և բացարձակ հաւատարմութեամբ ծառայեն և որչափ ատեն որ վստահ ըլլամ թէ այդ հաւատարմութիւնը չի պակսիր իրենց քով, զիրենք առատօրէն կը վարձատրեմ, բայց երբոր կասկածիմ իրենց հաւատարմութեան վրայ, այն ատեն այդ վարձատրութիւնը պատիժի կը փոխուի և որքան առատաձեռն ըլլամ վարձատրութեան մասին՝ այնքան ալ խիստ եմ երբ կարգը պատժելու կուգայ։

— Վեհափառ Տէր, գոչեցի, ի՛նչ պատիժ որ կ'ուզէք տընօրինեցէ՛ք ինծի համար, բայց մի՛ հալածէք խեղճ աղջիկ մը որ բոլորովին անմեղ է։

— Եթէ կ՚ուզես որ այդ աղջիկը ո և է նեղութեան ու հալածանքի չենթարկուի, քու ձեռքդ է այս վայրկեանիս իսկ զայն ազատել և քու բնակարանդ փոխադրել։

Անշուշտ կը հասկնաք թէ ի՛նչ ըսել կ՚ուզէր Ապտիւլ Համիտ։ Ես առանց պատասխանելու այս խօսքերուն՝ լուռ մնացի։ Բռնաւորը շարունակեց.

— Այսպէս ուրեմն, Տիլարայի կեանքը քու քմահաճոյքէդ կախուած է. կրնաս զայն իսկոյն փրկել կամ մահուան գիրկը նետել։

Սարսափահար՝ Ապտիւլ Համիտի երեսը նայեցայ։ Կը ըզգայի որ ո և է խօսք անօգուտ էր, թէ այդ անխիղճ մարդը երբէք տեղի չպիտի տար ու անողոք պիտի մնար։

— Քեզի ժամ մը միջոց կու տամ մտածելու, գնա՛ և ժամէ մը պատասխանդ բեր, ըսաւ Ապտիւլ Համիտ, զիս ձեռքի շարժումով մը ճամբելով։

Անխիղճ բռնաւորին խօսքերը բացայայտ էին կա՛մ հարկ էր նոր մատնութիւններ ընել և կամ զոհել Տիլարան։ Եւ ափսո՛ս, այս անգամ ալ տկարացայ, դարձեալ սէրը յաղթեց արժանապատուութեան ու պարտականութեան զգացումին։ Ժամ մը ետքը դացի և ինէ պահանջուած տեղեկութիւնները հաղորդեցի Սուլթանին։ Նոյն իրիկունն իսկ Տիլարա կը վերադառնար Քուրու Չէշմէի իմ բնակարանս։

Այս անգամ ա՛լ վճռական որոշում մը տալ հարկ էր։ Յայտնի կ՚երեւար որ Ապտիւլ Համիտ այսչափով չպիտի գոհանար, նորանոր մատնութիւններ պիտի պահանջէր ինէ և երբ մերժէի՝ կրկին պիտի սպառնար Տիլարայի։ Այդ սոսկալի արարածը յաջողած էր ձեռք անցնել այն միակ զէնքը որով կարելի էր զիս յաղթահարել։ Պէտք էր ինքզինքս ու ինծի հետ միասին իմ սիրականս ազատել այդ գազանին ձեռքէն և ասոր համար փախչելէ ուրիշ միջոց չի կար։ Իսկոյն սկսայ պատրաստութիւններ տեսնել ամենագաղտնի կերպով և երէկ յաջողեցայ վերջապէս Տիլարան եւրոպական տարազով ու յոյն

*կնոջ մը ընկերակցութեամբ Փրանսական չոգենաւը փոխադըրել և ճամբայ հանել դէպի Բիրէա ուր պիտի սպասէ իմ երթալուս։ Ահաւասիկ իմ ամբողջ պատմութիւնս։*

*Հիմա դուք կը յայտարարէք թէ ինծի դէմ արձակած ձեր մահուան պատիժի վճիռը կ'ուզէք գործադրել և թէ իմ բացատրութիւններս երբեք կարող չեն զիս արդարացնել։ Թերևս իրաւունք ունիք. ուրեմն ես պիտի ջանամ ապրելու և դուք ալ կընաք ջանալ զիս մեռցնելու։*

*Թիկնապահը իր երկար պատմութիւնը այսպէս աւարտելէ ետքը ոտքի ելաւ և պատրաստուեցաւ մեկնելու։ Սալիհա հանըմ կեցուց զայն.*

*— Քու մանրամասն պատմութեանդ ընթացքին մէջ, ըսաւ անոր, մեզի պատմեցիր թէ գործելիք մասնութիւններդ կերպով մը թեթեւ երեւցած էին քեզ սա մտածումով որ դուցէ պիտի կընայիր գործած չարիքներուդ առաջքը առնել, այնպէս չէ՞։*

*— Այո՛, պատասխանեց Զիա փաշա, իմ հոգեկան տագնապներուս մէջ այդ մտածումը զիս մասամբ կը քաջալերէր։*

*— Արդ, միթէ այս մասին ո և է փորձ ըրի՞ր։*

*— Ճշմարիտը խոստովանելու համար ո՛չ... ի՞նչ կընայի ընել որ. պատմութեանս ընթացքին արդէն տեսաք թէ Ապտիւլ Համիտ հակառակ իր առ երեսս բարեացակամութեան, միշտ կասկածանքով կը վերաբերուէր իմ մասիս... եթէ երբեք պզտիկ ակնարկութիւն մը ընէի ի նպաստ ձերբակալուած անձերուն անմիջապէս ա՛լ աւելի կասկածով պիտի նայէր ինծի։*

*— Բայց առանց Ապտիւլ Համիտի դիմելու, ուղղակի քու անձնական միջոցներովդ գուցէ կընայիր ծառայութիւն մը մատուցանել և գուցէ մասամբ դարմանել գործած չարիքդ։*

*— Չեմ հասկնար թէ ի՛նչ ըսել կ'ուզես։*

*— Մեր ամենէն սիրելի ու թանկագին ընկերներէն մէկը,*

Հագդը պէյը, քու մատութեանդ հետեւանքով ձերբակալուեցաւ. այնպէս չէ՞...։

— Այո՛, տիկին, բայց ի՞նչ հարկ կայ այդ դժնդակ պարագաները կրկին յիշելու։

— Զիս մտիկ ըրէ, միթէ չէի՞ր կրնար անոր ձերբակալումէն ետքը ջանալ օգտակար ըլլալ իրեն։

— Վստահ եղէք որ թէ այդ մասին կարենայի բան մը ընել, երբեք չպիտի վարանէի։

— Գուցէ այն ատեն երբ պալատ կը գտնուէր և Սուլթանին ծառայութեան մէջ էիր, այդ բանը անկարելի էր քեզի համար, բայց այժմ որ՝ ըստ քու յայտարարութեանդ, թողած ես Սուլթանին ծառայութիւնը և կը պատրաստուիս փախչելու, կրնաս ազատօրէն գործել։ Մենք գիտենք որ Հագդը պէյ ձերբակալուելէ ետքը ո՛չ Եըլտըզի մէջ բանտարկուած է, ո՛չ կեդրոնական բանտը և ո՛չ ալ Պոլսէն դուրս տեղ մը աքսոր ղրկուած է, այլ Պոլսոյ մէջ կը գտնուի, խիստ ծածուկ հսկողութեան մը տակ։

— Շատ ճիշդ էր ձեր ունեցած տեղեկութիւնը, ըսաւ Զիա փաշա։

— Վա՛յ, ուրեմն դուն ալ կը հաստատես իմ ըսածներս, պատասխանեց Սալիհա հանըմ յուսալից նշոյլ մը աչքերուն մէջ։

— Անշուշտ կը հաստատեմ, քանի որ մօտէն տեղեակ եմ անցած դարձածներուն։

— Այն ատեն քեզի հետ սակարկութեան մտնենք, շարունակեց Սալիհա հանըմ, նշանակալից կերպով մը իր ընկերներուն նայելով։

— Ի՞նչ տեսակ սակարկութեան մասին կը խօսիք։

— Առանց պատի պատ խօսքերու բացատրեմ իմ միտքս որ կարծեմ թէ միեւնոյն ատեն մեր հոս գտնուող ընկերներուն հաւանութեանն ալ կարժանանայ։ Ինչպէս քեզի բացէ ի բաց յայտարարեցինք, քու բացատրութիւններդ լսելէ ետք կրկին

անխախտ կը պահենք քու մասին տրուած մահուան վճիռը. արդ, եթէ կարենաս մեզ օգնել որպէս զի կարելի ըլլայ մեր ընկերը, Հադգը պէյ, ազատել Սպտիւլ Համիտի ճիրաններէն, ես ալ, ու ինծի հետ մեր բոլոր ընկերները, յանձնառու կ'ըլլանք քեզի դէմ արձակուած մահուան պատիժի վճիռը անհետեւանք թողուլ...:

Սալիհա հանըմ այս խօսքերը արտասանելէ ետքը դարձաւ իր ընկերներուն և ըսաւ.

— Դուք ալ համամի՞տ էք այս ըսածներուս:

— Այո՛, այո՛, պատասխանեցին ամէնքը միաբերան:

Թիկնապահը մտահոգ երեւոյթով մը ճակատը շփեց և յետոյ ըսաւ.

— Ամենայն անկեղծութեամբ կ'ըսեմ թէ առանց ձեր այդ պայմանին ալ եթէ կարենայի՝ վայրկեան մը չպիտի վարանէի Հադգը պէյը ազատելու, նոյնիսկ եթէ հարկ ըլլար ատոր համար կեանքս ալ վտանգի ենթարկել...:

— Բայց դուք յայտարարեցիք թէ բոլոր անցած դարձածներուն մօտէն տեղեակ էք:

— Այո՛, այդպէս ըսի և ըսածս կը կրկնեմ, բայց որպէսզի համոզուիք թէ ձեր ուզած ծառայութիւնը չեմ կրնար մատուցանել պէտք կը զգամ ձեզի պատմելու եղելութիւնը:

— Խօսէ՛ տեսնենք, ըսաւ Սալիհա:

Թիկնապահը շարունակեց.

— Երբ իմ տուած տեղեկութիւններուս շնորհիւ Հադգը պէյը ձերբակալուեցաւ: ուղղակի պալատ բերուեցաւ և խիստ հարցաքննութեան մը ենթարկուեցաւ: Պէտք չկայ ըսելու որ հակառակ այդ խիստ հարցաքննութեան՝ Հադգը պէյ ոեւէ յայտնութիւն չըրաւ: Յետոյ մէկ քանի չարչարանքներ ալ փորձուեցան որոնք նոյնպէս անօգուտ մնացին: Այն ատեն Սպտիւլ Համիտ հրաժարեցաւ զայն խօսել տալէ և որոշեց զինքը անյայտացնե՛լ ու այս գործը յանձնուեցաւ հրացանակիրներու պետ Թահիր փաշայի: Այսպէս ուրեմն Հադգը պէյ օր մը յանկարծ

անյայտացաւ Ելտըղզէն։ Հետաքրքրուեցայ իմանալու թէ ի՛նչ եղած էր և վերջապէս իմացայ որ ողջ էր և թէ Պոլիս կը գըտնուէր, խիստ ծածուկ տեղ մը պահուած. սակայն երբեք չկըրցայ իմանալ այդ տեղը։ Ահա՛ ասոր համար կ'ըսեմ թէ հակառակ փափաքիս, չպիտի կրնամ օգտակար ըլլալ ձեզի։

— Քու ըսածներէդ կը հետեւի որ Թահիր փաշա գիտէ թէ ո՛ւր կը գտնուի մեր ընկերը։

— Բնականաբար։

— Եւ եթէ կարենանք ո և է կերպով ճնշել Թահիրի վըրայ, պիտի կրնանք հասկնալ Հագգը պէյի տեղը։

— Շատ չիտակ է ձեր ըսածը, միայն թէ ի՞նչ կերպով կարելի է Թահիրի վրայ ճնշում բանեցնել։

— Այդ մեր գիտնալիք բանն է։ Հիմա ուրիշ խնդիր մը կը մնայ, այն պարագային որ Թահիրի վրայ ճնշում բանեցնելու համար պէտք ունենանք քու աջակցութեանդ, միթէ կը խոստանա՞ս մեզ օգնելու։

Զիա փաշա պահ մը մտածեց և յետոյ վճռաբար ըսաւ.

— Հոգւոյս վրայ կ'երդնում որ ձեռքէս եկածը պիտի ընեմ։

— Ուրեմն մենք ալ մեր պատւոյն վրայ խօսք կուտանք թէ քու մասին տրուած մահուան վճիռը չպիտի գործադրենք։

---

## ԳԼՈՒԽ Զ.

## ԹԱԿԱՐԴԸ

Թիկնապահ Զիա փաշայի և իր նախկին ընկերներուն միջև այս տեսակցութիւնը կատարուելուն հետեւեալ առտուն Թահիր փաշա երբ Ելտըղզի պալատին մէջ, իրեն յատկացուած

*սրահը, առտուան սուրճը կը խմէր, հեշտօրէն ձեղունը ղրկելով իր սիկառէթին ծուխը, սենեկապանը ներս մտաւ և ծանուց թէ՝ արքունի թիկնապահ Զիա փաշա զինքը տեսնել կը փափաքէր և թէ դուրսը կը սպասէր։*

*— Անմիջապէս ներս հրամցուր փաշա էֆէնտին, հրամայեց Ապտիւլ Համիտի հրացանակիրներու պետը։*

*Զիա փաշա իր վերադարձէն ի վեր այնպիսի գնահատելի ծառայութիւններ մատուցած էր և այնքա՜ն շնորհներ ընդունած էր Սուլթանէն որ կրկին իր նախկին ազդեցութիւնը կըրցած էր ձեռք բերել Եըլտըզի մէջ և բոլոր պալատականները ակնածանքով կը վարուէին հետը։*

*Թահիր փաշա թէև ինքն ալ Եըլտըզի մէջ բացառիկ դիրք մը գրաւած էր և Ապտիւլ Համիտի բացարձակ վստահութիւնը կը վայելէր տարիներէ ի վեր, այսուհանդերձ միշտ տեսակ մը ակնածանքով կը վերաբերուէր երիտասարդ թիկնապահին հետ որուն խելքին ու վարպետութեանը վրայ կը հիանար։ Զիա փաշայի յանկարծական փախուստը, յեղափոխական մը ըլլալուն յայտնութիւնը և յետոյ կրկին վերադարձը և նախկին դիրքը գրաւելը, զինքը բոլորովին զարմացուցած և թիկնապահին վրայ իր հիացումը աւելցուցած էին։*

*Ասոր համար երբ սենեկապանը իմացուցեր էր թիկնապահին այցելութիւնը, իսկոյն հրաման ըրեր էր որ զինքը ներս մտցնեն։*

*Երբ Զիա փաշա երևցաւ սեմին վրայ, Թահիր փաշա հակառակ իր տարիքին, որովհետև գրեթէ եօթանասուն տարեկանի մօտ էր այն ատեն, իսկոյն ոտքի ելաւ և փութաց իր հիւրը դիմաւորելու։*

*— Անհանգիստ մի՛ ըլլաք, փաշա էֆէնտի, գոչեց Զիա փաշա առաջ գալով։*

*— Հրամմեցէ՛ք սա թիկնաթոռին վրայ, ըսաւ հրացանակիրներու պետը, իր նստարանին քով թիկնաթոռ մը ցոյց տալով։*

Երբ հիւրը բազմեցաւ իրեն ցոյց տրուած տեղը, Թահիր փաշա սիկառէթի ոսկեզօծ տուփը հանեց գրպանէն և հիւրին երկարեց, և յետոյ ըսաւ.

— Ձեր այս բարեպատեհ այցելութիւնը արդեօք ինչ առիթի մը կը պարտիմ։

— Շիտակը Թահիր փաշա, պատասխանեց Թիկնապահը, բաւական վարանելէ ետքը որոշեցի գալ ձեզ տեսնել։

— Ինչու համար ինծի գալու համար կը վարանիք, հարցուց ծերունի փաշան, չեմ կրնար ըմբռնել ձեր այս խօսքերը։

— Այսինքն այցելութեանս պատճառը թերեւս ձեզի տարօրինակ թուի երբոր բացատրեմ և թերեւս հարցնէք թէ ինչո՞ւ ձեզի կը դիմեմ խնդրի մը համար որ կրնայի ուղղակի մեր Վեհափառ Սուլթանին հաղորդել։

— Իրաւ որ ձեր խօսքերը շատ մութ են և ես չպիտի կրնամ պատասխան մը տալ մինչև որ աւելի որոշ կերպով չի խօսինք, ըսաւ Թահիր փաշա որ իրաւցնէ բան մը չէր հասկընար իր խօսակցին պատ ի պատ դարձուածքներէն։

— Խնդիրը հիմա պիտի բացատրեմ, պատասխանեց երիտասարդ Թիկնապահը։ Անհաւատալի ծանրակշիռ եղելութիւնը որ երէկ իմացայ...։ Կ'երեւայ թէ ձերբակալուած յեղափոխական պետ Հագգը պէյ, որ վերջերս Եըլտըզի մէջ հարցաքննուեցաւ և որ կը կարծուի թէ աքսորուած էր Վեհափառ Սուլթանին, հրամանով, հոս, Պոլիս է եղեր...։

— Ո՞վ ըսաւ, գոչեց Թահիր յուզուած շեշտով մը։

— Սպասեցէ՛ք, փաշա էֆէնտի, որպէս զի խօսքս լմնցընեմ...։ Իմ յեղափոխական ընկերներս իմացեր են թէ Հագգը պէյ Պոլսոյ մէջ տեղ մը բանտարկուած կը մնայ և նոյն իսկ այդ տեղն ալ կրցած են իմանալ։

— Ինչ կ'ըսես, փաշա էֆէնտի, գոչեց Թահիր նստած տեղէն վեր ցատկելով, ո՞վ տուաւ այդ տեղեկութիւնները, շո՛ւտ խօսէ տեսնեմ...։

— Գիտէք որ ես իբրեւ նախկին անդամ մը այդ գաղտ-

նի կազմակերպութեան, մօտէն ծանօթ եմ իրենց չատ մը գործերուն և նոյն իսկ իմ այս ծանօթութիւններուս՝ չնորհիւն էր որ կարելի եղաւ Հագգը պէյը ձերբակալել իր մէկ քանի ընկերներով ։

— Այո՛, գիտեմ որ դուք մեծ ծառայութիւն մատուցիք մեր Վեհափառ Սուլթանին ձեր թանկագին տեղեկութիւններովը ։

— Ատիկա յիշեցնել չէի ուզեր, ըսաւ Զիա փաչա համեստութեամբ, այլ միայն ուզեցի հասկցնել ձեր բարձրութեան որ իմ նախկին յեղափոխականի հանգամանքս և ունեցած ծանօթութիւններս նպաստեցին ինծի որ որոշ տեղեկութիւններ ստանամ քանի մը օրէ ի վեր մութին մէջ պատրաստուած գործերու մասին ։

— Ուրեմն այդ դաւաճան յեղափողականները տակաւին բնաջինջ չեն եղած և կը շարունակե՞ն գործել մեր քիթին տակ, գոչեց Թահիր փաչա, իր աչքերը խոժոռցնելով ։

— Այո՛, ափսո՜ս, ո՛չ թէ միայն բնաջինջ եղած չեն այլ կ՚երեւայ թէ այս միջոցիս նորանոր անդամներ աւելցած են իրենց մէջ և թէ կրկին յաջողած են կազմակերպուիլ Պոլսոյ մէջ ։ Ինչպէս ըսի ասոնք իմացած են թէ Հագգը պէյ հոս կը գտնուի և կրցած են իր պահուած տեղն ալ իմանալ և այժմ կը պատրաստուին զայն փախցնելու . . . ։

Հազիւ թէ պալատական թիկնապահը այս վերջին խօսքերը արտասանուած էր՝ Թահիր փաչա, յուզուած ու չփոթած, կրկին վեր ցատկեց նստած տեղէն և Զիա փաչայի դառնալով գոչեց .

— Բայց փաչա էֆէնտի խիստ ծանրակշիռ յայտնութիւն մըն է որ կ՚ընէք, պէտք է որ այս ձեր բերած տեղեկութիւնները իսկոյն հաղորդեմ մեր Վեհափառ Սուլթանին և անոր հրամանները ստանամ . . . ։

— Կը խնդրեմ, համեցէ՛ք քիչ մըն ալ գիս մտիկ ընել ու անկէ ետքը կ՚որոշենք թէ ի՛նչ ընթացք պիտի բռնենք ։ Նախ

ձեր Վսեմութենէն կ'ուզէի իմանալ թէ իրա՛ւ Հազգըլ պէյը Պոլի՞ս կը գտնուի և թէ ծածուկ տեղ մը բանտարկուա՞ծ է...։

— Բնականաբար, գոչեց Թահիր փաշա, յետոյ յանկարծ նշմարելով որ գուցէ չափազանց խօսած է, աւելցուց։

— Այսինքն ես ալ իմացած եմ որ հոս կը գտնուի, բայց աւելի բան մը չեմ գիտեր։

Զիա փաշա աննշմարելի կերպով քմծիծաղ մը ունեցաւ իր խօսակցին այս վրան բար սուտին հանդէպ։

— Կ'երեւայ որ ծածուկ կազմակերպութեան անդամները ձենէ շատ աւելի որոշ տեղեկութիւններ ունին, ըսաւ ծերունի փաշային, որովհետեւ իմ լսածներուս համեմատ, տեղն ի տեղօք գիտեն եղեր ո՛ւր գտնուիլը։

— Հիմա պէտք է որ երթամ Սուլթանը տեսնեմ, գոչեց Թահիր փաշա հետզհետէ յուզուելով։

— Կ'աղաչեմ քիչ մըն ալ համբերեցէք... Ես ալ կրնայի երթալ ուղղակի մեր Վեհափառ տիրոջ պատմել իմացածներս, սակայն չըրի և ատոր պատճառը հիմա պիտի բացատրեմ։ Եթէ այժմ այս լուրը հաղորդենք Սուլթանին՝ ի՞նչ պիտի ընէ, իսկոյն պիտի հրամայէ որ Հազգըլ պէյը ուրիշ տեղ մը փոխադրեն և կամ իր պահապաններուն թիւը բազմապատկեն։ Մեր թշնամիններն ալ որոնք նոյնպէս լրտեսներ ունին պիտի նշմարեն այդ բանը և իրենց ծրագրած խորհուրդը պիտի յետաձգեն, այս չէ՞ միթէ ըլլալիքը։

— Բայց միթէ մեր ջանքն ալ պէտք չէ՞ որ այդ ըլլայ... այսինքն արգիլել այդ թշուառականները և թոյլ չի տալ որ իրենց ծրագիրը գործադրեն:

— Ո՛չ, փաշա էֆէնտի, պատասխանեց Զիա փաշա խրոխտ ու հաստատ ձայնով մը մեր ջանքը պէտք չէ որ այդ ըլլայ՝ այլ առիթէն օգտուիլ և ձեռք ձգել Վեհափառ Սուլթանին դէմ գտնուող խռովարարները։

Այս խօսքերը լսելով՝ Թահիր փաշայի աչքերը տարօրինակ փայլով մը շողացին, իր ակնարկը երկտասարդ Թիկնապահին վրայ սեւեռեց և ըսաւ.

— Բայց ինչպէ՞ս պիտի կրնանք ձեռք անցնել այդ մարդիկը։

— Դարանակալ իրենց գալուն սպասելով Հագգը պէյի գտնուած տեղին մօտերը։ Բայց որպէս զի այս բանս կարենանք յաջողութեամբ գլուխ հանել, պէտք է որ խիստ ծածուկ և արագ կերպով գործենք և ճիշդ անոր համար է որ ուղղակի ձեզի դիմեցի։

— Իրաւունք ունիս, կարելի է այս առիթէն օգուտ քաղել և այդ թշուառականները ձեռք ձգել ու արդարութեան յանձնել,

— Մանաւանդ որ, լածիս նայելով այդ փախցնելու գործը յանձնուած է չորս-հինգ հոգիի միայն, այնպէս որ եթէ հետերնիս մէկ քանի հաւատարիմ ու լաւ զինուած մարդ ունենանք՝ կրնանք իրենց հախէն դիւրաւ գալ։ Եւ մտածեցէք թէ՛ գործը յաջողութեամբ գլուխ հանելէ ու այդ դաւաճանները բռնելով մեր Վեհափառ Սուլթանին յանձնելէ ետքը, ալ ինչ մեծ շնորհներ մեզի կը սպասեն։

Այս վերջին խօսքերը բոլորովին խանդավառեցին ծերունի փաշան, որ երիտասարդական աւիւնով մը գոչեց.

— Այո՛, այո՛ փաշա էֆէնտի շատ իրաւունք ունիք, աղէկ ըրած էք որ, առանց ուրիշին խօսք մը ըսելու, ուղղակի ինծի դիմած էք. շնորհակալ եմ, շատ շնորհակալ եմ ձեր ցոյց տուած վստահութեանը համար և հաւատացէք որ յաւիտեան չպիտի մոռնամ։

— Ափսո՛ս որ սակայն բոլորովին անօգուտ եղաւ իմ այս դիմումս, աւելցուց Թիկնապահը թեթեւ ժպիտով մը, քանի որ յայտարարեցիք թէ չէք գիտեր Հագգը պէյի գտնուած տեղը... այս պարագաներուն մէջ ինչպէս կրնանք մեր յղացած ծրագիրը գործադրել. հետեւաբար լաւագոյն կը համարեմ մեր Վեհափառ Սուլթանին դիմել և ամէն բան անոր պատմել. Թո՛ղ ինք ուզածին պէս օգտուի իմ տալիք տեղեկութիւններէս։

Եւ Ձիա փաշա ոտքի ելլելով՝ մեկնելու պատրաստուեցաւ․ բայց հրացանակիրներու պետը իսկոյն ըսաւ․

— Կաղաչեմ, փաշա էֆէնտի, նստեցէք... իմ ըսածս կա՛մ դուք սխալ ըմբռնած ըլլալու էք կամ ես սխալ բացատրած։ Ես ըսել ուզեցի որ Հագգը պէյի տեղը այնքա՛ն ծածուկ պահուած է որ ես, գիտնալով հանդերձ, պէտք է չգիտցած ձեւացնեմ... կը հասկնա՞ք...

— Ուրեմն գիտէ՞ք այդ տեղը։

— Այո՛, բնականաբար գիտեմ։

— Եւ կը կարծէ՞ք որ դիւրին է իմ ծրագիրս գլուխ հանել։

— Անշուշտ, անշուշտ։

— Դարանակալ սպասելու յարմար տեղեր կա՞ն։

— Պէտք եղածէն աւելի։ Բայց ե՞րբ այդ փախցնելու փորձը պիտի կատարենք։

— Այս գիշեր իսկ։

— Ուրեմն կորսնցնելու ժամանակ չունինք և պէտք է որ իսկոյն մեր պատրաստութիւնները տեսնենք։

— Ճիշդ ես ալ այդ պիտի ըսէի ձեր Վսեմութեան։

— Ըսիք որ չորս հինգ հոգի՞ պիտի ըլլան եկողները․

— Այո՛, առ առաւելն վեց հոգի։

— Ուրեմն եթէ մենք 15-20 հոգի ըլլանք բաւական է։

— Նոյն իսկ ըստ իս շատ է և կը վախնամ որ ուշադրութիւն կը գրաւենք և ամէն բան կը վրիպի։

-- Լա՛ւ, թո՛ղ միայն 10-12 հոգի ըլլայ։

— Այո՛․ այդպէս լաւագոյն է։ Հիմա փաշա էֆէնտի, ըսէ՛ք խնդրեմ, Հագգը պէյի գտնուած տեղը հեռո՞ւ է։

Անկէ ժամուկէս կը տեւէ։

— Ո՞ր կողմը։

— Ասիական եղերքը․

— Ամայի՞ տեղ մըն է։

— Այո՛, գրեթէ ամայի։

— Ուրեմն գործը կը դիւրանայ։

— Ինծի ալ այնպէս կուգայ որ մեր ծրագրին գործադրութեանը համար շատ յարմար տեղ մըն է։

— Գիտէք որ հարկ է անմիջապէս գործի սկսիլ, ըսաւ Զիա փաշա իր խօսակցին, դուք անշուշտ ձեզ հաւատարիմ մարդոցմէ 10-12 հոգի կը գտնէք ու զանոնք կը տեղաւորէք Հագզը պէյի գտնուած տեղւոյն բոլորտիքը եւ մենք ալ բնականաբար հոն կը գտնուինք կատարուելիք գործողութիւններուն վրայ հսկելու համար, միայն թէ, դարձեալ կը կրկնեմ, պէտք է որ ամէն ինչ մեծ զգուշութեամբ կատարեմք եւ երբեք չնշմարուինք. որովհետեւ մեր թշնամիները եթէ ամենափոքր կասկած մը ունենան իրենց ծրագիրը կը յետաձգեն եւ մենք ալ այս առիթը ձեռքէ փախցնենք։

Թահիր փաշա պահ մը խորհելէ ետքը պատասխանեց։

— Փաշա էֆէնտի դուն ինէ աւելի երիտասարդ եւ ճարտար ես ու շատ աւելի հնարամիտ, ուստի կը խնդրեմ որ դուն վրադ առնես ամբողջ գործին կարգադրութիւնը, իսկ պէտք եղած մարդիկը ես կը ճարեմ մեր պալատական հրացանակիրներուն մէջէն։

— Շատ լաւ, փութաց պատասխանել երիտասարդ Թիկնապահը։ ամենայն հաճոյքով կ՚ընդունիմ ձեր առաջարկը... միայն թէ իմ կարգադրութիւններս ընելէ առաջ պէտք է որ անգամ մը մանրամասնօրէն աչքէ անցնեմ այն տեղը ուր մեր մարդիկը պիտի պահուըտին, որպէս զի մեր բռնելիք յարմարագոյն դիրքերը լաւ որոշենք։

— Իրաւունք ունիք. լաւ կ՚ըլլայ որ երթանք առաջուց քննութիւն մը կատարենք, ըսաւ Թահիր փաշա։

Զիա փաշայի աչքերը ուրախութենէն շողացին. այսու հանդերձ ծածկեց իր ներքին խնդութիւնը եւ անտարբեր կերպարանք մը առնելով՝ պատասխանեց.

— Ձեր հրամաններուն կը սպասեմ, ինչպէս որ կ՚ուզէք այնպէս կ՚ընենք....։

— Այո՛, այս՛, հիմա Պէյքօզ կ'երթանք և Հազզը պէտի ո՛ւր բանտարկուած ըլլալը ձեզի կը ցուցնեմ...։ Բայց Եըլտըզէ հեռանալէ առաջ անգամ մը վեհափառ տիրոջս պէտք է երևամ. կարելի է ինծի պէտք կ'ունենայ։

— Քանի որ այդպէս է, ես յարկաբաժինս կ'երթամ և հոն ձեզի կը սպասեմ։

Թիկնապահը խոնարհութիւն մը ընելով դուրս ելաւ և արագ քայլերով գնաց իր յարկաբաժինը։

Հոն իրեն կը սպասէր երիտասարդ մը որ սպասաւոր մը ըլլալ կը թուէր իր հագուստէն։ Թիկնապահը անոր ականջին քանի մը խօսքեր փսփսալէ ետքը զայն ճամբու դրաւ և ինք թիկնաթոռի մը մէջ երկննալով սիկառէթ մը վառեց.

— Մինչև հիմա գործերնիս յաջող գնաց, մտածեց, և եթէ այսպէս շարունակուի, կարծեմ յաջողութիւնը կատարեալ կ'ըլլայ...։ Եւ այն ատեն թէ՛ մահուան սպառնալիքներէն կ'ազատիմ և թէ միանգամայն խիղճս կը հանդարտի գործած չարիքիս մէկ մեծ մասը դարմանած ըլլալով... միայն թէ մեր բարեկամները կարենային ժամանակին օգտուիլ իրենց տուած տեղեկութիւններէս...։

Թիկնապահը ժամէ մը աւելի սպասեց իր թիկնաթոռին մէջ։ Թահիր փաշա չէր կրցած անմիջապէս Սուլթանէն հրաման խնդրել Եըլտըզէն դուրս ելլելու համար և ստիպուած էր ներկայանալ անոր և կարգ մը շինծու բացատրութիւններ տալ իր դուրս ելլելու մասին։ Սակայն Ապտիւլ Համիտի վստահութիւնը այնքա՛ն մեծ էր իր հրացանակիրներու պետին վրայ որ անոր ամէն խօսքերուն համոզուած էր.

Ի վերջոյ բարեհաճած էր հրաման տալ Թահիր փաշայի որ մինչև իրիկուն բացակայի Եըլտըզէն։

— Բայց, Վեհափառ Տէր, ըսաւ հրացանակիրներու պետը գուցէ հարկ ըլլայ գիշերն ալ պալատէն դուրս անցնելու։

— Ո՛չ, պատասխանած էր Սուլթանը վճռաբար, գիշերը պէտք է որ հոս, իմ մօտս գտնուիս։

— Վեհափառ տէր, աղերսած էր միւսը, բացառաբար կը խնդրեմ ձեր վեհափառութենէն որ գոնէ մէկ անգամի համար շնորհ ընէ ինձ թոյլ տալու որ գիշեր մը պալատէն դուրս անցունեմ։

— Ուրեմն որոշապէս ըսէ՛ թէ ի՛նչ կարեւոր բան քեզ կը ստիպէ այս գիշեր դուրս մնալու, պնդած էր կասկածոտ բռնաւորը, և եթէ համոզուիմ քու պատճառաբանութիւններուդ, այն ատեն հրաման կուտամ։

— Շատ լաւ, պատասխանած էր Սուլթանին հաւատարիմ ծառան, այժմ կը մեկնիմ և իրիկունը կը վերադառնամ պալատ և եթէ հարկ ըլլայ անպատճառ կրկին դուրս ելլելու և գիշերը Եըլտըզէն հեռու անցնելու, այն ատեն ձեզի կը բացատրեմ ամէն բան ու ձեր տալիք հրամանին համեմատ կը գործեմ։։

Այս խօսքերէն ետքը, Թա՛հիր փաշա մեկնած էր Սուլթանին քովէն եկած Զիա փաշային դառած:

Քառորդ մը ետքը, երկու պալատականները կառքով կը ուղղուէին կամուրջ և հոնկէ կը մտնէին Վօսփորի ասիական եզերքը մեկնող շոգենաւը։

Թահիր փաշա հետզհետէ կը խանդավառուէր, խորհելով իրենց ծրագրած գործին վրայ, որուն յաջողութիւնը ապահով կը նկատէր։ Ի՜նչ մեծ փառք պիտի ըլլար իրեն համար, ձեռք ձգել այդ յեղափոխականները և զանոնք Եըլտըզ բերել ու իր վեհափառ տիրոջ յանձնել. Ապտիւլ Համիտ ո՛վ գիտէ երախտագիտական ի՛նչ շնորհներով պիտի լնուր իր հաւատարիմ ծառան, որքան իր ազդեցութիւնը պիտի մեծնար պալատին մէջ ուր արդէն բացառիկ դիրք մը կը վայելէր... բոլոր այս բաներուն վրայ մտածելով ծերունի զինուորականը կ'ոգեւորուէր։

— Ես այս գործին յաջողութեանը բոլորովին վստահ եմ, ըսաւ իր երիտասարդ ընկերոջ, խնդիրը այն է միայն որ քու տեղեկութիւններդ ստոյգ ըլլան և այդ մարդիկը իրաւցնէ գան Հայդըն փախցնելու փորձեն։

— Ապահով կրնաս ըլլալ։

— Ցետոյ, միթէ կատարելապէս վստա՞հ ես որ 4-5 հոգի միայն պիտի ըլլան... եթէ ո՛չ ջանանք աւելի բազմաթիւ անձերով սպասելու իրենց... եթէ այս գործին մէջ անյաջող ըլլանք, այն ատեն երկուքնուս ալ ապագան կը խորտակուի ու չենք կրնար մեր Սուլթանին երեսը նայիլ։

— Այս մասին ալ ապահով եղիր. իմ առած տեղեկութիւններս երբեք չեն կրնար սխալ ըլլալ... արդէն ես ալ քեզի չափ այս գործին յաջողութեան փափաքող եմ և անկէ մեծամեծ բաներ կը սպասեմ, հետեւաբար թեթեւօրէն չպիտի շարժիմ երբեք։

Այսպէս խօսակցելով երկու բարեկամները հասան Պէյքօզ։

Երբ նաւամատոյցին վրայ ելլելով ուղղուեցան դէպի չուկային ձախ կողմը, Թիկնապահը գաղտնագողի նայուածք մը պտտցուց չուրջը և հաւանօրէն գոհ մնաց իր զննութենէն, որովհետև մինչև այն ատեն ունեցած քիչ մը մտատանջ կերպարանքը յանկարծ փոխուեցաւ և դէմքին վրայ զուարթութիւն մը ճառագայթեց։

— Այս, ի՛նչ գեղեցիկ գիւղ է եղեր Պէյքօզը, ըսաւ իր ընկերակցին։

— Ուրիշ ատեն չէ՞իր եկած հոս։

— Հաւատացէք որ առաջին անգամն է որ ոտքս այստեղ դրի։ Արդեօք բաւական հեռո՞ւ է երթալիք տեղերնիս...։

— Երթալիք տեղերնիս շատ հեռու չէ, պատասխանեց Թահիր փաշա, հազիւ 20 վայրկեան կը տեւէ։

Արդարև չիտակ էր հրացանակիրներու պետին ըսածը և ճիշտ ու ճիշտ հաշուած էր հեռաւորութիւնը։ Հազիւ թէ քսան վայրկեանը լրացած էր. երկու բարեկամները հասան խոշոր պատերով շրջապատուած մեծ պարտէզի մը երկաթեայ դրան առջև և Թահիր փաշա դրան զանգակը հնչեցուց ուժգին։

Երկտասարդ Թիկնապահը արագ ակնարկ մը պտտցուց եւ տին և յետոյ գոհունակ դէմքով մը գլուխը սադին անդին

դարձուց։ Թահիր փաշա, որ անհամբերութեամբ երկաթեայ վանդակաղուռնէն ներս կը նայէր, սպասելով դռնապանին, չնշմարեց իր ընկերոջ շարժումը և ինքն ալ անոր պէս ետին չի դարձաւ, եթէ ո՛չ պիտի տեսնար որ իրենցմէ գրեթէ հարիւր քայլ հեռուէն ուրիշ չորս անձեր տարտամ քալուածքով մը դէպի իրենց կողմը կուգային։ Յայտնի էր որ այդ անձերուն և Զիա փաշայի միջև գաղտնի յարաբերութիւն մը կար, որովհետև փաշան այդ անձերը տեսնելէ ետքը յանկարծ գոհունակ դէմք մը առաւ։

Նոյն միջոցին դռնապանը վազելով կուգար։

— Ո՞ւր ես, ինչո՞ւ գործիդ գլուխը չես սպասեր, բսաւ անոր Թահիր փաշա, բարկացած շեշտով մը։

— Փաշա էֆէնտի կը ներէք, պատասխանեց դռնապանը շփոթած երեւոյթով մը, ներս գացեր էի կերակուր ուտելու համար... ասկէ զատ ձեր այցելութեան չէի սպասեր այս միջոցիս և որովհետև ձենէ զատ ոչ ոքի դուռը կը բանանք, կարծեցի որ կրնայի քիչ մը ժամանակի համար հեռանալ...։

Թահիր փաշա, որ պարզապէս դիտողութիւն մը ըրած ըլլալու համար այդ խօսքերը ըսած էր, առանց ձայն հանելու ներս մտաւ և երկու բարեկամները խոշոր ծառերով հովանաւորուած ճամբէ մը սկսան յառաջանալ։

— Եթէ հոս բանտարկուած է Հագգը պէյը, դիտել տուաւ Թիկնապահը, գործերնիս շատ կը դիւրանայ։ Պարտէզը կատարելապէս խիտ անտառի մը երեւոյթը ունի, ուր շատ լաւ կերպով կրնան պահուըտիլ մեր մարդիկը, առանց տեսնուելու։ Միայն թէ խնդիր է գիտնալ թէ ծածուկ կազմակերպութեան անդամները ո՞ւրկէ ներս պիտի մտնան։ Հաւանօրէն չպիտի համարձակին դռնէն մտնելու, քանի որ պահապանին ըսածին նայելով՝ ձենէ զատ ոչ ոքի այդ դուռը կը բացուի...։

— Ես գիտեմ անոնք ո՛ւր տեղէն պիտի գան, պատասխանեց Թահիր փաշա քմծիծաղով մը, անոնք ուղղակի ծովուն կողմէ նաւակով մը պիտի գան, որովհետև ուրիշ ճամբայ չէ

կայ և այդ հաւանականութիւնը ես ասկէ առաջ նկատողութեան առի և նոյնիսկ դիտաւորութիւն ունէի ծովուն վրայ հսկողութիւն կատարել տալու։

— Բայց այստեղ որո՞ւն կը պատկանի, հարցուց Զիա փաշա որ իրապէս չէր ճանչնար պէյքօզը։

— Զարմանալի՜ բան, որո՞ւ կ'ուզես որ պատկանի. պատասխանեց հրացանակիրներուն պետը... անիկա արքայական քէօշկ մըն է, Սուլթան Ազիզին ատեն շինուած և որ հիմա լքուած կը մնայ։ Բաւական քալելէ ետքը, երկու խօսակիցները հասան քէօշկին առջեւ որ գրեթէ կորսուած էր տերեւախիտ ծառերու մէջ։

— Ահաւասիկ այն թաքստոցը ուր պահուած է այդ թըշուառական դաւաճանը. բացատրեց Թահիր փաշա, իրեն քով հսկելու համար միայն երկու հաւատարիմ պահապաններ դրած ենք և մէյմըն ալ դռնապանը և պարտիզպան մը կան որոնք փորձուած և ամենահաւատարիմ անձեր են...։

— Բայց միթէ այդ չորս անձերը քիչ չե՞ն այսպիսի կարեւոր անձի մը պահպանութեան համար։

— Ընդհակառակը աւելի լաւ կը պահպանուի երբ քիչ մարդ ըլլայ։ Այս շէնքը, ինչպէս ըսի, տարիներէ ի վեր լըքուած կը մնար և ոչ ոք կը բնակէր մէջը, եթէ յանկարծ բազմաթիւ անձեր բերէինք՝ ուշադրութիւն պիտի գրաւէր և դուցէ երեւան ելլէր թէ հոն կարեւոր մէկը կը գտնուի. ասկէ զատ շատ մարդու մէջ գաղտնիք պահելը դժուար է, մինչդեռ չորս հաւատարիմ անձեր կրնան միշտ լռութիւն պահել։ Բայց հիմա որ այս թաքստոցը երեւան ելած է, անշուշտ վաղը, խնդիրը մեր վեհափառ տիրոջ բացատրելէ ու անոր հաւանութիւնը առնելէ ետքը, բանտարկեալը աւելի ապահով տեղ մը կրնանք փոխադրել։

Յետոյ, Թահիր փաշա քիչ մը մտածելէ ետքը ըսաւ.

— Կը տեսնեմ որ այդ քու յեղափոխականներդ լաւ տեղեկութիւն առած են և գիտեն կոր թէ հոս հազիւ չորս հոգի

կայ, քանի որ իրենք ալ, քու ըսածիդ նայելով, 4—5ը միայն պիտի գան Հագգըն փախցնելու համար։ Բարեբախտաբար իրենց ծրագիրը ժամանակին իմացանք և պիտի կրնանք ի դերեւ հանել։

— Այո՛, շնորհիւ վեհափառ Սուլթանին այդ մարդիքը չպիտի յաջողին իրենց դժոխային ծրագիրը ի գլուխ հանելու, պատասխանեց Ջիա փաշա այնպիսի շեշտով մը որ յայտնի չէր թէ լրջօրէ՞ն կը խօսէր թէ իր ընկերոջ քթին կը խնդար։

— Հիմա որ տեղը աչքովդ տեսար, ըսաւ Թահիր, մեր ձեռք առնելիք միջոցները որոշենք։

— Բայց կարծեմ լաւ կ՚ըլլայ որ շէնքն այցելենք անգամ մը, առարկեց Թիկնապահը։

Այս առաջարկութիւնը շատ հաճոյ չի թուեցաւ ծերունի հրացանակրին, որ վարանոտ կերպով մը ըսաւ.

— Ի՞նչ հարկ կայ շէնքը այցելելու, մենք մեր գործը պարտէզին մէջ պիտի տեսնենք և թոյլ չպիտի տանք այդ մարդոց որ մինչեւ ներս մտնեն։

— Անշուշտ, բայց ո՛չ ոք կրնայ գուշակել ըլլալիքը և լաւագոյն է որ ամէն նախազգուշական միջոցներ ձեռք առնենք յանկարծակիի չի գալու համար։ Եւ այնպէս կը կարծեմ թէ լաւագոյն պիտի ըլլայ, եթէ մէկ քանի պահապան ալ շէնքին մէջը կեցնենք։

— Լաւ ուրեմն, երթանք շէնքն ալ այցելելու, ըսաւ Թահիր փաշա, տեսնելով որ ուրիշ ճար չի կար։

Շէնքին այցելութիւնը քանի մը վայրկեան միայն տեւեց։ Թահիր փաշա հեռուէն ցուցուց այն սենեակը որուն մէջ բանտարկուած էր Հագգը պէյ, ամէն յարաբերութիւններէ զըրկըուած։ Դրան առջև աթոռի մը վրայ, պահապան մը նստած էր։

— Այս խեղճ մարդն ալ գրեթէ Հագգը պէյին չափ բանտարկուած է, առանց անոր յանցանքները գործած ըլլալու, դիտել տուաւ Ջիա փաշա ծիծաղելով։

— Բայց միշտ միեւնոյն մարդը չէ հոս պահնորդ սպասողը պատասխանեց Թահիր փաշա, մինչեւ կէս օր մէկ պահապան մը եւ կէս օրէն ետքը ուրիշ մը կը հսկէ դրան քով։

— Իսկ գիշերնե՞րը։

— Գիշերները հսկողութիւնը աւելի խիստ է, շէնքին մէջ գտնուող չորս անձերն ալ այս սրահը կը մնան եւ հոս կը պառկին։

— Բայց եթէ բանտարկեալը պատուհաններէն փախչիլ փորձէ։

— Այդ անկարելի է. բոլոր պատուհաններն ալ հաստ երկաթներով պատած ենք... արդէն պատուհաններէն մէկ քանին ալ բոլորովին գոցեցինք, պատ հիւսելով... միայն երկու պատուհան թողած ենք եւ այդ երկուքն ալ, ինչպէս ըսի, բանտի մը պատուհաններէն աւելի լաւ պատսպարուած են։

Երկու ընկերները իրենց քննութիւնը աւարտած համարելով դուրս ելան շէնքէն։

Զիա փաշա անգամ մըն ալ շէնքին շրջանը ըրաւ պարտէզին կողմէ, յետոյ վերադարձաւ ծերունի հրացանաւէրին մօտ եւ ըսաւ.

— Կը տեսնեմ որ դուք խրատունք ունիք, լաւագոյն է որ մեր հսկողութիւնը աւելի բազմաթիւ անձերով կատարենք, որպէսզի յաջողութիւնը բոլորովին ապահով ըլլայ... ես թէեւ որոշ կերպով իմացած եմ որ միայն 5--6 հոգի պիտի ըլլան եկողները, բայց կրնայ պատահիլ որ վերջին վայրկեանին միտքերնին փոխեն ու աւելի շատուոր խումբով մը գան։

— Կեցցե՛ս, շատ խրատունք ունիս, ես ալ արդէն այդ գաղափարին եմ, պէտք է որ զօրաւոր կերպով պատրաստուած ըլլանք՝ զանոնք դիմաւորելու համար...

— Մանաւանդ որ, շարունակեց Թիկնապահը, հիմա այս պարտէզը այցելելէս ու չորս կողմը զննելէս ետքը, կը տեսնեմ որ շատ դիւրաւ կարելի է մեր մարդիկը պահուըտցնել ամէն կողմ, առանց կասկած յարուցանելու... ըստ իս գոնէ

յիսուն հոգի մը պահելու ենք պարտէզին ամէն կողմը, որպէս զի նախ յանկարծակիի չի գանք և երկրորդ՝ մարդ չփախցնենք։

— Եթէ պէտք ըլլայ, հարիւր հոգի ալ կը բերեմ, այդ մասին դժուարութիւն չի կայ։

— Ուրեմն անմիջապէս գործի սկսինք... դուք շուտով մը գացէք ձեր մարդիկը պատրաստեցէք ու բերէք... կարծեմ լաւ կ'ըլլայ որ շոգենաւակով մը ուղղակի հոս, պարտէզին քարափը գաք, որպէսզի ուշադրութիւն չգրաւենք։

— Այո՛, արդէն ես ալ այդպէս խորհած եմ, ըսաւ Թահիր փաշա։

— Իսկ ես մինչև ձեր վերադարձը հոս կը մնամ և լաւ մը կ'որոշեմ թէ ո՛ր տեղուանքը լաւագոյն են մեր դարանակալները կեցնելու համար։

Այսպէս խօսակցելով հասան մինչև պարտէզի մուտքին դրան առջև ուր դռնապանը ակնածանքով բարև բռնած կը սպասէր։

— Ես առ առաւելն երեք ժամէն կը վերադառնամ, ըսաւ ծերունի փաշան, դուն ուզածիդ պէս պարտէզին չորս կողմը աչքէ անցուր և ծրագիրդ պատրաստէ, որպէս զի մեր մարդիկը գալերնուն պէս իրենց տեղերը գտնեն։

Երբ Թահիր փաշա կը պատրաստուէր վանդակապատ դըռնէն դուրս ելլելու, Թիկնապահը անտարբեր ձևով մը զայն կեցուց և ըսաւ.

— Կարծեմ լաւագոյն կ'ըլլայ որ ձեր մարդոցը պատուիրէք որպէսզի ինծի արգելք չըլլան այստեղ։

— Շատ լաւ ըսաւ Թահիր փաշա և դռնապանին նշան ընելով իր քով կանչեց և ըսաւ, Թիկնապահը ցոյց տալով.

— Փաշա էֆէնտին հոս պիտի մնայ մինչև իմ վերադարձըս, իր հրամանները կէտ առ կէտ գործադրեցէք։

— Գլխուս վրայ, պատասխանեց դռնապանը ամենախորին բարև մը տալով։

Թահիր փաշա գնաց և ուրախ մեկնեցաւ արքայական քէօշ-

կէս և խակոյն շոգենաւ մտնելով վերադարձաւ Պէշիկթաշ և հոնկէ ալ Եըլտըզի պալատը։ Մինչև ետքը իր մտքին մէջ կը հաշուէր այս գործին յաջողութենէն քաղելիք պտուղները և իր երևակայութեան մէջ մեծամեծ երազներ կը յղանար։ Գործը ո և է անակնկալ ձախողանքի չմատնելու համար որոշած էր կրցածին չափ բազմաթիւ անձերով զինուիլ և ասոր համար պալատ համնելուն պէս իր քով կանչեց մէկ քանի հաւատարիմ զինակիցները և անոնց գաղտնապէս բացատրեց խնդիրը։ Ամէնքն ալ խանդավառութեամբ ոգեւորուեցան, որովհետև կը զգային թէ այսպիսի գործի մը մասնակցելով ինչ մեծ շնորհներու պիտի արժանանային Սուլթանին կողմէ։ Որոշուեցաւ որ վաթսուն զինեալ հրացանակիրներ երթային պահուելու Պէյքօզի քէօշկին պարտէզին մէջ։

— Ուշադրութիւն չգրաւելու համար լաւագոյն է որ խումբ խումբ տարբեր միջոցներով երթանք հոն, վճռեց ձերունի փաշան, ոմանք շոգենաւով, ոմանք շոգեմակոյկով, ոմանք ալ նաւակով, դեռ մինչև մութը կոխելուն բաւական ժամանակ ունինք...։

Բայց յանկարծ միտքը բան մը ինկաւ. ինչպէ՞ս կարելի էր Սուլթանին անձնական պահպանութեան յատկացուած հրացանակիրներէն վաթսուն հոգի պալատէն դուրս հանել, առանց նորին վեհափառութեան նախապէս իմաց տալու։ Անշուշտ Աբտիւլ Համիտ իրեն վրայ բացարձակ վստահութիւն ունէր, բայց եթէ իր բացակայութեան միջոցին եղելութիւնը իմանար և ինք հոն չըլլար՝ պէտք եղած բացատրութիւնները տալու համար, կրնար իր կասկածոտ բնութեան հետեւանքով՝ յանկարծ խռովիլ ու տարօրինակ ենթադրութիւններու մղուիլ, անոնց հետեւանքը կրնար շատ ծանր ըլլալ։ Ասոնք մտածելով Թահիր փաշա խորին մտատանջութեան մատնուեցաւ։

— Իմ բացակայութեանս միջոցին, մտածեց ինքնիրեն, եթէ Սուլթանը կասկածի կրթայ, իր շուրջը գտնուող բոլոր պալատականները որոնք կը նախանձին իմ գրաւած բացառիկ դիրքիս վրայ, առիթէն օգուտ պիտի քաղեն իմ վրաս զըր-

պարտութիւններ յօրինելու և վեհափառ տիրոջս միտքը պղտորելու համար, այնպէս որ եթէ նոյն իսկ ծրագրուած գործը յաջողութեամբ գլուխ հանեմ և վերադառնամ, գուցէ նորէն չկրնամ իր աչքին արդարանալ ու յոգնութիւնս ու մատուցանելիք ծառայութիւնս ալ պարապը երթայ... չէ՛, լաւագոյն է որ երթամ ու ամէն բան տեղն ի տեղօք իրեն պատմեմ ու յետոյ մեկնիմ պալատէն։

Այս որոշումը տալով՝ Թահիր փաշա իսկոյն սուլթանին յարկաբաժինը գնաց և որովհետեւ ինք բոլորովին բացառիկ շնորհ կը վայելէր պալատին մէջ, առանց սպասելու ներկայացաւ իր վեհափառ տիրոջ և մի առ մի պատմեց ինչ որ մեր ընթերցողները արդէն գիտեն։

Ապտիւլ Համիտ մեծապէս յուզուեցաւ այս յայտնութիւնները լսելով և հրամայեց որ իր թիկնապահներէն մէկ քանին ընկերանան Թահիր փաշայի և ժամը ժամին իրեն տեղեկութիւն բերեն բոլոր իրադարձութիւններուն մասին։ Յեղափոխականները այնպէս մէկէն ի մէկ երեւան ելլելը և այնպիսի յանդուգն գործի մը ձեռնարկելը զինքը չափազանց վրդովեց, ինք որ այնպէս կը հաւատար թէ Զիա փաշայի մատնութիւններէն ետքը կարող եղած էր անոնց գլուխը ջախջախելու և զանոնք երկար ատենի համար անգործութեան դատապարտելու։

— Եթէ այդ դաւաճան չարագործները յաջողիս ամենքն ալ բռնել ու ինծի բերել, վստահ եղիր որ մտքէդ չանցած շնորհներու պիտի արժանանաս, ըսաւ Թահիր փաշայի։

— Ես արդէն պէտք եղածէն աւելի ձեր բարձր վեհափառութեան շնորհները կը վայելեմ, պատասխանեց հրացանակիրներուն պետը, և եթէ յաջողիմ այս անգամ իմ վեհափառ տիրոջս գոհունակութիւն պատճառելու, արդէն ատիկա ինծի համար մեծագոյն շնորհը պիտի ըլլայ։

Թահիր փաշա Սուլթանին քովէն ելլելով իր վերջին հրահանգները տուաւ իր հրացանակիրներուն և ինք մէկ քանի հաւատարիմներու և երկու պալատական թիկնապահներու հետ

իսկոյն Տօլմա Պահչէի քարափը փութաց ուր շոգենաւակ մը կը սպասէր իրեն, նախապէս տրուած պատուէրի մը համեմատ։

Շոգենաւակը կէս ժամ ետքը կը հասնէր Պէյքօզ, արքայական քէօշկին քարափը։ Թահիր փաշա՝ իր հետեւորդներով՝ դուրս ելաւ իսկոյն և ուղղուեցաւ դէպի քէօշկը։

Իրեն ընկերակցողներէն մէկը, երբոր չէնքին մօտեցաւ, վազեց դուռը բախելու։

Քանի մը վայրկեան սպասեցին, սակայն ոչ ոք եկաւ դուռը բանալու։

— Զարմանալի՜ բան, գոչեց Թահիր փաշա, ո՞ւր են պահապանները....

Ու ինք, երկրորդ անգամ ըլլալով, աւելի ուժգին զարկաւ դրան։ Դարձեալ ո՛չ ոք երեւցաւ։

— Գնա՛ և պարտէզին դռնապանը հոս կանչէ; ըսաւ հրամանակիրներու պետը, խօսքը իր հաւատարիմներէն մէկուն ուղղելով։

Մարդը վազելով հեռացաւ և քանի մը վայրկեան ետքը վերադարձաւ շփոթած երեւոյթով մը։

— Փաշա էֆէնտի, պարտէզի վանդակապատ դրան քով ոչ ոք կայ, կմկմաց։

— Ինչպէ՛ս, դռնապանը հոն չէ՞։

— Չէ՛, փաշա էֆէնտի և երկաթէ դուռն ալ կղպուած չէ, այլ պարզապէս վրայ եղած....։

Պաղ քրտինք մը ողողեց ծերունի զինուորականին ճակատը և կատաղօրէն սկսաւ կրկին դուռը զարնել։

Դարձեալ դուռը փակ մնաց։

Թիկնապահներէն մէկը ականջը դրան դրաւ և սկսաւ ուշադիր մտիկ ընել, քովիններուն ձեռքի շարժումով մը լռութիւն պատուիրելով։

Քանի մը բոպէ այսպէս մնալէ ետքը, ըսաւ.

— Կարծեմ ներսէն հեծեծանքի ձայն մը կը լսուի, դուք ալ եկէք մտիկ ըրէք։

Թանիր փաշա և իր հետեւորդներէն մէկ քանի հոգի հետեւեցան Թիկնապահին օրինակին և իրենց ականջները դրան կպցուցին։

— Այո՛, ըսաւ ծերունի հրացանակիրը, ես ալ հեծեծանքի ձայներ կը լսեմ։

— Պէտք է դուռը խորտակել և ներս մտնել վճռեց Թիկնապահը։

Այս առաջարկը թէև շատ բանաւոր՝ սակայն գործադրութիւնը դժուար էր, որովհետեւ դուռը հակառակ չէնքին հնութեան, շատ հաստատուն էր և կարելի չէր հրելով կամ ոտքի և ուսի հարուածներով բանալ։

— Տապար մը կամ բրիչ մը չի կա՞յ արդեօք, գոչեց Թափաշա որուն տագնապը հետզհետէ կ'աւելնար։

Մարդերէն մին վազեց դռնապանին խցիկին մօտ գտնուող պարտիզպանի հիւղակը և յաջողեցաւ տապար մը և երկու բրիչ գտնել։ Ասոնցմով վերջապէս կարելի եղաւ քէօշկին դուռը խորտակել ու ներս մտնել։

Դրան հանդէպ բացուող ընդարձակ սրահին մէջ ոչ ոք կար բայց հիմա որոշապէս կը լսուէին հեծեծանքի ձայները որոնք ուղղակի կուգային այն սենեակէն ուր բանտարկուած էր Հագգը պէյ։

Հրացանակիրներու պետը խելայեղ յուզումով մը վազեց դէպի հոն և ուզեց դուռը բանալ։ Այդ դուռն ալ կղպուած էր և հարկ եղաւ զայն խորտակել, թէև այս գործողութիւնը շատ աւելի դիւրին եղաւ քան միւս մեծ դրան խորտակումը։

Երբ սենեակէն ներս մտան, տարօրինակ տեսարան մը պարզուեցաւ իրենց աչքին առջև։

Հագգը պէյի հսկողութեան սահմանուած չորս պահապաններն ու դռնապանը հոն տախտակամածին վրայ, ոտքերնին ու ձեռքերնին կապուած ու բերաննին մէյմէկ թաշկինակներով սեղմուած, կը տապլտկէին, յուսահատ ճիգեր ընելով՝ որպէսզի կապանքներէն ազատին։

— Շո՛ւտ քակեցէ՛ք այդ խեղճ մարդերուն կապանքները և բերններուն թաշկինակները, հրամայեց Թահիր փաշա։

Այս հրամանը վայրկենապէս գործադրուեցաւ։

— Օսման աղա, ո՞ւր է Հագգը պէյը, հարցուց Թահիր փաշա, խօսքը ուղղելով պահապաններէն մէկուն որ գլխաւորը ըլլալ կը թուէր։

Այս վերջինը, որ քառասուն տարեկանի մօտ հուժկու և յաղթանդամ անձ մըն էր գոչեց.

— Փախցուցի՛ն, փաշա էֆէնտի։

— Փախցուցի՞ն մի, գոչեց Թահիր փաշա շլմորած աչքերով՝ ոտքը կատաղութեամբ գետին զարնելով, ո՞վ փախուց, խօսէ՛ տեսնեմ...։

— Ձեզի հետ եկող փաշան ու իր մարդիկը, պատասխանեց Օսման աղա շփոթած երեւոյթով մը։

— Վա՜յ թշուառական Զիա, այս թաղը խաղաց ինծի, հէ՞, գոչեց ծերունի փաշան, կ՚երդնում որ այս ըրածը իր քով չպիտի մնայ և սոսկալի կերպով պիտի լուծեմ վրէժս... բայց խօսէ՛ տեսնեմ, որչա՞փ ժամանակ է որ զինքը փախուցին, գուցէ տակաւին շատ հեռու չըլլան և կարենանք ետեւնուն հասնիլ... ըսէ՛, ո՞ր կողմէն փախան։

— Ափսո՛ս, փաշա էֆէնտի, պատասխանեց խեղճ պահապանը, հիմա արդէն այս տեղերէն հեռացած ըլլալու են, որովհետեւ, եթէ չեմ սխալիր, երկու ժամէն աւելի է որ փախան։

Օսման աղա այս խօսքերը արտասանելով դէպի դռնապանը դարձաւ և հարցուց.

— Այնպէս չէ՞, Մուսթաֆա աղա։

Այո՛, գուցէ երկու ժամէն ալ աւելի է, պատասխանեց դռնապանը։

— Բայց մանրամասնաբար պատմեցէ՛ք տեսնամ անցած դարձածը, գոչեց Թահիր փաշա, որուն կատաղութիւնը հետըզհետէ կ՚աւելնար։

— Փաշա էֆէնտի, պատասխանեց դռնապանը, ձեր բարձ-

*րութեան մեկնելէն անմիջապէս ետքը, Զիա փաշա ինծի հրամայեց որ իրեն ընկերանամ և միասին պարտէզին մէջ շրջան մը ընենք, յետոյ եկանք քէօշկը և ներս մտանք։ Հոս Օսման աղային հանդիպելով՝ Զիա փաշան ըսաւ. «Այս գիշեր քէօշկին վրայ յարձակում մը պիտի ըլլայ Հազգը պէյը փախցնելու համար, բարեբախտաբար առաջուց տեղեկութիւն առինք և պիտի կրնանք միջոցներ ձեռք առնել այդ յարձակումը արգիլելու և նոյն իսկ յարձակողները ձերբակալելու համար։ Թահիր փաշան հիմա գնաց որպէս զի պալատի հրացանակիրներէն խումբ մը առնէ և միասին հոս բերէ. ես ալ հետս մէկ քանի ծպտեալ ոստիկաններ բերած եմ որոնք հիմա հոս պիտի գան և հսկողութիւն ընեն, որպէս զի ոև է անակնկալի չի գանք. մինչև Թահիր փաշայի գալը պէտք է որ իմ հրամաններուս հպատակիք։ Արդէն մեկնելէ առաջ այդպէս պատուէր տուաւ դռնապանին»։ Այս խօսքերը ըսելով դէպի ինծի դարձաւ և հարցուց.— «Միթէ այնպէս չէ՞.»*

*— Այո՛, փաշա էֆէնտի, Թահիր փաշա մեկնած ատեն այդպէս պատուիրեց» պատասխանեցի։ Ասոր վրայ, Օսման աղա ըսաւ թէ պատրաստ էր տրուելիք հրամանները կէտ առ կէտ գործադրելու։ Զիա փաշա աւելցուց.— «Ես հիմա պիտի երթամ ոստիկանները բերելու, դուք ուշադիր ձեր հսկողութիւնը կատարեցէք և չըլլայ որ պակասութիւն մը գործէք, յետոյ չէք կրնար ազատիլ ձեռքէս»։ Յետոյ ինծի դարձաւ և ըսաւ. «Դուն անմիջապէս պարտէզին դրան քով գնա՛ և չըլլայ որ մէկու մը թող տաս ներս մտնելու, ո՛վ որ ալ ըլլայ։»*

*Այս պատուէրները տալէ ետքը Զիա փաշա մեկնեցաւ։ Յարձակումի մասին իր ըրած խօսքերը չափազանց յուզեցին ու խռովեցին մեզ ամէնքս։ Երբեք այսպիսի պատահականութեան մը չէինք սպասեր և փառք կուտայինք Աստուծոյ որ բարեբախտաբար խնդիրը առաջուց իմացուած էր և կարելի պիտի ըլլար առաջքը առնել և մեզ ծանր պատասխանատուութենէ մը փրկել։ Իսկոյն գացի երկաթապատ դրան քով իմ հսկողութիւնս կա-*

տարելու։ Քառորդէ մը Զիա փաշա վերադարձաւ հինգ անձերու ընկերակցութեամբ։

Ներս մտնելէն ետքը, երբ որ դուռը վերստին կղպելու սպասած էի, յանկարծ հինգ անձեր մէկէն վրաս յարձակեցան։ Իրենցմէ մին անմիջապէս թաշկինակ մը թխմեց բերանս որպէս զի չի կարենամ պոռալ, մինչ միւսները իրենց հետ բերած չուաններով սկսան թեւերս ու ոտքերս կապկպել։ Այս ամէնը այնքա՛ն արագութեամբ տեղի ունեցաւ որ չկրցայ ո՛չ աղաղակ մը հանել, և ո՛չ ալ անձնապաշտպանութեան համար փորձ մը ընել։ Երբ լաւ մը գիս կապեցին, թեւերէս ու ոտքերէս բռնելով՝ բերին պարտիզպանի յատուկ գործիքներու յատկացուած հիւղակը և հո՛ն գետնին վրայ թողլով և ուրիշ լաթով մըն ալ աչքերս կապելով հեռացան... ահա իմ ամբողջ գիտցածս։

— Հիմա, փաշա էֆէնտի, ներեցէ՛ք որ պատմութեան շարունակութիւնը ես ընեմ, ըսաւ պահապաններու պետ Օսման աղա։

— Խօսէ՛ տեսնենք, գոչեց Թահիր փաշա բարկութենէն ակռաները կրճտելով։

— Ես պարտէզին դրան մօտ անցած դարձածներէն բնաւ տեղեկութիւն չունէի և իմ ընկերներուս հետ սրահը նստած կը խօսակցէինք քիչ մը առաջուան մեզի եղած ծանրակշիռ յայտնութիւններուն վրայ, երբ դուռը զարնուեցաւ և Զիա փաշա երեւցաւ սեմին վրայ.

— Քիչ մը հոս եկուր, ըսաւ խօսքը ինծի ուղղելով։

Իսկոյն փութացի քովը երթալու։

— Քեզի հետ պարտէզին խորը պիտի երթանք աչքէ անցնելու և որոշելու թէ մեր մարդիկը ո՛ւր պիտի պահուըտըննենք երբ որ գան։

— Շատ աղէկ փաշա էֆէնտի, պատրաստեմ ձեր հրամանին հնազանդելու, պատասխանեցի։

— Պատուիրէ՛ քու մարդոցդ որ մինչև մեր վերադառ-

նալը այս սրահէն դուրս չելլեն և դուռը փակ պահեն, շարունակեց, և ես ալ նոյն պատուէրը կրկնեցի պահապաններուն։

Ցետոյ միասին ուղղուեցանք պարտէզին խորը ուր փայտերու կոյտ մը դիզուած է։

Հոն հասնելնուս՝ փաշան հրամայեց որ փայտերէն մէկ քանին մէկ կողմ առնեմ. երբ այս աշխատութեան զբաղած էի, յանկարծ, Մուսթաֆա աղային եղածին պէս, հինգ վեց հոգի վրաս յարձակեցան և ակնթարթի մը մէջ թէ՛ բերանս և թէ թեւերս ու ոտքերս կապկպելով զիս հոն թողուցին և հեռացան....։

— Իսկ մի՞ւս պահապանները, հարցուց Թահիր փաշա, որ անհամբեր էր այս պատմութեան վերջը իմանալու։

— Փաշա էֆէնտի, ի՛նչ հարկ կայ խօսքը երկարելու, պատասխանեց Օսման աղա, միւս պահապաններն ալ գրեթէ նոյն ձեւով, մէկիկ մէկիկ զոհ գացին Զիա փաշայի խօսքերուն...։

— Բայց քանի որ ամէն մէկերնիդ զատ զատ տեղեր կապկըպուած ու թողուած էք, ինչպէ՛ս կ'ըլլայ որ ամենքդ միասին այս սենեակին մէջ կը գտնուիք։

— Անտարակոյս պատասխանը, շարունակեց պահապաններուն մեծը, մեզի այսպէս մէկիկ մէկիկ կապելէ ու անգործութեան դատապարտելէ ետքը, այդ մարդիկը կ'երեւայ ու կուգան Հազգր պէյը իր սենեակէն կ'առնեն ու կը փախցնեն։ Միայն իրենցմէ երեք հոգի հոս կը մնան և կը սկսին մեզի մէկիկ մէկիկ հաւաքել և բերել այս սենեակին մէջ փակել, ուր վերջապէս դուք եկաք մեզ փրկելու... եթէ չի գայիք, ապահովաբար հոս չարչարանքներու մէջ պիտի մեռնէինք։

Օսման աղա այս տեղ աւարտեց իր պատմութիւնը։ Ծանրող լռութիւն մը տիրեց սրահին մէջ. ո՛չ ոք կը համարձակէր բերանը բանալ և խօսք մը ըսել ու ամէնքը, գլուխնին հակած, աչքերնուն տակէն Թահիր փաշային կը նայէին։ Ծերունի հրացանակիրը խորին թախծութեան մը մէջ ինկած՝ ջղաձգօրէն իր

համբիչը կը դարձնէր անընդհատ։ Ո՛չ թէ միայն իր նորանոր փառքի ու պատիւի երազները յանկարծ կը ցնդէին՝ այլ անոնց կը յաջորդէին շնորհազրկութեան երկիւղները։ Հիմա ինչպէս պիտի կրնար վերադառնալ իր մենատէր տիրոջ քով, ինչ երեսով պիտի կրնար պատմել տեղի ունեցած եղելութիւնները։ Այսպէս Համիտ կրնար սոսկալի կասկածներ ունենալ իր վրայ, ենթադրել որ բոլոր ասոնք իր մեղսակցութեամբը եղած են, թէ ինք համաձայնած է Ջիա փաշայի հետ...։ Այսպիսի անռելի կասկածանքէ մը և ամբաստանութենէ մը ինչպէ՞ս պիտի կրնար ինքզինքը փրկել:

Ծերունի հրամանակիրը այս սոսկալի մտատանջութիւններուն մատնուած, շրթունքը կը շարժէր անդադար, կարծես մտօքի աղօթելով։ Իր հետեւորդները նոյնքան յուզուած, արձանացեր կեցեր էին իրենց տեղը։

Վերջապէս պալատական թիկնապահներէն մին ճնշող լռութիւնը խզեց և ըսաւ.

— Փաշա էֆէնտի, անշուշտ պատահած դժբախտութիւնը շատ մեծ ու անակնկալ է, բայց ո՛չ անդարմանելի։ Փախստականները տակաւին շատ հեռու ըլլալու չեն և կարծեմ հարկ է որ անմիջապէս զիրենք հետապնդենք, գուցէ կը յաջողինք զիրենք ձեռք անցնել և եղած չարիքը դարմանել. միայն թէ վայրկեանները թանկագին են և պէտք է անմիջապէս գործել։

— Այո՛, մէջ մտաւ միւս թիկնապահն ալ, շատ իրաւունք ունի փաշա էֆէնտին, շուտով իմաց տանք նախ Պէյքօզի ոստիկանութեան և միեւնոյն ատեն լուր տանք ամէն կողմ, որպէսզի ամէնհարկաւոր միջոցներ ձեռք առնուին այդ թշուառականներու փախուստը արգիլելու համար։

Թա՞իր փաշա տարտամ ակնարկով մը մտիկ ըրաւ այդ խօսքերը. յետոյ ձեռքի յուսահատական շարժում մը ընելով ըսաւ.

— Կ'աղաչեմ, փաշաներ, ինչ միջոց որ յարմար կը տեսնէք գործադրեցէք... այս հարուածը այնքա՛ն ուժգին ազդեց

վրաս որ խելքս կորսնցուցի և ես չեմ կարող բան մը խորհիլ կամ որոշել… բացարձակ արտօնութիւն կուտամ ձեզ ուզած կարգադրութիւննիդ ընելու…։

Այս խօսքերը արտասանելով՝ Թահիր փաշա առաջացաւ դէպի անկիւնը դրուած բազմոցը և անոր վրայ ինկաւ յոգնած երեւոյթով մը։

---

## ԳԼՈՒԽ Է.

# ՆԱԽԸՆԹՕՐԸ

Երկու պալատական թիկնապահները, հակառակ իրենց թափած ճիգերուն, չկրցան արդիւնքի մը հասնիլ և նոյն իրիկունը հարկ եղաւ ճշմարտութիւնը հաղորդել Ապտիւլ Համիտի։ Բըռնաւորին կատաղութիւնը սոսկալի կերպով պայթեցաւ։ Ահռելի սպառնալիքներ տեղաց ամենուն գլխուն և հրամայեց որ իսկոյն Թահիր փաշան և երկու թիկնապահները պալատին մէջ բանտարկուին ու խիստ հարցաքննութեան մը ենթարկուին։ Ինչ որ ամենէն աւելի կը կատղեցնէր Ապտիւլ Համիտը, Հագգը պէյի ազատումը չէր, որքան գաղտնի քօմիթէին յանդըգնութիւնը և Զիա փաշային մատնութիւնը իրեն հանդէպ։ Կըրկին հրամայեց որ Տիլարա ձերբակալուելով պալատ բերուի, սակայն այս անգամ ուշ մնացած էր, որովհետեւ, ինչպէս գիտենք արդէն, Զիա փաշա զայն հեռացուցած էր Պոլսէն։ Այս նոր յայտնութիւնը դառնագոյն հարուած մը եղաւ իրեն համար։ Այսպէս ուրեմն, իր չուրջը ամէնքը իր քթին կը խընդային ու իրեն դէմ կը դաւաճանէին։ Ո՛չ իր շռայլած դրամը, ո՛չ իր շնորհած պատուանշանները, ո՛չ իր բաշխած պաշտօնները և ո՛չ ալ իր ներշնչած երկիւղը կրնար զինքը փրկել իրեն դէմ սարքուած դաւադրութիւններէն։

*Քսանըհինգ տարուան բացարձակ բռնապետական իշխանութենէ մը ետքը, Աբտիւլ Համիտ կը տեսնար իր անանկութիւնը, ահեղ տեսիլքով մը իր աչքին առջև կը պատկերանար ամբողջ այդ բռնակալութեան խախուտ հիմերը և կ'ըմբռնէր թէ ի՛նչ անկայուն աւազուտի մը վրայ կառուցուած էր իր շէնքը։ Եւ առաջին անգամ ըլլալով, յուսահատութեան և վհատութեան դժնդակ արհաւիրքը զինքը կը պաշարէր։ Կը ըղձար թէ այդ Եըլտըզի պալատին մէջ, ուր ինք ամենազօր վեհապետ մը ըլլալ կը կարծէր, ուրիշ բան չէր եթէ ոչ իր պալատականներուն ձեռք անարգ գերի մը, խաղալիք մը...։ Բացարձակ բռնապետութիւնը՝ այսպէս՝ կ'երթար կը յանգէր բացարձակ ստրկութեան մը։*

*— Ի՛նչպէս կրնամ ազատիլ այս մարդոց ձեռքէն, իմ մարդոցս ձեռքէն, իմ հաւատարիմներուս, իմ անձնուէրներուս ձեռքէն...։*

*Այսպէս կը մտածէր Աբտիւլ Համիտ, իր գլուխը ձեռքերուն մէջ առած։*

*Որո՞ւ վստահիլ, որո՞ւ վրայ յոյս դնել, որո՞ւ յանձնել իր կեանքը... այդ կեանքը որուն փարած է, խելայեղօրէն և զոր իրմէ կորզելու կ'աշխատէին ամենքը։*

*Ու այս տագնապալից մտատանջութիւններուն մատնուած՝ Աբտիւլ Համիտ կը մտածէր ամէն բան արմատախիլ փոխել յանկարծ, վտարել իր շուրջի մարդիկը, մաքուր մթնոլորտ մը ստեղծել շուրջը, տարբեր, բոլորովին հակոտնեայ ուղղութիւն մը տալ մինչև այն ատեն իր ընտրած դրութեան, բռնակալութեան հակառակը փորձել, Սահմանադրութիւն և Ազատութիւն հռչակել, իր ամբողջ անցեալը ուրանալ, նոր մորթ մը հագնիլ և իր սխալները քաւել։*

*Բայց ինչպէ՞ս:*

*Ինք՝ բացարձակ բռնաւոր մը՝ որուն մէկ խօսքը բաւական էր իր հազարաւոր հպատակներուն մահը վճռելու, ինքզինքը անզօր կը զգար թօթափելու համար Իզէթներու, Նէ-*

ճիտ Մէլհամէններու, Թահիրներու, Ապտիւլ Ղազիններու, Շաքիրներու, Բաղիպներու, Թահսիններու, Ղալիպներու, Ապտիւլ Բէզաքներու, Նուրիներու, Ալի Ճէվատներու, Էպուլ Հուտաններու, Արիֆներու լուծը։ Բոլոր այդ մարդիկը, որոնք տարիներու ընթացքին մէջ, մէկիկ մէկիկ իր քով հաւաքած, փորձած ու մարզած էր, իր բռնակալութեան շէնքին մէյմէկ հիմերն էին, իր իշխանութեան մէյմէկ պատուարները, իր էութեան մէյմէկ մասնիկները ու եթէ հիմա զանոնք յանկարծ դուրս ձգէր, ինքն ալ անոնց հետ հիմնահատակ պիտի կործանէր։ Անոնք, իրեն հետ, անբաժանելի ամբողջութիւն մը կը կազմէին, իր մարմնոյն անդամներն էին ու կարելի չէր զանոնք կտրել ու իրմէ դուրս նետել։

Քսանըհինգ տարուան գործակցութիւնն ու մեղսակցութիւնը, հարիւր հազարաւոր իսլամներու և քրիստոնեաններու արիւնովը շաղախուած, զիրենք միացուցեր, միաձոյլ զանգուածի մը վերածեր էր...։

Օրերով ու գիշերներով բռնաւորը տագնապեցաւ այս մտածումներուն մէջ։ Ակնյայտնի յստակատեսութեամբ մը կը տեսնէր այն անդունդը ուր կը քալէր ճակատագրային թափով մը։

— Ճամբան փոխել անկարելի է, կը մտածէր Ապտիւլ Ապմիտ, պէտք է մինչև ծայրը երթալ...

Այսպէս ուրեմն հասած էր այն վայրկեանը ուր Ապտիւլ Համիտ զոհ կ'երթար իր իսկ բռնակալութեան, իր հնարած կապանքներուն մէջ կ'աշկանդուած...։

Փոխանակ իր աղետալի ընթացքէն հրաժարելու՝ հետզհետէ սկսաւ մխրճուիլ անոր մէջ։ Հագգը պէյի փոխանորդը Թիկնապահ Զիա փաշայի կրկին յեղափոխականներու հետ միանալը և ծածուկ կազմակերպութեան յանդուգն գործունէութիւնները բուն իսկ իր մայրաքաղաքին մէջ, փոխանակ դաս մը ըլլալու իրեն համար, զինքը ա՛լ աւելի մղեցին բռնաւորութեան ճամբուն մէջ։

Հիմա քանի մը որոշ տեղեկութիւններ կրցած էր ձեռք բերել։ Գիտէր որ, մութին մէջ, իր իշխանութեան հիմերը քանդողները փոքրաթիւ դաւադիրներ չէին, այլ ամբողջ կազմակերպութիւն մը կար որ իր ճիւղերը տարածած էր ընդարձակածաւալ կայսրութեան ամէն կողմերը։ Ապտիւլ Համիտ աւելի առաջ տանելով իր խուզարկութիւնները հասկցաւ որ իր դէմ կանգնող հակառակորդները միմիայն անփորձ դպրոցականներ կամ անզօր քաղաքացիներ չէին, այլ պետութեան ամէնէն իրական ոյժը կազմող տարրը, այսինքն օսմանեան բանակն էր որ կամաց կամաց կը ցցուէր իր դէմը, սպառնական կերպով, այն բանակը զոր կրցած էր տարիներով լռեցնելու և կամ իր կամքին ծառայեցնելու։

Հիմա պէտք էր այդ զօրութիւնն ալ ջախջախել. զայն ալ կազմալուծել, ապականել, բնաջինջ ընել, հոգ չէր եթէ այսպէսով ամբողջ պետութիւնը վերջնական կորուստի դատապարտուէր։ Եւ Ապտիւլ Համիտ, առանց վարանելու, ձեռնարկեց այս չարաչուք գործին։ Լրտեսներու ամբողջ լէգէոն մը ղրկուեցաւ զօրանոցներու մէջ, բարձրաստիճան սպաները լրտեսելու, անոնց ամէն խօսքերը, կասկածելի ընթացքները իսկոյն Երլտըզ տեղեկագրելու համար։ Միւս կողմէ, նոր ուժգնութեամբ մը, հալածանքը սկսաւ մայրաքաղաքին մէջ. ամենափոքր նշանի մը վրայ տուները կոխեցին, մարդիկը և նոյն իսկ կիները ձերբակալեցին, անմեղ անձերով բանտերը լեցուցին, նորանոր ահ ու սարսափներու մատնելով թէ՛ իսլամ և թէ քրիստոնեայ բնակիչները։

Ապրիլը գրեթէ անկարելի դարձած էր Պոլսոյ, ի բաց առեալ անոնց համար որոնք բռնակալութեան գործիք ըլլալու կը հաւանէին։ Երեք հոգի կարելի չէր որ տեղ մը հաւաքուէին ու իրարու հետ խօսէին առանց իրենց վրայ կասկած հրաւիրելու։ Ոստիկանի ու խաֆիէի երկիւղը տիրած էր ամենուն վրայ։ Զսպուած ատելութիւն մը, Համիտին ու իր արբանեակներուն դէմ, ամենուն սիրտերը լեցուցած էր, բայց

ընդհանուր վատասրտութիւնն ու սարսափը այնքա՜ն բուռն էր որ ո՛չ ոք կը համարձակէր բերանը բանալ և բողոքի կամ ըմբոստութեան խօսք մը արտասանել.

Ապտիւլ Համիտի բռնաւորական հալածանքներու այս սաստկացումը ժամանակի մը համար անգործութեան դատապարտեց գաղտնի քօմիթէն, որուն գործունէութեան վերջինը եղեր էր իրենց ընկերներէն Հագգը պէյի փախուստը Ջիա փաշայի օժանդակութեամբ։ Թիկնապահին այս թանկագին ծառայութիւնը պատճառ մը եղաւ որ չգործադրուի իրեն դէմ դրուած մահուան վճիռը։

Այսուհանդերձ Ջիա փաշա այլեւս մերժուեցաւ իբրև անդամ ընդունելէ, հակառակ իր խնդրանքներուն։

Սալիհա հանըմ միշտ փակուած կը մնար իր Շիշլիի թաքըստոցին մէջ, որուն հետքը կարելի եղած չէր գտնել, ոստիկանական ամենախիստ խուզարկութիւններու հակառակ։

Ամբողջ 1905ի ձմեռը այսպէս անցաւ։ Ապտիւլ Համիտ բանակին մէջ ղրկած իր բազմաթիւ լրտեսներուն տեղեկագիրները հետզհետէ կը ստանար ՝և ըստ այնմ իր հալածանքները կը հրամայէր. բայց կասկածելի սպաներուն թիւը այնքա՜ն շատ էր որ չէր համարձակեր ամէնուն դէմ ծանր պատիժներ անօրինելու և յաճախ կը գոհանար տեղափոխութիւններ կատարելով, ինչ որ ա՛լ աւելի կը ծառայէր յեղափոխական և ազատական գաղափարները տարածելու։

Բռնաւորը այնքա՜ն զբաղուած էր բանակով որ գրեթէ այլեւս մոռցած էր Պոլիսը և յունիսի սկիզբները հսկողութիւնը այնքա՜ն թուլցած՝ որ Սալիհա հանըմ կրցաւ մէկ քանի անգամ, եւրոպական տարազով ծպտուած, դուրս ելլել իր բնակարանէն և առանց ուշադրութիւն գրաւելու, զանազան տեղեր երթալ։ Իր ընկերները ալ աւելի համարձակ կերպով կը գործէին, մանաւանդ երիտասարդ խմբագիրը, Սարըգ պէյ, չէր վարաներ Բերայի մեծ փողոցին մէջ երեւալու և ամէնէն վտանգաւոր յանձնարարութիւնները կատարելու։ Պուլկար յե-

ղափոխականի մը միջոցաւ յարաբերութիւններ հաստատած էր Պոլիս գտնուող հայ յեղափոխականներու հետ և շուտով կըր-ցած էր անոնց համակրանքը և վստահութիւնը շահիլ։

Յունիսի վերջերը, օր մը շաբաթի մը չափ անյայտ մնալէ ետքը, նախկին խմբագիրը եկաւ գտաւ Սալիհա հանըմը իր Շիշլիի բնակարանին մէջ։

Սալիհա, որ մէկ քանի օրէ ի վեր իր ընկերոջ բացակայութեան պատճառաւ մտատանջութեան մատնուած էր, շատ ուրախ եղաւ զայն տեսնելով։

— Մեզի դող հանեցիր, ըսաւ յանդիմանական շեշտով մը այսպիսի վտանգաւոր ժամանակ մը ինչպէ՞ս կ'ըլլայ որ օրերով մէջտեղ չես ելլեր, առանց նախապէս լուր տալու...։

Սարըգ պէյ ժպտեցաւ և պատասխանեց։

— Իրաւունք ունիս զիս յանդիմանելու, բայց այնպիսի անակնկալ մը պատահեցաւ որ չկրցայ ձեզի լուր տալ։

— Գոնէ լաւ լուր մը բերի՞ր այս բացակայութենէդ ետքը։

— Այո՛, և խիստ կարեւոր լուր մը. պատասխանեց երիտասարդը, յանկարծ լուրջ դէմք մը առնելով.

— Խօսէ տեսնենք.

— Մեծ մահափորձ մը կը պատրաստուի Աբտիւլ Համիտի դէմ...։

— Ի՞նչ կ'ըսես. գոչեց Սալիհա զարմացական ճիչ մը արձակելով։

— Այո՛, մեծ մահափորձ մը որմէ չեմ կարծեր որ կարենայ խուսափիլ.

— Բայց որո՞նք են այդ մահափորձը պատրաստողները։

— Մեր հայ յեղափոխական ընկերները։

— Եւ ի՞նչպէս կ'ըլլայ որ դուն կ'իմանաս այդ բանը։

— Արդէն ձեզի ըսած էի որ վերջերս, պուլկար բարեկամի մը միջոցաւ ծանօթութիւն հաստատեցի հայ յեղափոխականներու հետ որոնք Պոլիս կը գտնուին։ Մեր յարաբերութիւնները, առաջին օրերուն, շատ վերապահ էին, բայց յետոյ,

կամաց կամաց վստահութիւն ծնաւ մեր մէջ և վերջապէս օր մըն ալ ինէ մէկ քանի տեղեկութիւններ ուզեցին Ապտիւլ Համիտի ներքին կեանքին մասին զորս հաղորդեցի։ Յետոյ Համիտիյէ մզկիթին վրայ կարգ մը ծանօթութիւններ հարցուցին, զորս նոյնպէս իրենց հաղորդեցի։ Վերջապէս մեր մտերմութիւնը այնքան մեծցաւ որ ինծ հաղորդեցին թէ մտադիր էին տինամիթով և մելինիթով մահափորձ մը կատարելու, Սէլամլըգի արարողութեան միջոցին և թէ ասոր համար հարկ էր որ իրենց ծառայութիւն մը մատուցանէի։

— Ի՞նչ ծառայութիւն, հարցուց Սալիհա հանըմ, խիստ հետաքրքրուած երիտասարդին պատմութենէն։

— Մեր տեսակցութիւններուն միջոցին իրենց ըսած էի որ Եըլտըզի պալատին մէջ մեր տրամադրութեան տակ և կամ մեզի գործակից ընկերներ ունինք, որոնցմէ ընդհանրապէս շատ կարեւոր տեղեկութիւններ կը քաղենք։ Արդ, ինէ խնդրեցին որ ասոնցմէ մին իրենց հետ յարաբերութեան դնեմ։ Բնականաբար չուզեցի այդ խնդիրքը մերժել և իսկոյն մեզ ծանօթ միջոցներով կանչել տուի Եըլտըզի մեր հաւատարիմ ընկերներէն մէկը, որ իրմէ խնդրուած ծառայութիւնը ամենայն յաջողութեամբ կատարեց։ Մեր կողմէ ցոյց տրուած այս օժանդակութիւնը ա՛լ աւելի ամրացուց իրենց վստահութիւնը իմ վըրաս։ Ասոր վրայ ուրիշ ծառայութիւն մըն ալ խնդրեցին ինէ. այն է գաղտնի Սօֆիա երթալ և իրենց ընկերներէն մէկուն տալիք ծրարը հոս Պոլիս բերել...։

— Բայց ատիկա բաւական վտանգաւոր գործ մըն էր։

— Ընդհակառակը, պատասխանեց Նախկին խմբագիրը, ո՛չ թէ վտանգաւոր գործ մը՝ այլ պարզապէս հաճելի ճամբորդութիւն մը, որովհետեւ ամէն ինչ նախապէս պատրաստուած էր... այսինքն ամէնէն աւելի անհրաժեշտ եղող բանը, այն է եւրոպական անցագիր մը։ Այսպէս, իբրեւ գերմանացի հպատակ, կրցայ ազատօրէն մինչեւ Սօֆիա երթալ, ծրարը առնել, վերադառնալ և զայն իրենց յանձնել։ Ահա ճիշդ այս անակըն-

կալ ճամբորդութեան պատճառաւ, քանի մը օրէ ի վեր մէջտեղ չելայ։

— Հիմա դառնանք Ապտիւլ Համիտի դէմ պատրաստուած մահափորձին։ Կը կարծե՞ս որ կարելի պիտի ըլլայ այդ յանդուգն ձեռնարկը կատարել։

— Այդ մասին բացարձակապէս վստահ եմ, պատասխանեց Սարգ պէյ։

— Եւ կը կարծե՞ս որ պիտի յաջողին.

Անիկա չեմ կրնար ապահովել, բայց շատ յոյս ունիմ որ պիտի յաջողին։

Մէկ քանի բոպէ լռութիւն տիրեց երկու խօսակիցներուն միջև։ Սալիհա հանդարտ մտածկոտ դէմք մը առաւ և յետոյ յանկարծ ըսաւ.

— Կ'ուզեմ այդ օրը ես ալ Սէլամլըքի հանդէսին գտնուիլ։

— Ինչ կ'ըսես, գոչեց երիտասարդը սարսափահար, իր խօսակցին նայելով։

— Այո՛, կ'ուզեմ գտնուիլ և պիտի գտնուիմ, պատասխանեց Սալիհա. իրեն սովորական եղող հանդարտ՝ այլ վճռական շեշտովը։

— Բայց անկարելի՛ է ձեր ըսածը... պարզապէս ինքզինքդ մահուան դատապարտած պիտի ըլլաս։

— Ինչո՞ւ համար։

— Որովհետեւ պայթելիք պօմպան կարող է բոլոր հոն գտնուողները օդը հանել։

— Բա՛ւ է որ Ապտիւլ Համիտի հետ օդը ելլեմ։

— Սակայն չեմ հասկնար թէ ինչո՛ւ այդպիսի յիմարական գաղափար մը կ'ունենաս։

— Կ'ուզեմ որ այդ ոճրագործին ջարդուփշուր մահը աչքովս տեսնեմ։

Երիտասարդը չպատասխանեց։ Գիտէր որ երբ Սալիհա միտքը բան մը դնէր, կարելի չէր զայն իր որոշումէն հրաժա-

ընցընելը։ Տիկինը սակայն այդ լռութեամբ չգոհացաւ և ըսաւ.

— Պարտք կը դնեմ քու վրադ մահափորձին օրը ինծի իմաց տալու։

— Որո՞ւ հետ պիտի երթաս մինչեւ հոն։

— Քանի որ մահուան վտանգ կայ, առանձին պիտի երթամ։ Միայն պատուոյ խօսք տո՛ւր որ մահափորձին օրը պիտի իմացնես ինծի։

— Կը խոստանամ, պատասխանեց Սատըք պէյ։

Յետոյ աւելցուց.

— Գիտէ՞ք որ այս գաղտնիքը բացարձակապէս պէտք է մեր մէջը մնայ։ Ես ո՛չ մէկ ընկերներուս այս մասին խօսք մը ըրի և կը խնդրեմ որ դուք ալ նոյն գաղտնապահութիւնը ունենաք։

— Վստահ եղիր իմ վրաս։

Այդ օրէն ետքը, Սատըգ ուրիշ մէկ քանի անգամներ առիթ ունեցաւ Սալիհա հանըմը տեսնելու, սակայն երբեք խօսք մը չըրաւ մահափորձին վրայ ու Սալիհա հանըմն ալ զգուշացաւ այդ մասին ակնարկութիւն մը ընելու, ապահով ըլլալով որ Սատըգ պէյ իր խոստումը պիտի յարգէր։

Հինգշաբթի օր մը սակայն, 7 յուլիս 1905, Սատըգ պէյ, յուզուած դէմքով մը, եկաւ գտաւ Սալիհա հանըմը իր Շիշլիի թաքստոցին մէջ և առանց նախաբանի մէկէն ի մէկ ըսաւ.

— Վաղը մահափորձը պիտի կատարուի։

Սալիհա այս լուրը առնելով ցնցում մը ունեցաւ.

— Ինչ կ'ըսես, այսքան մօ՞տ է եղեր այս մահափորձին գործադրութիւնը, գոչեց ոտքի ելլելով, ես կը կարծէի թէ տակաւին ժամանակ ունէինք։

— Վաղը, Սէլամլըքի միջոցին, Ապտիւ Համիտ մզկիթէն դուրս ելած միջոցին, պօմպան պիտի պայթի, պատասխանեց երիտասարդը, իր բառերը հատիկ հատիկ արտասանելով։

— Ուրեմն ես ալ, վաղը, որոշեալ ժամուն հոն պիտի գտնուիմ, ըսաւ Սալիհա։

Սատըրդ տիկնոջ երեսը նայեցաւ․

— Այդ գաղափարէն չհրաժարեցա՞ք տակաւին, հարցուց մեղմ յանդիմանութեան շեշտով մը։

— Ընդհակառակը ա՛լ աւելի հաստատուած եմ տուած որոշումիս մէջ։

— Բայց գիտէ՞ք որ պօմպան 120 քիլօ մէնէլիթ կը պարունակէ և կրնայ ամբողջ շրջակայքը, քանի մը հարիւր մեթր տարածութեամբ մաքրել։

— Բա՛ւ է որ Համիտն ալ միասին մաքրուի․

— Եւ ի՞նչ միջոց խորհած էք երթալու համար։

— Շատ պարզ միջոց մը․ իբրև եւրոպացի զբօսաշրջիկ կին մը պիտի ծպտուիմ, և կառք մը բռնելով, պիտի երթամ կենամ կառքերու յատկացուած տեղը․

— Այսինքն ճիշդ այն տեղը ուր պօմպան պիտի պայթի, որովհետև պօմպան ալ կառքով մը պիտի փոխադրուի հոն։

— Թո՛ղ այդպէս ըլլայ։

— Կ՚ուզէք ուրեմն ինքզինքնիդ անխուսափելի մահուան մը դատապարտել։

— Ինչո՞ւ չէ․․․ միթէ չա՞րժեր աւիկա, երբ միեւնոյն ատեն պիտի կրնամ գոնէ բոպէ մը նշմարել ամէնէն ատելի բռնաւորին մահը։

Երիտասարդը չկրցաւ պատասխան մը գտնել և լռեց։ Յետոյ, յանկարծ, մտքին մէջ լուսաւոր գաղափար մը եկածի պէս գոչեց․

Ենթադրենք որ ձեր կեանքին տէրը դուք ըլլաք և իրաւունք ունենաք ձեր ուզածին պէս զայն զոհելու, բայց միեւնոյն ատեն իրաւունք չունիք ձեզի հետ ուրիշներ ալ մահուան վտանգին ենթարկելու։

— Ուրիշ չի կայ, քանի որ ես առանձին պիտի երթամ։

— Հապա կառապա՞նը․․․

Այս անգամ Սալիհան էր որ յանկարծ շփոթեցաւ և չկրցաւ

խնկոյն պատասխանել. Երիտասարդը օգուտ քաղելով անոր վրդովումէն, խօսքը առաջ տարաւ.

— Դուք պատճառ պիտի ըլլաք որ խեղճ մարդ մը, մէկ քանի մեճիտիէ վաստկելու յոյսով չարաչար սպաննուի անգիտակցաբար, ձեր մէկ քմահաճոյքին զոհուելով, մարդ մը որ գուցէ ընտանիքի և զաւակներու տէր է... ասիկա միթէ ոճիր մը չէ՞. ձեր խիղճը կրնա՞յ հանդարտութեամբ այդ բանը ընել,

Սալիհա հանըմ իրաւցնէ խղճի տագնապ մը ունեցաւ. Երիտասարդին ըսածը ճշմարիտ էր. ինք իրաւունք չունէր իր քմահաճոյքին համար անմեղ մը զոհելու։

— Ուրեմն, թոթովեց, առքով կ'երթամ...։

— Ուրբաթ օր մը, Սէլամլըքի արարողութեան առքո՛վ երթալ... բայց արդէն Պէշիքթաշ առքդ գնելուդ կը ձերբակալուիս։

— Ի՞նչ կ'ուզես որ ընեմ։

— Հրաժարէ՛ այդ որոշումէդ։

— Անկարելի է... կ'ուզեմ որ պոմպան պայթած միջոցին հո՛ն գտնուիմ։

— Լա՛ւ, այն ատեն քեզի կառապան մը պիտի գտնամ որ յանձն պիտի առնէ գիտակցաբար քեզի հետ մեռնելու և դուն ալ խղճահարութենէ կ'ազատիս։

Սալիհա զարմացական ակնարկ մը ուղղեց երիտասարդին և ըսաւ.

— Չե՛մ հասկնար թէ ի՛նչ ըսել կ'ուզես։

— Ըսել կ'ուզեմ թէ կառավարը որ քեզի պիտի առաջնորդէ, տեղեակ պիտի ըլլայ մահափորձին, և հետևաբար իր կամքովը և յօժարութեամբը պիտի ենթարկուի մահուան։

— Բայց ո՞վ է այդ կառապանը,

— Ե՛ս, պատասխանեց երիտասարդը։

Սալիհա թեթև մը ժպտեցաւ և ըսաւ.

— Կը հասկնամ քու միտքդ, բայց այդպիսի անձնուի-

րութիւն մը չեմ կրնար ընդունիլ, որոնց շնորհակալ ըլլալով հանդերձ։

— Եւ ես չեմ կրնար հաւանիլ որ ուրիշ կերպով Սէլամլըքի արարողութեան երթաս։

Սատրգ պէյ այնպիսի հաստատ շեշտով մը արտասանած էր այս վերջին խօսքերը որ Սալիհա հանըմ մէկէն լուրջ դէմք մը առաւ եւ ըսաւ.

— Ուրեմն կատակ չէ՞ս ըներ։

— Բնաւ երբեք. Եւ արդէն կառքն ալ պատրաստած եմ ու ամէն բան կարգադրած, այնպէս որ մերժումի տեղի չի կայ եւ սա եւս ըսեմ որ այն պարագային ուր ընդդիմանաս առաջարկութեանս, ես առանձինն պիտի երթամ եւ գիտես որ երբ որոշում մը տամ ես ալ գրեթէ քեզի չափ հաստատամիտ եմ։

— Այն ատեն կ'ընդունիմ առաջարկդ, պատասխանեց Սալիհա ձեռքը երիտասարդին երկարելով:

Հետեւեալ առտու, ուրբաթ, կէսօրէն ժամ մը առաջ, Շիշլիի տան առջեւ կառք մը կանգ կ'առնէր, երկու ձիով մաքուր գոց կառք մը. որուն կառապանը, կատարելապէս ծպտուած մեր Սատրգ պէյն էր։

Քիչ ետքը, Սալիհա հանըմ, զբօսաշրջիկ Եւրոպացի կնոջ տարազով, երեւցաւ պարտէզի դրան առջեւ։

Սատրգ պէյ, որ ոտքի կեցած էր, փութաց կառքին դռնակը բանալու եւ զայն ներս հրմցնելու։

— Կարծեմ երկուքս ալ անճանաչելի ենք այս հագուստներով. ըսաւ երիտասարդը իր ընկերուհիին կառքին դռնակը գոցելով։

— Այո՛, լաւ ծպտուած, կը դիմենք մահուան, պատասխանեց Սալիհա։

Կառքը ճամբայ ելաւ. բայց որովհետեւ տակաւին կանուխ էր՝ Սատրգ Բերայի ճամբան բռնեց, Ղալաթիոյ կողմէն Պէշիքթաշ երթալու համար։ Իր նպատակն էր Բեբա Բալէսի առ-

ջուէն անցնելու և եթէ կարելի էր Սէլամլըքի արարողութիւնը
տեսնելու գացող զբօսաշրջիկներու կառքերուն խառնուելու,
որպէսզի ուշադրութիւն չգրաւէ։

Բարեբախտաբար իր նպատակին հասաւ. ճիշդ օթէլին առ-
ջև հասած միջոցին տեսաւ որ մէկ քանի Անգղիացիներ կառ-
քերը կը նստէին մեկնելու համար. իսկոյն գնացքը դանդաղե-
ցուց և յաջողեցաւ անոնց հետ խառնուելու և այսպէս հասաւ
Եըլտըզի ղառիվնըր, որուն ամբողջ երկայնքը զինուորներով
ծածկուած էր։

Քիչ մը ուշ մնացած ըլլալով, բաւական ետևները մնա-
ցին, այսուհանդերձ իրենց կեցած տեղէն Եըլտըզի պարտէզը և
Համիտիէ մզկիթը որոշապէս կը տեսնուէին։

Շատ օտարական կիներ, իրենց դիտակներով զինուած,
ելած էին կառապաններու սահմանուած տեղը նստելու, որպէս
զի աւելի աղէկ դիտեն տեսարանը։ Սալիհա հանըմ ինքն ալ
անոնց օրինակին հետեւեցաւ և ելաւ բազմեցաւ Սառըզի քով
փոքրիկ դիտակ մը ձեռքը բռնած.

Ցանկարծ իրարանցում մը տեղի ունեցաւ ձիաւոր զինուո-
րականներուն և թիկնապահներուն մէջ։

Ապտիւլ Համիտ Եըլտըզի պարտէզէն դուրս ելած էր կառ
քով և կը յառաջանար դէպի մզկիթ։

— Փատիշահըմ չօգ եաշա՛, աղաղակը թնդացուց օդը։

Սալիհա յուզումէն երիտասա՛րդին ձեռքը բռնեց և սկսաւ
ուժգին սեղմել։

Ապտիւլ համիտ այդ օրը գոհ և զուարթ դէմք մը ունէր,
որ հակապատկեր մը կը կազմէր իր սովորական մռայլ ու չա-
րաչուք կերպարանքին հետ։ Կառքին մէջ բազմած էր հան-
դարտ ու անձնդիւր և ձեռքի թեթեւ շարժումով մը կը պա-
տասխանէր իրենց ուղղուած պայմանադրական կէցցէներուն։
Բռնաւորին այս գոհունակութիւնը առանց պատճառի չէր։ Քա-
նի մը օրէ ի վեր աղէկ լուրեր ստացած էր ամէն կողմէ։ Եէ-
մէնի մէջ ծագած ապստամբութիւնը կարելի եղած էր նուա-

ճել և Թերթերը ծանուցած էին թէ՝ «Օգոստափառ վեհապետը Իր կայսերական զինուորական հզօր զօրութենէն պէտք եղածին չափ զինուորներ ղրկած էր պատժելու և նուաճելու այն «չարագործներ»ը, որ ժամանակէ մը ի վեր Եէմէնի կողմերը երեւան ելած էին և որոնք, հակառակ աստուածային հրամաններու, Վեհափառ Սուլթան Ապտիւլ Համիտ Բ.ի դէմ ապըստամբութեան ձեռնարկած էին»։ Թերթերը իրենց պատմութիւնը առաջ տանելով կը պատմէին թէ՝ «Շնորհիւ Սուլթանին Եէմէնի մէջ անդորրութիւնը և ապահովութիւն ամէն կողմ հաստատուած էր»։

Միւշիւր Շաքիր փաշա, որ Մէնախա կը գտնուէր, տեղեկագըրած իր թէ յուլիս 2ին միւշիր Ահմէտ Ֆէյզի փաշայի հրամանատարութեան տակ գտնուած զինուորական զօրութիւնը մեծ յաջողութիւն ձեռք բերած և յաղթանակը տարած էր։

Ապստամբները ամէն կողմ պարտուած էին և ի վերջոյ «Կեցցէ՛ Վեհափառ Սուլթանը» գոչելով հնազանդութիւն յայտնած էին։ Այդ պաշտօնական տեղեկութիւնը կ՚աւարտէր սա խօսքերով. «Բարձեալն Աստուած երկար ու բարեբաստիկ կեանք և ամէն գործի մէջ կատարեալ յաջողութիւն շնորհէ մեր Օգոստափառ Վեհապետին»։

Բայց միայն Եէմէնի նուաճումը չէ որ զուարթ տրամադրութեան մէջ դրած էր չարաչուք բռնաւորը։ Արաբներու ապստամբութիւնը այնքան չէր շահագրգռեր զինքը որքան Պոլսոյ մէջ եղածները, իր դէմ եղած դաւադրութիւնները. Եւ ահա՛ ճիշդ այս մասին ալ յաջող լուրեր առած էր։ Իր «ճուռնալճի»ները կը ծանուցանէին թէ բոլոր յեղափոխականները խոյս տուած՝ էին Պոլսէն, թէ ո՛չ ոք մնացած էր այժմ մայրաքաղաքին մէջ և թէ Նորին Վեհափառութիւնը կրնար հանգիստ ըլլալ. Բայց այս լաւատես տեղեկութիւնները տալէ ետքը, չէին մոռցած յիշեցնել որ այդ մաքրագործումը իրենց աչալուրջ հսկողութեան արդիւնքն էր և հարկ էր ամէն վայրկեան այդ հսկողութիւնը շարունակել որպէս զի Նորին Վեհա-

փառութեան թշնամիները չհամարձակէին կրկին անգորրութիւնը վրդովել։

Ապտիւլ Համիտ իր ստացած «ճուռնալ»ներէն այնքան գոհ մնացած էր որ հրամայած էր անոնց հեղինակներուն մէյմէկ դրամական նուէր ընելու։

Սալիհա հանըմ, իր դիտակին շնորհիւ, կառքին գահաւորակէն տեսաւ Ապտիւլ Համիտի գոհունակ դէմքը և ըսաւ Սաբրիի.

— Զարմանալի՛ բան, սովորականէն տարբեր զուարթ դէմք մը ունի այսօր գազանը։

— Կ'երեւայ որ ուրախ է անոր համար որ քիչ մը ետքը աշխարհք պիտի ազատի սարսափելի հրէշի մը ձեռքէն, պատասխանեց երիտասարդը։

Սուլթանական կառքը արդէն անցած ու մզկիթին մօտեցած էր։ Սալիհա հանըմ տեսաւ անոր յամրաքայլ մզկիթէն ներս մտնելը։

Քանի անհնլի վայրկեանը կը մօտենար, այնքան կ'աւելնար անոր յուզումը։ Աչքերնին չեչտակի ուղղած մզկիթին, կը սպասէին ճակատագրական վայրկեանին։

— Արդեօք ռումբը բերուա՞ծ է արդէն. հարցուց Սալիհա դողահար ձայնով մը։

— Անշուշտ բերուած ըլլալու է, պատասխանեց երիտասարդ յեղափոխականը որուն ձայնը նոյնպէս կը դողդղար։

— Բայց գուցէ վերջին վայրկեանին արգելքի մը հանդիպեցան։

— Իմ ճանչցած մարդիկս ո և է արգելքի առջեւ կանգ չեն առներ, պատասխանեց նախկին խմբագիրը վստահ ձայնով մը, ռումբը պիտի պայթի, ասոր կասկած չի կայ։

Երկուքն ալ լռեցին ու անձկութեամբ իրարու նայեցան։ Երկուքին ակնարկին մէջ սակայն տարբեր արտայայտութիւնթիւններ կային, մինչ Սալիհա հանըմ կամքի կորովով մը կատարեալ հանդարտութիւն ցոյց կուտար իր նայուածքին մէջ.

երիտասարդը կարծես վտանգին մերձենալու պահուն կարող չէր իր անձին իշխելու և տեսակ մը արհաւիրք նկարուած էր իր աչքերուն մէջ։

Վայրկեան մը չկրցաւ զսպել ինքզինքը և ըսաւ.

Սալիհա հանըմ, տակաւին ժամանակ կայ, կրնանք կառքերնիս քշել ու հեռանալ երթալ, գուցէ ասով լաւագոյն ծառայութիւն մը մատուցած կ'ըլլանք մեր հայրենիքին։

— Իրաւունք ունիս, պատասխանեց Սալիհա, դուն տակաւին երիտասարդ ես ու կրնաս շատ բաներ ընել, շուտով հեռացի՛ր, իսկ ես արդէն ձեռքէս եկած ծառայութիւնը ըրած եմ, հետեւաբար հոս կը մնամ....

Երիտասարդը ամօթահար՝ գլուխը ծռեց և նուաղուն ձայնով մը պատասխանեց.

— Չէ՛, ես ալ քեզի հետ պիտի մնամ, կը ցաւիմ որ իմ խօսքերուս իմաստը սխալ ըմբռնեցիր, ես ինէ աւելի քու վրադ մտածելով խօսեցայ։

Նոյն րոպէին մզկիթին կողմը իրարանցում մը առաջ եկաւ. Սուլթանական կառքը, որ քիչ մը հեռուն կեցած էր, մօտեցաւ մարմարեայ սանդուխներուն, ուրկէ վար պիտի իջնէր բռնաւորը։

Ցանկարծ մզկիթի դրան մէջ երեւցաւ Աբտիւլ Համիտ, բայց փոխանակ քայլերը առաջ վարելու՝ կանգ առաւ և ետին դառնալով՝ սկսաւ խօսակցիլ Շէյխ իւլ Իսլամին հետ որ անմիջապէս իրեն ետեւէն կուգար։

Այս միջոցին ահեղ պայթում մը օդը թնդացուց. միեւնոյն ատեն փոշիախառն թանձր մուխ մը ամէն բան ծածկեց և մարդկային սարսափահար աղաղակներ բարձրացան...։

Սարըզ պէյի կառքին ձիերը խրտչելով՝ սկսան արշաւել Եըլտըզի օձապտոյտ զառի վայրէն վար, մինչ երիտասարդը շուարած՝ կը ջանար սանձերը ձեռք առնել։ Սալիհա հանըմ, պնդօրէն պլլուած գահաւորակին, գերմարդկային ջանքեր կ'ըներ՝ կառքէն վար չգլտորելու համար։ Ձիերուն խելայեղ վազ-

տասը վայրկեանի չափ տեւեց․ Վերջապէս երիտասարդը յաջողեցաւ սանձերը ձեռք առնել և կառքը կեցնել։

Յաջողեցա՞ն արդեօք…

Այս եղաւ Սալիհայի առաջին խօսքերը։

Այդ հարցումը սակայն անպատասխանի մնաց․ Սատըք պէյ առանց բառ մը արտասանելու կառքէն վար ցատքեց և դըռնակը բացաւ․ յետոյ օգնեց Սալիհա հանըմին գահաւորակէն վար իջնելու և զայն կառքին մէջ բազմեցնելով, իսկոյն ճամբայ ելաւ դէպ ի Տօլմա Պահչէ։

— Բարեբախտաբար քիչ մը ուշ երթալնուս համար ստիպուեցանք հեռուն կենալ, եթէ ո՛չ մենք ալ օդը ելած էինք, մտածեց ինքնիրեն։

Արդարեւ պօմպայակիր կառքին մօտերը գտնուող բոլոր կառքերը ջարդ ու փշուր եղած էին, մէջերնին եղող անձերով միասին։

---

## ԳԼՈՒԽ Ը.

## ԱՊՏԻԼ ՀԱՄԻՏ ՈՒԺԱՍՊԱՌ

Այս յանդուգն մահափորձը ընդհանուր սարսուռ ու պակուցում յառաջ բերած էր բովանդակ Կ. Պոլսոյ մէջ։

Ուրբաթ իրիկուն ամէն մարդ այս դէպքին վրայ կը խօսէր ականջէ ականջ։ Տակաւին ոչ ոք որոշ բան մը գիտէր, հետեւաբար ամեն տեսակ մեկնութիւններ կը տրուէին։

Որո՞նց կողմէ եղած էր մահափորձը․ այս անգամ գաղտնիք կը մնար։ Ոմանք Ժէօն Թիւրքերուն կը վերագրէին զայն ոմանք պուլկար յեղափոխականներու, ուրիշներ Մակեդոնիացիներու կամ Կրետացիներու, և ոմանք ալ Հայերու, սակայն ստոյգ բան մը գիտցող չի կար։

Ամէնքն ալ անհամբեր կը սպասէին հետեւեալ առտուան թերթերուն, տեսնելու համար թէ ի՞նչ գրուած էր այդ մասին։

Եւ սակայն, հակառակ այդ անհամբեր սպասումին, չաքաթ առաւուան թերթերն ալ գոհացուցիչ տեղեկութիւն մը չէին տար։

Նախ սովորական բանաձեւով կը ծանուցուէր թէ Վեհափառ Սուլթանը փառաւոր հանդէսով գացած էր Համիտիէ մզկիթը, ուր ուրբաթի աղօթքը կատարելէ ետքը դարձած էր պալատ։

Յետոյ պաշտօնական զեկուցում մը կ'ըսէր թէ Սէլամլըքի արարողութենէն ետքը, երբ Վեհ. Կայսրը գիտի վերադառնար մզկիթին բակէն և պողոտայէն անդին, կայսերական հեծելազօրաց գտնուած տեղին ետեւի կողմը, հիւրերու կառքերուն կեցած տեղը, և մզկիթին աւելի քան 100 մէդր հեռու, պայթում մը տեղի ունեցած էր, և ամէնուն ճշմարիտ պահապանը Աստուած իր երկնային խնամքովը պահպանուած էր Վեհափառ Կայսրը։

Պաշտօնական զեկուցումը կ'աւելցնէր թէ Ապտիւլ Համիտ այս դէպքին միջոցին մեծ կորով ցոյց տալով, առանց անձապարանքի, ըստ սովորութեան, նստաւ իր փառաւոր կառքին մէջ, և բարեւի կեցող իր կայսերական զօրքերը ինչպէս նաև Աւստրիոյ կայսեր կողմէ յատուկ պաշտօնով հիւրանոցը գտնըւող աւստրիական դեսպանը և Սէլամլըքի արարողութիւնը տեսնելու համար ներկայ գտնուող տեղացի և օտարազգի անձնաւորութիւնները իր կայսերական բարեւներուն արժանացնելէ ետքը, ընդհանուրին կողմէ արտայայտուած խանդավառութեան մէջ, կայսերական պալատ վերադարձաւ։

Զեկուցումը ի վերջոյ կը յայտնէր թէ այս պայթումի ոճրին վատ հեղինակը կը փնտռուի, որուն նկատմամբ պէտք եղած միջոցները ձեռք առնուած են։

Այս պաշտօնական զեկուցումին կը յաջորդէր Աստուծոյ ուղղուած գոհաբանութիւն մը։ Այդ գոհաբանութեան մէջ կը

ըսուէր թէ այդ տեսակ ոճիրներու հեղինակը մարդկային ամէնէն ստորին էակն է, թէ գազաններէն աւելի վայրագ, գիշատիչ անասուններէն աւելի արիւնարբու արարած մըն է, ևն.: Յետոյ նորէն կը շեշտուէր թէ Սուլթանը, դէպքին ատեն, հիանալի կորով մը և քաջասրտութիւն մը ցոյց տուած էր, առանց շփոթելու և թէ ներկայ եղողները հիացած էին Սուլթանին ցոյց տուած կորովասրտութեան և արիասրտութեան վրայ:

Օր մը ետքը թերթերը կրկին խօսելով այդ մահափորձին վրայ դարձեալ կը ծանրանային դէպքին միջոցին Ապտիւ Համիտի ցոյց տուած մտքի մեծ արթնութեան և կորովին վրայ և իր բերանը կը դնէին սա խօսքերը զորս իբր թէ արտասանած էր, պայթումի միջոցին իր շուրջը գտնուողներուն:

— Ամենակարողին շնորհիւ մենք աստուածային պահպանութեան տակ կը գտնուինք: Դուք հասկցէք թէ զինուորներէն և ժողովուրդէն մէկու մը վնաս պատահա՞ծ է թէ ո՛չ:

Այս պաշտօնական տեղեկութիւնները կ'աւելցնէր նաև թէ Սուլթանը կառք նստած միջոցին ալ ըսած է.

— Իրարանցում տեղի չունենայ. համախմբումին մէջ մարդ չվնասուի:

Վերջապէս օրերով թերթերը խօսեցան Սուլթանին ցոյց տուած քաջութեան և անվախութեան մասին: Նոյնիսկ այս մտքով հեռագիրներ ուղղուեցան եւրոպական թերթերու: Եւ սակայն այդ ենթադրական քաջութիւնը բացարձակ առասպել մըն էր:

Պայթումի միջոցին Ապտիւլ Համիտ վախէն գրեթէ նուաղած էր և հազիւ կրցեր էին խելքը գլուխը բերել և զինքը Երլտըզ փոխադրել: Հոն հասնելուն՝ բռնաւորը խօսելու անկարող վիճակի մը մէջ երկնցուցած էին թիկնաթոռի մը վրայ և իսկոյն բժշկական խնամքներու դիմած՝ զինքը այդ պակուցումի և ահաբեկումի վիճակէն ազատելու համար:

Պայթումը տեղի ունեցալէն անմիջապէս ետքը, տիրած խառնաշփոթութեան և սարսափին մէջ, չէին կրցած աղէտքին ծանրութեանը վրայ գաղափար մը կազմել։ Բայց հիմա հետզհետէ նորանոր ու մանրամասն տեղեկութիւններ կը հասնէին։ Պայթումին տեղը խոշոր փոս մը ձեւացած էր. իսկ այդ փոսին շուրջ լերկ հողը կը տարածուէր խոշոր շրջագծով մը։ Այդ շրջագծին մէջ ո՛չ մարդկային դիակ, ո՛չ կառքի բեկոր, ո՛չ ալ ո և է առարկայի կտոր կ'երեւար։ Մէնէլիթը ամէն ինչ փոշիացուցած, ոչնչացուցած էր իր շուրջը առանց ամենափոքր հետք մը թողելու, որմէ կարելի ըլլար հետեւութիւն մը հանել, նշան մը գտնել։ Իսկ անդին, ընդարձակ տարածութեան մը վրայ, խառն ի խուռն կ'երեւային մարդոց և ձիերու դիակներ և կառքերու բեկորներ, ահռելի տեսարան մը պարզելով։ Վերի վերոյ հաշուէ մը կ'երեւար թէ 400ի չափ մարդիկ մեռած և ութսունի չափ կառքեր ջախջախուած էին, թէև այդ թիւէն շատ աւելի նուազ թիւ մը հաղորդուած էր պաշտօնական զեկուցումներուն մէջ։ Զոհերուն մեծ մասը բարձր կեցող զինուորներ էին, որոնք այսպէս զոհ կ'երթային իրենց պարտականութեան։

Մինչև առաւօտ դատաւորները, միացեալ կերպով գումարուած, հարցափորձեցին բոլոր անոնք որոնք ականատես վկաները եղած էին պայթումին։ Նոյնիսկ վիրաւորեալները գացին հարցաքննելու իրենց անկողիններուն կամ պատգարակներուն մէջ։

Եւ սակայն բոլոր այս մանրազնին հարցաքննութիւններէն լոյս մը չծագեցաւ, ամէնքն ալ գրեթէ միօրինակ կերպով պատասխանեցին.

— Կեցած կը դիտէինք, երբ յանկարծ ահագին պայթում մը լսուեցաւ ու յետոյ խոշոր մուխ մը բարձրացաւ. ահա մեր գիտցածը։

Եթէ միայն կարելի ըլլար գուշակել թէ յեղափոխական ո՞ր կազմակերպութեան ձեռքով կատարուած էր մահափորձը,

գուցէ կարենային որոշ ուղղութեամբ մը ընթանալ իրենց քըննութիւններուն մէջ։ Բայց այս մասին ալ բոլորովին տարտամութեան մէջ էին։

Ոմանք զայն կը վերագրէին Թուրք յեղափոխականներու, ուրիշներ՝ Հայերուն, ուրիշներ պուլկար կամ մակեդոնացի յեղափոխականներուն, ոմանք Կրետացիներուն և ոմանք ալ եւրոպայի անիշխանականներու։

Ընդհանրապէս այս վերջին կարծիքը հաւանական կը համարուէր։

Մահափորձէն քանի մը օր ետքը «Տափաք» թերթը հետեւեալը կը գրէր, զոր յատկապէս Եըլտըզի պալատէն տուն տուած էին.

«Եւրոպայի դիւանագիտական շրջանակներուն մէջ տիրող կարծիքին նայելով, ոճրագործին համար կ՚ըսուի թէ անկարելի է որ իսլամ եղած ըլլայ. նաև թէ ամէն պարագայի մէջ օսմանեան երկիրներու ժողովուրդներէն ալ չէ, այլ մէկը այն անարշիսթներէն որոնք աշխարհի ամէն կողմը նողկանք կ՚ազդեն և խիստ հալածումներու ենթարկուած են։»

Մահափորձին հեղինակը կամ հեղինակները գտնելու համար եղած բոլոր խուզարկութիւնները այսպէս ապարդիւն կը մնային։

Քննութիւններուն այս անյաջողութիւնները սոսկալի կատաղութեան մը մատնած էր Ապտիւլ Համիտը որ առտուընէ մինչև իրիկուն իր պալատականներուն և մանաւանդ Իզզէթ փաշայի գլխին կը տեղար իր բարկութեան շանթերը։ Այս վերջինը, ինչպէս ըսինք, հանդիսաւորապէս երդում ըրած էր ոճրագործը գտնելու, սակայն իր բոլոր ջանքերը ամլութեան մատնուած էին։

Խորամանկ Սուրիացին իր օձիքը ազատելու համար, Կ. Պոլսէն սա տեսակ հեռագիր մը հրատարակել տուած էր գերմանական «Ֆօսիշէ Զայթունկ» թերթին մէջ, յուլիս 24 թըւականով.

«Ցաւալի միջադէպին ներկայ գտնուող քանի մը անձեր

տեսեր են թէ օճրագործական պայթումին հետ անոր հեղինակը եղող անիծեալ անձը մեռած և այդ կերպով գտած է իր արժանի պատիժը:«

Այս խաղը սակայն չյաջողեցաւ և եթէ ժողովուրդը հաւատաց ատոր, Աբտիւլ Համիտ բնաւ չհամոզուեցաւ ու չհանդարտեցաւ, մանաւանդ որ ինք բացարձակապէս միտքը դրած էր որ մահափորձը անհատական գործ մը չէր, այլ յեղափոխական կուսակցութիւններու գործը։

Ա՛լ բոլորովին իր հանգիստը կորսնցուցած էր պալատին մէջ։ Գիշերները մասնաւանդ գրեթէ բնաւ չէր քնանար և մինև առտու անքուն կը հսկէր իր հաւատարիմներով շրջապատուած։ Ջղային դրութիւնը այնքա՜ն խանգարուած էր որ յաճախ արթնութեան մէջ կը զառանցէր և կ'երեւակայէր որ ամբողջ պալատը տինամիթով օդը կը հանէին։ Այս պարագաներուն՝ խենթի պէս կը սկսէր վազվզել մէկ սրահէն միւսը, սարսափահար աղաղակներ արձակելով։ Յետոյ կը սկսէր զիրար հակասող այլանդակ հրամաններ արձակել և երբեմն ալ նոյնիսկ իր պալատականներուն վրայ յարձակիլ ու զանոնք ծեծել կամ ապտակել։

Թէև Երլտըզի մէջ խիստ գաղտնի կը պահէին այս արարքները, և սակայն լուրը կամաց կամաց տարածուեցաւ և մինչև օտար դեսպանատուները հասաւ։

— Աբտիւլ Համիտի խելքին եկած է....։

Այս էր տարածուած լուրը։ Դեսպանները նոյնիսկ դիմում ըրին նախարարներուն և այս մասին տեղեկութիւն մը պահանջեցին։ Խնդիրը ծանրակշիռ հանգամանք մը կը ստանար։ Մեծ Եպարքոսը օգուտ քաղելով Աբտիւլ Համիտի մէկ հանդարտ առենէն, որովհետև այդ ջղային տագնապները շարունակական չէին, յայտնեց իրեն որ անհրաժեշտ էր այս տարաձայնութիւններ բացարձակ կերպով հերքել։

Ասոր վրայ, մահափորձին յաջորդ ուրբաթ օրը, Սէլամլըքի արարողութենէն ետքը, օտար տէրութիւններու բոլոր

դեսպանները և դեսպանատուններու գործակատարները և նոյնիսկ պապական նուիրակ Մօնսէնեօր Թաչչի Փօրչէլլի, արարողապետ Իպրահիմ փաշայի առաջնորդութեամբ. Ապտիւլ Համիտի ներկայացան, որպէսզի իրենց աչքովը համոզուին տարածուած լուրերուն սուտ ըլլալուն։

Եւ սակայն դեսպանները նկատեցին որ Սուլթանը անհուելի կերպով աւերեալ դէմք մը ունէր միշտ սոսկումով համակուած կը թուէր, հակառակ հանդարտ երեւնալու համար իր ըրած բուռն ջանքերուն։

Բանաւորը ա՛լ անժամապահ կ'ըլլար։

---

## ԳԼՈՒԽ Թ.

## ՆՈՐ ՄԱՀԱՓՈՐՁ

Սալիհա հանըմ երբ Սաթըք պէյի առաջնորդութեամբ իր Շիշլիի թաքստոցը հասաւ, յուզումէն ու յոգնութենէն բոլորովին վաստակաբեկ եղած էր։

Թիկնաթոռի մը վրայ ինկաւ և բաւական ժամանակ հո՛ն մնաց թմրած վիճակի մէջ։ Գուցէ տակաւին երկար ատեն այդպէս պիտի մնար, եթէ սպասուհին չի գար ծանուցանելու թէ տանը ծանօթ հիւրերէն մէկը, Սաթըգ պէյը, եկած էր զինքը տեսնելու։

Արդարեւ երիտասարդ յեղափոխականը իր կառքը տեղը յանձնելէ ու կառապանի հագուստները վրայէն հանելէ ետքը, եկած էր իր բարեկամուհին տեսնելու։

— Ի՞նչ լուր, Սաթըգ, ըսաւ Սալիհա հանըմ խօսքը երիտասարդին ուղղելով, տխուր կերպարանք մը ունիս...։

— Ինչպէ՛ս տխուր չըլլամ, պատասխանեց նախկին խմբագիրը, մեր բոլոր յոյսերը օդը ցնդեցան։

— Ինչո՞ւ համար...։

— Որովհետեւ սատանան նորէն պաշտպանեց այդ հրէշ բանաւորը։

Սալիհա հանըմ յանկարծ նստած տեղէն ոտքի ելաւ։

— Ինչպէս սատանան պաշտպանեց, գոչեց։

— Ափսո՜ս, շարունակեց երիտասարդը, հարիւրաւոր մարդիկ զո՛հ գացին եւ իր մազին մէկ թելը չէ վնասուած...։

— Բայց ուրկէ՞ իմացար այս մանրամասնութիւնները։

— Բո՛ւն իսկ հոն գտնուող մէկէ մը, որ ներկայ է եղեր երբոր մահափորձէն ետքը Աբտիւլ Համիտ վերադարձեր է Եըլտըզ, բաց կառքով մը եւ ձիերն ալ ինք վարելով...։

— Եթէ որ այդպէս է՛ պատասխանեց Սալիհա հանըմ իրեն սովորական եղող պաղարիւն կերպովը, այն ատեն նոր մահափորձ մը կը պատրաստուի։

— Եւ ո՞վ պիտի պատրաստէ այդպիսի մահափորձ մը։

— Մենք.

Սաիտ պէյ թերահաւատ ակնարկ մը ուղղեց իր խօսակցին։

— Ինչո՞ւ այդպիսի կասկածանքով մը կը նայիս ըրած խօսքերուս, ըսաւ Սալիհա հանըմ. միթէ մենք ալ մեր հայ եղբայրներուն չափ տառապած չե՞նք Համիտի բռնակալութենէն, միթէ մենք ալ պատրաստ չե՞նք ամէն գին տալու յանդգնութիւնը ունենալու...։

— Անշուշտ պատրաստ ենք, պատասխանեց երիտասարդը, բայց ի՞նչպէս պիտի կրնանք մեր այս պատրաստակամութիւնը կատարել ներկայ վիճակին մէջ, երբ մեր կազմակերպութիւնը գրեթէ կազմալուծուած վիճակ մը ունի Կ. Պոլսոյ մէջ երբ մեր ամենէն քաջ ու յանդուգն ընկերները ստիպուած են ձգել հեռանալու, երբ ուրիշներ բանտերը կամ աքսորի մէջ կը գտնուին եւ երբ հոս եղողներն ալ չեն կրնար նոյնիսկ փողոց ելլել...։

— Ատոնք բոլոր պարապ խօսքեր են, պատասխանեց

Սալիհա հանըմ, մինչ մեր հայ յեղափոխական եղբայրները նուա՞զ հալածուած են, այսուհանդերձ ահաւասիկ կրցան այսպիսի յանդուգն մահափորձ մը կատարել և ենթէ իրենց սպասուած արդիւնքը չտուաւ, անիկա պարզապէս դիպուածի արդիւնք էր։ Բայց է որ մարդ զօրաւոր կերպով միտքը դնէ բան մը ընել, կրնայ ամէն դժուարութիւններու և արգելքներու յաղթել։

Սալիհա հանըմ այս խօսքերը թեթևօրէն չէր որ կ'արտասանէր. այն օրէն ի վեր Սաթըգ իրեն գաղտնաբար հաղորդած էր որ Հայ Յեղափոխականները մահափորձ մը կը պատրաստէին Աբտիւլ Համիտի դէմ, ինքն ալ գաղափարը յղացած էր նոյն փորձը վերսկսելու ենթէ առաջինը ապարդիւն ըլլար։ Եւ այս մասին նոյնիսկ ծրագիր մը պատրաստած էր իր մտքին մէջ որուն վրայ կը մտածէր շարունակ։ Ռօմպայի փորձին անյաջողութեան լուրը առնելուն պէս, այդ ծրագիրը սեւեռուն գաղափար մը դարձաւ իսկոյն։

Սաթըգ պէյ հասկցաւ որ տիկինը շատ լրջութեամբ կը խօսէր նոր մահափորձի մը մասին, ուստի ինքն ալ լեզուն փոխեց.

— Անշուշտ, քոյրս, պէտք է որ մենք ալ ջանանք այդպիսի փորձ մը ընելու, որովհետև ամէնքս ալ բացարձակ կերպով համոզուած ենք թէ որչափ ատեն որ Աբտիւլ Համիտ գահին վրայ մնայ, կարելի չէ բան մը յուսալ։ Եւ ենթէ սպասենք որ բնական մահուամբ մը այդ բռնաւորը վերնայ մէջտեղէն՝ այն ատենն ալ գուցէ դեռ շատ սպասելիք պիտի ըլլանք, մինչ օրէ օր, մեր թշուառ հայրենիքը հսկայաքայլ դէպի կորստեան անդունդը կը դիմէ։

— Ուրախ եմ որ շուտով համոզուեցար իմ բառերուս... հիմա կը մնայ խնդիրը պարզել մեր միւս ընկերներուն և իսկոյն գործի սկսիլ։

— Բայց արդէն այս մասին ծրագիր մը ունի՞նք։

— Գիտես որ սովորութիւն չունիմ այսպիսի ծանրակշիռ

խնդիրներու մասին թեթեւօրէն խօսելու, պատասխանեց Սալինա հանըմ. քանի որ նոր մահափորձի մը խօսք ըրի ըսել է որ մտքիս մէջ լըջօրէն ծրագրուած խորհուրդ մը ունիմ։

— Կեցցե՛ս ուրեմն գոչեց Սաադէ պէյ խանդավառուած, և եթէ պէտք ըլլայ խորհուրդդ իրագործելու համար կեանքըս զոհել, այժմէն պատուոյս վրայ կ'երդնում որ պատրաստ եմ զայն զոհելու։

— Այդքան մի՛ աճապարեր և շուտով մի բռնկիր. ըսաւ Սալինա ժպտելով, եթէ իմ մտածած ծրագիրս կարենանք գործադրել, գուցէ պիտի կրնանք զայն յաջողցնել առանց մեր ընկերներէն մէկուն կեանքը վտանգելու։

— Այն ատեն աւելի աղէկ...։ Հիմա ի՞նչ կ'ուզես որ ընեմ։

— Քենէ պիտի խնդրեմ միայն որ անմիջապէս մեր ընկերները տեսնաս և զանոնք վաղը գիշերուան համար հոս հրաւիրես անպատճառ, որպէս զի իմ ծրագիրս բացատրեմ, անոր գործադրութեանը համար որոշում տանք և անմիջապէս գործի սկսինք...։ Մասնաւորապէս կը խնդրեմ քենէ որ այս գումարման պատճառը նախապէս չյայտնես իրենց, որովհետև կ'ուզեմ ես մտքերը պատրաստել։ Միայն ըսէ իրենց որ խիստ կարեւոր և ստիպողական խնդրի մը համար այս հրաւէրը կ'ուզեմ և թէ պէտք է որ ամենքն ալ, առանց բացառութեան ներկայ գտնուին։

— Վստահ եղիր որ մեր ընկերներէն ո՛չ մէկը բացակայ պիտի ըլլայ։

Երիտասարդ խմբագիրը չէր սխալած։ Հետեւեալ օր բոլոր ընկերներըն ալ Արիֆ և Սաադէ պէյերը, Հիւսնի էֆէնտի, Սափի պէյ և ուրիշ երեք հոգի փութացին Սալինա հանըմի մօտ, լսելու համար իր ծրագիրը։

— Անոնք որ մահափորձին համամիտ են, ըսաւ Սալինա հանըմ, թո՛ղ այս թուղթին վրայ գրեն հետեւեալ խօսքերը. «Հայրենիքի ու ազատութեան օգտին համար Ապտիւլ Համիտ

մահը կը վճռեն. իսկ անոնք որ համամիտ չեն՝ թո՛ղ սպիտակ քուէ տան։

Ներկաները, անմիջապէս իրենց քուէները պատրաստեցին ու նետեցին Սաադ պէյի ֆէսին մէջ զոր սեղանին վրայ դըրած էր։

Այս գործողութիւնը հազիւ տասը վայրկեան տեւեց, որմէ ետքը սկսան քուէները մէկիկ մէկիկ կարդալ։

Ամենքն ալ միաձայնութեամբ մահավճռին համամիտ էին։

— Կեցցէ՛ ազատութիւնը, գոչեցին Սաադ և Արիֆ պէյերը միաբերան։

— Այսպէս ուրեմն, ըսաւ Մալիհա հանըմ. այս վայրկեանէս մեր կազմակերպութիւնը մահուան կը դատապարտէ Աբդուլ Համիտը,

— Խնդիրը կը մնայ գործադրութեան, դիտել տուաւ Հիւսնի էֆէնտի որ կը թուէր թէ շատ յոյս չունէր գործին յաջողութեան վրայ, այո՛, որոշեցինք բոժոժը կախել կատուին վիզէն, բայց ո՞վ պիտի բռնէ կատուն.

Ամէնքը լուռ մնացին։

— Ես, ըսաւ յանկարծ Մալիհա հանըմ հաստատ ձայնով մը։

Բոլորին աչքերը, այս խօսքին վրայ տիկնոջ ուղղուեցան։

Մալիհա հանըմ իր լրջախոհութեամբը, կորովովը և սառնարիւնութեամբն ու արիասրտութեամբը այնպիսի համբաւ մը ունէր իր ընկերներուն մէջ որ իր խօսքերը միշտ խորին պատկառանքով կը լսէին. բայց այս անգամ իր արտասանած այդ միակ խօսքը այնքան տարօրինակ թուեցաւ ամէնուն՝ որ ափ ի բերան մնացին։

— Կ'աղաչեմ. տիկին, ի՞նչ ըսիք։

— Մալիհա հանըմ ըսաւ որ ինք պիտի բռնէ կատուն, Սաիպ պէյ որ մինչև այն ատեն լուռ մնացած էր միւս երեք անձերուն հետ, որոնք ինչպէս տեսանք, մինչև հիմա խօսքի չէին խառնուած և անկիւն մը քաշուած մտիկ կ'ընէին։

— Այո՛, էֆէնտիներ, պատասխանեց Սալիհա, երբ նոր մանաւփորձի մը գաղափարը յղացայ և ուզեցի զայն ձեր հաւանութեան ենթարկել, միեւնոյն ատեն ինքնիրենս յղացայ նաև ծրագիր մը զայն կարենալ յաջողութեամբ գործադրելու համար և այս ծրագիրը այնպէս մը պատրաստուած է որ գլխաւոր դերակատարը ես պիտի ըլլամ և այս մանաւփորձին համար միայն ես եմ որ պիտի վտանգուիմ։

— Եթէ այսպէս է, մենք ալ հրաժարինք մեր տուած որոշումէն, ըսաւ Սատըգ պէյ, որովհետեւ ձեր կեանքը այնքան յարգի է մեզի որ չենք ուզեր զայն վտանգել Աբտիւլ Համիտի պէս հրէշի մը համար։

Շնորհակալ եմ քու խօսքերուդ, պատասխանեց Սալիհա հանըմ, բայց հոս իրարու մեծարանքներ ու գովասանքներ մատուցանելու համար չենք հաւաքուած, այլ գործ ունենալու. Ուստի դառնանք մեր խնդրին։ Ինչպէս ըսի, մանաւփորձը գործադրելու համար ծրագիր մը յղացած եմ զոր այժմ ձեզի պիտի բացատրեմ։ Կը խնդրեմ որ ուշի ուշով մտիկ ընէք և եթէ դիտողութիւններ կամ առարկութիւններ ունիք, անվերապահօրէն յայտնէք։

— Խօսեցէ՛ք, ըսաւ Հիւսնի էֆէնտի և վստահ եղէք որ, ինչպէս միշտ, այս անգամ ալ ամենայն անկեղծութեամբ մեր կարծիքը պիտի յայտնենք։

— Բնականաբար յիմարութիւն պիտի ըլլար, շարունակեց Սալիհա հանըմ, նոր մանաւփորձ մը կատարել երեկուանին յար և նման պայմաններու մէջ։ Նոյնիսկ կարելի չէ գոնէ առ այժմ, պօմպայի կամ տինամիթի վրայ մտածել, այլ հարկ է գտնել բոլորովին նոր միջոց մը այնպիսի բան մը որ մինչև հիմա ոչ փորձուած ըլլայ և ո՛չ ալ մտքէ անցած։ Ահա ճիշդ ես այդ ուղղութեամբ ծրագիր մը ուզեցի պատրաստել և կարծեմ յաջողեցայ։

Այս խօսքերը այնքան ինքնավստահ շեշտով մը արտասանեց որ իր ընկերները խորապէս ազդուեցան և ա՛լ աւելի ուշադրութեամբ սկսան զինքը մտիկ ընել։

— Եթէ գտնուի անձ մը որ կարենայ միշտ Ապտիւլ Համիտի քով գտնուիլ, անոր կոյր վստահութեանը արժանանալ, գիշեր ցերեկ անոր քովը ըլլալ, միթէ այսպիսի անձ մը չկրնա՞ր վերջապէս առիթ մը գտնել զայն թունաւորելու համար . . . թունաւորման միջոցները բազմաթիւ են, անպատճառ ուտելիքով կամ խմելիքով չէ որ մարդս կը թունաւորեն այլ նոյնիսկ բոլորովին տարբեր միջոցներով։

— Ատոնք ամենքն ալ կարելի են, խնդիրը Ապտիւլ Համիտի քով մօտենալն է, պնդեց Հիւսնի էֆէնտի։

— Ճիշդ ես ալ ձեր կարծիքէն ըլլալուս համար մտածեցի միջոցը գտնել այդ հրէշին մօտենալու և անոր վստահութիւնը շահելու, պատասխանեց Սալիհա հանըմ, և այդ բանն է որ պիտի փորձեմ։

Ի՞նչ, գոչեց Սատըգ, դո՞ւք ձեր ձեռքո՞վը պիտի թունաւորէք բռնաւորը։

— Ինչո՞ւ չէ, միթէ անիկա իր ձեռքով սպաննել չտըւա՞ւ ամուսինս ու երկու զաւակներս և ուրիշ հազարաւոր անմեղներ։

— Բայց ես այդ ըսել չուզեցի, բացատրեց Նախկին խըմբագիրը, ես միայն զարմանք յայտնեցի թէ ի՞նչպէս պիտի կրնայիք Եըլտըզի պալատը մտնել ու Սուլթանին մօտենալ։

— Անիկա ձեզի պիտի բացատրեմ շաբաթէ մը, պատասխանեց Սալիհա, հիմա մեր այս հաւաքումին մէջ երկու կարեւոր որոշումներ տուինք, այսինքն՝ նախ Ապտիւլ Համիտի դէմ նոր մահափորձ մը կատարել և երկրորդ՝ այդ մահափորձին գործադրութիւնը ինծի յանձնել։ Մեր այս գիշերուան ժողովին համար այս երկու որոշումները բաւական են։ Շաբաթ մը ետքը երբոր կրկին հաւաքուինք, ձեզի կը բացատրեմ թէ ի՛նչ կերպով պիտի ջանամ պալատ մտնել և մեր որոշումը գործադրել և կը յուսամ որ ամենքդ ալ այն ատեն անկարելի չպիտի համարիք իմ ըսածներս և պիտի համոզուիք որ գործը ձեր ենթադրածին չափ դժուար չէ։

Այս խօսքերը արտասանելով՝ Սալիհա հանըմ ոտքի ելաւ։

Ներկաները մէկիկ մէկիկ սկսան մեկնիլ։ Ո և է կասկած չտալու համար զատ զատ դուրս կ'ելլէին տան պարտէզի դըռնէն, հինգական վայրկեան միջոց տալով։

Ի վերջոյ Սաըդ պէյ առանձին մնաց Սալիհա հանըմի հետ։

— Տիկին, ըսաւ երիտասարդ յեղափոխականը, եթէ երկար ատենէ ի վեր ձեզ ճանչցած չըլլայի և ձեր ողջմտութիւնը ու լրջութիւնը զանազան առիթներով փորձած չըլլայի, հաւատացէք որ այս գիշեր ձեր բոլոր ըսածները իբրև կատակ պիտի համարէի ու պիտի կարծէի որ պարզապէս մեր վրայ կը խնդաք։

— Ինչպէ՞ս կարելի է այդպիսի կասկած մը ունենալ...։

— Բայց ձեր ըսածները այնքա՛ն տարօրինակ թուեցան ինծի, ինչպէս նաև իմ ընկերներուս որ այսպիսի կասկած մը շատ բնական պիտի ըլլայ, միայն թէ ձեզ այնչա՛փ լաւ կը ճանչնամ որ վայրկեան մը իսկ մտքէս չանցաւ որ կատակ կ'ընէիք։

— Շնորհակալ եմ ուրեմն... ո՛չ, սիրելի Սաըդ պէյ, երբեք կատակ չէր ըսածներս, միայն թէ ինչ որ մտքիս մէջ ծրագրած եմ, չեմ գիտեր թէ պիտի կրնա՞մ յաջողիլ...։

Եթէ ո և է կերպով կրնամ ձեզի օգտակար ըլլալ և յաջողութեան նպաստել, ամէն բան ընելու պատրաստ եմ։

— Արդէն յոյսս քու վրադ դրած եմ և կ'ուզեմ որ այս գիշեր հոս մնաս, որպէս զի միասին կարգադրենք մեր ընելիքները և մինչև շաբաթ մը ամէն բան պատրաստենք, որպէս զի երբ մեր ընկերները կրկին հաւաքուին, կարենանք իրենց ներկայացնել մեր գործունէութեան արդիւնքը։

Սաըդ ամենայն ուրախութեամբ ընդունեց Սալիհա հանըմի հրաւէրը և երկու դաւադիրները քաշուեցան վերնայարկի մէկ ուրիշ սենեակը միասին խորհրդակցելու համար։

— Ինչպէս մեր խորհրդակցութենէն տեսնուեցաւ, ըսաւ Սալիհա հանըմ, նոր մահափորձը յաջողեցնելու համար կարե-

ւորագոյն բանն է Երլտըզի պալատը մտնել, Ապտիւլ Համիտի մօտենալ և անոր վստահութիւնը շահիլ. արդ, ատոր համար ես միջոց մը խորհած եմ... այն է մատնութիւնը։

— Մատնութի՞ւն, գոչեց Սատըզ պէյ ափիբերան եղած։

— Այո՛, մատնութիւն, կարծեմ ասկէ աւելի միջոց չկայ կարճ ժամանակի մէջ Ապտիւլ Համիտի վստահութիւնը շահելու համար։

— Շիտակը բան մը չեմ հասկընար ձեր բառերէն։

— Հիմա ամէն բան պիտի հասկնաս, Լաւ մտիկ ըրէ ինծի։ Ենթադրէ՛ որ Ապտիւլ Համիտ վաղը կամ միւս օր ծուանալ մը ընդունի սա իմաստով.

«Ձեր վեհափառութեան դէմ կատարուած մահափորձին հեղինակները մեզի ծանօթ են։ Այդ մարդիկը կը պատկանին անիշխանական միջազգային ընկերակցութեան մը, որուն կեդրոնն է Լոնտոն և որ իր մասնաճիւղերը ունի բոլոր մայրաքաղաքներուն մէջ։ Վերջերս Սելամլըգի ատեն կատարուած մահափորձին մասնակցած են վեց հոգի, որոնց երկուքը պայթումին ատեն մեռած են և երեքը փախած, իսկ միւսը Պոլիս մնացած է նոր մահափորձ մը պատրաստելու համար։ Այդ գաղտնի կազմակերպութիւնը Պոլսոյ մէջ մէկ քանի տեղեր պոմպաներ և տինամիթ պահած է ի հարկին գործածելու համար Եթէ ձեր վեհափառութիւնը կը փափաքի, մենք պատրաստ ենք, դրամական փոխարինութեամբ մը, ցոյց տալ պոմպաներուն պահուած տեղը և միանգամայն օգնել ոստիկանութեան որպէսզի կարենայ ձերբակալել հոս գտնուող անիշխանականը որ խիստ վտանգաւոր անձ մըն է։ Այն պարագային որ Նորին Վեհափառութիւնը ուզէ նկատողութեան առնել այս զեկոյցը և յարաբերութեան մտնել մեզի հետ, թո՛ղ իր Աթէնքի դեսպանին միջոցաւ բանակցութեան մտնէ այսինչ անձին հետ որ Աթէնք այսինչ տեղը կը գտնուի։»

Անձին անունն ու հասցէն կ'որոշենք։ Արդ, ենթադրենք որ Ապտիւլ Համիտ այսպիսի ծուանալ մը ընդունեց, ինչ պիտի ընէ։

— Բնականաբար պիտի հեռագրէ իր Աթէնքի դեսպանին որ իսկոյն բանակցութեան մտնէ ցոյց տրուած անձին հետ, պատասխանեց Սաաըդ պէյ, առանց հասկնալու թէ իր ընկերուհին ո՛ւր պիտի կապէր խօսքը։

— Լա՛ւ. ենթադրենք որ դեսպանն ալ իսկոյն դիմէ նըշանակուած հասցէին և հոն գտնէ անձ մը որ իրաւցնէ յանձն առնէ Պօլիս գալ և ամէն բան յայտնել Սուլթանին, ինչ ինչ պայմաններով, այսինքն դրամական վարձատրութիւններու փոխարէն։

— Այսինքն, այո՛, կ՚ըմբռնեմ թէ ի՛նչ ըսել կ՚ուզես... քու ընկերներդ նախապէս մէկ քանի տեղեր պոմպա ու տինամիթ պիտի պահեն և դուն զանոնք իբր թէ երեւան հանած պիտի ըլլաս։

— Կեցցե՛ս, գոչեց Սալիհա հանըմ։

— Եւ այս կերպով պիտի արժանանաս Ապտիւլ Համիտի վստահութեան։

— Բնականաբար։

— Ծրագիրդ արդարև հանճարեղ է և յաջողութեան շատ հաւանականութիւններ կ՚ընծայէ, բայց պէտք է խոստովանիս որ միեւնոյն ատեն ալ շատ վտանգաւոր խաղ մըն է որ պիտի խաղաս։

— Այո՛, գիտեմ այդպէս ըլլալը, բայց վերջապէս կ՚ուզեմ փորձել և ինծի այնպէս կը թուի որ պիտի յաջողիմ... միայն թէ հարկ է մեծ վարպետութեամբ գործել և ամենափոքր կասկածի տեղի չի տալ։

Սալիհա հանըմ յետոյ իր ընկերոջ երկարօրէն բացատրեց թէ ի՛նչ միջոցներով կը կը յուսար այս դժուարին ձեռնարկութիւնը յաջողութեամբ գլուխ հանելու։ Այնքա՛ն խանդավառութեամբ, այնքա՛ն համոզումով ու հաւատքով կը խօսէր որ Սաի պէյ՝ նախապէս շատ թերահաւատ, սկսաւ ինքն ալ խան-

դաւաճանուիլ և հաւատալ գործին յաջողութեանը. այն աստիճան որ ի վերջոյ ըսաւ.

— Ինծի այնպէս կը թուի որ փոխանակ շաբաթ մը սպասելու, լաւագոյն կ'ըլլայ մեր ընկերները վաղն իսկ կրկին հրաւիրել հոս և ձեր ծրագիրը մանրամասնօրէն բացատրել... Ես ալ, իմ կողմէս, բոլոր ուժովս կը ձայնակցիմ ձեզ եւ կը յուսամ որ կրնանք շատ դիւրաւ համոզել մեր ընկերները և իսկոյն գործի կը ձեռնարկենք։

Սալիհա չափազանց գոհ մնաց իր ընկերոջ այս խօսքերէն և որոշեցին հետեւեալ իրիկուան համար նոր հրաւէր մը ուղղել ամենուն։

. . . . . . . . . . . . . . . . .

Մեր վերը պատմած տեսակցութենէն տասներկու օր ետքը, յուլիս 21 հինգշաբթի օրը Ապտիլ Համիտ իր սենեակին մէջ քաշուած, խոր մտատանջութեան մատնուած էր կրկին։ Հետեւեալ օրը ուրբաթ էր և ստիպուած էր, մահափորձէն ետքը, երկրորդ անգամ ըլլալով, Սէլամլըքի արարողութեան երթալ: Իրա՛ւ է որ արտակարգ զգուշութիւններ ձեռք առնուած էին, բայց բռնաւորը այլեւս վստահութիւն չունէր այդ զգուշութիւններուն վրայ, քանի որ անկէ առաջ ալ միշտ այդ զգուշութիւնները եղած էին և սակայն կրկին, իր անցնելիք ճամբուն վրայ, ահագին տինամիթ մը պայթած էր հարիւրաւոր զոհեր տանելով։ Ինչ որ ինքզինքը ամէնէն աւելի կը տագնապէր սա պարագան էր որ երկու շաբաթէ է վեր կարելի չէր եղած ամենափոքր հետք մը գտնել մահափորձին հեղինակները երեւան հանելու համար։ Հիմա ա՛լ գրեթէ յուսահատած էր այս մասին։ Իրա՛ւ է որ Նէճիպ Մէլհամէի նախագահութեան տակ կազմուած քննիչ յանձնաժողովը առտուընէ մինչեւ իրիկուն հարցաքննութիւններով ժամանակ կ'անցնէր, այսուհանդերձ այդ հարցաքննութիւններէն ո եւ է լոյս մը չէր ծագած

Թերթերը ամբողջ շաբաթ մը մահափորձին վրայ խօսելէ ետքը, յանկարծ հրաման ստացած էին տող մը բան չհրատարակելու և այսպէս լռութիւնը տիրած էր ամէն կողմ։ Երլտըզի մէջ ընդունուած կարծիքը այն էր թէ այդ ոճրափորձութիւնը կատարուած էր եւրոպացի անիշխանականներու ձեռքով։

Բայց ինչո՞ւ անիշխանականները պիտի գային մինչեւ Պոլիս մահափորձ մը կատարելու Սուլթանի մը դէմ որ ո և է կերպով վնաս չէր հասցուցած իրենց։

Ապտիւլ Համիտ իր վախկոտ ու կասկածոտ բնաւորութեամբը, անիշխանական մահափորձներով շատ հետաքրքրուած էր ու մանրամասնօրէն ուսումնասիրած անոնց գործելակերպը գիտէր որ անոնք ընդհանրապէս այդպիսի ոճիրներու կը դիմեն վրէժխնդրութեան համար, իրենց ո և է մէկ ընկերոջ վրէժը հանելու նպատակով։ Արդ, ինք ո և է բան մը չէր ըրած սանկ վրէժխնդրութիւն մը իր վրայ հրաւիրելու համար, ուստի շատ հաւատք չէր ընծայէր իր պալատականներու ենթադրութիւններուն և կը ջանար ինքնիրեն լուծել այս հանելուկը։

Օրերէ ի վեր էր որ կը տեւէր այդ մտալլկիչ տանջանքը.

— Եթէ չկարենամ հեղինակները երեւան հանել և անոնց պատիժը տալ, կը մտածէր, անոնք պիտի քաջալերուին ու նորանոր յանդգնութիւններու պիտի ձեռնարկեն։

Եւ այս էր իր ամենէն մեծ երկիւղը։

Պահ մը մտածեց Շէրլօք Հոլմսը կրկին Պոլիս հրաւիրել և անոր օժանդակութեան դիմել, սակայն Մաք Լայն հեռագրով պատասխանեց թէ չէր կրնար բաժնուիլ իր ընտանիքէն։ Այն ատեն Ապտիւլ Համիտ իր Լոնտոնի դեսպանին միջոցաւ խնդրեց անգլիացի գաղտնի ոստիկանէն որ իր կարծիքը գրաւոր կերպով հաղորդէ մահափորձին նկատմամբ և ասոր համար մեծագումար նուէր մըն ալ խոստացաւ։ Մաք Լայն այս առաջարկը ընդունեց, բայց նախապէս մանրամասն տեղեկութիւններ ուզեց դէպքին վրայ։ Ապտիւլ Համիտ հիմա կը սպասէր

անոր պրպտէր տեղեկագրին, յուսալով որ անկէ պիտի կրնար լոյս մը քաղել.

Եւ սակայն Մաք Լայն իր տեղեկագրերը կ'ուշացնէր...:

Հոգեկան այս տագնապալից վիճակին մէջ էր ան՝ բռնաւորը, հինգշաբթի իրիկուն, երբ իր հաւատարիմ սենեկապանը ներս մտնելով, գոց պահարաններու տրցակ մը ներկայացուց իր վեհափառ տիրոջ. Ժուռնալներ էին ասոնք, Սպտիւլ Համիտի ամենէն սիրական ընթերցումը: Բռնաւորը մեծ ուրախութեամբ մը առաւ այդ նամակներու ծրարը եւ անյագ հետաքրքրութեամբ սկսաւ կարդալ: Առաջին եւ երկրորդ ժուռնալները կ'երեւայ որ շատ շահեկան չէին, որովհետեւ արագօրէն զանոնք աչքէ անցնելէն ետքը, մէկ կողմ նետեց, բայց երբոր երրորդ ժուռնալին եկաւ կարդալ, Սպտիւլ Համիտ հետզհետէ աճեցուն հետաքրքրութեամբ մը կարդաց զայն. յետոյ մէկ ընթերցումով գոհ չըլլալով երկրորդ անգամ մըն ալ սկսաւ ուշադրութեամբ կարդալ:

Ի՞նչ էր բռնաւորը այսքան սաստկօրէն հետաքրքրող այդ գրութիւնը: Ահաւասիկ անոր պարունակութիւնը–

«Կարեւոր յայտնութիւն մը ընել կուգամ ձեր բարձր վեհափառութեան: Թրքերէն լեզուն չգիտնալուս ստիպուեցայ տաճկագէտ անձի մը օժանդակութեանը դիմել, բայց կը յուսամ որ պիտի յաջողիմ իմ միտքս պարզել ձեզի: Ձեր անձին դէմ կատարուած վերջին մահափորձը մինչեւ հիմա գաղտնիք մը մնացած է եւ ձեր ոստիկանութիւնն ու լրտեսները, հակառակ իրենց բոլոր ջանքերուն, չեն կրցած լոյս մը սփռել այդ մութ դաւադրութեան վրայ: Ես կարծեմ որ տակաւին շատ շաբաթներ ու ամիսներ պիտի անցնին եւ կարելի չպիտի ըլլայ այդ նշանաւոր եղեռնին հեղինակները երեւան հանել եւ անոնք իրենց անպատիժ մնալէն քաջալերուած՝ այս անգամ աւելի ահռելի մահափորձ մը պատրաստելու պիտի աշխատին: Արդ, Վեհափառ Տէր, ես ներկայ գրութեամբս կուգամ յայտարարել որ պատրաստ եմ այդ մահափորձին հեղինակները երե-

ւան հանելու և միանգամայն արգիլելու նմանօրինակ դէպքի կրկնումը։ Ես պատրաստ եմ ձեր վեհափառութեան մի առ մի ցոյց տալու Պոլսոյ մէջ այն տեղերը ուր տակաւին ռումպաներ ու տինամիտ կան պահուած, նորանոր եղեռնագործութեանց համար։ Գուցէ այս յայտարարութիւնս տարօրինակ ու ստայօդ թուի ձեր վեհափառութեան, սակայն շատ դիւրին է այդ մասին ձեզի ապացոյցներ տալ, եթէ հաւանիք հետեւեալ պայմանները ընդունելու։»

«Նախ՝ անձիս պաշտպանութեան համար ամէն միջոց ձեռք առնել. երկրորդ՝ իմ ընելիք յայտնութիւններս լսել անձնապէս, առանց երկրորդի մը միջամտութեան, երրորդ՝ երբ ընելիք յայտնութիւններուս ճշմարիտ ըլլալը ապացուցուի, զիս վարձատրել արժանի եղած կերպով, չորրորդ՝ Պոլսէն իմ փախուստս ապահովել։

«Մեր գործը շատ զօրեղ ու շատ յանդուգն կազմակերպութեան մը հետ է, որուն ես ալ մօտէն անդամակցած եմ և չեմ վարանիր ըսելու որ վերջին մահափորձին մէջ ալ գործօն մասնակցութիւն մը ունեցած եմ, բայց յետոյ անձնական խնդիրներ, որոնք աւելորդ է հոս բացատրել՝ զիս հեռացուցած են այդ կազմակերպութենէն և այժմ ուրիշ բան չեմ ուզեր այլ եթէ վրէժ լուծել իմ նախկին ընկերներէս որոնք զիս չարաչար խաբած են։ Բայց այս խօսքերը գուցէ խաղմը թուին ձեզի, դրամ կորզելու համար, բայց որպէսզի համոզուիք թէ այդ տեսակ նպատակ մը չունիմ և թէ խաբեբայութիւն մը չէ ըրածս, բացարձակապէս կը յայտարարեմ որ ձենէ տասը փարա չեմ պահանջեր մինչև այն օրը ուր փաստացի կերպով չապացուցանեմ ըսածներս։ Նոյնիսկ պատրաստ եմ իմ գրպանէս ծախսելով՝ գալու մինչև Պոլիս և ձեզ յայտնելու ամէն բան, եթէ վերոյիշեալ հինգ պայմանները ընդունիք։

«Ես այժմ կը գտնուիմ Աթէնք, Օտոս Սոլոնոս փողոց, թիւ 17 տունը, եթէ յարմար դատէք կրնաք ձեր դեսպանին միջոցաւ բանակցութեան մտնել հետս և եթէ իրարու հետ հա-

մաձայնինք, իսկոյն գործի սկսիլ։ Սպասելով ձեր վեհափառութեան հրահանգներուն, մնամ ձեր ամենախոնարհ աղախինը

ԺԻՒԼԻ ՍՕԹԷՐ»

Ստորագրութիւնը միայն ֆրանսերէն գրուած էր։

Ապտիւլ Համիտ, ինչպէս ըսինք, այդ գրութիւնը մէկ քանի անգամ ուշադրութեամբ կարդաց.

— Ինչ կը նշանակէ այս, կը մտածէր ինքնիրեն, խա՞ղ մըն է արդեօք, ինէ դրամ քաշելու համար, ինչպէս ամէն օր կ'ընեն... բայց ո՛չ, քանի որ կանխիկ բան մը չպահանջեր, այլ վարձատրութիւնը կ'ուզէ ծառայութիւնը մատուցանելէ ետքը, այսպիսի առաջարկութեան մը կարեւորութիւն չի տալ պարզապէս յիմարութիւն է... ինչ որ ալ ըլլայ, լաւագոյն է որ անգամ մը յարաբերութեան մտնենք այդ կնոջ հետ, ո՛վ գիտէ, գուցէ անոր միջոցաւը ամէն բան պիտի կրնանք երեւան հանել .. միայն թէ չեմ ուզեր որ իմ Ամէնքի դեսպանս այս գործին մէջ մտնէ, Րիֆաթ պէյը շատ սիրած մէկ մարդս չէ եւ շատ ալ վստահութիւն չունիմ իր վրայ... քիչ մը ծէօն Թիւրք է այդ մարդը և ո՛վ գիտէ, գուցէ խաղ մը խաղայ ինծի, լաւագոյն է որ ուղղակի մէկը ղրկեմ պալատէն որ երթայ ու հետը տեսնուի և հասկնայ թէ ի՛նչ տեսակ կին է այս Ժիւլի Սօթէրը։

Այս խորհրդածութիւնը ընելէ ետքը, Ապտիւլ Համիտ իսկոյն իր քով կանչել տուաւ սիրական քարտուղարը, Իզզէթ փաշան։

— Կարդա՛ սա թուղթը, ըսաւ բռնաւորը իր քարտուղարին, թանկագին ժուռնալը անոր երկարելով։

Իզզէթ փաշա երկիւղածութեամբ թուղթը առաւ և սկսաւ ամենայն ուշադրութեամբ կարդալ։

Ապտիւլ Համիտ իր խորաթափանց ակնարկը սեւեռած էր պալատականին դէմքին վրայ, այս ընթերցումէն յառաջ գալիք ազդեցութիւնը կարդալու համար հոն։

Իրա՛ւ ալ այս ընթերցումը խորին տպաւորութիւն մը գործեց Իզզէթ փաշայի վրայ և Ապտիւլ Համիտ տես աւոր այդ

տպաւորութիւնը հաճելի էր և ուրախութիւն կը պատճառէր քարտուղարին։

Երբ ընթերցումը աւարտեցաւ, բանաւորը հարցուց.

— Լաւ ուրեմն, ի՞նչ կ՚ըսես ասոր։

— Վեհափառ տէր, կարծեմ շատ լուրջ կերպով նկատողութեան առնուելիք գրութիւն մըն է այս։

— Միթէ մէջի պատմութեան կը հաւատա՞ս։

— Բացարձակապէս, պատասխանեց պալատականը հաստատ ձայնով մը... արդէն այդ պժգալի մահափորձը կատարուելուն պէս, առաջին վայրկեանէն, պատիւ ունեցայ ձեր վեհափառութեան յայտնելու թէ՝ ըստ իմ համոզմանս, այս անիծեալ ոճրագործութիւնը մարդկային անունին անարժան անիշխանականներու գործը ըլլալու է։

— Ես այդպէս չեմ կարծեր, պատասխանեց Աբդուլ Համիտ կասկածոտ երեւոյթով մը, անիշխանականներու հետ հաշիւ չունիմ... այսուհանդերձ կարծեմ լաւ կ՚ըլլայ որ, խիստ ծածուկ կերպով, այդ կնոջ հետ բանակցութեան մտնենք... եթէ տեսնենք որ խաբեբայ մը չէ և թէ կարելի է իրմէ ո և է օգուտ մը քաղել, այն ատեն զինքը հոս կը բերենք։

— Կատարելապէս համամիտ եմ ձեր վեհափառութեան այս գաղափարին և կարծեմ լաւ կ՚ըլլայ որ իսկոյն հեռագրենք ձեր Աթէնքի դեսպանին որպէսզի քննութիւն մը կատարէ և մեզի մանրամասն տեղեկագիր մը ղրկէ, այդ կնոջ հետ տեսակցելէ ետքը։

— Չէ՛, Րիֆաթ պէյ դուցէ լաւ ու պարկեշտ դիւանագէտ մըն է, սակայն այս գործին մարդը չէ... մեզի պէտք եղածը վարպետորդի մէկն է որ խաղի չի գայ... ասկէ զատ չեմ ուզեր որ մենէ դուրս մարդիկ այս գործին խառնուին։

— Ձեր վեհափառութիւնը ինչպէս որ կամք կ՚ընէ թո՛ղ այնպէս ըլլայ։

— Ես կ՚ուզեմ որ պալատէն մասնաւոր մէկը ղրկեմ, որպէս զի ուղղակի բանակցի այդ կնոջ հետ։

— Իրաւունք ունիք, այդպէս լաւագոյն կ՚ըլլայ և գործը բոլորովին ծածուկ կը մնայ։

— Այդ պաշտօնին համար միակ յարմար անձը դո՛ւն ես։

— Ե՞ս, գոչեց Իզզէթ փաշա յանկարծակիի եկած։

— Այո՛, միմիայն քու վրադ բացարձակ վստահութիւն ունիմ։

— Շնորհակալ ու երախտապարտ եմ ձեր վեհափառութեան իր ծառային մասին յայտնած զգացումներուն համար, բայց....։

— Վաղը իսկ պէտք է որ մեկնիս դէպի Աթէնք, բոլորովին ծածուկ կերպով և կեղծ անունով մը։

— Սակայն... կմկմաց պալատականը։

— Առարկութեան տեղը չի կայ, վաղը ճամբայ պիտի ելլես, տասը հազար ոսկի կը դնեմ տրամադրութեանդ տակ, իբրև ճամբու ծախք և ուրիշ բացառիկ պէտքերու համար։

Դրամական այս պարգևը լսելուն պէս քարտուղարին աչքերը շողացին։

— Պատրաստ եմ ձեր վեհափառութեան հրամանին հնազանդելու, ըսաւ, միայն թէ կ՚ուզէի դիտել տալ որ գուցէ իմ ներկայութիւնս այստեղ անհրաժեշտ էր և կրնայիք ուրիշ յարմար անձի մը տալ այդ պաշտօնը։

— Ոչ, քենէ յարմարագոյնը չի կայ, պատասխանեց Աբտիւլ Համիտ վճռաբար, ասկէ զատ բացակայութիւնդ հազիւ շաբաթ մը պիտի տևէ, հետևաբար վնաս չունի։

— Այո՛, սակայն պալատին մէջ պիտի նշմարուի և զանազան մեկնութիւններու տեղի պիտի տայ։

Այս առարկութիւնը բանաւոր թուեցաւ բռնակալին որ սկսաւ մտածել։

— Լա՛ւ ուրեմն, այս իրիկունէ տունդ գնա՛ և լուր տարածէ՛ թէ հիւանդ ես, ես ալ անմիջապէս պալատի մէկ քանի բժիշկները կը ղրկեմ որոնք կուգան քեզ կը քննեն ու յետոյ կը յայտարարեն որ ութը տասը օրուան համար բացարձակ հանգիստի պէտք ունիս,

Իզզէթ փաշա չպատասխանեց. տեսաւ որ ամէն ընդդիմութիւն աւելորդ էր և թէ հարկ էր մեկնիլ։ Եւ սակայն դըժգո՛ն էր այս անակնկալ հեռացումէն։ Նախ՝ իր գիրքին համար նուաստացուցիչ կը համարէր այսպիսի պաշտօն մը, յետոյ կը վախնար որ ծուղակի մը մէջ կ'իյնայ կամ խաղի մը կուգայ, վերջապէս չէր ուզեր ասպարէզը, նոյնիսկ քանի մը օրուան համար, Նէճիպ Մէլհամէի թողուլ, որ իբրև Նախագահ քննիչ յանձնաժողովի, մէկ երկու շաբաթէ ի վեր մեծ ազդեցութիւն ձեռք բերած էր, թէև տակաւին իր քննութիւնները ո և է արդիւնք չէին տուած։

Այս ամէն նկատումները օգուտ մը չըրին և Սուլթանին անձնական քարտուղարը ստիպուեցաւ գլուխ ծռել իր տիրոջ և, ըստ կարգադրութեան, հետևեալ օրն իսկ, Եւրոպացիի անունով մը, ռումանական շոգենաւը կը մտնէր Բիրէ ուղեւորելու համար։

Երկու օր ետքը, Աթէնքի առաջնակարգ Մինէրվա օթէլը կ'իջնէր Պոլսէն եկող ճամբորդ մը որ իր անունը արձանագրել կուտար իբրև Պ. Արման Բօլար, ֆրանսացի ղըօսաշրջիկ։ Իզզէթ փաշա այնքա՛ն կատարեալ կերպով ծպտուած էր որ պանդոկին մէջ ո՛չ ոք կասկածեաւ թէ այդ Ֆրանսացին պարզապէս Սուլթանին անձնական քարտուղարներէն օսմանցի մըն էր։

---

## ԳԼՈՒԽ Ժ.

## ՏԻԿԻՆ ԺԻՒԼԻ ՍՕԹԷՐ ԵՒ ՊԱՐՈՆ ԱՐՄԱՆ ԲՕԼԱՐ

Աթէնք հասնելէն երկու օր ետքը, Իզզէթ բաշա կամ Պ. Արման Բօլար, նամակով մը կը հրաւիրէր տիկին Ժիւլի Սօթէրը ժամադրութեան մը Իլիսոսի եզերքը գտնուած գարեջրատուն մը։

Ժամանակէն առաջ եկած բազմած էր գարեջրատան ծա-

ռազարդ պարտէզին մէջ ու մտադիր նայուածքով մը կը դի-տէր իր դիմացը պարզուող հրաշալի Ակրոպոլիսը։

Յանկարծ շէկ մազերով, նիհար, երկայնահասակ ու վա-յելչագեղ կին մը տեսաւ որ դէպի գարեջրատունը կը յա-ռաջանար արագ քայլերով։

Շէկ կինը պալատականին քով մօտենալով համարձակ ձայ-նով մը և ֆրանսերէն լեզուով՝ հարցուց.

—Արդեօք պարոն Արման Բօլարի հետ տեսակցելու պա-տիւ ունիմ։

— Նոյնինքն այո՛, տիկին, և եթէ չեմ սխալիր դուք ալ տիկին Ժիւլի Սօթէրն էք որուն հետ ժամադիր եղած էի հոս։

Պալատականը որ արդէն ոտքի ելած էր, աթոռ մը հը-րամցուց իր խօսակցին։

Եւ հարցուց թէ ի՞նչ կը փափաքէր խմել։

— Գարեջուր մը, պատասխանեց տիկին Ժիւլի։

Սուլթանին քարտուղարը սպասաւորին պէտք եղած պատ-ուէրը տալէ ետքը ըսաւ.

— Տիկին, պէտք կը զգամ առաջին վայրկեանէն յայտա-րարելու որ այն անունը որով կը ներկայանամ կեղծ է և մի-միայն զգուշութեան համար առած եմ. Նախ ըսեմ որ ֆրան-սացի կամ եւրոպացի չեմ, այլ օսմանցի մը, նոյնինքն Սուլ-թանին ծառայութեան մէջ գտնուող պալատական մը։

— Կը գուշակէի որ այդպէս պէտք էր ըլլալ, պատաս-խանեց կինը, կը հաճի՞ք բուն անուննիդ տալու։

— Արիֆ պէյ, Նորին վեհափառութեան սենեկապաննե-րէն։

Կինը իբրեւ պատասխան, գլխու շարժում մը ըրաւ։

Պալատականը իր խօսքը շարունակեց։

— Իմ Վեհափառ տէրս մեծ ուշադրութեամբ կարդաց այն Թրքերէն տեղեկագիրը զոր դրկած էիք իրեն և որով կը խոս-տանայիք կարեւոր յայտնութիւններ ընել ինչ ինչ պայմանне-րով և փափաքեցաւ ձեզի հետ բանակցութեան մտնել իմ մի-ջոցաւ։

— Շատ ուրախ եմ որ գրածս լուրջ նկատողութեան առնուած է, պատասխանեց չէկ կինը, խնդիրը շատ կարեւոր է ձեր վեհափառ կայսեր համար, որովհետեւ իր կեանքին դէմ սկսուած պայքարը կանգ չպիտի առնէ եւ արդէն իսկ նորանոր մահափորձներ կը պատրաստուին, ինչպէս պատիւ ունեցած էի յայտնելու իմ գրութեանս մէջ։

— Կրնա՞ք այդ մասին աւելի որոշ բացատրութիւններ տալ։

— Անգամ մը որ մեր պայմաններուն մասին համաձայնինք անմիջապէս կրնամ ձեզի ցոյց տալ այն տեղերը ուր պահուած են ռումպաներն ու տինամիտները, նորանոր եղեռնափորձութիւններու համար։

— Իսկ այն անձե՞րը որոնք այդ ռումպաները պիտի գործածեն։

– Անոնք որ Պոլիս կը գտնուին, կրնամ ձեզի մատնանիշ ընել։

– Ներելի՞ է ձեզի հարցնել թէ ի՛նչ պատճառաւ այդ յայտնութիւնները ընելու որոշած էք։

— Որովհետեւ, պարո՛ն, չարաչար խաբուած եմ մահափորձին գլխաւոր կազմակերպիչէն որ զիս իրեն գործիք ընելէ ու ամիսներով գործածելէ ետքը, զիս լքած ու գացած բոզի մը հետ ապրիլ սկսած է, գոչեց չէկ կինը, ատելութեան ու կատաղութեան թափով մը։

Յետոյ կարծես բոլորովին անձնատուր եղած իր ներքին հոգեկան տագնապներուն, շարունակեց,

— Այո՛, այդ վատը զիս գործիք ըրաւ ամբողջ ամիսներ, ամենէն վտանգաւոր բաները ընել տալով եւ այն խոստումով որ գործը յաջողցնելէ ետքը, երբոր Եւրոպա վերադառնանք միասին պիտի ամուսնանանք եւ ահա՛ պայթումին օրն իսկ, երբ կ'երթամ զինքը գտնելու, ինչ կը տեսնեմ... արդէն մեկնած էր Պոլսէն ուրիշ կնոջ մը հետ, իր մահափորձին համար խոստացուած գումարը գանձելէ ետքը։

— Ինչպէ՞ս, գոչեց Իզզէթ փաշա մեծապէս շահագրգռուած, միթէ այդ մահափորձը կատարուած է իբրև շահու գո՞րծ մը. պարզապէս դրամ առնելո՞ւ համար.

— Ենթադրաբար, պատասխանեց չէկ կինը անպատկառ ժպիտով. եթէ ո՛չ ինչո՞ւ համար կ'ուզէիք որ մենք օտարականներս ձեր սուլթանին դէմ մահափորձ մը կատարէինք.

— Բայց ո՞րուն հաշւոյն գործեցիք ուրեմն։

— Ատիկա գաղտնիք մըն է որ պիտի յայտնեմ երբ մեր պայմանագրութիւնը կնքենք։

— Եւ միթէ կրնա՞ք ձեր բոլոր այս ըսածները փաստացի կերպով ապացուցանել։

— Անշուշտ, եթէ այդ բանը ընելու կարող չըլլայի ձեզ, մինչև հոս չէի յօգնեցներ։

— Եւ ինչէ՞ն կրնաք զիս համոզել որ բոլոր ասոնք ձեր կողմէ սարքուած խաղ մը չեն։

— Խա՞ղ մը, բայց ի՞նչ նպատակաւ, գոչեց չէկ կինը զայրացած երևոյթով մը։

— Այդ տեսակ խաղեր մէկ նպատակով միայն կրնան ըլլալ. պատասխանեց պալատականը. այն է՝ շահագիտական նպատակով։

— Լաւ ուրեմն. ըսաւ կինը, քանի որ այդպիսի կասկած մը ունիք իմ ըրած յայտնութիւններուս մասին՝ ձեզի կը հաւաստեմ որ ես պատրաստ եմ իմ նիւթական փոքրիկ հարըստութիւնս զոհել և իմ գրպանէս ծախսելով Պոլիս գալ և առանց ո և է ակնկալութեան ամէն բան յայտնել. միայն մէկ բան մը կը խնդրեմ ձենէ:

— Ի՞նչ բան։

— Իմ անձիս պաշտպանութիւնը։ Իմ ընելիքս պարզ մատնութիւն մըն է և ես գիտեմ որ ասիկա անպատիժ չպիտի թողուն իմ նախկին ընկերներս, ասոր համար կ'ուզեմ որ զիս պաշտպանէք, այսինքն՝ նախ ձեզի մօտ, պալատին մէջ, ինծի ապաստարան մը տաք, յետոյ երբ իմ յայտնութիւններս ընեմ

և դուք ալ փաստայի կերպով համոզուիք թէ ինչ որ կ'ըսեմ զուտ ճշմարտութիւններ են, այն ատեն զիս ապահով կերպով հեռացնէք Պոլիսէն, ձեր յարմար տեսած վարձատրութիւնը տալով: Իսկ մինչև այն ատեն՝ ձենէ սանթիմ մը անգամ չեմ պահանջեր:

Շէկ կինը այն ատենէն անկեղծ համարձակութեամբ մը արտասանած էր այս խօսքերը որ Իզզէթ փաշա բոլորովին համոզուեցաւ թէ այդ կինը ճշմարտութիւնը կը խօսէր:

— Քանի որ այսչափ անշահախնդրութիւն ցոյց կուտաք, ըսաւ, այլևս առանց կասկածի կ'ընդունիմ ձեր պայմանները և զանոնք անմիջապէս կը հաղորդեմ իմ վեհափառ տիրոջս:

— Ե՞րբ կը յուսաք պատասխան մը ընդունիլ:

— Առ առաւելն մինչև վաղը:

— Ուրեմն գուցէ կրնանք վաղը իրիկուն իսկ ճամբայ ելլել Պոլիս երթալու համար:

— Ինչո՞ւ այդչափ կ'աճապարէք, հարցուց պալատականը զարմացած:

— Բայց որովհետև կը վախնամ որ եթէ ուշ մնանք տեղափոխութիւններ կը կատարուին Պոլսոյ մէջ և չեմ կրնար մի առ մի ցոյց տալ ռումպաներուն պահուած տեղերը, պատասխանեց տիկին Ժիւլի անայլայլ ձայնով:

— Ուրեմն կը յուսամ որ վաղը կրնանք ճամբայ ելլել:

Տեսակցութիւնը աւարտած էր: Իզզէթ փաշա ոտքի ելաւ մեկնելու համար:

Պալատականը պանդոկ դառնալուն պէս ծածկագիր հեռագրով մը մանրամասնօրէն պատմեց իր տեսակցութիւնը տիկին Ժիւլիի հետ և անմիջական հրահանգ ուզեց:

Նոյն գիշերն իսկ պատասխան մը կը ստանար որով իրեն կը պատուիրէին կնոջ հետ անմիջապէս Պոլիս գալու:

Տիկին Ժիւլի Սօթէր կամ ինչպէս գիտեն մեր ընթերցողները Սալիհա հանըմ, անմիջապէս ճանչցած էր Իզզէթ փաշան, որովհետև պալատականը գրեթէ չէր ծպտը-

ւած՝ այլ միայն ֆէսին տեղ գլխարկ մը դրած էր գլուխը։ Իսկ Սալիհա հանըմ ընդհակառակը թէ մազերը բոլորովին շէկագոյն ներկած էր, թէ յօնքերը կտրած եւ թէ ակնոց դրած էր աչքը այնպէս որ բոլորովին կերպարանափոխ եղած էր։

Հետեւեալ առտու կանուխ տան սպասուհին եկաւ իր դուռը բախելու։ Սալիհա իսկոյն ցատքեց անկողինէն եւ գնաց դուռը բանալու։

— Նամակ մը բերին հիմա եւ ըսին որ խիստ ստիպողական է, ըսաւ սպասուհին, պահարան մը ներկայացնելով իրեն։

Սալիհա արագ շարժումով մը պահարանը բացաւ որուն մէջ այցաքարտ մը կար. «անմիջապէս հաճեցէք երէկուան գարեջրատունը գալ, կարեւոր զեկուցում մը ընելու համար» գրուած էր այս այցաքարտին վրայ։

Սալիհա իսկոյն հագուեցաւ եւ փութաց նշանակեալ ժամադրավայրը։ Պալատականը արդէն հոն իրեն կը սպասէր.

— Այս իրիկուն եւրոպական ժամը 4ին Խտիվական շոգենաւը կը մեկնի Պոլիս, ըսաւ տիկնոջ, պէտք է որ հոն գըտնուինք ժամանակին։

— Ուրեմն մեր պայմանները ընդունուա՞ծ են։

— Այո՛, եւ մեր վեհափառ տէրը կը փափաքի որ անմիջապէս Պոլիս երթանք.

Նոյն իրիկունն իսկ որոշեալ ժամուն տիկին Ժիւլի Սօթէր խտիվական «Էլ-Գահիրէ» շոգենաւը կը մտնէր ուր իրեն կը սպասէր պալատականը։

Երկու օր ետքը, կիրակի երեկոյ մը, կանգ կ'առնէր Պոլսոյ քարափին մօտ եւ Իզզէթ փաշա իր ընկերուհիին հետ ցամաք կ'ելլէր, յարգալից լրտեսներու խումբով մը շրջապատուած։

Ո եւ է կասկածանքի տեղի չտալու համար, նախապէս այնպէս որոշած էին որ տիկին Ժիւլի պալատ պիտի ներկայանար իբրեւ Սուլթանուհիներու ֆրանսերէնի ուսուցիչ։

Մութը արդէն բոլորովին կոխած էր երբ Իզզէթ փաշան ու տիկինը տանող կառքը Եըլտըզի պարտէզին դռնէն ներս մտաւ։ Տիկին Միւլլի անմիջապէս առաջնորդուեցաւ իրեն համար յատկապէս պատրաստուած յարկաբաժինը որ կայսերական հարէմին մաս կը կազմէր. իսկ Իզզէթ փաշա փութաց իր վեհափառ տիրոջ քով, որ անհամբերութեամբ իրեն կը սպասէր։

— Ի՞նչ լուր, հարցուց բռնաւորը իր սիրականը տեսածին պէս:

— Ամէն բան յաջող է, վեհափառ տէր, պատասխանեց պալատականը, տիկինը միասին բերի և հիմա իր յարկաբաժինը գնաց հանգչելու։

Այդ ամէնը գիտեմ, ըսաւ Աբտիւլ Համիտ, ես կ'ուզեմ հասկնալ թէ ի՛նչ կարծիք կազմեցիր այդ կնոջ վրայ. անկե՞ղծ է թէ պարզապէս մեզ խաբել կ'ուզէ։

— Վեհափառ տէր, թէև առաջին վայրկեաններին շատ կասկածոտ էի իր մասին, բայց յետոյ երբ մէկ քանի անգամ հետը տեսնուեցայ, մանաւանդ շոգենաւին մէջ, մեր ճամբորդութեան միջոցին, բոլորովին համոզում գոյացուցի թէ անկեղծ է և թէ շատ ծառայութիւններ պիտի կրնայ մատուցանել մեզի։ Արդէն այդ մասին շատ շուտ պիտի կրնանք համոզում գոյացնել քանի որ խոստացած է իսկոյն իր յայտնութիւնները ընելու։

Բռնաւորը սկսաւ ժուռ գալ սենեակին մէջ, խորին մտատանջութեան մը մատնուած: Ի վերջոյ կանգ առաւ իր սիրական քարտուղարին մօտ եւ ըսաւ.

— Կ'ուզեմ անմիջապէս այդ կինը տեսնել։

Բռնաւորը թիկնաթոռի մը մէջ բազմած՝ ժուռնալներ կարդալու զբաղած էր երբոր հաւատարիմ սենեկապանը եկաւ իմացնելու թէ Իզզէթ փաշա տիկնոջ մը ընկերակցութեամբ եկած էր և հրաման կը խնդրէր ներս մտնելու։

— Թո՛ղ գան, ըսաւ Աբտիւլ Համիտ։

Յետոյ ցիրուցան թուղթերը ժողվեց մէկ կողմ դրաւ,

գրպանը նայեցաւ տեսնելու համար որ րէվոլվէրը հո՞ն էր և սպասեց։

Դուռը բացուեցաւ և Իզզէթ փաշա երեւցաւ տիկին Ժիւլիի հետ։ Ապտիւլ Համիտ նստած տեղէն աչքերը վեր վերցուց և ներս մտնողներուն նայեցաւ․ յետոյ ակնարկը սեւեռեց կնոջ վրայ և սկսաւ ուշադրութեամբ դիտել։ Ցանկարծ սարսուռ մը անցաւ իր մարմնոյն մէջէն… այս կինը կարծես թէ արդէն տեսած էր տեղ մը… այո՛, այդ քալուածքը, այդ դիմագիծերը, այդ հասակը ծանօթ կը թուէին իրեն։

Եւ սակայն չէր կրնար յիշել։

— Վեհափառ տէր, ըսաւ Իզզէթ փաշա սրահին մէջտեղը յարգանօք կենալով, պատիւ ունիմ ձեր բարձր վեհափառութեան ներկայացնելու տիկին Ժիւլի Սօթէրը, որ ձեր վեհափառութեան կամքին համեմատ Աթէնքէն եկաւ այսօր իր ծառայութիւնները մատուցանելու համար։

— Շատ գո՛հ ենք որ մեր հրաւէրը ընդունեց, պատասխանեց Ապտիւլ Համիտ։

Քարտուղարը սուլթանական խօսքերը թարգմանեց տիկնոջ որ գլուխը խոնարհեցուց իր շնորհակալիքը յայտնելու համար։

— Աթոռ մը հրամցուցէք տիկնոջը, ըսաւ բռնաւորը։

Իզզէթ փաշա փութաց մօտը գտնուող թիկնաթոռը ցոյց տալ տիկնոջ որ կրկին խոնարհութիւն մը ընելէ ետքը բազմեցաւ։

— Հիմա կրնաս մեզի առանձին թողուլ և քովի սրահը սպասել, շարունակեց Ապտիւլ Համիտ։

Քարտուղարը ետ ետ երթալով դուրս ելաւ սրահէն։

Պահ մը խորին լռութիւն տիրեց, որուն միջոցին Ապտիւլ Համիտ իր կասկածոտ նայուածքը անգամ մըն ալ չեշտակի ուղղեց տիկնոջ վրայ․ Յետոյ ըսաւ անոր ֆրանսերէն լեզուով, բառերը կամաց կամաց արտասանելով, որովհետեւ թէև ֆրան-

ուրէնի տեղեակ էր, սակայն բնաւ խօսելու առիթը չունենալով, դժուարութիւն կը կրէր միտքը բացատրելու։

— Տիկին ձեր գրութիւնը չափազանց շահագրգռեց զիս և ասոր համար ուզեցի ձեզ անձամբ ճանչնալ... կը յուսամ որ ձեր խոստումը պիտի կրնաք կատարել և արժանանալ կայսերական շնորհներու։

— Վեհափառ տէր, պիտի ջանամ հաւատարիմ մնալ իմ ըրած խոստումներուս և ապացոյցներով հաստատել թէ երբեք ձեզ խաբելու վատ դիտաւորութիւնը չեմ ունեցած, ինչպէս դուցէ ենթադրած էք. պատասխանեց տիկին Ժիւլի յարգալից բայց կորովի շեշտով մը։

Կնոջ ձայնը զոր առաջին անգամ կը լսէր բռնաւորը, նոր սարսուռ մը տուաւ իրեն.

— Զարմանալի բան մտածեց ինքնին, ինձ այնպէս կը թուի թէ այս ձայնը լսած եմ... բայց երբ, ի՞նչ պարագաներու մէջ...։

-- Փափաքած էիք ձեր յայտնութիւնները ընել ուղղակի ինձ. այժմ ահաւասիկ մինակ ենք և կրնանք ազատօրէն խօսիլ, շարունակեց Ապտիւլ Համիտ որ կը շտապէր ժամ առաջ տեսակցութիւնը աւարտելու, որովհետեւ այդ կինը անծանօթ երկիւղ մը կը պատճառէր իրեն։

— Նախ ձեզի կ՚ուզեմ յայտնել այն տեղը ուր քանի չափ պոմպաներ պահուած են պատեհ ժամուն գործածելու համար, ըսաւ Ժիւլի իր հանդարտ ձանովը։

«Պոմպա» բառը նոր սարսուռ մը տուաւ բռնաւորին։ Այդ բառը ո՛չ ոք կը համարձակէր արտասանել իր ներկայութեանը և ինքն իսկ կը վախնար անոր վրայ մտածելէ. թէեւ իր մեծագոյն մտատանջութիւնն էր։

— Բա՛ն պոմպա, իրա՞ւ կ՚ըսէք, գոչեց թիկնաթոռին մէջ կիսովի կանգնելով։

— Այո՛, վերջին կատարելութեամբ պատրաստուած քը-

սան պոմպա, որոնց մէկ հատը բաւական է այս ընդարձակ սրահը բնաջինջ ընելու։

— Բայց ըսէ՛ք, կ'աղաչեմ ո՛ւր պահուած են այդ պոմպաները. հոս մօտե՞րը, Պէշիկթաշի՞ մէջ. գոչեց բռնաւորը որ գրեթէ կը դողար։

— Չէ՛, վեհափառ տէր, պատասխանեց տիկին Ժիւլի, ամենայն համարձակութեամբ. Շիշլիի կողմերը առանձին ու փոքրիկ տան մը մէջ... պարտէզով շրջապատուած, քարաշէն փոքրիկ տուն մընէ. Պոմոնթիի գարեջուրի գործարան մօտերը, փողոցին անունը չեմ գիտեր և կարծեմ անուն ալ չունի, բայց եթէ ձեր վեհափառութիւնը կը փափաքի, կրնամ, այժմ իսկ գոց կառքով մը երթալ և ցոյց տալ հեռուէն այդ տունը...։

— Կը կարծէ՞ք որ տակաւին պոմպաները հոն պահուած ըլլան։

— Այդ մասին կատարելապէս վստահ եմ։

— Իսկ տանը մէջ շատ մարդ կա՞յ։

— Մէկ կամ երկու հոգի և անոնք ալ գրեթէ միշտ բացակայ են... այդ տունը իբրև մթերանոց կը ծառայէ միայն։

— Տիկին, պէտք է որ հիմա իսկոյն ցոյց տաք այդ տունը և եթէ ձեր հաստատածին պէս պոմպաները գտնուին հոն, վստահ եղէք որ մեծամեծ վարձատրութեանց պիտի արժանանաք։

— Շատ երախտապարտ եմ ձեր վեհափառութեան։

Աբտիւլ Համիտ իր քով սեղանին վրայ գտնուած զանգակը հնչեցուց։

Իր հաւատարիմ սենեկապանը իսկոյն երևցաւ։

— Իզզէթ փաշան հոս կանչէ, հրամայեց։

Երբ պալատականը ներս մտաւ, Աբտիւլ Համիտ ոտքի ելաւ և ըսաւ։

— Միթէ ոստիկանութեան նախարար Շէֆիք փաշան հո՞ս է։

— Այո՛, վեհափառ տէր, ձեր հրամանին կը սպասէ, պատասխանեց քարտուղարը։

— Թո՛ղ անմիջապէս տիկին Ժիւլիին ներկայանայ որ իրեն տուն մը ցոյց պիտի տայ Շիշլիի կողմերը և յետոյ միասին թող հոս վերադառնան...։

Տիկին Ժիւլի որ ինքն ալ արդէն ոտքի ելած էր, դուրս ելաւ սրահէն պալատականին ընկերակցութեամբ։

Ժամ մը ետքը եկան իրեն իմաց տալու որ Շէֆիք փաշան ու եւրոպացի կինը վերադարձած էին։

Անմիջապէս իր մօտ կանչել տուաւ ոստիկանութեան նախարարը։

— Գտա՞ք տունը, հարցուց անհամբերութեամբ։

— Այո՛, վեհափառ տէր։

— Միտքդ մնա՞ց տեղը։

— Բնականաբար, վեհափառ տէր, միայն թէ տիկինը չըսաւ թէ ի՛նչ պիտի ընէինք.

— Ահաւասիկ իրողութիւնը, գոչեց Ապտիւլ Համիտ բարկաճայթ ձայնով մը. կ'երեւայ որ այդ տանը մէջ քանի հատ պոմպա կայ եղեր պահուած...։

— Քանի պոմպա՛, գոչեց Շէֆիք փաշա։

— Այո՛ քանի պոմպա, շարունակեց բռնաւորը կատաղի նայուածք մը ուղղելով իր նախարարին... կը զարմանա՞ս հէ՛, կը զարմանաս որ միայն քանի պոմպա կայ եղեր... իրաւունք ունիս, քեզի պէս աւանակ ոստիկանութեան նախարար մը ըլլալէ ետքը ո՛չ թէ քանի հատ, ո՛չ թէ հարիւր հատ այլ հազարներով պոմպա պէտք էր որ գտնուէր ամէն տեղ...։

Շէֆիք փաշա, գլուխը կախ, մտիկ ըրաւ այս նախատինքներու, առանց ամենափոքր ընդվզում մը զգալու։ Ապտիւլ Համիտ վարժեցուցած էր իր նախարարները այսպէս նախատինքներու։

— Անիշխանականներ Պոլիս կը մտնեն կ'ելլեն պոմպա ու տինամիտ կը փոխադրեն, շարունակեց Սուլթանը հեւաղհե-

տէ բորբոքելով, նոյնիսկ հոս Եըլտըզին քով եղեռնագործութիւններ կը կատարեն արձակ համարձակ և դուն ո՛չ լուր ունիս, ո՛չ ալ առաջքը կրնաս առնել, չէ՛ այդ չափ աւանակութիւն ներելի չէ, ո՛չ ալ կարելի է. . շատ հաւանական է որ ամէն բան գիտես, ամէն բանէ տեղեկութիւն ունիս, բայց փոխանակ չարիքը արգիլելու աչք կը գոցես, կաշառուելով... խոստովանէ՛ որ կաշառուած ես...։

— Վեհափառ տէր, կմկմաց խեղճ Նախարարը ողորմելի կերպարանքով մը։

— Խոստովանէ՛ որ այդ անիշխանականներուն գործիք եղած ես, պոռաց Աբտիւլ Համիտ:

— Վեհափառ տէր, ամբողջ կեանքս, ամբողջ հոգիս ձեր բարձր վեհափառութեան նուիրած եմ, գիշեր ցերեկ ձեր նուիրական անձին ապահովութեանը համար կ՚աշխատիմ, կակազեց Շէֆիք բաշա։

Աբտիւլ համիտ որ արդէն գիտէր թէ իր ամբաստանութիւնները անհիմն էին, չի պատասխանեց, պահ մը ժուռ եկաւ սենեակին մէջ և յետոյ ըսաւ.

— Ինչ որ է, պարապ ժամանակ չանցնենք, հիմա անմիջապէս այդ տունը պէտք է պաշարել տաս ու պոմպաները երեւան հանես և իսկոյն Թօփհանէ փոխադրել տաս։

Ոստիկանութեան Նախարարը ահաբեկ կերպարանքով մը դուրս ելաւ տիրոջ քովէն։

Աբտիւլ Համիտի խօսքերէն աւելի՝ քան պոմպաներու յայտնութիւնը զինքը սարսափեցուցած էր։ Սէլամլըքի մահափորձէն ի վեր արդէն ինք շարունակական ահուդողի մը մէջ կ՚ապրէր և միշտ կասկածներ ունէր որ իրեն դէմ ալ այդպիսի փորձեր_պիտի կատարուէին, որովհետև գիտէր որ թէ Թուրք և թէ հայ յեղափոխականները զինքը կ՚ատէին։

Վերադառնալով նշանակուած տունը, Շէֆիք փաշա և իր մարդիկը, խուզարկութենէ մը ետքը, խոհանոցին փայտի մըթերանոցին մէջ, գտան քանիերկու խոշոր պոմպաներ զորս

ամենայն զգուշութեամբ յատկապէս պատրաստուած կառքերը ղրկին ու փոխադրեցին Թօփհանէ ուր նախնական քննութիւն մը ցոյց տուաւ թէ անոնք խիստ վտանգաւոր պայթուցուկ նիւթերով լեցուած էին։

Այս ամէն գործողութիւնները կատարուելէ ետքը, Շէֆիք փաշա գոհ եւ յաղթական, կառք մը մտաւ իսկոյն Եըլտըզ երթալու համար իր վեհափառ տիրոջ.

Ռումբերու գիւտը բերնէ բերան արդէն տարածուած էր պալատին մէջ, մեծ յուզում առաջ բերելով։ Պալատականները նոյնիսկ իմացած էին որ իբրեւ սուլթանուհիներու վարժուհի եկող կինն էր որ երեւան հանած էր այդ գործը. Նոյնիսկ պնդողներ կային թէ այդ տիկին Միւլլին ուրիշ մէկը չէր այլ բուն իսկ Շէրլօք Հոլմսի կինը որ իր ամուսնոյն չափ ճարպիկ էր։

Գալով Ապտիւլ Համիտի, իր ուրախութիւնը չափ չունէր. եթէ կար բան մը որ ինքզինքը յուսախաբ ըրած էր, այն ալ տանը մէջ մէկը չգտնուիլն էր։ Որչա՜փ աղէկ պիտի ըլլար եթէ այդ անիծեալ անիշխանականներէն մէկը ձեռք ձգէին և անոր միջոցաւ իրեն դէմ սարքուած դաւադրութեան հետքը գըտնուէր։

— Բայց, կը մտածէր բռնաւորը, հիմա որ տիկին Միւլլիի պէս օժանդակ մը ունինք մեր քով. անշուշտ այդ մարդիկն ալ պիտի յաջողինք ձեռք անցնել։

Ապտիւլ Համիտ ա՜յնքան գոհ մնաց իր նախարարին տըուած տեղեկութեններէն որ 500 ոսկի նուիրեց Շէֆիք փաշայի, գիտնալով հանդերձ որ այս գործին մէջ ո և է արժանիք մը չէր ունեցած։

Շէֆիք փաշան հեռանալէն ետքը, Ապտիւլ Համիտ իր քով կանչել տուաւ Իզզէթ փաշան։

— Կ'ուզեմ որ, ըսաւ, տիկին Միւլլիի մասնաւոր հոգ տարուի և իր հանգստութեանը համար բան մը չի խնայուի... ասկէ զատ հիմա իմ կողմէս իրեն նուէր պիտի տանիս թան-

կազին ապարանջան մը և ըսես իրեն որ շատ գոհ մնացած եմ իր մատուցած ծառայութենէն ։

— Գլխուս վրայ, վեհափառ տէր ։

— Պէտք է ջանանք որ այս կինը միշտ մեր քովը ունենանք, որպէս զի օգուտ քաղենք իր ծառայութիւններէն ամէն անգամ որ պէտք ըլլայ ։

— Արդէն ինքն ալ տրամադիր է մնալու ։

— Վաղը առտու կը փափաքիմ նորէն տեսնել զինքը ։

— Ձեր փափաքը կը հաղորդեմ իրեն ։

Ապտիւլ Համիտի երկրորդ տեսակցութիւնը տիկին Ժիւլիի հետ շատ աւելի սիրալիր և մտերմական եղաւ ։ Այդ անգամ բանաւորը աւելի վստահութեամբ ընդունեց զինքը և շատ աւելի երկար ատեն իր քովը պահեց ։

— Գոհ եմ որ ձեր վեհափառութեան վստահութիւնը սկըսայ գրաւել, ըսաւ օտարուհին, երբ առանձին մնացին և պիտի ջանամ ինքզինքս արժանի ցուցունել այդ վստահութեան ։

Բայց Ապտիւլ Համիտ միայն քաղաքավարական կամ շընորհակալութեան խօսքեր փոխանակելու համար չէր որ զայն իր քով կանչած էր, այլ միմիայն նորանոր տեղեկութիւններ առնելու համար, ուստի այդ խօսքերը անուշ տեղը կապելով ըսաւ․

— Հիմա կը սպասեմ ձեր նոր յայտնութիւններուն, որովհետեւ ըսիք թէ միայն մէկ տեղ մը չէ որ պահուած են այդ պայթուցիկ նիւթերը ։

— Այո՛, այդպէս ըսի և ըսածս կը կրկնեմ ... տակաւին տինամիթ ալ կայ պահուած ։

— Տինամի՜թ ... տինամի՜թ, գոչեց Ապտիւլ Համիտ դող ելած ։

— Այո՛, վեհափառ տէր, արդէն այս բանը պատիւ ունեցայ յայտնելու ձեր վեհափառութեան ։

— Շուտ ըսէք խնդրեմ, ո՞ր կողմ պահուած են այդ տինամիթները ։

— Երբ ես մեր ընկերներէն չէի բաժնուած, այն ատեն գիտեմ որ Պէօյիւքտէրէի կողմը, Հիւնքեար Սույիի վերերը, ապառաժներու մէջ մեծ քանակութեամբ տինամիթ պահուած ունինք կամաց կամաց պիտի փոխադրուէին քաղաք, սակայն չեմ գիտեր թէ մինչեւ հիմա այդ տեղ մնացած են...։

Այդ բանը կարելի է անմիջապէս ստուգել, տեղւոյն վրայ քննութիւն մը կատարելով պատասխանեց Ապտիւլ Համիտ։

Անշուշտ. բայց ես շատ կը կասկածիմ որ արդէն այդ տեղէն վերցուած ըլլան։

— Եթէ կը հաճիք, մէկ երկու ժամէն կրնանք իմանալ։

— Ես միշտ պատրաստեմ ձեր վեհափառութեան հրամանները գործադրելու։

— Ուրեմն կրկին մեր Շէֆիք փաշային հետ կառք մը կը նստիք, կերթաք մինչեւ ձեր բսած տեղը եւ իրեն ցոյց կուտաք այն ապառաժները ուր կ'ըսէք թէ տինամիթ պահուած է:

— Շատ լաւ։

— Վստա՞հ էք թէ տեղը լաւ պիտի յիշէք։

— Բնականաբար... այդ ապառաժներուն մէջ խոռոչ մը կայ, բաւական խոր, գրեթէ փոքրիկ քարայրի մը պէս, ահաւասիկ հոն պահուած էին։

— Ուրեմն, իսկոյն պէտք եղած հրամանները պիտի տամ որպէսզի քննութեան ձեռնարկուի։

Այս անգամ ալ գործը յաջող անցաւ, միայն թէ տիկին Ժիւլիի ըսածին չափ մեծ քանակութեամբ տինամիթ չգտնուեցաւ նշանակեալ տեղը, այլ հազիւ 8-10 քիլօ։

Ապտիւլ Համիտ ուզեց այս բանին պատճառը իմանալ:

— Ես վստահ եմ որ այդտեղ ո՛չ թէ 10 քիլօ, այլ գուցէ 200 քիլօ տինամիթ պահուած էր, հաւաստեց տիկին Ժիւլի իր հանդարտ ու կորովի շեշտովը։

— Ուրեմն ինչպէ՞ս կը բացատրէք ասիկա։

— Շատ պարզ է... տինամիթին մեծ մասը ուրիշ տեղ փոխադրած են...։

— Ուրի՞շ տեղ...

— Այո՛, հաւանօրէն այս կողմերը տեղ մը, որպէսզի պատեհ առթիւ գործածեն, որովհետեւ այդ մարդիկը եթէ տինամիթը հոս մտցուցին անշուշտ գործածելու համար եւ ոչ թէ լեռան մը գլուխը յաւիտեան պահելու։

Տիկին Ժիւլիի այս բացատրութիւնները ա՛լ աւելի անհամբերեցին կասկածոտ Բռնաւորը:

— Ուրեմն հիմա կը կարծէք որ այդ տինամիթները հո՞ս փոխադրուած են որպէսզի գործածուի՛ն, հարցուց։

— Շատ հաւանական է...։

— Ինչպէս պիտի կրնանք ուրեմն գտնել իրենց թաքստոցը...։

— Վեհափառ տէր, պատասխանեց տիկին Ժիւլի հանդիսաւոր շեշտով մը, քանի որ յանձն առի ձեզ ծառայելու անձնուիրաբար, մինչեւ ետքը պիտի ջանամ ձեռքէս եկածը ընելու... միայն թէ ասոր համար պէտք է ինծի ժամանակ տալ։

— Ինչպէ՛ս, գոչեց Ապտիւլ Համիտ ուրախութեամբ, կը յուսա՞ք որ պիտի յաջողիք այդ փոխադրուած տինամիթները գտնել... բայց ինչպէս, քանի որ հիմա ձեր հին բարեկամներէն զատուած էք ու անոնց հալածանքներուն ենթարկուած։

— Ես միջոցներ ունիմ ամէն բան իմանալու, միայն թէ ժամանակի կարօտ է։

— Քանի՞ օր։

— Կը խոստանամ մինչեւ երեք օր ամէն բան հասկնալ եւ ձեզի իմացնել։

— Բայց եթէ մինչեւ այն ատեն այդ մարդիկ իրենց նոր ոճիրները գործեն։

— Այդ մասին չեմ կրնար պատասխանատուութիւն ստանձնել։

Բռնաւորը պահ մը խորին մտածումներու մէջ թաղուած մնաց, յետոյ գլուխը վեր առաւ եւ ըսաւ.

— Ձեր այդ ծառայութիւնները ընելու համար ի՞նչ միջոցներ պիտի գործածէք։

— Այդ իմ գիտնալիք բանս է, պատասխանեց Ժիւլի կոբալի ձայնով մը, այս վայրկեանէս իսկ պիտի հեռանամ Երլտըղէն եւ երեք օր անյայտ պիտի մնամ... մանաւանդ պիտի խնդրեմ ձեր վեհափառութենէն որ բնաւ երբեք իմ վրաս հըսկելու համար միջոցներ ձեռք չառնէ, որովհետեւ շատ գաղտնապահութեամբ պէտք է գործ տեսնել... մեր թշնամիները չափազանց վարպետ ու փորձառու են եւ եթէ ամենափոքր կասկած մը ունենան, ամէն բան կրնայ խանգարուիլ։

— Բայց դուք հոս եկած ատեննիդ պայման դրած էք որ ձեր ապահովութեան վրայ հսկենք, դիտել տուաւ Ապտիւլ Համիտ որ չէր ուզեր այդ կինը ձեռքէ փախցնել։

— Այո, այդ պայմանը դրի թէեւ, սակայն վեհափառ տէր, այս պարագային ձեր կողմէ ըլլալիք հսկողութիւնը ուրիշ բանի չպիտի կրնայ ծառայել այլ եթէ ընդհակառակը զիս բոլորովին վտանգել եւ ինծի հետ նաեւ մեր բոլոր յաջողութիւնները ջուրը ձգել։

«Արդեօք այս կինը խաղ մը խաղաց ինծի, խորհեցաւ բռնաւորը, արդեօք տեսնելով որ այլեւս չպիտի կրնայ նոր յայտնութիւններ ընել, կ'ուզէ վարպետութեամբ մը ձգել փախչիլ...։

Եւ սակայն ճար չի կար զինքը բռնի վար դնելու եւ նոյնիսկ այդպիսի բռնութիւնը ո՛ եւ է բանի մը չպիտի ծառայէր...։

— Այո, այս կինը պիտի փախչի, վճռեց Ապտիւլ Համիտ իր տուած թանկագին նուէրները եւ դրամական պարգեւները բաւական համարելով՝ կ'ուզէ վերադառնալ Եւրոպա, առանց նորանոր յայտնութիւններով ինքզինքը վտանգելու...։

Տիկին Ժիւլի, որ Ապտիւլ Համիտի լուռ ու մտահոգ վիճակը կը դիտէր իր սուր ու թափանցող ակնարկով, կարծես գուշակեց անոր մտքէն անցածը եւ ձայնը բարձրացնելով ըսաւ.

— Վեհափառ տէր, գուցէ տակաւին իմ անկեղծութեանս չէք համոզուած կատարելապէս եւ այժմ ալ կը կասկածիք այս ըսածներուս վրայ եւ գուցէ կ'ենթադրէք որ անկարողութեան

մատնուած կ՚ուզեմ վարպետութեամբ մը ձգել հեռանալ պալատէն գոհանալով ձեր վեհափառութեան մինչեւ հիմա ըրած շնորհներէն...։

Այս խօսքերուն վրայ բռնաւորը զարմանքով տիկին Ժիւլիի երեսը նայեցաւ։ Ինչպէս այդ կինը իր մտքէն անցածը կէտ առ կէտ կրցած էր գուշակել...։ Տիկին Ժիւլի որ նշմարած էր այդ վարմացկոտ ակնարկը, հասկցաւ թէ չէր սխալած իր ենթադրութեանցը մէջ և աւելի հաստատուն ձայնով մը շարունակեց։

— Վեհափառ տէր, ձեր այդ կասկածները հերքելու համար, կ՚ուզեմ ձեր բոլոր նուէրները և դրամական պարգեւները հոս, ձեր մօտ աւանդ թողուլ և զանոնք վերստին չպահանջել մինչեւ որ խոստացած այս նոր ծառայութիւնս չմատուցանեմ...։

Այս խօսքերը այնպիսի խորին համոզումով ու կորովի շեշտով մը արտասանեց որ Աբտիւլ Համիտ զինաթափ եղաւ։

— Լաւ ուրեմն, պատասխանեց, կ՚ընդունիմ ձեր առաջարկը և կը խոստանամ ձեզ ազատ թողուլ որպէսզի ձեր գիտցած ձեւովը քննութիւնը առաջ տանիք և արդիւնքը ինծի յայտնէք... բայց գոնէ ինծի ըսէք թէ վստա՞հ էք յաջողելնուդ։

— Կը խոստանամ մինչեւ երեք օր ձեզի վճռական պատասխան մը բերելու... գուցէ աւելի առաջ, բայց ոչ աւելի ուշ։

Այս տեսակցութենէն ետքը, իրաւամբ տիկին Ժիւլի մեկնեցաւ Եըլտըզի պալատէն բոլորովին առանձին և առանց լըրտեսներէ հալածուելու։

Աբտիւլ Համիտ կամաց կամաց կը սկսէր բացարձակ վըստահութիւն ունենալ այդ անծանօթ կնոջ վրայ։ Անոր անշահախնդրութիւնը մանաւանդ զինքը չափազանց կ՚ապահովէր։ Մինչեւ հիմա իրեն մօտեցողները լոկ դրամ շահելու հետամուտ բախտախնդիրներ և յաճախ ալ բացարձակ խաբեբաներ էին։

Առաջին անգամն էր որ այդ կինը բացառութիւն կը կազմէր և դրամ չահելէ աւելի օգտակար ըլլալու կը ջանար, նոյնիսկ իր կեանքը վտանգելով։ Այս երեւոյթը չափազանց կը զարմացնէր, կասկածոտ բռնաւորը, որ երբեք հաւատք չունէր մարդկային ուղղամտութեան վրայ։



# ՎԵՐՋԱԲԱՆ

Տիկին Ժիւլի Սօթէր իր խոստումին հաւատարիմ գտնուեցաւ։ Երեք օր վերջը վերատարձաւ պալատ և անմիջապէս ուզեց Ապտիւլ Համիտի ներկայանալ։

Սուլթանը, որ արդէն անհամբեր կը սպասէր անոր, իսկոյն հրամայեց որ զայն իր ներկայութեան կոչեն։

— Վեհափառ տէր, ըսաւ տիկինը երբ բռնաւորին ներկայացաւ, բարեբախտ եմ ձեզ աւետելու որ իմ յուսացածէս շատ աւելի յաջողութեամբ գլուխ հանեցի իմ խուզարկութիւններս։

— Իրա՞ւ կ'ըսէք, գոչեց բռնաւորը ուրախութեամբ։

— Այո՛, և ասոր ապացոյցները քիչ ետքը պիտի տամ... ձեր Թանկագին կենաց դէմ նոր դաւադրութիւն մը կը պատրաստուի եղեր այս անգամ ո՛չ թէ դուրսը Սէլամլըգի միջոցին՝ այլ նոյնիսկ այս պալատին մէջ...։

— Ի՞նչ, այս պալատին մէջ, գոչեց Ապտիւլ Համիտ չուաբած, այս պալատին մէջ ինծի դէմ մահափորձ մը պիտի կատարեն...։

— Այո՛, վեհափառ տէր, բուն իսկ այս պալատին մէջ, շարունակեց տիկինը իր անայլայլ ու հաստատ ձայնովը, և

բոլոր տինամիթը, որ Պէօյիւքտէրէյի քարայրներուն մէջ պահուած էր այդ բանին պիտի գործածուի եղեր և ասոր համար փոխադրուեր է այստեղ...։

— Այստեղ...։

— Այսինքն Պէշիքթաշ...։

— Պէշիքթա՛շ, Երլտըզին մօ՞տ, գոչեց Ապտիւլ Համիտ տեղէն ցատկելով. ո՞ւր, ո՞ւր, չուտ ըսէ՛ք, տիկին ուր կը գտնուին այդ պայթուցիկ նիւթերը...։

— Վեհափառ տէր. մի՛ խռովիք, պատասխանեց տիկին Ժիւլի ամենայն հանդարտութեամբ, այդ պայթուցիկ նիւթերը մեզի շատ մօտ կը գտնուին, բայց աւելի լաւ...։

— Ինչպէ՞ս աւելի լաւ...

— Այո՛, որովհետև աւելի շուտ կրնանք ձեռք անցնել։

— Բայց ըսէ՛ք, շուտով ըսէք թէ ո՞ւր կը գտուին այդ տինամիթները։

— Եթէ ձեր վեհափառութիւնը կը փափաքի, անմիջապէս պատրաստ եմ ցոյց տալու այն տեղը, ուր այդ տինամիթները պահուած են...։

— Այո՛, այո՛, անմիջապէս։

— Ուրեմն հրաման ըրէք ձեր մարդոցը որ ինծի ընկերանան։

Այս անգամ տիկին Ժիւլիի յաջողութիւնը կատարեալ եղաւ։ Երլտըզի մօտերը պալատականի մը տան պարտէզին մէջէն 40 քիլօ տինամիտ գտնուեցաւ, փայտերու տակ ծածկըւած։ Պալատականը, որ Ապտիւլ Համիտի ամենէն հաւատարիմ լրտեսներէն մին էր, իսկոյն ձերբակալուեցաւ և սակայն կարելի չեղաւ գիտնալ թէ այդ տինամիթները ո՞վ դրած էր պարտէզին մէջ։ Պալատականը այնքան վստահելի անձ մըն էր որ նոյնիսկ Ապտիւլ Համիտ հակառակ այդ տինամիթներուն յայտնութեան, չկրցաւ զայն յանցաւոր ճանչնալ և գոհացաւ միայն զինքը պալատէն հեռացնելով։

Բայց տիկին Ժիւլիի յայտնութիւնները այստեղ կանգ չա-

ալին, Բերա, Սկիւտար նոյնիսկ Քիւչիւք Չէքմէճէ պահուած տինամիթները գտնուեցան…։

Ապտիւլ Համիտ ալ բոլորովին խելքը կորսնցուցած էր․ վայրկեան մը չէր կրնար հեռանալ տիկին Ժիւլէն որուն վրայ կեդրոնացուցած էր ամբողջ վստահութիւնը։ Եւ սակայն տինամիթները այլեւս սպառած էին․ գոնէ այնպէս կը յայտարարէր անիշխանականներու նախկին ընկերակիցը։

— Չէ՛, կը պնդէր Ապտիւլ Համիտ, այս մարդիկը ուրիշ տեղեր ալ տինամիթ պահած են, պէտք է որ անոնք ալ երեւան հանէք։

Եւ որպէս զի տիկին Ժիւլին դոհացնէ ա՛լ ամէն տեսակ պարգեւներով ու նուէրներով կ'ողողէր զայն։ Պալատին մէջ բացառիկ դիրք մը ստացած էր հիմակ տիկին Ժիւլի, որուն առջեւ ամէնքը կը խոնարհէին։ Իզզէթ փաշա որ առաջին օրերուն շատ գոհ էր այս անծանօթ տիկնոջ յաջողութիւններէն որուն օգուտները ինքն ալ կը քաղէր, սկսաւ, ի վերջոյ, խեռ աչքով մը նայիլ անոր հետզհետէ Ապտիւլ Համիտի վրայ ստացած ազդեցութեանը։ Նոյնպէս միւս պալատականները հաշտ աչքով մը չէին նայեր այդ անծանօթ կնոջ ու այսպէս գերիվեր իշխանութիւն մը ձեռք կը բերէր իր մատուցած ծառայութիւններուն շնորհիւ։

Տիկին Ժիւլի կը զգար այդ ամէնքը, բայց այնքա՜ն վստահ էր իր կարողութեան վրայ որ բնաւ կարեւորութիւն չէր տար իր դէմ ծածկաբար եղած թշնամութեանց։

Հիմա կը մնար բո՞ւն իսկ անիշխանականները ձեռք ձգել ու զանոնք մէկիկ մէկիկ ձերբակալելով, երկրէն դուրս վտարել։

Սուլթան Համիտ սկսաւ այդ բանին հետամուտ ըլլալ և ասոր համար կրկին դիմեց իր նախախնամական աջակցին տիկին Ժիւլիի։

— Բայց, վեհափառ տէր, շատ դժուարին ծառայութիւն մը կը պահանջէք ինէ, առարկեց տիկինը, ինչպէ՞ս կ'ուզէք որ

ես կարենամ այդ մարդիկը ցոյց տալ ձեզի... հիմա որ անոնց բոլոր պայթուցիկ նիւթերը երեւան հանեցի։

— Բայց անշուշտ անոնցմէ մէկ քանին կը ճանչնանք...։

— Այո՛, այդ բանը չեմ ուրանար, սակայն և այնպէս չեմ համարձակիր... որովհետեւ այդպիսի մատնութիւն մը երբեք չպիտի ներեն ինծի...։

— Ես պատրաստեմ ամէն ապահովութիւն տալ և նոյնիսկ եթէ հարկ ըլլայ, ամբողջ բանակս ձեր անձին պաշտպանութեան յատկացնել...։

Բռնաւորը այնքա՞ն թախանձեց, այնքան աղաչեց, պաղատեցաւ, ա՛յնքան խոստումներ ու պարգեւներ շռայլեց որ վերջապէս տիկին Ժիւլի հաւանեցաւ մէկ երկու օր բացակայելով նոր քննութեան մը ձեռնարկել ու անիշխանականներու թաքստոցները երեւան հանել։

Այս նոր քննութիւնը երկու օր միայն տեւեց և ահա՛ տիկին Ժիւլի կրկին երեւցաւ Եըլտըզի մէջ։ Հազիւ պալատէն ներս մտած, ուզեց իսկոյն Իզզէթ փաշան տեսնել։

Ապտիւլ Համիտի սիրական քարտուղարը իր վեհափառ տիրոջ քով ստիպողական գործով մը զբաղած էր, տյսուհանդերձ տիկին Ժիւլիի գալուստը և զինքը անմիջապէս տեսնել ուզելը լսածին պէս վազեց իր յարկաբաժինը ուր արդէն տիկինը իրեն կը սպասէր։

— Փաշա էֆ. գոչեց տիկինը առանց ուրիշ նախաբանի և խիստ յուզուած երեւոյթով մը. մեծ վտանգ մը կը սպառնայ մեր վեհափառ տիրոջ, անմիջական վտանգ մը...։

— Ի՞նչ կ'ըսէք, գոչեց պալատականը գոյնը նետած կ'աղաչեմ, շո՛տ, խօսեցէք, ձեր միտքը բացատրեցէ՛ք...։

— Այո՛, իմ նոր քննութիւններուս արդիւնքը այն եղաւ որ նոր մահափորձ որ այս անգամ տեղի պիտի ունենայ պալատին մէջ...։

— Պալատի՞ն մէջ... բայց անկարելի է, տիկին ձեզ սխալ տեղեկութիւններ տրուած են։

— Ընդհակառակը իմ առած տեղեկութիւններս շատ ապահով են… վերջին անգամ համաձայնութիւն մը գոյացած է Եւրոպայի անիշխանականներուն և Թուրք յեղափոխականներուն միջեւ և երկու մարմինները միասին պատրաստած են նոր մահափորձը…։

— Բայց քանի որ ձեր շնորհիւ բոլոր պայթուցիկ նիւթերը գրաւեցինք…։

— Ո՛չ, բոլորը, մէնէլիթի ամբողջ սնտուկ մը տակաւին իրենց քովն է եղեր…։

— Եւ ո՞ւր կը գտնուի այդ սնտուկը։

— Կամ արդէն Եըլտըզի մէջ է և կամ հոն բերուելու վըրայ է, պատասխանեց տիկին Ժիւլի այնքան հաստատ ու ապահով շեշտով մը որ Իզզէթ փաշայի գոյնը նետեց։

— Բայց այս պալատին մէջ, մանաւանդ վերջին մահափորձէն ի վեր ո՛չ մէկ անծանօթ մարդ ոտք կրնայ դնել, ամէն կողմ ամենախիստ հսկողութիւն կը կատարուի։

— Ո՛վ ըսաւ թէ անծանօթ մարդիկ այդ մենելիթի սընտուկը հոս պիտի փոխադրեն։

— Հապա ո՞վ…։

— Նոյնիսկ պալատին մէջ բնակող, ազատ ել ու մուտ ունեցող, հաւատարիմ կարծուած պալատականներ, դուցէ նոյն իսկ անոնք որոնց յանձնուած է հսկողութեան հոգը…։

— Բայց, տիկին, գիտցէ՛ք որ սարսափելի ամբաստանութիւն մը կ'ընէք։

— Ես պարզապէս իմ առած տեղեկութիւններս է որ կը հաղորդեմ։

— Ուրեմն ի՞նչ միջոցներ ձեռք պիտի առնենք Սուլթանին և մեր ամենուս կեանքը ապահովելու համար, հարցուց։

— Այս մասին կ'ուզեմ բոլորովին առանձին խորհրդակցիլ վեհափառ Սուլթանին հետ։

— Ուրեմն անմիջապէս երթամ իմաց տալու…։

Պալատականը գրեթէ վազելով փութաց իր տիրոջ քով և

անոր հաղորդեց տիկին Ժիւլիի խօսքերը։ Ապտիւլ Համիտ սարսափահար լսեց այդ նոր մահափորձին պատմութիւնը և անմիջապէս իր քով հրաւիրեց տիկին Ժիւլին։

Երբ առանձին մնացին, տիկինը կասկածոտ նայուածքով մը սենեակին չորս կողմը զննելէ ետքը ըսաւ.

— Վեհափառ տէր. բացարձակապէս վստա՞հ էք որ առանձին ենք և թէ մեր խօսքերը ո՛չ ոք պիտի լսէ։

— Այո՛, պատասխանեց Սուլթանը. բայց ա՛լ աւելի ապահովութեան համար, եթէ կ'ուզէք իրարու մօտենանք ու ցած ձայնով խօսի՛նք...։

— Ճիշդ ես ալ այդ շնորհը պիտի խնդրէի ձենէ...։

Ուրեմն մօտեցէ՛ք։

Ապտիւլ Համիտ, իր սովորութեան համեմատ, սենեակին մէջտեղը, թիկնաթոռի մը վրայ բազմած էր։ Տիկին Ժիւլի մէկ քանի քայլ մօտեցաւ։

— Աւելի մօտեցէ՛ք, հրամայեց բռնաւորը։

Տիկին Ժիւլի քանի մը քայլ եւս առաւ հիմա հազիւ թէ մէկ մետր հեռաւորութիւն կար երկուքին միջեւ։

— Վեհափառ տէր, սկսաւ տիկինը ցած ձայնով, հակառակ ձեր ձեռք առած ծայրահեղ զգուշութիւններուն, յեղափոխականները իրենց մարդիկը ունին պալատին մէջ. հոս ձեր շուրջը...։

— Ինչ, հո՞ս, Եըլտըզի մէջ, յեղափոխականնե՞ր կան, պատասխանեց բռնաւորը այլայլած դէմքով մը։

— Այո՛, վեհափառ տէր, և ո՛չ թէ մէկ կամ երկու հատ, այլ շա՜տ աւելի։

— Բայց ապացոյց, շո՛ւտ ապացոյց տուէք։

— Հիմա ձեր փափաքած ապացոյցները պիտի տամ...։

— Անունները, անունները ըսէք, շարունակեց Ապտիւլ Համիտ։

Տիկին Ժիւլի փոխանակ իսկոյն պատասխանելու, կրկին իր կասկածոտ ակնարկը պտտցուց սենեակին չորս կողմը։

Ապտիւլ Համիտ տեսնելով որ տիկին Ժիւլի տակաւին վախ կը զգայ խօսելու, ըսաւ.

— Աւելի մօտեցէք։

— Շատ լաւ, վեհափառ տէր։

Այս անգամ ա՛լ գրեթէ բոլորովին մօտեցած էր բանուորին։

— Այո՛, ըսաւ ցած ու խորհրդաւոր ձայնով մը, անհերքելի ապացոյցներ ունիմ ձեռքս որ նոր մահափորձ մը պատրաստուած է ձեր վեհափառութեան թանկագին կենաց դէմ։

Բանուորը սարսռաց. կնոջ այդ ձայնը, ականջին մօտ, տարօրինակ ազդեցութիւն մը գործեց վրան.

Բայց ո՞ւր լսած եմ ես այս ձայնը. խորհեցաւ դարձեալ ինքնիրեն, ինչպէս խորհած էր տիկին Ժիւլին առաջին անգամ տեսնելուն։

Յետոյ, յանկարծ, սոսկումով ցնցեց.

— Այո՛. Սափրճա Համբրմին ձայնն է հիմա միտքս ինկաւ։

— Կինը քիչ մըն ալ մօտեցած էր իրեն, թիկնաթոռին ճիշտ ձախակողմը և ականջին ծռած կը փսփսար.

— Վերջապէս յաջողեցայ Եըլտըզի պալատին մէջ յեղափոխականներու մեղսակիցներուն անունները իմանալ... այն մարդոց անունները որոնք դինամիթը պալատին մէջ պիտի խօթեն ու պայթեցնեն...։

Ապտիւլ Համիտ խելայեղ ակնարկ մը նետեց տիկին Ժիւլիի վրայ.

— Որո՞նք են... Շո՛ւտ ըսէք.

Տիկինը ձախ ձեռքը թիկնաթոռին յենարանին կռթնցուց դէպի բանուորը ծռեցաւ և ըսաւ.

— Նախ ձեր հաւատարիմ կարծած սենեկապանը, այն որ միշտ ձեր դրան առջև կը սպասէ. այն որուն յանձնած էք ձեր թանկագին կեանքը...

Բանուորը ա՛լ ինքզինքը բոլորովին կորսնցուց. կարծես թէ սոսկալի երազ մը կը տեսնար...։

— Բայց ապացոյցը պիտի տամ, շարունակեց տիկին Ժիւլի ա՛լ աւելի ծռելով դէպի Ապտիւլ Համիտը, որ անշարժ, մագնիսացած, անոր կը նայէր մոլորեալ աչքերով,

— Ուրի՞շ, ուրիշ ո՞րոնք կան, հարցուց դողահար ձայնով։

— Երկու թիկնապահներ և... Թահսին փաշան...

— Անկարելի՛ է, գոչեց բռնաւորը, անկարելի է... ապացոյց կ'ուզեմ.

Նոյն միջոցին տիկին Ժիւլի, ձախ ձեռքը որով թիկնաթոռին յենարանը բռնած էր, շրջազգեստին գրպանը տարաւ և հոնկէ փոքրիկ տուփիկ մը հանեց, զոր իսկոյն սահեցուց Ապտիւլ Համիտի լայն վերարկուին գրպանը։ Այս գործողութիւնը այնքա՛ն արագ տեղի ունեցաւ, Ապտիւլ Համիտ այնքա՛ն միտքը սեւեռած էր յայտնութիւններով, որ բան մը չնշմարեց։

Կինը որ ալ պէտք չունէր այնքա՛ն մօտենալու բռնաւորին, թողուց թիկնաթոռը, քայլ մը ետ գնաց, գլուխը վեր առաւ և ըսաւ.

— Ապացո՞յց կ'ուզէք, վեհափառ տէր, հիմա ձեզի պիտի բերեմ, միայն թէ գոնէ քառորդ մը շնորհեցէք ինծի...։

— Լա՛ւ, գացէք ու շուտով վերադարձէք։

Տիկին Ժիւլի ակնածական խոնարհութիւն մը ըրաւ և դուրս ելաւ սենեակէն։

Դուրսի սրահին մէջ սենեկապանը և թիկնապահ մը կը սպասէին, որոնք խորին հարգանքով բարեւեցին տիկինը։ Այդ անծանօթ կինը, քանի մը օրուան մէջ, այնպիսի բացառիկ ազդեցութիւն մը ստացած էր պալատին մէջ որ ամէնքը կը խոնարհէին իր առջեւ։ Արագ արագ քայլերով անցաւ նրբանցքներէն, իր յարկաբաժինը գնաց գլխարկը դրաւ և իսկոյն Իզզէթ փաշայի սենեակը ուղղուեցաւ։

— Փաշա, ըսաւ անոր, կ'աղաչեմ որ ինծի ընկերանաք մինչեւ պալատին դուռը։ Վեհափառ Սուլթանը ստիպողական հրաման մը ըրաւ, զոր գործադրելու կ'երթամ..., խնդիրը նոր

պատրաստուած մահափորձին վրայ է․․․ ։ Կը վախնամ որ դուցէ պահապանները դժուարութիւն յարուցանեն ։

— Տիկին, պատրաստ եմ ձեզի ընկերանալու, պատասխանեց պալատականը, որ մահափորձին խօսքը լսելով դող ելած էր ։

Ապտիւլ Համիտի քովէն մեկնելէն ի վեր հազիւ քանի վայրկեան անցած, տիկին Ժիւլի արդէն փողոցի կառքով մը կը հեռանար Պէշիկթաշէն ։

*
* *

Ապտիւլ Համիտ, թիկնաթոռին մէջ թաղուած, սրտատրոփ անհամբերութեամբ մը սպասեց ։

Այս ձայնը, ի՛նչ տարօրինակ բան, կը մտածէր, այս ձայնը որքա՜ն կը նմանի Սալիհա հանըմի ձայնին․․․ ։

Ու յետոյ միտքը բերաւ այդ յեղափոխական կնոջ դիմագիծը, շարժուձեւը հասակը․․․ այո՛, այդ ամէնքը կը համապատասխանէին տիկին Ժիւլի ։

— Բայց ո՞ւր մնաց, մտածեց մէկէն, տեսնելով որ վայրկեանները կը սահէին և տիկին Ժիւլի երեւան չէր ելլեր ։

— Վերջապէս, համբերութիւնը սպառած, զանգակը հնչեցուց. սենեկապանը երեւցաւ ։

— Շուտով տիկին Ժիւլին հոս կանչեցէք, հրամայեց ։

Տասը վայրկեան ետքը, սենեկապանին ընկերակցութեամբ Իզզէթ բաշա ներս կը մտնէր ։

— Վեհափառ տէր, ըսաւ պալատականը, տիկին Ժիւլի հիմա մեկնեցաւ պալատէն, ձեր մէկ հրամանը գործադրելու համար ։

— Պալատէն մեկնեցա՜ւ, իմ հրամանս գործադրելու համա՜ր․․․ գոչեց Ապտիւլ Համիտ ոտքի ելլելով յանկարծ ։

Հազիւ թէ այս շարժումը լսուած էր, ահեղ ձայն մը լըսուեցաւ և Ապտիւլ Համիտ սոսկալի աղաղակ մը արձակելով գետին տապալեցաւ ։

Պալատականները իսկոյն քովը փութացին ։

*
* *

Անգլիական Պատավիա շոգենաւը որ ալիւր բեռցած Օտե-

ատյէն, Գըզ Գուլէսիի առջև կանգ առած էր, կը պատրաստուէր ճամբայ ելլելու դէպի Միջերկրական։

Շոգենաւին մէջ, բացառապէս, մէկ քանի ուղեւորներ կը գտնուէին, որոնք հաւաքուած էին վերնայարկը, նաւապետին յատկացուած բաժնին մէջ։ Այդ ուղեւորները մեր այս երկար պատմութեան գլխաւոր հերոսներն էին. Սալիհա հանըմ, Սաքիտ պէյ, Հիւսնի էֆ., Արիֆ և Երիտասարդ Նախկին խմբագիրը Սատըգ. այդ վերջինը դեռ նոր ոտքը շոգենաւ դրած կը թուէր և ամէնքը անոր շուրջը հաւաքուած մտիկ կ'ընէին զինքը, լարուած հետաքրքրութեամբ մը.

— Այո՛, շարունակեց Սատըգ. կ'երեւայ որ ծանրապէս վիրաւորուած է, բայց կեանքը վտանգի մէջ չէ... այդ մարդը անթափանցելի զրահ մը կը հագնի եղեր իր հագուստին տակէն... զրահ մը որ դիմացեր է մեր փոքրիկ խնձորին... ու հիմա կրկին մենք ենք որ օտարութեան ճամբան ձեռք կ'առնենք ու բռնակալութիւնն է որ կը յաղթանակէ... զըզուելի աշխար։

— Ա՛լ համոզուեցայ որ մեր բոլոր ջանքերը, աշխատանքըն ու զոհողութիւնները անօգուտ են, վճռեց Սաքիտ պէյ, յուսահատ շեշտով մը։

— Ոչ՛, ապագան մերն է, գոչեց Սալիհա հանըմ ներշնչուած ձայնով մը, ապագան ազատութեաննն է... մահափորձերու, փոքրիկ դաւերու, գաղտնագողի պայքարներու շրջանը փակեցինք... հիմա պիտի սկսինք ճակատ առ ճակատ պատերազմը, յայտնի համարձակ. յեղափոխութեան ու ապստամբութեան դրօշակը պարզած... կեցցէ՛ մեր բանակը, ազատութեան բանակը և անկցի բռնաւորը... կ'երդնում որ մէկ քանի տարիէն պիտի ողջունենք մեր յաղթութիւնը և Եըլտըզ պիտի իյնայ, հակառակ իր թնթանօթներուն և իր ամրութիւններուն...։

Սալիհա հանըմին այս մարգարէութեան կատարումը մանրամասնօրէն պիտի պատմենք ուրիշ հատորով մը։

«ՎԵՐՋ»